ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

# ՓԱՒՍՏՈՍԻ ԲՈՒԶԱՆԴԱՑՒՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Բնագիրը Ք. Պատկանյանի

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ—1987

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

# ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

**Թարգմանությունը և ծանոթագրությունները**
**Ստ. Մալխասյանցի**

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ—1987

ԳՄԴ 63.3(2Հ)
Փ 268

Հրատարակության է պատրաստել բանաս. գիտ. դոկտոր
Գ. Գ. ԱՆԱՆՅԱՆԸ

Խմբագիր՝ բանաս. գիտ. թեկն. դոցենտ
Հ. Մ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

«Ուսանողի գրադարան» մատենաշարի
խմբագրական հանձնաժողով

ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ Ս. Ա. (նախագահ), ԱՂԱՅԱՆ Է. Բ.,
ԱՆԱՆՅԱՆ Գ. Գ., ԹԱՄՐԱԶՅԱՆ Հ. Ս., ՄԿՐՏՉՅԱՆ Լ. Մ.
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Բ. Հ.

Փավստոս Բուզանդ.
Փ268 Հայոց պատմություն /[Բնագիրը՝ Ք. Պատկանյանի, թարգմ. և ծանոթագր. Ստ. Մալխասյանի; խմբ.՝ Հ. Մ. Ավետիսյան].—Եր.։ Երևանի համալս. հրատ., 1987.—456 էջ.— (Ուսանողի գրադարան /Երևանի պետ. համալս; [Խմբ. հանձնաժողով՝ Համբարձումյան (Ս. Ա. (Նախագահ) և ուրիշն].

Հինգերորդ դարի հայ մատենագրության այս նշանավոր կոթողի հրատարակության համար հիմք է ընդունվել 1892 թ. Վենետիկյան հրատարակությունը և նույն գրքի Ստ. Մալխասյանցի թարգմանությունը (1947)։

Փ $\frac{470208000\text{-}06}{704(02)\ 87}$ 41—85 ԳՄԴ 63.3(2Հ)

ПАВСТОС БУЗАНД
ИСТОРИЯ АРМЕНИИ
(На армянском языке)
Издательство Ереванского университета
Ереван — 1987

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ԽՈՍՏԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՆԱԽԱԳԻՏԵԼԻ

Այս ինչ է ՚ի դպրութիւնս երրորդ՝ պատմութեանցս. ժամանակագիր կանոնք մատենից, և առ նմին դպրութիւնք երեք, այս ինքն են սոքա չորք մատեանք. և չորեքին միոյ իրաց յիշատակարանք են, յիշեցուցիչք պատմութեանց ազգացն Հայաստան աշխարհին որդւոց Թորգոմայ: Այս ինքն կարգ անցելոց իրաց, գործք և վարք մինչև ցիւրաքանչիւր ելս յաշխարհէս քահանայապետաց սրբոց արանց աստուծոյ, և թագաւորաց տէրանց աշխարհաց Արշակունեաց, և զօրավարաց՝ արանց անուանեաց քաջ նախարարաց, և խաղաղութեան և պատերազմին և շինութեան և աւերածոյ և արդարութեան և անօրէնութեան և աստուածպաշտութեան և ամբարշտութեան. ժամանակագիր արարեալ ՚ի թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչև ՚ի միւս վերջին ժամանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց, և ՚ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյ Գրիգորի առաջնոյ քահանայապետի մինչև ցայնոսիկ ՚ի վերջինսն՝ որք կային գլխաւորք եպիսկոպոսք Հայոց, մի ըստ միոջէ կարգօք թուօք և համարօք կանոնեալ դրոշմեալ նկարեցի իւրաքանչիւր գլխովք: Եւ չորս խոստմունս չորից չորեցունց դպրութեանցս յիւրաքանչիւր իւր գլուխս պատուաստեցի մինչև ՚ի կատարած սորին, առ ՚ի զօգուտն ժառանգել՝ որք միանգամ կամին սրտի մտօք հասու լինել սմին զոր ասելոցս եմ:

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ[1]

## ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

Պատմությունների այս Երրորդ դպրությունը պարունակում է պատմական զրվածքների գլուխներ, և նրան կից կան ուրիշ երեք դպրություն. այսինքն սրանք չորս մատյան են և չորսն էլ նույն անցքերի հիշատակարաններ են, որոնք հիշեցնում են Հայաստան աշխարհի Թորգոմի որդոց պատմությունները, այսինքն անցած անցքերի շարքը,— գործերն ու վարքերը սուրբ մարդկանց՝ սուրբ քահանայապետների, և աշխարհիս տեր Արշակունի թագավորների և անվանի մարդկանց՝ զորավարների և քաջ նախարարների՝ մինչև նրանց մահը, այլ և (երկրի) խաղաղությունն ու պատերազմները, շինությունն ու ավերումները, արդարությունն ու անօրենությունը, աստվածապաշտությունն ու ամբարշտությունը: Պատմությունն սկսվում է Տրդատի որդի Խոսրովի թագավորությունից մինչև Հայոց թագավորների տկարանալը վերջին ժամանակներում և առաջին քահանայապետ Գրիգորի որդի Վրթանեսի քահանայապետությունից մինչև վերջինները, որոնք Հայոց եպիսկոպոսների գլխավորներն եղան: (Այս բոլորը) մի առ մի՝ կարգով, թվով, համարով, առանձին առանձին գլուխներով նկարագրեցի: Եվ չորս դպրությունների համար առանձին ցանկեր կազմեցի յուրաքանչյուրի սկզբում մինչև վերջը, որպեսզի օգտվել կարողանան նրանք, որոնք սրտանց փափագում են վերահասու լինել իմ առելիքներին:

# ԽՈՍՏՈՒՄՆ ԵՐՐՈՐԴ

## ԿԱՆՈՆՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ՄԱՏԵՆԻՑ ՄԻՆՉԵՒ ՑՔՍԱՆ ԵՒ ՄԻ

Ա. Յաղագս որ ինչ յետ հարազատութեան Թադէոսի Առաքելոյ յերկրին Հայաստան աշխարհին որդւոյ Թորգոմեայ:

Բ. Յաղագս մեծի առաջնոյ քահանայապետին Գրիգորի, և նոցունց շիրմանցն:

Գ. Յաղագս թագաւորութեան Խոսրովու որդւոյ Տրդատայ, և Վրթանայ մեծի քահանայի որդւոյ Գրիգորի:

Դ. Յաղագս երկուց տոհմացն՝ որք անզաւակեցան, Մանաւազեանքն և Որդունիք, ՚ի մէջ Հայաստան աշխարհին:

Ե. Յաղագս որդւոց քահանայապետին Վրթանայ, որոց անուանք էին երիցուն Գրիգորիս, և երկրորդին Յուսիկ:

Զ. Յաղագս Գրիգորիսի՝ որդւոյ Վրթանայ, և նորուն վախճանին, և տեղին՝ ուր եդաւ:

Է. Յաղագս մարտի պատերազմին նինին եկելոց յարշաւանաց թագաւորին Մազքթաց յաշխարհն իշխանութեան Հայոց թագաւորին, և կամ ո՛րպէս սատակեցաւ նա զօրօքն իւրովք հանդերձ:

Ը. Յաղագս մայրեացն անկելոց, և պատերազմացն ընդ Պարս. և ազգանատութեան տան նախարարացն տոհմին Բզնունեաց:

Թ. Յաղագս Բակուրայ բդեշխի, որ ապստամբեաց յարքայէն Հայոց. և թէ զիա՛րդ սատակեցաւ ՚ի զօրացն Հայոց, և փոխանակ նորա լինէր բդեշխ Վաղինակ Սիւնի:

Ժ. Յաղագս Յակոբայ եպիսկոպոսին Մծբնայ:

ԺԱ. Յաղագս մեծի պատերազմին Պարսից և Հայոց ընդ միմեանս, և անկանելոյ ՚ի պատերազմին մեծի զօրավարին Վաչէի, և մահուան թագաւորին Խոսրովու, և փոխելոյ յաշխարհէ հայրապետին Վրթանայ:

ԺԲ. Յաղագս թագաւորելոյ Տիրանայ յետ հօր իւրոյ ՚ի վերայ Հայոց աշխարհին: Այնպէս և Յուսիկ յետ իւրոյ հօրն Վրթանայ կալաւ զաթոռ հայրապետաց. և կամ ո՛րպէս սպանաւ ՚ի Տիրանայ արքայէ վասն յանդիմանելոյ զթագաւորն:

ԺԳ. Յաղագս թէ զիա՛րդ յետ մահուն Յուսկան անառաջնորդ լինէր եկեղեցին Հայոց. և ոչ որդիքն Յուսկան լինէին արժանի նորին աթոռոյն:

ԺԴ. Յաղագս վարուց մեծին Դանիէլի՝ առն աստուծոյ, և կամ որպէս յանդիմանեաց զթագաւորն Տիրան, և կամ ո՛րպէս պատուհասեալ մեռաւ ՚ի նմանէ:

ԺԵ. Յաղագս որդւոցն Յուսկան, եթէ ո՛րպէս ընդպարձեալ առ տան նորին զմեծ քահանայութեան զաթոռոյ զպատիւն:

# ՑԱՆԿ ԵՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅԱՆ

## ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՔՍԱՆ ԵՎ ՄԻ ԳԼՈՒԽՆԵՐ

Ա. Ինչ որ Թորգոմի որդոց Հայաստան աշխարհում տեղի ունեցավ Թադեոս առաքյալի քարոզությունից հետո:

Բ. Առաջին մեծ քահանայապետ Գրիգորի (և Արիստակեսի)[2] և նրանց շիրիմների մասին:

Գ. Տրդատի որդի Խոսրովի թագավորությունը և Գրիգորի որդի Մեծն Վրթանեսի քահանայապետությունը:

Դ. Երկու տոհմերի՝ Մանավազյանների և Որդունիների մասին, որոնք Հայաստան աշխարհում իրենց սերունդներով բնաջինջ եղան:

Ե. Վրթանես քահանայապետի որդոց մասին, որոնցից երեցը կոչվում էր Գրիգորիս և երկրորդը Հուսիկ:

Զ. Վրթանեսի որդի Գրիգորիսի և նրա վախճանի մասին. և թե ո՛րտեղ թաղվեց:

Է. Մասքութների թագավորի հինական ասպատակը Հայոց թագավորի իշխանության երկրի վրա. տեղի ունեցած պատերազմը և թե ի՛նչպես նա զորքով միասին կոտորվեց:

Ը. Մերիների տնկելը. Պարսիկների հետ պատերազմները և Բզնունյաց նախարարական տոհմի սերհատվելը:

Թ. Բակուր բդեշխի մասին, թե ի՛նչպես ապստամբեցավ Հայոց թագավորից և սպանվեց Հայոց զորքերից. որի փոխարեն բդեշխ դարձավ Վաղինակ Սյունին:

Ժ. Մծբինի Հակոբ եպիսկոպոսի մասին:

ԺԱ. Պարսից և Հայոց միջև տեղի ունեցած մեծ պատերազմի մասին, որի մեջ ընկավ Վաչե մեծ զորավարը. Խոսրով թագավորի մահը և Վրթանես հայրապետի այս աշխարհից փոխվելը:

ԺԲ. Տիրանի թագավորելը Հայոց աշխարհի վրա իր հոր մահից հետո, նույնպես Հուսիկի հայրապետական աթոռը նստելը իր Վրթանես հորից հետո, և թե ինչպես նա սպանվեց Տիրան թագավորից՝ նրան հանդիմանելու պատճառով:

ԺԳ. Թե ինչպես Հուսիկի մահից հետո անառաջնորդ էր մնում Հայոց աշխարհը, որովհետև Հուսիկի որդիքը արժանավոր չէին իրենց հոր աթոռին:

ԺԴ. Մեծն Դանիելի՝ աստծու մարդու վարքը. և թե ինչպես նա հանդիմանեց Տիրան թագավորին և նրանից սպանվեց:

ԺԵ. Հուսիկի որդոց մասին, թե ի՛նչպես ոտի տակ տալով արհամարհեցին աստծու մեծ քահանա դառնալու պատիվը:

ԺԶ. Փառենի մասին, որ հայրապետական աթոռը նստեց:

ԺԶ. Յաղագս Փառինայ, որ կալաւ զաթոռ հայրապետացն:

ԺԷ. Յաղագս Շահակայ, որ էր 'ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի, որ յաջորդեաց զտեղի հայրապետացն յաթոռոց. և թէ ո՛րպէս յայնմ ժամանակի երկիրն Հայոց թողեալ զՏէր և զպատուիրանս նորա:

ԺԸ. Յաղագս Հայր Մարդպետի, որ վատ խրատ տալով թագաւորին՝ տայր կոտորել զազգս նախարարացն Հայոց:

ԺԹ. Յաղագս որդւոցն Յուսկանն՝ Պապայն և Աթանագինէին, եթէ ո՛րպէս կամ զիա՛րդ սատակեցան յանօրէնութեան իւրեանց 'ի տեղիսն սուրբ:

Ի. Յաղագս Տիրանայ թագաւորին, եթէ ո՛րպէս մատնեցաւ յիւրմէ սենեկապետէն 'ի Փիսակայ Սիւնոյ, եթէ ո՛րպէս կորեաւ, և 'ի խաղաղութեան ժամանակի յանկարծակի գերեցաւ 'ի Վարազէ իշխանէն պարսկէ. և կամ ո՛րպէս ամենայն երկիրն Հայոց ընդ նմին կորեաւ և կործանեցաւ:

ԻԱ. Յաղագս թէ ո՛րպէս ժողովեցան միաբանութեամբ ամենայն նախարարքն Հայոց. և չոգան ածին զթագաւորն Յունաց իւրեանց 'ի թիկունս օգնականութեան յերկիրն Հայոց. և կամ ո՛րպէս եկն թագաւորն Պարսից բազում զօրօք, և կոտորեալ լինէին զօրքն Պարսից 'ի զօրացն Յունաց և 'ի մնացորդաց Հայոց. և Ներսեհն արքայն Պարսից յերկրէն Հայոց միանձն ճողոպրեալ յերկիրն Պարսից փախստական անկանէր:

ԺԷ. Շահակի մասին, որ Աղբիանոս եպիսկոպոսի սերնդից էր և հայրապետական աթոռը նստավ, և թե ի՛նչպես այդ ժամանակ Հայոց աշխարհը թողել էր տիրոջը և նրա պատվիրանները:

ԺԸ. Հայր Մարդպետի մասին, որ թագավորին վատ խրատ տալով կոտորել էր տալիս Հայոց նախարարական տոհմերը:

ԺԹ. Հուսիկի որդոց՝ Պապի և Աթանագինեսի մասին, թե ինչպես իրենց անօրենությամբ սատկեցան սուրբ տեղում:

Ի. Թե ի՛նչպես Տիրան թագավորը իր սենեկապետի՝ Սյունի Փիսակի կողմից մատնվեց ու կորավ, ի՛նչպես խաղաղության ժամանակ հանկարծ գերի բռնվեց պարսից Վարազ իշխանից և ի՛նչպես բոլոր Հայոց երկիրն էլ նրա հետ միասին կորավ ու կործանվեց:

ԻԱ. Թե ի՛նչպես Հայոց բոլոր նախարարները ժողովվեցին և միաբանությամբ գնացին, Հունաց թագավորին Հայաստան բերին իրենց օգնական, և ի՛նչպես Պարսից թագավորը մեծ զորքով եկավ. ի՛նչպես Պարսից զորքը կոտորվեց Հունաց զորքերից և Հայոց զորքերի մնացորդներից, և Պարսից Ներսեհ թագավորը մի ձիով ճողոպրում էր Հայոց աշխարհից և փախչում ընկնում էր Պարսից աշխարհը:

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ԵՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ

### Ի ՍԿԻԶԲՆ

### Ա

### ՅԱՂԱԳՍ ՈՐ ԻՆՉ ՅԵՏ ՔԱՐՈԶՈՒԹԵԱՆՆ ԹԱԴԷՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅ ՅԵՐԿԻՐՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻՆ. ԿԱՆՈՆՔ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ՄԱՏԵՆԻՑ

Ի քարոզութենէն Թադէոսի Առաքելոյ և նորուն յելից և ՚ի մարտիրոսութենէն մինչև ՚ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի և իւրոյ հանգստեանն, և յառաքելասպան Սանատրկոյ արքային մինչև յակամայ հնազանդելն հաւատոցն, և ՚ի նորուն հանգստեան արքային Տրդատայ զանցեալ իրացն զառաջնոցն զվարսն լաւացն, և որ զնոցուն հակառակ ընդդիմակաց, այն ամենայն ՚ի ձեռն այլոցն գրեցան: Բայց և մեք ՚ի մերում աստ եդաք փոքր ՚ի շատէ ՚ի կարգի պատմութեան, ոչ զանց արարեալ թողաք վասն պատշաճ իրաց կարգին: Վասն զի է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է, և է ինչ՝ որ վերջին է. իսկ որ միջին ինչ եղև. այն ՚ի ձեռն այլոց գրել գրեցաւ: Բայց զի մի՛ ՚ի միջի մերոյ պատմութեանս ընդհատ երևեսցի հուն մի, նշանակեցաք. զոր օրինակ աղիւս մի կարգած ՚ի մէջ որմոյն շինուածոյ, ՚ի կատարումն բովանդակութեան: Այս ինչ. որ ինչ յետ այսորիկ կարգի, աստ պատմի աստէն առ սմին:

### Բ

### ՅԱՂԱԳՍ ՈՐ ԻՆՉ ՎԱՍՆ ՄԵԾԻ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ. ԳՐԻԳՈՐԻ ԻՒ ՆՈՑՈՒՆՑ ՇԻՐՄԱՆՑՆ

Արդ ՚ի թագաւորութեանն Տրդատայ՝ որդւոյն Խոսրովու, լուսատուութեամբ հաճոյական սիրով և աստուածպաշտութեամբն հաւատոյ,

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ

### ՍԿԻԶԲ[3]

### Ա

### ԻՆՉ ՈՐ ԹԱԴԵՈՍ ԱՌԱՔՅԱԼԻ ՔԱՐՈԶՈՒԹՅՈՒՆԻՑ ՀԵՏՈ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ: ՊԱՏՄԱԿԱՆ ԳԼՈՒԽՆԵՐ

Թադեոս առաքյալի քարոզությունից ու նրա մարտիրոսական վախճանից մինչև Գրիգորի վարդապետության վերջն ու նրա վախճանը, և առաքելասպան Սանատրուկ թագավորից մինչև Տրդատ թագավորի ակամա հնազանդելը (քրիստոնեական) կրոնին ու նրա վախճանը,— անցյալ հին անցքերի և առաջինի անձերի վարքի մասին, ինչպես և նրանց հակառակորդների ու դիմադրողների մասին՝ բոլորը ուրիշների կողմից արդեն գրված են[4]: Բայց մենք էլ մեր պատմության ընթացքում փոքր ի շատե նշանակեցինք, առանց հիշատակության չթողինք՝ պատշաճ կարգը պահպանելու համար, որովհետև մեր պատմվածքի մեջ կա բան, որ առաջին է, և կա բան՝ որ վերջին. իսկ ինչ որ միջին եղավ՝ այն ուրիշներից արդեն գրվեց[4]: Բայց որպեսզի մեր պատմության մեջ ընդհատում չնկատվի՝ մասնավոր նշանակեցինք, ինչպես մի աղյուս, որ պատի շինվածքի մեջ դրվում է շենքը ամբողջացնելու համար: Այսպես անելուց հետո ինչ որ այնուհետև պատահել է՝ այստեղ հաջորդաբար պատմվում է:

### Բ

### ՄԵԾ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏ ԳՐԻԳՈՐԻ (ԵՎ ԱՐԻՍՏԱԿԵՍԻ) ԵՎ ՆՐԱՆՑ ՇԻՐԻՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Արդ՝ Խոսրովի որդի Տրդատի թագավորության ժամանակ (Հայոց աշխարհը) լուսավորվեց հաճոյական սիրով և աստվածպաշտության

ծանօթութեամբ 'ի ձեռն Գրիգորի՝ որդւոյն Անակայ, մեծի քահանայի. և որոյ ընդ նմին կրտսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վարդապետութեան զամենայն աւուրս կենաց իւրոց մինչև յօրն քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ: Իսկ սոցա պատրաստեցան տեղիք բնակութեան, և արժանի եղեալ շիրիմք հանգըստեան. և մեծին Գրիգորի 'ի Դարանաղեաց գաւառին, 'ի գիւղն՝ որ անուանեալ կոչի Թորդան. և սրբոյն Արիստակայ որդւոյ նորա՝ յետ խոստովանութեան մահուն իւրոյ, և տարան զնա 'ի Ծոփաց գաւառէ, և եդին զնա յԵկեղեաց գաւառի 'ի Թիլն աւանի, 'ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ:

## Գ

### ՈՐ ԻՆՉ ՎԱՍՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԽՈՍՐՈՎՈՒ՝ ՈՐԴՒՈՅ ՏՐԴԱՏԱՅ ԵՒ ՎՐԹԱՆԱՅ ՄԵԾԻ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ՝ ՈՐԴՒՈՅ ԳՐԻԳՈՐԻ

Ապա յետ այսորիկ թագաւորեաց Խոսրով Կոտակ, թոռն Խոսրովու, որդի քաջի և առաքինւոյն Տրդատայ արքայի: Յաւուրս սորա եկաց և եղև քահանայապետ յաթոռն հօրն, փոխանակ հօրն իւրոյ և եղբօրն իւրոյ, երէց որդին Գրիգորի Վրթանէս: Խաղաղութիւն և շինութիւն, մարդաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և ստացուածաշատութիւն և շահեկանութիւն, և մեծն աստուածասէր պաշտօն 'ի հաճոյակատարն բարութիւն յամս յաւուրս սոցա աճել բազմացաւ: Լուսաւորէր և առաջնորդէր նոցա սուրբն Վրթանէս իբրև զհայր իբրև զեղբայր իւր. իրաւունք և արդարութիւն ծաղկեալ էին 'ի դարուն յայնմ:

Զայնու ժամանակաւ երթեալ հասանէր եպիսկոպոսապետն Վրթանէս 'ի մեծն յառաջին 'ի մայրն եկեղեցեացն Հայոց, որ էր յերկրին Տարօնու, ուր նշանօքն եղելօք կործանեցան բագինք մեհենիցն յայնժամ, վաղ ևս առ մեծաւն քահանայապետաւն Գրիգորիւ: Սա երթեալ կատարէր անդ, ըստ հանապազ սովորութեանն, զտեառնն զխաչական զփրկութեանն զպատարագն զոհութեան, զհաղորդութիւն չարչարանաց յիշատակի, զկենդանարարն և զազատիչն զմարմին և զարիւն աստուածորդոյն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Քանզի այնպէս իսկ սովոր էին եպիսկոպոսապետքն Հայոց, հանդերձ թագաւորօքն և մեծամեծօքն, նախարարօքն և աշխարհախումբ բազմութեամբք պատուել զնոյն տեղիս, որ յառաջ էին տեղիք պատկերաց կռոցն, և ապա յանուն աստուածութեանն սրբեցան, և եղեն տուն աղօթից և տեղի ուխտից ամենայն ումեք: Մանաւանդ յայն 'ի գլխաւոր տեղին յեկեղե-

հավատով, որին ծանոթացավ մեծ քահանայի՝ Գրիգորի միջոցով, որ Անակի որդին էր: Նրա կրտսեր որդին Արիստակեսը իր հորը գործակից և եպիսկոպոսակից էր նրա վարդապետության ամբողջ ընթացքում իր կյանքի բոլոր օրերում մինչև քրիստոսակոչ վախճանի օրը: Սրանց համար հանգստարաններ և արժանավոր շիրիմներ պատրաստվեցին— մեծն Գրիգորի համար Դարանաղյաց գավառում, Թորդան կոչված գյուղում, իսկ նրա որդուն, սուրբ Արիստակեսին, նրա խոստովանական մահից հետո, Ծոփաց գավառից տարան Եկեղյաց գավառը և թաղեցին Թիլ ավանում, իր հոր Գրիգորի կալվածում:

Գ

## ՏՐԴԱՏԻ ՈՐԴԻ ԽՈՍՐՈՎԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳՐԻԳՈՐԻ ՈՐԴԻ ՄԵԾՆ ՎՐԹԱՆԵՍԻ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Սրանից հետո թագավորեց Խոսրով Կոտակը[5], (Մեծն) Խոսրովի թոռը, քաջ և առաքինի Տրդատ թագավորի որդին: Սրա ժամանակ քահանայապետ եղավ և իր հոր ու եղբոր աթոռը նստեց Վրթանեսը, Գրիգորի երեց որդին: Սրանց տարիներում աճեցին ու բազմացան խաղաղություն և շենություն, մարդաշատություն և առողջություն, պտղաբերություն, առատություն և գործի աջողություն և աստվածային մեծ պաշտամունքը և աստվածահաճո բարի վարք: Սուրբ Վրթանեսը իր հոր և եղբոր նման նրանց լուսավորում էր և առաջնորդում: Այն դարում ծաղկած էին հրավունքն ու արդարությունը:

Այս ժամանակները (մի անգամ) Վրթանես եպիսկոպոսապետը գնացել էր Հայոց մեծ և առաջին մայր եկեղեցին, որ գտնվում էր Տարոն գավառում, որտեղ դեռ վաղ ժամանակ, մեծ քահանայապետ Գրիգորի օրերում կատարված նշաններով[6] կործանվել էին մեհյանների բագինները[7]: Այնտեղ գնալով՝ նա իր մշտական սովորությամբ կատարում էր փրկչի խաչելության փրկական գոհացողական պատարագը, (Քրիստոսի) չարչարանքներին հաղորդության հիշատակը, (այսինքն) աստվածորդի տեր Հիսուս Քրիստոսի կենդանարար և ազատիչ մարմինն ու արյունը: Որովհետև հենց այսպես սովոր էին Հայոց եպիսկոպոսապետները՝ թագավորի, մեծամեծների, նախարարների և ժողովրդի խուռն բազմության հետ միասին պատվել այն տեղերը, որոնք առաջ կուռքերի պատկերների տեղեր էին և հետո սատծու անունով սրբվեցին ու դարձան աղոթքի տներ և ուխտատեղիներ բոլորի համար: Մանավանդ սովորություն ունեին ժողովվել այն գլխավոր եկեղեցին և կատարել այնտեղ եղած սրբերի հիշատակը տարեց տարի սահմի[8]

ցին ժողովել 'ի յիշատակ սրբոցն՝ որ էին անդ, կատարել անդ ամի ամի երբն անգամ. որք զնոյն ունէին սովորութիւն առաւել ևս 'ի մեծի մարգարէարան մատրանն Յովհաննու: Սոյնպէս և յառաքելարանըս տեառնաշակերտացն, սոյնպէս և 'ի վկայարանս մարտիրոսացն ամի ամի ժողովեալք, զոր տօնին յիշատակի նոցա վարուց գործոց կենաց քաջութեան խմբեալ՝ ցընծային: Իսկ դէպ իմն լինէր 'ի ժամանակին՝ յորում մեծ քահանայապետն Վրթանէս երթեալ շրջէր առանձինն սակաւուք, կատարել զպատարագն օրհնութեան: Արդ որք միանգամ զհնութիւն կռապաշտութեան հեթանոսութեան զնոյն սովորութիւն մինչև ցայնժամ ևս ունէին գաղտնի, 'ի մի միաբանութիւն ժողովեալք՝ հասանէին իբրև հազարք երկու, խորհուրդ եդեալ ընդ միմեանս՝ սպանանել զքահանայապետն աստուծոյ զՎրթանէս: Բայց ունէին և սակաւ մի խորհուրդ համարձակութեան 'ի կնոջէ թագաւորէն, զայն գործել. վասն զի յանդիմանէր զնա սուրբն վասն գաղտնի շնութեան կծծութեան բարոյից պոռնկութեան: Եւ հասեալ պատէին զմեծ քաղաքորմն եկեղեցւոյն Աշտիշատու: Մինչ դեռ նա 'ի ներքս մտեալ՝ զպատարագն կատարէր, արտաքուստ բազմազօրուն փակեալ պաշարել կամեցան: Որոց առ հասարակ որք 'ի գնդին էին բազուկք իւրաքանչիւր՝ յետս դարձեալ ի վերայ իւրաքանչիւր թիկանց, առանց իրիք կապելոյ՝ սքանչելապէս կապեալ լինէին: Այսպէս պաշարեալք ընկապնեալք գելեալք վանեալք կըծկեալք, ամենեքեան առ հասարակ յերկիր անկեալք անբարբառ կային, անխաղացք 'ի տեղւոջէն. որք էին տոհմք և ազգք աշխարհակերք աշխարհաւերք ժանդագործք քրմացն: Արդ այնպէս պաշարեալք, դիզեալ կային ամբոխն 'ի գաւթի եկեղեցւոյն. զորս ելեալ իւր իսկ ինքնին Վրթանէս մատուցեալ հարցանէր զնոսա, եթէ դուք ո՞յք էք, կամ ուստի՞ գայք, կամ զո՞ խնդրէք, կամ ուստի՞ եկիք: Իսկ նոցա զարդարն սկսեալ խօսել, խոստովան լինէին՝ եթե եկաք զի աւերեսցուք զտեղիս, և զքեզ սպանցուք, հրամանաւ համարձակեալ ակնարկելով մեծին Հայոց տիկնոջն. այլ տէր աստուած զզօրութիւնն իւր յայտնեաց, և եցոյց մեզ՝ թէ ինքն միայն է աստուած. և այժմ ծանեաք և հաւատացաք՝ եթէ նա միայն է աստուած: Արդ այսպէս կամք աւասիկ կծկեալք, զի և շարժել անգամ ոչ կարեմք 'ի տեղւոջէս: Իսկ երանելին Վրթանէս զբանն վարդապետութեանն 'ի մէջ առնոյր, հաստատէր զնոսա 'ի հաւատսն 'ի մի տէր Յիսուս Քրիստոս, շատ ինչ խօսէր ընդ նոսա: Ապա աղօթս մատուցանէր, և խնդրէր յաստուծոյ. բժշկէր և արձակէր զնոսա յաներևոյթ կապանացն և յանհնարին կծկութենէն տանջանացն: Եւ նոքա իբրև փրկեցան յայնմանէ, ապա առ հասարակ անկանէին առաջի նորա, և խնդրէին ապաշխարութեան զդեղն. և նա տայր ժամա-

ամսի յոթին, Հովհաննես մեծ մարգարեի մատուռում: Նույնպես և տիրոջ աշակերտների առաքելական (մատուռներում) և մարտիրոսների վկայարաններում ամեն տարի ժողովվում էին, նրանց վարքի, կյանքի և քաջ գործերի հիշատակը խմբովին տոնում էին ցնծությամբ: Այսպես էլ դեպք եղավ այդ ժամանակ, որ Վրթանես մեծ քահանայապետը սակավաթիվ մարդկանցով շրջում էր առանձին՝ օրհնության պատարագը մատուցանելիս: Արդ՝ այն մարդիկ, որոնք մինչև այդ ժամանակ զաղտուկ պահում էին հեթանոսական կռապաշտական սովորությունները, մոտ երկու հազար հոգի, միասին ժողովվելով՝ խորհուրդ արին սպանել սստծու քահանայապետ Վրթանեսին: Այս բանն անելու նրանք համարձակեցան մասամբ նաև թագավորի կնոջից, որովհետև սուրբը նրան հանդիմանում էր զաղտնի շնության՝ պոռնկական վարքի պատճառով: Նրանք հասան և շրջապատեցին Աշտիշատի եկեղեցու մեծ պարիսպը: Մինչ նա ներսը պատարագն էր մատուցանում՝ բազմաթիվ զորքը դրսից կամեցավ նրան շրջափակել, պաշարել: (Բայց) գնդի մեջ եղած ամեն մի մարդու բազուկները ետ շրջվեցին և թիկունքների վրա սքանչելապես կապվեցին, առանց որևէ մեկից կապվելու: Այսպես պաշարված, կաշկանդված, կապկապված, կծկված՝ բոլորն առհասարակ գետին թափվեցին, չկարողանալով ո՛չ ձայն հանել և ոչ տեղերից շարժվել: Սրանք աշխարհավեր, աշխարհակեր, շարագործ քուրմերի սերունդներն էին, նրանց տոհմից: Այսպես այդ ամբոխը պաշարված դիզված (մնում էր) եկեղեցու գավթում, (մինչև որ) ինքը Վրթանեսը դուրս գալով մոտենում էր նրանց ու հարցնում էր. ո՞վ եք դուք, ո՞րտեղից եք գալիս կամ ո՞ւմ եք ուզում, կամ ինչո՞ւ եք եկել[9]: Նրանք սկսեցին ճշմարիտը խոսել ու խոստովանեցին, թե՝ «Եկել էինք այս տեղերն ավերելու և քեզ սպանելու, Հայոց մեծ տիկնոջ հրամանից համարձակություն գտնելով. բայց տեր աստված յուր զորությունը հայտնի դարձրեց և մեզ ցույց տվեց, թե միայն ինքն է աստված, և այժմ մենք ճանաչեցինք ու հավատացինք, թե միայն նա է աստված: Ահա մենք այսպես կծկված մնացել ենք, այնպես որ այս տեղից շարժվել անգամ չենք կարող»: Իսկ երանելի Վրթանեսը վարդապետության խոսքը մեջ բերելով՝ նրանց հաստատում էր տեր Հիսուս Քրիստոսի հավատի մեջ և շատ բան էր խոսում նրանց: Հետո նա աղոթք անելով խնդրում էր աստծուց, նրանց բժշկում և արձակում էր աներևույթ կապանքներից և կծկվելու անտանելի տանջանքից: Երբ նրանք սրանից փրկվեցին՝ ապա բոլորն ընկնում էին նրա առաջ և խնդրում էին ապաշխարության դեղը. նա էլ նրանց տալիս էր ապաշխարության համար որոշ ժամանակ: Եվ երբ նրանք

նակ սահմանեալ ապաշխարութեան: Եւ ուսեալք զհաւատսն միասնա-կան սուրբ երրորդութեանն, և ապա մկրտէր իբրև հազարս երկուս. թո՛ղ զկանայս իւրեանց և զմանկտի. և այսպէս 'ի հաւատ խառնէր, և արձակէր սրբեալս և հաստատեալս:

Դ

ՅԱՂԱԳՍ ԵՐԿՈՒՑ ՏՈՀՄԻՑՆ՝ ՈՐՔ ԱՆՋԱՒԱԿԵՑԱՆ 'Ի ՄԷՋ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻՆ, ՎԱՍՆ ՄԱՆԱՒԱԶԵՆԻՑՆ ԵՒ ՈՐԴՈՒՆԻՈՑ

Եւ զայն ժամանակաւ յարեաւ խռովութիւն մեծ յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք և իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անկանէին ընդ[1] միմեանս, մեծաւ ոխութեամբ յարուցին կռիւ, և տային ընդ միմեանս մարտ պատերազմի առանց իրաւանց: Եւ պըղ-տորէին զմեծ աշխարհն Հայոց իշխանն Մանաւազեան տոհմին, և միւս ևս նահապետն Որդունւոց տոհմին: Կռուեցան ընդ միմեանս մեծաւ պա-տերազմաւ և բազում մարդկան լինէր ծախումն կոտորածոյ: Ապա առա-քեցին թագաւորն Խոսրով և մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս զպա-տուական զմեծ եպիսկոպոսն Աղբիանոս 'ի մէջ նոցա, խօսել 'ի հաշ-տութիւն խաղաղութեան: Երթեալ հասանէր 'ի մէջ նոցա երանելին Աղ-բիանոս, զնոսա ուղղել նուաճել՝ ընդ միմեանս հաշտեցուցանել: Անար-գեցին զնա, և ոչ լուան բարեխօսութեանն եկելոյն. անգոսնեցին զյղե-լիսն, և մեծաւ թշնամանօք արձակեցին զեպիսկոպոսն, և առնուին աւերէին զտունն արքունի: Եւ զայրացեալք խստութեամբ հապ-նէպ տային ընդ միմեանս մարտ պատերազմի: Ապա մեծ ցաս-մամբք և բազում սրտմտութեամբ արձակեաց թագաւորն 'ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ, զնահապետ Մամիկոնեան տոհմին՝ յազգէ սպարապետութեան Հայոց, զմեծ զօրավար զօրաց իւրոց, սա-տակել կորուսանել զազգն երկոսեան: Ապա երթեալ հասանէր 'ի վերայ նոցա զօրավարն Վաչէ. հարկանէր վա՛նէր զազգսն երկոսեան, և ոչ թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն և ոչ զմի.

և ինքն դառնայր առ արքայն Խոսրով թագաւորն Հայոց, և առ եպիսկո-պոսապետն Վրթանէս: Եւ ետ զաւանն և զբուն զահոյից զգեղն նահա-պետին Մանաւազենից եպիսկոպոսին Աղբիանոսի յեկեղեցի. զՄանա-ւազակերտ ամենայն սահմանօքն և գաւառակաւն հանդերձ՝ որ շուրջ զնոքօք էր, որ կայ ի՛ կողմանս գետոյն Եփրատայ: Եւ ետուն զբուն զգեղն Որդունւոց, որոյ անուն էր Որդորու. ուստի եպիսկոպոս Բասենու ամենայն սահմանօքն հանդերձ, որ ինքն իսկ է յերկրին Բասենու:

սովորեցան հավատը դեպի միասնական սուրբ Երրորդությունը՝ ապա նրանց մկրտում էր մոտ երկու հազար մարդ, չհաշված նրանց կանանց ու երեխաներին: Այսպես նրանց հավատի էր բերում և արձակում էր սրբված ու հավատացած:

## Դ

## ԵՐԿՈՒ ՏՈՀՄԵՐԻ՝ ՄԱՆԱՎԱԶՅԱՆՆԵՐԻ ԵՎ ՈՐԴՈՒՆԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՔ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԻՐԵՆՑ ՍԵՐՈՒՆԴՆԵՐՈՎ ԲՆԱՋԻՆՋ ԵՂԱՆ

Այդ ժամանակները մեծ խռովություն ծագեց Հայոց աշխարհում, որովհետև երկու մեծ նախարարներ ու իշխաններ, գավառների ու աշխարհների տերեր, իրար հետ ընկան, մեծ ոխակալությամբ կռիվ ծագեցրին և միմյանց հետ պատերազմում էին առանց իրավունքի և պղտորում էին Հայոց մեծ աշխարհը. մեկը Մանավազյան տոհմի իշխանն էր, իսկ մյուսը Որդունյաց տոհմի նահապետը: Սրանք մեծ պատերազմով կռվում էին, և շատ մարդկանց կոտորած էր լինում: Ապա Խոսրով թագավորը և Վրթանես մեծ եպիսկոպոսապետը Աղբիանոս պատվական մեծ եպիսկոպոսին ուղարկեցին նրանց մոտ, որպեսզի հորդորելով հաշտեցնե և խաղաղություն հաստատե, և երանելի Աղբիանոսը գնաց նրանց մոտ, որ համոզե, իրար հետ հաշտեցնե: (Բայց նրանք) նրան անարգեցին, նրա միջնորդությանը չլսեցին, նրան ուղարկողներին արհամարհեցին. եպիսկոպոսին մեծ անարգանքով հեռացրին և արքունական տունն առան ու ավերեցին, և կատաղաբար շարունակում էին պատերազմը միմյանց դեմ: Ապա թագավորը սաստիկ զայրանալով նրանց դեմ ուղարկեց Արտավազդի որդի Վաչեին, Մամիկոնյան տոհմի նահապետին Հայոց սպարապետության տոհմից, իր զորքերի մեծ զորավարին, որ գնա, այդ երկու ցեղը ոչնչացնե: Ապա Վաչե զորավարը գնում էր նրանց վրա. երկու տոհմն էլ ջարդում ոչնչացնում էր, երկու տոհմերից ոչ մի արու կենդանի չէր թողնում և ինքը վերադառնում էր Հայոց Խոսրով թագավորի և Վրթանես քահանայապետի մոտ: Եվ (թագավորը) Աղբիանոս եպիսկոպոսին տվեց հօգուտ եկեղեցու Մանավազյանների ավանը և նրանց նահապետի բուն աթոռանիստ գյուղը, (այսինքն) Մանավազակերտը յուր բոլոր սահմաններով և նրա շուրջն եղած գավառակով՝ Եփրատ գետի կողմերում: Իսկ Որդունիների բուն գյուղը, որ կոչվում էր Որդորու, յուր բոլոր սահմաններով, որ գտնվում է Բասենի երկրում, տվին Բասենի եպիսկոպոսին, որ Որդորու գյուղից էր[10]:

Ե

### ՎԱՍՆ ՈՐԴՒՈՑՆ ՎՐԹԱՆԱՅ, ՈՐՈՑ ԱՆՈՒԱՆՔՆ ԱՅՍ ԵՆ. ԱՌԱՋՆՈՅՆ ԳՐԻԳՈՐԻՍ, ԵՐԿՐՈՐԴԻՆ ՅՈՒՍԻԿ

Այս Վրթանէս և Արիստակէս որդիք էին մեծի քահանայապետին Գրիգորի, և էր Արիստակէս կուսան՝ սուրբ 'ի մանկութենէ. զի թեպէտ և կրսեր որդի էր, կանխաւ եհաս յաթոռ հայրենի եպիսկոպոսութեան: Իսկ Վրթանէս էր ամուսնացեալ և անորդի. և բազում ժամանակս խընդրէր նա յաստուծոյ, զի մի՛ զրկեսցի նա յօրհնութենէ զաւակի, այլ 'ի տեղւոյ նորա կացցէ առաջի նորա 'ի պաշտօն տեառն: Եւ 'ի ծերութեան նորա լուաւ տէր աղօթից նորա. յղացաւ ամուսին նորա և ծնաւ երկու որդիս երկուորեակս, և կոչեաց զանուն երիցուն յանուն հօր իւրոյ Գրիգորիս, և երկրորդին Յուսիկ: Որք սնան զառաջեաւ թագաւորին Հայոց, և ուսման գրոց փոյթ 'ի վերայ կալան ուսուցանել զնոսա: Ապա երէց որդին Գրիգորիս եհաս յեպիսկոպոսութիւն կողմանց Աղուանից և Վրաց, վասն հոգեկիր առաքինի արգասեացն, բարեհասակ, և զգիտութիւն աստուծոյ յանձին կրելով: Ոչ ամուսնացաւ նա, այլ 'ի հնգետասանամենից եհաս յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Վրաց և Աղուանից, այս ինքն սահմանացն Մազքթաց: Երթեալ նորոգեաց անդ զեկեղեցիսն լուսաւոր կարգօք, առաջնոյն Գրիգորի՝ հօրն գործոցն նմանեալ:

Իսկ զՅուսիկ սնուցանէր Տիրան որդի թագաւորին Խոսրովու. և ետ արքայորդին Տիրան զդուստր իւր կնութիւն Յուսկանն որդւոյ Վրթանիսի: Եւ մինչ դեռ մանուկն էր, յետ միանգամ յառաջնում գիշերին մտանելոյ՝ յղացաւ կինն: Եւ իսկ և իսկ ետես 'ի տեսլեանն՝ զի երկու էին մանկունքն, և ոչ հաճոյ 'ի պաշտօն տեառն աստուծոյ. և զղջացաւ զամուսնանալն: Լայր. և աղաչէր զաստուած, և ապաշխարէր մեծաւ տառապանօք: Եւ յամուսնանալն բռնադատեցաւ 'ի թագաւորէն իբրև զմանուկ, սակայն և այն ըստ աստուծոյ շնորհացն գործէր, զի որք առ յապայն և առնելոց էին 'ի նմանէ հովիւքն զխաւարք, որք յօգնում աշխարհին և 'ի շահ մշակութեան եկեղեցեաց յաւետարանական հրամանացն սպասաւորել: Այլ սակայն նա ըստ այն մի գիշերն այլ ոչ եմուտ առ կինն իւր. և ծնաւ կինն երկուորիս, որպէս և ետես 'ի տեսլեանն յառաջագոյն. և կոչեցին զանուն առաջնոյն Պապ, զերկրորդին Աթանագինէս:

Եւ յետ միոյ գիշերոյ 'ի կնոջն մերձենալոյ այլ ոչ ևս մերձեցաւ 'ի նա, վասն առաքինութեան մանկութեան. իբրև ոչ էր զամուսնութիւնն ինչ աղ-

Ե

ՎՐԹԱՆԵՍԻ ՈՐԴՈՑ ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՑ ԱՆՈՒՆՆԵՐՆ ԵՆ՝ ԱՌԱՋԻՆԻՆԸ ԳՐԻԳՈՐԻՍ, ԵՐԿՐՈՐԴԻՆԸ ՀՈՒՍԻԿ

Այս Վրթանեսը և Արիստակեսը Գրիգոր մեծ քահանայապետի որդիքն էին: Արիստակեսը կույս մնաց, մանկությունից ի վեր մաքուր, (ուստի և) ավելի վաղ նոր եպիսկոպոսական աթոռը նստավ, թեպետ և կրտսեր որդին էր: Իսկ Վրթանեսը ամուսնացած էր և անորդի էր: Նա երկար ժամանակ խնդրում էր աստծուց, որ չզրկվի զավակի օրհնությունից, այլ որ իր պտուղը տեսնե տիրոջ պաշտոնում: Եվ նրա ծերության ժամանակ տերը լսեց նրա աղոթքին— նրա կինը հղիացավ և ծնավ երկվորյակ, երկու տղա. մեծի անունը նա դրեց իր հոր անունով Գրիգորիս, իսկ երկրորդին Հուսիկ: Նրանք սնվեցին Հայոց թագավորի առաջ, և հոգ տարան նրանց գրագիտություն սովորեցնելու: Այնուհետև Գրիգորիսը, երեց որդին, որ վայելչակազմ, առաքինի անձն էր, հոգևոր արժանիքներով լի և աստվածային գիտության հմուտ՝ Վրաց և Աղվանից կողմերի եպիսկոպոսությունն ստացավ: Նա չամուսնացավ և արդեն տասնհինգ տարեկան հասակում հասավ եպիսկոպոսական աստիճանի Վրաց և Աղվանից աշխարհների վրա, այսինքն Մասքութների սահմանների: Այնտեղ գնալով նա եկեղեցիները նորոգեց լուսավոր կարգերով, առաջին Գրիգորի՝ իր պապի[11] գործերին նմանելով:

Իսկ Հուսիկին սնուցանում էր խորով թագավորի որդին Տիրանը. և արքայորդի Տիրանը իր դուստրը կնության տվեց Հուսիկին: Եվ մինչ դեռ մանուկ էր հասակով՝ մի անգամ առաջին գիշերը կնոջը մերձավորելիս կինը հղացավ: Նա իսկույն երազում տեսավ, թե երկու մանուկներ են (ծնվելու), որոնք արժանավոր չեն լինելու աստծու պաշտոնին, և զղջաց որ ամուսնացել է: Լալիս էր, աղաչում էր աստծուն, մեծ տառապանքով զղջանում էր: Նա, մանկահասակ լինելով՝ թագավորից բռնադատվեց ամուսնանալու: Բայց այս էլ կատարվում էր աստծու կամքով, որովհետև ապագայում նրանից պետք է առաջ գային գլխավոր հովիվներ, որոնք պետք է ավետարանական հրամաններին սպասավորեին հոգևոր աշխարհին և ի շահ եկեղեցիների: Բայց նա բացի այդ գիշերից այլև կնոջը մոտ չգնաց: Կինը ծնավ երկվորյակներ, ինչպես առաջուց տեսիլքում տեսել էր (Հուսիկը): Առաջինի անունը դրին Պապ, երկրորդինը Աթանագինես:

Եվ այն մի գիշերը կնոջը մերձենալուց հետո այլևս նրան չմերձեցավ՝ իր մանկական առաքինությամբ: Նա ոչ թե ամուսնությունը

տեղի համարէր, այլ կասկածէր նա 'ի տեսլենէն՝ զոր ետես, եթե ընդէ՛ր ընաւ 'ի նմանէ այնպիսի զաւակ անպիտան ծնանիցի: Քանզի ոչ երկրաւոր զաւակի ցանկացեալ էր, այլ այնպիսումն՝ որ 'ի սպասաւորութիւն սպասու պաշտաման ծառայութեան տեառն աստուծոյ կացցեն: Եւ զամենայն իսկ զերկրաւորս առ ոչինչ համարեալ, ոչ լաւ համարեցաւ զանցաւորս՝ այլ զվերինն. երկնակեաց կենացն ցանկացեալ հայէր: Լաւ համարէր զծառայելն միայն Քրիստոսի, անձին փառս համարէր. ոչ ինչ ածէր ընդ միտ զսեր թագաւորին կամ 'ի նմանէ կուսէ զպատուեալն, կամ զընդանութիւն փեսայութեան թագաւորին. այլ յայնմ ամենայնէ ուրացեալ հրաժարէր, և օտարոտիս և զարշելիս և պատրանս համարէր: Եւ յետ առաջնոյն այլ ոչ ևս խաբեցաւ երբէք ուրեք իբրև զմանուկ. այլ հայրական միտս զծերական հանճարոյն ստացեալ, զխրատն իմաստութեան անմահութեան: Լաւ համարեցաւ զնախատինսն Քրիստոսի, քան զմեծութիւն թագաւորացն. զնզունս վարուց ընտրեալ անձին իւրոյ, յերկոտասանամենից և 'ի վեր առաքինանայր: Որ փւոյ հարցն նմանեալ, և զեղբօրն իւրոյ Գրիգորի զօրինակ բերէր անձին իւրոյ. զՔրիստոսեան լուծն առանց ամենայն յապաղութեան ձգէր մինչև 'ի վախճան:

Բայց վասն զի թշնամանացեալ էր տուն թագաւորին ընդ նմա, և մինչ դեռ վասն այնորիկ զգուէին զնա աներք նորա, մեռաւ կին նորա, ազատեալ լինէր Յուսիկ 'ի բաներոյն[2]: Եւ մինչ նա հոգացեալ վասն իւր ծննդոց մնացելոց զաւակին, և վասն այսորիկ հոգալով կայր յաղօթս առ տէր, և երևեցաւ նմա հրեշտակ տեառն 'ի տեսլեանն, և ասէ ցնա. Յուսիկ, որդի Գրիգորի, մի՛ երկնչիր. զի լուաւ տէր աղօթից քոց, և ահա ծնցի 'ի քո զաւակացդ այլ զաւակ: Զի լիցին նոքա 'ի լուսաւորութիւն գիտութեան, և աղբեւրք հոգևոր իմաստութեան Հայաստան աշխարհիս: Եւ 'ի նոցանէ բղխեսցեն շնորհք պատուիրանացն աստուծոյ. և խաղաղութիւն բազում և շինութիւն և հաստատութիւն բազում եկեղեցեաց 'ի տեառնէ նոցա տացի, բազում յաղթութեամբ և մեծաւ զօրութեամբ. և բազում մոլեալք դարձցին 'ի ճանապարհս ճշմարտութեան. որով և Քրիստոս բազում լեզուօք փառաւորեսցի նոքօք: Որք սիւնք եկեղեցեաց լինիցին, և մատակարարք բանին կենաց, և հիմունք հաւատոց. պաշտօնեայք Քրիստոսի և արքանեակք հոգւոյն սրբոյ. զի ուստի հիմն իցէ շինուածոյն, և կատարն անտի լինիցի: Եւ բազում տունկք պտղաբերք և շայեկանք և օգտակարք 'ի հոգևոր դրախտին 'ի նոցա մշակութեանն աշոյն տնկեսցին և ընկալցին զօրհնութիւն յաստուծոյ: Իսկ որք ոչն կամիցին տնկել նոքօք, և 'ի նոյն հոգևոր ցօղոյն գիտութէնէ ըմպել,

աղտեղի բան էր համարում, այլ կասկածում էր իր տեսած տեսիլքից, թե ինչո՞ւ իրանից այնպիսի անպիտան զավակ պիտի ծնի: Որովհետև նա ցանկանում էր ոչ թե երկրավոր զավակի, այլ այնպիսիների, որոնք տեր աստծուն սպասավորեն, նրան ծառայելու պաշտոնը կատարեն: Նա առհասարակ ամեն երկրավոր բան ոչինչ չէր համարում. նա լավ էր համարում ոչ թե անցավորը, այլ վերինը, նա ցանկանում էր երկնային կյանքին: Նա գերադասում էր միայն Քրիստոսի ծառայել, որը իր համար փառք էր համարում: Նա անտես էր անում թագավորի սերը, նրանից գտած պատիվները, կամ իբրև փեսա՝ թագավորի հետ ընտանությունը. այս բոլորը նա ուրանում էր, նրանցից հրաժարվում էր, համարելով իրան համար օտար, զարշելի և պատրանք: Այն առաջին անգամից հետո այլևս ոչ մի անգամ չխաբվեց իբրև մանուկ, այլ հայրական միտք, ծերունու հանճար ստանալով իմաստնացավ դեպի անմահություն ձգտելու: Ավելի լավ համարեց Քրիստոսի համար նախատինքներ կրելը քան թագավորների մեծությունը, ընտրեց իր համար զսպված կյանք, և տասներկու տարեկան հասակից ապրում էր առաքինի վարքով: Նա նմանեց իր հայրերին, հետևեց իր եղբոր Գրիգորիսի օրինակին և Քրիստոսի լուծը մինչև իր կյանքի վերջը կրում էր առանց որևէ հապաղմունքի:

Բայց թագավորի տունը նրա հետ թշնամացել էր, և մինչ աներները այս բանի համար նրան զզվեցնում էին՝ կինը մեռավ, և Հուսիկը աներոջ ձեռից[12] ազատվեց: Եվ մինչ նա հոգս էր քաշում իր ծնած, (մորից որբ) մնացած զավակների մասին և այսպիսի մտահոգությամբ աղոթում էր աստծուն՝ տիրոջ հրեշտակը տեսիլքում նրան երևաց ու ասաց նրան. «Հուսի՛կ, Գրիգորի որդի, մի՛ վախենար, որովհետև տերը քո աղոթքներին լսեց, և ահա՛ քո այդ զավակներից կծնվին ուրիշ զավակներ[13], որոնք Հայաստան աշխարհիս լուսավորիչներ և հոգևոր իմաստության աղբյուրներ կլինին: Նրանցից կբղխեն աստծու պատվիրանների շնորհքներ. լիուլի խաղաղություն և շենություն, շատ եկեղեցիներ նրանցով կհաստատվին տիրոջ շնորհիվ՝ մեծ հաղթությամբ ու զորությամբ, շատ մոլորվածներ կդառնան դեպի ճշմարտության ճանապարհը, և նրանց շնորհիվ Քրիստոս կփառաբանվի շատ լեզուներով: Նրանք կլինին եկեղեցիների սյուներ, կյանքի խոսքի մատակարարներ, հավատքի հիմք, Քրիստոսի պաշտոնյաներ և ս. հոգու սպասավորներ, որպեսզի ինչով որ շինվածքը հիմնվել է՝ նրանով էլ կատարածին հասնի: Նրանց մշակող ձեռներով շատ պտղաբեր, շահավետ և օգտավետ տունկեր կտնկվին հոգևոր պարտեզում և աստծուց կօրհնվին: Իսկ որոնք որ չեն կամենա նրանց միջոցով

խոտան գտանիցին՝ մերձեալք յանէծս. և վաղճան նոցա լիցի այրումն հրոյն: Բազում անգամ վասն տեառն լինիցին նոքա 'ի հեռ և 'ի նախանձ յանարժանացն. այլ կացցեն 'ի հաւատս անշարժ իբրև զվէմ, և յաղթեսցեն նոցա համբերութեամբ բազմաւ: Եւ յետ նոցա թագաւորեսցէ ստութիւն յապարասան յանձնասէր յարծաթասէր 'ի մտախաբ յանպատսպարան յանպիտան 'ի սուտակ և ի՛ բանսարկու մարդկանէ. և ապա եթէ ոք գտցի՝ որ և արասցէ ունել զուխտ հաստատութեան հաւատոյ, հազիւ հազիւ: Եւ զայս ամենայն լուեալ մանուկն Յուսիկ 'ի հրեշտակէն, մխիթարութեամբ մեծաւ զոհանայր զտեառնէ աստուծոյ, որ արժանի արար զնա այսպիսի յայտնութեան պատասխանւոյն. և զամենայն աւուրս կենաց իւրոց զոհանայր ևեթ յամենայն ժամ անդադար:

Զ

ՅԱՂԱԳՍ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՂՃԱՆԻՆ

Այլ վասն Գրիգորի եպիսկոպոսի, որդւոյ Վրթանայ, եղբօրն Յուսկան, որ կաթողիկոսն էր կողմանցն Վրաց և Աղուանից, իբրև եկաց սա յիւրում պաշտամանն, մինչ դեռ մանուկն ևս էր, շինեաց նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, և ձգեցաւ 'ի գաւառակողմանցն Ատրպատականի: Քարոզ ճշմարտութեան հաւատոցն Քրիստոսի լինէր նա, և առաջի իսկ ամենեցուն էր սքանչելի և զարմանալի. խստագոյն ու դժուարագոյն անհամարք ծանրաբեռն վարուցն կրթութիւնք խստամբերութեանն, պահօք և արքութեամբ, տքնական հսկմամբ անձանձրոյթ աղօթիցն ջերմութեան առ տէր աստուած կանխելոյ վասն ամենայն մարդոյ: Զաւետարանական ընթացսն և զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ շնորհօքն աստուծոյ առանց պակասութեան տանէր. առաւել ևս փութայր, զուն[3] եղեալ յորդորելով զամենեսեան առ 'ի բարեացն քաջալերութիւն, զցայգ և զցերեկ պահօք և աղօթիւք և ուժգին[4] խնդրուածովք և բարձրակալ կատարման հաւատովքն՝ մերձաւորաց և հեռաւորաց զհոգևոր եռանդն ածէր. իբրև զպատերազմասէր նահատակ միշտ զանձն 'ի կրթութիւն և 'ի պատրաստութեան ունէր ամենայն փորձութեանց և վշտաց, առ 'ի տալ պատասխանի ամենայն համարձակութեամբ, վասն ճշմարտութեան հաւատոցն մարտնչել որ վասն Քրիստոսի:

Եւ իբրև ուղղեաց և նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն այնոցիկ, եհաս նա մինչև 'ի ճամբար բանակին Արշակունեաց արքային

տնկել և գիտության նույն հոգևոր ցողից առոգվել՝ նրանք կանիծվին ու դեն կշպրտվին, և նրանց վերջը կլինի (դժոխքի) կրակը: Նրանք շատ անգամ տիրոջ համար անարժաններից կողմից կենքարկվին թշնամանքի ու նախանձի, բայց վեմի նման հաստատ կմնան իրենց հավատում և մեծ համբերությամբ նրանց կհաղթեն: Նրանցից հետո կթագավորե ստությունը՝ անզուսպ, անձնասեր, արծաթասեր, խաբեբա, անվստահելի, անպիտան, ստախոս, բանսարկու մարդկանց ձեռքով, այնպես որ շատ քչերը կմնան, որ կարողանան հաստատ պահել հավատի ուխտը»:

Մանուկ Հուսիկը հրեշտակից այս ամենը լսելով՝ մեծ մխիթարությամբ գոհանում էր տեր աստծուց, որ իրեն արժանացրեց պատասխանի՝ այսպիսի բան հայտնելով, և իր կյանքի օրերում միշտ և հանապազ գոհություն էր մատուցանում:

## Զ

## ԳՐԻԳՈՐԻՍԻ ՎԱԽՃԱՆԻ ՄԱՍԻՆ

Վրթանեսի որդու, Հուսիկի եղբոր՝ Գրիգորիս եպիսկոպոսի մասին, որ Վրաց և Աղվանից կողմերի կաթողիկոսն էր: Երբ սա իր պաշտոնն ընդունեց՝ դեռ մանուկ հասակում շինեց և նորոգեց այն կողմերի բոլոր եկեղեցիները, մինչև Ատրպատականի կողմերի գավառները: Նա քարոզիչ էր լինում քրիստոնեական ճշմարիտ հավատին և ամենքին երևում էր սքանչելի ու զարմանալի՝ իր խստակյաց՝ անտանելի ճգնողական վարքով, պահեցողությամբ, մաքուր կյանքով, անքուն հսկումներով և անձանձրույթ ջերմ աղոթքներով առ տեր աստված՝ բոլոր մարդկանց համար: Նա աստծու շնորհքով անպակաս կատարում էր ավետարանական ընթացքը և սուրբ եկեղեցու վերակացությունը, ջանք էր անում, հորդորում, քաջալերում էր ամենքին դեպի բարին, գիշեր և ցերեկ պահքով և աղոթքներով, ուժգին խնդրվածքներով[14] ու կատարյալ հավատով մերձավորներին ու հեռավորներին հոգևոր եռանդ էր ներշնչում. իբրև մի քաջարի պատերազմող՝ միշտ իր անձը կրքում ու պատրաստ էր պահում ամեն տեսակ փորձությունների ու վշտերի, որպեսզի ամենայն համարձակությամբ կարողանա դուրս գալ կռվի՝ Քրիստոսի ճշմարիտ հավատի համար:

Եվ երբ այն կողմերի բոլոր եկեղեցիները կարգի բերեց ու նորոգեց՝ նա հասավ մինչև Մազքութների[15] Արշակունի թագավորի նամ-

Մազքթաց, որոյ անուն իւր Սանէսան կոչէր: Քանզի և նոցա և Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան: Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Մազքթաց, իշխանին բազմութեան զօրացն Հոնաց. և եկաց առաջի նոցա, սկսաւ քարոզել և աւետարանել նոցա զՔրիստոս: Ասէ ցնոսա՝ թէ ծաներո՛ւք զաստուած. լուան և ընկալան զառաջինն և հնազանդեցան: Ապա սկսան քննել զօրէնսն Քրիստոսի, և ուսան 'ի նմանէ՝ թէ ատելի է աստուծոյ աւարութիւն և յափշտակութիւն, սպանութիւն, ագահութիւն, այլազրկութիւն, զայլոցկերութիւն, ցանկութիւն այլոց ստացուածոց: Ապա այսպիսի իմն իրօք իբրև լուան, զայրացան ընդ բանս նորա և ասեն. Զի ոչ յափշտակեսցուք, զի ոչ աւարեսցուք, զի ոչ առցուք զայլոյ, ի՞ւ կեցցուք այսչափ անչափ զօրաց բազմութիւնք: Եւ թէպէտ թիւրաւոր բանիւք բարեօք կամէր հանել զսիրտս նոցա, ոչ ինչ կամէին ունկնդիր լինել, այլ ասէին ցմիմեանս. Եկեալ այսպիսի բանիւք կամի 'ի քաջութենէ որսոյն կենաց մերոց խափանել զմեզ. իսկ եթէ սմա լուիցուք և դարձցուք յօրէնս քրիստոնէութեան, ի՞ւ կեցցուք, զի ոչ յերիվար հեծցուք ըստ բնութեան օրինաց սովորութեանց մերոց: Այլ, ասէին, այս խորհուրդ Հայոց թագաւորին է. զսա յղել առ մեզ, զի այսու ուսմամբ խափանեսցէ զմեր արշաւանս ասպատակութեան հինի յաշխարհէն իւրմէ. այլ եկայք զսա պակասեցուսցուք 'ի միջոյ, և մեք 'ի Հայս արշաւեսցուք, աւարաւ զմեր աշխարհս լցցուք:

Ապա շրջեցաւ թագաւորն, և լուաւ բանից զօրացն իւրոց. և կալան ձի մի ամեհի, կապեցին կախեցին զմանուկն Գրիգորիս զագւոյ ձիոյն, և արձակեցին ընդ ծովեզեր դաշտին հիւսիսական ծովուն մեծի, արտաքոյ իւրեանց բանակին 'ի դաշտին Վատնեայ: Եւ այսպէս սպանին զառաքինի քարոզն Քրիստոսի զմանուկն Գրիգորիս: Եւ ապա բարձին զնա որք ընդ նմա երթեալ էին 'ի գաւառէն Հաբանդայ, և բերին 'ի գաւառն իւրեանց 'ի կողմանս Աղուանից 'ի սահմանս Հայոց 'ի Հաբանդ, 'ի գեօղն՝ որ անուանեալ կոչի Ամարազ: Եւ եդին զնա առ եկեղեցեաւն, զոր շինեալ էր առաջնոյն մեծին Գրիգորի, հաւուն Գրիգորիսի՝ քահանայապետին մեծի աշխարհին Հայաստան երկրին: Եւ ամ յամէ աշխարհաժողովուրդք 'ի մի վայր ժողովեալ կողմանցն այնոցիկ և աշխարհաց գաւառացն այնոցիկ, զսորա զօր տօնին զյիշատակ քաջութեան ցնծան:

բարը, որի անունն էր Սանեսան, որովհետև նրանք և Հայոց թագավորները նույն ծագումն ունեին, միևնույն տոհմից էին: Գնաց ներկայացավ Մասքութների թագավորին, Հոնաց բազմաթիվ զորքերի իշխանին, կանգնեց նրանց առաջ և սկսեց նրանց քարոզել Քրիստոսի ավետարանը, որպեսզի նրանք ճշմարիտ աստծուն ճանաչեն: Սկզբում նրանք ընդունեցին ու հնազանդեցան: Հետո սկսեցին քննել Քրիստոսի օրենքները և այդտեղից իմացան, թե աստծուն ատելի են ավարառությունը, ճափշտակությունը, սպանությունը, ագահությունը, ուրիշին զրկելը, ուրիշինը ուտելը, ուրիշների ստացվածքներին ցանկանալը: Երբ այս բաները իմացան՝ նրա խոսքերի վրա զայրացան ու ասացին. «Եթե մենք չճափշտակենք, եթե չթալանենք, եթե ուրիշների ունեցածը չխլենք՝ ապա ինչո՞վ պիտի ապրին այսքան բազմաթիվ զորքերս»: Եվ թեպետ նա բյուրավոր բարի խոսքերով կամենում էր նրանց միտքը ճանեցնել՝ նրան ոչ ոք չլսեց: Նրանք ասում էին միմյանց. «Սա եկել է մեզ քաջությունից զրկելու, մեր ապրուստի որսը խափանելու. եթե մենք սրան լսենք ու քրիստոնեական ճավատին դառնանք՝ ապա ինչո՞վ պիտի ապրենք, երբ մեր բնիկ սովորության ճամաձայն ձի չճեծնենք: Ոչ, ասում էին. սա Հայոց թագավորի խորճրդովն է. նա է, որ սրան ուղարկել է մեզ մոտ, որ այս կրոնով խափանե մեր ավարառության արշավանքները իր աշխարճից: Եկեք սրան միջենճան անենք ու արշավենք Հայաստան, ավարով մեր աշխարճը լցնենք»:

Թագավորը լսեց իր զորքի խոսքերին ու միտքը փոխեց: Ապա բռնեցին մի ամեճի ձի, մանուկ Գրիգորիսին կապեցին ու կախեցին ձիու պոչից և ձին վեր վարեցին ճյուսիսային մեծ ծովի եզերքի դաշտում, Վատնյա դաշտում, իրանց բանակից դուրս: Եվ այսպես սպանեցին Քրիստոսի առաքինի քարոզողին, մանուկ Գրիգորիսին: Ապա այն մարդիկ, որոնք Հաբանդ գավառից գնացել էին նրա ճետ՝ վերցրին նրա մարմինը և բերին իրենց գավառը Հաբանդ, Աղվանից կողմերում Հայաստանի սաճմանում, Ամարազ կոչված գյուղը: Նրան թաղեցին այն եկեղեցուն մոտ, որ շինել էր Գրիգորիսի պապը առաջին Գրիգորը, Հայաստան աշխարճի մեծ քաճանայապետը: Եվ ամեն տարի այդ կողմերի ու գավառների ժողովուրդն այդտեղ ժողովվելով նրա քաջության ճիշատակի տոնը կատարում են ցնծությամբ:

Է

## ՅԱՂԱԳՍ ՄԵԾԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՀԻՆԻՆ ԵԿԵԼՈՑ ՅԱՐՇԱՒԱՆԱՑ ԱՐՔԱՅԻՆ ՄԱԶՔԹԱՑ ՅԱՇԽԱՐՀ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ. ԵՒ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՍԱՏԱԿԵՑԱՒ ՆԱ ԵՒ ԶՕՐՔՆ ԻՒՐ

Յայնմ ժամանակի թագաւորն Մազքթաց Սանէսան անհնարին նեղեաց զարտմտութիւն ոխութեան ընդ իւրում ազգակցին Խոսրովու արքային Հայոց, և գումարեաց ժողովեաց զամենայն զօրս Հոնաց և Փոխաց, Թաւասպարաց, Հեճմատակաց, Իժմախաց, Գաթաց, և Գղուարաց, Գուգարաց, Շիճբաց և Ճղբաց և Բաղասճաց և Եգերսուանացն, և այլոց խառնաղանճ բազմութեամբ անթիւ անբնակն վաչկատուն զօրութեանց, որում միանգամ ինքն իշխէր զօրացն բազմաց: Եկն անց ըստ իւր սահմանն ընդ գետն մեծ ընդ Կուր, և եկն տարածեցաւ ելից զերկիրն Հայոց աշխարհին: Եւ թ չգոյր թիւ բազմութեանն հեծելազօր գնդացն, և ոչ համար չերտաւոր հետևակ զօրուն. զի և ինքեանք զինքեանս զիւրեանց զօրսն թուել ոչ կարէին: Բայց ուր լինէր հանդէս, 'ի նշանաւոր տեղիս գնդի գնդի, դրօշու դրօշու, վաշտոց վաշտոց, յերևելի երևելի տեղեաց՝ մէն մի բռնաքար առ այր հրամայէին, զի բերցեն ընկեսցեն՝ շեղջ կուտել. զի որչափ լիցի, այնու երևեսցի նշանակ բազմութեանն, առ իմանալ վառ վաղիւ անցելոց իրացն անհաւորութեան նշանակ: Եւ ընդ որ միանգամ անցանէին, այսպէս թողուին յամենայն ճանապարհակիցս, 'ի վերայ անցից պողոտայից: Եւ ելին լցին ծածկեցին զամենայն երկիրն Հայոց. քանդեցին, գերեցին առ հասարակ աւերեցին. սփռեցան տարածեցան զսահմանօք, լի և լի ծաւալեցան մինչև 'ի փոքր քաղաքիկն Սատաղու, և մինչև 'ի Գանձակ սահմանս ատրպատականն. խաղացուցին 'ի մի վայր ժողովեցին, 'ի ժամադիր կողմանս յայրարատեան գաւառին քանակ մեծ լինէր:

Եւ խոյս ետ թագաւորն Հայոց Խոսրով յիւրմէ եղբարցն, նոյն 'ի Սանէսանայ յարքայէն Մազքթաց. և անկան յամուր բերդն Դարեւնից[5] յերկիրն Կովգայ[6], և ընդ նման ծերունին Վրթանէս եպիսկոպոսապետն Հայոց: Ապա առնուին պահս պահել, և խնդրել յաստուծոյ զի փրկեսցէ զնոսա յայնմ 'ի դառն դահճէն, և սկսան խնդրել 'ի տեառնէ աստուծոյ: Եւ նա ծածկեալ բռնացեալ ունէր զերկիրն առ հասարակ իբրև տարի մի: Ապա եկն եհաս Վաչէ որդի Արտաւազդայ 'ի Մամիկոնէն տոհմէն, զօրավար ամենայն Հայոց մեծաց: Զի երթեալ էր նա 'ի ժամանակին յայնմիկ զերկայն ճանապարհս 'ի կողմանս Յունաց: Ապա ժողովեաց նա զամենայն քաջս քաջս նախարարացն, և գունդ կազմէր բազում յոյժ. և հասանէր անկանէր 'ի վերայ բանակին, յառաւօտուն ժամուն

է

## ՄԱՍՔՈՒԹՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐԻ ՀԻՆԱԿԱՆ ԱՍՊԱՍԱԿԸ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ
ՄԱՍՔՈՒԹՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐԻ ՀԻՆԱԿԱՆ ԱՍՊԱՍԱԿԸ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ
ԻՆՉՊԵՍ ՆԱ ՋՈՐՔՈՎ ՄԻԱՍԻՆ ԿՈՏՈՐՎԵՑ

Այն ժամանակ Մասքութների Սանեսան թագավորը սաստիկ բարկանալով թշնամացավ իր ազգակից՝ Հայոց Խոսրով թագավորի հետ, և ժողովեց գումարեց բոլոր զորքերը[16]—Հոներ, Փոխեր, Թավասպարներ, Հեճմատակներ, Իժմախներ, Գաթեր, Գղվարներ, Գուգարներ, Շչբեր, Ճղբեր, Բաղասիճներ, Եգերսվաններ և այլ խառնիճաղանճ թափառական վաչկատուն ցեղերի անթիվ բազմություն, որոնց առհասարակ ինքն էր իշխում: Եկավ անցավ իր սահմանը, մեծ Կուր գետը, ու սփռվեց ու լցրեց Հայոց աշխարհը: Թիվ չկար նրա հեծյալ զնդերի բազմության և ոչ հաշիվ կոպալավոր հետևակ զորքի, որովհետև իրենք էլ չէին կարողանում իրենց զորքը համարել: Բայց երբ մի նշանավոր երևելի տեղ էին հասնում և հանդես էին կազմում ըստ գնդերի, դրոշակների և վաշտերի՝ հրամայում էին որ ամեն մի մարդ մի ձեռքի քար բերեն, մի տեղ ածեն, կույտ կազմեն, որպեսզի ինչքան որ լինի՝ նրանով էլ հասկացվի բազմության չափը, և ապագայի համար մնա անցած օրերի այս ահավոր նշանը: Եվ որտեղից որ անցնում էին՝ այսպիսի նշաններ էին թողնում ճանապարհների խաչվող տեղերում, պողոտաների վրա: Նրանք եկան, լցվեցին, Հայոց ամբողջ երկիրը ծածկեցին. քանդեցին, գերեցին, միանգամայն ավերեցին, երկրի բոլոր սահմաններում ծավալվեցին մինչև Սատաղու փոքրիկ քաղաքը, մինչև Գանձակ՝ Ատրպատականի սահմանում: (Ավարն ու գերիները) բերին մի սահմանված տեղ ժողովեցին Այրարատյան գավառում, որտեղ մեծ բանակ էր կազմված:

Եվ Հայոց Խոսրով թագավորը խույս տվեց իր եղբորից[17], այսինքն Մասքութների Սանեսան թագավորից, և գնաց Կողբի[18] երկիրը, ընկավ ամուր Դարեոնք բերդը: Նրանց հետ էր նաև Հայոց ծերունի եպիսկոպոսապետը, Վրթանեսը: Այնտեղ նրանք սկսեցին պահք պահել և աստծուց խնդրել, որ նրանց փրկե այն դառն դահճից, այս էին խնդրում տեր աստծուց: Իսկ նա գրեթե մի տարի բռնացել, գրավել էր ամբողջ երկիրը:

Այս ժամանակ եկավ հասավ Մեծ Հայքի զորավար Վաչեն, Արտավազդի որդին, Մամիկոնյան տոհմից, որ այդ ժամանակ երկար ճանապարհորդություն էր կատարել Հոնաց կողմերը: Նա ժողովեց նախարարներից քաջերին, խիստ բազմամարդ գունդ կազմեց և հար-

այգենայոյն պաշտամանն. զի բանակեալ էին նոքա 'ի լերինն՝ որ կոչի Ցլու գլուխ. և առ հասարակ ընդ սուր հանին զամենեսեան, և ոչ մի ոչ ապրեցուցանէր, և դարձուցանէր զբազմութիւն գերեացն: Եւ յետ այսորիկ առնոյր զաւարսն, խաղայր գնայր երթայր իջանէր 'ի դաշտն Այրարատեան գաւառին. երթայր զտանէր զՍանէսան թագաւորն Մազքթաց բուն գնդաւն, անթիւ անհամար զօրօքն հանդերձ 'ի Վաղարշապատ քաղաքի: Առեալ զգունդն Վաչէ, և յանկարծակի յարձակեցաւ 'ի վերայ քաղաքին, և մատնեաց զնոսա տէր 'ի ձեռս նորա:

Եւ իբրև տեսին զնա յարձակեալ 'ի վերայ իւրեանց, փախեան եկին 'ի քաղաքէ անտի յառապարն 'ի կողմն Յօշական բերդին. և զանապատն և զքարուտ տեղիսն ապաւէն իւրեանց համարեցան. և լինէր սաստիկ պատերազմ յոյժ յոյժ: Եւ նիզակակիցք զօրավարին Հայոց, որ էին Բագրատ Բագրատունի, Մեհունդակ և Գարեգին Ռշտունիք, և Վահան[7] Նահապետն Ամատունեաց տոհմին, և Վարազ կամինական, հասանէին հարկանէին սատակէին զօրսն Ալանացն և Մազքթացն և Հոնացն և զայլոց ազգացն, և լնուին զդաշտն առապարացն առ հասարակ դիակամբք մեռելոց. մինչ զի իբրև զգետ յարուցեալ երթայր արիւնն անհնարին, և ոչ լինէր թիւ զօրացն մեռելոց: Եւ զմնացեալսն սակաւս առաջի իւրեանց հալածականս տանէին մինչև յաշխարհն Բաղասնաց, և զգլուխն Սանէսանայ մեծի թագաւորին եկին բերին առաջի արքային Հայոց: Սակայն իբրև ետես, լալ սկսաւ. ասէ. Եղբայր իմ էր ազգաւ Արշակունի: Ապա եկեալ արքայն 'ի տեղի ճակատուն, և ընդ նմա մեծ եպիսկոպոսապետն Հայոց. և տեսին զկոտորածն զօրացն հարելոց, զի ծածկէր երկիրն 'ի նոտոյ մեռելոցն: Ապա ետուն հրաման՝ Գուզազ հանել յաշխարհէ, և անդէն ծածկել քառակարկառ վիմօք, զի մի՛ 'ի չարաւոյ հոտոյն մեռելոտի ոսկերացն երկիրն պղծեսցի: Եւ դադարեաց երկիրն 'ի խաղաղութեան ամս հարուստ մի. և այսպէս վրէժ սրբոյն Գրիգորիսի խնդրեցաւ 'ի թագաւորէն Սանէսանայ և 'ի բանակէ նորա. զի ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի:

## Ը

### ՅԱՂԱԳՍ ՄԱՅՐԵԱՑՆ ՏՆԿԵԼՈՅ, ԵՒ ՎԱՍՆ ՊԱՏԵՐԱԶՄԱՑՆ ԸՆԴ ՊԱՐՍ. ԵՒ ՎԱՍՆ ԱԶԳԱՀԱՏՈՒԹԵԱՆ ՅՈՀՄԻՆ ԲԶՆՈՒՆԵԱՑ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԵԱՆ

Եւ իբրև առ ժամանակ մի խաղաղացաւ երկիրս Հայոց, ապա ետ հրաման թագաւորն Հայոց Խոսրով, տալ պարգևս արանցն քաջացն՝ որ

ձակվեց (Սանեսանի) բանակի վրա լուսադեմին (եկեղեցական) պաշտոն կատարելու ժամանակ: Նրանք բանակ էին դրել Ցլու գլուխ կոչված քառան վրա: (Վաչեն) նրանց բոլորին սրի անցկացրեց, ոչ մեկին կենդանի չթողեց և գերիների ողջ բազմությունը ետ դարձրեց: Հետո ժողովեց ավարը և գնաց իջավ Այրարատյան գավառի դաշտը: Այնտեղ նա Վաղարշապատ քաղաքում գտավ Մասքութների Սանեսան թագավորին բուն գնդի հետ, որ անհամար բազմություն էր կազմում: (Վաչեն) հանկարծակի հարձակվեց քաղաքի վրա, և տերը նրանց նրա ձեռքը մատնեց:

Երբ թշնամիները տեսան նրա հարձակումն իրենց վրա՝ քաղաքից դուրս եկան, փախան դեպի առապարը, Օշական բերդի կողմը, ապավինելով այն անապատին ու քարքարոտ տեղերին: Սաստիկ մեծ պատերազմ եղավ: Եվ Հայոց զորավարի նիզակակիցները, որ էին Բագրատ Բագրատունին, Մեհունդակ և Գարեգին Ռշտունիները և Ամատունյաց տոհմի նախարար Վահանը և Վարազ Կամսարականը, հասնում զարնում ջարդում էին Ալանների, Մասքութների, Հոների և մյուս ազգերի զորքերը և ամբողջ առապարի դաշտը լցնում էին մեռածների դիակներով, այնպես որ արյունը գետի նման առատ հոսում էր, և թիվ չկար սպանված զորքերին: Սակավաթիվ մնացորդներին էլ առաջ խառնելով հալածում էին մինչև Բաղասականների աշխարհը: Սանեսան մեծ թագավորի գլուխն էլ բերում էին Հայոց թագավորին: Իսկ նա երբ տեսավ՝ սկսեց լալ ու ասաց. «Իմ եղբայրն էր, Արշակունի ցեղից»: Այնուհետև թագավորը Հայոց մեծ եպիսկոպոսապետի հետ եկավ նահատամարտի տեղը: Տեսան սպանված զորքերի կոտորածը. մեռածների հոտից երկիրը լցվել էր գարշահոտությամբ: Հրաման տվին՝ աշխարհից զուգազ[19] հանել, դիակները թաղել, վրան քարերով ծածկելով, մի գուցե երկիրը ապականվի մեռելների գարշահոտ շարավից: Երկիրը խաղաղացավ բավական տարիներ: Այսպես սուրբ Գրիգորիսի վրեժը առնվեց Սանեսան թագավորից և նրա բանակից, որովհետև նրանցից ոչ մեկը չմնաց:

### ՄԵՐԻՆԵՐԸ ՏՆԿԵԼԸ, ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ՀԵՏ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ ԵՎ ԲԶՆՈՒՆՅԱՑ ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՏՈՀՄԻ ՍԵՐՀԱՏՎԵԼԸ

Երբ Հայոց երկիրն այդ ժամանակ խաղաղացավ՝ ապա Հայոց Խոսրով թագավորը հրամայեց պարգևներ տալ այն քաջ մարդկանց,

վաստակեցին նմա, և փոխանակեցին զանձինս իւրեանց փոխանակ աշխարհին Հայոց մեծաց յամենայն 'ի մարտ ճակատուցն պատերազմաց: Եւ ետ Վաչէի զօրավարի զականս Ջանջանակին և զՋրաբաշխիս և զՑլու գլուխ, ամենայն զաւառակօքն հանդերձ. նոյնպէս և այլոց նախարարացն մեծամեծ պարգևս: Եւ ետ հրաման թագաւորն զօրավարին իւրոյ՝ հանել խաշար յաշխարհէն բազում, և բերել զվայրենի կաղին մայրեաց, և տընկել զայն յԱյրարատեան գաւառին. և առեալ յամուր բերդէն արքունի, որում կոչեն Գառնի, մինչև 'ի դաշտն Մեծամօրի 'ի բլուրն՝ որ անուանեալ կոչի Դուին, որ կայ 'ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի Արտաշատու, զգետն խոնարհ մինչև յապարանսն Տիկնունի՝ տնկեցին զկաղնին: Եւ կոչեաց զանուն նորա Տաճար մայրի: Եւ միւս 'ի մայրեացն յեղէգնաբերանին 'ի նմանէ 'ի հարաւակոյս լցին զդաշտն կաղնատուն տնկով. և կոչեցին զանուն նորա Խոսրովակերտ: Եւ անդ շինեցին զապարանսն արքունականս, և զերկոսեան տեղիսն պարսպեալ փակեցին. և ոչ կցեցին 'ի միմեանս վասն պողոտայի ճանապարհին: Եւ աճեաց բարձրացաւ. և ապա զամենայն էրէս և զգազանս հրամայեաց ժողովել թագաւորն, և լնուլ զքաղաքորմսն, զի լիցին նոցա տեղիք որսոց զբօսանաց ուրախութեան թագաւորութեան նորա: Եւ զօրավարն Վաչէ կատարէր վաղվաղակի զասացեալսն արքայի:

Եւ մինչդեռ նա յայնմ գործ զմայրեօքն տնկելովք էր, յանկարծակի գուշակ հասանէր առ Խոսրով 'ի Հէր և ի' Զարաւանդ գաւառ, թէ պատրաստեալ են զօրքն Պարսից գալ հասանել 'ի գործ պատերազմի 'ի վերայ քո: Ապա հրաման ետ արքայ Խոսրով Դատաբայ նահապետի Բըզնունեաց, գումարել հանել յաշխարհէ աւելի քան զչափն և զհամար զօրսն մատենիկ գնդաւն ընդ առաջ նոցա խաղալ հասանել 'ի դիմի հարկանել, արգելուլ զթշնամիսն: Ապա Դատաբէն երթայր ընդ առաջ զօրացն Պարսից բազմութեամբ զօրօքն Հայոց: Իբրև հասանէր Դատաբէն, խորհուրդ միաբանութեան դնէր ընդ իշխանսն զօրացն Պարսից. կամեցաւ մատնել 'ի ձեռս նոցա զարքայն Հայոց զտէրն իւր, դարան հրամայեաց գործել թշնամեացն 'ի վերայ իւրոց զօրացն, և անդրէն սուր ետ դնել 'ի վերայ իւրոց զօրացն: Յանկարծ յեղակարծումն տարակարծի՝ քառասուն հազար զօրսն Հայոց միանգամայն կոտորէին, և այլ զօրքն փախստական լինէին. և Դատաբէն չարագործ առնոյր զօրսն Պարսից, և կամէր անկանել 'ի վերայ թագաւորին Հայոց: Ապա փախըստականք զօրացն վաղ հասանէին 'ի բանակ արքային Հայոց, գոյժ առնել զանհնարին կործանումն իւրացն եղելոց, զչարագործութիւն մատնութեանն անօրէն Դատաբենայ:

սրանք նրա համար աշխատեցան և պատերազմի ճակատամարտերում իրենց անձը դրին Մեծ Հայքի աշխարհի համար: Նա Վաչե զորավարին տվեց Ջանչանակի ակունքները, Չրաքաշխը և Ցլու գլուխը բոլոր փոքր գավառներով, նույնպես և մեծամեծ պարգևներ մյուս նախարարներին:

Եվ հրաման տվեց թագավորն իր զորավարին՝ աշխարհից բազմաթիվ մշակներ[20] հավաքել, անտառներից վայրի կաղին հանել ու բերել տնկել Այրարատյան գավառում, սկսելով արքունի ամուր բերդից, որին ասում են Գառնի, մինչև Մեծամորի դաշտը, այն բլուրը, որ կոչվում է Դվին[21] և գտնվում է Արտաշատ մեծ քաղաքի հյուսիսային կողմում: Եվ այսպես մերի տնկեցին գետի ընթացքով դեպի ներքև, մինչև Տիկնունի ապարանքը: Նա այս մերին կոչեց Տանար մայրի: Մի ուրիշ մերի էլ տնկեցին նրանից դեպի հարավ, եղեգնուտի եզերքով, և ամբողջ դաշտը լցրին կաղնի տնկով. սրա անունն էլ դրին Խոսրովակերտ: Նույն տեղում շինեցին նաև արքունական ապարանքներ: Երկու մերիներն էլ պարիսպներով փակեցին, առանց իրար հետ կցելու, անցուդարձի ճանապարհի համար: (Մերին) աճեց ու բարձրացավ: Հետո թագավորը հրամայեց ամեն տեսակ երեներ ու գազաններ ժողովել ու լցնել պարսպապատված տեղերը, որպեսզի նրա թագավորության որսի՝ զբոսանքի և ուրախության տեղեր դառնան: Վաչեն անմիջապես կատարեց թագավորի ասածները:

Եվ մինչ Խոսրով զբաղված էր մերիները տնկելով՝ հանկարծ լուր հասավ նրան Հեր ու Զարավանդ գավառից[22], թե Պարսից զորքերը պատրաստվում են պատերազմով քեզ վրա գալու: Խոսրով թագավորը հրաման տվեց Բզնունյաց Դատաբե նահապետին՝ աշխարհից զուգազ հանել անչափ և անհամար, և մատենիկ գնդի[23] հետ միասին դուրս գալ թշնամու առաջ, դիմադրել, նրա առաջն առնել: Եվ Դատաբեն գնաց Պարսից զորքին ընդառաջ Հայոց զորքի բազմությամբ: Երբ Դատաբեն հասավ՝ Պարսից զորքերի մեծերի հետ միաբանեցավ, միտքը դնելով նրանց ձեռքը մատնել Հայոց թագավորին, իր տիրոջը: Նա թշնամիներին հրամայեց դարան սարքել իր զորքի դեմ և թշնամու սրերին մատնեց իր զորքը: Հանկարծ՝ անսպասելի կերպով (հարձակվում) կոտորում էին Հայոց քառասուն հազար զորքը, և մյուս զորքը դիմում էր փախուստի: Իսկ չարագործ Դատաբեն առնում էր Պարսից զորքը և կամենում էր Հայոց թագավորի վրա հարձակվել: Փախստական զորքերն ավելի վաղ հասնում էին Հայոց թագավորի բանակը, գուժում էին պատահած սարսափելի կործանումը, անօրեն Դատաբենի մատնության չարագործությունը:

Ապա անկանէր թաւալէր խնդրէր յաստուծոյ բազում պաղատանօք և ուժգին արտասուօք բազմաց Հայոց խօսրով հանդերձ Վրթանաւ քահանայապետիւն: Եւ յետ այսորիկ անապարէր կուտէր զօրսն առ ինքն իբրև երեսուն հազար, հանդերձ զօրավարաւն Վաչէիւ. զայր հասանէր ընդ առաջ նոցա, ամենայն ապագախումբ մեծամեծ նախարարօք իւրովք: Եւ դիպեցան միմեանց առ ափն ծովուն Բզնունեաց, յԱռեստն աւանի, 'ի ձկնատեսանն արքունի 'ի վերայ գետակին: Եւ տեսին զօրսն Պարսից, զի ոչ գոյր թիւ բազմութեանն. զի էին իբրև զաստեղս երկնից, և իբրև զաւազ առ ափն ծովու. զի եկեալ էին անթիւ փղօք և անչափ զօրօք: Եւ սոքա հասին անկան 'ի վերայ բանակին, յուսացեալք առ աստուած. հարին, սատակեցին, կոտորեցին և ոչ թողին 'ի նոցանէ և ոչ մի: Եւ թափէին աւար բազում, և զփիղսն և զամենայն ոյժ զօրութեան նոցա: Զերբակալ արարեալ զԴատաբէնն Վաչէ սպարապետն և քաջ Վահան ամատունի, ածէին զնա առաջի մեծի թագաւորին Խոսրովու, և քարկոծ առնէին զնա քարամբ իբրև զայր, որ աշխարհի և գնդի և զօրաց տեառն իւրոյ դաւաճան լեալ իցէ: Եւ զազգ նորա և զկին և զորդիս գտանէր յամրոցի անդ իշխանին ըՌշտունեաց յանուանեալն յԱղթամար կղզւոջ. 'ի նաւ եւեալ Վաչէ սպարապետն, անցեալ 'ի կղզին՝ առ հասարակ ոչ զէգ թողոյր և ոչ զարու: Եւ այսպէս բարձաւ ազգատոհմ նախարարութեանն այնորիկ. և զտուն նոցա յարքունիս կալան:

Բայց յետ այսորիկ ոչ դադարէին Պարսք 'ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային. և նա դնէր օրէնս, զի մեծամեծ ապագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն՝ որ էին բիւրաւորքն և հազարաւորքն, կայցեն առ արքային, և ընդ նմա շրջեսցին, և մի՛ ոք երթիցէ 'ի նոցանէ ընդ զօրս արքունի: Զի երկնչէր նա յերկմտութենէ նոցա, զի գուցէ զնոյն գործ Դատաբենայն գործիցեն, և այսպէս լինիցին 'ի նմանէ: Բայց վստահ լինէր 'ի ձեռունին Վաչէ, 'ի բուն սպարապետն 'ի զօրավարն Հայոց մեծաց, և 'ի քաջ Վահան յԱմատունի: Գումարէր զօրսն ամենայն տանցն ապագանոյն ընդ զօրսն արքունի, և տայր զգումարտակն ամենայն 'ի ձեռս նոցա. և հանապազ կային 'ի քաջութեան 'ի մարտ պատերազմի 'ի սահմանս Պարսից. և ոչ տային անխտիր արշաւել աւերել զերկիրն Հայոց, և ոչ նայել: Եւ կայր արքայ 'ի հանգստի, և աշխարհ 'ի շինութեան և 'ի խաղաղութեան զամենայն աւուրս կենաց նոցա:

Այն ժամանակ Հայոց Խոսրով թագավորը Վրթանես քահանայապետի հետ թավալվում էր գետին, մեծ պաղատանքով, ջերմ արտասուքներով աստծուց (օգնություն) էր խնդրում: Սրանից հետո փութով հավաքում էր իր մոտ զորքերը, մոտ երեսուն հազար մարդ, Վաչե զորավարի հետ, և (թշնամու) դեմ էր գնում բոլոր իր ավագ նախարարների հետ միասին: Նրանք իրար հանդիպեցին Առեստ ավանում, փոքր գետակի վրա արքունական ձկնորսարանում[24]: Տեսան Պարսից զորքի անհամար բազմությունը՝ ինչպես երկնքի աստղերը և ինչպես ավազ ծովի ափին, որովհետև եկել էին անթիվ փղերով և անչափ զորքով: Իսկ սրանք հասան, հարձակվեցին նրանց բանակի վրա, աստծուն հուսալով. զարկին, կոտորեցին, ոչնչացրին. մեկին էլ կենդանի չթողին: Եվ մեծ ավար խլեցին նրանցից և փղերը և նրանց զորության բոլոր ույժը: Նաև Դատաբեհին Վաչե սպարապետը և քաջ Վահան Ամատունին ձերբակալեցին և բերին Խոսրով մեծ թագավորի առաջ. նրան քարերով քարկոծեցին իբրև մի մարդու՝ որ դավաճանել է իր աշխարհին և իր տիրոջ գնդին ու զորքերին: Նրա տոհմը, կինը և որդիքը գտնվում էին Ռշտունյաց իշխանի ամրոցում, Աղթամար կոչված կղզում: Վաչե սպարապետը նավ նստեց ու կղզին մտնելով ո՛չ էգ թողեց և ոչ արու: Այս կերպով այդ նախարարական տոհմը ոչնչացավ, և նրա տունը (կալվածները) արքունիք գրավվեց:

Բայց սրանից հետո էլ պարսիկները չէին դադարում Խոսրով թագավորի հետ պատերազմելուց: Եվ նա օրենք սահմանեց, որ մեծամեծ ավագանին, աշխարհակալ՝ աշխարհատեր նախարարները, որոնք բյուրավոր և հազարավոր (զինվորների տեր էին)[25], թագավորի մոտ մնան և նրա հետ շրջին, և նրանցից ոչ ոք չգնա արքունի զորքի հետ: Որովհետև նա վախենում էր նրանց երկմտությունից, մի գուցե Դատաբեհի նման վարվին և իրանից ապստամբին: Բայց նա վստահ էր ծերունի Վաչեի, Մեծ Հայքի բուն սպարապետի և զորավարի և քաջ Վահան Ամատունու վրա: Բոլոր ավագ նախարարական տների զորքերը գումարում էր արքունի զորքերի հետ և ամբողջ գումարտակը տալիս էր *սրանց ձեռքը*, և *սրանք շարունակ քաջաբար պատերազմում* էին Պարսից սահմաններում և թույլ չէին տալիս դյուրությամբ մտնել ու ավերել Հայոց երկիրը[26]: Եվ թագավորը հանգստություն էր վայելում, աշխարհը շեն ու խաղաղ էր նրանց կյանքի բոլոր օրերում:

Թ

## ՅԱՂԱԳՍ ԲԱԿՈՒՐ ԲԴԵՇԽԻՆ՝ ՈՐ ԱՊՍՏԱՄԲԵԱՑ ՅԱՐՔԱՅԷՆ ՀԱՅՈՑ. ԵՒ ՓՈԽԱՆԱԿ ՆՈՐԱ ԼԻՆԷՐ ԲԴԵՇԽ ՎԱՂԻՆԱԿ

Զայնու ժամանակաւ ապստամբեաց յարքայէն Հայոց մի 'ի ծառայից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեաշխն. որ էր մի 'ի չորից գահէրէց բարձէրէց տաճարին արքունի: Ետ ձեռս յարքայն Պարսից. և մատնեաց զարքունի տունն, որ յեց յինքն էր: Եւ էած զօրս արքային Պարսից 'ի թիկունս իւր, և հատաւ յերկրէն յիշխանութենէն Հայոց, և տայր պատերազմ ընդ արքային Հայոց՝ ուժով Պարսից թագաւորութեանն. և սաստկանայր մարտ պատերազմին: Ապա առաքէր թագաւորն Հայոց զբարեկիր զծառայս իւր, զիշխանն Կորդուաց զՋոնն, և զիշխանն մեծի Ծոփաց զՄար, և զիշխանն Ծոփաց Շահէի Ներսեհ, և զիշխանն Սիւնեաց զՎաղինակ, և զիշխանն՝ Հաշտենից զԴատ, և զիշխանն Բասենոյ զՄանակ, հանդերձ բազում զօրօք: Ապա չոգան յաղթեցին զօրացն Պարսից, և առ հասարակ ընդ սուր հանին զամենայն. և սպանին զբդեաշխն, եղբարբք և որդւովք իւրովք հանդերձ: Բայց զաղջիկ մի զդուստր նորածին, և զգլուխն Բակուր բդեշխին բերին առ արքայ: Եւ իբրև այլ ոք ոչ էր մնացեալ յազգէն, ետ արքայ զաղջիկն կնութիւն սիրելւոյն արքայի Վաղինեկայ սիւնւոյ, և զտունն Աղձնեաց. և արար զնա բդեաշխ և պայազատ տան նորուն: Ժառանգն բազմացաւ, և հանդերձ աշխարհաւն և ամենայն ուժովն կայր բդեաշխն Վաղինակ 'ի ծառայութեան արքային հանապազ: Բայց յորդւոցն Բակուր բդեշխի պատանեակ մի փախեաւ անկաւ առ զօրավարն Հայոց Վաչէ, և անդ ապրեցաւ թագուցեալ 'ի տան նորա: Որ առ յապա ժառանգ տան նորա լինէր: Որ յայլում ժամանակի դարձաւ կալաւ զտունն իւր. որոյ անուն Խեշա կոչէր:

Ժ

## ՅԱՂԱԳՍ ՅԱԿՈԲԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԾԲՆԱՅ

Զայնու ժամանակաւ խաղաց գնաց մեծ եպիսկոպոսն մծբնացւոց, այր սքանչելի ծերունի, վաստակասէր 'ի գործս ճշմարտութեան, որում անուն Յակոբ, փոխանակ ազգաւն պարսիկ կոչէր, այր ընտրեալ յաստուծոյ, յիւրմէ քաղաքէ անտի գալ հասանել 'ի լերինս Հայոց, 'ի լեառնն Սարարադայ 'ի սահմանս Այրարատեան տէրութեան 'ի գաւառն Կոր-

Թ

## ԲԱԿՈՒՐ ԲԴԵՇԽԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԱՊՍՏԱՄԲԵՑԱՎ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻՑ, ՈՐԻ ՓՈԽԱՐԵՆ ԲԴԵՇԽ ԴԱՐՁԱՎ ՎԱՂԻՆԱԿԸ

Այդ ժամանակները Հայոց թագավորից ապստամբեցավ նրա նախարարներից մեկը, Աղձնյաց մեծ իշխանը, որ բդեշխ էր կոչվում[27], որ արքունական սեղանի չորս բարձրագույն գահերից[28] մեկն էր գրավում: Նա ձեռք մեկնեց Պարսից թագավորին և նրան մատնեց արքունի տունը, որ իր կալվածին կից էր[29]: Նա Պարսից թագավորից զորք բերել տվեց իրան օգնության, անջատվեց Հայաստանից և Հայոց թագավորի դեմ պատերազմ էր մղում Պարսից թագավորության ուժով, և պատերազմը սաստկանում էր: Եվ Հայոց թագավորը (նրանց դեմ) էր ուղարկում մեծ զորքով իր քարեմիտ նախարարներին— Կորդվաց Զոն իշխանին, Մեծ Ծոփքի Մար իշխանին, Շահեի Ծոփքի[30] իշխան Ներսեհին, Սյունյաց Վաղինակ իշխանին, Հաշտենից Դատ իշխանին և Բասենի Մանակ իշխանին: Սրանք գնացին ճակատեցին Պարսից զորքերին և բոլորին առհասարակ սրի քաշեցին, նույնպես սպանեցին բդեշխին՝ եղբայրների ու որդոց հետ: Բայց Բակուրի գլուխը և մի նորածին աղջիկ բերին թագավորին: Եվ որովհետև նրա տոհմից ուրիշ ոչ ոք չէր մնացել՝ թագավորն այդ աղջիկը կնության տվեց իր սիրելի Վաղինակ Սյունիին, նրան տվեց նաև Աղձնյաց տունը և նրան դարձրեց բդեշխ և ժառանգ այդ տան: Ժառանգը բազմացավ, և Վաղինակն ամբողջ այդ երկրով և բոլոր ուժով ծառայում էր միշտ թագավորին. բայց Բակուր բդեշխի որդիներից մի պատանի փախավ ու ապաստանեց Հայոց Վաչե զորավարի մոտ և նրա տանը թաքնվելով (մահից) ազատվեց, որ և հետո, ուրիշ ժամանակ, դարձավ, իր տունը գրավեց ու ժառանգ դարձավ: Նրա անունն էր Խեշա:

Ժ

## ՄԾԲԻՆԻ ՀԱԿՈԲ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ

Այն ժամանակները Մծբինի մեծ եպիսկոպոսը, մի սքանչելի ծերունի, ճշմարտության գործերով զբաղված, որի անունն էր Հակոբ, Զգոն կոչված, պարսիկ Անակի որդին[31], աստծու ընտրած մարդը, վեր կացավ իր քաղաքից, որպեսզի գա հասնի Հայոց լեռները, Սարարադ

գաւաց. այր լի շնորհօքն Քրիստոսի, որպէս զօրութիւնք նշանաց և արուեստից լինէին 'ի ձեռաց նորա: Սա եկեալ ցանկացեալ փափաքեալ մեծաւ տենչանօք աղաչէր զաստուած՝ տեսանել զփրկական տապանն Նոյեան շինուածոյն, զի յայս լերին հանգեաւ նա 'ի ջրհեղեղէն. քանզի զամենայն ինչ որ հայցէր, առնոյր 'ի տեառնէ: Ապա մինչդեռ ելանէր ընդ դժուարին ընդ անջրդի ընդ ափափայսն անապատին Սարարադեան լերինն, աշխատեցաւ և ծարաւեցաւ նա և որք ընդ նմայն էին: Ապա դնէր ծունր մեծն Յակոբ 'ի վերայ երկրին, և կայր յաղօթս առ տէր. և 'ի տեղւոջն՝ ուր եդեալ էր զգլուխ իւր՝ բղխեաց աղբիւր, և արբին նա և որ ընդ նմայն էին. որ մինչև ցայսօր ասեն այնմիկ աղբիւր Յակոբայ: Եւ ինքն 'ի նմին աշխատեալ դեգերէր՝ զխնդրելին տեսանել առանց յապաղութեան. առնէր աղօթս առ տէր:

Արդ իբրև էր նա խոնջեալ 'ի վեր 'ի դժուարին տեղւոջն մօտ 'ի կատարն, և կարի վաստակեալ էր, ննջեաց նա. և եկն հրեշտակ աստուծոյ և ասէ ցնա. Յակոբ Յակոբ: Եւ նա ասէ. Աւասիկ տէր: Եւ ասէ հրեշտակն. Ահա ընկալաւ տէր զաղաչանս քո, և կատարեաց զխնդրուածըս քո. այդ. որ կայ ընդ սնարս քո, է 'ի փայտից տապանակին. ահա բերի քեզ, անտի է այդ. զի այլ մի՛ ևս յաւելցես տեսանել զայն. զի տէր այդպէս կամեցաւ: Եւ մեծաւ խնդութեամբ յոտն կացեալ, բազում գոհութեամբ երկիր պագանէր տեառն, և տեսանէր զտախտակն՝ իբրև զի կացնեաւ հատեալ հանեալ ճեղքեալ 'ի մեծ ինչ փայտից: Եւ առեալ դառնայր անտի, հանդերձ շնորհատուր պարգևելովն, և որք ընդ նմայն երթեալք՝ իւրովքն ճանապարհորդ լինէր: Եւ ոչ այնպէս մեծն Մովսէս զուարթագոյն ցնծայր յէջսն Սինէական լեռնէն, շաւէաք եթէ առաւելովքն պակասագոյն: Քանզի յաստուծոյ առեալ և աստուածագիր հրամանօք 'ի բազուկս, այր աստուածատեսիլ 'ի լեռնէն իջանէր: Այլ վասն վրիժագործ ժողովրդեանն, որոց զթիկունսն 'ի տէրունիսն[8] և կործան յերեսս՝ տիրադրուժք իւրեանցակոռ ձուլելոյն երկիր պագանէին, և նովին զհրամանարերն սրտառուչ ստարեկ կացուցանէին: Քանզի 'ի տախտակացն խորտակելոցն յայտնի երևէր բերելեացն թաղձութիւն: Իսկ այս երանելոյս, վասն որոյ և ճառեալքս յարդարին, ոչ ըստ այնմ օրինակի՝ որ անդ գործեցաւ. այլ ինքն իւրովքն լցեալ հոգևոր մխիթարութեամբ, կարծեալ զնդունելեացն զյաժարութիւն յուսով դիտաւորութիւն զճանապարհաց աւետաբերաց: Քանզի յայտնեօք և ծածկելովք, քանզի միոյն միայն յամենազօրէն առ ամենայն ազգս երկրածնաց շնորհքն՝ մատակարարէին:

լեռը[32], որ գտնվում էր Այրարատյան տերության սահմաններում, Կորդվաց գավառում: Նա լի էր աստվածային շնորհներով, այնպես որ նրա ձեռքով հրաշքներ էին կատարվում: Նա եկավ մեծ փափագով ու ցանկությամբ և աղաչում էր աստծուն, որ կարողանա տեսնել Նոյի փրկական տապանը, որ ջրհեղեղից հետո այս լեռան վրա էր հանգչել. որովհետև ինչ որ նա աստծուց խնդրում էր՝ ստանում էր: Արդ՝ երբ նա բարձրանում էր Սարարադյան լեռան անջրդի անապատ քարքարոտ տեղերով՝ ինքը և իր հետ եղողները հոգնեցան ու ծարավեցան: Այդ ժամանակ մեծն Հակոբ ծունկ չոգեց գետնի վրա և տիրոջը աղոթեց: Եվ այն տեղից, որտեղ դրել էր գլուխը՝ մի աղբյուր բխեց. և ինքն ու իր հետ եղողները խմեցին: Մինչև այսօր էլ այդ աղբյուրին ասում են Հակոբի աղբյուր: Եվ ինքը նույն չարչարալից գործը շարունակում էր, որպեսզի շուտով ցանկացածը տեսնե, և տիրոջ աղոթում էր:

Արդ՝ երբ նա սաստիկ հոգնած էր վերը, կատարի մոտ, դժվար տեղերում՝ ուժասպառ եղավ և քունը տարավ: Եվ աստծու հրեշտակը եկավ ու նրան ասաց. «Հակո՛բ, Հակո՛բ»: Եվ նա ասաց. «Այստեղ եմ». (լսում եմ): Եվ հրեշտակն ասաց. «Տերը քո աղաչանքներն ընդունեց և խնդիրդ կատարեց. այդ, ինչ որ գլխիդ տակը դրված է՝ տապանակի փայտերից է. ինքս բերի քեզ համար. այնտեղից է: էլ չաշխատես (տապանը) տեսնել, տերը այսպես կամեցավ»: Նա մեծ խնդությամբ ոտքի կանգնելով՝ երկրպագում էր տիրոջը մեծ գոհությամբ, և տեսնում էր տախտակը, որ կարծես կացնով կտրած՝ ճեղքած հանած էր ինչ-որ մեծ փայտից: Առնելով շնորհատուր պարգևը՝ ինքը և հետը եղողները այնտեղից ետ էին դառնում ու գնում իրենց ճանապարհը: Եվ[33] մեծն Մովսեսը այնպես զվարթ չէր ցնծում Սինեական լեռնից իջնելիս, թեպետ չեմ ուզում ասել, թե նրա բերածը պակաս բան էր, իսկ սրանը ավելի: Որովհետև այն աստվածատես մարդը աստծուց էր ստացել աստվածագիր հրամանները և ձեռքերին բռնած իջնում էր լեռնից: Որովհետև այն չարագործ ժողովուրդը տիրոջից երես դարձնելով, կործանվելով տիրադրուժ գտնվեցին և իրենց ձուլածին երկրպագում էին, որով (աստծու) հրամանը բերողին սիրտը կոտրում՝ վհատեցնում էին, և հենց տախտակների խորտակելուց հայտնի երևում էր բերողի թախիծը: Իսկ այս երանելուն, որի մասին այստեղ ճառում ենք, այնպես չպատահեց ինչպես այնտեղ եղավ. այլ ինքը և յուրայինները լցված էին հոգևոր ուրախությամբ, գիտենալով որ ընդունողները հոժարությամբ և հույսով սպասում են (նրա վերադարձին) հեռավոր ավետաբեր ճանապարհից: Որովհետև[34] միայն և միայն ամենակարողից էր մատակարարվում շնորհք բոլոր երկրածին ազգերին:

Ապա իբրեւ զայր բերէր այրն աստուծոյ զաստուածագործ մեծութեանցն պատուհասին զխրատու՝ որ առ ամենայն ազգս բանաւորաց եւ շնչաւորաց յաւիտենից զնշանակն զփայտն ապրեցուցիչ, զնշանակն հայրենի գործոցն զնոյեան տապանին, ամենայն քաղաքն եւ գաւառքն՝ որ շուրջ էին զնովաւ՝ անպայման եւ անչափ խնդութեամբք եւ ցնծութեամբ ընդ առաջ ելանէին: Իբրեւ զառաքեալ Քրիստոսի իբրեւ զհրեշտակ երկնաւոր տեսեալ զսուրբն, զնովաւ պատէին. զքաջ հովիւն իւրեանց իբրեւ զաստուածախօս տեսանէին եւ զնովիմբ փարեալք, եւ զվաստակաւէր զօգտաբեր զգարշապարացն զշաւիղսն համբուրէին: Եւ զբերեալ պարգեւացն զշնորհս իւրեանց յօժարութեամբ ընդունէին. որ մինչեւ ցայսօր նշանակ սքանչելութեան կայ պահեալ առ նոսա երեւոյթ փայտն հայրապետական նոյեան տապանին:

Ապա յետ այսորիկ լուր լուաւ յերկրէն հայաստանէ սքանչելի եպիսկոպոսն Յակոբ. խաղաց գնաց առ մեծ իշխանն աշխարհատէրն մեծ ծառայն արքային Հայոց առ Մանաճիրհ Ռշտունի, եւ եկն թափեցաւ յաշխարհ նորա: Վասն զի լուեալ էր զնմանէ՝ թէ այր չար եւ անզգամ է, եւ զուր տարապարտ ի՛ ցասմանէ դառնութեան սրտին իւրոյ կոտորէ անթիւ մարդիկ: Եկն ուսուցանել եւ խրատել զնա, զի յահէ տեառն երկուցեալ դարձցի յընդդանութեան բարս, եւ մեկուսի 'ի վայր դիցէ զահաւնաքար զազանամտութիւն մոլեգնութեան իւրոյ: Իսկ իբրեւ ետես զնա, արհամարհեաց, ծաղր եւ այպն առնէր անօրէնն Մանաճիրհ զայրն աստուծոյ զՅակոբ եպիսկոպոսն: Եւ առ վայրենի բարուցն իւրոց՝ զոր ունէր յանձին իւրում, իբրեւ նմա հեռուկս առնելոյ, ութ հարիւր այր՝ որ կային 'ի կապանս առանց յանցման՝ ետ ածել առաջի նորա. եւ հրամայեաց 'ի դահճէ միոջէ 'ի ծով անդր հոսել. եւ զայնչափ հոգի առանց յանցման կորուսանել, եւ կատակութեամբ ծաղու հրամայէր հալածել զնա յաշխարհէն իւրմէ: Եւ ասէ. Առ քում բարէխաւսութիւնդ տեսե՞ր զի՛րդ մեծարեցի զքեզ. դիւր արարի նոցա 'ի կապանացն, եւ 'ի ծովուն դեռ դողին: Իսկ նա գնացեալ անտի մեծաւ տրտմութեամբ ըստ հրամանի պատուիրանին տեառն իւրոյ, թօթափէր զփոշի ոտից իւրոց 'ի վերայ նոցա: Գայր հասանէր 'ի լեառն երկաթահատացն եւ կապարահատացն, եւ որ ընդ նմայն էին, ընդ Ըորշտունիս: Եւ բաժանէր լեառն բարձր, ուստի երեւէին գաւառքն բովանդակ, որում անուն Ընձաքիարս կոչէին: Իբրեւ հուպ եղեւ յայն լեառն 'ի ստորոտ լերինն. քանզի բազում աւուրք էին զի չէր ինչ բնաւ ամենեւին ճաշակեալ, եւ ծարաւեաց խիստ ծարաւով: Եկաց յաղօթս առ տէր, դնէր ծունր, եւ եդ զգլուխ իւր 'ի վերայ երկրի, եւ բխեաց աղբիւր. ուստի արբ ինքն եւ որք ընդ նմայն

Եվ երբ ատոծու մարդը գալիս բերում էր նոյան փրկարար տապանի փայտը,— բոլոր բանավորների և շնչավորների ցեղերին հասած պատուհասի հավիտենական նշանը, հայրենի գործերի նշանակը— ապա բոլոր քաղաքը և նրա շուրջն եղած գավառները. անչափ, աննման ցնծությամբ և խնդությամբ նրան ընդ առաջ էին դուրս գալիս: Նրան նկատում էին իբրև Քրիստոսի առաքյալ, իբրև երկնային հրեշտակ, նրան շրջապատում էին, իրենց քաջ հովվին իբրև աստվածախոս էին համարում, փաթաթվում էին նրան, համբուրում էին նրա աշխատասեր ու պտղաբեր ոտքերի հետքերը: Եվ նրա բերած՝ շնորհված պարգևը ընդունում էին հոժարությամբ, որ մինչև այսօր էլ նրանց մոտ պահվում է այդ սքանչելիքի նշանը—հայրապետական նոյեան տապանի փայտը:

Սրանից հետո սքանչելի Հակոբ եպիսկոպոսը լուր ստացավ Հայաստան աշխարհից, ելավ եկավ Հայոց թագավորի մեծ ծառայի, աշխարհատեր մեծ իշխանի՝ Մանաճիհր Ռշտունու մոտ. եկավ մտավ նրա աշխարհը, որովհետև լսել էր նրա մասին, թե չար և անզգամ մարդ է և սրտի դառնությունից չարանում ու անբիվ մարդիկ է կոտորում անմեղ տեղը: Եկավ նրան ուսուցանելու և խրատելու, որ աստծու ահից վախենա, մեղմանա և դեն դնե անասնաբարո գազանային կատաղությունը: Իսկ երբ անօրեն Մանաճիհրը տեսավ աստծու մարդուն, Հակոբ եպիսկոպոսին՝ նրան արհամարհեց, ծաղրի ու նախատինքի ենթարկեց: Եվ իր բնածին վայրենի բնավորությամբ, նրա շգրու՝ ութ հարյուր մարդ, որոնք կապանքի մեջ էին առանց հանցանքի, բերել տվեց նրա առաջ և հրամայեց՝ մի գահավեժից[35] ծովը թափել և այնքան հոգի կորցնել առանց որևէ հանցանքի: Եվ կատակով ու ծաղրով հրամայեց նրան իր աշխարհից հալածել: Նրան ասաց. «Տեսա՞ր ո՛րքան քեզ մեծարեցի. քո բարեխոսության համար նրանց ազատեցի կապանքներից, հիմա նրանք ծովում դեռ լող են տալիս»: Իսկ նա մեծ տրտմությամբ այնտեղից գնաց և տիրոջ պատվիրանի համաձայն՝ իր ոտքի փոշին թափ տվեց նրանց վրա[36]: Նա իր հետի մարդկանցով գնաց Ռշտունիքով, հասավ երկաթահանքերի և կապարահանքերի լեռը: Սա մի բարձր լեռ է, որ կոչվում է Ընձաքիսար, որի վերևից բոլոր գավառները երևում էին: Երբ այս լեռան մոտեցավ, ստորոտը հասավ՝ շատ օրեր բոլորովին բան չէր կերել. այդտեղ խիստ ծարավ զգաց: Ծունկ չոքեց, աղոթք արավ տիրոջ և գլուխը գետին դրեց, աղբյուր բղխեց, որից ինքն էլ, հետը եղողներն էլ խմեցին: Այստեղ էլ Ռշտունյաց (գավառում) ծովեզերքի մոտ, Ընձաքիսարի ստորոտում,

էին: Եւ եղև այս ըստ առաջին օրինակին. որպէս արար ՚ի Սարարադ լերինն, սոյնպէս և առ ոտին Ընձաքիսու լերինն ՚ի ծովեզերն ըՌիշ-տունեաց ծովուն. որ ըստ առաջնոյն օրինակի կոչի և այս աղբիւր Յակոբայ մինչև ցայսօր ժամանակի:

Եւ ելանէր քահանայապետն աստուծոյ Յակոբ ՚ի գլուխ լերինն Ընձաքիսու. և նզովէր զաշխարհն, զի մի պակասեսցէ անտի խռովութիւն մինչև ՚ի սպառ, փոխանակ տէրունի խաղաղութեան՝ որ ոչ լուան: Եւ սուրբ աւետարանիչ եպիսկոպոսն գնաց ՚ի տեղի իւր: Իսկ յայնմ գաւառի, յետ գնալոյ նորա անտի, յետ երկուց աւուրց սատակեցաւ կինն Մանաճեհրայ եւթն որդւով իւրով. յետոյ և ինքն չարամահ ծակոտեալ ելանէր մեծաւ տանջանօք յաշխարհէ: Եւ ըստ բանին՝ որ ասացաւ, ոչ եղև խաղաղութիւն յաշխարհին յայնմիկ յօրէն յայնմանէ և յապա:

Բայց այս Յակոբ գործէր սքանչելիս մեծամեծս. և սա դիպեցաւ ՚ի մեծ սիւնհոդոսին ՚ի Նիկիա, որ եղև յամս Կոստանդիանոսի կայսեր Հոռոմոց, որ ժողովեցան երեք հարեւր և ութևտասն եպիսկոպոսք· վասն անիծեալ ա՛ղանդոյն Արիանոսի աղէքսանդրացւոյ, որ էր ՚ի նահանգէ անտի Եգիպտոսի: Արդ ամենայն եպիսկոպոսքն նստէին առաջի Կոստանդիանոսի. և ՚ի Հայոց էր անդ Արիստակէս, որդի Գրիգորի սքանչելոյ՝ առաջի կաթողիկոսին Հայոց մեծաց: Սկսաւ երեւալ սքանչելեօք նշանաց Հոգւոյն սրբոյ այնմ Յակոբայ ծածկեալ գործք զարմանալի թագաւորին: Ետես զի արքայն Կոստանդիանոս քուրձ զգեցեալ էր ՚ի ներքոյ իւրոց ծիրանեացն և պատմուճանին, և հրեշտակն կայր պահապան սպասաւորել նմա: Զարմացեալ եպիսկոպոսն Յակոբ, ասաց այլոց բազմութեան ժողովոյն եպիսկոպոսացն զիրս հրեշտակին, որ ոչ հաւատային իրացն: Իսկ նա պնդեալ վիճէր և ասէր. Որովհետև դուք գիտէք զիրս ծածկեալս, նախ զայդ յայտ արարէք, զի՞նչ է այն որ զգեցեալն է թագաւորն ՚ի ներքոյ պատմուճանին: Որ ինքն ՚ի մէջ կացեալ, ՚ի ձեռն Հոգւոյն սրբոյ յայտնէր զխոնարհութիւն կրօնազգեաց աստուածասիրութեան նշանակ թագաւորին Կոստանդիանոսի. և զննեալ առաջի ամենեցուն ցուցանէր, զի ՚ի ներքոյ ընդ ծիրանեօքն քուրձ զգեցեալ էր առ սէր ջերմեռանդ հաւատոցն՝ որ առ Քրիստոս ունէր: Ապա ետես և թագաւորն Կոստանդիանոս զհրեշտակն սպասաւոր երեսացն Յակոբայ, և անկաւ առաջի ոտից նորա, և մեծապատիւ մեծապարգև մեծարեաց զնա: Եւ արկ զաթոռ նորա ՚ի վերայ քան զբազումս ՚ի նոցանէ, որք ՚ի սիւնհոդոսին յայն էին: Բայց ոսկերք նորա շնորհեցան քաղաքին ամդացւոց, ընդ այլ մծբնացիսն ՚ի փոխել նորա անտի անդր ՚ի մարտս պատերազմացն Յունաց թագաւորացն ընդ թագաւորին Պարսից:

նույնպես արավ, ինչպես արել էր Սարարադ լեռան վրա: Այս աղբյուրն էլ, առաջինի նման, մինչև այսօր կոչվում է Հակոբի աղբյուր:

Հետո սատծու ճանաճայապետ Հակոբը բարձրացավ լեռան գլուխը և անիծեց այն աշխարհը, որպեսզի այնտեղից իսպառ խռովությունը չպակասի, փոխանակ որ նրանք չլսեցին տերունի խաղաղության խոսքին: Հետո սուրբ ավետարանիչ եպիսկոպոսը գնաց իր տեղը: Իսկ նրա գնալուց երկու օր հետո այդ գավառում մեռավ Մանանիրհի կինը իր յոթը որդիներով. հետո ինքն էլ ծակոտվելով չարաչար մահով գնաց այս աշխարհից: Եվ նրա ասածի պես՝ այն օրից ի վեր խաղաղություն չեղավ այս աշխարհում:

Բայց այս Հակոբը մեծամեծ սքանչելիքներ էր գործում. նա պատահեց Նիկիո մեծ ժողովում. որ տեղի ունեցավ Հռոմների Կոնստանդիանոս կայսեր օրերում, երբ ժողովվեցին երեքհարյուր տասնևութ եպիսկոպոսներ Արիանոս Աղեքսանդրացու անիծված աղանդի պատճառով, որ Եգիպտոսի նահանգից էր: Արդ՝ բոլոր եպիսկոպոսները նստած էին Կոստանդիանոսի առաջ: Հայերի կողմից էլ այնտեղ էր Արիստակեսը. Մեծ Հայքի առաջին կաթողիկոսի՝ սքանչելի Գրիգորի որդին: Եվ սուրբ հոգու սքանչելի նշանով այս Հակոբին սկսեցին երևել թագավորի զարմանալի թաքուն գործերը: Նա տեսավ, որ Կոստանդիանոս թագավորը քուրձ էր հագել իր ծիրանի պատմուճանի տակ, և հրեշտակը կանգնել էր նրան սպասարկելու: Հակոբ եպիսկոպոսը զարմանալով՝ ժողովի մյուս բազմաթիվ եպիսկոպոսներին հաղորդեց հրեշտակի մասին: Բայց նրանք չհավատացին: Իսկ նա վինում, պնդում էր և ասում. «Որովհետև դուք թաքուն բաները գիտեք, ուստի նախ այն բացատրեցեք, թե ի՞նչ է հագել թագավորը պատմուճանի տակ»: Եվ ինքը մեջ տեղը կանգնելով՝ սուրբ հոգու շնորհիվ երևան էր հանում Կոստանդիանոս թագավորի կրոնասիրական խոնարհությունը, նրա աստվածասիրության նշանը, և գնելով՝ բոլորին ցույց էր տալիս, որ ծիրանիի տակ քուրձ էր հագել՝ դեպի Քրիստոս ունեցած սիրու և ջերմեռանդ հավատի համար: Սրանից հետո Կոստանդիանոսը ինքն էլ տեսավ հրեշտակին, որ սպասավորում էր Հակոբին. նրա ոտների առաջ ընկավ և մեծ պատվով նրան մեծարեց և նրա աքոռը ժողովում եղողների շատ շատերի (աքոռներից) բարձր դրեց:

Բայց նրա ոսկորները շնորհվեցին Ամիդ քաղաքին, երբ Հունաց թագավորների պատերազմների պատճառով Պարսից թագավորի հետ՝ (ոսկորները) Մծբինից այնտեղ փոխադրվեցին այլ բաների հետ:

## ԺԱ

### ՅԱՂԱԳՍ ՄԵԾԻ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՊԱՐՍԻՑ ԵՒ ՀԱՅՈՑ ԸՆԴ ՄԻՄԵԱՆՍ. ԵՒ ԱՆԿԱՆԵԼՈՅ, 'Ի ՊԱՏԵՐԱԶՄԻՆ՝ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՎԱՉԷԻ: ԵՒ ՄԱՀՈՒՆ ԽՈՍՐՈՎՈՒ ԱՐՔԱՅԻ, ԵՒ ՓՈԽԵԼՈՅ ՅԱՇԽԱՐՀԷ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ՎՐԹԱՆԱՅ

Եւ յետ այսորիկ յաւել ևս լինել մարտ խստութեամբ պատերազմի 'ի մէջ Պարսից և Հայոց ընդ միմեանս. զի ժողովեցան հասին կուտեցան առնուլ զաշխարհն Հայաստան երկրին: Ապա ժողովէր սպարապետն զօրավարն Հայոց մեծաց Վաչէ զազատախումբ բանակ նախարարակոյտ զօրացն: Եւ ելանէր տայր ընդ զօրսն Պարսից պատերազմ, և լինէր անհնարին կոտորուած յերկոցունց կողմանցն, և բազում ծախ մեծամեծ աւազանւոյն կոտորելոցն: Անկանէր 'ի պատերազմին յայնմիկ մեծ սպարապետն Հայոց Վաչէ. և լինէր ամենայն աշխարհին սուգ անհնարին, զի բազում անգամ էր տէրն փրկութիւն տուեալ Հայոց 'ի ձեռն նորա: Ապա ժողովէր եպիսկոպոսապետն Վրթանէս, մխիթարէր զամենեսեան, և զինքնին թագաւորն զԽոսրով, և զօրսն ամենայն, որք բազում անձկայրեաց արտասուակաթ ողբովք և ծանրաթախիծ հոգով, մեծաւ կոծովք և անհնարին աշխարանօք պաշարեալք, զգնացեալսն կարիս մնացելոցն համարեալ՝ սգային: Զորս մատուցեալ սփոփէր զնոսա մեծն Վրթանէս, և ասէր.

Մխիթարեցարուք 'ի Քրիստոս. վասն զի մանաւանդ որք մեռանն, նոքա յաղագս աշխարհի և եկեղեցեաց և աստուածազօրծ օրհնացն տուչութեան, զի մի գերեալ քանդեսցի աշխարհս, և սուրբ եկեղեցիքն անօրինեսցին, և կամ մարտիրոսք անարգեսցին, և կամ սուրբ սպասքն 'ի ձեռս պղծոցն և անօրինացն անկցին, և սուրբ ուխտն այլայլեսցի, և որդիք մկրտութեամբ գերութեամբ անկցին 'ի պէսպէս պղծութիւնս անօրէնութեան կարգաց պաշտամանց: Եւ եթէ զաշխարհս ունիցին արդեւք թշնամիքն, և զիւրեանց զանօրէն զանկրօն զանաստուած կրօնիցն զօրէնս աստ արդեւք հաստատէին, որ, զոր խնդրեմքս, քա՛ւ և մի լիցի: Իսկ մեր բարեպաշտութեան նահատակք 'ի վերայ այսորիկ ճգնեալ պատերազմաւ, զչար պահեալ հեռացուցեալ հալածեալ յաշխարհէ՝ մեռան, զի մի յայսպիսի աստուածապաշտ և աստուածասէր աշխարհ անօրէնութիւն մտեալ չարի կամացն 'ի ծառայութիւն արկցէ, և զբազում ոգիս ջերմեռանդն սիրով բնութեան 'ի միմեանց քակտեալ քայքայեսցէ: Իսկ նոքա մինչդեռ կենդանի էին, արդար վաստակօք 'ի վերայ այսորիկ վաստակեցան. և 'ի մահուն իւրեանց զմիամտութեան հաստատութեան զանձինս փոխանակ տալով ընդ ճշմարտութեան տեառն, մատուցին 'ի վերայ եկեղեցեաց, և 'ի վերայ մարտիրոսաց, և 'ի վերայ ուխտին սրբ-

## ԺԱ

## ՊԱՐՍԻՑ ԵՎ ՀԱՅՈՑ ՄԻՋԵՎ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱԾ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ, ՈՐԻ ՄԵՋ ԸՆԿԱՎ ՎԱՇԵ ԶՈՐԱՎԱՐԸ. ԽՈՍՐՈՎ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՀԸ ԵՎ ՎՐԹԱՆԵՍ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԱՅՍ ԱՇԽԱՐՀԻՑ ՓՈԽՎԵԼԸ

Սրանից հետո դաժան խիստ պատերազմ տեղի ունեցավ Պարսիկների և Հայերի մեջ, որովհետև սրանք մեծ բազմությամբ եկան Հայոց աշխարհն առնելու: Ապա Մեծ Հայքի սպարապետ և զորավար[37] Վաչեն ժողովում էր նախարարական զորքերի ազատների բանակը և դուրս էր գալիս Պարսից զորքերի հետ պատերազմելու: Երկու կողմից էլ անասելի կոտորած էր լինում, և շատ մեծամեծ ավազակներ կոտորվում փչանում էին: Այս պատերազմում ընկնում էր նաև Վաչեն, Հայոց մեծ սպարապետը. և բոլոր աշխարհը մեծ սգի մեջ էր ընկնում, որովհետև տերը շատ անգամ նրա ձեռքով փրկություն էր շնորհել հայերին: Ապա Վրթանես եպիսկոպոսապետը ժողովում մխիթարում էր բոլորին, իրան՝ Խոսրով թագավորին և բոլոր զորքը, որոնք սրտակեզ ողբով ու արտասուքով, թախծալից հոգսերով, մեծ լաց ու կոծով կաշկանդված սգում էին, զնացածների կարիքները մնացածներին համարելով: Մեծն Վրթանես սրանց սփոփում էր և ասում.— «Մխիթարվեցե՛ք Քրիստոսով, որովհետև նրանք որ մեռան՝ մեր աշխարհի, եկեղեցիների և աստվածատուր հավատի համար (մեռան), որպեսզի մեր աշխարհը չգերվի, քարուքանդ չլինի, սուրբ եկեղեցիները չպղծվին, մարտիրոսները չանարգվին, (եկեղեցական) սպասները պիղծ և անհավատ մարդկանց ձեռքը չանցնեն, (եկեղեցու) սուրբ ուխտը չայլայլվի, մկրտված ժողովուրդը գերի չգնա ու չմատնվի անհավատների պաշտամունքի զանազան պղծություններին: (Որովհետև) եթե բշնամիները մեր աշխարհը գրավեն՝ այստեղ կհաստատեն իրենց անօրեն, անհավատ, անաստված կարգերը, որ, հուսանք, թե երբեք լինելու չէ: Իսկ մեր բարեպաշտ նահատակները այս բանի համար պատերազմ մղեցին, և չարիքը մեր աշխարհից հալածելով ու հեռացնելով մեռան, որպեսզի անհավատությունը այս աստվածապաշտ և աստվածասեր աշխարհը մուտք չգործե և չարի կամքին ծառա չդարձնե և շատ հոգիներ, որ ջերմեռանդ սիրով իրար հետ կապված են՝ միմյանցից չբաժանե, չքայքայե: Իսկ սրանք մինչ կենդանի լին՝ արդար աշխատանքով աշխատեցին այս բանի համար, և մեռնելիս հաստատ պահեցին իրենց հավատարմությունը և իրենց անձերը զոհեցին աստվածային ճշմարտության համար, եկեղեցիների, մարտիրոսների, կրոնի սուրբ ուխտի, հավատի կարգերի համար, քահանայական ուխտի և

բուքեան օրինացն, և 'ի վերայ կարգաց հաւատոցն, և 'ի վերայ ուխտին քահանայութեան, և 'ի վերայ անթիւ նոր 'ի Քրիստոս մկրտելոցն, 'ի վերայ բանակի տեառն աշխարհիս: Որք այնմ ամենայնի փոխանակ զանձինս իւրեանց ոչ խնայեցին, ընդ վկայս Քրիստոսի է նոցա համար պատուոյ: Արդ մի՛ լացցուք զնոսա, այլ պատուեսցուք ընդ ճշմարտու-թեան, առ նահատակսն դիցուք ընդ աշխարհ օրէնս յաւիտենանս յաւի-տենից զի ամենայն ոք զսոցա յիշատակ քաջութեան իբրև Քրիստոսի նահատակաց անխափան կատարեսցէ: Եւ մեք տօնս արասցուք, և ուրախ լիցուք. զի աստուած այսոքիւք հանեսցի ընդ մեզ, յայսմ հետէ խաղաղութիւն շնորհեսցէ:

Եւ եդ օրէնս ընդ աշխարհ մեծ քահանայապետն Վրթանէս, զնոցա առնել զյիշատակն ամ յամէ. և որք փոխանակ աշխարհին փրկութեան մեռանիցին 'ի նմանութիւն նոցա, եդ կանոն՝ յիշել զսոսա առ սուրբ սե-ղանն աստուծոյ 'ի ժամ պատարագին. յորժամ զանուանս սրբոցն կար-գիցեն, և ապա զկնի նոցա զնոցայն. և մնացելոցն յանցելոցն զութ և խնամ կալցին: Զի սոքա, ասէ, 'ի նմանութիւն Յուդայ և Մատաթեայ Մակաբէի անկան 'ի նակատ պատերազմի, և նմանութիւն եղ-բարց նոցա: Սակայն զՎաչէի զօրավարի փոքրիկ մանգիկ մի զնորուն զորդի 'ի հայրենի բարձր գահուն մատուցանէին, որում անուն էր յանուն հօր իւրոյ Արտաւազդ: Առաջի թագաւորին զհօրն պա-տիւն 'ի գլուխն դնէին, և զսպարապետութեան նորուն տեղի· զի կարի որդի վաստակաւորի էր, և 'ի վաստակաւոր ազգէ. զի այլ յազգին ոչ զտաւ հօժկու, զի 'ի մեծ պատերազմին մեռան: Եւ զզօրավարութեան գործ յանձն առնէին Արշաւրայ Կամսարականի՝ իշխանին Շիրակայ և Արշարունեաց գաւառին, և Անդովկայ իշխանին Սիւնեաց. զի նոքա փե-սայք էին տանն Մամիկոնեան տոհմին: Եւ հրաման ետուն մեծ եպիս-կոպոսապետն Վրթանէս հանդերձ թագաւորաւն՝ Արշաւրայ և Անդովկայ սնուցանել զպատանեակն զԱրտաւազդ, զի կացցէ 'ի տեղի նախնեացն իւրոց և հօր իւրոյ, և առ-ծ քաջութեան զործեսցէ [illegible] ·իս-տոսի, և առաջին իւրոյ մարմնաւոր բնատերանց[9] արշակունեաց քաջ արանց, և տան և կենաց. և խնամակալ լիցի այրեաց և որբոց, և զնո-րուն գործ քաջութեան սպարապետութեան անուանի զօրավարութեան յաջորդեսցէն զամենայն աւուրս կենաց իւրոց:

Ապա յետ սորիկ փոխեալ լինէր քաջ արանցն աշխարհաշէնն Խոս-րով, թագաւորն Հայոց մեծաց: ժողովեալ, աշխարհ եղեալ, լացին ամե-նայն սահմանք աշխարհաց գաւառաց Հայոց մեծաց. և տարան առ իւր նախնիսն յԱնին յեկեղեցագաւառն[10] Դարանաղեաց: Եւ յետ սորա փոխե-ցաւ եւս յաշխարհէ մեծ քահանայապետն Վրթանէս. և ժողովեցան ամե-

Քրիստոսի անունով անբիծ նոր մկրտվածների և աշխարհի բնիկ[38] տիրոջ համար. և նրանք որ իրենց կյանքը չխնայեցին այս բոլորի համար՝ նրանք պետք է պատվվեն Քրիստոսի վկաների հետ: Ուրեմն նրանց չլանք, այլ արժանապես պատվենք նահատակների հետ. մշտական կարգ սահմանենք ամբողջ մեր աշխարհում, որ ամեն օր անխափան կատարե սրանց քաջության հիշատակը՝ ինչպես Քրիստոսի նահատակների: Իսկ մենք տոն կատարենք և ուրախ լինենք, որ աստված սրանցով մեզ հետ հաշտ լինի և այսուհետև խաղաղություն շնորհե»:

Եվ Վրթանես մեծ քահանայապետը օրենք սահմանեց (մեր) աշխարհում՝ տարեց-տարի նրանց հիշատակը կատարել, ինչպես և նրանց, որոնք նույն կերպով աշխարհի փրկության համար կմեռնեին: Կանոն դրեց՝ սրանց անունները հիշել աստծու սեղանի առաջ պատարագի ժամանակ՝ երբ սրբերի անունները հիշվում են. որոնցից հետո սրանցը, իսկ ընկածների մնացորդներին գութ և խնամք տանեին: Որովհետև, ասում էր, սրանք պատերազմի ճակատամարտում ընկան Հուդա և Մատաթիա Մակաբեների և նրանց եղբայրների նմանությամբ:

Սակայն Վաչե զորավարի որդուն, որ փոքր մանուկ էր, հայրենական գահն ու բարձն էին տալիս, իր պապի[39] անունով կոչվում էր Արտավազդ: Թագավորի առաջ նրա գլուխն էին դնում հոր պատիվը, նրան տալիս էին սպարապետությունը, որովհետև մեծ վաստակավորի որդի էր, վաստակավոր տոհմից, իսկ նրանց տոհմում ուրիշ չափահաս մարդ չգտնվեց, որովհետև մեծ պատերազմում մեռել էին: Իսկ զորավարության գործը հանձնում էին Արշավիր Կամսարականին, Շիրակի և Արշարունյաց գավառի իշխանին, և Սյունյաց իշխան Անդոկին, որովհետև սրանք Մամիկոնյան տոհմի փեսաներ էին: Եվ Վրթանես մեծ եպիսկոպոսապետն ու թագավորը հրաման տվին Արշավիրին ու Անդոկին՝ պատանի Արտավազդին սնուցանել, որպեսզի (մեծանալով) իր նախնիքների և իր հոր տեղը բռնե, քաջության գործեր կատարե ամենատեր Քրիստոսի համար և իր մարմնավոր բնիկ տերերի՝ քաջարանց Արշակունիների համար, (ժողովրդի) կյանքն ու անձերը պաշտպանե, որբերին ու այրիներին խնամակալ լինի և իր (նախորդների) քաջության գործերը կատարե, նրանց սպարապետության և անվանի զորավարության հաջորդը լինի մինչև իր կյանքի վերջը:

Սրանից հետո (աշխարհից) փոխվում էր քաջարանց՝ աշխարհաշեն խոսրովը, Մեծ Հայքի թագավորը: Ամբողջ Մեծ Հայքի աշխարհներից ու գավառներից ժողովվեցին, սուգ արին, լացին ու տարան իր նախնիքների մոտ, Անի, Դարանաղիի Եկեղյաց գավառը: Նրանից հետո աշխարհից փոխվեց նաև Վրթանես մեծ քահանայապետը: Ամբողջ

նայն աշխարհն Հայոց, և մեծաւ պաշտամամբ, սաղմոսիւք և երգովք նոգևորօք, կանթեղօք և մոմեղինօք և խնկածու նոտովք, արքունական կառօք զսուրբն Վրթանէս, անհնարին բեկմամբ՝ վասն իւրեանց յայնմ 'ի բնակ տեառնէն կամ 'ի նոգևոր վարդապետութենէն որք մնալոյ, մեծաւ լալեաց տրտմութեամբ մինչև 'ի գեւղն Թորդան 'ի Դարանաղեաց գաւառն յուղարկէին: Եւ անդ առ մեծի նայրապետին Գրիգորի զսորա սուրբ զոսկերսն նանգուցանէին. և զմըշտակատար զսորա կենդանի յիշատակն 'ի վերայ կատարեալ, դառնային:

ԺԲ

ՅԱՂԱԳՍ ԹԱԳԱՒՈՐԵԼՈՅ ՏԻՐԱՆԱՅ ՅԵՏ ՀՕՐ ԻՒՐՈՅ. ԵՒ ԹԷ ՈՐՊԷՍ ՅՈՒՍԻԿՆ ՅԵՏ ՀՕՐ ԻՒՐՈՅ ՎՐԹԱՆԱՅ ԿԱԼԱՒ ԶԱԹՈՌ ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ, ԵՒ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՍՊԱՆԱՒ 'Ի ՏԻՐԱՆԱՅ ԱՐՔԱՅԷ ՅԱՂԱԳՍ ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԵԱՆ

Եւ յանցանելն յաշխարհէ թագաւորին Խոսրովու, Տիրան որդի Խոսրովու առ զթագաւորութիւնն իշխանութիւն աշխարհացն Հայոց մեծաց: Եւ ընդ նմին սուրբն երանելի մանուկն Յուսիկ յաջորդեաց զտեղի նայրապետացն Հայոց: Բայց գումարեաց ընդ նմա թագաւորն Տիրան զմեծամեծ նախարարսն ըստ սովորութեան օրինակին. զմեծ նազարապետն 'ի նազարապետութեան: Իսկ 'ի տոհմէ ամենայն Հայոց մեծաց, զՎաղարշ, որ էր իշխան Անձտայ, և ընդ նմա Զարեհ իշխանն, նահապետն մեծի Ծոփաց. և զՎարազ Շահունի իշխանն Ծոփաց աշխարհին. և զԳնիթ իշխան Հաշտենից գաւառին 'ի Կամրնական տոհմէն. զՎորոք իշխանն Վանանդայ գաւառին. և զՇահէն իշխանն Անձևացեաց տոհմին. և զԱտամ իշխանն Գողթան. և զՄանաւազ իշխանն կողբացոց· զԳորուք իշխանն Զորոց աշխարհին. և զՄանասպ զխորխոռունեաց զիշխանն մաղխազունեան տանն, զմերոյ տոհմի ազգի իշխանն Սահառունեաց, և զԱբրա իշխանն Գնունեաց:

Զնոսա զամենեսեան նրամայեաց երթալ ընդ մեծի նազարապետին Վաղարշու, զի նստուցեն զերանելին Յուսիկ յարքունական կառսն, և խաղացեն զնացեն 'ի սանմանակի՛ցս իւրեանց 'ի մայր քաղաքացն Գամրաց 'ի Կեսարիա, նասուցանել զմանուկն Յուսիկ յառաքելական աթոռն նայրապետացն: Գնացին եկին նասին 'ի քաղաքն կեսարացւոց. եառն 'ի կաթողիկոսութիւն զՅուսիկն ձեռնադրել, զորդին Վրթանայ: Եւ նստուցին զնա յաթոռն Առաքելոյն Թադէոսի, և յաթոռ իւրոյ նաւուն մեծին Գրիգորի. և դարձան անդրէն մեծաւ խնդութեամբ, եկեալք տողջութեամբ, յաջողեալք նասանէին յԱյրարատեան աշխարհն: Եւ զիշխանսն երկոսին, և նոցուն Ծոփացն, յառաջ արձակէին անտաւորս առ արքայն:

Հայոց աշխարհը ժողովվեց և մեծ պաշտամունքով, սաղմոսներով ու հոգևոր երգերով, կանթեղներով մոմեղեններով, անուշահոտ խնկով՝ արքունական կառքերով փոխադրեցին սուրբ Վրթանեսին, մեծ վշտով՝ որ որբ մնացին իրենց բնիկ տերից և հոգևոր վարդապետից. և մեծ լաց ու կոծով ու տրտմությամբ բերին Դարանաղյաց գավառի Թորդան գյուղը և Գրիգոր մեծ հայրապետի մոտ նրա մարմինը ամփոփեցին և նրա կենդանի մշտակատար հիշատակը կատարելով ետ դարձան:

## ԺԲ

### ՏԻՐԱՆԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ ԻՐ ՀՈՐԻՑ ՀԵՏՈ ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՀՈՒՍԻԿԸ ԻՐ ՎՐԹԱՆԵՍ ՀՈՐ ՄԱՀԻՑ ՀԵՏՈ ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ ԱԹՈՌԸ ՆՍՏԵՑ ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՏԻՐԱՆԻՑ ՍՊԱՆՎԵՑ՝ ՆՐԱՆ ՀԱՆԴԻՄԱՆԵԼՈՒ ՊԱՏՃԱՌՈՎ

Երբ Խոսրով թագավորը այս աշխարհից փոխվեց՝ Մեծ Հայք աշխարհի թագավորական իշխանությունը առավ Խոսրովի որդին Տիրանը: Նույնպես և մանուկ սուրբ Հուսիկը հաջորդեց ու գրավեց Հայոց հայրապետների տեղը: Տիրան թագավորը, սովորության համաձայն, նրա հետ գումարեց մեծ նախարարներին—Վաղարշ մեծ հազարապետին[40], որ Մեծ Հայքի հազարապետության տոհմից էր և Անձիտի իշխանն էր, և նրա հետ Մեծ Ծոփքի Զարեհ իշխանին և (մյուս) Ծոփաց աշխարհի Վարազ Շահունի իշխանին և Հաշտենից գավառի Գնիթ իշխանին Կամսարական տոհմից և Վանանդի իշխան Որոթին և Անձևացյաց տոհմի իշխան Շահենին, և Գողթնի իշխան Առամին, և Կողբացոց իշխան Մանավազին, և Ձորի աշխարհի իշխան Գորութին, և Խոռխոռունյաց տոհմից Մախազության տան իշխան Մանասպին, և Սահառունյաց տոհմի իշխան...ին[41], և Գնունյաց իշխան Աբային: Այս բոլորին հրամայեց՝ Վաղարշ մեծ հազարապետի հետ գնալ, երանելի Հուսիկին արքունական կառքը նստեցնել, տանել տանել սահմանակից Գամիրքի[42] Կեսարիա մայրաքաղաքը՝ մանուկ Հուսիկին հայրապետների առաքելական աթոռը բարձրացնելու համար:

Նրանք ելան գնացին ու հասան Կեսարացոց քաղաքը և կաթողիկոս ձեռնադրել տվին Հուսիկին, Վրթանեսի որդուն, նրան նստեցրին Թադեոս առաքյալի և իր պապի՝ մեծն Գրիգորի աթոռը, և մեծ խնդությամբ ետ դարձան ողջ առողջ և աջողությամբ եկան հասան Այրարատյան աշխարհը: Եվ իրանցից առաջ ավետավորներ ուղարկեցին երկու Ծոփքերի երկու իշխաններին:

Ապա իբրև լուաւ ինքն արքայն, ընդ առաջ ելանէր նմա 'ի դաշտն յայն կոյս գետոյն Տափերն կամրջի, ամենայն բանակօքն բազմութեամբք: Ապա ողջոյն տուեալ զցանկալի ողջոյնն միմեանց, անցեալ ընդ կամուրջն Տափերայ, մտեալ 'ի քաղաքն մեծ յԱրտաշատ, յեկեղեցին դառնայինն. և նստուցանէին զցանկալի մանուկն Յուսիկ յաթոռ հայրապետական: Սա զնետ հօրն իւրոյ Վրթանայ զառաքելական յաջորդէր, հայրական շափոցն նմանեալ ծնունդ, ամենևին զամենայն յամենայն հրեշտակակրօն զանձն ցուցանէր, զամենայն ըստ պարգևացն աստուծոյ զշնորհացն կատարէր: Քրիստոսական բանաւոր խաշանցն հովուելով, աւետարանական պատգամաւորօքն խրատելով ընծեռեցաւ: Զի աւուրբք մանուկ, տիօք տղոյզ, և բարձր հասակաւ. գեղով երեսաց սքանչելի և չքնաղ, զի այլ ոչ գտանէր ուրեք նման նմա 'ի վերայ երկրի: Սուրբ և պայծառ հոգւով, ամենևին ոչ ինչ զբաղեալ ընդ աստիս. իբրև զքաջ սպառազէն Քրիստոսի, իբրև զախոյեան նահատակ 'ի տղայութենէ տիոց ճշկանէր, աներևոյթ թշնամոյն յաղթութեամբ սպառնացեալ: Ակն առնել կամ աշառել մարդկան բնաւ ամենևին ոչ գիտէր. այլ զբան Հոգւոյն սրբոյ սուսեր ածեալ ընդ մէջ իւր կրէր: Իսկ շնորհատուր Հոգւոյն լցեալ զնա, գիտութեան էր աղբիւրացեալ զամենայն լսելեացն ցալս ականջացն և սրտիցն երկրին:

Իսկ բազմաւորն Տիրան և այլ մեծամեծ ազատացն նախարարացն, կամ աշխարհն ամենայն, ոչ ինչ ըստ աստուծոյ կամացն վարս յանձն առեալ՝ իմաստուն ինչ գնացեալ լինէին: Քան զամենայն մանաւանդ բազաւորն կամ իշխանն սպանութիւնս՝ անխտիր ի' հեղուլ զարիւն արդար 'ի տարապարտուց գործէին, և այլ մեղս բազումս. և ոչ հայէին 'ի հրամանս վերնայն 'ի հանապազորդ լսելոյն ոչ խրատեալք՝ ի յուշն նոցա առնելոյ յաստուծոյ յայսն: Վասն որոյ հանապազ ընդդիմացեալ լինէր երանելի հայրապետն Յուսիկն, վարժ բանիւքն համեստութեան քրիստոսական խրատուն՝ հանապազ յերեսսն յանդիմանութեամբ հարկանելով խրատելով կշտամբելով արկանէր, զապականումն տանջանաց յաւիտենական պարգևութեան անշէջ հրոյն դատաստանին պատմելով, բողոքէր: Զի թէպէտ աւուրբք մանուկ էր. այլ զաւագութիւն ծերութեան խրատուն յինքեան ցուցանէր, զհայրենի զործ խրատականն զառաւելութիւն քաջութեան կատարէր: Հարցն նմանեալ 'ի մանկութեան իմաստութեան, զծերութեան պատիւ պատուական պատուականութեանն զհանճարոյն զաւարտութեան անաշութեան, իբրև զծաղիկ 'ի դիտաւորութեան հասեալ, վասն ճշմարտութեան մինչ 'ի մահ մարտնչէր. նախ զանձն ապրեցուցա-

Այս լսելով՝ ինքը թագավորն անձամբ բոլոր բանակի բազմության հետ նրան ընդ առաջ էր գնում դաշտերով մինչև Տափերի կամուրջի[43] այն կողմը: Ապա միմյանց ցանկալի ողջույնը տալով՝ անցնում էին Տափերի կամուրջը, մտնում էին մեծ Արտաշատ քաղաքը, դիմում եկեղեցին, ցանկալի մանուկ Հուսիկին նստեցնում էին հայրապետական աթոռը: Սա իր Վրթանես հորից ժառանգել էր առաքելական (ընթացքը), հատկություններով հորը նման որդի դառնալով. ամեն բանում ամենակերպ երևում էր հրեշտակային վարքով, ամեն ինչ կատարում էր աստծուց պարգևած շնորհքով: Նա հովվում էր Քրիստոսի բանավոր հոտը և խրատում էր ավետարանի պատգամներով: Նա տարիքով դեռ մանուկ էր, բայց առույգ, բարձր հասակով, դեմքի սքանչելի գեղեցկությամբ և չքնաղ, որի նմանը աշխարհում ուրիշ տեղ չէր գտնվում: Հոգով մաքուր էր և պայծառ, աշխարհային բաներով բնավ չէր զբաղվում, այլ իբրև Քրիստոսի քաջ սպառազեն, իբրև ախոյան նահատակ՝ տղայության հասակից ի վեր խիզախում էր՝ աներեվույթ թշնամուն հաղթել սպառնալով: Նա բոլորովին չգիտեր աշառություն անել, ակնածել, այլ սուրբ հոգու խոսքերը կրում էր՝ ինչպես մեջքին կապած սուր. իսկ շնորհատուր հոգին նրան լցրեց գիտությամբ, որ աղբյուրի նման ոռոգում էր լսողների ականջները և նրանց սրտերի երկիրը:

Իսկ Տիրան թագավորը և մյուս ավագ նախարարները և բոլոր աշխարհը ամենևին չէին վարվում աստծու կամքով, խելացի կյանք վարելով: Մանավանդ թագավորն ուիշխանները առավելապես անխտիր սպանություններ էին գործում, զուր տեղը անմեղ արյուն թափում և ուրիշ շատ մեղքեր էին գործում. նրանք ուշք չէին դարձնում տիրոջ հրամաններին, չնայելով որ (Հուսիկը) անդադար խրատում էր նրանց և հիշեցնում էր աստծու պատվիրանները: Այս պատճառով երանելի Հուսիկ հայրապետը շարունակ նրանց դիմադրում էր, վարժ խոսքերով, համեստությամբ ըստ Քրիստոսի խրատի, միշտ նրանց երեսովն էր տալիս, հանդիմանում էր, խրատում, մեղադրում. պատմում էր (աստծու) բարկության հավիտենական տանջանքների՝ (վերջին) դատաստանի անշեջ հուրը, և բողոքում էր: Որովհետև թեպետ տարիքով մանուկ էր, բայց գործ էր դնում ավագ տարիքի՝ ծերության խրատը, խրատելու և առաքելության հայրենական գործը մեծ քաջությամբ կատարում էր: Մանկությունից ի վեր իմաստությամբ հայրերին նմանելով՝ ծերության պատվաբեր պատիվը, զվարթ հանճարը արտահայտում էր ինչպես մի անուշահոտ ծաղիկ. ճշմարտության համար կռվում էր մինչև մահ[44]. նախ իր անձը փրկելու, հետո նաև ուրիշների հոգիների

նելոյ, և վասն այլոց հոգւոց զնոյն առնել կամէր: Այնչափ էր երկիւղած՝ 'ի տեառնէ, զի ոչ զսէր և ոչ զահ թագաւորին առ ոչինչ համարէր: Իսկ գիտութեամբն աստուծոյ, դպրութեան գրոց սրբոց արուեստաւն լի էր. և առնոյր 'ի պատուհասել և յանդիմանել. արգելոյր զթագաւորն և զմեծամեծսն չտալ թոյլ մտանել յեկեղեցին:

Այր էլեալ կայր մեծապէս պատուհասիւք քահանայական իշխանական բանիւ յանդիմանութեան, վասն անօրէնութեան պոռնկութեանն և արուագիտութեան և արեանհեղութեանն, զրկութեան, յափշտակութեան, աղքատատեցութեան և այլոց բազում մեղաց՝ որ այսմիկ նման իցէ: Եւ ինքն վասն ահի սաստից օրինացն տեառն՝ թշնամի համարեալ թուէր, որոց հանապազ անցանէին զկարգօքն Քրիստոսի, և հանապազ 'ի սմանէ սուրբ բանիւն աստուծոյ խոցոտեալ լինէին: Եւ այս մարտ պատերազմի էր սորա առ հասարակ ընդ ամենեսեան յանդիմանութեան զամենայն աւուրս կենաց իւրոց: Որ իբրև օր մի յաւուրց տարեկան, դիմեաց գալ թագաւորն Տիրան հանդերձ այլովք աւագանւովն մտանել յեկեղեցին. իսկ նա ընդդէմ բարբառեալ ասէր. Չես արժանի, հի՞մ գաս, մի՛ գար 'ի ներքս: Վասն որոյ անդէն 'ի ներքս քարշէին զնա յեկեղեցւոյն, բրածեծ եղել ջաղջախեալ քահանայապետն աստուծոյ սուրբ, երանելի մանուկն Յուսիկ, կիսամահ կոչկոնեալ ընկեցեալ լինէր: Զոր բարձեալ պաշտօնէիցն դրան եկեղեցւոյն 'ի Բնաբեղ բերդէն արքունի՝ մեծ Ծոփաց գաւառին, եկին բերին 'ի գաւառն Դարանաղեաց 'ի գեւղն Թորդան. և անդ ոչ ինչ յետ բազում աւուրց հանգեաւ, և եդաւ մօտ առ Գրիգորի և ընդ հարս իւր:

## ԺԳ

## ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՅԵՏ ՄԱՀՈՒԱՆՆ ՅՈՒՍԿԱՆՆ ԱՆԱՌԱՋՆՈՐԴ ԼԻՆԷՐ ԵՐԿԻՐՍ ՀԱՅՈՑ ԵՒ ՈՉ ՈՐԴԻՔՆ ՅՈՒՍԿԱՆՆ ԱՐԺԱՆԻ ԵՂԵՆ ՀՕՐՆ ԱԹՈՌՈՅՆ

Եւ յետ այսր անցեալ ժամանակաց, զկնի թոպամահն լինելոյ երանելոյն Յուսկան, առաջնորդ եղեալ՝ իբրև զկոյրս մոլորեցան երկիրն լեզուին Թորգոմական աշխարհի: Քանզի տուաւ նոցա ոգի մոլորութեան, աչս՝ զի մի՛ տեսցեն, և ականջս՝ զի մի՛ լուիցեն, և սիրտ՝ զի մի՛ իմասցին դառնալ յապաշխարութիւն: Եւ զխաւարային խորխորատ կորստեան գտեալ, հարեալ իւրեանց անձանց ճանապարհ, կործանեցան անկեալք. զի ոչ այն

համար նույն բանն ուզում էր անել: Այնքան երկյուղած էր տիրոջից, որ ոչինչ էր համարում թագավորի սերը կամ նրա անը: Իսկ սատծու զիտությամբ, սուրբ գրքի ընթերցման արվեստով լի էր, որ և գործ էր դնում պատժելու և հանդիմանելու համար, և արգելում՝ թույլ չէր տալիս թագավորին և մեծամեծներին եկեղեցի մտնել:

Այսպես նա քահանայական իշխանության խոսքով նրանց կապում հանդիմանում էր ու խիստ պատուհասում նրանց անօրենության, պոռնկության, արվագիտության, արյունահեղության, զրկողության, հափշտակության, աղքատատեցության և սրանց նման ուրիշ շատ մեղքերի համար և տիրոջ օրենքի սաստի պատճառով միշտ թշնամի էր համարվում նրանց՝ որովհետև այդ օրենքից դուրս էին գալիս, որովհետև նրանք շարունակ նրանից խոցոտվում էին սատծու սուրբ խոսքով: Եվ այս հանդիմանությունը, այս պատերազմը նա շարունակ մղում էր բոլորի հետ իր ամբողջ կյանքի ընթացքում:

Եվ ահա մի անգամ, տարեկան (տոնի) մի օր, Տիրան թագավորը մյուս ավագանիի հետ եկավ որ եկեղեցին մտնի, իսկ նա դեմ դուրս գալով ասաց. «Արժանի չես, ինչո՞ւ ես եկել. ներս մի՛ մտներ»: Ուստի նրան խեղդեցին, ներս էին քաշում եկեղեցին, բիրերով ծեծելով ջարդեցին սատծու քահանայապետին, սուրբ ու երանելի մանուկ Հուսիկին, և ջարդուփշուր անելով կիսամահ թողին այնտեղ: Նրան վերցրին (արքունական) դռան եկեղեցու պաշտոնյաները արքունի Բնաբեղ բերդից, Մեծ Ծոփք գավառից, և բերին հասցրին Թորդան գյուղը Դարանաղյաց գավառում, որտեղ քիչ օրերից հետո վախճանվեց ու թաղվեց Գրիգորի և հայրերի մոտ:

ԺԳ

### Թե ինչպես Հուսիկի մահից հետո անառաջնորդ էր մնում հայոց աշխարհը, որովհետև Հուսիկի որդիքը արժանավոր չէին իրենց հոր աթոռին

Այն օրերից հետո, երբ երանելի Հուսիկը բաժնեծ լինելով մահացավ՝ հայ լեզուն խոսող թորգոմական աշխարհը անառաջնորդ մնալով՝ կույրերի նման մոլորվեց: Նրանց տրվեց մոլորության հոգի,— աչքեր՝ որ չտեսնեն, ականջներ՝ որ չլսեն և սիրտ՝ որ չհասկանան և չդառնան ապաշխարության: Նրանք խավարած՝ կորուստի խորխորատը հասան, իրենք իրենց համար ճանապարհ բանալով՝ կործանվեցին ու

ոք զոյր՝ որ նոցա մոլեգնութեանն պատկառուկս արկանէր ըստ մեղս գործելոյ, այլ անհովիւք էին: Զկորստեան ճանապարհն համարձակէին՝ 'ի չարիս կամօք գնացեալք, և կամօք լեալք որդիք բարկութեան. և առանց աստուծոյ շրջէին յաշխարհի կամակոր ազգ տանն Հայոց երկրին: Նմանեալք լինէին այնմ հօտի խաշանց, որ զպահպանութիւն շանցն պահողաց պահապանացն 'ի բաց մերժեցին, և կամօք իւրեանց կերակուր գէշ թշնամութեան գայլոցն մատնեցան, ըստ նմանութեան մեծին աթենացւոց քաղաքին:

Յայնմ ժամանակի զթագաւորն իւրեանց օրինակ չարի առնէին, և նովին օրինակաւ ձևել սկսան, և նոյնպէս գործել: Զի 'ի վաղնջուց, յորմէ հետէ առին նոքա զանուն քրիստոնէութեանն, լոկ միայն իբրև զկրօնս իմն մարդկութեան յանձինս իւրեանց և ոչ ջերմեռանդն ինչ հաւատովք ընկալան, այլ իբրև զմոլորութիւն իմն մարդկութեան 'ի հարկէ: Ոչ եթէ որպէս պարտն էր գիտութեամբ յուսով կամ հաւատով, բայց միայն սակաւ ինչ զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանց, որք էին հասու ինչ այնմ փոքր 'ի շատէ: Իսկ որք արտաքոյ քան զգիտութիւն արուեստին էին այլ խառնաղանձ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն և կամ շինականութեանն, եթէ զցայգ և զցերեկ նստեալ վարդապետացն և ըստ նմանութեան ամպոցն իբրև զյո՛րդահեղեղ ինչ անձրևաց սաստկութիւն զվարդապետութիւնն 'ի վերայ հոսէին, ոչ ոք 'ի նոցանէն և ոչ մի ոչ, և ոչ մի բան, և ոչ կէս բանի, և ոչ դոյզն յիշատակ ինչ, և ոչ նշմարանս ինչ զոր լսէինն, և ոչ կարէին ինչ ունել 'ի մտի: Վասն զի միտք իւրեանց ընդ անպիտանս ընդ անօգուտս նեբ. զբօսեալ էին. զոր օրինակ մանկունք տղայք ընդ մանգութեանն և ընդ տղայութեանն խաղալիկ խանկարեալք, և զպիտոյիցն և զկարևորացն ոչ ինչ փոյթ արարեալ, սոյնպէս և դեգերեալ մաշէին յանուղղայ կըրթութիւն ընդ չքնոտի մտացն 'ի հնութիւն հեթանոսութեանց սովորութեանց, բարբառոս խուժադուժ միտս ունելով: Եւ զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք 'ի փոյթ կրթութեանցն, և նմին հաւատացեալք, և 'ի նոյն հանապազորդեալք, 'ի հեռ և 'ի նախանձ ընդ միմեանս չարակնութեամբ, թշնամութիւն ոխութեանց, զմիմեանս խածատել, և նենգել այր զընկեր և զեղբայր: Սիրելիք սիրելեաց, և մերձաւորք մերձաւորաց, և ընտանիք ընտանեաց, ազգականք ազգականաց, խնամիք խնամեաց դնէին զայթակղութիւն:

Անդ էր տեսանել այր ընկերի արեամբք ծարաւեալք ըմպելով, ոգովք չափ զային վնասուցն՝ անխրատ վարս և անհանճար միտս ունելով: Եւ զգիցն հնութեան պաշտամունս 'ի նմանութիւն պոռնկութեան գործոյն ընդ խաւար կատարէին. և ոմանք զնոյն իսկ ցանգութիւն զիջու-

ընկան, և չկար մեկը, որ նրանց ամաչեցներ մոլեգնության գործերից ու մեղքերից, որովհետև անհոգիվ էին մնացել: Նրանք համարձակ գնում էին կորուստի ճանապարհով, իրենց կամքով չարիքների մեջ էին ընկնում, իրենց կամքով դառնում էին բարկության որդիներ և աշխարհում շրջում էին առանց սանձի՝ Հայոց աշխարհի այդ կամակոր ազգը: Նրանք նմանում էին ոչխարների այն հոտին, որոնք իրենց պահապան և պաշտպանող շները իրենցից հեռացրին և իրենց կամքով մատնվեցին թշնամի գայլերին, նրանց կերակուր դարձան Ատենացոց մեծ քաղաքի նմանությամբ:

Այդ ժամանակ (մարդիկ) իրենց համար չարի օրինակ վերցրին թագավորին, նրա պես սկսեցին ձևել, նրա պես գործել: Որովհետև վաղուց ի վեր, երբ նրանք քրիստոնեության անունն ստացան՝ այդ (կրոնը) հանձն առան հարկից ստիպված՝ իբրև մի մարդկային սովորություն, իբրև մի մոլորություն, առանց ջերմեռանդ հավատի: (Կրոնն ընդունեցին) ոչ թե գիտությամբ, հույսով ու հավատով, ինչպես որ հարկն էր, այլ միայն քչերը, որոնք փոքր ի շատե ծանոթ էին հունական կամ ասորի գրագիտության՝ մասամբ հասկանում էին այդ (կրոնը): Իսկ որոնք որ գրագիտության արվեստից զուրկ էին, նախարարների և շինականների մյուս խառնիճաղանճ բազմությունը,— եթե ուսուցիչները նստելով գիշեր ցերեկ ամպերի նման ուսումը ինչպես հորդ անձրև նրանց վրա հոսեցնեին՝ նրանցից ոչ մեկը ոչ մի խոսք, ոչ կես խոսք, ոչ մի բան, ոչ մի նշույլ իրենց լսածներից չէին կարող մտքերը պահել կամ հասկանալ: Որովհետև նրանց մտքերն զբաղված էին անպիտան, անօգուտ բաներով, ինչպես փոքր երեխաները, որոնք տարվում են իրենց երեխայական խաղալիքներով. այնպես և նրանք, անփույթ լինելով պիտանի ու կարևոր բաներ՝ իրենց տհաս մտքերով՝ իրենց (ժամանակը) մաշում էին պարսավելի կրթություններով, հին հեթանոսական սովորություններով, խուժադուժ բարբարոսական միտք ունենալով: Նրանք սիրում էին իրենց առասպելների երգերը, վիպասանությունները, նրանցով կրթվում էին, նրանց հավատում էին, նրանց մեջ հարատևում: Ատելություն ու նախանձ իրար դեմ, չարկամություն, թշնամություն, ոխակալություն, իրար խածատել, ընկերին և եղբորը նենգել, սիրելիները սիրելիներին, մերձավորները մերձավորներին, ընտանիքներն ընտանիքներին, ազգականներն ազգականներին, խնամիները խնամիներին դավեր էին սարքում: Այնտեղ մարդիկ ծարավ էին մեկը մյուսի արյունը խմելու, ճիգ էին թափում իրար վնասելու, անուղղա վարքի և անխելքության պատճառով: Աստվածների հին պաշտամունքները կատարում էին գիշերները՝ նման

թեան պոռնկութեան կատարէին յանձինս իւրեանց: Վասն այսորիկ ոչ զխրատ իմաստութեան լսէին, և ոչ առաջնորդացն ասելոյ զաստուծոյ պատգամսն անսացեալք հնազանդէին. այլ վասն 'ի նոցանէն յանդիմանութեանն, ատէին և հալածէին զնոսա և սպանանէին: Եւ ըստ մարգարէական բանին առ նոսա ասելոյ, թէ «Ատէին 'ի դրունս զյանդիմանիչս», և զբանս սուրբս արհամարհէին: Քանզի ոչ էին թէ որպէս այլոց ազգականացն և հաւատացելոցն կամ իմաստնոցն ետ նոցա զգիտութիւն ճշմարտութեան հաւատոցն աստուածաբանիւ քարոզութեանն, որպէս որք ընկալանն՝ առին գոհութեամբ և հաւատացին և վայելեցին 'ի շնորհս մարդասիրութեանն արդեւք, այլ ըստ հրէական մտացն կուրացելոց և խաւարելոց և կաղացելոցն 'ի ճշմարտութենէն: Թերևս և առ այս ազգ միտէր բանն մարգարէական յառաջագիտական, եթէ «Որդիք անմիտք, և ոչ որդիք իմաստունք. իմաստունք են զչար գործել, և զբարի գործել նոքա երբէք ինչ ոչ գիտացին»: Եւ դարձեալ ասէ. «Որդիք եղջերիկք խստասիրտք, խստաշունչք, ոյք դառնացուցին զիս նոքա և հարք իւրեանց»: Այսպէս լքեալք և սոքա, զի ոչ իմացան և ոչ հաւատացին յաներևոյթսն աստուծոյ երևելեօքս. յարարածոց աստի չիմացան՝ զարարիչն և զկարգիչ և զխնամիչն առնուլ 'ի միտ: Յաճախեաց զերեվոյթ նշանս իւր և զքանչելիս, մինչև զմարդկային բնութիւնս շարժեաց 'ի կերպարանս անասնոյ. ուստի փրկութեանն նոցա լինէին պատճառք:

Եւ մինչև յայս յանպիտան և յանմիտ թագաւորութիւնն իսկ, առ այն թագաւորաւ Տիրանաւ, ընդ նոյն իսկ ընդ այս նայեցեալք, անցուցին չարութեամբք քան յամենայն դարս: Մանաւանդ քան զամենայն, զի զգլխաւորն առաջնորդն թօպամահ սպանին, և այնուհետև ըստ կամաց գնային: Քանզի ոչ ոք այն ոք գոյր, յորմէ խիթային յանդիմանութեանն՝ որ նոցա արգել արկանէր գնալ յանօրէն ճանապարհն ելանել: Ապա բարձեալ թողեալ եղեն նոքա 'ի ձեռանէ տեառն, երթեալք ըստ հետ կամաց սրտից իւրեանց. ապա չկայր ոք առաջնորդ և ոչ գլուխ քահանայութեանն: Սակայն փոյթք եղեն նոքա ոչ վասն ճշմարտութեան ինչ խնդրել իւրեանց հովիւ կամ առաջնորդ՝ որ կայցէ գլուխ ժողովրդեանն հոտապետութեանն, այլ բանից ընկեր իւրեանց խնդրէին զայն ոք՝ որ ըստ նոցա կամացն վարիցէ:

Յայնժամ խորհուրդ արարեալ թագաւորին և իշխանացն, և համօրէն իսկ աշխարհին, թէ զո՞ արժանի այնմ իմիք գտանիցեն. քանզի երկու մնացեալք[11] երկուորիք երկու մանգունք, միումն Պապ անուն, և

պոռնկական գործի. ոմանք հենց իրենց վրա կատարում էին նույն պոռնկական ցանկությունը: Ուստի ո՛չ խելացի խրատի էին լսում և ոչ հնազանդում էին առաջնորդների քարոզած աստծու պատգամներին, այլ նրանց հանդիմանական խոսքերի համար նրանց ատում էին, հալածում և սպանում: Եվ ինչպես մարգարեական խոսքը ասել էր նրանց, թե «Հանդիմանողներին ատում էին դռներում». այսպես էլ նրանք արհամարհեցին սուրբ խոսքերը: Որովհետև աստվածային խոսքի քարոզությունը նրանց չտվեց ճշմարիտ հավատի գիտությունը ինչպես ուրիշ ազգերին, հավատացյալներին ու իմաստուններին[45], որոնք զոհությամբ ընդունեցին, հավատացին և աստծու մարդասիրության շնորհը վայելեցին, այլ հրեաների կուրացած ու խավարած մըտքերի նման նրանք կաղում էին ճշմարտության մեջ: Գուցե այս ազգին էլ էր վերաբերում մարգարեի նախագուշակ խոսքը, թե «Անմիտ որդիք և ոչ իմաստուն որդիք, իմաստուն են չարիք գործելու մեջ, իսկ բարիք գործել նրանք երբեք չգիտցան»: Եվ դարձյալ ասում է. «Որնդերես, խստասիրտ, խստաշունչ որդիք, որոնք ինձ վշտացրին, իրենք և իրենց հայրերը»: Սրանք էլ նույնպես լքված էին, որովհետև չհասկացան և աստծու աներևույթներին չհավատացին երևցող բաների միջոցով, արարածների միջոցով չճանաչեցին արարչին, չհասկացան նրանց կարգիչին ու խնամողին: Նա հաճախեց իր երևցող նշաններն ու սքանչելիքները, նույնիսկ մարդկային բնությունը վերածեց անասնի կերպարանքի, որ և պատճառ դարձավ նրանց փրկության:

Եվ հենց այս անպիտան ու անմիտ թագավորության ժամանակ, այն Տիրան թագավորի օրերում, հենց նրան նայելով՝ չարություններով բոլոր դարերից գերազանցեցին: Ամենամեծ (չարությունն) այն էր, որ իրենց գլխավորին և առաջնորդին բրածեծ անելով սպանեցին, և այնուհետև ամեն ոք վարվում էր իր ուզածի պես: Որովհետև այլևս չկար մեկը, որի հանդիմանությունից քաշվեին, որ նրանց արգելք դներ անօրեն ճանապարհով գնալու: Աստված էլ նրանց բարձիթողի արավ, նրանք էլ իրենց կամքին, իրենց սրտի ցանկություններին հետևեցին, որովհետև չկար ո՛չ առաջնորդ և ոչ քահանայության գլուխ:

Բայց նրանք անփույթ չգտնվեցին (մի մարդ ընտրել), ոչ նրա համար, որ իսկապես իրենց հովիվ ու առաջնորդ լինի, ժողովրդի հոտապետ դառնա, այլ փնտրում էին այնպիսի մեկին, որ իրենց զուգընկեր լինի և իրենց ուզածի պես վարվի:

Այն ժամանակ թագավորն, իշխանները և բոլոր (Հայոց) աշխարհը խորհուրդ արին, թե ո՞վ է արժանի այդ պաշտոնին, որովհետև (Հուսիկից) մնացած երկվորյակ մանուկները, մեկի անունը Պապ,

միւսումն Աթանագինէս, ճանաչէին ստահակք և անխրատք, որք ոչ ինչ ըստ իմաստութեան աստուածեղէն զրոց, և ոչ վարժ հրահանգօք առաքինութեանցն, և ոչ հօրն իւրեանց չափոց ինչ նմանեցին միտ եդեալ, և ոչ ընդ իւրեանց ծնիչսն հայրն Յուսիկ նայեցան, և ոչ մեծին Գրիգորի յառաքինութիւնսն ուշ եդին, և ոչ զիւրեանց հոգևորն պատուականութիւն յափտենական կենացն զպատիւ ինչ եդին 'ի մտի: Այլ իւրեանց ժամանակի դարուն նմանեալք, և պանծացեալք յիւրեանց յանցաւոր սնոտի 'ի մարմնաւոր տոհմականութիւնն ազգականութեան, զինուորական զվարսն ընտրեցին: Վասն այնորիկ անընտիրք եղեալք, 'ի հպարտութեանն խոտեցան ըստ առաջագոյն տեսլեանն հօրն իւրեանց. ոչ մտին 'ի լուծ աստուածպաշտութեանն: Եւ ոչ այլ ոք 'ի նմին տանէ զաւակին Գրիգորի գոյր ոք. զի այնչափ իսկ կային մարմնաւոր զաւակին, և սոքա ինչ ոչ թէ արժանի հարցն գնացեալ նմանեցին վարուց: Եւ այլ ոչ ոք էր, որ զառաջնորդութիւն գլխաւորութեան քահանայապետութեանն վերակացութեանն ոք տէրունական տանն հրամանատարութեանն կատարեալ, պաշտաման յաջորդէր:

## ԺԳ

## ՅԱՂԱԳՍ ՎԱՐՈՒՑ ԵՒ ԳՈՐԾՈՑ ՄԵԾԻՆ ԴԱՆԻԷԼԻ ԱՌՆ ԱՍՏՈՒԾՈՅ, ԵՒ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՅԱՆԴԻՄԱՆԱՑ ԶԹԱԳԱՒՈՐՆ ՏԻՐԱՆ, ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՊԱՏՈՒՀԱՍԵԱԼ ՄԵՌԱՒ 'Ի ՆՄԱՆԷ

Բայց յայնժամ դեռ ևս կենդանի էր ծերունի սուրբն մեծն քորեպիսկոպոսն Դանիէլ, այր սքանչելի: Աշակերտ եղեալ էր սա մեծին Գրիգորի, վերակացու և գլխաւոր եկեղեացն նահանգին Տարօնոյ, Գրիգորի ձեռական՝ իշխանութեանն կողման մասին գործակալութեանն մեծի դատաւորութեանն, ունէր զիշխանութիւնն զայն առանձինն· այլ վերակացու և հրամանատար տեսուչ և հոգաբարձու ամենայն եկեղեցեացն Հայոց մեծաց ընդ ամենայն տեղիս. այլ և 'ի կողմանս Պարսից յօտար տեղիս քարոզեաց սա, և անթիւ 'ի մոլորութենէ դարձոյց:

Եւ էր սա ազգաւ Ասորի. և ունէր սա զաստիճան աթոռոյն գլխաւորութեան Տարօնոյ, 'ի մեծն և նախ զառաջին եկեղեցին 'ի մայր եկեղեցեացն ամենայն Հայաստանեաց: Այս ինքն նախ և զառաջին և գըլխաւոր տեղին պատուական. զի յառաջ նախ անդ շինեալ էր սուրբ եկեղեցին, և ուղղեալ սեղան յանուն տեառն: Նոյնպէս և 'ի ներքոյ քան զնա մարգարէանոցն Յովհաննու, նոյնպէս մօտ 'ի տուն տեառն Հանգիստ առաքելոցն: Արդ այս տեղիք վասն յառաջակարգութեան, կանոնաւ 'ի հայրապետացն և 'ի թագաւորացն պատուեալք լինէին. որպէս 'ի Դարանաղեաց գաւառին յեկեղեցին Թորդանու պատուին վասն զե-

մյուսինը Արտաշատինն, ճանաչված էին իբրև անխրատ ստահակներ, որոնք ո՛չ աստվածային գրքի ուսումն ունեին, ո՛չ դաստիարակված էին առաքինության մեջ, ո՛չ իրենց հայրերին նմանեցան, ո՛չ իրենց ծնողին՝ Հուսիկին նայեցին, ո՛չ մեծն Գրիգորի առաքինություններին ուշադիր եղան, և ոչ իրենց հոգևոր պատվականությունը՝ հավիտենական կյանքի պատիվը մտքերը բերին. այլ իրենց դարի (մարդկանց) նմանելով իրենց սնոտի մարմնավոր ազնվականությամբ և ազգականությամբ պանծալով՝ զինվորական կյանքն ընտրեցին: Այս պատճառով ընտրելի շղարձան նրանք, այլ իրենց հպարտության պատճառով մերժվեցին, ինչպես առաջուց տեսիլքում հայտնվել էր նրանց հորը, նրանք աստվածապաշտության լծի տակ չմտան: Եվ Գրիգորի տան սերունդներից ուրիշ մեկը չկար. որովհետև նրա մարմնավոր զավակները միայն սրանք էին, իսկ սրանք իրենց վարքերով չնմանեցան իրենց հայրերին: Եվ ուրիշ մեկը չկար, որ առաջնորդության, գլխավոր քահանայապետության, եկեղեցիների վերակացության ու հրամանատարության պաշտոնը կատարեր:

ԺԴ

ՄԵԾՆ ԴԱՆԻԵԼԻ՝ ԱՍՏԾՈՒ ՄԱՐԴՈՒ ՎԱՐՔԻ ԵՎ ԳՈՐԾԵՐԻ ՄԱՍԻՆ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆԱ ՀԱՆԴԻՄԱՆԵՑ ՏԻՐԱՆԻՆ ԵՎ ՆՐԱՆԻՑ ՍՊԱՆՎԵՑ

Այս ժամանակ դեռ կենդանի էր սուրբ և մեծ ծերունի Դանիել քորեպիսկոպոսը[46], մի սքանչելի մարդ: Սա եղել էր մեծն Գրիգորի աշակերտ և (նշանակված էր) վերակացու և գլխավոր՝ Տարոն նահանգի եկեղեցիների[47], որ Գրիգորի սեփական իշխանությունն էր կազմում, և այդ կողմի մեծ դատավարության գործակալ: Այս իշխանությունները նա առանձին ուներ, բայց (ընդհանրապես) վերակացու, հրամանատար, տեսուչ և հոգաբարձու էր Մեծ Հայքի բոլոր եկեղեցիներին ամեն տեղ. նա նույնիսկ Պարսկաստանի կողմերում օտար տեղերում քարոզեց և անթիվ մարդիկ մոլորությունից դարձրեց:

Սա ազգով ասորի էր և Տարոնի մեծ և առաջին եկեղեցու, բոլոր Հայաստանի մայր եկեղեցու արքունի գլխավոր աստիճանն ուներ, այսինքն առաջին և պատվական գլխավոր տեղի, որովհետև առաջին անգամ այնտեղ էր շինված սուրբ եկեղեցին և տիրոջ անվան սեղան կանգնեցրած: Նույնպես նրանից ներքև Հովհաննեսի մարգարեանոցը, նույնպես և առաքյալների Հանգստարանը՝ տիրոջ տան մոտ: Արդ՝ այս տեղերն, իբրև առաջնակարգ հայրապետներից ու քաղաքներից

րեգմանացն հայրապետին Գրիգորի: Սոյնպէս և զյիշատակս թագա-
ւորին Տրդատայ թէ կամօք թէ ակամայ, որ արժանին լեալ էր նախա-
ձանօք 'ի Քրիստոսն հաւատոց: Վասն այսորիկ կամ եղև աշխարհին զնախնեաց ժամանակին հարանց եպիսկոպոսաց զայս տեղիս պատուել, ուր սոքա եղեալն էին. զի սիրելի էր աշխարհին, պատուել զյառաջըն-
ծայն Քրիստոսի զթագաւորն իւրեանց Տրդատ: Նոյնպէս և զյառաջե-
պիսկոպոսն զնախավկայակն զԳրիգորիս. սոյնպէս և 'ի գաւառն Այ-
րարատեան զնախավկայսն Քրիստոսի, ուր Գայիանէն և Հռիփսիմէն կային, իւրեանց հանդերձ գործակցօքն, սոյնպէս առաւել և զնախե-
կեղեցին:

Այս տեղիքս սմա էին յանձն հանդերձ գաւառօքն յորս էին. հաւա-
տարիմ էր սա այնմ գլխաւոր սեղանոյն, իշխանութեան աթոռոյն հայ-
րապետացն, հաստատութեան ուխտին կաթուղիկէ եկեղեցւոյն: Եւ էր սորա ընկալեալ զքորեպիսկոպոսութեան ձեռնադրութիւն աստիճանին 'ի ձեռաց մեծին Գրիգորի, յաւուրս յորում կործանեաց զբագինս մեհե-
նիցն Հերակլայ՝ այս ինքն Վահագնի, որում տեղոյ Աշտիշատն կար-
դացեալ. որ նախ եղ զհիմունս եկեղեցւոյ սրբոյ:

Եւ էր սա այր զարմանալի, առնէր նշանս և զօրութիւնս մեծամեծս յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Սա և կօշկօք քայլելոյն գնայր 'ի վերայ ջուրց գետոց, և ոչ թանային. և ոչ հանէր սա: Եւ յա-
ւուրս ձմերանոյն՝ յորժամ կուտեալ դիզեալ զմեծութիւն բազմութիւն թանձրութեան ձեանցն կուտակեալ հիւսեալ ձեանցն 'ի վերայ ձմերա-
յին լերանցն՝ յայնպիսի լերանց 'ի վերայ ընդ այնպիսի ժամանակի կամէր ուրեք երթալ 'ի՛ պէտս ճանապարհի, յանկարծօրէն ձիւնն ցա-
մաք արջն լինէր առաջի նորա: Եւ զի կամէր 'ի հեռաստան ուրեք եր-
թալ, իբրև զփայլակն սլացեալ լինէր անաշխատ· իբրև թռուցեալ յոր կամէրն երթալ 'ի տեղին, յանկարծօրէն անդ գտանէր: Յարուցանէր զմեռեալս, առնէր և բժշկութիւնս հիւանդաց, և այլ ևս մեծ նշանս և զօրութիւնս քան զնոյնս գործէր զորս ոչ բաւեսցէ ընդ գրով նշմարա-
նաց փակել: Եւ բնակութիւն իւրոց կայեհիցն յանմարդի լերինս, այլ զտեսչութիւն մարդկան պիտոյից ոչ երբէք անփոյթ առնէր: Միահան-
դերձ մաշկանափորտն սանդաղաւոր, և կերակուր իւր արմատք բանջ-
արոց, և զաւազան անզամ ընդ ինքեան ոչ ունէր: Եւ առ բանն աս-
տուծոյ անշափ էր հզօր, զի զինչ հայցէրն յաստուծոյ՝ առնոյր, և զոր ինչ ասէր՝ այն լինէր: Եւ կայեանք տեսչութեան իւրոյ, յորժամ յանա-
պատաց 'ի շէնս իջանէր վասն գործոյ աստուծոյ, 'ի գլխաւոր տեղիսն յեկեղեցեացն լինէր: Եւ յանախ յակն աղբերն 'ի ներքոյ սարաքարձր մեհենատեղւոյն Հերակլայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի՝ որում

սահմանված կանոնով պատվվում էին, ինչպես և Դարանաղյաց գավառում պատվվում է Թորդանի եկեղեցին՝ Գրիգոր հայրապետի գերեզմանի պատճառով, ինչպես և Տրդատ թագավորի հիշատակի համար, որ կամա թե ակամա արժանավոր դարձավ քրիստոնեական հավատն առաջին անգամ ընդունելու: Ուստի աշխարհը կամեցավ պատվել այս տեղերը, որտեղ թաղված էին նախնի հայրերն ու եպիսկոպոսները: Աշխարհը սիրում էր պատվել իր Տրդատ թագավորին, Քրիստոսի առաջին հավատացյալին, նույնպես և առաջին եպիսկոպոսապետ նախավաստակ Գրիգորիսին, այսպես և Այրարատյան գավառում Քրիստոսի նախավկաներին, Գայիանեին ու Հռիփսիմեին, որ այնտեղ թաղված էին իրենց գործակիցների հետ միասին, և մանավանդ առաջին եկեղեցին:

Այս տեղերը հանձնված էին նրան գավառներով հանդերձ, որտեղ նրանք գտնվում էին. և նա հավատարիմ էր այն գլխավոր սեղանին, հայրապետական աթոռի իշխանության, Կաթողիկե եկեղեցու ուխտի հաստատության: Սա քորեպիսկոպոսական աստիճանի ձեռնադրությունն ստացել էր մեծն Գրիգորի ձեռքից այն ժամանակ, երբ նա կործանեց Հերակլի՝ այսինքն Վահագնի մեհյանի բագինները Աշտիշատ կոչված տեղում, որտեղ և հիմք դրեց առաջին սուրբ եկեղեցուն:

Սա զարմանալի մարդ էր, մեծամեծ նշաններ ու սքանչելիքներ էր գործում մեր տեր Հիսուս Քրիստոսի անունով: Առանց կոշիկները հանելու՝ ոտքով քայլելով անցնում էր գետերի ջրերի վրայով, և ոտները չէին թրջվում: Ձմեռվա օրերին, երբ խոր ձյունը կուտակված դիզված էր լինում լեռների վրա, և նա կամենում էր այսպիսի ժամանակ այսպիսի լեռներով ճանապարհորդել, ձյունը հանկարծակի ցամաքում էր նրա առաջ, սև հողը բացվում: Եվ երբ կամենում էր մի հեռու տեղ գնալ՝ առանց նեղության սլանում անցնում էր փայլակի նման. կարծես թե թռչելով իսկույն այնտեղ էր լինում՝ ուր կամենում էր գնալ: Մեռելներ էր հարուցանում, հիվանդների բժշկություն էր անում, և դեռ սրանից ավելի նշաններ ու սքանչելիքներ էր գործում, որ նույնիսկ գրով նկարագրել չէ կարելի: Նա իրան բնակություն էր հաստատել անմարդ լեռներում, բայց մարդկանց կարիքների հոգատարությունը անտես չէր անում: Նա մի զգեստ էր կրում, մաշկեղեն նափորտ[48] և սանդալներ. նա կերակրվում էր բանջարներով ու արմատներով, մինչև անգամ գավազան չէր գործածում, և այնչափ աստծուն ընդունելի էր նրա խոսքը, որ ինչ որ աստծուց խնդրում էր՝ ստանում էր, ինչ որ ասում էր՝ այնպես էլ լինում էր: Եվ իր բնակության տեղերը, երբ անապատներից[49] շեներն էր իջնում տեսչության՝ աստծու գործի համար՝ գլխավոր եկեղեցիներն էին լինում: Հաճախ նա (գալիս էր) այն աղբյուրի մոտ,

Ցոյն անուանեալ կարգան, ի՛ բագնին տեղւոջէ 'ի բացագոյն իբրև քարընկէց մի 'ի ներքոյ կուսէ, 'ի դոյզն ծործորակին 'ի սակաւ անտառակին 'ի հացուտ պուրակին՝ որում անուն տեղւոյն իսկ Հացեացն դրախտ կոչեն: Այս այն աղբիւրն է, յորում առնէր յայնժամ ևս վաղ մեծն Գրիգոր զմրկտութիւնսն զօրացն բազմաց: Յայնմ տեղւոջ էր սորա կայեանք խցկան սրբոյն Դանիէլի, էր դարափոր արարեալ բնակութիւն. և յայնմ տեղւոջ զդիտաւորութիւն այցելութեանն կատարէր:

Արդ միաժողով եղեալ մեծամեծք նախարարացն, և 'ի մի վայր եկեալք, խորհուրդք խորհեցան. հաւանեցուցին զթագաւորն, ածել զծերունին զԴանիէլ յիւրեանց բանակն, զի ածցեն կացուսցեն զնա իւրեանց գլուխ առաջնորդ, զի նստցի նա յաթոռն հայրապետական: Եւ յղեցին առ նա Ջոմն իշխանն Սահառունեաց տոհմին, և զԱրտաւան զիշխանն Վանանդայ, և զԿարէն իշխանն Ամատունեաց տոհմին, և զՎարազ իշխանն Դիմաքսենից տոհմին: Եւ եկին նախարարքն հասին գտին զնա յԸնկեղեաց գաւառին, 'ի գեւղն եկեղեցւոյն 'ի Թիլն. զի դեռ իմն զգործ մշակութեան աստուծոյ գործէր: Եւ առին զնա և ածին առ թագաւորն Տիրան, 'ի գաւառն Աղձնեաց 'ի Բառաէջ յաւան: Եւ իբրև մտանէր առաջի թագաւորին Տիրանայ քորեպիսկոպոսն մեծն Դանիէլ, անդէն 'ի ձեռն առնոյր զկշտամբութիւն յանդիմանութեանն:

Սկսեալ խօսել, յառաջ մատուցեալ, ասէր՝ «եթէ ընդէ՛ր մոռացարուք դուք զաստուած զարարիչն ձեր և զգութ նշանացն և խրատուց և զսքանչելեաց՝ զոր արար առ հարսն ձեր և առ ձեզ. և դուք դարձայք 'ի մոլորութիւն կռապաշտութեան նախնեացն ձերոց, և յատելութիւնս և յագահութիւնս և 'ի զրկութիւնս և յաղքատակերութիւնս, 'ի պոռնկութիւնս. 'ի նենգութիւնս և 'ի միմեանսզրկութիւնս և 'ի սպանութիւնս: Կործանեցայք լքեայք կասեցէք կաղացայք յարդարութեան ճանապարհաց, և թողէք դուք զբարերարն ձեր զաստուած՝ որ զձեզ յոչընչէ արար և հաստատեաց, և 'ի մոլորութիւնս ձեր անծանօթք եղերուք դուք 'ի նմանէ: Մինչ դուք զձեր անձինս անգիտս արարեալ էիք 'ի կորստեանն, նա եկն 'ի խնդրել զձեզ. զի թէպէտ և ինքն իսկ միածին որդին աստուծոյ, եկն էջ ուսուցանել զհայր իւրոց արարածոց. զի թէպէտ և ոչ լուան նմա, և չարչարեցին ևս մինչև 'ի մահ, և համբեր, սակայն և ոչ նա զիւր զօրութիւնն ոչ թագոյց յումեքէ, զի պատճառք կենաց լիցի ամենեցուն: Եւ զորս եգիտ արժանիս և պատրաստականս իւրում յարութեանն, ընտրեաց, ուսոյց, և արձակեաց քարոզս և կոչնականս և հրաւիրակս՝ 'ի փրկութեան լոյսն հրաւիրել զձեզ:

Սակայն և դուք յայնմ՝ փոխանակ երախտեացն ապախտիս հատուցէք. զորմէ դուք իսկ նախ զձեր զքարոզն և զհրաւիրակն զառաքեալ

Հերակլի բարձրադիր ժեռնոտների ներքև, որ գտնվում է Ցուլ կոչված մեծ լեռան դեմուդեմ, բագինի տեղից մոտ մի քարընկեց հեռավորությամբ դեպի ներքև, փոքրիկ ձորակում, հացի ծառերի անանշան պուրակում, որին ասում են Հացիների պարտեզ: Այս այն աղբյուրն է, որտեղ հնումը մեծն Գրիգոր բազմաթիվ զորքերի մկրտությունը կատարեց: Այստեղ էր սուրբ Դանիելի բնակության խցիկը, գետնի մեջ փորված. այստեղ էր նա կատարում իր տեսչական այցելությունը:

Արդ՝ մեծամեծ նախարարները մի տեղ հավաքվելով՝ ժողով կազմեցին, խորհուրդ արին և թագավորին հավանեցրին, որ ծերունի Դանիելին բերեն իրենց բանակը, որպեսզի նրան իրենց գլուխ և առաջնորդ նշանակեն և նա նստի հայրապետական աթոռը: Նրա մոտ ուղարկեցին Սահառունյաց տոհմի Զոմն իշխանին, Վանանդի Արտավան իշխանին, Ամատունյաց տոհմի Կարեն իշխանին և Դիմաքսենից տոհմի Վարազ իշխանին: Այս նախարարները եկան, նրան գտան Եկեղյաց գավառում Թիլ գյուղի եկեղեցում, որտեղ նա զբաղված էր սուրբ մշակության գործով: Նրան առան բերին Աղձնյաց գավառի Բառաեջ գյուղը, Տիրան թագավորի մոտ: Եվ երբ մեծ Դանիել քորեպիսկոպոսը Տիրանի առաջ եկավ՝ իսկույն ձեռք առավ մեղադրանքներ ու հանդիմանություն:

Նա առաջ եկավ, սկսեց խոսել, ասելով. «Ինչո՞ւ դուք մոռացաք ձեր արարիչ աստծուն, նրա ձեզ ցույց տված զութը, նշանները, սքանչելիքները, որ կատարեց ձեր հայրերի ժամանակ և ձեր օրերում, իսկ դուք էլի դարձաք ձեր նախնյաց մոլար կռապաշտության, ատելության, ագահության, զրկողության, աղքատատեցության, պոռնկության, նենգության, միմյանց զրկելու, սպանությունների: Դուք կործանվեցիք ու ընկաք, ետ կանգնեցիք արդարության ճանապարհից, դուք թողիք ձեր բարերար աստծուն, որ ձեզ ոչնչից ստեղծեց ու հաստատեց, և մոլորվելով նրան այլևս չճանաչեցիք: Մինչ դուք ձեր անձերը կորուստի էիք մատնել՝ նա ինքը եկավ ձեզ փնտրելու և գտնելու, թեպետ նա ինքը աստծու միածին որդին էր, բայց եկավ՝ իր արարածներին իր հորը ճանաչեցնելու: Նրան թեպետ չլսեցին, այլ դեռ մինչև իսկ մահ չարչարեցին, բայց նա համբերեց, իր զորությունը ոչ ոքից չթաքցրեց, որպեսզի ամենքի կյանքի պատճառ դառնա: Ում որ նա արժանավոր գտավ և իր հարությանը պատրաստված՝ նրանց ընտրեց, սովորեցրեց և արձակեց քարոզելու, իբրև կոչնակ և հրավիրակ՝ ձեզ դեպի փրկության լույսը հրավիրելու:

Սակայն դուք այստեղ էլ նրա երախտիքների փոխարեն ապերախտություն ցույց տվիք. դուք նախ և առաջ սպանեցիք ձեր քարոզչին, որ

առ ձեզ եկեալն սպանէք, զայն՝ որ եկեալ զձեզ կոչէր 'ի փրկական շնորհս արքայութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զի թէպէտ և դուք առ ձերում անմտութեան՝ տիրասպան ազգին խորհրդոյն հաղորդեցայք Հրէիցն. զի նոքա զտէրն կարծեցին սպանանել, հարքն ձեր զնորին առաքեալսն. և զհետ նորա նորին նմանին չարչարեցին վասն նոյն նորին իրաց: Իսկ զկնի սորին իրացս այսոցիկ եկին բազմութիւնք սրբոց վկայիցն աստուծոյ, նոցին Առաքելոցն ճգնակիցք. որք մինչ 'ի վտանգ չարչարանացն ճգնեալք, մինչ յիւրեանց մահն, պընդեալք ցուցանեն ձեզ զճշմարտութիւնն, զի թերևս նոքօք դառնայցէք յիմաստութիւն գիտութեան որդւոյն աստուծոյ: Սակայն և առ նոսա լցէք կատարեցէք բովանդակեցէք զսովորութիւն սպանութեանց ամբարշտութեանցն կամացն ձերոց: Սակայն նորին արեամբն՝ զոր ասացի՝ բազում և պէսպէս նշանօք խրատեաց զձեզ, և 'ի մահ ոչ մատնեաց վասն բազում ողորմութեանն. և իւր մերձաւորս արար զձեզ, և խառնեաց զձեզ 'ի բնակութիւն կենդանութեան ընտանութեան վարդապետութեանն իւրոյ, ուղղութեան օրինացն, յառաւելութիւն որդւոյն սիրելւոյ իւրոյ:

Եւ յետ այսորիկ եթող ձեզ զամենայն վնասս ձեր, և ետ ձեզ վարդապետս զսիրելիս իւր: Բայց դուք և ոչ զմի զայն ոչ յիշեցէք, ոչ եդիք 'ի մտի, ոչ կալայք 'ի սրտի, այլ յետս դարձայք հրէական ազգին նմանեալք. առէք զնոյն յանձինս ձեր զնոցուն օրինակն գործոց: Զի պարտ էր ձեզ յիշել զերախտիսն տեառն ձերոյ Քրիստոսի, որ ոչ յիշեաց զմեղս հարցն ձերոց, և ոչ զանօրէնութիւնս ձեր: Եւ ձեզ անպարտ մոռանալ զճգնութիւն հարցն սրբոցն խրատչացն և վարդապետացն ձերոց, որք ուսուցիչքն էին ձեր, որք հանապազ տքնէին վասն փրկութեան ոգւոց ձերոց. և արժան էր ձեզ ունել զութ ընդ նոսա՝ որք հոգեպէս բանին վարդապետութեանն երկնեցին և ծնան զձեզ վերստին, և ըստ ձերում եղծման անդրէն դառնալոյ՝ դարձեալ միւսանգամ վերստին ընգերոյ չարեացն ապաշխարելոյ հնքեանք իւրեանց խնդրուածովքն երկնեցին զձեզ դարձեալ, մինչև կերպարանեսցեն զՔրիստոս 'ի ձեզ, զի արժանի լինիջիք մտանել յերկնից յարքայութիւնն անդր: Պատշաճ էր և ձեզ խնամել զնոցին որդիսն և զաշակերտսն, որ ըստ հոգևոր բանին ըստ աստուածային ծննդեանն էին որդիք, առաջնորդք և վերակացուք ձեր 'ի տէր. թող թէ որ մարմնապէս իսկ էին նոցա ճէտք, և հոգևոր նոցին գործոց ոչ ինչ պակաս քան զհարսն իւրեանց:

Արդ ձեր թողեալ զաստուած, և յիշեցուցէք զչարիսն ձեր զառաջինըս, և լցէք զչափ մեղացն հարցն ձերոց: Որ զի նոքա սպանին զհարսն սուրբս չարչարանօք՝ վասն բարւոյն չկամելոյ լսել զօգտակարն խրատ 'ի նոցանէն, և դուք զորդիս և զժառանգս և զգործակիցս և զնմանողս

ձեզ մոտ էր ուղարկված իբրև հրավիրակ, որ եկել էր ձեզ հրավիրելու մեր տեր Հիսուս Քրիստոսի արքայությունը, դեպի փրկության շնորհը: Դուք ձեր անմտությամբ տիրասպան Հրեից ազգի խորհրդին հաղորդակից եղաք. որովհետև նրանք իրենց կարծիքով տիրոջն սպանեցին, իսկ ձեր հայրերը նրա առաքյալներին (սպանեցին), և հետո նրանց նմաններին չարչարեցին նույնպիսի բանի համար: Այս անցքերից հետո եկան աստծու բազմաթիվ սուրբ վկաներ, նույն առաքյալների ճգնակիցներ. նրանք չարչարանքների վտանգին ենթարկվեցին, մինչև մահ տոկացին մնացին, որպեսզի ցույց տան ձեզ ճշմարտությունը, զուցե նրանց միջոցով իմաստնանաք և աստծու որդուն ճանաչեք: Բայց դուք նրանց վերաբերությամբ էլ կատարեցիք ձեր ամբարիշտ կամքը, ձեր սովորական սպանությունը, բայց և այնպես նա նրանց[50] արյունով, որ ասացի, և զանազան նշաններով ձեզ խրատեց և ձեզ մահվան չենթարկեց իր մեծ ողորմությամբ, ձեզ իրեն մերձավորներ դարձրեց, ձեզ խառնեց իր վարդապետությունն ընդունողների մեջ իբրև ընտանիներ, բերեց ուղիղ օրենքի իր սիրելի որդու համար:

Սրանից հետո ձեզ ներեց ձեր բոլոր հանցանքները և իր սիրելիներին ձեզ տվեց ուսուցիչներ: Բայց դուք (նրանց խրատներից) ոչ մեկը չհիշեցիք, մտքերդ չպահեցիք, այլ Հրեից ազգին նմանելով ետ դարձաք, նրանց գործերի նման սկսեցիք և դուք գործել: Որովհետև դուք պետք է հիշեիք ձեր տիրոջ՝ Քրիստոսի երախտիքը, որ չհիշեց ձեր հայրերի մեղքերը և ձեր անօրեն գործերը: Դուք պարտավոր էիք չմոռանալ ձեր սուրբ հայրերի՝ ձեր խրատիչների և ուսուցիչների աշխատանքները, որոնք շարունակ տքնում էին ձեր հոգիների փրկության համար, դուք պետք է գութ ունենայիք նրանց վրա, որոնք (աստծու) խոսքը ուսուցանելով ձեզ հոգևորապես երկնեցին և նորից ձեզ ծնան[51]... մինչև որ Քրիստոսին տպավորեն ձեր մեջ, որպեսզի արժանանաք երկնքի արքայությունը մտնելու: Պատշաճ էր, որ դուք էլ խնամեիք նրանց որդոց ու աշակերտներին, որոնք հոգևոր խոսքի նկատմամբ նրանց որդիքն էին աստվածային ծնունդով, ձեր առաջնորդներն ու վերակացուները, մանավանդ որ մարմնով էլ նրանց ծնունդներն էին և հոգևոր գործերով ոչ պակաս քան իրենց հայրերը:

Բայց դուք թողիք աստծուն և կրկնեցիք ձեր նախկին չարիքները և ձեր հայրերի մեղքերի չափը լրացրիք: Ինչպես որ (ձեր հայրերը) չարչարելով սպանեցին սուրբ հայրերին, չկամենալով օգտակար խրատք լսել նրանցից, այնպես էլ դուք նրանց որդոց ու ժառանգներին, նրանց գործակիցներին և նմանողներին սպանեցիք, որոնք ձեր մեղավոր գոր-

նոցին սպանէք, որք ոչ հաւանեալ գործոց մեղացն ձերոց, սուրբ մանուկն Յուսիկն զհայրապետն զաթոռակալն զվիճակակալն զվիճակին Թադէոսի առաքելոյն և զնորին նմանոյն Գրիգորի: Եւ դուք զհրէական բարուցն բերէք զօրինակն յանձինս ձեր, սպանութեանցն սովորութեանց զրկութիւնս. որպէս և նոքա անխրատք զիւրեանց զառաքեալսն կամ զմարգարէսն կոտորեցին, սոյնպէս և դուք ըստ նոցին օրինակի կատարեցէք.

Արդ վասն այսչափ ստութեանց ձերոց և պղծութեանց, բարձցէ տէր զթագաւորութիւնդ ձեր 'ի ձէնջ. բարձցէ և զքահանայութիւնդ 'ի ձէնջ: Ցրուեսջիք և բաժանեսջիք, և ցրուեսցին սահմանք ձեր որպէս և Խորայէլ, և անտէրունչք և անխնայ և անխնամք լիջիք. և լիջիք դուք իբրև զխաշինք, զի ոչ գուցէ նոցա հովիւ: Մատնեսջիք իբրև զհօտ 'ի ձեռս գազանաց, և անկջիք 'ի փառաց ձերոց և 'ի ձեռս օտար թշնամեաց մատնեսջիք դուք 'ի գերութիւն և 'ի լուծ ծառայութեան, և ոչ բարձցի երբէք կամ պակասեսցէ լուծ ծառայութեան 'ի ձէնջ, և ոչ երբէք պակասեսցէ լուծ չար ստրկութեան ծառայութեանն 'ի պարանոցաց ձերոց. հաշեսջիք և մաշեսջիք 'ի ցանկութիւնս ձեր: Որպէս պատառեցաւ Խորայէլ, և ոչ կարկատեցաւ, սոյնպէս և դուք ցրուեսջիք և կործանեսջիք. և այլք վայելեսցեն 'ի վաստակս ձեր, և այլք կերիցեն զօրութիւնս ձեր, և ոչ ոք գտանիցի, որ փրկեսցէ զձեզ. և ոչ հանեսցի ընդ ձեզ տէր, և ոչ նայեսցի և ոչ փրկեսցէ այլ զձեզ:

Այլ զի կոչեցէք զիս ելանել գալ առ ձեզ, զա՞յս ամենայն կամէիք լսել դուք յինէն: Եթէ իմ չէր զայս ամենայն պատմել ձեզ, սակայն այս ամենայն լինելոց էր ձեզ վասն սպանման արդարոյն մեծին մանգանն Յուսկան առաքինւոյն առաջնորդին ձերոյ. որ էր 'ի տանէն գաւակին Գրիգորոյ, զի այս ամենայն լինելոց է ձեզ, զի այսպէս եցոյց ինձ տէր: Այլ զի յղեցէքդ առ իս, եթէ ե՛կ կաց մեզ գլուխ և առաջնորդ, զիա՞րդ լինիցիմ առաջնորդ այնոցիկ՝ որք ոչ դառնայցեն զկնի տեառն. կամ զիա՞րդ կայցեմ գլուխ ազգի, զորս եթող տէրն 'ի ձեռանէ: Կամ զիա՞րդ բառնայցեմ զձեռս իմ աղօթիւք առ աստուած վասն այնոցիկ, որոց ձեռք իւրեանց շաղախեալ են արեամբ սրբոց տեառն. կամ զիա՞րդ մատուցանեմք աղօթս պաղատանս այնոցիկ՝ որք դարձուցին զթիկունս առ տէր, և ոչ զերեսս իւրեանց: Կամ զիա՞րդ եղէց բարեխօս վասն այնոցիկ, որք նուաճեցինն. կամ զիա՞րդ խօսիցիմ 'ի հաշտութիւն վասն այնոցիկ, ոյք փախուցեալն են և ոչ կամին դառնալ. որոց ինքնին տէր նիւթեաց պատրաստեաց զամենայն չարիս 'ի վերայ նոցա վասն այսորիկ, զի ասացիք թէ ոչ տեսանէ տէր զայս ամենայն». և որ ինչ նման է սոցին բանիցս:

ծերին հավան չէին, (ինչպես) սուրբ մանուկ Հուսիկին, մեր հայրապետին, Թադեոս առաքյալի և նրան նմանող Գրիգորի վիճակի վիճակակային ու աթոռակային: Դուք հրեական բարքերին ու օրինակին եք հետևում. նրանց սպանություններին, զրկողություններին. ինչպես որ նրանք, անխտիր լինելով, իրենց առաքյալներին ու մարգարեներին կոտորեցին, նրանց պես վարվեցիք և դուք:

Արդ՝ ձեր այսքան ստությունների ու պղծությունների պատճառով տերը ձեր թագավորությունը կվերացնե, ձեր քահանայությունը կվերացնի: Դուք կցրվիք ու կբաժանվիք, ձեր սահմաններն էլ Իսրայելացոց նման ցրիվ կգան. դուք կմնաք անտեր, անխնամ, ոչ ոք ձեզ չի խնայի. դուք խաշներ կդառնաք, որոնք հովիվ չունեին: Ինչպես (ոչխարների) հետ՝ կմատնվիք գազանների ձեռքը, ձեր փառքերից կզրկվիք, օտար թշնամիների ձեռքը կմատնվիք իբրև գերի, նրանց ծառայության լծի տակ կընկնիք, և այս ծառայության լուծը երբեք ձեզանից չի վերանա և չի պակասի, ձեր պարանոցից երբեք չի պակասի ծառայության՝ չարաչար ստրկության լուծը. ձեր ցանկությունների մեջ հալումաշ կլինիք: Ինչպես որ Իսրայելը պատառվեց և այլևս չկարկատվեց, այնպես էլ դուք կցրվիք ու կկործանվիք. ձեր վաստակածը ուրիշները կվայելեն, ձեր զորությունը ուրիշները կուտեն, և չի լինի մեկը, որ ձեզ փրկե, տերը չի քաղցրանա, ձեզ չի նայի, ձեզ այլևս չի փրկի:

Բայց դուք ինչո՞ւ ինձ կանչեցիք որ ելնեմ գամ ձեզ մոտ. ա՞յս էիք դուք կամենում ինձանից լսել: Բայց ես թեկուզ այս ամենը ձեզ չպատմեի՝ այնուամենայնիվ այս բոլորը պետք է ձեզ պատահեր, որովհետև դուք սպանեցիք այն արդար մանուկ մեծն Հուսիկին, ձեր առաքինի առաջնորդին, որ Գրիգորի տանից էր, նրա զավակը: Այո՛, այս բոլորը ձեզ պիտի պատահի, որովհետև տերը այսպես ինձ ցույց տվեց: Այլ որ ինձ կանչեցիք, թե ե՛կ, մեզ գլուխ և առաջնորդ եղիր.— ես ի՞նչպես կարող եմ առաջնորդ լինել այն մարդկանց, որոնք տիրոջ չեն հետևում, կամ ի՞նչպես գլուխ լինիմ մի ազգի, որից տերը երես է դարձրել: Ի՞նչպես կարող եմ ես ձեռներս բարձրացնել աղոթելու այն մարդկանց համար, որոնց ձեռքերը շաղախված են տիրոջ սրբերի արյունով. կամ ի՞նչպես աղոթք ու պաղատանք մատուցանեմ նրանց համար, որոնք իրենց թիկունքները դարձրին դեպի տերը և ոչ երեսները. կամ ի՞նչպես բարեխոս լինիմ նրանց համար, որոնք ստամբակեցան[52]. կամ ի՞նչպես (աստծուն) հաշտեցնելու խունկ ածեմ նրանց համար, որոնք (նրանից) փախել են և չեն ուզում ետ դառնալ, որոնց համար ինքը տերը պատրաստել է այս բոլոր չարիքները այն պատճառով որ ասացիք թե տերը չէ տեսնում»:

Զայս բանս խօսեցաւ սուրբ ծերունին Դանիէլ քորեպիսկոպոսն առաջի թագաւորին Տիրանայ, և առաջի իշխանացն, պետացն և ամենայն զօրացն: Եւ մինչ դեռ խօսէր նա զայս ամենայն, հիացեալ զարմացեալ թագաւորն միտ դնելով լուռ ևեթ կայր: Եւ եղև իբրև զայս ամենայն լուաւ, բորբոքեալ 'ի բռնաւորութիւն դառնութեան ամբարշտութեան ցասման իւրոյ. զոր տայր հրաման անդէն խեղդամահ առնել զնա: Զոր իբրև լուեալ անդէն սպասաւորացն, կատարեցին զգործ հրամանին վաղվաղակի: Բայց մեծամեծք նախարարացն աւագանին շատ եդին 'ի մտի արքային, զի մի՛ կատարեսցէ զչարութիւն կամացն իւրոց. առ դառնութեան սրտին ցասման, առ զայրոյցս բարկութեանն, ոչ ինչ անսաց նոցա· այլ նոպան 'ի փողս եդեալ, խեղդամահ արարին զնա: Այսպէս կատարեցաւ սուրբն Դանիէլ:

Եւ բարձին զմարմին նորա բազմութիւն մարդկան, որք տեղեակ էին նմա, և գիտէին զնա. և կամեցան մեծարել զնա ընդ ոսկերս սուրբ վկայիցն Քրիստոսի: Ապա ինքն յայտնեալ երեւեցաւ առն սրբոյ աշակերտին իւրում, որոյ անուն կոչէր Եպիփան, զի մի՛ 'ի պատիւ ացեն զոսկերս նորա իբրև զայլոցն. այլ տարցին 'ի տեղին՝ ուր ինքն հրամայեաց, և ծածկեսցեն ընդ հողով: Զի այսպէս յայտնեալ բարբառեցաւ նոցա. զի եթէ տէրունական մարմինն, ասէ, 'ի գերեզմանի ծածկեցաւ աւուրս երկուս մինչև զօրն երրորդ՝ յորում յարեաւ առ հայր իւր, ո՞րչափ ևս առաւել պարտ է մերում հողեղէն մարմինս ընդ հողով ծածկել: Ապա բարձին զմարմին նորա սուրբ սիրելիք իւր աշակերտք, որոյ գլխաւորին անուն էր Շաղիտա, որ 'ի նմանէ իսկ աշխարհին Կորդուաց վարդապետ առեալ էր. և երկրորդին անուն Եպիփան, որ գաւառին Աղձնեաց և մեծաց Ծոփաց 'ի նմանէ իսկ վարդապետեալ էր, և ընդ նոսա պաշտօնեայք բանակին: Եւ գնացին տարան, եդին զմարմինն 'ի տեղւոջն՝ ուր յառաջագոյն էր կայեանք խցկանն իւրոյ յերկրին Տարօնոյ, որ էր մայր եկեղեցեացն Հայոց, մօտ յակն աղբերն՝ ուր առնէր Գրիգոր զմկրտութիւնսն աշխարհազօր բազմութեանն, 'ի տեղւոջն՝ որ անուանեալ կոչի Հացեաց դրախտ: Յայնմ տեղւոջ ծածկեցին զմարմին սրբոյն Դանիէլի ընդ հողով, ըստ յառաջագոյն տեսլեանն ըստ հրամանի նոցա առեալ:

## ԺԵ

## ՅԱՂԱԳՍ ՈՐԴԻՈՑՆ ՅՈՒՍԿԱՆՆ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԸՆԹԱԴՐԵԱԼ ԸՆԴ ՈՏՆ ՀԱՐԻՆ ԶՔԱՀԱՆԱՅՈՒԹԵԱՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԶԳԱՑԻՒ·

Ապա խորհուրդ արարին մատուցանել զորդի սրբոյն Յուսկան 'ի քահանայութիւն հարցն վարդապետութեանն: Ապա առանց իւրեանց

Այս բոլորը և սրանց նման ուրիշ բաներ խոսեց ծերունի Դանիել ճորեպիսկոպոսը Տիրան թագավորի, իշխանների, պետերի և բոլոր զորքերի առաջ: Եվ մինչ նա խոսում էր այս ամենը՝ թագավորը ապշած զարմացած լուռ լսում էր: Եվ երբ այս բոլորը լսեց՝ զայրացավ. բռնավորական ամբարիշտ ցասումով բորբոքվեց, հրամայեց անմիջապես նրան խեղդամահ անել: Սպասավորները հրամանը լսելով՝ իսկույն կատարեցին: Թեպետ մեծամեծ ավագ նախարարները շատ հորդորեցին թագավորին որ չար կամքը չկատարե, բայց նա այնքան դառնացած էր սրտով, այնքան զայրացած էր, որ նրանց չլսեց: Չվանը վիզը ձգելով խեղդամահ արին: Այսպես վախճանվեց սուրբ Դանիելը:

Եվ բազմաթիվ մարդիկ, որոնք նրան ճանաչում էին ու գիտեին՝ նրա մարմինը վերցրին և ուզում էին մեծարել Քրիստոսի սուրբ վկաների ոսկորների նման: Բայց ինքը (Դանիելը) երևաց իր աշակերտին, Եպիփանին, որ մի սուրբ մարդ էր, և հայտնեց, որ իր ոսկորները չպատվեն ինչպես ուրիշ (վկաներինը), այլ տանին հողի տակ թաղեն այնտեղ՝ որտեղ ինքը կամեցավ և հրամայեց: (Դանիելը) այսպես ասաց. «Եթե տերունական մարմինը երկու օր գերեզմանում ծածկվեց մինչև երրորդ օրը, երբ հարություն առավ իր հոր մոտ (գնալու), ո՛րչափ ավելի պետք է որ մեր մարմինները հողի տակ ծածկվին»: Ուստի նրա մարմինը վերցրին նրա սիրելի սուրբ աշակերտները, որոնցից գլխավորը կոչվում էր Շաղիտա, որ նրանից նշանակված էր Կորդվաց աշխարհի ուսուցանող, և երկրորդը Եպիփան, որ դարձյալ նրա կողմից նշանակված էր ուսուցանող[53] Աղձնիքի և Մեծ Ծոփքի. սրանց հետ էին նաև բանակի հզոր պաշտոնյաները: Սրանք մարմինն առան տարան Տարոն ու թաղեցին այն տեղում, ուր նրա բնակության խցիկն էր գտնվում, որ Հայոց մայր եկեղեցին էր, այն աղբյուրի մոտ, որտեղ Գրիգոր մկրտում էր աշխարհի զորքի բազմությունը. Հացյաց դրախտ կոչված տեղում: Այստեղ հողի տակ ծածկեցին սուրբ Դանիելի մարմինը՝ ինչպես որ առաջուց տեսիլքում նրանց հրամայել էր:

ԺԵ

ՀՈՒՍԻԿԻ ՈՐԴՈՑ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՈՉԻ ՏԱԿ ՏԱՊՈՎ ԱՐՀԱՄԱՐՀԵՑԻՆ ԱՍՏԾՈՒ ՔԱՀԱՆԱ ԴԱՌՆԱԼՈՒ ՊԱՏԻՎԸ

Ապա խորհուրդ արին սուրբ Հուսիկի որդիներից ընտրել քահանայության համար: Նրանց իրենց կամքի հակառակ բռնեցին, եպիսկո-

կամացն ըմբռնեցան, և բռնաբարեցան 'ի միաբանութեան եպիսկոպոսացն. զի կալեալք, ակամայ առեալք զձեռնադրութիւն սարկաւագութեան՝ հարկեցան Պապն և Աթանագինէս: Որոց հարեալք զաւանդն հոգևորն պատուի, անձամբ զանձինս իւրեանց խոտորատուր[12] յարուեստն զինուորութեանն զինեցան, և յերկիր կործանեցան: Եւ ընտրեցին զերկրաւոր կեանս, և առին ևս իւրեանց կանայս զքորս թագաւորին, և մերժեցին զանձինս իւրեանց 'ի ժառանգութենէ աստուծոյ: Բայց անուանք կանանց նոցա, անուն կնոջն Պապայ՝ Վարազդուխտ, նոքա անորդիք անզաւակ ելին յաշխարհէ. անուն կնոջն Աթանագինի՝ Բամբիշն. 'ի սոցանէ ծնաւ այր սքանչելի և զարմանալի Ներսէս, որ առ յապայն եկաց քահանայապետ:

Բայց յայնմ ժամանակի ոչ ոք գոյր, որ առաջնորդէր նոցա զքահանայապետութիւնն: Ապա խորհուրդ արարին՝ թէ զո՛ գտցեն իւրեանց առաջնորդ. ապա կամ եղև ամենեցուն առ հասարակ, զի 'ի նմին տանէ իշխանութեանն Գրիգորի գտցեն, որ կալցի նա զաթոռ հարցն:

## ԺԶ

## ՅԱՂԱԳՍ ՓԱՌԻՆԱՅ, ՈՐ ԿԱԼԱՒ ԶԱԹՈՌ ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ

Յայնմ ժամանակի համարեցան արժանի զՓառէն ոմն էրէց, 'ի գաւառէն Տարօնոյ, 'ի մեծէ մարգարէանոցէն Յովհաննու, որ էր նախ շինեալ տուն աղօթից և խնդրուածոց 'ի հանգիստ սրբոցն, զի տեղին այն նմա էր հաւատացեալ: Ապա կոչեցին զնա առ արքայն. և առաքեաց զնա պատուազօք թագաւորն, և հրովարտակօք և ճոխ իշխանօքն՝ որ ընդ նմա առաքեցանն: Մեծ զօրավարն Հայոց՝ որում անուն էր Վասակ, 'ի Մամիկոնեան տոհմէն. և Մեհենդակ Ռըշտունի, և Անդովկ Սիւնի, և Արշաւիր Կամսարական, մեծք և գլխաւորք նահապետք. և տասն այր այլ, արք պատուականք, առին. գնացին զՓառէն սուրբ 'ի մայրաքաղաքն Գամրաց 'ի Կեսարիա, և անդ ձեռնադրեցին զնա 'ի կաթողիկոսութիւն Հայոց մեծաց: Եւ զան դարձեալ յիւրեանց աշխարհն խաղաղութեամբ:

Եւ նստաւ Փառէն յաթոռ հայրապետական սակաւ ժամանակս. և այլ ինչ չհամարձակէր նա կամ խրատել ինչ, կամ յանդիմանել զմոլորութիւն ինչ զուրուք կամ զամբարշտութիւնս: Բայց միայն զիւր անձն սուրբ պահէր, և 'ի հարկէ ընգերէր անօրէն թագաւորին, և ըստ նորին կամացն երթեալ հնազանդեալ: Եւ յետ այսորիկ հանգեաւ, և յաւելաւ առ հարս իւր. և առեալ պաշտօնէիցն եկեղեցւոյ բանակին զմարմինն,

պոսների միահամուռ կամքով բռնադատեցին և հարկադրեցին սարկավագության ձեռնադրություն ստանալ— Պապին ու Աթանագինեսին։ Բայց նրանք հոգևոր պատվի ավանդը ոտնատակ տալով՝ իրենց կամքով զինվորական ունայն արվեստի կարգով զինվեցին և կործանվեցին։ Նրանք գերադասեցին երկրավոր կյանքը, իրենց կին առան թագավորի քույրերին և հրաժարվեցին սուրբ ժառանգությունից։ Նրանց կանանց անունները էին— Պապի կնոջը՝ Վարազդուխտ—որոնք անորդի անզավակ մնացին ու մեռան,— իսկ Աթանագինեսի կնոջը՝ Բամբիշ։ Սրանցից ծնվեց սքանչելի և զարմանալի Ներսեսը, որ հետո քահանայապետ դարձավ։

Բայց այն ժամանակ չկար մեկը, որ իբրև քահանայապետ նրանց առաջնորդեր։ Այս խորհուրդ արին, թե ո՛ւմ ընտրեն առաջնորդ։ Բոլորը միաբան որոշեցին, որ նույն Գրիգորի իշխանության տնից գտնեն մեկին, որ իր հայրերի աթոռը նստի։

## ԺԹ

## ՓԱՌԷՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ ԱԹՈՌԸ ՆՍՏԵՑ

Այս ժամանակ (կաթողիկոսության) արժան համարեցին մի ոմն Փառեն երեցի Տարոն գավառից, մեծն Հովհաննեսի մարգարեանոցից, որտեղ սրբերի հանգստարանում առաջին անգամ շինված էր աղոթքի և խնդրվածքների տուն, և հանձնված էր նրա (Փառենի) տեսչությանը։ Նրան կանչեցին թագավորի մոտ։ Թագավորը նրան ուղարկեց ընծաներով ու հրովարտակներով և մեծամեծ իշխանների ուղեկցությամբ, որ էին— առաջինը Հայոց Վասակ զորավարը Մամիկոնյան տոհմից, հետո Մեհենդակ Ռշտունին, Անդովկ Սյունին և Արշավիր Կամսարականը—մեծ և գլխավոր նախապետներ և էլի ուրիշ տասը պատվավոր մարդիկ։ Սրանք Փառենին առան գնացին Գամիրքի մայրաքաղաքը, Կեսարիա, և այնտեղ նրան ձեռնադրեցին Մեծ Հայքի կաթողիկոս, և խաղաղությամբ վերադարձան իրենց աշխարհը։

Փառենը կարճ ժամանակ նստեց հայրապետական աթոռը։ Նա չէր համարձակվում նրանց խրատել, որևէ մեկի մոլորությունը կամ ամբարիշտ գործերը հանդիմանել։ Նա միայն ինքն իրեն մաքուր էր պահում և հարկից ստիպված ընկերանում էր թագավորին, նրան հնազանդվում էր ու նրա կամքովը վարվում։ Այս նա վախճանեցավ, հայրերի մոտ գնաց։ Բանակի եկեղեցու պաշտոնյաները նրա մարմինը առան տարան

զնացեալք 'ի գաւառն Տարօնոյ՝ տարան 'ի յագարակն մեծի մարգարէանոցին Յովհաննու, որ էր ինքն 'ի կենդանութեանն իւրում յառաջագոյն բնակեալ. և անդ զեղեցիկ շիրիմ գործեալ, և զսորա ոսկերս ծածկեցին:

## ԺԷ

## ՅԱՂԱԳՍ ՇԱՀԱԿԱՅ՝ ՈՐ ԷՐ 'Ի ԶԱՒԱԿԷ ԱՂԲԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ՈՐ ՅԱՋՈՐԴԵԱՑ ԶՏԵՂԻ ՀԱՅՐԱՊԵՏԱՅՆ ԱԹՈՌՈՅՆ. ԵՒ ԿԱՄ ՈՐՊԷՍ ԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ ԱՄԵՆԱՅՆ ԹՈՂԵԱԼՔ ԶՏԷՐ ԵՒ ԶԳԱՅՈՒԻՐԱՆՍ

Ապա յայնմ ժամանակի միաբան խորհեցան աշխարհօրէն խորհուրդ, եթէ ո՛մ պարտ իցէ զհայրապետութեանն զկաթողիկոսութիւնն ունել: Ապա իբրև ոչ ոք գոյր 'ի տանէն Գրիգորի այնմ արժանի, ապա նմանեցուցին զՇահակ ումն անուն 'ի տոհմէ զաւակին Աղբիանոս եպիսկոպոսին: Եւ տան զնա 'ի ձեռս իշխանին մարդպետութեանն, որում անուն իւր Հայր կոչէր, և յաւագաց գումարեն ընդ նմա զիշխանն Գարդմանաց ձորոյն. և առնեն ընդ նոսա այլ տասն նախարարս. և յուղարկեցին զնա մեծաշուք պատուով յերկիրն Գամրաց 'ի մեծ քաղաքն Կեսարիա: Անդ ձեռնադրեն զՇահակն 'ի կաթողիկոսութիւն Հայոց մեծաց. և պատուով դառնան առ թագաւորն:

Եւ յաջորդեաց զտեղի հայրապետացն Շահակն. և սա նմանեաց վարուցն Փառենայ: Առաջնորդէր սա աշխարհի ըստ նմին օրինակի: Բայց որոց հովուէրն՝ չեղեալք ունկն ինչ խրատու ճշմարտութեանն, այլ յանդիմանեալք՝ հոլանեալ գործէին զմեղս համարձակութեամբ՝ առանց խիթի յամենայն չարիս դարձեալք, թողեալք զտէր և զպատուիրանս նորա առ հասարակ թագաւորն և նախարարքն և իշխանքն: Եւս չար քան զնոսա առ մարդիկ մարզկանն ամբարշտեալք, 'ի հնութիւն առաջին գործոցն հարցն իւրեանց դարձեալք, 'ի փոքրկանց մինչև զմեծամեծս 'ի յայս էին հարեալք, և 'ի սոյն կանխեալք: Վասն այսորիկ ամենայնի բարկացեալ տէր ասաուած 'ի վերայ նոցա՝ եթող 'ի ձեռանէ, արար զնոսա կոխան 'ի յարուցելոցն 'ի վերայ նոցա թշնամեաց նոցա: Քանզի 'ի ժամանակաց 'ի թագաւորութենէն Տրդատայ, յորմէ հետէ զտէրն ճանաչելոյ՝ արար խաղաղութիւն, և լռեցոյց շուրջ զթշնամիս նոցա, զի ցածոյց տէր զմարտ պատերազմացն 'ի սահմանաց նոցա, և մինչև յայն ժամանակ ոչ ընդ ումեք բանք գոյին ամբոխի կամ խռովութեան, և 'ի մեծի խաղաղութեան էին բնակեալք: Ապա 'ի ժամանակին յայնմիկ յարոյց զօրացոյց զգրգռութիւնս սահմանակցօք շուրջ յամենայն կողմանս զթշնամիս նոցա. և ոչ մի ոք 'ի թագաւորացն Հայոց ոչ ոք գտանէր նոցա բարեկամ, այլ ամենեքեան թշնամիք:

Տարոն գավառը, մեծն Հովհաննեսի մարգարեանոցի ագարակը, որտեղ ապրում էր կենդանի ժամանակ, և այնտեղ նրա մարմինը թաղեցին ու գեղեցիկ շիրիմ շինեցին վրան:

## ԺԷ

## ՇԱՀԱԿԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԱՂԲԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՍԵՐՆԴԻՑ ԷՐ ԵՎ ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ ԱԹՈՌԸ ՆՍՏԱՎ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՅԴ ԺԱՄԱՆԱԿ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ԹՈՂԵԼ ԷՐ ՏԻՐՈՋԸ ԵՎ ՆՐԱ ՊԱՏՎԻՐԱՆՆԵՐԸ

Այն ժամանակ բոլորը աշխարհովին խորհուրդ արին, թե ո՛վ պետք է հայրապետության աթոռը նստի: Եվ որովհետև Գրիգորի տանից ոչ ոք չկար այդ (պաշտոնին) արժանավոր՝ ուստի հարմար գտան մի ոմն Շահակի, որ Աղբիանոս եպիսկոպոսի սերունդից էր: Նրան հանձնեցին մարդպետության իշխանին, որի անունն էր Հայր[54]. նրա հետ նշանակեցին ավագներից Գարդմանաձորի իշխանին և ուրիշ տասը նախարար, և նրան ճանապարհ դրին մեծ հանդեսով Գամրաց երկիրը, Կեսարիա մեծ քաղաքը: Այնտեղ Շահակին ձեռնադրեցին Մեծ Հայքի կաթողիկոս և պատվով վերադարձան թագավորի մոտ:

Եվ Շահակը հաջորդեց հայրապետների աթոռը. սա էլ Փառնեին նմանեցավ իր վարքով. նրա նման առաջնորդում էր աշխարհին: Բայց որոնց որ նա հովվում էր՝ չէին լսում նրա ճշմարիտ խրատներին, այլ հանդիմանվելիս էլ՝ բացարձակ ու համարձակ գործում էին իրենց մեղքերը, առանց խղճի խայթի գործում էին ամեն տեսակ չարիքներ, մոռանալով (տիրոջը) և նրա պատվիրանները— առհասարակ թագավորը, նախարարներն ու իշխանները: Նրանցից է՛լ ավելի վատ էին մյուս մարդիկ, որոնք ամբարշտությամբ իրանց հայրերի առաջին հին գործերին դարձան. մեծերից մինչ փոքրերը անձնատուր էին եղել այս բանին: Այս բոլորի համար աստված բարկանալով նրանցից երես դարձրեց, նրանց առնակոխ դարձրեց նրանց դեմ դուրս եկած թշնամիներին: Որովհետև Տրդատի թագավորության ժամանակից ի վեր, երբ տիրոջը ճանաչեցին՝ (աստված) խաղաղություն պարգևեց, նրանց թշնամիներին լռեցրեց, նրանց սահմաններից պատերազմները հեռացրեց և ոչ ոքի հետ նրանք խռովության կամ թշնամության գործ չունեին և ապրում էին կատարյալ խաղաղության մեջ: Իսկ այն ժամանակ տերը գրգռություն հուզեց նրանց բոլոր սահմաններում, զորացրեց նրանց թշնամիներին, և ոչ մեկը ուրիշ ազգերի թագավորներից[55] նրանց բարեկամ չէր, այլ բոլորը թշնամի էին:

## ԾԸ

### ՅԱՂԱԳՍ ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻ, ՈՐ ՏԱՅՐ ԿՈՏՈՐԵԼ ԶԱԶԳՍ ՆԱԽԱՐԱՐԱՑ

Բայց յայնմ յանմիտ թագաւորութեանն ժամանակի ոչ միայն թըշնամիք թշնամեաց և բարեկամք բարեկամաց և ընկերք ընկերաց դաւաճանութիւնս մատնութիւնս սկսան յարուցանել 'ի մէջ հայաստան երկրին, և բեւր ազգի ազգի թշնամութիւնս գործէին: Վասն զի անկաւ 'ի նոսա խռովութիւն 'ի տեառնէ, այս պղծութեան և ոգի մոլորութեան. զի նախ միմեամբք քանդեալք աւերեցան վասն անօրէնութեան իւրեանց: Բայց քան զամենեսին աւելի այր մի անօրէն և այսամուտ, որ աւելի ընդ ազգս նախարարացն գրգռէր զթագաւորն Տիրան: Այս ինքն ունէր զպատիւ մեծի մարդպետութեան, այր ներքինի՝ չարասիրտ չարախորհուրդ չարագործ, որում Հայր կոչէին: Զբազումս 'ի նախարարացն ետ քսութեամբ առանց վնասու կոտորել, և խանգարեաց զմեծ տէրութիւն թագաւորութեանն: Մանաւանդ աւելի զերկու տոհմսն զաւագս տայր իւրով չարախօսութեամբն հանել ընդ սուր, և անունդ առնել միահաղոյն զտոհմսն Ռըշտունեաց և զտոհմն Արծրունեաց. բառնային 'ի միջոյ առանց ամենայն վնասու և յանցման, մինչ անգամ և զէգսն կոտորեցին ազգացն: Յայնմ ժամանակի 'ի գայթակղի գտանէին 'ի դայեակս մանկունս փախըստեայս, զՏաճատ որդի Մեհընդակայ ըռըշտունւոյ. և միւս ևս Շաւասպ որդի Վաչէի արծրունւոյ. տղայք ստնդիայք, զոր ածին առաջի թագաւորին: Իբրև տեսանէր, տայր հրաման հանել փողոտել զմանկունսըն. զի նոքա ևեթ ճետք մնացեալ էին յազգացն: Եւ անդ դիպեալ Արտաւազդ և Վասակ, արք 'ի Մամիկոնեան տոհմէն, որք էին զօրավարք ամենայն զօրացն Հայոց, որք յարուցեալք անկան 'ի վերայ մանկանցն տղայոց, մէն մի յանթի հարեալք՝ 'ի դուրս գնացին. զէնն 'ի վեր առեալք կռուոյ պատրաստէին՝ 'ի վերայ այնց մանկանց մեռանել: Զի թէպէտ և սնուցանէին նոքա զորդին զարքային զԱրշակ, սակայն զչարեալք ընդ գործ ժամանակին՝ թողին զսանն իւրեանց զԱրշակ, և գնացին 'ի բաց 'ի բանակէն արքունի: Եւ չոգան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց. և անդ նստան ամս բազումս ընտանեօք իւրեանց, և թողին զայլ զտուն իւրեանց: Եւ սնուցանէին զայն մանկունսն, զՇաւասպն և զՏաճատ. և ետուն նոցա զդստերս իւրեանց 'ի կնութեան, ուստի դարձեալ միւսանգամ ազգն այն սերեցան. և ոչ խառնէին նոքա 'ի խորհուրդս Հայոց մինչև 'ի բազում ամս:

ԺԸ

## ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԿՈՏՈՐԵԼ ԷՐ ՏԱԼԻՍ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ՏՈՀՄԵՐԸ

Բայց այս անմիտ թագավորության ժամանակ ոչ միայն թշնամիները թշնամիներին, այլ նաև բարեկամները բարեկամներին, ընկերները ընկերներին դավաճանում ու մատնում էին Հայոց աշխարհում և տեսակ տեսակ թշնամություններ էին անում միմյանց: Որովհետև տերը նրանց մեջ խռովություն ձգեց, չար ոգի հուզեց, որոնցով նրանք մոլորվեցին, մեկը մյուսին քանդեցին ու ավերեցին իրենց անօրենության պատճառով: Բայց բոլորից գերազանցում էր մի անօրեն՝ սատանայի գործիք դարձած մարդ, որ Տիրան թագավորին գրգռում էր մանավանդ նախարարական տոհմերի դեմ, այսինքն մեծ մարդպետության պատիվը կրող ներքինին, մի չարասիրտ՝ չարամիտ՝ չարագործ մարդ, որին Հայր էին ասում: Նա քսությամբ շատ նախարարներ կոտորել տվեց առանց որևէ հանցանքի և մեծ թագավորության կարգը խանգարեց: Մանավանդ նա իր չարախոսությամբ սրով կոտորել տվեց ու անզավակ դարձրեց երկու ավագ տոհմեր, Ռշտունյաց և Արծրունյաց տոհմերը, որոնց առանց որևէ մեղքի ու հանցանքի միջեհան արին, նույն իսկ էգերին կոտորեցին: Այն ժամանակ երկու երեխա էին գտնում, որոնք փախել ապաստանել էին դայակների մոտ, Մեհենդակ Ռշտունու որդուն Տաճատին և Արծրունի Վաչեի որդուն Շավասպին, որոնք ծծկեր երեխաներ էին: Նրանց բերին թագավորի մոտ: Նա երբ տեսավ երեխաներին՝ հրամայեց վզերը կտրել, որովհետև միայն նրանք էին մնացել այդ երկու տոհմերից նետեր: Այդտեղ պատահեցին Արտավազդը և Վասակը Մամիկոնյան տոհմից, Հայոց բոլոր զորքերի զորավարները: Նրանք վեր կացան, ընկան երեխաների վրա, ամեն մեկը մի երեխա անութի տակ առնելով դուրս եկան, զենքերը հանած, երեխաների համար մեռնելու պատրաստ: Որովհետև թեպետ նրանք սնուցանում էին թագավորի որդուն Արշակին, բայց այդ ժամանակվա գործերից զզվելով՝ թողին իրենց Արշակ սանին և արքունական բանակից հեռացան: Նրանք գնացին իրենց աշխարհը, Տայքի ամուր տեղերը, և այնտեղ մնացին իրենց ընտանիքների հետ բավական տարիներ, իրենց մյուս կալվածները թողնելով: Այնտեղ նրանք սնուցանում էին այն երկու երեխաներին, Շավասպին, և Տաճատին, և (հետո) նրանց կնության տվին իրենց աղջիկները, որից այդ տոհմերը նորից սերվեցին: Նրանք երկար տարիներ Հայոց գործերին չէին խառնվում:

## ՅԱՂԱԳՍ ՈՐԴԻՈՑՆ ՅՈՒՍԿԱՆՆ, ՊԱՊԱՅՆ ԵՒ ԱԹԱՆԱԳԻՆԻՆ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՍԱՏԱԿԵՑԱՆ ՅԱՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ ԻՒՐԵԱՆՑ

Այլ որդիքն Յուսկանն, Պապն և Աթանագինէս, յաստուածատեցութեանն զկեանս իւրեանց վարէին. յանօրէնութեան և յամբարշտութեան շրջէին: Եւ զամենայն աւուրս կենաց իւրեանց 'ի մեծի յանդգնութեան էին. և ոչ երկեւղ աստուծոյ առաջի աչաց նոցա. և 'ի բազում անառակութեան և 'ի գիջութեան գնային, և զկարգն աստուծոյ արհամարհեալ այպանէին: Եւ էին նոքա յերկիրն Տարօնոյ յեկեղեցւոջ յաւանին յԱշտիշատ. ուր զառաջին էր շինեալ զեկեղեցին 'ի հաւոյն նոցա Գրիգորէ: Յայն գեւղ երկոքեան եղբարքն երբեմն հասանէին Պապն և Աթանագինէս: Եւ բազում հատեալ յարբշռութիւն, զաստուծոյ զտաճարաւն այպրն առնէին. և երբեմն երկոքին եղբարքն մտանէին յեպիսկոպոսանոցն՝ որ էրն անդ, և ըմպէին անդ գինի բոզօք և վարձակօք և գուսանօք և կատակօք. զսուրբ և զնուիրեալ տեղօքն քամահեալ, կոխան առնէին:

Եւ մինչ էին յուրախութեան մեծի, բազմեալ էին ի՛ ներքս եպիսկոպոսանոցին ուտէին և ըմպէին, յանկարծակի հրեշտակ տեառն երևեցաւ 'ի նմանութիւն փայլատական, և հարեալ սատակէր զերկոսեան զեղբարսն միանգամայն 'ի բազմականին անդ: Եւ այլ մարդիկն՝ որք էին անդ, որք տանարակիցք էին ուրախակիցք և բազմականակիցք էին, որք միանգամ անդ դիպեցան, առ հասարակ բողին և փախեան, ելին արտաքս 'ի տաճարէ անտի: Եւ յահէն մեծէ այլ ոչ ևս ոք 'ի նոցանէ դարձաւ անդրէն. և ոչ ոք իշխեաց բնաւ այլ մարդ 'ի մարդկանէ մտաբերել մտանել 'ի ներքս, և ոչ 'ի դուռն հուպ երթալ և դնել, քանզի 'ի բաց մնաց 'ի փախչելյն նոցա. և ոչ յայլ աւուրս ոք առ դրօքն իշխէր անցանել:

Եւ Պապն և Աթանագինէս երկոքեան եղբարքն այսպէս սատակեցան. անկեալ դնէին 'ի ներքոյ եպիսկոպոսանոցին 'ի տեղւոջն բազմականացն: Եւ դրունք տաճարին 'ի բաց կային, և ոք հուպ չիշխէր երթալ. մինչև նեխեցան մարմինք նոցա և կողոպտեցան, և յաղկեցան, քակեցան յուծան 'ի միմեանց, ցրուեցան ոսկերք նոցա: Եւ բազում ամիսք անցանէին 'ի վերայ իրացն, ապա իշխեցին մտանել ժողովել բառնալ հանել անտի զոսկերս նոցա. և զտանէին զնոսա լոկ ցամաքեալ զկնդացեալ զոսկերս նոցա. և հանէին յայգւոջն եկեղեցոյն, որում Ագարակն կոչեն: Բայց մնաց Աթանագինի որդի 'ի Բամբրշնէ 'ի քեռէ թագաւորին, և անուն նորա Ներսէս, որ եկաց յարոռ հայրապետացն առ յապայ ամե-

## ԺԹ

### ՀՈՒՍԻԿԻ ՈՐԴՈՑ՝ ՊԱՊԻ ԵՎ ԱԹԱՆԱԳԻՆԵՍԻ ՄԱՍԻՆ ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԻՐԵՆՑ ԱՆՕՐԵՆՈՒԹՅԱՄԲ ՍԱՏԿԵՑԱՆ

Իսկ Հուսիկի որդիքը, Պապն ու Աթանագինեսը, կյանք էին վարում աստվածատեցությամբ, շրջում էին անօրենությամբ և ամբարտավանությամբ: Նրանք սաստիկ հանդուգն էին, աստծուց երկյուղ չունեին, կյանք էին վարում մեծ անառակությամբ և գինությամբ, աստվածային կարգերն արհամարհում ու ծաղրում էին:

Նրանք (մի անգամ) Տարոնի երկրում էին, Աշտիշատ ավանի եկեղեցում, որ առաջինը շինված էր նրանց պապի՝ Գրիգորի ձեռքով: Երկու եղբայրները, Պապն ու Աթանագինեսը, գալիս հասնում էին այս գյուղը: Սաստիկ հարբելով՝ նրանք ծաղրում էին աստծու տաճարը, երկուսով գնում մտնում էին այնտեղ եղած եպիսկոպոսանոցը, այնտեղ գինի էին խմում բոզերի, վարձակների[56], գուսանների և ծաղրածուների հետ:

Երբ նրանք եպիսկոպոսանոցում նստած ուտում խմում էին, ուրախություն էին անում՝ հանկարծ երևաց տիրոջ հրեշտակը փայլատակունքի նման և երկու եղբայրներին միասին զարկեց սպանեց նստած տեղերում: Իսկ մյուս մարդիկ, որ այնտեղ էին և նրանց հետ նստած սեղանակից և ուրախակից էին՝ բոլորը թողին ու փախան, դուրս եկան սենյակից: Եվ այնքան մեծ էր ահը, որ նրանցից ոչ մեկը էլ ետ չդարձավ, ոչ մի մարդ չհամարձակվեց նրանց մտաբերել ու ներս մտնել, ոչ ոք դռանը չմոտեցավ, դուռը վրա չդրեց: Նրանց փախչելիս դուռը բաց մնաց և այնուհետև էլ ոչ ոք չէր վստահում դռներին մոտենալ:

Այս կերպով սատկեցան այն երկու եղբայրները, Պապն ու Աթանագինեսը, նրանք եպիսկոպոսանոցում ճաշի սեղանի տակ ընկած մնացին: Տաճարի դռները բաց էին մնացել, և ոչ ոք չէր համարձակվում մոտենալ, մինչև նրանց մարմինները նեխեցան, քայքայվեցին, անդամ-անդամ լուծվեցին, ոսկորները ցրվեցան: Սրա վրա շատ ամիսներ անցան, ապա թե սիրտ արին, ներս մտան՝ հավաքելու և այնտեղից դուրս հանելու նրանց ոսկորները, որ ցամաքել չորացել էին: Նրանց հանեցին (ու թաղեցին) եկեղեցու այգում, որ Ագարակ էր կոչվում:

Բայց Աթանագինեսին մնաց մի որդի Բամբիշ (կնոջից), որ թագավորի քույրն էր. նրա անունն էր Ներսես, որ հետո բոլոր Հայաստանի

նայն երկրին Հայոց: Բայց Պապայ 'ի բուն 'ի կնոջէն ոչ մնաց, այլ էր նորա հարճ մի 'ի գաւառէն Տարօնոյ, 'ի Հացեաց գեղջէ կարճազատացն. և մնաց որ 'ի հարճէ անտի 'ի Հացեկացւոյն, որում անուն իւր[13] որդւոյ հարճին Վրիկ կոչէր:

Ի

## ՅԱՂԱԳՍ ՏԻՐԱՆԱՅ ԹԱԳԱՒՈՐԻ, ԹԷ ՈՐՊԷՍ ՄԱՏՆԵՑԱՒ ՅԻՒՐՄԷ ՍԵՆԵԿԱՊԵՏԷՆ ՓԻՍԱԿԱՅ ՍԻՒՆԻՈՅ. ԵՒ ՈՐՊԷՍ ԿՈՐԵԱՒ ԵՒ ԳԵՐԵՑԱՒ 'Ի ՎԱՐԱԶԱՅ, ԵՒ ԿԱՄ ՈՐՊԷՍ ԱՄԵՆԱՅՆ ԵՐԿԻՐ ԸՆԴ ՆՄԻՆ ԳԵՐԵՑԱՒ

Բայց դեռ բարեկամութիւն էր 'ի մէջ թագաւորացն երկոցունց, 'ի մէջ թագաւորին Հայոց և Պարսից: Նստէր յաշխարհին Ատրպատական որում անուն կոչէր բարձգահին իւրում Շապուհ Վարազ: Արդ մինչ դեռ ևս յոյժ խաղաղութիւն էր 'ի մէջ թագաւորացն երկոցունց, անկաւ 'ի տեառնէ խռովութիւն ոչինչ բանիւք՝ արամբ միով անարգաւ, որ ոչ ինչ պակաս քան զդև էր մոլորութեամբ, որոյ անուն Փիսակ կոչիւր. որ սենեկապետն էր արքային Տիրանայ, ազգաւ սիւնի: Սա դեսպանագնացեալ էր առ Վարազ Շապուհ, զոր թողեալն էր սահմանապահ արքային Պարսից յԱտրպատական աշխարհին:

Զայնու ժամանակաւ ձի մի էր երիվար արքային Տիրանայ, զորմէ կարի զարմանային: Եւ էր ձին գունով ճարտուկ ճանճկէն. սա լի էր քաջութեամբ, անուանի և հոյակապ, մեծ և բարձր երկայն քան զամենայն ձիս, և տեսանելով քան զայլս գեղեցիկ, զանազան՝ որ համեմատ նմա այլ ոչ գտանէր: Զորմէ յերթալն իւրոյ դեսպանութեանն՝ սենեկապետն արքային Փիսակ մատնեաց զձին Վարազայ, վասն զի բարեկամացեալ էր ընդ նմա. և 'ի նմանէն ինքն թուղթ առեալ, բերեալ մատուցանէր արքային Հայոց: Զորմէ չհաւանեալ, տալ ոչ առնոյր յանձն: Այլ վասն զի կասկածէր յառնէն զի գոյժ խռովութիւն ինչ 'ի մէջ թագաւորացն երկոցունցն արասցէ, 'ի խնդիր անկանէր՝ զնոյն գոյն ձի, զնոյն նշան, զնոյն պատկեր, բաց 'ի մեծութենէ՝ զի այնչափ ուրեք ոչ գտանէր, զնոյն նման զնոյն կերպարանս ճարտուկ ճանճկէն գտեալ, և հանդերձ հրովարտակօք և պատարագօք 'ի ձեռն մոլեկան Փիսակայն առ իշխանն յԱտրպատական առ Վարազն արձակէր: Եւ միտս դնելով խորհուրդ առնէր. զի ասասցես, ասէ, եթէ այս ինքն է զոր խնդրեցերն, զի առ սէր ոչ խնայեաց 'ի քէն: Իսկ նա յորժամ հասեալ առ Վարազն, յայտ առնէր զիրս խնայութեանն, 'ի զրգռութիւն ջանացեալ՝ ոչ կամէր բժշկել զնենգախօսութիւնն իւր. այլ ևս քան զևս սրեալ զչարախօսու-

հայրապետական աթոռը նստեց: Իսկ Պապը իսկական կնոջից որդի չունեցավ, բայց նա մի հարճ ուներ Տարոն գավառի կարճազատների[57] Հացյաց գյուղից, և այս հացեկացի հարճից մնաց մի որդի, անունն էր Վրիկ[57]:

## Ի

### ՏԻՐԱՆ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ, ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՄԱՏՆՎԵՑ ԻՐ ՍԵՆԵԿԱՊԵՏ ՓԻՍԱԿ ՍՅՈՒՆԻԻ ՁԵՌՔՈՎ, Ի՛ՆՉՊԵՍ ՎԱՐԱԶԻՑ ԳԵՐԻ ԲՌՆՎԵՑ ՈՒ ԿՈՐԱՎ, ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԲՈԼՈՐ ՀԱՅՈՑ ԵՐԿԻՐՆ ԷԼ ՆՐԱ ՀԵՏ ԳԵՐՎԵՑ

Բայց դեռ բարեկամություն էր տիրում երկու թագավորների՝ Հայոց և Պարսից մեջ: Այս ժամանակ Ատրպատականում նստում էր մի բարձր պաշտոնյա, որի անունն էր Շապուհ Վարազ: Արդ՝ մինչ կատարյալ խաղաղություն էր տիրում երկու թագավորների մեջ՝ տիրոջ կամքով մի չնչին բանի պատճառով խռովություն ծագեց մի անարգ մարդու ձեռքով, որ մոլորությամբ դևից պակաս չէր, անունը Փիսակ, Տիրան թագավոր սենեկապետը Սյունյաց տոհմից: Սա դեսպան էր գնացել Վարազ Շապուհի մոտ, որին Պարսից թագավորը սահմանապահ էր թողել Ատրպատականում:

Այս ժամանակ Տիրան թագավորը մի ձի ուներ, որի վրա բոլորը զարմանում էին: Այդ ձին մուգ շագանակագույն և պուտպուտիկ[58] էր, քաջությամբ լի, հոյակապ տեսքով, բոլոր ձիերից մեծ և բարձր, բոլորից զանազանվում էր աննման գեղեցկությամբ, որի նման ուրիշը չկար: Փիսակը, թագավորի սենեկապետը, դեսպան գնալիս այս ձին մատնեց Վարազին, որի հետ բարեկամացել էր, և նրանից թուղթ առնելով բերում մատուցանում էր Հայոց թագավորին: Թագավորը չկամեցավ (ձին) տալ: Բայց որովհետև այն մարդուց կասկածում էր, մի գուցե երկու թագավորների մեջ խռովություն ծագեցնե՝ հարց ու խնդիր եղավ և գտավ այն գույնով մի ձի, նույն նշանով, նույն տեսքով, բացի մեծությունից,— որովհետև այնպիսի մեծությամբ ուրիշը չկար—նույն տեսակ պուտպուտիկ, և հրովարտակով ու ընծաներով Ատրպատականի իշխանին՝ Վարազին էր ուղարկում նույն մոլի Փիսակի ձեռքով: Նրան խրատում ու խորհուրդ էր տալիս, թե «տես', այս այն ձին է որ խնդրեցիր. քո սիրու համար քեզանից չխնայեցի»: Իսկ նա երբ Վարազի մոտ հասավ՝ խնայելու գաղտնիքը բացեց և ջանաց (Վարազին) գրգռել հին սովորությամբ. նա ավելի արեց իր չարախոսությունը

թիւնն իւր, ասելով եթէ այնչափ 'ի հեռ և 'ի նախանձ, 'ի չարակնութեան և 'ի թշնամութեան, 'ի յատելութեան և 'ի չկամութեան, յերկմտութեան և յաներկիւղութեան առ թագաւորն Պարսից և առ ամենայն զօրսն Պարսից արքայն Հայոց Տիրան, մինչ անգամ վասն կաշոյ միոյ խնայ արարեալ՝ թագոյց, և զքեզ ծաղր արարեալ, և այլ ընդ այլոյ զմիտս գողանալ քո. զոր յիմ ձեռն ետ ածել, առ քեզ առաքեաց: Եւ ոչ այդ միայն է, ասէ. այլ 'ի կայսր և 'ի զօրս նորա յուսացեալ, խորհի հանել զթագաւորութիւն Պարսից յազգէն Սասանայ. զի ասէ, թէ մեր լեալ է և հարցն մերոց այն տէրութիւնն: Արդ ասէ, թէ չեմ ծուղալոց՝ մինչև դարձցի պատիւ հարցն նախնեաց. զնախնի զթագաւորութիւնն այսրէն առ որդի և առ զաւակ նոցա յազգս իմ և 'ի տունս իմ և յանձն իմ դարձուցանեմ: Եւ այսչափ և այսպիսի բանիւք գրգռէր զնա Փիսակն անօրէն 'ի վերայ տեառն իւրոյ բնակի, և հիւթէր զմահ 'ի վերայ իւրոյ թագաւորին:

Ապա իբրև զայս ամենայն լուաւ Վարազ Շապուհ Ատրպատական մարզպան 'ի կատաղախօս 'ի շնաքերանն Փիսակայ, վաղվաղակի նամակ ամբաստանութեան գրեալ Վարազայ յարքայէն Հայոց մատուցանէր Ներսեհի արքային Պարսից: Եւ այնչափ զայրացոյց գրգռեաց յուզեաց դրդեաց սրտմտեցոյց բարկացոյց զթագաւորն Պարսից 'ի վերայ արքային Հայոց, որ ապա առ հրաման 'ի նմանէ, զի չև է հնար գտանել մարթել ճանապարհս, մեքենայիւք գայթակղութիւնս դնել՝ որսալ ըմբռնել զարքայն Հայոց: Եւ մինչ դեռ խաղաղութիւն էր 'ի մէջ թագաւորացն երկոցունց, բարկութիւն տեառն գրգռեաց յուզեաց զվրէժս, զի խնդրեսցին սուրբ արիւնք մահուցն երկուց մեծացն քահանայիցն առաջնորդացն յանօրէնն Տիրանայ:

Ապա յայնմ ժամանակի Վարազն արձակէր դեսպան առ արքայն Հայոց, 'ի հաշտութիւն խաղաղութեան դաւով խօսել ընդ նմա. զանձուկ սիրոյ պատճառեալ, համարձակութիւն խնդրէր՝ գալ նմա առ նա: Իսկ իբրև լուաւ զայն Տիրան արքայն Հայոց, փութապէս վաղվաղակի մեծաւ ուրախութեամբ առ ինքն կոչել հրամայէր: Եւ մինչ չև նա եկեալ էր, խորհէր արքայն ընդ իւր ծառայսն ներքինիսն սպասաւորսն իւրում սենեկի. ասէ. Արժան է մեզ, այր որ գայ առ մեզ՝ զբօսուցանել և ուրախ առնել որսովք և բազմականօք, և ամենայն պէսպէս վայելչութեամբք: Այլ ոչ եթէ այնչափ ինչ արժան է զմեծ ինչ որսոյ տեղիս 'ի մերում երկրի ասա նմա տեսանել՝ վասն չարակնութեան յաչաղանաց չարաբարութեան նենգութեանն ազգին պարսկաց. այլ նմանեցուցէք տեղիս գոյզնագիւտ որսոց ինչ՝ որով լոկ զբօսուցուք զնա, և մի՛ որսացուք զառատ ինչ որսոց զտեղիս, և զի մի՛ մեծ ինչ նախճիրս որսոց կոտո-

ատելով. «Հայոց Տիրան թագավորը այնքան լցված է նախանձով, չկամությամբ, թշնամությամբ և ատելությամբ, այնքան անհամատարիմ և աներկյուղ է Պարսից թագավորից և բոլոր Պարսից զորքերից, որ մինչև իսկ մի ձիու կաշի խնայեց ու թաքցրեց և քեզ խաբելու ու ծաղրելու համար մի ուրիշ ձի քեզ ուղարկեց իմ ձեռքով: Եվ միայն այս չէ, ասում էր նա. նա նույս է դրել կայսրի ու նրա զորքի վրա, մտադրվել է Սասանի ցեղից խլել Պարսից թագավորությունը, որովհետև, ասում է, այդ տերությունը մերն է եղել և մեր հայրենիքը. ես, ասում է, չեմ հանգստանա, մինչև մեր նախնի հայրերի պատիվը ետ չդարձնեմ, մինչև նախնի թագավորությունը չդարձնեմ հայրենի զավակներին, այսինքն իմ տոհմիս և իմ տանս և ինձ»: Այս և այսպիսի խոսքերով անօրեն Փիսակը գրգռում էր Վարազին իր բնիկ տիրոջ դեմ, իր թագավորի համար մահ էր նյութում:

Երբ Վարազ Շապուհը, Սորպատականի մարզպանը, այս բոլորը լսեց կատաղախոս, չնաբերան Փիսակից՝ անմիջապես ամբաստանության թուղթ գրեց Հայոց թագավորի մասին և ուղարկեց Պարսից Ներսեհ թագավորին: Եվ այն ստահնան Պարսից թագավորին գրգռեց, զայրացրեց, հուզեց, չարացրեց, բարկացրեց Հայոց թագավորի դեմ, որ նրանից հրաման առացավ՝ որևէ հնար գտնել, որևէ միջոց հնարել՝ Հայոց թագավորին խորամանկությամբ որսալու և բռնելու: Եվ մինչ երկու թագավորների մեջ խաղաղություն էր տիրում՝ ստոված բարկանալով վրեժխնդիր եղավ, որպեսզի անօրեն Տիրանը տուժե երկու մեծ քահանաների ու առաջնորդների անմեղ մահվան և արյունի համար:

Այն ժամանակ Վարազը դեսպան էր ուղարկում Հայոց թագավորի մոտ՝ հաշտության և խաղաղության պատրվակով դավ սարքելով նրա դեմ: Նա սերն ու կարոտը պատճառ բերելով՝ թույլտվություն էր խնդրում՝ նրան այցելության գալու: Երբ Հայոց Տիրան թագավորն այս լսեց՝ փութով մեծ ուրախությամբ հրամայում էր հրավիրել նրան: Դեռ նա չեկած՝ թագավորը իր սենյակի ներքին սպասավորների հետ խորհուրդ էր անում: Նա ասում էր. «Մեզ մոտ եկող հյուրին հարկավոր է զվարճացնել և ուրախացնել որսերով, կերուխումով և ամեն տեսակ վայելչություններով: Բայց պետք չէ, որ նա այստեղ մեր երկրում առատ որսի տեղեր տեսնե, որովհետև Պարսից ազգը չարասիրտ, նախանձոտ, չարաբարո, ենեգ մարդիկ են. այլ պետք է գտնել որսով ոչ հարուստ տեղեր, որով նրան զվարճացնենք, բայց առատ որս չանենք, որսի մեծ կոտորածներ չանենք ցույցի համար. միայն ձևի համար անենք՝ պար-

րեալ առ 'ի ցոյցս առնելոյ: Այլ վարկպարազի արասցուք, ասէ, վասն դառնացող չար ազգին չարութեանն դառնացող ազգին: Այլ յերկրին Ապահունեաց, յոտինն մեծի լերինն Մասեաց, տեղին զայն որսասցուք. տեղւոյն՝ որում անուն կոչի քաղաք Աղիորսք:

Ապա եկն եհաս Շապուհ Վարազն երիւք հազարօքն, և յանդիման եղև թագաւորին յերկրին Ապահունեաց. և մեծապէս մեծարեցաւ 'ի նմանէ: Եւ այն բանքն, որ վասն որսոյն 'ի թագաւորէն ասացաւ, վաղվաղակի յունկն զօրավարին Պարսից հասանէին 'ի բերանոյ չորիկն շոզմոզն տիրանենկն և տիրադրուժն տիրասպանուն տիրամատնիչն Փիսակայ, յայն յաշխարհակորոյս յառնէ անտի. և աւուրս սակաւս ուրախ լինէին 'ի միասին: Այլ իշխանն Պարսից զթշնամութիւնն, զոր ունէր 'ի ներքոյ, խորամանգեալ ծածկեալ մեքենայեալ առազաստեալ բերէր, և առնէր սպաս զդաւն կատարել:

Եւ 'ի ժամանակին յայնմիկ այնպէս դիպեցաւ, յայնմ ժամանակի զօրավարքն չէին անդ, այլ սարտուցեալ էին. և այլ մեծամեծք նախարարացն և աւագ տանուտէրք ազատանին. սոյնպէս և զօրքն արքունի յիւրաքանչիւր տունս յիւրաքանչիւր կայեանս յիւրաքանչիւր դադարս դադարեալ էին: Եւ ոչ ոք էր՝ որ մնացեալ էր առ թագաւորին, և ոչ գունդ և այրեձի. բայց միայն սակաւ սպասաւորօք հանդերձ, և որսոցն պառականօք, և ռանձիրայ մարդկան, և խառնաղանճ խորանապահ զօրուն, և ռամիկսպաս զօրօքն, և տիկնաւն հանդերձ և արքայորդին մանուկն Արշակ: Այսպէս սակաւուք դիպեալ 'ի ժամանակին յայնմիկ, զի թէպէտ և տեսեալ հարուստ գնդաւ եկեալ զօրավարն Պարսից, զի էին ընդ նմա սպառազէնք վառեալք արք իբրև երեք հազարք, ոչ ինչ խիթացեալ զգուշաւ անկասկած լինէր: Քանզի տեսանէր զնա իբրև ի՛ պատճառս խաղաղութեան եկեալ, մեծաւ պատարագօք և պատուական ընծայիւք և մեծաշուք մեծարանօք:

Եւ իբրև ոչ ինչ բազում աւուրք ընդ մէջ եղեն, յընթրիս կոչեն 'ի հաց հրաւիրեալ զարքայն. 'ի պատիւ մեծարանաց կոչէր: Ապա իբրև ընդ գինիս մտին, քաջ արբեալ լինէին թագաւորն և որ ընդ նմայն էին, զօրն դարանակալ յանպատրաստից յանկարծօրէն յայլակարծուց զ՛ռնսս յանկարծուստ յիւրաքանչիւր բազմականի 'ի վերայ հասեալք ըմբռնէին, և վահանափակ շերտաւորացն պատէին զթագաւորն Տիրան: Եւ կալեալ կապեալ զոտս և զձեռս նորա 'ի կապս երկաթիս, և զբանակն՝ զոր գտանէր՝ աւար հարկանէր. և զգանձս և զստացուածս զկին և զորդիս թագաւորին, զոր գտին 'ի բանակին, խաղացուցին յերկրէն Ապահունեաց:

Իբրև եկին հասին 'ի գեւղ մի, որում անուն Դալարիս կոչէին.

սիկների դառնության և չարության պատճառով: Ընտրեց Սպահանի արքունյաց երկրում մեծ Մասիսի ստորոտում ուրիշ տեղ, Աղիովիտ կոչված գավառում»[59]:

Շապուհ Վարազը եկավ հասավ երեք հազար մարդով, ներկայացավ թագավորին Սպահունյաց երկրում և մեծ պատվով նրանից մեծարվեց: Իսկ այն խոսքերը, որ թագավորը ուրիշ մասին ասաց՝ անմիջապես Պարսից զորավարի ականջին էին հասնում այն գուն և բանսարկու, այն տիրանենգ ու տիրադրուժ, տիրասպան ու տիրամատնիչ Փիսակի, այն աշխարհավեր մարդու բերանով:

Մի քանի օր նրանք միասին ուրախություն էին անում. բայց Պարսից իշխանը իր ունեցած թշնամությունը խորամանկությամբ ծածուկ էր պահում և հարմար առիթի էր սպասում որ գլուխ բերե:

Դեպքն այնպես բերեց, որ այդ ժամանակները զորավարները այնտեղ չէին, այլ խռովել հեռացել էին[60], այսպես էլ մյուս ազատանին, մեծամեծ նախարարները ու ավագ տանուտերերը. նույնպես էլ արքունական զորքերը իրենց տներում, իրենց կացարաններում հանգստանում էին: Թագավորի մոտ ուրիշ մարդ չէր մնացել, ո՛չ հետևակազոր և ո՛չ այրուձի, բայց միայն սակավաթիվ սպասավորներ, ոստոստական շների պահապաններ, հանապարհների մշակներ, խորանների խառնիճաղանճ պաճնորդներ, ռամիկ սպասավորներ: Այնտեղ էին նաև տիկինը և արքայորդին, մանկահասակ Արշակը: Այսպես քիչ մարդիկ պատահեցին այնտեղ այդ ժամանակ. որովհետև թեպետ տեսնում էր, որ Պարսից զորավարը ուժեղ գնդով է եկել,— որովհետև երեք հազար լավ սպառազինված մարդիկ կային նրա հետ,— բայց միամիտ անկասկած էր, քանի որ տեսնում էր, թե նա խաղաղության համար է եկել մեծ նվերներով, ընծաներով և չքեղ մեծարանքներով:

Ոչ շատ օրեր անցնելուց հետո՝ թագավորին ընթրիքի հրավիրեցին, նրան պատվելու համար: Երբ խմելն սկսեցին՝ թագավորը և նրա հետ եղողները սաստիկ հարբեցան, և այս ժամանակ դարանակալ մարդիկ անսպասելի կերպով հանկարծակի վրա պրծնելով Տիրան թագավորին հենց նստած տեղում բռնեցին և շրջապատեցին զինված մարդկանցով: Նրա ոտներն ու ձեռները կապեցին երկաթե շղթաներով. ամբողջ բանակը, ինչ որ գտան՝ ավար առան: Թագավորի գանձերը, գույքը, կինը, որդիքը, ինչ որ բանակում գտան՝ Սպահունյաց երկրից տարան:

Եկան հասան մի գյուղ, որին ասում էին Դալարիք: Երբ Պար-

յորժամ եկն եմուտ զօրավարն Պարսից ՚ի ներքս ՚ի գեւղն Դալարիս, ածէր կապեալ զարքայն Տիրան ընդ իւր: Եւ ասէ Վարազ. Աղէ՝ տեսէ՛ք ածուղ, որով երկաթ շողացուցուք, զի զաչս խաւարեցուք զարքայիս Հայոց: Եւ անդէն բերին ածուղ, որով խարէին զաչսն Տիրանայ: Ապա ինքն խօսել սկսաւ Տիրան, և ասէ. Փոխանակ զի իմ երկու աչքս լուսաւորք խաւարեցան յայս տեղւոջս, առդ փոխանակ Դալարեացս անուան, Ածուղ անուն լիցի սմա մինչև ցյաւիտենականս ժամանակաց. և այս երևոյթ նշանակս մնացէ յիմ յիշատակի: Այլ ինձ յուշ եղև և զիտեմ՝ թէ այն զի խնդրեցաւ յինէն վրէժ չարեաց մեղացն իմոց, փոխանակ զի խաւարեցուցի ես զաշխարհս՝ որում թագաւորեալ էի՝ յերկուց լուսաւոր վարդապետացն, և կարծեցի շիջուցանել զլոյսն ճշմարտութեանն քարոզութեանն երկուց հաւատարմացն, վասն այսորիկ խաւարեցաւ լոյս տեսանելեաց աչացս իմոց:

Եւ յայնմ ժամանակի վաղվաղակի փութանակի չու առնէր յԱծուղ գեղջէն, խաղայր գնայր նեպով իշխանն արքային Պարսից հանդերձ Տիրանաւ արքայիւ և ամենայն գերութեամբն յերկիրն Պարսից, և երթայր յԱսորեստան առ տէրն իւր յարքայն Պարսից: Լու եղև այս ամենայն կործանումն գուժի չարեացն յանկարծօրէն թշուառութեանն հասելոյ: Ապա ժողով լինէր նախարարացն և իշխանացն, գործակալք և զօրագլուխք, պետք և ամենայն աշխարհաժողովք բազմութեանն եկելոց կուտելոցն: Թէպէտ և ժողովեցան կազմեցան գունդ եղեն, պատրաստութեամբ զհետ կրթէին Վարազայ, ոչ ինչ կարացին հասանել: Սակայն հասանէին առնուին զկողմ ՚ի Պարսից աշխարհէն. առ հասարակ մարդակոտոր առնէին, և զաշխարհն յայրեաց և յաւար դարձուցանէին: Եւ ինքեանք դառնային, և ՚ի մի վայր ժողովէին, կոծ եդեալ աշխարանօք լային զիւրեանց բնական տէրն զարքայն Հայոց. սոյնպէս և զկորուստ աշխարհին, և զանձանց անտէրշութիւն կործանմանն վարանացն աղխողորմ գործէին:

ուից զորավարն եկավ Դալարիք գյուղը մտավ՝ իր հետ տանում էր կապված Տիրան թագավորին: Եվ Վարազը ասաց. «Այս ածուխ գտեք, որով երկաթ շիկացնենք, և Տիրան թագավորի աչքերը դաղենք»: Իսկույն ածուխ բերին և Տիրանի աչքերը դաղեցին: Այն ժամանակ Տիրանը խոսեց ու ասաց. «Փոխանակ որ իմ զույգ լուսավոր աչքերս այս տեղում խավարեցան՝ թող այսուհետև Դալարիքի փոխարեն Ածուխ կոչվի սա հավիտյան, և այս հայտնի նշանը մնա ինձ հիշատակ. բայց ես միտքս բերի և գիտեմ, որ իմ գործած չարիքների ու մեղքերի վրեժը ինձանից պահանջվեց, որովհետև ես այս աշխարհը, որում թագավորում էի, խավարեցրի՝ երկու լուսատու ուսուցիչներից (զրկելով) և կարծում էի, թե ճշմարիտ վարդապետության երկու հավատարիմ քարոզիչների լույսը կհանգցնեմ. այս պատճառով էլ իմ աչքերիս լույսը խավարեց»:

Այնուհետև Պարսից թագավորի իշխանը ամենայն շտապով Ածուխ գյուղից մեկնում էր, հետն առնելով Տիրան թագավորին և ամբողջ գերությունը, փութով գնում հասնում էր Պարսից աշխարհը և գնում էր Ասորեստան՝[61] իր տիրոջ՝ Պարսից թագավորի մոտ:

Այս հանկարծակի վրա հասած չարիքի ու թշվառության՝ այս կործանման գույժը տարածվում էր: Ժողովվում էին նախարարներն ու իշխանները, գործակալներն ու զորագլուխները, պետերը և աշխարհից մեծ բազմություն: Նրանք ժողովվեցին, գնդեր կազմեցին, պատրաստությամբ հետամուտ եղան Վարազին, բայց չկարողացան հասնել: Բայց և այնպես Պարսից աշխարհի մի կողմն առնում էին, մարդկանց առհասարակ կոտորում էին, աշխարհը այրում ու ավարի էին առնում: Մի տեղ ժողովվելով կոծում, սգում ու ողբում էին իրենց բնիկ տիրոջ՝ Հայոց թագավորին, ինչպես և աշխարհի կորուստն և իրենց անտիրական մնալն ու կործանվելը. աղիողորմ կերպով լալիս էին:

ԻԱ

ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԺՈՂՈՎԵՑԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՄԲ ՆԱԽԱՐԱՐՔՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ԶՈԳԱՆ ԱԾԻՆ ԶԹԱԳԱՒՈՐՆ ՅՈՒՆԱՑ՝ ԻՒՐԵԱՆՑ 'Ի ԹԻԿՈՒՆՍ ՕԳՆԱԿԱՆՈՒԹԵԱՆ 'Ի ՅԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ. ԵՒ ԹԷ ՈՐՊԷՍ ԵԿՆ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՐՍԻՑ ԲԱԶՈՒՄ ԶՕՐՕՔ, ԵՒ ՄԻԱՁԻ ՃՈՂՈՊՐԵԱԼ ՓԱԽՉԷՐ ՅԵՐԿԻՐՆ ՊԱՐՍԻՑ

Ապա առաւել ժողովեցան 'ի մի ժողով միաբանութեանն մարդիկ աշխարհին Հայաստան երկրին. նախարարք մեծամեծք, ազգք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք, դատաւորք, պետք, իշխանք. բայց 'ի զօրավարացն, այլ և 'ի շինականաց անգամ ռամիկ մարդկանն: Ապա խօսել սկսան այր ընդ ընկերի, և ասեն. Զինչ է այս, որ 'ի սուգ մտեալ եմք· թշնամիք այսու զամագիտ լինին. այլ քան սակաւ ժամանակք են, այսրէն արշաւեսցեն թշնամիքն: Այլ եկայք, զանձինս անձամբք մխիթարեսցուք. անձանց և աշխարհի պահ կալցուք, և զտեառն բնակի վրէժ խնդրեսցուք: Ապա առհասարակ ամենայն մարդիկ աշխարհին 'ի մի միաբանութիւն և 'ի մի խորհուրդս ժողովեցան վասն օգնականութեան և 'ի թիկունս իւրեանց գտանելոյ:

Յայնմ ժամանակի առաքեցին 'ի մեծ նախարարաց անտի ապազանին Հայոց հանդերձ պատարագօք առ թագաւորն Յունաց, զի 'ի նա ձեռս տուեալ ծառայեսցեն նմա հնազանդութեամբ, և լինիցի նա նոցա թիկունք օգնականութեան՝ խնդրել վրէժս 'ի թշնամեաց նոցա: Ապա առաքեցին զԱնդովկ նահապետն Սիւնեաց, և զԱրշաւիրն Կամսարական, նահապետն Արշարունեաց: Որք երթեալ հասեալ էին յաշխարհն Յունաց 'ի կայսերական պալատն թագաւորացն. և տային զհրովարտակն, և ունէին զպատարագսն բերեալ առաջի, և մատուցանէին զաշխարհապաղատ պատգամսն առաջի թագաւորին: Զոր իբրև լուաւ կայսրն զիրսն զայնոսիկ, մեծաւ փութով և բազում պատրաստութեամբ ի խնդիր ելանէր իրին հասելոյ. և օգնական և թիկունք լինէր աշխարհին Հայոց: Մանաւանդ զի զախտն յիշեալ զդաշանցն կռելոց զերդմանցն հաստատութեան, միջնորդութեամբ 'ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և 'ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր:

Արդ մինչ դեռ դեսպանքն երթեալք յերկրէն Հայոց 'ի կայսերական պաղատն չև էին անդրէն յիւրեանց աշխարհն դարձեալ, 'ի կողմանց արեւելից խաղաց գնաց ինքն Ներսեհ արքայն Պարսից, գալ առնուլ այրել և աւերել, կործանել և միահաղոյն իսկ յիւր վարել զսահմանս Հայաստան երկրին: Եւ առեալ զամենայն զօրս իւր բնիւ աղխիւ և ամենայն մեծաւ կարաւանաւ, փղակոյտն բազմութեամբ հանդերձ, անթիւ վահանօք և բեհիւն մաշկապանեօքն, և ամենայն կանանօքն, և հան-

ԻԱ.

## ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ԲՈԼՈՐ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԸ ԺՈՂՈՎՎԵՑԻՆ ԵՎ ՄԻԱԲԱՆՈՒԹՅԱՄԲ ԳՆԱՑԻՆ, ՀՈՒՆԱՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԲԵՐԻՆ ԻՐԵՆՑ ՕԳՆԱԿԱՆ, ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԸ ՄԵԾ ԶՈՐՔՈՎ ԵԿԱՎ ԵՎ ՄԻ ՁԻՈՎ ՃՈՂՈՊՐԵՑ ՓԱԽԱՎ ՊԱՐՍԻՑ ԱՇԽԱՐՀԸ

Այնուհետև ավելի մեծ միաբանությամբ ժողովվեցին Հայոց աշխարհի մարդիկ.—մեծամեծ նախարարները, ավագները, կուսակալները, աշխարհակալները, ազնվականները, զորագլուխները, դատավորները, պետերը, իշխանները,— բացի զորավարներից, նույնիսկ ռամիկ շինական մարդիկ: Սկսեցին իրար հետ խոսել և ասում էին. «Այս ի՞նչ է, մեր արածը, նստել սուգ ենք անում. թշնամիները սրանից կոգավին. շատ չանցած՝ էլի մեր երկիրը կարշավեն: Եկե՛ք, մենք մեզ միհիթարենք, մեր գլուխներն ու աշխարհը պահպանենք և մեր բնիկ տիրոջ համար վրեժխնդիր լինինք»: Այսպես աշխարհի բոլոր մարդիկ ժողովվելով խորհուրդ արին, միաբանեցան, որ իրենց համար օգնություն ու թիկունք գտնեն:

Այն ժամանակ Հայոց ավագանին մեծ նախարարներից (բաղկացած պատգամավորություն) ուղարկեց Հունաց թագավորի մոտ նվերներով, (առաջարկելով) որ նրան ձեռք մեկնեն և հնազանդությամբ նրան հպատակեն. իսկ նա իրենց թիկունք լինի և օգնէ վրեժխնդիր լինելու թշնամիներից: (Պատգամավոր) ուղարկեցին Սյունյաց Անդովկ նահապետին և Արշարունյաց նահապետ Արշավիր Կամսարականին: Սրանք գնացին հասան Հունաց աշխարհը, կայսերական պալատը, հանձնեցին հրովարտակը, բերած նվերները առաջ բերին և թագավորին ներկայացրին (Հայոց) աշխարհի խնդիրը: Կայսրը բոլոր հանգամանքները լսելով՝ մեծ փույթով ու պատրաստությամբ հանձն առավ նրանց խնդիրը կատարել, թիկունք և օգնական եղավ Հայոց աշխարհին,-մանավանդ որ հիշում էր այն ուխտի դաշինքը, որ երդումով հաստատապես կնքել էին Կոստանդիանոս կայսրը Տրդատ թագավորի հետ[62]:

Եվ մինչ դեսպանները, որոնք Հայոց աշխարհից կայսերական պալատն էին գնացել, դեռ չէին դարձել իրենց աշխարհը՝ արևելքի կողմից ինքը Պարսից Ներսեհ թագավորը շարժվեց ու եկավ, որ Հայոց աշխարհը այրե, ավերե, ամբողջապես փչացնե և ամբողջ սահմաններով գրավե: Նա եկավ իր բոլոր զորքով, բոլոր աղխով, մեծ կարավանով, բազմաթիվ փղերի կույտով, անչափ մթերքներով, բուն մաշկապանյանով[63], բոլոր կանանցով և տիկնանց տիկինով. եկավ մտավ Հայաս-

դերձ տիկնանց տիկնաւն, եկն եհաս ՚ի սահմանս Հայոց. խնողեաց ելից զերկիրն առ հասարակ: Յայնմ ժամանակի ազատազօրքն նախարարացն Հայոց առեալ զիւրաքանչիւր ընդանիս, լինէին փախստականք, ՚ի կողմանս Յունաց անցանէին, գոյժ տային կայսերն բազմագունդ բանակին նախարարացն: Ապա իբրեւ զայս ամենայն լսէր թագաւորն Յունաց, նոյնօրինակ և նա զիւր զօրսն գումարէր, և չու արարեալ գայր հասանէր յերկիրն Հայոց ընդդէմ թագաւորին Պարսից: Եւ եթող զիւր զբանակն զՍատաղ քաղաքաւն. և ինքն ընտրեաց իւր արս երկուս գլխաւորս, արս իմաստունս Հայաստան բանակէն, այս ինքն զԱրշաւիրն և զԱնդովկըն. զի այս արք էին, որ շոգան առ նա դեսպանութեամբ յառաջնում նուագին: Եւ այսպէս հանդերձ նոքօք ինքն իսկ կայսրն ՚ի շինականութեան կերպարանս, ՚ի կաղամբավաճառի օրինի, մտանէր ՚ի բանակն Պարսից:

Իբրեւ էր նա բանակեալ ՚ի գաւառին Բասենոյ, ՚ի գեւղն՝ որ անուանեալ կոչի Ոսխայ, եկին մտին ՚ի բանակն արքային Պարսից, դիտեցին քննեցին զչափ առին զնոցա զօրութիւն զօրացն: Եւ անտի դարձան յիւրեանց բանակն, կազմեցան պատրաստեցան. գային հասանէին գտանէին զբանակն արքային Պարսից ՚ի նմին տեղւոջ բանակեալ ՚ի պղերգութեան յանհոգութեան յանկասկած խաղաղութեան: Ապա հասեալ ՚ի տուընջէն ժամուն, անկանէին ՚ի վերայ թագաւորին Պարսից, ընդ սուր զամենայն բանակն հանէին, և ոչ զմի ոչ ապրեցուցանէին: Եւ առին զկապուտ զաւար բանակին, և զկանայս թագաւորին և զբամբիշն, և զբանակսն ընդ նոսին, և զինչս և զատացուածս նոցին ընդ նմին ՚ի գերութիւն վարէին, զկանայս նոցա և զգանձս և զկեանս և զկազմած նոցա: Բայց միայն թագաւորն պրծեալ մազապուր, պէշապիկ[14] մի սուրհանդակ առաջի, պրծեալ ելանէր փախստական. հազիւ ուրեմն կարէր անկանել հասանել յաշխարհ իւր: Իսկ կայսրն մեծաւ շքեղութեամբ անուանի պերճացեալ ՚ի մէջ բանակին երևեալ. գայր ՚ի չափ հասեալ առ հասարակ կոտորէին, և զայլ ամենայն ՚ի գերութիւն վարէին յերկիրն Յունաց: Եւ ՚ի վերայ երկրին թողոյր զիշխանսն վերակացու զԱնդովկ և զԱրշաւիր, մեծապարգև մեծապատիւ մեծարէր. և յանձն արարեալ զնոսա ամենայն իշխանացն և զաշխարհն նոցա, և ինքն կայսրն չու արարեալ գնաց յերկիր իւր յերկիրն Յունաց:

Եւ արքայն Պարսից գնացեալ փախստական յերկիր իւր. և իբրեւ եհաս անդր՝ ժողովէր առ ինքն զամենայն մնացեալս իշխանութեան իւրոյ, և ՚ի խոյզ և ՚ի խնդիր անկանէր: Խորհուրդ ՚ի մէջ առնոյր, հարցևքնին առնել հրամայէր վերստին, զի տեսցեն և յայտ արասցեն՝ թէ ուստի՛ եղև սկիզբն պատերազմացն և մարտին: Ապա ՚ի վեր եկին և

տանի սահմանները, ամբողջ աշխարհը բռնեց: Այս ժամանակ Հայոց նախարարների ազնվական զորքերն իրանց ընտանիքներն առնելով փախչում էին Հունաց կողմերը, գնում էին (այս լուրը) կայսերական բազմագունդ բանակի նախարարներին: Հունաց թագավորը երբ այս բոլորը լսում էր՝ ապա ինքն էլ իր զորքն էր գումարում և չվում գալիս էր Հայոց աշխարհը՝ Պարսից թագավորի դեմ:

Նա բանակը թողեց Սատաղ[64] քաղաքի մոտերը. ինքն ընտրեց հայկական բանակից երկու գլխավոր իմաստուն մարդ, այսինքն Արշավիրին և Անդովկին, որոնք դեսպանությամբ նրա մոտ էին գնացել առաջ: Նրանց հետ միասին ինքը կայսրը շինականների կերպարանքով, իբրև կաղամբ վաճառող, մտնում էր Պարսից բանակը, որ այդ ժամանակ գտնվում էր Բասյան գավառում, Ոսխա կոչված գյուղում: Նրանք մտան Պարսից թագավորի բանակը, դիտեցին, քննեցին, նրանց զորքերի զորության չափն առան և այստեղից դարձան իրենց բանակը: Կազմակերպվեցին, պատրաստվեցին, վրա հարձակվեցին և գտան Պարսից բանակը նույն տեղում, որ անհոգաբար միամիտ, անկասկած և անզործ բանակել էին: Լուսաբացին նրանք հարձակվեցին Պարսից թագավորի վրա, ամբողջ բանակը սրի բերան տվին, ոչ մեկին կենդանի չթողին: Բանակը կողոպտեցին, ավար առան, բռնեցին թագավորի կանանց ու Բամբիշին (տիկնանց տիկին) և նրանց հետ տիկիններին[65], նրանց բոլոր գույքն ու ստացվածքները, գանձերը, պաշարեղենը, սարքը կանանց հետ միասին գերի վերցրին: Միայն թագավորը հազիվ հազ պրծնելով մի առաջընթաց սուրհանդակով փախչում էր, հազիվ կարողանում էր իր աշխարհն ընկնել: Իսկ կայսրը մեծ շքեղությամբ պերճացած երևեց բանակում. բոլոր չափահասներին կոտորեցին, իսկ մնացածներին գերի տարան Հունաց աշխարհը: Իսկ (Հայոց) աշխարհի վրա վերակացու թողեց երկու իշխաններին, Անդովկին և Արշավիրին, որոնց մեծ պարգևներով մեծարեց. և նրանց հանձնելով բոլոր իշխաններին ու աշխարհը՝ ինքը վերադարձավ Հունաստան, իր երկիրը:

Իսկ Պարսից թագավորը փախավ գնաց իր երկիրը: Երբ այնտեղ հասավ՝ իր մոտ ժողովեց իր իշխանության մեջ մնացածներին, և քննություն ու հարց ու փորձ էր անում: Խորհուրդ էր անում, հրամայում էր նորից քննել և իմանալ, թե ո՞րտեղից առաջ եկավ այս պատերազմը: Այն ժամանակ հանգամանքները բացվեցին և հայտնի դարձավ, որ մի

յայտնեցան իրքն առաջի նորա. զի յոչինչ իրաց և վատթար բանից համարեցան զիւրսն եղեալս, վասն ծիոյ միոյ կարծիս առնել զայն ամբոխ խռովութեան 'ի մոլեկան առնէն Շապուհ Վարազայն: Ապա հրաման ետ հանել զպատիւն 'ի բաց, և մերկանալ 'ի նմանէ զպատուական պատմուճանն, և մեծաց հարուածոց արժանի առնէր զՎարազն: Ըստ պարսկի օրինակին հրամայէր զմորթն 'ի բաց հանել և խոտով լնուլ, և 'ի հրապարակի իւրում 'ի տեսիլ ծանականաց կանգնել հրամայէր: Եւ ինքն 'ի զղջումն եկեալ վասն իրացն եղելոց, ապա արձակէր զիշխանսն պատուականս 'ի հնազանդութիւն խաղաղութեան վասն զերեդարձ առնել 'ի կայսերէն միւսանգամ, և այնուհետև աղօթակերս արձակել 'ի հաշտութիւն խաղաղութեան. խօսել ընդ կայսերն, զի զոնեա զկանայս իւր արձակեսցէ 'ի գերութենէն, և բարձցէ 'ի նմանէ զծանակութեանցն զզարովութեանցն նախատինս:

Ապա գտանէր հռովարտակ թագաւորն Յունաց Վաղէս առ արքայն Պարսից· Նախ դու, ասէ, դարձուցես զգերութիւն առեալ յերկրէն Հայոց, և զթագաւորն Տիրան ինքնին զխովին, և զամենայն ինչ զոր առեալ իցէ անտի. ապա յորժամ զայդ արասցես, և ես զիմս դարձուցից զոր առեալ եմ. զի եթէ ոչ՝ նախ դու զնոցա զաւարն դարձուցես, և ես ապա զքոյդ դարձուցից: Եւ իբրև լուաւ զայն հրաման արքայն Պարսից, վաղվաղակի զիւրսն կատարէր. հանէր զկապեալն Տիրան 'ի տանէն բանդի կապանաց, խօսէր ընդ նմա ողոքով, զի թագաւորեցուսցէ զնա անդրէն յիւր աշխարհն արձակելով, զի երթիցէ նա պատուով: Ապա տուեալ պատասխանի Տիրանայ, եթէ անօգուտ է ինձ և անպատշաճ է, կուրութեամբ, անմարթ իսկ է կարի, ունել զթագաւորութիւն. բայց փոխանակ իմ թագաւորեցո՛ զԱրշակ զորդի իմ:

Յայնմ ժամանակի թագաւորեցուցանէր զԱրշակ որդի նորա 'ի վերայ աշխարհին Հայոց. և զկանայս թագաւորին և զայլ գերին ամենայն, զանձիւք ընծայիւք և ստացուածովք հանդերձ, և միանգամայն դարձ առնէր ամենայն գերութեան: Եւ զինքնին Տիրան թագաւորն Պարսից հանդերձեաց կազմեաց մեծաւ կազմութեամբ, և արձակեաց յիւր աշխարհէն յերկիրն Հայոց. և կատարեալ հաւատարմացոյց զասացեալսն հրամանաց թագաւորին Յունաց: Եւ իբրև զնաս 'ի Հայս յուղարկէր, ապա և զ'ի թագաւորէն Յունաց զառ ինքն եկեալսն դեսպանսն արձակէր յիւրմէ, զի երթիցեն պատմեսցեն թագաւորին Յունաց՝ թէ ո՛րպէս և կամ զի՛արդ նա զհրամանսն կատարեաց զթագաւորին Յունաց, զի և թագաւորն Յունաց դարձուսցէ զգերութիւնն՝ զոր առեալ զթագաւորին Պարսից: Եւ եղև իբրև լուաւ զայս ամենայն թագաւորն Յունաց՝ եթէ կատարեաց 'ի գլուխ եհան զայս ամենայն 'ի նմանէ զասացեալ հրամանսն

չնչին բանից, մի վատթար չարախոսությունից է ծագել, այն մոլի Շապուհ Վարազը այդ խռովությունը հարուցել է մի ձիու պատճառով: Ուստի հրաման տվեց՝ պատիվը նրանից առնել, պատվական պատմուճանը վրայից հանել և մեծամեծ չարչարանքների ենթարկել Վարազին: Եվ ըստ պարսկական սովորության հրամայում էր նրա մորթը հանել, խոտով լցնել և հրապարակում կանգնեցնել նախատինքի համար: Ինքն էլ եղածի վրա զղջալով՝ պատվական իշխաններ էր ուղարկում (կայսեր մոտ) հաշտության մասին (բանակցելու), գերիները ետ դարձնելու համար. աղաչավորներ էր ուղարկում կայսեր հետ խաղաղության ու հաշտության մասին բանակցելու, որ զոնե իր կանանց գերությունից արձակի և խայտառակությունն ու նախատինքը վերացնե:

Այն ժամանակ Հունաց Վաղես թագավորը հրովարտակ էր գրում[66] Պարսից թագավորին. «Նախ դու, ասում է, ետ դարձրու Հայոց աշխարհից տարածդ գերիները, Տիրան թագավորով հանդերձ, և առհասարակ ինչ որ այնտեղից առել ես. երբ դու այս անես՝ ապա ես էլ ետ կդարձնեմ ինչ որ առել եմ. ուրեմն առաջ դու նրանցից առածդ ավարը վերադարձրու, ապա ես քոնը կվերադարձնեմ»:

Պարսից թագավորը երբ այս հրամանը լսեց՝ իսկույն նրա ասածները կատարեց. կապված Տիրանին բանտից ու կապանքներից արձակեց, քաղցրությամբ խոսում էր հետը, թե նրան կրկին կթագավորեցնե և պատվով իր աշխարհը կուղարկե: Իսկ Տիրանը պատասխանեց, թե «Ինձ կույր տեղովս, անօգուտ, անպատշաճ, նույնիսկ անկարելի է թագավորություն անել. իմ փոխարեն թագավորեցրու իմ որդուն, Արշակին»:

Այն ժամանակ (Պարսից թագավորը) նրա Արշակ որդուն թագավորեցնում է Հայոց աշխարհի վրա, և թագավորի կանանց և մյուս բոլոր գերիներին, գանձերով, ընծաներով, ստացվածքներով հանդերձ առհասարակ գերությունից ետ էր դարձնում. իրան՝ Տիրան թագավորին էլ Պարսից թագավորը մեծ պատրաստությամբ ու պատվով արձակեց, որ գնա իր երկիրը, Հայոց աշխարհը: Այսպես նա հավատարմությամբ կատարեց Հունաց թագավորի հրամայածները: Երբ նրանց բոլորին Հայաստան ուղարկեց՝ ապա Հունաց թագավորի կողմից իր մոտ եկած դեսպաններին էլ արձակում էր, որպեսզի գնան, Հունաց թագավորին պատմեն, թե ի՛նչպես ինքը կատարեց Հունաց թագավորի հրամանները, որպեսզի Հունաց թագավորն էլ վերադարձնե Պարսից թագավորի գերիներին, որ տարել էր:

Երբ Հունաց թագավորը լսեց, թե Պարսից թագավորը լիով կատա-

թագաւորն Պարսից, և դարձ արար զերութեանն Հայոց և Տիրանայ արքային, հանեցաւ: Յայնմ ժամանակի և թագաւորն Յունաց առնէր զերէդարձ զերութեան արքային Պարսից: Եւ հանդերձեաց կազմեաց թագաւորն Յունաց զկանայս թագաւորին Պարսից մեծաւ պատուով, և զամենայն զերութիւնս նոցա ընդ նոսին յերկրէն Յունաց յերկիրն Պարսից դարձուցանէր, և բարեաւ առ թագաւորն յուղարկէր:

### ԿԱՏԱՐԵՑԱՒ ԵՐՐՈՐԴ ԴԱՐՔ, ՔՍԱՆ ԵՒ ՄԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ԴՊՐՈՒԹԻՒՆՔ, ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ԿԱՆՈՆՔ ՓԱՒՍՏԵԱՅ ԲԻՒԶԱՆԴԵԱՅ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ՄԵԾԻ ՊԱՏՄԱԳՐԻ, ՈՐ ԷՐ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ՅՈՒՆԱՑ

րեց իր տված հրամանները և Հայաստանի գերիներին և Տիրան թագավորին ազատ արձակեց՝ գոհացավ. ապա ինքն էլ, Հունաց թագավորը, Պարսից թագավորի գերիներին ազատ արձակեց, և Պարսից թագավորի կանանց կարգով սարքով ու մեծ պատվով, բոլոր գերիներին էլ նրանց հետ Հունաց աշխարհից վերադարձրեց Պարսից աշխարհը և բարով հասցրեց իրենց թագավորի մոտ:

---

ԱՎԱՐՏՎԵՑ ԵՐՐՈՐԴ ՄԱՍԸ[66] ՔՍԱՆ ԵՎ ՄԻ ԴՎՈՒԽ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ ՄԵԾ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ՊԱՏՄԱԳՐԻ, ՈՐ ՀՈՒՆԱՑ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ԷՐ

# ՉՈՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ

## Բ Ի Ւ Զ Ա Ն Դ Ե Ա Ց

### ՉՈՐՐՈՐԴ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆ
### ԶՈՐ ԱՍԵԼՈՑ ԵՄ ԿԱՐԳԵԼ ԶԴՊՐՈՒԹԻՒՆ ԿԱՆՈՆՔ ԴԱՐՔ ԵՒ ԴԱՐՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ԶՐՈՒՑԱՑ

### ԽՈՍՏՈՒՄՆ ԽՈՍՏԱՑԵԼՈՑՍ

Ա. Յաղագս թէ ո՛րպէս յետ բազում չփոթի պատերազմաց ընդ Ներսէհի արքային Պարսից, թէ ո՛րպէս թագաւորեցոյց զԱրշակ որդի Տիրանայ, և արձակեաց յաշխարհն Հայոց հանդերձ Տիրանաւ հարբն իւրով, և ամենայն զերութեամբն հանդերձ:

Բ. Յաղագս շինութեան կարգաց և յօրինուածոց աշխարհին Հայոց, վարուց և կարգաց նուանութեան, և յօրինելոյ և նորոգելոյ թագաւորութեանն:

Գ. Յաղագս սրբոյն Ներսէսի, թէ ո՛ւստի կամ ո՛րպէս ընտրեցաւ լինել կաթուղիկոս Հայոց մեծաց:

Դ. Յաղագս թէ ո՛րպէս առին գնացին տարան զՆերսէս ՚ի Կեսարիա. և կամ ո՛րպէս սքանչելիքն աստուծոյ եղեն:

Ե. Յաղագս Ներսէսի կաթողիկոսի Հայոց, թէ զիա՛րդ յԱրշակայ արքայէ Հայոց առաքեցաւ առ Վաղէս թագաւորն Յունաց հանդերձ նախարարօքն, և թէ զիա՛րդ աքսորեցաւն, և կամ զիա՛րդ զայլ նախարարսն հանդերձ այլովքն պատարագօք արձակէր յերկիրն Հայոց:

Զ. Յաղագս և թէ զիա՛րդ իբրև աքսորեցաւ սուրբն Ներսէս, և ընկեցաւ ՚ի կղզին յանապատ, և թէ ո՛րպէս և կամ զիա՛րդ կերակրեցաւ, և յաստուծոյ եղեն սքանչելիքն զամս ինն:

Է. Յաղագս աստուծոյ սքանչելիքն, որ երևեցան ՚ի Ներսէսի կամ ՚ի Բարսիլիոս. և վասն նախանձու Եւսեբի եպիսկոպոսի Բարսիլոսի:

Ը. Յաղագս և թէ ո՛րպէս թագաւորն Յունաց հալածեաց զամենայն ուղղափառս զհաւատացեալսն, և կամ ո՛րպէս կամեցաւ փայքար առնել՝ ի մէջ ճշմարիտ հաւատացելոցն և ՚ի մէջ ձախող աղանդին արիանոսաց: Եւ կամ ո՛րպէս այս սքանչելեացն տեսլեամբն Բարսիլոս կոչեալ լինէր ՚ի կայսերէն ՚ի փայքարէ, և ամենայն զօրութեամբն յաղթէր ախոյանին առ եպիսկոպոսին Եւսեբի: Եւ կամ ո՛րպէս եպիսկոպոսապետն Կեսարու Եւսեբիոս վճարեալ լինէր ՚ի բանդին և կամ ո՛րպէս Բարսիլոս արձակեալ:

Թ. Յաղագս թէ ո՛րպէս տարաւ զԲարսիլոս եպիսկոպոսապետն Կեսարու, և կամ

# ԲՈՒԶԱՆԴԻ

## ՉՈՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ

### ՑԱՆԿ ՉՈՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅԱՆ

### ԻՆՉ ՈՐ ԱՍԵԼՈՒ ԵՄ, ՊԱՏՄԱԿԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՇԱՐՔԵՐ[67]

*ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ*

Ա. Թե ի՛նչպես պատերազմներից և մեծ շփոթություններից հետո Պարսից Ներսեհ թագավորը թագավորեցրեց Տիրանի Արշակ որդուն և ի՛նչպես նրան արձակեց և ուղարկեց Հայոց աշխարհը Տիրան հոր և բոլոր գերիների հետ:

Բ. Հայոց աշխարհի շենանալն ու բարեկարգվելը, վարքերի ուղղումը, թագավորության նորոգվելն ու բարեկարգվելը:

Գ. Սուրբ Ներսեսի մասին, թե ո՛րտեղից և ի՛նչպես ընտրվեց Մեծ Հայքի կաթողիկոս:

Դ. Թե ի՛նչպես Ներսեսին առան տարան Կեսարիա և ի՛նչպիսի սքանչելիք եղավ աստծուց:

Ե. Հայոց Ներսես կաթողիկոսի մասին, թե ի՛նչպես նա նախարարների հետ Հայոց Արշակ թագավորից ուղարկվեց Հունաց Վաղես թագավորի մոտ, ի՛նչպես նա աքսորվեց, և թե ի՛նչպես (Վաղեսը) մյուս նախարարներին, (այլ պատանդների հետ)[68] նվերներով արձակում էր Հայոց աշխարհը:

Զ. Թե ի՛նչպես սուրբ Ներսեսն աքսորվեց ու անապատ կղզին ձգվեց և թե ինչպես ինը տարի կերակրվեց աստծու սքանչելիքով:

Է Աստծու սքանչելիքի մասին, որ երևաց Ներսեսի և Բասիլիոսի վրա և թե ի՛նչպես Եվսեբիոս եպիսկոպոսը նախանձում էր Բասիլիոսին:

Ը. Թե ի՛նչպես Հունաց թագավորը հալածեց բոլոր ուղղափառ հավատացյալներին, ի՛նչպես կամեցավ վիճաբանություն սարքել ճշմարիտ հավատացյալների և արիանոսյան ձախ աղանդավորների միջև, կամ ի՛նչպես սքանչելի տեսիլքով Բասիլիոսը կայսեր կողմից հրավիրվում էր այս վիճաբանությամբ և Եվսեբիոս եպիսկոպոսի ներկայությամբ ախոյանին հաղթում էր մեծ զորությամբ. կամ ի՛նչպես Կեսարիայի Եվսեբիոս արքեպիսկոպոսը վախճանվում էր բանտում, իսկ Բասիլիոսը ազատ արձակվում:

Թ. Թե ի՛նչպես Բասիլիոսին Կեսարիայի եպիսկոպոսապետ ընտրեցին, և ի՛նչ

զի՞նչ նշանք եղեն յԱստուծոյ սքանչելիքն. և կամ ո՞րպէս թագաւորն հրամայեաց յափշտակել զամենայն ինչսն որ 'ի Քրիստոս հաւատացելոցն. և կամ թէ ո՞րպէս խնդութեամբ որք բերէին տային 'ի դուրս վասն իւրեանց հաւատոցն, և կամ ո՞ր-պէս և որպիսի՞ խնդրուածովք խնդրէին յԱստուծոյ 'ի վերայ իւրաքանչիւր եպիս-կոպոսացն:

Ժ. Յաղագս թէ զի՞արդ կոչէր կայսրն Վաղէս զսոփեստէսն յանդիմանութի՛ւնն ընդդէմ ճշմարտութեանն հաւատոցն. և կամ զի՞արդ եւս սոփեստէսն զսքանչելեացն տեսիլն, և թագաւորն Վաղէս սաստկեցաւ նշանօքն եղելովք, և բազում խաղա-ղութիւն եկեղեցեացն լինէր:

ԺԱ. Յաղագս դարձի իշխանացն յերկրէն Յունաց յերկիրն Հայոց անդրէն. որք եւ երթեալք ընդ հայրապետին Հայոց Ներսէսի առ թագաւորն Վաղէս, և եկին դար-ձան անդրէն առ արքայն Արշակ թագաւոր: Եւ թէ ո՞րպէս ըմբոստացեալ Արշակ արքայն Հայոց, ապստամբեալ մեղանչել տան թագաւորին Յունաց:

ԺԲ. Յաղագս Խադայ եպիսկոպոսի Բագրաւանդացւոյ, զոր էր թողեալ յիւր տեղւոջն հայրապետին Հայոց Ներսէսի. թէ սա որպիսի՞ այր էր կամ որպիսի՞ նշան և սքանչելիս առնէր, և կամ ո՞րպէս կայր 'ի ճշմարտութեանն, և ոչ առնոյր ակն թագաւորին մեծի Արշակայ արքային Հայոց, և կամ ո՞րպէս դիմանայր ընդդէմ նորա վասն անօրէնութեան ինչ գործոց. և ո՞րչափ սիրէր զաղքատս իբրև զհայ-րապետն Հայոց զՆերսէս:

ԺԳ. Յաղագս թէ ո՞րպէս դարձաւ սուրբ կաթուղիկոսն Հայոց Ներսէս յերկրէն Յունաց և կամ ո՞րպէս յանդիմանէր զմեծ թագաւորն Հայոց զԱրշակ. և թէ ո՞րպէս յաս-տուծոյ հասանէին հարուածք 'ի վերայ տանին Արշակունեացն, և սատակէր առ հասարակ յանկարծօրէն ամենայն բազմութիւն մարդկան` որք միանգամ ժողո-վեալք էին յայնմ տեղւոջ:

ԺԴ. Յաղագս Հայր մարդպետի, որ եկն էջ 'ի գաւառն Տարօնոյ. և թէ զի՞արդ եկեալ էր 'ի տեղին աղօթիցն յԱշտիշատ, և կամ զի՞արդ դատապարտեալ գնաց անտի յիւր բերանայն խօսիցն. և կամ զի՞արդ մահու պարտ եղեալ սատակեցաւ 'ի Տա-ւրոսպայ Արծրունոյ:

ԺԵ. Յաղագս թագաւորին Արշակայ, թէ զի՞արդ կամ ո՞րպէս սպան զեղբօրորդին զԳնէլ 'ի չարախօսութենէն Տիրիթայ, կամ ո՞րպէս կշտամբեալ և յանդիմանեալ եղև 'ի յառնէն Աստուծոյ 'ի Ներսէսէ. և կամ ո՞րպէս սպան զնոյն Տիրիթն և կամ ո՞րպէս զկին սպանելոյն Գնելոյ առնոյր իւր կին Արշակ թագաւորն. և կամ ո՞րպէս 'ի վերայ այնր կանանց միւս եւս այլ կին առնոյր Արշակ թագաւորն, զոր ած 'ի Յունաց աշխարհէն, որում անուն Ողիմպի կոչէր: Եւ կամ որպէս երէցն դրան արքային, Մրջիւնիկն, զմահուն դեղն տալով ընդ օրէնսն` սպանանէր զՈղիմպին խորհրդով նենգութեամբն Փառանձեմայ:

ԺԶ. Յաղագս թէ որպէս կամ զի՞արդ կոչեաց Շապուհ թագաւորն Պարսից զԱրշակ թագաւորն Հայոց. և կամ զի՞արդ մեծարեցաւ 'ի նմանէ: Եւ կամ թէ զի՞արդ Վա-սակ Մամիկոնեան սպարապետն Հայոց սպանանէր զօրակալն ասպաստանին թա-գաւորին Պարսից: Եւ կամ զի՞արդ Արշակ թագաւորն Հայոց Աւետարանաւ եր-դուաւ թագաւորին Պարսից, ուխտէր նմա. և կամ թէ զի՞արդ յետոյ ստեաց, և փախեաւ 'ի նմանէն. և կամ թէ զի՞արդ յաղագս այնորիկ արս եւթանասուն զԱստուծոյ պաշտօնեայսն կոտորէր Շապուհ:

ԺԷ. Յաղագս թէ զի՞արդ յուղարկեաց զհալածեալսն Շապուհ թագաւորն Պարսից 'ի վե-րայ քրիստոնէութեանն հաւատոյ:



սքանչելիքներ եղան Աստծուց, կամ ի՞նչպես թագավորը հրամայեց Քրիս-տոսի հավատացյալների բոլոր ստացվածքները հափշտակել և ի՞նչպես իրենց հավատի համար ուրախությամբ բերում էին (եկեղեցու) դուռը, կամ ի՞նչպես խնդրվածքներով դիմում էին Աստծուն իրենց եպիսկոպոսների համար:

Ժ. Թե ի՞նչպես Վաղես կայսրը կանչում էր սոփեստներին հակաճառելու ճշմարիտ հավատի դեմ, կամ ի՞նչպես սոփեստը տեսավ սքանչելի տեսիլքը, և Վաղես թագավորը սաստկեցավ երևցած նշանների համաձայն, և եկեղեցիները խաղա-ղություն գտան:

ԺԱ. Իշխանների Հունաստանից Հայոց աշխարհը վերադառնալը, որոնք Հայոց Ներսես հայրապետի հետ գնացել էին Վաղես թագավորի մոտ և էլի դարձան եկան Արշակ թագավորի մոտ. և թե ի՞նչպես Հայոց Արշակ թագավորն ըմբոս-տանալով ապստամբեց ու վնասեց Հունաց թագավորի երկրները:

ԺԲ. Բագրևանդացի Խադ եպիսկոպոսի մասին, որին Հայոց Ներսես հայրապետը իրեն տեղակալ էր թողել, ի՞նչպիսի մարդ էր նա, ի՞նչպիսի սքանչելիքներ էր գործում, հաստատ մնում էր ճշմարտության մեջ, չէր ակնածում Հայոց Արշակ մեծ թագավորից, ի՞նչպես ընդդիմանում էր նրան` նրա անօրեն գործերի պատ-ճառով և որքա՞ն սիրում էր աղքատներին Հայոց Ներսես հայրապետի նման:

ԺԳ. Թե ի՞նչպես Հայոց Ներսես սուրբ կաթողիկոսը ետ դարձավ Հունաց աշխար-հից, ի՞նչպես հանդիմանում էր Հայոց Արշակ մեծ թագավորին, և ի՞նչպես Աստծուց հարվածներ էին հասնում Արշակունյաց տան վրա և մի անգամից կոտորվում էր այնտեղ ժողոված մարդկանց բոլոր բազմությունը:

ԺԴ. Հայր մարդպետի մասին, որ եկել էր Տարոն գավառը Աշտիշատի աղոթարա-նը և ի՞նչպես այնտեղից գնաց իր բերանի խոսքերով դատապարտված և ի՞նչ-պես մահապարտ դառնալով Տավրոս Արծրունոց սատկեց:

ԺԵ. Արշակ թագավորի մասին, թե ի՞նչպես Տիրիթի չարախոսությամբ սպանեց իր Գնել եղբորորդուն, ի՞նչպես մեղադրվեց ու հանդիմանվեց Ներսեսից` Աստծու մարդուց. կամ ի՞նչպես նույն Տիրիթին էլ սպանեց, կամ ի՞նչպես իրեն կին առավ սպանված Գնելի կնոջը. կամ ի՞նչպես Արշակ թագավորը բացի այն կնո-ջից ուրիշ կին առավ Ողիմպին անունով, որին բերել տվեց Հունաց աշխարհից: Եվ ի՞նչպես թագավորի դռան երեց Մրջյունիկը, Փառանձեմի նենգավոր խորհրդով սպանում էր Ողիմպիին հաղորդության մեջ մահադեղ խառնելով:

ԺԶ. Թե ի՞նչպես Պարսից թագավորը հրավիրեց Հայոց Արշակ թագավորին և ի՞նչպես նրան մեծարեց: Կամ ի՞նչպես Հայոց սպարապետ Վասակ Մամիկոնյանն սպա-նեց Պարսից թագավորի ախոռի ախոռապետին: Կամ ի՞նչպես Հայոց Արշակ թագավորը ավետարանի վրա երդվելով ուխտեց Պարսից թագավորին և ապա երդմանը ստելով նրանից փախավ, և թե ի՞նչպես այս պատճառով Շապուհը կոտորեց Աստծու պաշտոնյաների յոթանասուն հոգի:

ԺԷ. Թե ի՞նչպես Պարսից Շապուհ թագավորը հալածանքներ բարձրացրեց քրիստոնեա-կան հավատի դեմ[66]:

ԺԸ. Յաղագս մահուանն Վարդանայ 'ի թագաւորէն Արշակայ նենգութեամբ իւրոյ եղբօրն Վասակայ:

ԺԹ. Յաղագս թէ զիա՛րդ անմտութեամբ յանդգնութեամբ գնայր 'ի սպանութիւնն նախարարացն անխտիր Արշակ Հայոց արքայ:

Ի. Յաղագս թէ զիա՛րդ պատերազմ սաստկացեալ էր 'ի մէջ Յունացն և Պարսից. և թէ զիա՛րդ արքայն Հայոց Արշակն զօրաւիգն լինէր թագաւորին Պարսից, և հանէր ընդ սուր զզօրսն Յունաց, և կամ զիա՛րդ դաւաճանութեամբ սիւնոյն Անդովկայ լինէր փախստական Արշակ 'ի Շապհոյ թագաւորէն Պարսից:

ԻԱ. Յաղագս թէ զիա՛րդ եղև պատերազմ ընդ Շապուհ թագաւորն Պարսից և ընդ Արշակ թագաւոր Հայոց. և կամ թէ զիա՛րդ յաղթեաց Արշակ արքայն Հայոց:

ԻԲ. Յաղագս որ յետ այսորիկ որ ընդ երիս տեղիս եղեալ ճակատ յերկրին Հայոց 'ի միում ամսեանն. 'ի միում 'աւուր, 'ի միում ժամանակի ընդ զօրավարսն Պարսից, երեցունց նշանն յաղթութեան Հայոց կանգնէր:

ԻԳ. Յաղագս Մերուժանայ Արծրունւոյ, որ ապստամբեաց յարքայէն Հայոց Արշակայ, և անկաւ առ թագաւորն Պարսից, և եւս առաւել գրգռէր զպատերազմունսն. և թէ զիա՛րդ ուրացաւ յաստուծոյ, և թէ զիա՛րդ եղև խոշընդակն և խոշընդոտն երկրին Հայոց մինչև յապայ:

ԻԴ. Յաղագս Մերուժանայ, թէ զիա՛րդ ապստամբեաց. գրգռէր զթագաւորն Պարսից զՇապուհ, և տանէր ստէպ ստէպ պատերազմունս: Եւ կամ զիա՛րդ լեալ էր առաջնորդ թագաւորին Պարսից Շապհոյ. ածէր զնենն` 'ի Հայաստան աշխարհն, և գերէր զոսկերս թագաւորացն Արշակունեաց. և կամ թէ զիա՛րդ զօրավարն Վասակ Հայոց թափեաց զգերութիւնն, և յաղթեաց թշնամեացն:

ԻԵ. Յաղագս թէ զիա՛րդ արշաւեաց Արշակ Հայոց արքայն յերկիրն Պարսից, և աւերէր զԱտրպատական երկիրն. և քանդէր հարկանէր աւերէր, առնոյր զբանակն Շապհոյ արքային 'ի Թաւրէշն:

ԻԶ. Յաղագս Վնայ պարսկի, և չորեքհարիւր հազարին` որ եկեալ էին 'ի պատերազմի, և նկուն լինէր 'ի զօրացն Հայոց:

ԻԷ. Յաղագս մեծավարին Պարսից Անդիկանայ, որ տասանւն բիւրու հասանէր աւար առնուլ զերկիրն Հայաստանեաց. և թէ զիա՛րդ Վասակ սպարապետն ելանէր ընդ առաջ նոցա երկոտասան բիւրու հանդերձ Հայոց զօրօքն, և կոտորէր զզօրս Պարսից հանդերձ զօրագլխաւն իւրեանց:

ԻԸ. Յաղագս Հազարուխտոյ, որ էր մի 'ի նախարարացն Պարսից. զոր առաքեաց Շապուհ արքայ ութսուն բիւրովն հարկանել զերկիրն Հայոց. եթէ զիա՛րդ ել ընդ առաջ նոցա Վասակ մետասան հազարաւ, և հարկանէր սատակէր զնա և զզօրս նորա 'ի սահմանս Աղձնեաց:

ԻԹ. Յաղագս Դմայունդ Վսեմակայ, որ իննսուն բիւրուն տայրիկ զօրօքն` զոր առաքեաց 'ի վերայ Արշակայ արքային Հայոց արքայն Պարսից, ապա ելանէր Վասակ սպարապետն Հայոց, հասանէր սատակէր զնա և զզօրս նորա:

Լ. Յաղագս Վահրինի Կահրինայ, որ յարքայէն Պարսից չորեք հարիւրն բիւրու գայր հասանէր, տայր պատերազմ ընդ թագաւորին Հայոց և կամ զիա՛րդ մատնեցաւ 'ի ձեռս Վասակայ սպարապետին, և նա և զօրքն իւր անկանէին 'ի ձեռս զօրացն Հայոց:

ԼԱ. Յաղագս Գումանդ Շապհոյ, որ մեծաւ պարծանօք պարծեցաւ առաջի թագաւորին Պարսից Շապհոյ, և հարեւր հազար զօրօքն գայր հասանէր մինչև 'ի Հայս, և նկուն եղեալք մերժէին յերկրէն Հայոց:

ԾԸ. Վարդանի մահը Արշակ թագավորից նրա Վասակ եղբոր նենգությամբ:

ԾԹ. Թե ի՛նչպես Հայոց Արշակ թագավորը անմտաբար հանդգնությամբ անխտիր կոտորում էր նախարարներին:

Ի. Թե ի՛նչպես պատերազմը սաստկացել էր Հունաց և Պարսից մեջ և ի՛նչպես Հայոց Արշակ թագավորը օգնում էր Պարսից թագավորին և սրի էր անց կացնում Հունաց զորքերը և թե ի՛նչպես Անդոկ Սյունիի դավաճանությամբ Արշակը փախուստ էր տալիս Պարսից Շապուհ թագավորից:

ԻԱ. Թե ի՛նչպես պատերազմ ծագեց Պարսից Շապուհ թագավորի և Հայոց Արշակ թագավորի մեջ և թե ի՛նչպես հաղթեց Հայոց Արշակ թագավորը:

ԻԲ. Թե ի՛նչպես սրանից հետո Հայոց աշխարհում երեք տեղ ճակատամարտ տեղի ունեցավ նույն ամսում, նույն օրը և նույն ժամին Պարսից զորավարների հետ, և երեքումն էլ հաղթություն տանում էին հայերը:

ԻԳ. Մերուժան Արծրունու մասին, որ Հայոց Արշակ թագավորից ապստամբելով Պարսից թագավորի մոտ գնաց և ավելի ևս գրգռում էր պատերազմները. ի՛նչպես նա աստծուն ուրացավ և այնուհետև Հայոց աշխարհի խանգարիչն եղավ:

ԻԴ. Մերուժանի մասին, թե ի՛նչպես ապստամբելով Շապուհ թագավորին գրգռում էր և հաճախակի պատերազմներ էր անում. թե ի՛նչպես նա Պարսից Շապուհ թագավորին առաջնորդ դառնալով՝ ասպատակ զորք էր բերում Հայոց աշխարհը, գերի էր տանում Արշակունի թագավորների ոսկորները, և ի՛նչպես Հայոց Վասակ զորավարը թշնամիներին հաղթեց և գերիներին նրանցից ետ խլեց:

ԻԵ. Թե ի՛նչպես Հայոց Արշակ թագավորը արշավեց Պարսից աշխարհը, Ատրպատականն ավերեց, խարուխանդ արավ և գրավեց Շապուհ թագավորի բանակը Թավրիզում:

ԻԶ. Վին պարսկի և չորս հարյուր հազար (զորքի) մասին, որ եկել էին պատերազմի և Հայոց զորքերից պարտություն կրեցին:

ԻԷ. Պարսից Անդիկան զորավարի մասին, որ քառասուն բյուրով եկավ Հայաստան աշխարհն ավերելու, և թե ի՛նչպես նրա դեմ դուրս եկավ Վասակ սպարապետը տասներկու բյուր հայկական զորքով և կոտորեց Պարսից զորքերը իրենց զորավարի հետ միասին:

ԻԸ. Հազարավուխտի մասին, որ Պարսից նախարարներից մեկն էր, որին Շապուհ թագավորն ուղարկեց ութսուն բյուրով՝ Հայոց աշխարհը կոտորելու և թե ի՛նչպես նրա դեմ դուրս եկավ Վասակը տասնևմեկ հազարով և նրան զորքի հետ միասին ջարդեց Աղձնիքի սահմաններում:

ԻԹ. Դմայունդ Վսեմականի մասին, որին (Շապուհը) իննսուն բյուր Տապարստանի զորքով ուղարկեց Հայոց Արշակ թագավորի վրա. նրա դեմ էր ելնում Հայոց Վասակ սպարապետը, հասնում սպանում էր նրան և զորքերը կոտորում:

Վահրին Կանրինի մասին, որ Պարսից թագավորի կողմից գալիս էր չորս հարյուր բյուրով և պատերազմում էր Հայոց թագավորի հետ, և թե ի՛նչպես նա սպանվեց Վասակ սպարապետի ձեռքը ու ինքն իր զորքի հետ Հայոց զորքի ձեռքն ընկան:

ԼԱ. Դումանդ Շապուհի մասին, որ շատ պարծեցավ Պարսից Շապուհ թագավորի առաջ և հարյուր հազար զորքով գալիս հասնում էր մինչև Հայաստան և պարտություն կրելով հալածվում էր Հայոց աշխարհից:

ԼԲ. Գենուկ նահապետի մասին, որ մեծ զորքով Պարսից Շապուհ թագավորի կողմից ուղարկվեց Հայոց Արշակ թագավորի դեմ, իսկ Հայոց Վասակ զորավարը կոտորում էր նրան իր զորքի հետ:

ԼԳ. Սուրեն Պահլավի մասին, որ Հայոց վրա եկավ. սա ևս պարտություն կրեց առաջինների նման:

ԼԴ. Ապական Վսեմականի մասին, որ անթիվ անհամար զորքերով եկավ Հայոց աշխարհը պատերազմի. նա էլ առաջինների նման անաջողության հանդիպեց:

ԼԵ. Պարսիկ Զիկ նվիրակապետի մասին, որ Պարսից Շապուհ թագավորի կողմից պատերազմի ուղարկվեց Հայոց դեմ բազմաթիվ զորքով. նա ևս առաջինների նման ջարդուբուրդ եղավ:

ԼԶ. Սուրեն պարսկի մասին, որ Զիկից հետո նույնպես եկավ պատերազմի. նա էլ իր զորքի հետ Հայոց Վասակ սպարապետի ձեռքն ընկավ ու սպանվեց:

ԼԷ. Հրևշողումի մասին, որ Պարսից թագավորի կողմից հիսուն բյուրով ուղարկվեց Հայոց դեմ, այս անգամ ևս հաղթությունը Հայոց էր մնում:

ԼԸ. Ալանոզանի մասին, որ Պարսից թագավորի կողմից եկավ չորս հարյուր բյուրով՝ Հայոց թագավորի դեմ պատերազմելու. և թե ի՛նչպես նա էլ պարտություն կրեց Վասակից:

ԼԹ. Բոյականի և Ֆառասուն բյուր (զորքի) մասին, որոնց կոտորում ոչնչացնում էր Հայոց Վասակ սպարապետը:

Խ. Վաչական պարսկի մասին, որ Հայաստան եկավ տասնևութ բյուրով և կամենում էր երկիրն ասպատակել և ավարի առնել, նրան էլ հաղթահարեց Հայոց Վասակ սպարապետը և նրա ամբողջ զորքը սրի մատնեց:

ԽԱ. Մշկանի և նրա երեսունհինգ բյուր (զորքի) մասին, որոնք արշավեցին Հայոց աշխարհը, և թե ի՛նչպես կոտորվեցին Վասակից և նրա զորքերից:

ԽԲ. Մուրուճանի և նրա վաթսուն բյուր (զորքերի) մասին, և թե ի՛նչպես Պարսկաստանից եկան Արշակ թագավորի վրա, և թե ի՛նչպես նրանց զարնում կոտորում էր Վասակ զորավարը:

ԽԳ. Ձնդակապետի մասին, որ հիսուն բյուրով եկավ Հայոց աշխարհը. նրան զորքի հետ միասին ոչնչացնում էր Վասակը:

ԽԴ. Արշակի որդու մասին, որի անունն էր Պապ. թե ի՛նչպես նա ծնված օրից ի վեր լի էր դևերով. թե ի՛նչպես դևերը հայտնի երևում էին նրա մոտ, որոնց հետ նա պղծություն էր գործում:

ԽԵ. Սակստան հանդերձապետի մասին, որ Պարսից Շապուհ թագավորի կողմից ուղարկվեց չորս հարյուր բյուրով. նրան ևս փախցրեց Վասակ զորավարը Հայոց զորքերով:

ԽԶ. Պարսից Շապստան տակառապետի մասին, որ հինգ հարյուր բյուրով եկավ Հայոց աշխարհի վրա. Հայոց զորքերը նրանց էլ ջարդեցին ոչնչացրին:

ԽԷ. Մոզուց հանդերձապետի մասին, որ տասնևութ բյուրով եկավ նաև պատերազմ մղելու Հայոց թագավորի դեմ. սա էլ կործանվում էր առաջինների նման:

ԽԸ. Պարսից համբարակապետի մասին, որ հիսուն բյուրով եկավ ու պատերազմում էր Հայոց զորքի հետ և Սագամասում կոտորվեց Հայոց զորքերից և Վասակի զենքից:

ԽԹ. Յաղագս Մռկանայ, որ քառասուն բիւրու եկն 'ի Պարսից՝ կռուել ընդ թագաւորին Հայոց, և սատակեցաւ զօրօք իւրովք հանդերձ 'ի ձեռաց Հայոց, և 'ի զօրավարէն Վասակայ 'ի Մախազան:

Ծ. Յաղագս քակտելոյ և քայքայելոյ թագաւորութեանն Հայոց, թէ ո՛րպէս բազում նախարարքն Հայոց ապստամբեցին յարքայէն Հայոց, և ձեռս ետուն 'ի Շապուհ արքայն Պարսից. և կամ զիա՛րդ հապ այսր անդր ցրուեցան, և մեծապէս թագաւորութիւնն Հայոց նուազէր:

ԾԱ. Յաղագս թէ զիա՛րդ միաբան համօրէն աշխարհօրէն որք միաբան մնացեալք էին աշխարհին՝ ժողովէին առ իւրեանց հայրապետն Ներսէս. և թէ ո՛րպէս զբողոք հարկանէին առաջի նորա, և ձեռնթափ լինէին և թողուին 'ի ձեռաց զիւրեանց թագաւորն Արշակ:

ԾԲ. Յաղագս թագաւորին Պարսից, թէ զիա՛րդ 'ի ժամանակին յուեցոյց պատերազմ տալ ընդ Արշակայ թագաւորին Հայոց, և նենգութեամբ առ ինքն կոչէր 'ի հաշտութիւն:

ԾԳ. Յաղագս կրկին անգամ կոչելոյ Շապուհ արքայ Պարսից զԱրշակ արքայ Հայոց, և նորա երթալոյն առ նա, և միանգոյն[15] կորնչելոյն:

ԾԴ. Յաղագս թէ ո՛րպէս դարձեալ զդիւթսն և զքաղդեայսն և զկախարդսն հարցեալ Շապհոյ հմայիւք՝ փորձէր զմիտսն Արշակայ, և տայր զնա յԱնուշ բերդն 'ի պատիժս. նոյնպէս և զսպարապետն Հայոց չարամահ առնել հրամայէր:

ԾԵ. Յաղագս աշխարհին Հայոց գերութեանն և հարուածոց, և գերութեան 'ի Պարս վարելոյն տիկնոջ Փառանձեմայ. և քաղաքացն Հայոց աւերելոյ, և աշխարհին 'ի հիմանց տապալելոյ:

ԾԶ. Յաղագս վկայութեանն Զուիթայ երիցուն, յԱրտաշատ քաղաքէ, յերկրին Պարսից:

ԾԷ. Յաղագս աղօթքն 'ի ժամ մահուն Զուիթայ:

ԾԸ. Յաղագս գալոյն Շապհոյ արքային Պարսից յերկիր Հայոց, և միանգամայն սատակելոյ զմնացորդ երկրին Հայոց:

ԾԹ. Յաղագս Մեհրուժանայ և Վահանայ, թէ ի՛բր մնացին յաշխարհին Հայոց. և թէ զի՛նչ չար գործեցին ընդ աշխարհն, և կամ թէ զիա՛րդ սատակեցան Վահան և կինն յիւրեանց որդւոյն:

ԽԹ. Սահակի մասին, որ Պարսկաստանից քառասուն բյուրով եկավ Հայոց թագավորի հետ պատերազմելու և Մախազանում իր զորքերի հետ միասին կոտորվեց Հայոց զնդերից և Վասակ զորավարից:

Ծ. Թե ի՛նչպես Հայոց թագավորությունը քանդվեց ու քայքայվեց. ի՛նչպես Հայոց շատ նախարարներ ապստամբեցան Հայոց թագավորից և ձեռք մեկնեցին Պարսից Շապուհ թագավորին և ի՛նչպես շուտով այս ու այն կողմը ցրվեցան, և Հայոց թագավորությունը մեծապես նվազեց:

ԾԱ. Թե ի՛նչպես աշխարհում մնացածները միաբան միասին ժողովվում էին իրենց Ներսես հայրապետի մոտ և ի՛նչպես նրա առաջ բողոքում էին (Արշակ թագավորի դեմ) և նրանից ձեռք քաշեցին ու հրաժարվեցին:

ԾԲ. Պարսից թագավորի մասին, թե ի՛նչպես այդ ժամանակ դադարեցրեց պատերազմը Հայոց Արշակ թագավորի դեմ և նենգությամբ իր մոտ էր կանչում հաշտության համար:

ԾԳ. Թե ի՛նչպես Պարսից Շապուհ թագավորը կրկին անգամ Հայոց Արշակ թագավորին կանչեց, և նա գնաց նրա մոտ ու միանգամայն կորավ:

ԾԴ. Թե ի՛նչպես Շապուհը վհուկներին, քավդեաներին և կախարդներին հարցնելով՝ հմայությամբ փորձում էր Արշակի դիտավորությունը և նրան պատժելու համար ուղարկում էր Անհուշ բերդը և ի՛նչպես հրամայում էր չարաչար մահով սպանել Հայոց սպարապետին:

ԾԵ. Հայոց աշխարհի գերությունն ու հարվածները, Փառանձեմ տիկնոջ գերի տարվելը Պարսկաստան, Հայոց քաղաքների ավերմունքը և աշխարհի հիմնովին կործանվելը:

ԾԶ. Արտաշատ քաղաքի Զվիթ երեցի վկայական մահը Պարսից աշխարհում:

ԾԷ. Զվիթի աղոթքը մահվան ժամանակ:

ԾԸ. Պարսից Շապուհ թագավորի Հայաստան գալը և Հայոց աշխարհի մնացած մարդկանց միանգամայն կոտորելը:

ԾԹ. Մեհրուժանի և Վահանի մասին, թե ի՛նչպես մնացին Հայոց աշխարհում և ո՛րքան չարիքներ գործեցին աշխարհում և ի՛նչպես Վահանն և իր կինը սպանվեցին իրենց որդուց:

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՉՈՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ

### ԿԱՆՈՆՔ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐՔ ՄԱՏԵՆԻՑ ՏԱՆ ՈՐԴԻՈՑ ԹՈՐԳՈՄԱՅ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ

### Ա

### ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՅԵՏ ԲԱԶՈՒՄ ՇՓՈԹԻ ՊԱՅԾԱՌԱՑԱՒ ԸՆԴ ՆԵՐՍԵՀԻ ԱՐՔԱՅԻՆ ՊԱՐՍԻՑ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԹԱԳԱՒՈՐԵՑՈՅՑ ԶԱՐՇԱԿ ԶՈՐԴԻ ՏԻՐԱՆԱՅ, ԵՒ ԱՐՁԱԿԵԱՑ ՅԱՇԽԱՐՀՆ ՀԱՅՈՑ ՀԱՆԴԵՐՁ ՏԻՐԱՆԱՒ ՀԱՐԲ ԻՒՐՈՎ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԳԵՐՈՒԹԵԱՄԲՆ ՀԱՆԴԵՐՁ

Այլ իբրև եղև հաճութիւն և բազում խաղաղութիւն 'ի մէջ թագաւորին Յունաց և Ներսեհի արքային Պարսից, հաւանեցան մեծաւ սիրով առնել զկամս միմեանց. և դարձուցանէր կայսրն Յունաց զգերութիւն արքային Պարսից: Ապա և թագաւորն Պարսից Ներսէհ թագաւորեցոյց զԱրշակ որդի Տիրանայ և հարք նորին և հանդերձ կանամբք իւրեանց և ամենայն գերութեամբք հանդերձ և գանձիւք իւրեանց և ստացուածովք արձակեաց մեծաւ փառօք: Խաղաց գնաց Արշակ արքայ Հայոց մեծաց. թագաւորեաց յերկրին ասորեստանեայց հանդերձ հարքն իւրով և ամենայն ընտանեօքն իւրովք. եկն եհաս յերկիրն Հայոց, և ժողովեաց զցրուեալս երկրին, և թագաւորեաց 'ի վերայ նոցա:

Եւ եղև խաղաղութիւն մեծ 'ի ժամանակին յայնմիկ: Ժողովեցան ամենայն թագուցեալքն փախուցեալք կորուսեալք երկրին Հայոց. և էին անկասկածք բնակեալ 'ի խաղաղութեան մեծի ընդ հովանեաւ արքային Արշակայ: Ապա կարգեցան կազմեցան յօրինեցան խաղաղացան աշխարհն Հայոց 'ի մէջ երկուց թագաւորացն. և յայնմ հետէ բնակեալք խաղաղութեամբ վայելեալք յիւրաքանչիւր յարարս իւրեանց:

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՉՈՐՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ

### ԹՈՐԳՈՄԻ ՈՐԴՈՑ ՏԱՆ՝ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԳԼՈՒԽՆԵՐ

### Ա

### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻՑ ԵՎ ՄԵԾ ՇՓՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՀԵՏՈ ՊԱՐՍԻՑ ՆԵՐՍԵՀ ԹԱԳԱՎՈՐԸ ԹԱԳԱՎՈՐԵՑՐԵՑ ՏԻՐԱՆԻ ԱՐՇԱԿ ՈՐԴՈՒՆ ԵՎ ԱՐՁԱԿԵՑ ՈՒՂԱՐԿԵՑ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ՀՈՐ ԵՎ ԲՈԼՈՐ ԳԵՐԻՆԵՐԻ ՀԵՏ

Երբ հաշտությունը կայացավ և կատարյալ խաղաղություն հաստատվեց Հունաց թագավորի և Պարսից Ներսեհ թագավորի միջև՝ ապա սիրով համաձայնեցին մեկը մյուսի կամքը կատարել, և Հունաց կայսրը ետ էր դարձնում Պարսից թագավորի գերիներին: Ապա Պարսից Ներսեհ թագավորն էլ թագավորեցրեց Տիրանի Արշակ որդուն և նրա հոր, նրանց կանանց ու բոլոր գերիների հետ, բոլոր նրանց գանձերով ու ստացվածքներով արձակեց մեծ փառքով: Արշակ, Մեծ Հայքի թագավորը, Ասորեստանում թագավոր դառնալով՝ (այնտեղից) իր հոր և բոլոր ընտանիքի հետ միասին վեր կացավ եկավ հասավ Հայոց աշխարհը, երկրում ցրվածներին ժողովեց ու նրանց վրա թագավորեց:

Այն ժամանակ մեծ խաղաղություն հաստատվեց: Հայոց աշխարհի բոլոր մարդիկ, որոնք կորել էին, փախել ու թաքն էին կացել՝ ժողովվեցին և ապահով ու խաղաղ ապրեցին Արշակ թագավորի հովանավորության տակ: Աշխարհն էլ երկու թագավորների միջև խաղաղացավ, բարեկարգվեց, կազմակերպվեց, և բոլորն իրենց բնակության տեղերում վայելում էին խաղաղություն:

Բ

## ՅԱՂԱԳՍ ՇԻՆՈՒԹԵԱՆ ԿԱՐԳԱՑ ՅՕՐԻՆԵԼՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ, ՆՈՐԱՃՈՒԹԵԱՆ ՅԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ՑԵՂԻՑ ՎԱՐՈՒՑ ԿԱՐԳԱՑ, ՆՈՐՈԳԵԼՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

Յայնմ ժամանակի խնդիր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից. մանաւանդ զի իւր դայեակս և սնուցիչք էին: Ապա երբեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընդանութիւնն, զի պառակտեալք և քակտեալք էին յընդանութենէն և յամենայն գործոց Հայոց 'ի ժամանակս խռովութեանն Տիրանայ: Եւ կացոյց արքայն զՎարդան զերէց եղբայրն 'ի նահապետութեանն ազգին իւրեանց, և զՎասակ զմիջին եղբայրն զիւր դայեակն 'ի սպարապետութիւնն զօրավարութեան յիրս պատերազմացն. սոյնպէս և զկրտսերն 'ի պետս զօրացն կացուցանէր: Սոյնպէս և զամենայն ազգսն զօրացն մեծամեծացն նահապետացն, որպէս առաջին թագաւորքն նուաճեալք յիւրաքանչիւր չափու: Եւ հնազանդէր զմեծամեծսն, զիւրաքանչիւր զօրս բաժանեալ յամենայն կողմանց, սահմանացն Հայոց սահմանապահս կացուցանէր:

Եւ նորոգեցաւ զուարթացաւ տէրութիւնն թագաւորութեանն Հայաստան երկրին որպէս և զառաջինսն. մեծամեծքն յիւրաքանչիւր գահու, և գործակալքն յիւրաքանչիւր չափու: Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութեան, շինականաշէն ազգն Գնունեաց՝ հազարապետն ամենայն երկրին: Նոյնպէս ստրատելատութեան սպարապետութեանն զօրավարութեանն մարտի կռուելոյ, գործոյ բռազմիկ նակատամուտ նիզակին, հրափառն[16] աղանազգիք աղանադրօշք արծուէնշանք վարժնականիշք աներկիւղք քաջասիրտք նահատակք քաջանունք, բարենշանս բարեհամբաւք բարեզարդք յաջողակք 'ի գործ պատերազմաց 'ի բուն 'ի նախնեացն կարգաց 'ի Մամիկոնեան ազգին, 'ի վերայ իշխանութեանն բովանդակ՝ 'ի վերայ ամենայն զօրավարութեանն բազմութեանն Հայոց մեծաց, հանապազ յամենայն ժամ յաղթող ազգին պարգեւեալ յերկնից բարիանուն հրաքաջ 'ի մեծի նահապետութեան պատերազմի: Եւ այլ յայսմ ազգաց և 'ի խոնարհ որ գործակալս անուն բարձիւք առաջի արքային պատիւ 'ի գլուխ բազմէին. բո՛ղ զնահապետս մեծամեծս և զտանուտեարս՝ որք գործակալք միայն էին, ՝ինն հարեւր բարձ՝ որ մտանէր 'ի ժամ տանարին ուրախութեանն բազմականացն կարգելոց. բող զտնկայս գործակալութեանն սպասու:

Բ

## ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՇԵՆԱՆԱԼՆ ՈՒ ԲԱՐԵԿԱՐԳՎԵԼԸ. ԱՄԵՆ ՏԵՂ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ՀԱՍՏԱՏՎԵԼԸ, ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՆՈՐՈԳՎԵԼԸ

Այն ժամանակ Արշակ թագավորը դուրս էր գալիս փնտռելու քաջ Մամիկոնյան զորավարների տոհմը, մանավանդ որ նրանք իր դայակներն[70] ու սնուցանողներն էին եղել: Գնում նրանց գտնում էր նրանց Տայքի ամուր վայրերում. իրենց աշխարհում. նրանց սիրտն առնում ու հաշտեցնում էր, որովհետև նրանք Տիրանի խելագար[71] գործերի ժամանակից ի վեր պառակտվել, անջատվել էին Հայոց միաբանությունից և բոլոր գործերից: Թագավորը Վարդանին, ավագ եղբորը, նշանակեց նրանց ցեղի նահապետ, միջին եղբորը, Վասակին, իր դայակին՝ նշանակեց սպարապետ և զորավար պատերազմական գործերում, նույնպես և կրտսերին նշանակեց զորապետ: Նույնպես և մյուս մեծամեծ նահապետների զորքերն ըստ իրենց աստիճանների հաստատեց՝ ինչպես որ նախկին թագավորների ժամանակ[72] եղել էր: Մեծամեծներին էլ հնազանդության էր բերում, բոլորի զորքերը կողմերի վրա բաշխելով՝ Հայաստանի սահմանների վրա սահմանապահ էր նշանակում:

Եվ Հայաստան աշխարհի թագավորությունը նորոգվեց ու պայծառացավ ինչպես առաջ. մեծամեծներն իրենց գահերում, գործակալներն իրենց աստիճաններում: Եվ առաջին գործակալ— հազարապետ նշանակեց շինականներին շենացնող Գնունյաց ցեղը, որպեսզի իբրև բոլոր երկրի հազարապետներ՝ հոգատարությամբ խնամեն աշխարհաշեն՝ աշխարհը կերակրող գյուղացիությանը: Նույնպես և սպարապետության՝ զորավարության գործում, ճակատ առ ճակատ նիզակներով կռիվ մղելու համար, նշանակեց փառավոր ու ազնվազգի, ադամնակիր դրոշակներով, արծվի՝ Վարուժանի[72] նշաններով, աներկյուղ ու քաջասիրտ նախամարտիկ, քաջանուն, բարենշան, բարեհամբավ ու բարեգործ, պատերազմական գործերում աջողակ Մամիկոնյանների ցեղից, բուն նախնյաց կարգերի համաձայն, որին երկինքը միշտ և հանապազ պարգևում էր հաղթության և քաջության բարի անուն պատերազմական գործերում,— և տվեց նրանց զորավարության իշխանություն՝ Մեծ Հայքի բոլոր զորքերի վրա: Այս ցեղերից զատ՝ խոնարհ աստիճանի գործակալներ, որոնք թագավորի ներկայությամբ բարձերի վրա բազմում էին, պատիվները գլխներին,— չհաշվելով մեծամեծ նահապետներին ու տանուտերներին, լոկ միայն գործակալներ՝ ինը հարյուր բարձ էին կազմում, որոնք թագավորական սեղանի ուրախության մասնակից էին լինում, բացի ռանկա սպասավորության պաշտոնյաներից:

Գ

## ՅԱՂԱԳՍ ՄՐՐՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՄ ՈՒՍՏԻ ԷՐ, ԿԱՄ ՈՐՊԻՍԻ՛ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԸՆՏՐԵՑԱՒ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԼԻՆԵԼ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ

Ապա 'ի մի ժողով կուտեցան առ արքայն Արշակ մեծամեծք նախարարք ազգաց ազգաց, տոհմաց տոհմաց, գնդից և դրօշուց տեարք. ամենայն սատրապք նախարարք և ազատք, պետք և իշխանք, զօրավարք և սահմանապահք, 'ի մի հաւանութիւն միաբանական խորհուրդք, զի եկեսցեն տեսցեն և խորհեսցին վասն իւրեանց առաջնորդաց, թէ ո՛ւմ արժան իցէ նստել յաթոռ հայրապետութեանն և հովուել բանաւոր խաշանց Քրիստոսի: Ապա յաղթեաց կալաւ այս բան խորհրդի ամենեցուն առ հասարակ որ անդ էին, զի 'ի մնացորդաց տանն Գրիգորի, յայնմ զաւակէ զտցեն զառաջնորդութիւն: Զի ամենեքեան ասէին ցարքայն. վասն զի նորոգեաց աստուած զթագաւորութիւն ձեր, սոյնպէս պարտ է 'ի յայնմ զաւակէ նորոգել զհոգեւոր նահապետութիւնն: Զի ընդ նորոգել այնր աթոռոյ, ասեն, նորոգեսցին պայծառ վարք աշխարհիս Հայոց:

Ապա յակամէ յանուանէ իսկ խնդրեցին աշխարհաժողով զօրքն բազմութեան զայն, որ անուանեալ կոչէր Ներսէս, զորդի Աթանագինեայ, զթոռն քահանայապետին Յուսկան, որդւոյ Վրթանայ, որդւոյն Գրիգորի մեծին առաջնոյ քահանայապետին. և մօր սորա Բամբիշն անուն, քոյր արքային Տիրանայ: Սա լեալ էր ամուսնաւոր յաշխարհականեաց կենաց նախ յաստիս մանկութեան. 'ի տղայութենէ սնեալ և ուսեալ 'ի Կեսարացւոց քաղաքին Գամրաց ընդ հաւատարիմ վարդապետօք. և ցանկալի եղեալ իւրոյն համարուեստն զուգակցացն: Այլ 'ի ժամանակին յայնմիկ էր 'ի վարս զինուորութեան 'ի զօրականութեան, սիրելի սենեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ 'ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն 'ի ներքոյ և արտաքոյ:

Այր էր սա մեծ և բարձր ցանկալի հասակաւ, և վայելուչ գեղով. զի ոչ գտանէր ուրեք նման նմա գեղեցկութեանն 'ի վերայ երեսաց երկրի, տենչալի ցանկալի և զարմանալի և ահագին ամենայն նայեցող տեսողաց, և նախանձելի արութեանն 'ի զինուորական կրթութեանն: Երկիւղած 'ի տեառնէ աստուծոյ, յոյժ աւանդապահ պատուիրանաց նորա. մարդասէր սուրբ զգաստ, սաստիկ իմաստուն և առանց ակնառութեան, իրաւանց իրաւարար, ցածուն քաղցր խոնարհ աղքատասէր, 'ի սրբութիւնս ամուսնութեանցն օրինաւոր, և կատարեալ սիրովն աստուծոյ: Եւ առ իւր ընկերս ըստ պատուիրանին սի-

## ՍՈՒՐԲ ՆԵՐՍԵՍԻ ՄԱՍԻՆ, ԹԵ Ո՛ՐՏԵՂԻՑ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԷՐ ԿԱՄ ԻՆՉՊԵՍ ԸՆՏՐՎԵՑ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ԿԱԹՈՂԻԿՈՍ

Այս Արշակ թագավորի մոտ ժողովի գումարվեցին նախարարական ցեղերի ու տոհմերի մեծամեծ նախարարները, գնդերի և դրոշակների տերերը, բոլոր սատրապները[73], նախարարներն ու ազնվականները, պետերը, իշխանները, զորավարներն ու սահմանապահները: Ընդհանուր համաձայնությամբ խորհուրդ արին, որ հավաքվեն ու մտածեն իրենց առաջնորդների մասին, թե ո՛վ է արժանավոր հայրապետական աթոռը նստելու և Քրիստոսի բանավոր հոտը հովվելու: Բոլոր ժողովականների մեջ այս միտքն ընդհանուր հավանություն գտավ, որ առաջնորդ ընտրեն Գրիգորի տան մնացորդներից, նրա սերունդից: Որովհետև բոլորն ասում էին թագավորին. «Ինչպես որ աստված նորոգեց ձեր թագավորությունը՝ պետք է նույնպես նրա սերունդից նորոգել հոգևոր նախապետությունը. երբ այդ աթոռը նորոգվի՝ ասում էին, ապա և պայծառ վարքերը կնորոգվեն Հայոց աշխարհում»:

Այս աշխարհաժողով բազմությունը հականե հավանե հիշեց Ներսեսին, Աթանագինեսի որդու, Հուսիկ քահանայապետի թոռանը, Վրթանեսի որդու, որ առաջին մեծ քահանայապետ Գրիգորի որդին էր. նրա մոր անունն էր Բամբիշ, որ Տիրան թագավորի քույրն էր: Սա մանկության հասակում աշխարհական կյանք վարելով ամուսնացած էր. տղայության հասակից ի վեր սնվել ու սովորել էր Գամիրքի Կեսարիա քաղաքում, հավատարիմ ուսուցիչների ղեկավարությամբ և սիրելի էր դարձել իր ընկերակիցներին: Իսկ այս ժամանակ նա զինվորական պաշտոնյա էր, Արշակ թագավորի սիրելի սենեկապետն էր, թագավորի կյանքի բոլոր կարգերին հավատարիմ ներքուստ և արտաքուստ:

Սա մի մեծ տղամարդ էր՝ ցանկալի բարձր հասակով, գրավիչ գեղեցկությամբ, որի նման գեղեցիկ աշխարհի վրա ուրիշ տեղ չէր գտնըվում. տենչալի, ցանկալի, զարմանալի և պատկառելի բոլոր նայողների համար և զինվորական կրթությունների մեջ նախանձելի արիությամբ: Աստծու երկյուղը սրտում ուներ, խստիվ պահպանում էր նրա պատվիրանները, մարդասեր, սուրբ և պարկեշտ էր, շատ իմաստուն էր, անաչառ, իրավադատ, հեզ, քաղցր, խոնարհ, աղքատասեր, ամուսնական կյանքում օրինավոր, աստծու սիրովը լցված: Ընկերների հետ վարվում էր պատվիրանի համաձայն—սիրել ընկերոջը ինչպես՝ իրեն իրեն: Զինվորական ասպարեզի մեջ էլ նա այնպես կատարյալ էր առա-

րել զամենայն ընկեր իբրեւ զանձն. զի 'ի զինուորութեանն այսպէս կատարեալ էր վարուք քաջութեամբ, որ մինչդեռ մանուկ իսկ էր՝ գնայր նա ամենայն պատուիրանօքն տեառն եւ արդարութեամբ, անարատութեամբ եւ ամենայն պաշտամամբք առ ընկերս իւր: Անձանձրոյթ էր, եւ ունէր զնախանձն աստուծոյ, եւ եռայր սուրբ հոգւովն, այսպէս իսկ էր ամենայնիւ կատարեալ յամենայնի: Եւ զաղքատս եւ զտառապեալս այսպէս սիրէր եւ ակն ածէր 'ի վերայ նոցա, զի զիւր ինչ զհանդերձս եւ զկերակուր հասարակէր ընդ նոսա: Եւ նեղելոց եւ տարակուսելոց օգնական եւ վերակացու, եւ ջատագով ամենայն զրկելոց լինէր նա:

Մինչ դեռ եւս զզինուորական ձեռն յինքեան բերէր, եւ զարդարեալ էր գեղեցիկ սպատմուճանաւ եւ զարդ վայելուչ, եւ ցանկալի գեղով իւրով, երկայն հասակաւ, եւ չքնաղատես հերօք վարսից իւրոց. կայր 'ի սպասու թագաւորին մօտ 'ի սնարս արքային, զարքունական սուսերն զպողովատիկն զոսկէպատեանն հանդերձ ականակապ մարգարտազարդ կամարաւն 'ի սպասու նորա բարձեալ ունէր, առ հասարակ ատեանն զբողոք բարձեալ աղաղակէին՝ եթէ Ներսէս լիցի մեր հովիւ: Զոր իբրեւ լուեալ, զբողոք բառնալով՝ զանձն անարժան համարեալ, չկամէր չառնոյր յանձն: Իսկ յորժամ տեսանոյր զամենեսեան 'ի նոյն յառաջին բանին վերայ պնդեալ, զի զնոյն աղաղակէին առաջի թագաւորին. ասէին. Ոչ ոք լիցի մեր հովիւ, բայց 'ի դմանէ. եւ ոչ ո՛ք նստի այլ յայնմ աթոռ, բայց դա: Իսկ նա իբրեւ զանձնն չկամէր արժանի իրին առ յոյժ խոնարհութեան իւրում, ապա 'ի մէջ եկաց, սկսաւ ստել սակաւ մի, խօսել զանձնէ իւրմէ զանօրէնութիւնս եւ զբամբասանս մեղաց՝ որ իւր չէր գործեալ:

Զոր իբրեւ լուան բազմութիւնքն, գիտացեալ զստելն նորա վասն անձինն, ամենեքեան առ հասարակ հանդերձ թագաւորաւն թալացեալ էին 'ի ծաղուէ: Իսկ զօրքն աղաղակէին առ հասարակ. 'Իմեզ եւ 'ի գլուխ մեր դարձցին այն մեղք՝ զոր գործեցերն. 'ի վերայ անձանց մերոց եւ 'ի վերայ որդւոց մերոց լիցին գործքն, բայց դու զգործս հօրն քո Գրիգորի, զնոյն առաջնորդութիւնն նորոգեա մեզ: Իսկ նա իբրեւ այլ ինչ ոչ եգիտ տալ նոցա բանիցն պատասխանի, զի թշնամանս լինէր զօրացն, եւ ասէր. Անօրէնք էք եւ պիղծք, ես ոչ կարեմ ձեզ հովիւ կալ, եւ ոչ զձեր մեղսդ ընդ անձամբ բառնալ. ապա ոչ կարեմ աշառել, եւ ոչ ձերում չարութեանդ համբերել: Եւ այսօր տարապարտուց սիրէք դուք զիս տարապարտ, եւ վաղիւ ատելի եւ թշնամի եւ թակն զգլխոյ ձերմէ կոչկոճիչ կապէք զիս. այլ թո՛յլ տուք ինձ, անհոգութեամբ ըստ իմում չափու անարժանութեամբ զկեանս իմ տառապանօք եւ մեղօք հանդերձեալ դատաստանին յաւիտենից ակն ունելով, անցուցանել թերեւս կարացից: Ապա

ֆինի վարքով: Նա դեռ մանկության հասակից ապրում էր տիրոջ պատվիրանների համաձայն, արդարությամբ, անարատությամբ, ընկերների ծառայություններ անելով: Նա ձանձրանալ չգիտեր, սաստու նախանձը ստատումն ուներ, սուրբ հոգով եռում էր. ամեն բանով կատարյալ էր: Աղքատներին, տառապյալներին սիրում էր, նրանց վրա խնամք ուներ, մինչև իսկ իր զգեստներն ու կերակուրը նրանց հետ կես էր անում: Նեղվածներին, դժվարության մեջ ընկածներին օգնում էր, զրկվածներին հովանավոր ու պաշտպան էր դառնում:

Արդ՝ մինչդեռ նա զինվորական զգեստ հագած, զարդարված էր գեղեցիկ պատմուճանով և վայելուչ զարդերով, ցանկալի գեղեցկությամբ, երկայն հասակով, չքնաղ վարսերով, կանգնած էր քաղավորի սպասավորության, նրա սնարքում, գոտուց կախված արքայակա՛ն պղնձատյա սուրը՝ ականակուռ մարգարտազարդ ոսկի պատյանով,— տոյանի ամբողջ բազմությունը ձայն բարձրացնելով միաբերան աղաղակեց. «Ներսեսը լինի մեր հովիվը»: Երբ նա լսեց՝ բողոք բարձրացրեց, չէր կամենում, հրաժարվում էր ասելով, թե ինքն անարժան է: Բայց նա տեսավ, որ բոլորը նույն բանի վրա պնդելով քաղավորի առաջ նույնն էին աղաղակում. «Ուրիշ ոչ ոքի չենք ուզում մեզ հովիվ, այլ միայն դրան. ուրիշ ոչ ոք չպիտի նստի այն աթոռը, այլ միայն դա»: Իսկ նա, քանի որ իր խոնարհությունից իրեն արժանավոր չէր համարում այդ (աստիճանին), առաջ եկավ, սկսեց մի քիչ սուտ խոսել իր մասին, սկսեց իրեն բամբասել այնպիսի մեղքերի և անօրենություններ մեջ՝ որ . չէր գործել:

Երբ բազմությունը այս լսեց, և գիտեր որ նա իր մասին սուտ է հնարում՝ բոլորը միասին քաղավորի հետ ծիծաղից թուլանում էին: Իսկ բոլոր զորքերը միաբերան աղաղակում էին. «Թող մեր վրա, մեր գլխների վրա դառնան քո գործած մեղքերը. թող մեր վրա, մեր որդոց վրա թափին քո (անօրեն) գործերը. բայց դու քո հոր Գրիգորի գործերը, նույն առաջնորդությունը նորոգիր մեր մեջ»: Իսկ նա որովհետև ուրիշ բան չգտավ նրանց պատասխանելու, որ զորքի համար վիրավորանք կլիներ՝ ասաց. «Դուք անօրեն եք ու պիղծ. ես չեմ կարող ձեզ հովիվ լինել և ձեր մեղքերը ինձ վրա վերցնել. ես չեմ կարող աշխատություն անել, չեմ կարող ձեր գործած չարիքներին համբերել: Դուք այսօր զուր եք ինձ սիրում, վաղն իմ թշնամիներն ու ատողները կդառնաք. դուք ինձ կապում եք ձեզ հետ՝ ձեր գլուխը թակելու համար: Ինձ հանգիստ թողեք, թերևս առանց հոգսերի իմ տառապանքներով ու մեղքերով լի կյանքը ըստ իմ անարժանության անցկացնեմ՝ հանդերձյալ հավիտենական դատաստանին սպասելով»:

զբօզօք բառնային բազմութիւնք զօրացն, և ասէին՝ եթէ այդ մեծաւորդ լիցի մեզ հովիւ. զի այնչափ պնդեալ մարդկանն, յաստուծոյ տեսչութենէն լինէր այնպէս: Առ սրտին զազանութեանն և յօյժ ցասմանն թագաւորն Արշակ ինքն ձգտեալ զսուսերն արքունական կամարաւն. զոր նմա Ներսէսն բարձեալ ունէր 'ի սպասու թագաւորին ըստ օրինաց սենեկապետութեանն, 'ի բաց հանէր 'ի նմանէ: Եւ հրամայէր զնա կապել զիւրով առաջև. զհերսն զանգրագեղս զվայելուչ թագագանգուր վարսիցն, զի ուրեք երբեք նման նմա ոչ գտանէր, զայն 'ի բաց խզել հրամայէր. և ընդ նմին զվայելուչ պատմուճանն, զայն 'ի բաց պատառել հրամայէր: Հրաման տայր, և բերին զհանդերձ կղերիկոսաց զգեցուցանէին նմա. ետ հրաման, և կոչեցին զծերունի եպիսկոպոսն՝ որում անուն էր Փաւստոս, և տայր զնա ձեռնադրել 'ի սարկաւագութիւն: Բայց յորժամ զհերսն դեռ վիրային 'ի նմանէ, առ յօյժ գեղեցկութեանն բազումք յարտասուս հարան՝ որք լուանն կամ տեսին, 'ի գեղն աւեղկեալ՝ զկերպարանսն փոփոխելովն: Այլ յորժամ տեսին զնա քրիստոսեան գեղովն զարդարեալ՝ բազմաց լինէր ուրախութիւն, յորժամ շնորհք բարերարք կոչեցին զնա լինել հոգեբարձու տանն Քրիստոսի:

Յայնժամ եդ տէր 'ի միտս ամենեցուն խնդրել իւրեանց հովիւ զայն, որ նոցա կարող լինել զառաջնորդութիւնն կենացն ճանապարհին ցուցանել: Եւ մինչ դեռ իսկ զձևս զինուորութեան յինքեան բերէր յերեվելիսն, ներքին մարդովն զՔրիստոս էր զգեցեալ յանձն իւր, և ազնուական վարս էր յինքեան կերպարանեալ: Եւ յուսովն՝ զոր ունէր՝ խաչեալ էր ընդ Քրիստոսի, և թաղակից եղեալ էր ընդ նմին. և սիրով հաւատոյ մեռեալ էր մեղացն, և յարութեան յուսոյն արդարութեամբ սպասէր: Վասն այսորիկ յիրաւի արժանի եղև սա աթոռոյն հայրապետաց և տեղւոյ հարցն իւրոց առաջնոց, զաթոռն Թադէոսի Առաքելոյ, և ժառանգութիւն հօրն մարմնապէս 'ի նոյն հոգևորին Գրիգորի. այլ իբրև 'ի տեսանէ եղև կոչումն նմա գալ յիրս այսպիսի, և էարկ 'ի միտս ամենեցուն խնդրել զսա արժանի այնմ իրին: Իսկ նա յօյժ առ երկիւղածութեանն և բազում խոնարհութեանն զանձն իւր անարժան համարեալ իրացն, մեծ կարգաց աստիճանին աստուծոյ, յոր ձգեալ էին զնա: Այլ բնաբարութիւն և միաբանութիւն և հրաման աստուծոյ, մանաւանդ առ նախնեօքն, վասն նորա իսկ ասացեալ էր 'ի տեսլեանն աստուծոյ առ Յուսիկն՝ եթէ այր լինելոց է 'ի սորա զաւակէ, լիցի լոյս աշխարհի:

Բայց զորքի բազմությունը բողոք բարձրացնելով ձայն տվեց. «Հենց դու մեղավոր պետք է մեզ հովիվ լինիս»: Աստծու տեսչությունից էր, որ մարդիկ այսքան պնդում էին: Այն ժամանակ Արշակ թագավորը, շարացած ու զայրացած՝ դեպի ինքն իրեն էր քաշում սուրը արքունական կամարով, որը նա կրում էր իբրև սեննկապետ՝ թագավորին սպասավորելիս, և նրա վրայից հանում էր: Ապա հրամայում էր նրան իր առաջ կապել, խուզել նրա գանգուր վայելուչ վարսերը, որոնց նմանը ոչ մի տեղ չէր գտնվում. նույնպես հրամայում էր պատառել, վրայիցը հանել վայելուչ պատմուճանը: Հրաման տվեց. բերին կրոնավորի զգեստներ ու նրան հագցրին: Ապա հրաման տվեց. կանչեցին ծերունի Փավստոս եպիսկոպոսին և նրան ձեռնադրել տվին սարկավագ: Բայց մինչ մազերը խուզում էին՝ նրանց գեղեցկության պատճառով շատերը (ափսոսալով) լաց էին լինում, երբ տեսնում էին, թե ի՛նչպես կերպարանքը փոխվելով գեղեցկությունը կորավ: Բայց երբ տեսան նրան քրիստոնեական գեղեցկությամբ զարդարված՝ շատերն ուրախացան, որ բարեբար (Աստծու) շնորհքով նա հրավիրվեց Քրիստոսի տան հոգաբարձուն լինելու:

Տերն էր, որ բոլորի մեջ միտք ծագեցրեց իրենց համար հովիվ խնդրելու նրան, որ կարող էր նրանց առաջնորդել դեպի կյանքի ճանապարհը: Նա դեռևս երբ զինվորական ձև էր կրում արտաքուստ իր վրա, ներքուստ Քրիստոսի զգեստն էր կրում, և ազնվական կերպարանք ուներ: Իր ունեցած հույսով նա խաչված էր Քրիստոսի հետ. սիրով մասնակից էր եղել նրա թաղման և հավատով՝ մեռած էր մեղքերի համար և արդարությամբ սպասում էր հարության: Ուստի նա իրավացի կերպով արժանացավ հայրապետների աթոռին և իր առաջին հայրերի տեղին, Թադեոս առաքյալի աթոռին և իր մարմնավոր հոր նաև հոգևոր ժառանգության: Բայց տիրոջ ազդեցությամբ էր որ նա հասավ այն պաշտոնին, և նա էր որ բոլորի մեջ միտք ծագեցրեց՝ նրան այս պաշտոնին արժանավոր համարելու: Թեպետ նա սաստիկ երկյուղածությունից և խոնարհությունից իրեն անարժան էր համարում Աստծուն սպասավորելու բարձր աստիճանին, բայց նա (այս աստիճանին հասավ) բռնադատվելով (ժողովրդի) միաբանությամբ և Աստծու հրամանով, մանավանդ որ առաջուց էլ սրա մասին էր հայտնվել Հուսիկին տեսիլքում, թե նրա սերնդից կլինի մի մարդ՝ որ աշխարհի լույս կլինի:

Դ

ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԱՌԻՆ ԳՆԱՑԻՆ ԵՒ ՏԱՐԱՆ ԶՆԵՐՍԷՍ 'Ի ԿԵՍԱՐԻԱ. ԵՒ ԵԹԵ Զ'ԻՆՉ ՆՇԱՆ ՍՔԱՆՉԵԼԻՔ ԵՂԵՆ ՅԱՍՏՈՒԾՈՅ, ԵՒ ԿԱՄ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՀՈՎՈՒԵԱՑ ԻՒՐՈՑ ՀՕՏԻՑՆ ԱՌԱՔԵԼՕՐԷՆ

Ապա գումարեցին զիշխանսն մեծամեծս, զի առցեն զցանկալին Ներսէս, և գնասցեն ուր սովոր էին զհայրապետսն օծանել: Նա և բազմութիւն եպիսկոպոսացն Հայոց ժողովեցան առ թագաւորն վասն նորին խնդրոյն. խոնարհել ամենեցուն միով միաբանութեամբ զնա ընտրել հաճոյ թուեցաւ ամենեցուն, զի նստցի նա յաթոռ գլխաւորութեանն: Ամենեցուն միաբանութեամբ եպիսկոպոսացն և թագաւորին և աշխարհախառն ամբոխին համաձայնութեամբ 'ի միասին արձակեցան և գնացին: Զհայր մեծ իշխանն Մարդպետութեանն, և զԹագարար մեծ իշխանն ասպարապետութեանն, և զԴանիէլ մեծ իշխանն Ծոփաց, և զՄեհանդակ Ռշտունի, զԱնդովկ իշխանն Սիւնեաց, և զԱրշաւիր իշխանն Շիրակայ և Արշարունեաց, և զՆոյն իշխանն միւսոյ Ծոփաց, և զՊարգև իշխանն տանն Ամատունեաց. զնոսա զամենեսին կազմեցին և արձակեցին թագաւորական թղթովք և մեծամեծ պատարագօք և հրամանաւ հրովարտակօք առ կապադովկացւոց կաթողիկոսն Եւսեբիոս յերկիրն Գամրաց. և 'ի մայր քաղաքացն[17] նոցա 'ի Կեսարիա, զի ձեռնադրեսցեն անդ զսուրբն Ներսէս կաթողիկոսութիւն Հայոց մեծաց:

Եւ եկին ածին նոքա ցնծութեամբ ուրախութեամբ, և տեսին անդ զկաթողիկոսն կաթողիկոսացն զսուրբն զմեծանունն զերանելին զհռչակաւորն զսքանչելին Եւսեբիոս: Եւ տային զհրովարտակն արքային Արշակայ նմա. և ունէին առաջի նորա զպատարագս բերեալս: Եւ նորա սիրով ընկալեալ զնոսա և բազում մեծարանօք, և ըստ կանոնաց օրինակի ժողովէր առ ինքն մեծ եպիսկոպոսապետն Եւսեբիոս զբազմութիւն եպիսկոպոսացն սրբոցն ըստ սահմանեալ օրինացն, զի ձեռնադրեսցեն զսուրբն Ներսէս լինել եպիսկոպոսապետ Հայոց մեծաց: Եւ եղեն մեծ սքանչելիք. զի մինչ դեռ այն ինչ մտեալ էին յեկեղեցին, էջ աղաւնի սպիտակ 'ի վերայ սեղանոյն յանդիման քահանայութեանն և յանդիման ամենայն ժողովրդեանն: Եւ իբրև եմուտ Եւսեբիոս արքեպիսկոպոսապետն և երիցունքն ընդ նմա, և էրիցապետ մի սուրբ՝ որում անուն Բարսեղիոս կոչէր, թռեաւ աղաւնին 'ի սեղանոյն և հանգեաւ 'ի վերայ նորա, և յամեաց բազում ժամս: Իսկ իբրև եհաս ժամ՝ յորժամ կամեցան զՆերսէս ձեռնադրել, վերացաւ աղաւնին 'ի Բարսեղէ. և նստաւ 'ի վերայ գլխոյն Ներսէսի:

Իբրև այս սքանչելիք և նշանք յաստուածոյ լինէին 'ի վերայ սորա

## Դ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆԵՐՍԵՍԻՆ ԱՌԱՆ ՏԱՐԱՆ ԿԵՍԱՐԻԱ ԵՎ ԻՆՉՊԻՍԻ ՆՇԱՆԱՎՈՐ ՍՔԱՆՉԵԼԻՔՆԵՐ ԵՂԱՆ ԱՍՏԾՈՒՑ, ԵՎ ԻՆՉՊԵՍ ԱՌԱՔԵԼԱԲԱՐ ՀՈՎՎԵՑ ԻՐ ՀՈՏԸ

Այնուհետև գումարեցին մեծամեծ իշխաններին, որ ցանկալի Ներսեսին առնեն տանեն այնտեղ՝ ուրտեղ սովոր էին հայրապետներին օծել տալ: Նաև Հայոց եպիսկոպոսների բազմությունը ժողովվեց թագավորի մոտ նույն հարցի առիթով. բոլորը միաբան խորհուրդ անելով[74] որոշեցին, որ նա նստի գլխավորի աթոռը: Եվ բոլորի միաձայն հավանությամբ,— եպիսկոպոսների և թագավորի և աշխարհականների բազմության,— (դեսպանները) ճանապարհ ընկան ու գնացին.—մարդպետության մեծ իշխան Հայրը, ասպետության[75] մեծ իշխան Բագարատը, Տոփքի մեծ իշխան Դանիելը, Մեհենդակ Ռշտունին, Սյունյաց Անդովկ իշխանը, Շիրակի և Արշարունյաց իշխան Արշավիրը, մյուս Տոփքի իշխան Նոյը, Ամատունյաց տան իշխան Պարգևը: Սրանց բոլորին պատրաստեցին և ճանապարհ դրեցին մեծամեծ նվերներով և ընծաներով և հավաստի հրովարտակներով, որ գնան Գամիրքի երկիրը, Կեսարիա մայրաքաղաքը, կաթողիկոսների կաթողիկոս Եվսեբիոսի մոտ, որպեսզի այնտեղ նրան ձեռնադրեն Մեծ Հայքի կաթողիկոս:

Նրանք ցնծությամբ եկան հասան և տեսան այնտեղ կաթողիկոսների կաթողիկոսին, սուրբ մեծանուն երանելի հոյակապ և սքանչելի Եվսեբիոսին: Նրան մատուցին Արշակ թագավորի հրովարտակը և բերած նվերները նրան ներկայացրին: Նա սիրով և մեծ պատիվներով նրանց ընդունեց. և համաձայն (եկեղեցական) կանոնների, առաքելական կարգի՝ ժողովեց սուրբ եպիսկոպոսների բազմությունը, որպեսզի սուրբ Ներսեսին ձեռնադրեն Մեծ Հայքի եպիսկոպոսապետ: Եվ մի մեծ սքանչելիք տեղի ունեցավ, որովհետև հենց որ մտան եկեղեցին՝ մի սպիտակ աղավնի, բոլոր քահանաների ու բազմաթիվ ժողովրդի առաջ, եկավ նստեց սեղանի վրա: Երբ Եվսեբիոս արքեպիսկոպոսապետը և նրա հետ երեցները ներս մտան, որոնց մեջ էր նաև մի սուրբ երեցապետ Բարսիլիոս անունով՝ աղավնին սեղանից թռավ ու եկավ նստեց նրա վրա և երկար ժամանակ մնաց, իսկ երբ հասավ այն ժամը, երբ կամեցան Ներսեսին ձեռնադրել՝ աղավնին սուրբ Բարսեղի վրայից վերացավ ու եկավ նստեց Ներսեսի գլխին:

Երբ աստծուց այս նշանն ու սքանչելիքը նրա վրա երևացան՝

այսօրիկ, կային առ հասարակ ամենայն ժողովուրդն զարմացեալք, և
մեծ արքեպիսկոպոսն Եւսեբի: Առ հասարակ աղաղակէին ՚ի վերայ նո-
րա, թէ՝ Հանոյ եղեր դու աստուծոյ, և հոգի աստուծոյ հանգեաւ ՚ի վե-
րայ քո. զի նմանութիւն եղև ամենասուրբ Հոգւոյն, որ ՚ի վերայ տեառնն
երևեցաւ: Ապա ձեռնադրեցին զնա, և հանին նստուցին յաթոռ եպիսկո-
պոսութեանն, և պատուէին զնա. և բազումք ասէին նմա էնկոմիա, որ
ասի՝ թէ Հոգի սուրբ հանգեաւ ՚ի սա: Բայց նա ևս քան զևս զանձն իւր
անարժան համարէր իրացն եղելոց: Եւ մեծասքանչելաշուք յուղարկեցին
զնա. նոյնպէս և զմեծամեծ նախարարսն սատրապն Հայոց:

Եւ եկին հասին նոքա մեծապարծ երևելի հոգևորազգեաց փառօք
՚ի Հայաստան երկիրն. և արքայն Արշակ ընդ առաջ երթայր նոցա մինչև
՚ի լեառն, որ անուանեալ կոչի Առեւծ: Եւ անդ պատահեալ միմեանց
մեծաւ լրջմտութեամբ, լցեալք օրհնութեամբ ողջունիւն, անդուստ յաշ-
խարհն դարձան: Եւ նստաւ սուրբն Ներսէս յաթոռ հայրապետութեան. ՚ի
հովուութեանն նորա բազում խաղաղութիւն լինէր աշխարհին: Զի ՚ի վարս
կարգաց գնացիցն իւրոց՝ նմանեաց իւրոյ հօրն մեծին Գրիգորի, արդարև
հայրապարոյ գտանէր ամենաբարի. զնոյն հարցն նորոգեաց զառաքե-
լաշնորհս, նոյն գործ երևեալ անվնաս պահելոյ յաներևոյթ թշնամեացն
և յայտնեացն:

Սա և առաւել ևս առաջին ծառոցն նմանել. որ զնոյնազգեաց
զնոյնահաս պտուղս վարդապետութեան բերեալ սկսեալ վերակացու-
թեանն հովուութեանն՝ անկարօտ մատակարարէր զօգտակարսն, զհո-
գևոր արօտսն շամբելով: Զի շնորհքն այնպէս հանգեան ՚ի նմա, զի
մեծամեծ նշանս և բժշկութիւնս առնէր հիւանդաց, ուր դէպ լինէր. զմո-
լորութիւնս դարձուցանէր: Առնէր և զայսպիսի սքանչելիսս. զոր կարի
յամառեալ տեսանէր, առ արկանելով հաւանեցուցանէր. իսկ հլուացն,
որոց ականջք սրտիցն բացեալ էին, զնոսա բանիւք քարոզութեանն
ածէր ՚ի հաւանութիւն:

Շինէր և զաւերեալ եկեղեցիսս. և կանգնէր զսեղանս կործանեալս.
և հաստատէր ՚ի կատարումն ապաշխարութեան զթերահաւատս, զի հա-
ւատացեալք յաստուած՝ ապրել կարասցեն: Մխիթարէր զհաւատացեալս
յաւիտենական յաւուր բարութեամբն մշտնջենաւոր պարգևացն, զբա-
ղձական աթոռն միւսանգամ եկից, և իւրոց հարցն նմանեալ որդի եղև:
Եւ շարախօսացն ընդդիմացեալ ըմբերանէր, խափանէր և զանօրէնու-
թիւնս և զխօսս և զգործս զայսպիսեացն միանգամայն: Եւ վասն ճըշ-
մարտութեանն մինչև ՚ի մահ մարտնչէր, և զաշողակ արդարութեանն
քաջալերեալ խնդացուցանէր. և իւրով վարդապետութեանն անձրևաւն
պարարէր սնուցանել զշայեկան արդարութիւնն օրհնութիւնս ընծայու:

բոլոր ժողովուրդը և Եվսեբիոս մեծ արքեպիսկոպոսը զարմացած մնացին: Բոլորը նրան դիմելով աղաղակում էին. դու հաճելի եղար աստծուն, աստծու հոգին քո վրա իջավ, որովհետև դա նմանությունն էր. ս. հոգուն,, որ տիրոջ վրա երևաց: Ապա նրան ձեռնադրեցին և բարձրացրին նստեցրին եպիսկոպոսության աթոռ և պատվում էին, շատերն էլ նրան ներբողներ[76] էին ասում, այն մտքով թե ս. հոգին հանգչեց նրա վրա: Բայց նա ավելի և ավելի անարժան էր համարում իրեն այս եղածներին: Այնուհետև մեծ փառավորությամբ ճանապարհ ձգեցին նրան և Հայոց մեծամեծ նախարարներին՝ սատրապներին:

Նրանք մեծ պարծանքով, հոգևորապես փառավորված եկան հասան Հայաստան աշխարհը: Նրանց դիմավորեց Արշակ թագավորը մինչև Արյուծ կոչված լեռը: Այստեղ նրանք միմյանց պատահեցին մեծ խնդությամբ, իրար ողջունեցին և օրհնությամբ դարձան եկան աշխարհը: Եվ սուրբ Ներսեսը նստեց հայրապետության աթոռը. նրա հովվության ժամանակ աշխարհում մեծ խաղաղություն տիրեց. որովհետև իր վարքի և ընթացքի մեջ նա նմանեց իր հոր՝ մեծն Գրիգորին, ամենաբարի եղավ իր նախնիքների նման, այն հայրերի առաքելական շնորհքները նորոգեց և նույնպես հոգս էր տանում՝ (իր հոտը) անվնաս պահելու երևցող և աներևույթ թշնամիներից:

Նա առավելապես նմանեց առաջին ծառերին, և վարդապետության նույնատեսակ և նույնքան հասուն պտուղներ էր բերում և իր հովվության և վերակացության ընթացքում բոլորին առատորեն մատակարարում էր օգտակարը, հոգևոր արոտով սնուցանելով: Նա այնպես լցվեց (աստվածային) շնորհքներով, որ մեծամեծ նշաններ էր գործում, հիվանդներ էր բժշկում, որտեղ որ դեպք էր լինում. մոլորվածներին (ուղիղ) ճանապարհի էր բերում: Այսպիսի սքանչելիքներ էլ էր կատարում... որտեղ որ մեկին տեսնում էր խիստ համառած՝ ան ազդելով խոսքի էր բերում, իսկ որոնց որ սրտերի ականջները բաց էին՝ նրանց խոսքի էր բերում քարոզությամբ:

Շինում էր ավերված եկեղեցիները, վերականգնում էր կործանված սեղանները. թերահավատների համար սահմանում էր ապաշխարության կարգ, որպեսզի աստծուն հավատան ու փրկվեն: Հավատացյալներին մխիթարում էր մշտնջենավոր բարի պարգևների հույսով: Թադեոս (առաքյալի) աթոռը նորից փառավորեց, իր հայրերին նման որդի եղավ: Զարախոսներին դիմադրելով պապանձեցնում էր: Անօրեն գործերն ու խոսքերը միանգամայն խափանում էր: Ճշմարտության համար կռվում էր մինչև վերջ, արդար կողմը քաջալերում ու պաշտպանում էր, և իր վարդապետության անձրևով սնուցանում էր չափավոր արդար գոր-

Եւ ընդ ամենայն տեղիս սահմանացն Հայոց մեծաց, ընդ որ էր յառաջագոյն նորուն հարցն սերմանեալ զհաւատս թպիւն բանին կենաց, զնոյն և սա ոռոգեաց անձրևովն: Զբոյսն անեցոյց մշակն հնձող, եղեալ գործակից սերմանողաց. և բազմացոյց զյորդաբուխ արդիւնսն 'ի շտեմարանս արքայութեանն, կարգացն առաջին հարցն մշակացն փոխանորդ եղեալ՝ գործակից լինելով:

Նա և բազում զօրութիւնս անպատումս յանձին իւրում բարձեալ բերէր. նա և կարի իսկ զաղորմածութեան կարգացն փոյթ արարեալ ցուցանելոյ, նախ ինքն առնելով առ իւր անձն բարի, և ապա այլոց օրինակ բարեաց դնելով, առ հասարակ վարդապետական բանիւն զամենեցուն զփակեալ դրունս մտաց 'ի բարին յորդորելով բանայր: Զամենաբարի ուսուցանէր զսէր զյոյս զհաւատս զսրբութիւն զհաւրութիւն զհեզութիւն զանոխակալութիւն, զխնամ ունելով դարմանոյ աղքատացն տանելոյ, և յոյս հատուցման 'ի խոստացեալ աւետիսն Քրիստոսի. և 'ի դատաստանացն ամենին անշէջ հրոյն՝ յիշատակօք յաւիտենականն չարչարանօք սպառնալով, անաշառական զալստեամբն Որդւոյն աստուծոյ Յիսուսի Քրիստոսի: Եւ այնու երկեցուցեալ, մինչև ամենեցուն՝ որք 'ի սահմանս Հայոց էին բնակեալ՝ ամենեքեան հաւատացեալք ընդ աղքատս իւրեանց զիւրեանց ինչս մատակարարեալ հաւանութեամբ հաւասարութեամբ, և ինքեանք լրջմտութեամբ զուարթութեամբ զործէին:

Եւ ինքն երթեալ հասանէր 'ի կողմանս Տարօն գաւառին. և ժողովէր առ ինքն զամենայն եպիսկոպոսունս Հայոց աշխարհին: Ժողովեցան 'ի գեւղն Աշտիշատ, ուր զառաջինն զեկեղեցին էր շինեալ. զի նա էր մայր եկեղեցեացն, և 'ի տեղի լեալ նախնեացն ժողովոց սիւնհոդոսին: 'Ի ժողով հաւանութիւնս եկեալ ամենեցուն, և խորհուրդ բարեաց 'ի մէջ արկանէին, կատարել անդ զաշխարհական կարգս եկեղեցւոյն և ժողովն հաստոցն հաւասարութեան: Յայնմ ժամանակի կարգեցին կազմեցին կանոնեցին յօրինեցին, և արարին զամենայն ժողովուրդս երկրին Հայոց իբրև կարգ միաբանութեան վանականաց համաշխարհի, բայց միայն յամուսնութեան օրինացն: Բայց միայն զառաքելակարգ կանոնսն 'ի վերայ ամենեցուն կացուցանէր սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս. ամենեցուն խրատատու և առաջնորդ յորդորիչ և նախանձաւոր լինէր գործոց բարեաց: Նախ ինքն առնէր, և ամենեցուն զնոյն ուսուցանէր. առ հասարակ զնոյն օրինակ առնել հրամայէր յամենայն աշխարհս և 'ի գաւառս և 'ի կողմանս կողմանս, 'ի կոյս կոյս, 'ի խորշս խորշս սահմանացն Հայոց. յայտ արարեալ զպատեհ պատեհ տեղիսն զատուցանել, շինել աղքատանոցս, և ի՛ ժողովել զախտաժէտս և զօրկեալս և զմարմնա-

ծերն օրհնությամբ, Մեծ Հայքի բոլոր սահմաններում, որտեղ նրա հայրերն առաջ սերմանել էին կենարար խոսքի քարոզությունը՝ ինքը նրանց ոռոգեց իր (քարոզության) անձրևով: Բույսը աճեցրեց հնձող մշակը, սերմանողներին գործակից դառնալով և առատ արդյունք համբարեց արքայության շտեմարաններում: Նա իր նախորդ մշակ հայրերին փոխանորդ ու գործակից եղավ:

Իր մեջ կրում էր նա անպատմելի զորություններ. մանավանդ ուշադրություն էր դարձնում ողորմածության կարգեր հաստատելու վրա. նախ ինքը անձամբ բարիքներ էր գործում, հետո ուրիշներին բարեգործության օրինակ տալիս. վարդապետական խոսքով առհասարակ հորդորում էր բոլորին, նրանց մտքերը դեպի բարին էր դարձնում: Ուսուցանում էր որ ամենամեծ բարիքներն են սերը, հույսը, հավատը, սրբությունը, քաղցրությունը, հեզությունը, անոխակալությունը: Հորդորում էր խնամել աղքատներին, նրանց դարմանել, և հույս էր տալիս, որ (ողորմածները) հատուցում կստանան Քրիստոսի խոստացած (երկրորդ) գալստյան ժամանակ, երբ դատաստանի ատյան[77] կկազմվի անշեջ կրակով. սպառնում էր հավիտենական չարչարանքները հիշատակելով և Հիսուս Քրիստոսի աստծու որդու գալուստով: Եվ այնքան երկյուղ ազդեց, որ Հայաստանի սահմաններում բնակվող բոլոր մարդիկ հավատալով՝ բոլորն իրենց ունեցածները իրենց աղքատներին հավասարապես և հոժարությամբ մատակարարում էին, և այս բանը անում էին ուրախությամբ:

Նա գնաց հասավ Տարոն գավառի կողմերը և իր մոտ ժողովեց Հայոց աշխարհի բոլոր եպիսկոպոսներին: Ժողովվեցին Աշտիշատ գյուղում, որտեղ առաջին անգամ եկեղեցի էր շինված, որովհետև նա էր մայր եկեղեցին և նախնյաց եկեղեցական ժողովների ժողովատեղը: Բոլորը հոժարությամբ ժողովին եկան և օգտակար խորհրդակցություն ունեցան՝ աշխարհական կարգերը բարեկարգելու, հավատի ընդհանուր կանոններ սահմանելու: (Այս ժողովում) կարգ ու կանոն սահմանեցին, կազմակերպեցին և Հայոց աշխարհի բոլոր ժողովուրդը դարձրին իբրև վանականների մի ընդհանուր միաբանություն, բացի ամուսնությունից: Ներսես եպիսկոպոսապետը ամենքի վրա տարածում էր առաքյալներից սահմանված կանոնները, բոլորին խրատ էր տալիս, հորդորում էր, առաջնորդում էր դեպի բարեգործություն և նախանձախնդիր էր լինում. նախ ինքն էր անում, ապա ուրիշներին նույնը ուսուցանում: Նույնը հրամայում էր կատարել բոլոր Հայոց աշխարհում, գավառներում, կողմերում, անկյուններում: Որոնում գտնում էին պատշաճ տեղեր, զատում էին՝ նրանց մեջ աղքատանոցներ շինելու համար, որտեղ պետք է ժո-

վարս և զամենայն ցաւոս. և նոցուն կարգեցին օրկանոցս և դարմանոց և ռոճիկս, և պատանս աղքատաց: Զի այսպէս ետ հրաման մեծ եպիսկոպոսապետն Ներսէս, և սոյն կամ եղև ամենայն սուրբ ժողովոյն, զի այնպիսիքն միայն նստեալ լիցին յիւրաքանչիւր կայեանս, և մի՛ ելանել 'ի մուրոյն տառապանս, և մի՛ բնաւ ելանել ըստ իւրաքանչիւր դուռս, այլ զի ամենայն ոք պարտապան է նոցա: Հարկ իսկ է զի մի՛ կարգ աշխարհի, ասէ, եղծցի. այլ արժան է զի ամենեքեան առ հասարակ ողորմածութեամբ և երկիւղիւ տարեալ նոցա զդարմանսն, և զպիտոյս նոցա վճարեսցեն:

Շինեաց սոյնպէս, կարգեաց կազմեաց և հաստատեաց, բազում և այլ ողորմութիւնս ուսուցանէր աշխարհի. բազում կարգս կանոնաց հայրենիս կարգէր: Եւ առ յոյսն յարութեան ցուցանէր ունել ակնկալութիւն. և զի մի՛ զմահ մարդկանն առանց դարձի միւսանգամ կենդանանալոյ համարիցին, և անյուսութեամբ 'ի վերայ գնացելոցն օճիրս գործիցեն լալեալ կոծոյն, զանառակութիւնս աշխարհին դնելոյ. այլ յաւով տեառն զալստեանն ակն ունել և յարութեանն նորոգութեան, և իւրաքանչիւր գործոցն զյաւիտենական հատուցումն առնուլ իւրաքանչիւր յոյս ունելով աւուր զալստեանն տեառն սպասել: Եւ զի լինիցին յամուսնութեան օրինաւորք. մի՛ ստել և մի՛ դաւ բերել իւրեանց ամուսնութիւնընկալ կողմանց. և փախչել աւելի 'ի մերձաւոր և յազգին տոհմակից խառնակութեան ամուսնութենէն. և մանաւանդ 'ի մերձաւորական 'ի. նուոց և որ զամ մի այսմ նման լեալ էր ինչ: Եւ կանոն, հրաժարել ամենեւին 'ի մեռելոտւոյ և յարենէ ուտելոյ, և 'ի դաշտանիկն մերձենալոյ. զայդ ամենայն պիղծ համարէր առաջի տեառն:

Եւ զնենգութիւնսն և զքսութիւնսն և զագահութիւնս և զչարակնութիւնս, զցանկութիւնս և զգրկութիւնս, զարուագիտութիւնս և զիգութիւնս և զբամբասութիւնս, և զանառակ արբեցութիւնս և զորկորստութիւնս և զյափշտակութիւնս և զպոռնկութիւնս, և զվրէժս 'ի թշնամեաց, և զստութիւնս և զթշնամութիւնս և զանողորմածութիւնս և զսուտերդմնութիւնս, և զարիւնհեղութեան սպանութիւնս և զանասնագիտութեան պղծութիւնս, որ ոչ ակն ունէին յարութեան, և որ անյուսութեամբն լան զմեռեալս, ընդ մի օրինակ զամենեսեան 'ի միում խորխորատ կորստեանն համարէր: Եւ ամենայն աշխարհին պատուիրէր, և գլխովին թագաւորին, առ հասարակ ամենայն մեծամեծացն, և ամենեցուն՝ որ ոք 'ի վերայ ընկերին ունիցին իշխանութիւն, գութ ունենալով ընդ իւրեանց ծառայս և ընդ կրսերս և ընդ աշակերտս, և սիրել իբրև զընտանիս, և մի՛ անարժանս և աւելի տարապայմանս հարկօք նեղել քան զչափն. յուշ առնելով,

դովեին ախտավորներին, բորոտներին, հաշմանդամներին, ցավագարներին: Որոշեցին շինել ուրկանոցներ[78], սահմանել նրանց սնունդ և դարման, իսկ աղքատների համար պատսպարան[79]: Որովհետև Ներսես մեծ եպիսկոպոսապետը այսպես հրամայեց և սուրբ ժողովը հավանություն տվեց, որ այդպիսի մարդիկ նստած մնան իրենց կացարաններում, դուրս չգան տառապանքով մուրալու, և բոլորովին իրենց դռներից դուրս չդնեն, այլ որ ամեն մարդ պարտական լինի նրանց (խնամելու): Կարևոր է, ասում էին, որ աշխարհի կարգը չխանգարվի, այլ պետք է որ բոլորն անխտիր ողորմած լինեին և զգուշությամբ տանեին նրանց կերակուրը և նրանց պիտույքները հոգան: Այսպես էլ շինեց, կազմակերպեց և հաստատեց:

Ուրիշ շատ տեսակ ողորմածություններ էլ սովորեցրեց աշխարհին և շատ հայրենական կարգեր ու կանոններ հաստատեց: Նա խրատ էր տալիս, որ միշտ պետք է նկատի ունենալ հարության հույսը, չկարծել թե մարդու մահն անդառնալի է, նորից կենդանանալու հույս չկա. ուստի և պետք չէ մեռածի վրա անհուսությամբ լաց ու կոծ անել, անչափ ու անկարգ սուգ անել, այլ հուսով նկատի ունենալ տիրոջ (երկրորդ) գալուստը և հարությամբ նորոգվելը, ուրեմն սպասել տիրոջ գալստյանը, երբ ամեն մարդ հավիտենական հատուցում կստանա ըստ իր գործերի: Նաև խրատում էր, որ ամուսնության մեջ օրինավոր լինեին, որ ամուսնացածներն իրար չխաբեն, իրար դեմ դավ չսարքեն, հեռու մնան ազգակցական մերձավոր խառնակ ամուսնություններից, մանավանդ հարսների հետ մերձավոր ամուսնությունից և սրանց նմաններից: Եվ կանոն էր դնում՝ մեռած անասուն և արյուն չուտել, ամսականի ժամանակ կնոջ չմերձենալ, որովհետև դրանք պիղծ են տիրոջ առաջ:

(Նա դատապարտում էր) նենգությունը, ստությունը, ագահությունը, ուրիշին նախանձելը, ցանկական կրքերը, զրկողությունը, արվագիտությունը, իգանալը, բամբասանքը, մոլի հարբեցողությունը, որկրամոլությունը, հափշտակությունը, պոռնկությունը, թշնամուց վրեժխնդրությունը , ատախոսությունը, թշնամությունը, անողորմածությունը, սուտ երդումը, արյունահեղ սպանությունը, պիղծ անասնագիտությունը, (երկրորդ) հարության հույս չունենալը, անհուսությամբ մեռելներին սգալը—այս բոլորը միևնույն կորստյան խորխորատն են տանում, ասում էր նա: Եվ բոլոր աշխարհին պատվիրում էր նա, նույնինքն թագավորին, մեծամեծներին և առհասարակ նրանց, որոնք ուրիշի վրա իշխանություն ունեին, որ գութ ունենան իրենց ծառաների, ստորադրյալների և աշակերտների վրա. սիրել նրանց իբրև իրենց ընտա-

զի և նոցա տէր գոյ յերկինս։ Սոյնպէս և ծառայից պատուիրէր՝ կալ յարգարն հնազանդութեան իւրեանց տերանց, զի 'ի տեառնէ լինիցի նոցա վարձք։

Եւ եղև խաղաղութիւն և նորոգութիւն յաւուրս նորա ամենայն եկեղեցեաց. և յաճախէր շուք պատուի ամենայն եպիսկոպոսացն ընդ ամենայն տեղիս Հայոց մեծաց։ Եւ լուսաւորութիւն կարգի եկեղեցւոյ ամենապայծառ ծաղկեաց ամենամեծ լիութեամբ. կարգեցան կարգք կաթողիկէ եկեղեցեաց ամենայն վայելչութեամբ, և բազմացան կարգք սրբութեան պաշտամանցն և պաշտօնէիցն յաճախութիւն։ Եւ բազմացոյց զկարգս եկեղեցեաց 'ի շէնս և յանշէնս. սոյն օրինակ բազմութիւնք կրօնաւորաց։

Կարգէր և 'ի տեղիս տեղիս դպրոցս յունարէն և ասորերէն յամենայն գաւառս Հայոց. և բազում նեղելոց և տառապելոց գերեաց փրկութիւն և գերէդարձ առնէր, զորս անհւ քարոզութեան փառացն Քրիստոսի զկէս, և զայլս զնովք փրկանօք ազատէր, և յիւրաքանչիւր տեղիս դարձուցանէր։ Այրեաց և որբոց և չքաւորաց հանգիստ և դարման առնէր. և աղքատք զօրհանապազ ընդ նմա ուրախ լինէին. և տանար իւր և սեղան զօրհանապազ աղքատաց և օտարաց էր և հիւրոց։ Եւ այսպէս առ յոյժ աղքատասիրութեանն, զի թէպէտ և շինեաց զամենայն աղքատանոցս ընդ ամենայն գաւառս, և կարգեաց նոցա անդէն դարմանս, այնպէս զի բստ իւրեանց անկողինս մահճացն մի՛ ուրեք աշխատ լիցին ելանել. սակայն և զիւր տանարն առանց նոցա ոչ առնէր. այլ կաղք և կոյրք և մարմնահարք, խուլք և հաշմեալք և ցանկանեալք և կարօտեալք ընդ նմա և 'ի նորա սեղանէին բազմեալք։ Եւ ինքն իւրովք ձեռօքն լուանայր զամենեսեան. օծանէր պատէր, և ինքնին իսկ նամբէր նոցա զիւրաքանչիւր կերակուրս, և զամենայն ինչ 'ի պէտս նոցա ծախէր. և ամենայն օտարք ընդ նմա, հովանեաւ նորա հանգուցեալք, դադարէին։

Եւ ամենեցուն զոր ինքն առնէր՝ զայն ուսուցանէր. և ինքն սուրբ և զգաստ և արթուն, և զամենայն մարդ պատրաստական առ բանն աստուծոյ առնէր։ Եւ ինքն ամենեցուն բստ մարգարէիցն և կամ բստ Առաքելոցն նմանութեան զողորմածութիւնս ուսուցանէր. և եթէ զմեղս ձեր ողորմութեամբ պարտ է քաւել ձեզ, և զանօրէնութիւնս ձեր գթութեամբ և տրօք աղքատաց։ Եւ սոյնպէս տարաւ եցոյց՝ զառաքեալսն յուշ առնելով, որ պաշտօն աղքատաց, զմեծն և զնախավկայն զյառաջաբարկաւագն Ստեփանոս և զընկերս նորա՝ զորս ընտրեցին, որ զերկինս եբաց, և զՏէրն ընդ աջմէ Հօր աստուծոյ այս գործով արժանի եղև տեսանել։

նիներին, ապօրինի կերպով ու չափազանց հարկերով նրանց չնեղել, հիշեցնելով, որ նրանց համար էլ աստված կա երկնքում: Ծառաներին էլ պատվիրում էր հավասարիմ և հնազանդ լինել իրենց տերերին, որի համար վարձք կստանան տերից:

Եվ բոլոր եկեղեցիները նրա օրերում խաղաղություն և նորոգություն գտան. բոլոր Մեծ Հայքում եպիսկոպոսների պատիվը մեծացավ, եկեղեցիների կարգերը ծաղկեցան, ամենակերպ լիովին պայծառացան. ամենայն վայելչությամբ հաստատվեցին կարգավոր եկեղեցիների կարգերը, սուրբ պաշտամունքի կարգերը աճեցին, պաշտոնյաները ավելացան: Եկեղեցու կարգերը շատացրեց շեն և անշեն տեղերում, նույնպես և կրոնավորների թիվը բազմացրեց:

Զանազան տեղերում Հայաստանի բոլոր գավառներում հիմնեց հունարեն և ասորերեն լեզուների դպրոցներ: Շատ ներդվածներ փրկում էր, գերության մեջ տառապողներին գերությունից բափում էր, ոմանց՝ փառքելով Քրիստոսի անը, և մյուսներին՝ փրկանք տալով գնում ազատում էր և իրենց տեղերը դարձնում: Այրիներին, որբերին, չքավորներին հանգիստ ու դարման էր մատակարարում, աղքատները միշտ նրա հետ ուրախանում էին. իր սեղանատունն ու սեղանը միշտ բաց էին աղքատների՝ օտարականների և հյուրերի համար: Եվ այնքան մեծ էր նրա աղքատասիրությունը, որ թեպետ բոլոր գավառներում աղքատանոցներ շինեց և նրանց համար դարման նշանակեց, այնպես որ իրենց անկողիններից վեր կենալուց ավելի նեղություն չքաշեն, բայց և այնպես առանց նրանց սեղան չէր նստում, այլ կաղերը, կույրերը, հաշմանդամները, խուլերը, տնանկները, կարոտյալները նրա հետ սեղան էին նստում ու կերակրվում: Եվ ինքը իր ձեռներով բոլորին լվանում էր, օծում, (վերքերը) կապում, իր ձեռքով նրանց կերակուր էր բաժանում, իր բոլոր ունեցածը նրանց վրա էր ծախսում. բոլոր օտարականները նրա մոտ, նրա հովանու տակ հանգիստ կերակրվում էին:

Եվ ինչ որ ինքն էր անում՝ նույնը սովորեցնում էր անել և ուրիշներին. ինքը մաքուր, զգաստ և արթուն մարդ էր և բոլոր մարդկանց պատրաստում էր աստծուն լսելու: Մարգարեների և առաքյալների նմանությամբ սովորեցնում էր ողորմած լինել: «Ձեր մեղքերը, ասում էր, պետք է ողորմածությամբ քավեք և ձեր անօրեն գործերը գթությամբ և աղքատներին ողորմություն տալով»: Հիշեցնում էր առաքյալներին, որոնք աղքատների խնամակալության համար ընտրեցին մեծ նախավկա և նախասարկավագ Ստեփանոսին իր ընկերներով, նրան որ երկինքը բացեց. և այս գործով արժանի դարձավ Որդուն տեսնելու Հոր աստծու աջ կողմը:

Սոյնպէս և զԱյծեմնիկն իւր ողորմածութիւնքն և խանդակաթ այ-րեացն ողբումն, 'ի ձեռն մեծին Պետրոսի, և զհրաժարեալն զգնացեալն զմեռեալն միւանգամ այսրէն դարձուցանէր 'ի կենդանութիւն: Սոյնպէս և մեծն Պօղոս, ասէր, պատմէ՝ թէ իբրև տեսին զշնորհսն, որ տուեալ էին ինձ, Յակոբոս և Կեփաս և Յովհաննէս՝ որ բուն սիւնքն էին, իբրև տեսին՝ թէ հաւատարիմ եմ ես յաւետարանն անթլփատութեան, որպէս նոքա 'ի թլփատութեանն, ևս քաջ համարձակեցին. ձեռն ետուն հաւա-նութեան ինձ և Բառնաբայ. զի մեք 'ի հեթանոսս, և նոքա 'ի թլփատու-թիւնն: Բայց միայն պատուիրեցին ինձ, ասէ, զի աղքատաց խնամ կալ-ցուք. զոր ես ինքնին իսկ, ասէ, փութայի ջանալ կատարել:

Սոյնպէս ևս առաւելագոյն զտէրունականն դնէր առաջի, որ մեծա-տունն էր՝ որ զամենայն պատուիրանսն կատարեալ էր, ապա լուաւ 'ի տեառնէ՝ եթէ վաճառեա զինչս քո և տուր աղքատաց, և գտցես քեզ գանձս յերկինս. և որ զկնի սորին՝ եթէ դիւրին է մալխոյ մտանել ընդ ծակ ասղան, քան մեծատան ագահի յարքայութիւն աստուծոյ: Եւ դար-ձեալ՝ եթէ արարէք ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութեան, որ ընկալցին զձեզ ի՛ յարկս իւրեանց յաւիտենից: Կամ որպէս նոյն իսկ Պօղոս բարեաց գործոց նախանձաւոր լինէր, ստիպէ ամենեցուն ասելովն՝ եթէ զհետ երթայք սիրոյ, և նախանձաւոր լերուք հոգևորացն: Որոյ զյօժարութիւն աքայեցւոցն վասն պաշտաման սրբոցն 'ի Մակեդո-նիա պատմեալ՝ նախանձեցուցեալս յորդորեաց. այլ և համարձակութիւն իսկ տայ անխափան 'ի բարեացն առաքինութիւնս, թէ լաւ է յամենայն ժամ նախանձել 'ի բարիս: Դարձեալ փութայ ամենեքումբք հանդերձ ըստ Քրիստոսի հետոցն վարել: Հայեցարուք, ասէ, 'ի զօրագլուխն հա-ւատոց և 'ի կատարիչն Յիսուս. դարձեալ՝ թէ յիշեցէք զառաջնորդս ձեր և զվերակացուս ձեր 'ի տէր, որք խօսեցան ձեզ զբանն կենաց. հայե-ցարուք յելս գնացից նոցա, և նմանողք լերուք հաւատոց նոցա: Եւ միանգամայն՝ թէ զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, որ 'ի Քրիս-տոս Յիսուս. և դարձեալ՝ թէ սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել: Իսկ ցանկալի եղբայր տեառն Յակոբոս զհամօրէն իսկ զգունդս սրբոցն հանդերձ սրբասէր տերամբքն յօրինակ առեալ 'ի թղթին իւրում, ասե-լովն՝ եթէ օրինակ առէք, եղբարք, զչարչարանաց երկայնամտութեանն զմարգարէսն՝ որք խօսեցան յանուանն տեառն. զհամբերութիւնն Յոբայ լուարուք, և զկատարումն տեառն տեսէք:

Զայս և այսպիսի ինչ, և որ ինչ այսմիկ նման էին բանք, խօսէր հանապազ. զտիւ և զգիշեր ոչ դադարէր 'ի խրատելոյ և 'ի բողոքելոյ: Եւ իմաստութեամբ Հոգւոյն սրբոյ, որ բնակեալ էր 'ի նմա, ըստ ամե-նայն աւուրց իւրոց ժամանակացն ամաց կենաց իւրոց երանելին եպիս-

(Հիշեցնում էր) և Այծեմնիկին[80], նրա ողորմածությունը, այրիների որբը և թե ի՛նչպես Պետրոս մեծ (առաքյալը) կյանքից հրաժարված ու մեռածին դարձյալ կենդանություն էր բերում: «Պողոս մեծ (առաքյալն) էլ պատմում է, ասում էր, թե Հակոբոսն ու Կեփասը, բուն սյուները[81], երբ տեսան ինձ տրված մեծ շնորհը և որ ես անթլփատներին ավետարանը քարոզելու մեջ աջողություն գտա, ինչպես նրանք թլփատվածների մեջ, ինձ ավելի ևս համարձակություն տվին և համաձայնեցին, որ ես և Բառնաբաս (քարոզենք) հեթանոսների մեջ, ինչպես իրենք թլփատվածների մեջ: Միայն ինձ պատվիրեցին, ասում է, որ աղքատներին խնամք տանենք, ինչ որ ես էլ, ասում է, աշխատում էի կատարել:

Այսպես և ավելի ևս հիշեցնում էր Քրիստոսի (խոսքերը), որ նա ասաց մի մեծատան, որ բոլոր պատվիրանները կատարել էր. տերը նրան ասաց. «Բոլոր ունեցածներդ ծախի՛ր և աղքատներին տուր, և դու գանձ կգտնես երկնքում». և սրանից հետո ասաց. «Հաստ չվանը ավելի հեշտ կմտնե ասեղի ծակով՝ քան ագահ մեծատունը արքայություն». և դարձյալ, թե «ձեզ բարեկամներ ստեղծեցեք անիրավ մամոնայից», որոնք ձեզ ընդունեն հավիտենական հարկերի տակ: Կամ ինչպես ինքը Պողոսը բոլորին ստիպում է բարի գործերի նախանձավոր լինել, ասելով— «սիրո հետևեցեք, հոգևոր բաների նախանձավոր եղեք»: Նա պատմելով, թե ի՛նչպես աքայեցիք հոժարամտությամբ պատրաստվում էին որբերին Մակեդոնիայում՝ հորդորում, (լսողների) նախանձն էր շարժում, այլ և նրանց քաջալերում էր անխափան բարի՝ առաքինական գործեր կատարել, ասելով թե «լավ է միշտ նախանձել դեպի բարին»: Դարձյալ նա ձգտում էր բոլորի հետ միասին Քրիստոսի հետքով գնալ. «նայեցե՛ք», ասում է, «հավատի զորագլուխ և կատարող Հիսուսին». և դարձյալ՝ թե՝ «հիշեցե՛ք ձեր առաջնորդներին ու վերակացուներին, որոնք ձեզ կյանքի խոսքը վարդապետեցին, նայեցե՛ք նրանց ընթացքին և նմանեցե՛ք նրանց հավատին»: Եվ միանգամայն ասում էր. «Այսպես թող մտածե ձեզանից ամեն մեկը, որ հավատում է Հիսուս Քրիստոսին»: Դարձյալ ասված է. «Հիսուս սկսեց գործել և ուսուցանել»: Իսկ տիրոջ ցանկալի եղբայր Հակոբոսը իր թղթում օրինակ բերելով սրբերի բոլոր գնդերը և սրբասեր տիրոջ՝ ասում էր. «Եղբայրներ, օրինակ առեք տիրոջ անունով խոսող մարգարեների համբերությունը չարչարանքներին. լսեցե՛ք Հոբի համբերության պատմությունը, տիրոջ կատարումը տեսեք»:

Այս և սրանց նման բաներ նա շարունակ խոսում էր գիշեր և ցերեկ. չէր դադարում սովորեցնելուց և հանդիմանելուց: Եվ նրա մեջ

կոպոսապետն Հայոց Ներսէս այսպէս առ ամենեսեան զխրատ վարդապետութեանն առ հասարակ իբրև զհայր բազմագութ իբրև զմայր գթած ցուցանէր. զհոգևոր սիրոյն եռանդն ածէր առ ամենեսին, առ մեծամեծս և առ պատուականս և առ անարգս, առ հարուստս և առ աղքատս, առ ազատս և առ շինականս: Եւ զվերակացութիւնս աշխարհի ամենայն հոգաբարձութեամբ, առանց ամենայն ծուլութեան և ամենայն յապաղութեան, տանէր մինչև 'ի վախճան իւր, և ոչ երբէք ուրեք եղև նման նմա այլ ոք 'ի Հայաստան երկրին:

## Ե

### ՅԱՂԱԳՍ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՅԱՐՇԱԿԱՅ ԱՐՔԱՅԷ ԱՌԱՔԵՑԱՒ ԱՌ ՎԱՂԷՍ ԿԱՅՍՐՆ ՀԱՆԴԵՐՁ ՆԱԽԱՐԱՐՕՔՆ. ԹԷ ՎԱՍՆ ՈՐԴՈՅՆ ԿԱՅՍԵՐՆ ԶԻՆՉ ԽՕՍԵՑԱՒ ՇԱՏ ԲԱՆՍ ՀԱՒԱՏՈՅ, ԵՒ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԿԱՊԵՑԱՒ ԵՒ ԱՔՍՈՐԵՑԱՒ, ԵՒ ԶԱՅԼ ՆԱԽԱՐԱՐՍՆ ԱՐՁԱԿԵԱՑ ՀԱՆԴԵՐՁ ՊԱՏԱՐԱԳՕՔ

Ապա վասն խաղաղութեան ուխտին միաբանութեան դաշինն, որ էր աշխարհին Հայոց ընդ կայսերն Յունաց, դէպ եղև առաքել անդր կազմութեամբ մեծաւ արքային Հայոց. զի ինքնին մեծ կաթողիկոսն Հայոց Ներսէս, և 'ի մեծամեծացն Հայոց սատրապս տասն ընդ նմա առնել, զի երթիցէ. 'ի մէջ կայսերն և 'ի մէջ իւրեանց զուխտն հաւանութեան և խաղաղութեան նորոգեսցեն: Ապա չոգան գնացին հասին 'ի կայսերական պաղատն թագաւորացն Յունաց:

Զայնու ժամանակաւ թագաւորն մեծ Յունաց Վաղէս 'ի խոտորութեանն հերետիկոսութեան աղանդութեանն արիանոսաց էր 'ի հաւատս: Արդ իբրև ետես զնոսա թագաւորն, զառաջինն մեծապայծառ փառօք մեծաւ չքնով մեծարեաց զնոսա: Ապա դէպ եղև՝ զի որդի միամօր կայսերն, այն իսկ գտանէր նորա զաւակ, անգեալ դնէր յախտս սաստիկ հիւանդութեան. ապա թագաւորն վասն աղօթս առնելոյ 'ի վերայ մանկան ստիպէր զսուրբ կաթողիկոսն Հայոց զՆերսէս: Իսկ նա 'ի մէջ մատուցեալ. խօսել սկսաւ և ասէ.

Եթէ հաւատացես՝ եթէ տէր Յիսուս Քրիստոս որդի և ծնունդ աստուծոյ միածին, ինքն յինքնութենէ և իսկ յիսկութենէ, յորովայնէ հօր ծնունդ և ոչ արարած, ծագումն հօր, լոյս փառաց էականին, և նկարագիր էութեան նորա. զի այն ծնունդ է և որդի 'ի բնութենէ նորա. զի որպէս հայրն՝ նոյնպէս և որդի 'ի բնութենէ յառաջ քան զամենայն յաւիտեանս 'ի հօրէ ծնեալ, յառաջ քան զլինելն արարածոց՝ ծնունդ, գործակից արարչակից յամենայնի առ հօր 'ի

բնակած սուրբ հոգու իմաստությամբ իր կյանքի ամբողջ ժամանակ ամեն օր Հայոց երանելի Ներսես եպիսկոպոսապետը ամենքին վարդապետում խրատում էր ինչպես մի բազմագութ հայր, ինչպես մի գթած մայր, հոգևոր սիրով ոգևորում էր բոլորին— մեծամեծներին, պատվավորներին ու անարգներին, հարուստներին և աղքատներին, ազատներին, շինականներին: Եվ աշխարհի վերակացությունը ամենայն հոգատարությամբ առանց ծուլանալու և առանց հապաղելու կատարում էր մինչև իր կյանքի վերջը: Նրա նման ուրիշ մեկը չեղավ Հայոց աշխարհում:

## Ե

### ՀԱՅՈՑ ՆԵՐՍԵՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆԱ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻՑ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՎԱՂԵՍ ԿԱՅՍԵՐ ՄՈՏ, ԵՎ ԹԵ Ո՛ՐՔԱՆ ՇԱՏ ԲԱՆ ԽՈՍԵՑ ԿԱՅՍԵՐ ՈՐԴՈՒ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ԿԱՊՎԵՑ ՈՒ ԱՔՍՈՐՎԵՑ, ԻՍԿ ՄՅՈՒՍ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՆ (ՎԱՂԵՍԸ) ԱՐՁԱԿԵՑ ՆՎԵՐՆԵՐ ՏԱԼՈՎ

Ապա Հայոց աշխարհի և Հունաց կայսեր մեջ կնքված խաղաղության և միաբանության դաշինքի առիթով կարիք եղավ, որ Հայոց թագավորը Հայոց Ներսես մեծ կաթողիկոսին և Հայոց մեծամեծներից տասը սատրապ նրա հետ մեծ պատրաստությամբ ուղարկեց, որ գնան և կայսեր ու իրենց մեջ եղած համաձայնության և խաղաղության դաշինքը նորոգեն: Նրանք գնացին հասան Հունաց թագավորների կայսերական պալատը:

Այս ժամանակ Հունաց Վաղես մեծ թագավորը հավատի կողմից մոլորված՝ ընկած էր արիանոսների[82] հերետիկոսության մեջ: Արդ երբ թագավորը նրանց տեսավ՝ սկզբում մեծ փառքով ու շքեղությամբ նրանց մեծարեց: Կայսրը միամոր մի որդի ուներ, իր միակ զավակը, որ ծանր հիվանդությամբ պառկած էր: Այս թագավորն ստիպում էր Հայոց Ներսես սուրբ կաթողիկոսին, որ երեխայի վրա աղոթք անել. իսկ նա մեջտեղ գալով սկսեց խոսել և ասաց. «Եթե հավատաս, որ տեր Հիսուս Քրիստոս աստծու միածին որդին ու ծնունդն է, նրա բնությունից և իսկությունից, հոր որովայնից ծնունդ և ոչ թե արարած, հորից ծագած, էականի փառքի լույսը, նրա էության նկարագիրը, որ նա նրա բնությունից է, ծնունդն ու որդին, որովհետև ինչպես որ հայրն էր, այնպես էլ որդին նրա բնությունից, բոլոր ժամանակներից առաջ հորից ծնված, բոլոր արարածների լինելությունից առաջ, սկզբից ի վեր ամեն

սկզբանէ. զի ամենայն 'ի Հօրէ նովաւ եղեւ յերկինս եւ յերկրի. զի միշտ ընդ Հօր 'ի սկզբանէ յառնելն զամենայն արարածս, եւ 'ի բնէ եւ 'ի սկըզբանէ ընդ նմա ունէր զհամեմատ կերպարանս զիւրոյ ծնողական տպոցն նմանութեանն՝ հանգոյն զուգակցութեանն. որ 'ի սկզբանէ աշխարհի կրել զամենայն բանիւ զօրութեան, եւ իւրով բնական իշխանութեամբն վարէ ուղղէ եւ առաջնորդէ ամենայն արարածոց. որ 'ի սկզբանէն արար եւ հաստատեաց զհիմունս երկրի, եւ ձգեաց զերկինս որպէս զխորան. որոյ ձեռքն արարին եւ հաստատեցին զամենայն երեսս երկնից. որ արար զմարդն իսկ 'ի հողոյ, եւ կարգեաց զբանաւորս զխօսունս իմաստունս անձնականս: Եւ իբրեւ անձնիշխան կամօք ապականեցման մարդիկ, ոչ ծանեան զարարիչն եւ ոչ զպատուիրանս նորա, որդի 'ի բնէ 'ի սկզբանէ նստէր ընդ աջմէ Հօր, եւ աթոռակից ծնողին իւրոյ էր. իսկ իբրեւ ետես եթէ արհամարհեալ կայր հայր 'ի մարդկանէ, խաղաց եկն էջ յաջմէ աթոռոյ անտի. ամփոփեցաւ փոքրկացաւ, եւ 'ի կուսէն մարմնացաւ, մարդացաւ, եւ զանձն ունայնացոյց. եւ մարդ եղեալ, կամօք կրեալ զվիշտսն, մեռաւ եւ յարեաւ եւ կեցոյց զամենեսեան առ հասարակ. եւ վերացաւ եւ նստաւ յաթոռ իւրոյ բնութեանն, ընդ աջմէ Հօր՝ իւրոյ ծնողին:

Արդ եթէ զայս այսպէս հաւատացես թէ Քրիստոս որդի եւ ծնունդ է աստուծոյ, որովք եւ բազմօք եւ անթիւ վկայութեամբ կարեմք հանել զքեզ, եւ լուանալ զքեզ 'ի սուտ եւ 'ի պիղծ մկրտութենէ հերետիկոսութեանն հաւատոց: Եւ ընկալ դու զմկրտութիւն սրբութեանն հաւատոցն 'ի շնորհս յանուն Հօրն արարչին, եւ 'ի խոստովանութիւն ծննդեան Որդւոյն 'ի Հօրէ, որ է յառաջ քան զյաւիտեանս եւ զժամանակս, որ է ըստ բնութեանն գոյացութեան իւրոյ. եւ 'ի մարմնանալ 'ի կոյսն սուրբ, որ եղեւ 'ի վաղջան ժամանակաց, որ եղեւ վասն մերոյ փրկութեան եւ կենդանութեան. 'ի մահն եւ թաղումն նորուն Որդւոյն Յիսուսի Քրիստոսի. եւ 'ի խաղաղութիւն եւ 'ի միաբանութիւն եւ 'ի պարգեւս նորուն Հոգւոյն սրբոյ: Մկրտեաց դու 'ի սոյն յայս խորհուրդս սքանչելի կենաց բարութեան եւ նորոգութեան. եւ զմանունկն քո այսմ սրբութեանն երանութեան յուսոյ բարութեան մկրտութեանն արժանի արասցուք. եւ խնդրեսցուք 'ի Քրիստոսէ տեառնէ մերմէ, զի թողցէ զմեղս անհաւատութեան հերձուածողութեանն, եւ ողորմի. վասն որոյ ցաւք եւ տանջանք եղեն 'ի սկզբանէ եւ լինին: Այժմ ես լինիմ երաշխաւոր վասն տեառն ողորմածի՝ զի զմանունկն ողջ անարատ առաջի քո կալայց, եթէ դու յուղղափառ եկեսցես, եւ իբրեւ զայլ որթոդոքս խոստովանեսցիս ընդ մեզ:

Ապա թէ ոչ խոստովանեսցիս 'ի Քրիստոս միածին Որդին աստուծոյ, զոր նախ յառաջ քան զամենայն՝ Հայր 'ի բնութենէ իւրմէ բաւական

բանում իր հոր գործակից և արարչակից. որ ամեն ինչ երկնքում և երկրի վրա հորից իջավ նրա միջոցով. որ նա սկզբից ի վեր հոր հետ է եղել բոլոր արարածներին ստեղծելիս. ի բնե, սկզբից ի վեր նրա հետ էր և իր ծնողի տիպն ու կերպարանքը կրում էր. որ աշխարհի սկզբից ի վեր իր խոսքի զորությամբ և իր բնական իշխանությամբ կառավարում է, ուղղություն է տալիս, առաջնորդում է բոլոր արարածներին. որ սկզբից ստեղծեց և երկրի հիմքը ձգեց, երկինքը վրանի նման տարածեց (նրա վրա), որի ձեռքերն ստեղծեցին ու հաստատեցին երկնքի բոլոր տարածությունը, որ և մարդուն ստեղծեց հողից իբրև բանավոր, խոսուն, իմաստուն և ազատ կամքով: Եվ երբ մարդիկ իրենց անձնիշխան կամքով ապականվեցին, արարչին ու նրա պատվիրանները մոռացան՝ ապա նրա որդին, որ սկզբից ի վեր նստում էր հոր աջ կողմը և իր ծնողի աթոռակիցն էր, երբ տեսավ որ հայրը արհամարհված է մարդկանցից՝ վեր կացավ աջակողմի աթոռից, փոքրացավ, ամփոփվեց, կույսից մարմնացավ, մարդացավ, ինքն իրեն նվաստացրեց, մարդ դարձավ, իր կամքով վշտեր կրեց, մեռավ և հարություն առավ, բոլորին առհասարակ կյանք պարգևեց, (երկինք) վերացավ և նստեց իր բնական աթոռը՝ իր ծնողի՝ հոր աջ կողմը:

Արդ՝ երբ դու այսպես հավատաս, թե Քրիստոս աստծու ծնունդն ու որդին է, որի մեջ քեզ կարող ենք համոզել անթիվ վկայություններով և քեզ լվալ ու մաքրել հերետիկոսական հավատի սուտ և պիղծ մկրտությունից: Ընդունիր դու սուրբ հավատի մկրտությունը արարիչ հոր անունով և խոստովանելով որդու ծնվելը հորից բոլոր ժամանակներից առաջ, ըստ իր բնական գոյացության, և մարմնանալը սուրբ կույսից վերջին ժամանակներում, որ եղավ մեր փրկության և կենդանության համար. նույն որդու՝ Հիսուս Քրիստոսի մահն ու թաղումը, խաղաղությունը և միաբանությունը և սուրբ հոգու պարգևները.— ապա մկրտվի՛ր դու կյանքի նորոգության, թողության այս սքանչելի խորհուրդների անունով՝ ապա քո երեխային էլ կարժանացնենք այս սուրբ՝ երանության, հույսի և մեղսաքավիչ մկրտության, և կխնդրենք մեր տեր Քրիստոսից, որ ների ձեր հերձվածող անհավատության մեղքերն ու ողորմի, որոնց պատճառով էլ սկզբից ևեթ ցավերն եղել են ու լինում են: Եվ ես երաշխավոր եմ ողորմած տիրոջ կողմից, որ երեխայիդ ողջ ու անարատ կկանգնեցնեմ քո առաջ՝ եթե ուղղափառության գաս և մեզ հետ իբրև ուղղափառ դավանես:

Իսկ եթե չդավանես աստծու միածին որդի Քրիստոսին, որին ամեն բանից առաջ հայրը ծնեց իր կարող հայրական էությունից, իբրև

իւրոյ բնութեան հայրութեանն ծնաւ ծնունդ կատարեալ միածին, նոյն նման զուգակից և աթոռակից և արարչակից. որ վասն սիրոյն նորա սիրեաց զմեզ, առ սէր մեր առաքեցաւ 'ի Հօրէ 'ի կոյսն սուրբ Մարիամ, և երևեցաւ մարդ 'ի կնոջէ այն՝ որ նման էր բնութեան իւրոյ ծնողին, և 'ի բնութենէ ունէր զբնութիւն Հօրն իւրոյ, մարմնովն վասն մեր եղև իւրովք կամօք 'ի կերպարանս ծառայի: Եւ քանզի անկան մարդիկ ինքնակամ կամօք 'ի ծառայութիւն, արդ ինքն տէր եղև 'ի կերպարանս ծառայութեանն, զի 'ի ծառայութենէ ազատեսցէ զմեզ: Զի 'ի սկզբանէն յորժամ առնէր աստուած զարարածս, յետուստ արար զմարդն՝ յերևոյթ և յաներևոյթ իւրոյ զօրութեանցն 'ի մի և նոյն ժողովեալ. և այսպէս զամենայն 'ի նոյն պնդեալ ձուլեաց զարարածս, զոր և ըստ նմանութեան պատկերի կերպարանաց իւրոց արար. և եդ զնա իշխան անձնիշխան իւրոց կամաց: Վասն որոյ նախանձու սատանայի ապականեալք հնացան 'ի բանսարկութիւն խարդախութեան պատրանացն: Իսկ տէր եկն յայց ելեալ կորստականին, ծնաւ 'ի կուսէն 'ի մարդկան կերպարանս, զի արասցէ խաղաղութիւն յերկինս և յերկրի, և ածցէ զիւր հայրն ծնօղ 'ի հաշտութիւն ընդ արարածս իւր՝ մարդակերպ պատկերաւն, զի յանդիման լիցին ամենայն մերձեալ արարածքն աներևոյթն աստուծոյ:

Ապա յիրաւի ուրեմն 'ի նորոգման արարածոց, զամենայն վերստին նորոգէ, զի եթէ իցէ ոք 'ի Քրիստոս, նոր արարած: Զի այն, որ հինն էր, էանց. արդ աւասիկ եղև նոր ամենայն. զի եկն էառ զմարդկան կերպարանս, և ինքեամբ դարձեալ զամենայն նորոգեալ հաստատեաց: Ինքն եղև օրինակ մերոյ կենդանութեանս, անդրանիկ ամենայնի մեռելոցն՝ մեռանելովն. և նախ 'ի մեռելոցն յարութեամբն, զի յայտնի արասցէ ինքեամբ զամենայն. զի զմեզ առանց փոխման արասցէ հոգւով, և անմահ մարմնով. զի մի՛ միայն մարդիկ յանփոփոխումն հոգւոյն կայեսցուք, այլ յանմահութիւն մարմնոյն. զի և աներևոյթքն դարձեալ և բանաւոր զօրութիւնքն ամենայն անփոփոխմանս այսմիկ ընդ մեզ ակն կալցին: «Քանզի ամենայն արարածք ազատեսցին 'ի ծառայութենէ անտի ապականութեան յազատութիւն փառաց Որդւոյն աստուծոյ»: Զի առ այն, ասեն, որ 'ի մէնջ 'ի կուսէ անտի մարդ ծնաւ աստուածն, որ մեք աստի առ ժամայն 'ի հաստատութենէն թօթափեալք, և հանդերձեալ ժամանակին 'ի լաւագոյնսն հասեալք ամենեքին, հայեցեալք սպասեալք ակն ունիմք 'ի սկզբանէն յարարիչն և յառաջնորդն նորոց արարածոց: Քանզի ծնունդ և կերպարանք է նա աներևոյթին աստուծոյ, միածին ծնունդ Հօր, արարիչ ամենայն արարածոց. ուստի և զհանգամանսն թարգմանեալ, ածէ թափէ Առաքեալ միանգամայն և ասէ՝

կատարյալ միածին ծնունդ, նույնանման զուգակից, անվանակից և արարչակից. նա նրա սիրո համար սիրեց և մեզ: Մեր նկատմամբ (տածած) սիրո համար նա հորից ուղարկվեց սուրբ կույս Մարիամի մոտ և այն կնոջից երևան եկավ իբրև մարդ: Նա էությամբ նման էր իր ծնողին և բնականորեն ուներ իր հոր բուն կերպարանքը ու մարմնով մեզ համար իր կամքով ծառայի կերպարանքով հանդես եկավ: Եվ որովհետև մարդիկ ինքնակամ մտան ծառայության մեջ, ուստի ինքը ծառայի կերպարանքով տեր դարձավ, որպեսզի մեզ ծառայությունից ազատի: Երբ աստված սկզբում ստեղծում էր արարածներ, հետո ստեղծեց մարդուն՝ իր աներևույթ և երևացող զորություններով ի մի հավաքելով. և այսպես ամեն ինչ նույն ձևով հաստատելով համախմբեց արարածներին (և մարդուն), որին ստեղծեց իր պատկերի ու կերպարանքի համաձայն և նրան դարձրեց իր կամքի տերը: Սակայն սատանայի նախանձով, խաբեական խարդախ բանսարկությամբ (մարդը) փչացավ: Իսկ տերը եկավ խղճալու կործողին, ծնվեց կույսից մարդու կերպարանքով, որպեսզի երկնքում ու երկրում խաղաղություն հաստատի և իր ծնող հորը հաշտեցնի նրա մարդակերպ պատկերն ունեցող արարածների հետ, որպեսզի բոլոր մերժված արարածները ներկայանան աներևույթ աստծուն, ուստի իրավացիորեն արարածներին նորոգելիս բոլորին կրկին նորոգում է, որպեսզի ով հավատա Քրիստոսին, նորոգված արարած լինի. ինչ հին էր, անցավ, իսկ այժմ ահա ամեն ինչ նորոգվեց, որովհետև (Քրիստոսը) մարդկանց կերպարանք առավ և իրենով դարձյալ ամեն բան նորոգեց, հաստատեց: Ինքն եղավ մեր կենդանության օրինակը, մեռնելով դարձավ բոլոր մեռելներից անդրանիկը և իր հարությամբ առաջինը, որ իրենով ամեն ինչ հայտնի դարձավ, որպեսզի մեզ ստեղծի անփոփոխ հոգով ու անմահ մարմնով, որպեսզի մենք՝ մարդիկս, միմիայն հոգու անփոփոխությամբ չապրենք, այլև՝ մարմնի անմահությամբ, որ բոլոր աներևույթ ու բանական զորությունները մեզ հետ հույս ունենան այս անփոփոխության. «Որովհետև բոլոր արարածները կազատվեն ապականության ենթարկվելուց՝ աստծու որդու փառքի ազատության համար»: Նրա համար,— ասում են,— այն կույսից, որ մեզնից էր, աստված ծնվեց իբրև մարդ, որ մենք այս աշխարհի այժմյան կյանքից ազատվելով՝ ամենքս հանդերձյալ կյանքի լավ բաներին հասնելով՝ սկզբից հուսալով նայում ենք արարչին՝ նոր արարածների առաջնորդին: Նա աներևույթ աստծու ծնունդն ու կերպարանքն է, հոր միածին ծնունդը և բոլոր արարածների արարիչը: Այստեղից էլ առաքյալը հանգամանքները վերարտադրելով՝ միաժամանակ ասում է՝

թէ «Նովաւ հաստատեցան ամենայն որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի, եթէ երևելիք և եթէ աներևոյթք, եթէ աթոռք, եթէ տէրութիւնք, եթէ իշխանութիւնք, եթէ պետութիւնք, եթէ զօրութիւնք»: Եւ խոնարհագոյն յայտնագոյն առնէր զասացեալսն. «Զի ինքն է անդրանիկ ՚ի մեռելոց զի եղիցի յամենայնի ինքն յառաջացեալ. զի նմա հաճեցաւ ամենայն լրութիւն բնակել, և կամ նովաւ կատարել զամենայն, զի արարցէ խաղաղութիւն արեամբ խաչին իւրով, նովաւ այն որ ինչ յերկինս, և որ ինչ յերկրի»: Զի չարչարանօք տեառն Քրիստոսի միածնի Որդւոյն աստուծոյ, ամենայն ՚ի նոյն ժողովեցաւ որ յերկինս և որ յերկրի:

Քանզի մեծութիւն աստուծոյ արար զամենայն, և կացոյց զմարդն տէր ամենայնի. հրամայեաց և բազմացան: Ապա կացոյց իշխանս և կարգեաց առաջնորդս: Իսկ յորժամ ՚ի պատուիրանաւանդութիւնն գործեցին առ զամ մի, անկան յիշխանութենէ, զոր առեալ յառաջն ունէին: Իսկ յերկրորդին՝ լոկ միայն վասն կարօտութեանն պիտոյից եւ իմիք իշխել, և իմիք չիշխել. զի զոնեա ապա յետոյ յետուստ իշխելովն ծանիցուք զշնորհն, և չիշխելովն զամենատեառնն տէրութիւնն գիտասցուք: Իսկ ո՞վ իցէ, որ ոչ ցանգանայ մեծութեանն և կամ մարմնոյ առողջութեանն, և կամ կամարարութեանն կարօտիցի, որ միայն միում միածնի Որդւոյն աստուծոյ վայել է: Իսկ մարդկանն, ոչ առ ամենեսին մեծութիւնն, և ոչ առ բնաւ աղքատութիւնն և ոչ միշտ մեծք, և ոչ ՚ի սպառ աղքատք, կամաւ մեծացեալք և կամաւ աղքատացեալք: Ոմանց ծնեալ, և ոչ սնուցեալ. ՚ի չափ հասուցեալ, և անարգեալ թշնամանօք: Ո՞վ իցէ, որ սիրեաց զհիւանդութիւնն և ատեաց զառողջութիւնս. յամենայնի պակասեալք, և ոչ կարօտեալք: Կէսք ՚ի կռապաշտութեան և ՚ի սպանութիւնս, ՚ի պոռնկութեան և ՚ի բազմազգի չարիք կաշկանդեալք զմածեալ կան. կէսք մոլորեալք և դանդաշունս մտօք ընդ պատահարօք[18] կապեն զամենայն, եթէ զբարի և եթէ զչար:

Իսկ յորս արեգակն արդարութեան զլուսաւորութիւն հաւատոցն ծագէ, և զմէգ տգիտութեանն խաւարին սնութեամբն հալածէ, նոքա հանապազ յանդիմանեն զստութիւնս և զմոլորութիւնս: Եւ նախ իբրև գործովք և օրինակ բարեաց յանձինս ցուցանելով, և ապա զայլս ուսուցանելով զնոյն. նախ ոչ երկմտելով ՚ի հաւատոցն յերրորդութենէն զօրութեան արարչութեանն, և ապա զանձինս սրբութեամբ և զգաստութեամբ և պարկեշտութեամբ պահել յաշխարհէ: Եւ կեալ ամենայն հանդարտութեամբ ըստ կամացն Քրիստոսի, մերոյ արարչին, Որդւոյն աստուծոյ. և արհամարհել կոխել զամենայն անցաւորս, և վերամբարձ ՚ի թևս սուրբ Հոգւոյն թռչել անցանել ՚ի վերայ ազբախումբ զօրութեանցըս՝ որ աստէն առ մեզ պատաղիչք. և այնչափ խորշել և մերժել ե

«Նրանով հաստատվեցին այն բոլորը, ինչ որ երկնքում ու երկրում են. թե երևացողները, թե աներևույթները, թե տերություններն ու իշխանությունները, թե զորությունները»: Եվ քիչ հետո ավելի է պարզում ասածները. «Մեռելներից ինքը եղավ անդրանիկը, որ ամենքի մեջ ինքն առաջացած լինի, որովհետև Նրան հաճելի եղավ ամենուրեք լրիվ բնակվելը և Նրանով ամեն ինչ կատարելը, որ խաղաղություն հաստատի իր խաչով ու արյունով. Նրանով է այն, ինչ երկնքում և երկրում է»: Որովհետև աստծու միածին որդի տեր Քրիստոսի չարչարանքներով երկնքում ու երկրում եղած ամեն բան ի մի հավաքվեց. որովհետև աստծու մեծությունն ստեղծեց ամեն ինչ և մարդուն դարձրեց ամեն ինչի տերը. հրամայեց, և բազմացան: Ապա իշխաններ նշանակեց և առաջնորդներ կարգեց: Իսկ երբ մի անգամ պատվիրանազանց եղան, իշխանությունից զրկվեցին, որ ստացել և առաջուց ունեին ու երկրորդ անգամ միայն կարիքների համար թույլ տվեց ոմանց իշխել, ոմանց չիշխել, որպեսզի գոնե հետո իշխելով ճանաչենք շնորհը և չիշխելով ամենատիրով իշխանությունը գիտակցենք: Իսկ ո՞վ է, որ չի ձգտում մեծության, մարմնի առողջության և կամ կարիք չզգա կամակատարության, որ վայել է միայն աստծու միածին որդուն, իսկ բոլոր մարդկանց հավասարապես հատուկ չէ ո՛չ մեծությունը և ոչ էլ բուն աղքատությունը: Ոմանք ձըգվում են, բայց չեն սնվում, չափահաս են դառնում անարգվելով հայհոյանքներով: Ո՞վ է, որ սիրում է հիվանդությունը և ատում առողջությունը, ամեն բանի պակասություն ունի, բայց չի կարոտում: Մի մասը կռապաշտության ու սպանության մեջ, մի մասը պոռնկության ու բազմատեսակ չարիքների մեջ կաշկանդված, կապված են մնացել. ոմանք մոլորված, ցնորական մտքերով, խաբեությամբ կաշկանդում են ամեն ինչ, թե՛ բարին, թե՛ չարը:

Իսկ որոնց վրա արդար արեգակը սփռում է իր հավատի լույսը և ցրում խավարի, տգիտության սև մառախուղը, նրանք մշտապես անարգում են սուտն ու մոլորությունը՝ նախ իրենց գործերով ու բարի օրինակով և ապա ուրիշներին նույնը սովորեցնելով, նախ չկասկածելով արարչության զորության երրորդության հավատին, ապա սրբությամբ, զգաստությամբ և պարկեշտությամբ իրենց աշխարհիկ բաներից զերծ պահելով, ապրում են լրիվ հանգստությամբ մեր արարիչ աստծու որդի Քրիստոսի կամքով և արհամարհում, ոտնատակ են տալիս բոլոր անցավոր բաները և սուրբ հոգու թևերով բարձրասլաց թռչում են, անցնում խաժամուժ խմբերի վրայով, որոնք այս աշխարհում, մեր օրերում խանգարիչներ են: Նրանք խորշելով մերժում են անհարկի բաները

յանպիտոյիցս, մինչև զկերակուրս տուրն ոռնկին արհամարհել, թող թէ զմիս կամ զգինի ճաշակել, որ զնախնամէջ պարն յուղացուցեալ մանկացուցանէ և զնարպն և զերիկամամքն պատեալ. ուստի բոյր և ազգի ազգի ելանեն անթիւ անօրէնութիւնքն: Որ տայ այնպիսեացն, որ զայն սիրեն, ապա գնալն ըստ կամս անձանց իւրեանց:

Այլ մեզ ընդ այսր լիցի վայել ’ի շնորհս մարդասիրութեանն, յոր ամենայն ազգ և ազինք խոստովանին զտէր Յիսուս Քրիստոս ծնեալ ’ի Հօրէ, ծնեալ և ոչ արարեալ, իսկակից հօր և բնակից ծնօղին իւրում. ծագումն, լոյս փառաց Հօր, կերպարանակից իւրոյ ծնօղին: Եւ որոց իցեն աչք մտաց, և չեն կուրացեալ ’ի հաւատոցն ճշմարտութենէն, նոցա նայելիս ցուցանէ, որոց ամենայն կողմանքն հայելիք են: Լի լուսով նորա է ամենայն երկինք և երկիր և ամենայն աշխարհք, և ամենեցուն լսելիս որոշի՝ որ ամենայնիւն լսելիք են. և ամենայն ծածկեալք սրտից և խորհրդոց մտանեն ’ի լսելիս նորա, և զննէ զամենայն շունչս մարմնոյ: Եւ իւրովք կամօք երևեցաւ մարմնով հասակաւ անձամբ կերպարանօք և պատկերաւ, զբութիւնքն իւր արարին. և ոյք սիրեն զնա, սէրն իւրեանց կերպարանէ զնա ’ի սիրտս իւրեանց, և երկիր պագանեն նմա հոգւովն ճշմարտութեամբ. սրբեալ զսիրտս իւրեանց և զմարմինս իւրեանց, առնեն տաճար սուրբ Հոգւոյն. և հաղորդք և հաւասարորդք և բաժանորդք առնին մեր երանութեանս, զոր ետն տէր և ասէ՝ եթէ «Երանի՛ որ հաւատայցեն ճշմարտութեանն». եթէ «Որ ետեսն զիս, ետես զՀայրն իմ». և եթէ «Երանի՛ որ ոչն տեսին զիս, և հաւատացեն յիս. զի նոքա զՀայր տեսցեն»: Եւ միտք՝ որ յաստուածատեսութենէն հաւատոցն անմասն եղեալ են, ’ի կերպարանացն թափուր և ունայն իբրև ախերակք[19]:

Իսկ որք լուսաւորեալք են տեսանելեաց աներևոյթ սրտին աչօք, որպէս ասէ մարգարէն. «Ի քեզ ասաց սիրտ իմ, և խնդրեցին երեսք իմ զերեսս քո». դարձեալ ասէ. «Եղի զտէր առաջի իմ յամենայն ժամ, զի էր ընդ աջմէ իմմէ, զի մի՛ սասանեցայց». և դարձեալ ասէ. «Ուրախ եղէց յուրախութիւն երեսաց քոց»: Ոյք այժմ ’ի ծածուկ լուսաւորութենէն խորհրդովքն տեսանէին զնա ըստ նորա կամացն, ապա ’ի վաղնանի դէմ յանդիման երևեսցի. որպէս երանելի Առաքեալն Պօղոս ասէ՝ եթէ այժմ ընդ հայելի օրինակաւ տեսանեմք, իսկ յապա առ յապա յորժամ զայցէ՝ բերիցէ ինքն տալ մեզ զիւրոց փառացն զանմահութիւնն և զանեղծութիւն. և յորժամ առանց նմանութեանցն և առակացն զայցէ երևեալ Որդի Հօր և սուրբ Հոգւովն, յորժամ հրամայեսցեն ամենեցուն՝ եկեալ անմահութեամբքն՝ որք զաստուածն տեսանիցեն առաւել առ բազմացն արժանեացն ակնկալութեամբ, կամի երևեցուցանել զփառաւոր զգա-

այն աստիճան, որ մինչև անգամ օրվա կերակուրը, ապրուստը արհամարհում են, ո՞ւր մնաց, թե միսը կամ գինին ճաշակեն, որոնք որովայնը պարուրում ու երիկամները ճարպով պատում են. դրանից բազմատեսակ անօրինություններ են ծագում: Դրանք տրվում են այնպիսիներին, որոնք սիրում և վարվում են ըստ իրենց կամքի: Դրա փոխարեն մենք վայելենք շնորհները մարդասիրական բարերարության, որով բոլոր ժողովուրդներն ու ցեղերը հավատում են հորից ծնված տեր Հիսուս Քրիստոսին՝ ծնվա՛ծ և ոչ ստեղծված, որը էակից ու բնակից է իր հորը՝ ծնողին: Նա հոր փառքի լույսի սփռումն է, կերպարանքով նման իր ծնողին: Որոնց մտքի աչք ունեն և ճշմարիտ հավատից կուրացած չեն, նրանց նայելու բաներ է ցույց տալիս, որոնք կան նրանց բոլոր կողմերում: Նրա լույսով են լցված երկինքը, երկիրը և ամբողջ տիեզերքը: Բոլորի համար լսելու բաներ է սահմանում, որ ամեն բանով լսվում են: Սրտերի և մտքերի բոլոր գաղտնիքները բացահայտում են նրա ականջները, և նա զննում է մարմնի ամբողջ շունչն ու հոգին: Նա կամովին հայտնվեց մարմնով, հասակով, կերպարանքով ու պատկերով: Իր գրություններն ստեղծեցին: Նրան սիրողների սրտում այդ սերը կերպարանում է նրան: Նրանք երկրպագում են նրան ճշմարիտ հոգով. մաքրելով իրենց սրտերն ու մարմինները՝ տաճար են շինում սուրբ հոգու համար և հավասարապես հաղորդակից են դառնում մեր երանությանը, որը տերը տվեց և ասաց. «Երանի նրանց, որոնք հավատում են ճշմարտությանը», կամ՝ «նրան, ով տեսավ ինձ և իմ հորը» կամ՝ «երանի նրանց, որոնք չտեսան ինձ, բայց հավատում են ինձ, որովհետև հորն են տեսնում»: Եվ այն մտքերը, որոնք աստվածային հավատը չեն ճանաչում, կերպարանքից զուրկ են, դատարկ, ինչպես ավերակ, իսկ հավատացյալները լուսավորված են սրտի աներևույթ աչքերով, ինչպես ասում է մարգարեն՝ «Քեզ ասաց իմ սիրտը, իսկ իմ դեմքը որոնեց քո դեմքը». կրկին ասում է՝ «Դրեցի տիրոջն իմ առաջ ամեն ժամանակ, որ իմ աջ կողմում էր, որպեսզի չսասանվեմ». և կրկին ասում է՝ «Քո դեմքի ուրախությամբ ուրախ կլինեմ»: Որոնք այժմ հավատի աներևույթ լույսով ըստ նրա կամքի տեսնում եմ նրան, մեռնելիս դեմ հանդիման կերևա, ինչպես երանելի Պողոս առաքյալն է ասում, թե այժմ տեսանելի օրինակով ենք տեսնում, հետագայում, երբ կգա, ինքը կբերի մեզ տալու իր փառքի անմահությունն ու անաղարտությունը: Երբ ոչ ըստ օրինակների ու խոսքերի գա ու հայտնվի հոր որդին, սուրբ հոգով, հրամայի, որ գան անմահությամբ աստծուն տեսնելու նրանք, որոնց բազմաթիվ արժանիքների ակնկալություն ունեն-կամենում է իր փառավոր գալուստը ցույց տալ, ինչպես երկար համբերողներին, հուսալով

լուսոն իւր, որպէս վասն երկայնամտութեանն համբերողացն և յուսա-
լից սպասելոցն գայցէ երևեալ Քրիստոս ծնունդ աստուծոյ Հօր: Որ ամե-
նայն արդարոցն գայ պարգևատուն վասն վկայելոյն 'ի հաւատոց ան-
տի: Որոց չև ընկալեալ զաւետիսն, աստուծոյ վասն մեր լաւագոյն խոր-
հեալ՝ զի մի՛ առանց մեր կատարեսցին: Զի եթէ քննեսցէ ոք զգիրս
սուրբս, յամենայն աստուածաշունչ մատեանսն զոյն և զաստուածեղէն
յաճախութիւն հոգևոր պատգամացն գտանէ ոք. վասն զի կան պահին
արդարոցն և հաւատացելոցն լուսաւորք և թագքն արքայութեանն յա-
ւիտենից ժամանակին, և թերահաւատիցն ժխտողացն և անհնազանդիցն
ժպրհութեանն պատիժք, ճարակ լինել նոցա անշէջ հրոյն յաւիտենից դա-
տաստանին յանուն տեառն, յանսպառ յանսահման առանց թուոյ և
առանց չափոյ ժամանակն տանջանաց գեհեննին, խաւարին դատաս-
տանին՝ որ գալոցն է:

Այլ վասն որդւոյն քո, եթէ դու 'ի ճշմարիտ հաւատս ուղղութեան
եկեսցես, խնդրեսցուք 'ի տեառնէ և դիցուք զձեռս մեր 'ի վերայ նո-
րա, և ասասցուք՝ թէ ըստ հաւատոցն ձերոց բժշկէ զսա Քրիստոս ծնունդ
աստուծոյ, և բարեմիտ ողջանդամ յարիցէ նա առաջի քո. և հանդերձ
արքայութեանն նորոգութեանն անմահութեանն յաւէրժ բարեաց ևս ար-
ժանի արասցէ զձեզ: Ապա եթէ ոչ հաւատասցես, զիա՞րդ արդեւք լինիցի
թողութիւն և բժշկութիւն. և կամ մեք զիա՞րդ արդեւք իշխիցեմք յան-
դիմանել կամ համարձակել և խնդրել, և կամ առնել աղօթս վա-
սըն այնոցիկ՝ որք բնաւ իսկ ոչ ճանաչէին զտէր, զի բարկու-
թիւնք տեառն վախճանէ զայնոսիկ՝ որք ոչ ուղղութեամբ զտէր խոստո-
վանին. և կամ որ ոչն մարթիցէք խնդրել զնա, որք ոչ հաւատայք զի-
տութեան պատուիրանացն նորա, և ոչ 'ի միտ առնուլ զօրէնս նորա:
«Զի օրէնք տեառն ամբիծ են, դարձուցանեն զոգիս. վկայութիւն տեառն
հաւատարիմ է, իմաստուն առնէ զտղայս: Արդարութիւն տեառն ուրախ
առնէ զսիրտս. պատուիրանք տեառն լոյս են, և լոյս տան աչաց. եր-
կիւղ տեառն սուրբ է, և մնայ յաւիտեան: Դատաստանք տեառն ճշմարիտ
են, և արդար է 'ի նոյն. ցանկալի է նա քան զոսկի, և քան զականս
պատուականս բազումս. և քաղցր է նա քան զմեղու խորիսխ»: Իսկ որոց
զանձինս իւրեանց յապականութիւն տուեալ, և նիւթ հրոյ պահէ զնոսա:
«Ոչ են բանք և ոչ են խօսք, որոց ոչ լսին ձայնք նոցա. այլ նոցա ընդ
ամենայն երկիր ել բարբառն, և մինչև 'ի ծագս տիեզերաց են խօսք
նոցա»: Իսկ որք ոչն լսենն, և որք լսենն, պահէ նոցա տէր զհատուցումն
նորա:

Զայս ամենայն բանս, և որ ինչ այսմ և սմին ինչ նման էին բանք,
խօսեցաւ սուրբն Ներսէս ընդ կայսերն. և զայն յաւել՝ եթէ յորէ յայս-

սպասողներին, կգա և կհայտնվի նոր՝ աստծու ծնունդ Քրիստոսը, որը գալիս է պարգև տալու արդարներին՝ հավատի պատճառով նահատակվելու համար: Իսկ որոնք որ դեռ չեն ընդունել հավատը, աստված բարվոք մտածեց, որ նրանք էլ առանց մեզ հետ լինելու չմեռնեն: Քանի որ երբ մեկը ուսումնասիրի սուրբ գրքերը ամբողջ Աստվածաշունչ մատյաններում, այսպիսի շատ պատգամներ կգտնի. արդարների և հավատացյալների համար հավիտենապես պահվում են լուսատուներ ու արքայության թագեր, իսկ թերահավատների, մերժողների, անհնազանդների համար՝ դաժան պատիժներ, նրանք ճարակ կլինեն հավիտենական դատաստանի անշեջ կրակին՝ հանուն տիրոջ, անսպառ անսահման, անթիվ, անչափ ժամանակ (կենթարկվեն) գեհենի տանջանքներին, խավար դատաստանին, որ գալու է:

Իսկ ինչ վերաբերում է քո որդուն, երբ դու ճշմարիտ ուղղափառ հավատի դառնաս՝ մենք տերից կխնդրենք, մեր ձեռքը նրա վրա կդնենք և կասենք.—ձեր հավատի համաձայն բժշկում է սրան Քրիստոս, աստծու ծնունդը, և նա ողջ առողջ վեր կկենա կկանգնի քո առաջ, և ուրիշ շատ բարիքների էլ ձեզ կարժանացնե և հավիտենական նորոգ կյանքի արքայության կհասցնե:

Իսկ եթե չես հավատա՝ ի՞նչպես կարող է թողություն ու բժշկություն լինել, և կամ մենք ի՞նչպես կհամարձակինք նրա առաջ դուրս գալ, խնդրել և աղոթք անել այնպիսիների համար, որոնք բնավ չեն ճանաչում տիրոջը, որովհետև տիրոջ բարկությունը սպասում է նրանց, որոնք տիրոջը ուղիղ չեն խոստովանում: Դուք էլ չեք կարողանա խնդրել, քանի որ չեք հավատում և չեք ուզում գիտենալ նրա պատվիրանները, չեք հասկանում նրա օրենքները, «որովհետև տիրոջ օրենքներն անբիծ են, հոգիները ետ են դարձնում. տիրոջ վկայությունը հաստատուն է և երեխաներին իմաստնացնում է: Տիրոջ արդարությունը սըրտերն ուրախացնում է. տիրոջ պատվիրանները լույս են և աչքերին լույս են տալիս, տիրոջ երկյուղը սուրբ է և հավիտյան կմնա: Տիրոջ դատաստանը ճշմարիտ է և արդար. նա ավելի ցանկալի է քան ոսկին և շատ թանկագին քարեր, ավելի քաղցր է քան մեղրի խորիսխը»: Իսկ որոնք որ ապականության անձնատուր են լինում՝ նրանց (տերը) պահում է ինչպես կրակի նյութ: «Չկան բառեր ու խոսքեր, որոնց ձայնը չլսվի, իսկ նրանց ձայնը ամբողջ երկրում տարածվեց, որոնց խոսքերը մինչև տիեզերքի ծայրերը հասան»: Իսկ որոնք որ չեն լսում և որոնք որ լսում են՝ նրանց համար տերը պահում է հատուցում»:

Բոլոր այս խոսքերը և սրանց նման էլի ուրիշ խոսքեր խոսեց սուրբ Ներսեսը կայսեր հետ. այն էլ ավելացրեց, թե «այս օրվանից հաշված

մանէ ինչ յաւուրս հնգետասան վասն ողորմածութեան բարերարութեանն վասն ներելոյն անսացեալ քեզ, կէտ ժամանակաց այնչափ աւուրց անսացեալ քեզ, եթէ ոչ ուղիղ եկեսցես 'ի հաւատսն, նշան քեզ այս լիցի. որ մինչև յայն օր 'ի հաւատսն ոչ հաստատեսցիս, յետ լնլոյ եղեալ կիտին՝ մեռցի մանուկն. զի գիտասցես եթէ հաւատարիմ է այս ամենայն, զոր խօսեցայ առաջի քո:

Եւ իբրև լուաւ թագաւորն զայս ամենայն, զի մինչ դեռ խօսէրն առաջի նորա՝ նա լուռ ևեթ կայր, ոտն զոտամբ արկեալ, արմունկն 'ի ծնունդ և ձեռն 'ի ծնօտի՝ նստաւ այնպէս, մինչև կատարեաց խօսեցաւ զամենայն զբանս իւր: Եւ գրէին զայս սեմիարք նոտարացի արքային, որք կային առաջի թագաւորին: Ապա մեծապէս 'ի ցասումն բրդեալ լինէր թագաւորն, և տայր հրաման՝ երկաթի կապանօք մեծապէս կապել զսուրբ եպիսկոպոսապետն Հայոց զՆերսէս և արկանել 'ի փիւղակէ. զի մինչև տեսեալ ուշ ունիցի մանզանն, եթէ կեցցէ՞ եթէ ոչ. ապա յետ այնորիկ տեսցէ զինչ արժան իցէ առնել: Ապա յետ լնուլ աւուրցն հնգետասանիցն անցելոցն, սատակեցաւ մանուկն որդի կայսերն. և ընդ ամենայն այն ժառանգ գտանէր նորա: Իբրև ելաց և կոծեցաւ որչափ կոծեալն էր, ապա ետ հրաման և ածին առաջի իւր զսուրբն Ներսէս: Մօտ առ ինքն կոչեալ հարցանէր, եթէ 'ի ձէ՞նջ քրիստոնէից եղև մանկանն մեռանել: Իսկ նա ետ պատասխանի, և ասէ. Հնգետասան օր յետ բանիցն եղելոյ երկարեաց Քրիստոս, թերևս դարձջիք. իսկ իբրև ոչ դարձայք, սատակեցայք: Իսկ դու այժմ եթէ հաւատասցես, կարող է Որդին աստուծոյ Յիսուս Քրիստոս յարուցանել զնա, և հանդերձ որդւովն քո և ամենայն ընդանեօքն:

Ապա զայրացեալ ընդ բանսն թագաւորն, կամեցաւ զնա չարամահ առնել. ապա մատուցեալք առ թագաւորն աւագք իւրոյ դրանն և խորհրդականք, և ասեն ցկայսրն՝ եթէ յօտար և 'ի հեռաստան երկրէ վասն որոյ յղեալ զդոսա հզօր թագաւորի, և մեծի տեառն հրեշտակք են, մի՛ ինչ լիցի դոցա վնաս 'ի մէնջ. եթէ ոչ, մեծ պատերազմ յառնելոց է ընդ մեզ և ընդ մեծ թագաւորն Հայոց, և մեծ թշնամութիւն 'ի մէջ անզանելոց է. զի ոչ եթէ նորա բանիւ մանուկն կեայր կամ մեռանէր: Եւ թէպէտ այսպիսի բազում ինչ ասէին, ոչ կարէին զսրտմտութիւն բարկութեանն շիջուցանել զթագաւորի:

Ապա իբրև յանհնարին մտանէին իրքն, և պնդեալ յամառէին ամենայն բազմութիւնքն՝ զի մի՛ զայրն սպանցէ, ապա ուրեմն հազիւ հազիւ կարացին իւր զօրքն 'ի հաւան ածել զթագաւորն. այնչափ առնել, զոնեա մի՛ սպանցէ: Բայց սակայն արձակել տալ ոչ կարացին. այլ արկին յայն չափս, զի աքսորեսցի միայն: Զի այսպէս մեծապէս ճգնեալ խոր-

մինչև տասնհինգ օր (տերը) իր ողորմածության ու բարերարության պատճառով ներողամտաբար կսպասե, այսքան օր քեզ ժամանակ կտա, կհամբերե, որպեսզի ուղիղ հավատի գաս: Սա քեզ նշան լինի, որ եթե մինչև այն օրը հավատի մեջ չհաստատվիս՝ ժամկետը լրանալուց հետո երեխան կմեռնի, որպեսզի համոզվիս, որ ինչ որ քեզ հետ խոսեցա՝ ճշմարիտ է»[83]:

Մինչ նա այս բաները խոսում էր՝ թագավորը բոլորը լուռ լսում էր, ոտքը ոտքի վրա ձգած, արմունկը ծնկանը, ձեռքը ծնոտին. այսպես նստած լսում էր՝ մինչև նա բոլորը խոսեց. (նրա խոսածները) գրում էին թագավորի արագագիր քարտուղարները, որ թագավորի առաջ կանգնած էին: Ապա թագավորը մեծապես զայրացավ. հրաման տվեց երկաթե կապանքներով պինդ կապել Հայոց եպիսկոպոսապետ սուրբ Ներսեսին և բանտը տանել պահել և ուշադիր լինել երեխային, արդյոք կապրի՞ թե ոչ, որից հետո կտեսնե թե ի՞նչ պետք է անել: Տասն և հինգ օրը լրանալիս երեխան մեռավ, կայսեր որդին, որ նրա մեկ հատիկ ժառանգն էր: Երբ (թագավորը) նրան լացեց ու կոծ արավ որքան պետք էր կոծել, ապա հրաման տվեց և սուրբ Ներսեսին բերին նրա առաջ: Նրան մոտ կանչեց ու հարցրեց. «Դուք՝ քրիստոնյանե՞րդ եղաք պատճառ երեխայի մահվան»: Իսկ նա պատասխան տվեց. «Իմ խոսածներից հետո Քրիստոս տասն և հինգ օր հետաձգեց (մահը), զուցե դառնաք: Բայց դուք չդարձաք, մեռաք: Դեռ այժմ էլ, եթե հավատաս՝ Հիսուս Քրիստոս աստծու որդին կարող է նրան կենդանացնել, որդիդ և բոլոր ընտանիքդ»:

Թագավորը այս խոսքերի վրա զայրանալով կամեցավ նրան չարաչար մահով սպանել: Բայց թագավորի մոտ եկան պալատի ավագներն ու խորհրդականները և կայսրին ասացին. «դրանք օտար ու հեռավոր երկրից գործի համար ուղարկված են մի հզոր թագավորի կողմից. դրանք մեծ տիրոջ պատգամավորներ են. մեր կողմից նրանց վնաս չպիտի հասնի, եթե ոչ՝ մեծ պատերազմ կծագի մեր և Հայոց մեծ թագավորի միջև, մեծ թշնամություն կընկնի. երեխայի ապրելը կամ մեռնելը դրա խոսքից չէր կախված»: Թեպետ շատ այսպիսի բաներ էին ասում, բայց չէին կարողանում թագավորի բարկությունն ու զայրույթը զիջեցնել:

Բանը շատ դժվար տեղը հասավ. բոլոր բազմությունը համառորեն պնդում էին, որ սպանե (Ներսեսին). վերջապես հազիվ հազ կարողացան թագավորին համոզել, որ գոնե նրան չսպանե: Բայց չկարողացան այնպես անել որ ազատ արձակե, այլ միայն աքսորեցին, որ միայն ամայի կղզին բերեն տանեն իմաստուն (խորհրդականները) երկար մտածե-

նեցան իմաստունքն, զի առ զամ միայն աքսորելովն ապրեսցի, գոնեա ապա առ յապա դարձ լիցի առնն, զի մի՛ ՚ի խռովութիւն և ՚ի պատերազմ ՚ի մէջ թագաւորութեանցն երկուցունց լինիցի: Զի ասէին. Ոչ երբէք ուրեք եղեալ է, և ոչ ՚ի մէջ թշնամեաց ուրեք, և ոչ ՚ի մէջ պատերազմի թարամատար հրեշտակաց ինչ կալեկապ և ոչ բանք, թող թէ մահ. զի ոչ երբէք ուրեք ՚ի հնոց ժամանակաց հետէ, թող թէ այր մեծ և աւագ և աշխարհի միոյ գլուխ: Զի թագաւորն դոցա աշխարհին և դա, որպէս ասեն, ընդ մի համար են. և ասեն՝ թէ աշխարհն այն, ուստի դոքա եկեալ են, սիրեն զայրդ. և երևելի է դա անդ: Եւ որպէս ետուն զրոյց որք ընդ նմա եկեալ էին, թէ ազգակից համարին զսա և մերձաւոր թագաւորին. և իւրեանց աշխարհն սիրեն զայրդ զայդ:

Իսկ թագաւորն տայր նոցա պատասխանի. Բարիոք ասացէք՝ եթէ այդ այդպէս իցէ, ով արք իմաստունք. զի եթէ տէր նորա տուեալ էր ինձ ՚ի ձեռն նորա զանարգութեան թշնամանս, ոչ գոյր նորա մեղ դնել բամբերին, և ոչ պատիժ և ոչ բանք: Իսկ նա իւրովք կամօք թշնամանեաց զիս, և իւրովք կամօք եղև երաշխաւոր մահու որդւոյն իմոյ. և ասաց՝ բայց ես իսկ սպանի զնա: Իսկ եթէ նորա թագաւորն զնա առ սէր յղեաց, նա եկն կոտորել զմեզ, վասն այսորիկ առ իւր թագաւորն իսկ է վնասակար: Բայց փոխանակ զի ինքն անձամբ զանձն իւր կալաւ, պարտ ինչ է այնմ իմիք. ես ինձէն գիտեմ թէ չեղև ՚ի նմանէ, մահապարտ է:

Ապա ոչ ինչ անսաց նոցա թագաւորն, այլ հրաման ետ աքսորել զերանելին Ներսէս, և տանել ընկենուլ զնա ՚ի կղզի մի ՚ի ծովուն մեծի, յայնպիսի յանապատ տեղի՝ ուր ոչ մարդ կայցէ և ոչ ջուր ըմպելոյ, և ոչ կերակուր, բայց սոսկ միայն անապատ իցէ, զի սովամահ սատակեսցէ զնա: Եւ ժողովեալ զամենայն իւրոյ իշխանութեանն քաղաքաց զամենայն որթոդոքս զեպիսկոպոսս զերիցունս զսարկաւագունս, որ միանգամ յուղղութեանն էին և ՚ի հաւատս. և մեծ ժողով առ հասարակ իշխանութեանն ժողովեցան: Եւ խօսէր ընդ նոսա, զի ամենեքեան յանձն առցեն դառնալ ՚ի խոտորութեան հաւատոն աղանդութեանն արիանոսաց, և դարձցին անդրէն երթալով յիւրաքանչիւր վիճակս, և շրջեսցեն զիւրաքանչիւր ժողովուրդս յարիանոսաց հաւատն: Իսկ իբրև ոչ ոք ՚ի նոցանէն յայսմիկ յանձն առնուլ հաւանեցան, ապա աքսորեաց զնոսա, և ընկէց յաշխարհս օտարս, զի մի՛ ոք ՚ի նոցանէն դարձցի յիւր տեղիս: Եւ փոխանակ նոցա՝ զանօրէնութեան հովիւն կացուցանէր, յամենայն քաղաքս արիանոսս եպիսկոպոսս յղէր. և եղև մեծ շարժումն և խռովութիւն և ներձուածք յամենայն եկեղեցիս տիեզերաց:

լուց հետո այսպես գտան, որ ափսորի միջոցով առ այժմ մահից կազատվի, իսկ ապագայում նա ափսորից կվերադառնա, և այսպիսով երկու թագավորությունների մեջ խռովություն ու պատերազմ չի լինի: Նրանք ասում էին. «Ոչ մի տեղ եղած բան չէ, ո՛չ թշնամիների միջև և ոչ պատերազմի ժամանակ, որ թեկուզ մի հասարակ պատգամավոր կալանավորության, կապանքի և բանտի[84] ենթարկվի, ո՞ւր մնաց թե մահվան. հին ժամանակներից ի վեր երբեք և ոչ մի տեղ այսպիսի բան չի եղել. իսկ դա դեռ մեծ ու ավագ մարդ է և մի աշխարհի գլխավոր է. որովհետև, ինչպես ասում են՝ դրանց աշխարհում թագավորն ու դա մի հաշվի են. և ասում են, թե այն աշխարհում, որտեղից դրանք եկել են՝ այդ մարդուն սիրում են, նա երևելի մարդ է: Դրա հետ եկողները մեզ պատմեցին, թե դա թագավորի ազգական ու մերձավոր է, և դրանց աշխարհը դրան սիրում է»:

Իսկ թագավորը նրանց պատասխանում էր. «Դուք ճիշտ եք ասում, ո՛վ իմաստուն մարդիկ. այդ այդպես է: Երբ նրա տերը նրա միջոցով ինձ անարգանք ու նախատինք հասցներ՝ չէր կարելի նրա բանբերին մեղադրել, պատժի կամ բանտի ենթարկել, բայց նա իր սեփական կամքով ինձ թշնամություն արավ, իր կամքով իմ որդու մահվան երաշխավոր եղավ, նա հենց ասաց թե ես ինքս նրան սպանեցի: Իսկ երբ նրա թագավորը սիրո համար նրան մեզ մոտ ուղարկեց, իսկ նա գալով մեզ կոտորեց՝ հենց իր թագավորի առաջ էլ հանցավոր է: Բայց որովհետև նա ինքն իր գլխի բան արավ՝ պետք է պատասխանատու լինի. նա մահապարտ է, որովհետև գիտեմ որ թագավորի կողմից չէ դրա արածը»:

Թագավորը այլևս (խորհրդականներին) շլսեց, այլ հրաման տվեց երանելի Ներսեսին ափսորել, տանել ձգել մեծ ծովում մի կղզի, այնպիսի մի անապատ տեղ, ուր ո՛չ մարդ լինի, ոչ խմելու ջուր և ոչ կերակուր. լոկ մի անապատ լինի, որպեսզի սովից մեռնի:

Ապա նա իր ամբողջ իշխանության փաղափներից ժողովեց բոլոր ուղղափառ եպիսկոպոսներին, փահանաներին ու սարկավագներին, որոնք ուղիղ հավատն էին դավանում: Բոլոր իշխանության տեղերից եկան, մեծ ժողով կազմեցին: Թագավորը նրանց հետ խոսեց, (և առաջարկեց) որ բոլորն էլ ընդունեն արիանոսական աղանդի սխալ դավանությունը, ապա դառնան իրենց վիճակները և իրենց ժողովուրդները դարձնեն արիանոսական հավատին: Երբ նրանցից ոչ մեկը հանձն չառավ՝ ապա բոլորին ափսորեց և ֆշեց օտար աշխարհներ, որպեսզի նրանցից ոչ մեկը իր տեղը չդառնա, իսկ նրանց փոխարեն անօրեն դավանության հովիվներ էր նշանակում, արիանոս չեպիսկոպոսներ էր

Եւ մեծ եղև ընդ ամենայն տիեզերք փորձութիւնք նեղութեանց վտանգի քան զառաջին թագաւորացն. և ս չար, որ 'ի հեթանոսացն պատերազմն և խռովութիւնքն յառաջագոյն յառնէր առ այլովք դիցապաշտ մեհենաւէր թագաւորօք: Ամենայն ճշմարիտ ուղղափառ հաւատք վարդապետք մերժեցան յիւրաքանչիւր ժողովրդոց, և զնոցա տեղիսն կալան մշակք սատանայի. և ամենայն հաւատացելոց 'ի Քրիստոս հասանէին բազում նեղութիւնք, և առ հասարակ ամենայն ժողովրդոցն լինէր սուգ և տրտմութիւնք: Զի կալան զեկեղեցիսն ամենայն պաշտօնեայքն սատանայի, և հեռացան հովիւքն յիւրաքանչիւր հօտից, և եղեն խաշինք ցրուեալք. զի ոչ գոյր նոցա առաջնորդ, և ոչ մնաց տեղի աղօթից հաւատացելոց ժողովրդոց: Այլ զի մի' հրէշտակացն սատանայի հաւանեսցին, նոքա 'ի բացատ յանյարկ տեղիս՝ արտաքս և քաղաքաց և շինաց աւէին կալ յաղօթս. և 'ի կատարել զաղօթսն իւրեանց՝ խնդրէին ուխտիւք յաստուծոյ, զի փոխեսցէ զանցուսցէ զչար ժամանակն, և դարձուսցէ զճշմարիտ իւրաքանչիւր վերակացուս յիւրաքանչիւր ժողովուրդսն, և յիւրեանց վաստակս 'ի շինեալ եկեղեցիսն՝ ուստի մերժեցանն, թերևս դարձ լիցի նոցա այսրէն:

Իսկ յայն յիշխանաց՝ որ ընդ սրբոյն Ներսէսի երթեալ էին յերկրէն Հայոց, զնոսա բազում զանձիւք լցեալ արձակէր, կաշառակուրծս կաշառաւէկս առնէր առ հասարակ՝ որ միայն անդ էին. և բազում զանձս ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց 'ի ձեռն նոցա՝ արքային առաքէր, իբրև այնու կամէր հանել զմիտս թագաւորին: Զի ոչ գոյր չափ և ոչ թիւ, զի անհամար զանձս առաքէր արքային Հայոց. գրէր առ նա գիր ամբաստանութեան զսրբոյն Ներսիսէ, իբրև թէ սպան զորդի նորա: Եւ արձակեաց ևս զպանդանդսն զԱրշակունիսն թագաւորին Հայոց, որ կային ևս 'ի կայսերական պաղատանն. զի են նոքա եղբօրորդիք արքային Արշակայ, զի միումն անունն ճանաչէր Գնել, և միւսումն անունն Տիրիթ, ետ 'ի ձեռս սատրապացն Հայոց, և զնոսա զայս օրինակ անդուստ յուղարկէր:

## Զ

### ՅԱՂԱԳՍ ԵԹԷ ԶԻԱ՛ՐԴ, ԻԲՐԵՒ ԱՔՍՈՐԵՑԱՒ ՍՈՒՐԲՆ ՆԵՐՍԷՍ ԵՒ ԸՆԴԵՑԱՒ 'Ի ԿՂԶԻՆ ՅԱՆԱՊԱՏՆ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԵՐԱԿՐԵՑԱՒ, ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՅԱՍՏՈՒԾՈՅ ԵՂԵՆ ՍՔԱՆՉԵԼԻՔ ԶԱՄՍ ԻՆՆ

Ապա իբրև սրտմտեալ թագաւորն Վաղէս յարոյց հալածանս 'ի վերայ եկեղեցեաց սրբոց ընդ ամենայն կողմանս իւրոյ իշխանութեանն,

ուղարկում բոլոր քաղաքները: Եվ աշխարհի բոլոր եկեղեցիներում մեծ շարժում առաջ եկավ, խռովություններ ու հերձվածներ ծագեցին: Եվ բոլոր աշխարհում մեծամեծ նեղություններ, փորձություններ ու վտանգներ առաջ եկան քան նախկին թագավորների ժամանակները,— ավելի վատ՝ քան կռապաշտ մեհենական թագավորների ժամանակ ծագած պատերազմներում: Բոլոր ճշմարիտ և ուղղափառ վարդապետները վտարվեցին իրենց ժողովուրդների մոտից, նրանց տեղերը գրավեցին սատանայի մշակները, բոլոր Քրիստոսի հավատացողներն ենթարկվեցին տեսակ-տեսակ նեղությունների, բոլոր ժողովուրդները սգի ու տրտմության մեջ ընկան: Որովհետև բոլոր եկեղեցիները գրավեցին սատանայի պաշտոնյաները, հովիվները անջատվեցին իրենց հոտերից և խաշինքները ցրվեցին. նրանց համար առաջնորդ չմնաց և ոչ հավատացյալ ժողովրդի համար աղոթքի տեղեր: Նրանք որպեսզի սատանայի սպասավորներին չենթարկվին՝ քաղաքներից ու գյուղերից դուրս ամայի տեղերում բաց երկնքի տակ աղոթք էին անում, և աղոթքների վերջում ուխտադրությամբ խնդրում էին Աստծուց, որ այդ չար ժամանակը փոխե վերացնե, ճշմարիտ առաջնորդներին դարձնե իրենց ժողովուրդների մոտ, դարձնե իրենց աշխատանքով շինված եկեղեցիները, որտեղից հալածվել էին:

Իսկ այն իշխաններին, որոնք Հայոց աշխարհից սուրբ Ներսեսի հետ գնացել էին՝ (Վաղեսը) արձակում էր՝ շատ գանձերով լիացնելով, մտածում էր բոլորին կաշառքներով կուրացնել, և նրանց ձեռքով ոսկու, արծաթի և թանկագին ակների մեծ գանձեր էր ուղարկում (Արշակ) թագավորին, նրա սիրտը առնելու համար: Թիվ ու հաշիվ չկար այն գանձերին, որ ուղարկում էր Հայոց թագավորին, և նրան ամբաստանության գիր էր գրում Ներսեսի մասին, իբրև թե նա սպանեց իր որդուն: Նաև արձակեց Հայոց թագավորի Արշակունի պատանդներին, որ կայսերական պալատում էին գտնվում, Արշակ թագավորի եղբորորդիքը, որոնցից մեկի անունն էր Գնել, մյուսինը Տիրիթ: Սրանց հանձնեց Հայոց սարապներին և այս կերպով նրանց ճանապարհ ձգեց:

## Զ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ՍՈՒՐԲ ՆԵՐՍԵՍ ԱՔՍՈՐՎԵՑ ՈՒ ՁԳՎԵՑ ԱՆԱՊԱՏ ԿՂԶԻՆ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԿԵՐԱԿՐՎԵՑ, ԿԱՄ ԻՆՉՊԵՍ ԱՍՏՎԱԾ ՍՔԱՆՉԵԼԻՔ ՑՈՒՅՑ ՏՎԵՑ ԻՆՐ ՏԱՐԻ

Երբ Վաղես թագավորը զայրանալով հալածանք բարձրացրեց բոլոր սուրբ եկեղեցիների վրա իր իշխանության բոլոր կողմերում, և

և զամենայն եպիսկոպոսս մեկնեաց եհան յիւրաքանչիւր ժողովրդոց և ընգէց զնոսա յօտարութիւն, առաւելիւր նիւթեալ մեծաւ բարկութեամբ 'ի վերայ սրբոյն Ներսէսի. վասն զի պատճառք մահուան միամօր որդւոյն սիրելոյ իւրոյ եղև նա, ապա չարապէս չարութեամբ դառնութեամբ մահուան կամէր վճարել զնա: Որում մեծամեծքն և ամենայն խորհրդականք թագաւորին չհաւանեալք շառնուին յանձն, այլ հազիւ հազիւ կարացին թափել 'ի մահուանէ: Ապա ետ հրաման ընգենուլ զնա 'ի կղզին մի մեծ ովկիանոս ահագին ծովու, յանապատ յանչուր տեղի մի՝ ուր ոչ բոյս ինչ դալար, և ոչ արմատ ինչ, և ոչ այլ ինչ ամենևին՝ որ ինչ 'ի պէտս մարդկան լինիցի. բայց միայն քար և աւազ ապառաժ, և ոչ ճանապարհ ուրեք ընդ այն, և ոչ գնացք ինչ նաւաց:

Ապա անցուցին զնա 'ի տեղին հրամայեալ, և ընդ նմա արս եւթանասուն, որ կէսքն եպիսկոպոս էին յայլոց քաղաքաց, կէսք կղերիկոսք յայլոց եկեղեցեաց: Իսկ նա խնդայր և ուրախ էր ընդ այն, զի եհաս նմա կրել չարչարանս վասն անուան տեառն Յիսուսի Քրիստոսի Որդւոյն աստուծոյ: Եւ էին նորա այն որք ընդ նմայն աքսորեցան յիւրոցն՝ երկու, անուն միոյն Ռաստոմ սարկաւագ, և երկրորդին՝ Տիրանամ. և այլքն եւթանասունքն որ ընդ նոսա, զորս ուստեք ուստեք ընդ նոսա ամացեալ 'ի նաւն՝ 'ի կղզին խաղացուցին: Եւ գնաց մեկնեցաւ նաւն՝ որ զնոսայն տանէր, և ըստ հողմոյն յաջողութեան 'ի հնգետասան օր հասանէր 'ի հրամայեալ տեղին. և թափեաց զնոսա նաւն 'ի կղզին, և ինքն այսրէն դարձաւ:

Եւ յայնմ կղզւոջ ոչ գտանէր ոչ ջուր ըմպելոյ և ոչ դոյզն ինչ արմատ, զի անարմատ, աւազ միայն էր. զի վասն այնորիկ իսկ տարեալ էր զնոսա անդր, զի սովամահ արասցեն զնոսա ըստ խստութեան թագաւորին հրամանին: Եւ եղև իբրև եհաս նոցա յամել ամսօրեայ մի ժամանակս, որ տկարագոյնքն էին 'ի նոսա՝ սկսան նքողել ծարաւել նուաղել և ներգևել դորսովել 'ի քաղցոյ կամ 'ի ծարաւոյ: Ապա մխիթարել և քաջալերել սկսաւ զամենեսեան Ներսէս, և ասէ. Պինդ կացէք, հաստատուն լերուք, և մի՛ երկնչիք. զի այն տէր մեր Յիսուս Քրիստոս՝ որ հրամայեաց ծառոյն սաբեկայ բերել զխոյն պտուղ, և ընկալաւ զԻսահակ կենդանի զոհ, և օրհնեաց զՅակոբ 'ի պանդխտութեան, և ապրեցոյց զՅովսէփ 'ի ծառայութենէն և տիրացոյց, հրամայեաց և մօրենւոյ հրով տերևել ծաղկել, և օդոցն հրամայեաց քաղցրութեանն հացին կերակրոյ 'ի վերուստ ցօղել, և զլորամարգին 'ի թռչնոց տալ ապրատամբող և դառնացող ժողովրդեանն, և ինքն Քրիստոս վէմ եղեալ՝ ընդ նոսա շըրջէր յանապատին յանջրդին, և զքաղցրութիւն ջուրցն 'ի ծարաւ նոցա մատուցանէր, և խորհուրդ հանդերձելոցն՝ որ առ յապա լինելոցն էր՝

բոլոր եպիսկոպոսներին հեռացնելով իրենց ժողովուրդներից օտարության մեջ ձգեց՝ նա ավելի մեծ բարկությամբ գրգռված էր սուրբ Ներսեսի դեմ, որովհետև նրան էր համարում պատճառ իր մեկ հատիկ որդու մահվան, ուստի կամենում էր նրան չարաչար դառն մահով վախճանեցնել: Թագավորի մեծամեծներն ու խորհրդականները չհամաձայնեցին այս բանին և հազիվ հազ կարողացան նրան մահից ազատել: Այն ժամանակ նա հրաման տվեց նրան ձգել մեծ անհագին օվկիանոս ծովում մի կղզի, մի անապատ անջուր տեղ, որտեղ ո՛չ դալար բույս կար, ո՛չ արմատ, և ոչ ուրիշ մի բան՝ մարդու (սնունդի) պիտանի, այլ միայն քար, ավազ, ապառաժ: Ճանապարհ էլ չկար դեպի այդ կողմը և ոչ նավերի երթևեկություն:

Նրան տարան հասցրին հրամայված տեղը և նրա հետ յոթանասուն մարդ, որոնցից կեսը եպիսկոպոսներ էին ուրիշ քաղաքներից և կեսը հոգևորականներ ուրիշ եկեղեցիներից: Իսկ նա (Ներսեսը) ուրախ էր այս բանին, որ իրան վիճակվեց չարչարանքներ կրել Հիսուս Քրիստոսի՝ աստծու որդու անվան համար: Նրա հետ աքսորվածներից երկուսը իր մարդիկն էին. մեկի անունը Ռաստոմ սարկավագ, երկրորդինը՝ Տիրանամ. նրանց հետ եղած մյուս յոթանասունին էլ (ճանապարհին) այստեղից և այնտեղից նավը լցնելով տարան դեպի կղզին: Նավը, որ նրանց տանում էր՝ մեկնեց, աջողակ ճամբով տասնևհինգ օրում հասնում էր հրամայված տեղը: Նավը նրանց կղզին ափ հանեց և ինքը ետ դարձավ:

Այս կղզում ոչ խմելու ջուր կար և ոչ մի չնչին արմատ, որովհետև անարմատ ավազ էր միայն. հենց այս պատճառով էլ նրանց այնտեղ էին տարել, որ սովամահ անեն թագավորի խիստ հրամանի համաձայն: Երբ նրանք մի ամսաչափ ժամանակ այնտեղ մնացին՝ նրանց մեջ ավելի թույլերն սկսեցին քաղցից ու ծարավից տանջվել, տառապել, թուլանալ, նվաղել:

Այն ժամանակ Ներսեսն սկսեց բոլորին քաջալերել ու մխիթարել՝ ասելով. «Հաստատ ու պինդ մնացեք, մի՛ վախենաք, որովհետև մեր տեր Հիսուս Քրիստոսն էր, որ սաբեկա ծառին հրամայեց խոյ բերել իբրև պտուղ[85], որ Իսահակին զոհ ընդունեց կենդանույն, որ Հակոբին օրհնեց պանդխտության մեջ, որ Հովսեփին ստրկությունից փրկեց ու տեր դարձրեց, որ մորենուն հրամայեց՝ կրակով տերև հանել ու ծաղկել, որ օդին հրամայեց՝ վերևից քաղցր կերակուր ցողել[86], և դառն ապստամբ ժողովրդին լորամարգի թռչուններ տվեց ուտելու, և ինքը Քրիստոս վեմ դառնալով նրանց հետ շրջում էր անջրդի անապատում. և ծարաված ժողովրդին քաղցր ջուր մատակարարում, և իբրև ապա-

զուշակէր զաւազանաւն 'ի ձեռն Մովսէսի, վէմն խոցեալ՝ հոսէր նոցա ջուր, զնոսա անդ զառաջինսն օրինակօքն կեցուցանէր, և ինքն կերակրեաց 'ի սակաւ հացէ զժողովուրդն յանապատի անդ, և ըստ ծառոյն՝ որ զխոյն եբեր՝ ինքն զխաչէն պրկեալ կախեալ խաչեցաւ, և օրինակաւն ըստ նմանութեան 'ի կողսն խոցեցաւ, և եհան մեզ անտի ջուր փրկութեան 'ի յուացումն սրբութեան ապաշխարութեան՝ յաղագս կենաց մերոց, և ինքն վասն մեր հաց եղև, և զարիւնն իւր ըմպել ետ մեզ, զի զմարմինն 'ի մարմինն խառնեսցէ և արիւնն յարիւն, զի զաստուածութիւնն յոգիս մեր միացուցեալ, զմեզ ընդ սուրբ Հոգւոյն, և 'ի վախճանի զմեզ բնակիցս աստուածութեանն արասցէ. արդ որ այսչափ երախտիս առնէր մեզ, մինչև մեք անգամ բանս գոհացողութեան փոխարէն շնորհս ոչ հատուցանէաք նմա, իսկ արդ զի՞րդ վասն անուան նորա արժանի եղեալք սակաւիկ մի թշնամանաց՝ սովամահ ինչ կարծիցէք լինել: Ոչ այդպէս, այլ հաւատով խնդրեսցուք, և տացի մեզ կերակուր: Իսկ արդ նշա՞ն խնդրեմք, ոչ. այլ նշան թերահաւատից պիտոյ է, և առ զշարսն դարձուցանելոյ յուղղութիւն. այլ մեզ, զիտէ տէր զպիտոյսն մեր և զօգտակարսն, և ըստ այնմ պատրաստէ զինչ և պիտոյ է մեզ: Իսկ մեք ոչ այնպէս, որ քա՛ւ և մի՛ լիցի, որպէս ասացաւն. ասէ. «Ազգ չար նշան խնդրէ»: Իսկ մեզ կարեւորքն առանց ուրոյն 'ի մարդկան աղանդէն չիք հնար լինել: Իսկ տէրն կարող է և առանց կերակրոյ պահել զմեզ կենդանիս, և կարող է տալ կերակուր. և արդարացուցանել կարող է, և արժանիս առնել՝ վասն իւրոյ անուանն պատրաստել մեզ մեռանել. տալ մեզ սովորական ընդունելութիւն քնութեան մահուն, որ չերթայ ուրեք 'ի մարդկանէ, այլ պատճառս միայն առնէ զանուն իւր 'ի վերայ աներևոյթ մարմնոյն. մահէ, և իւրոյ արքայութեանն զմեզ բազորդս բաժանորդս առնէ: Կարող է և ի՛ խաղաղութեան վախճանել, և առնել արժանիս արքայութեան կարգացն:

Զայս և այսպիսի և որ երթայր զհետ սորին՝ իբրև խօսեցաւ. արդ՝ ասէ՝ զի՛ք ծունր ամենեքեան, զի արժանի միայն լիցուք մարդասիրութեանն Քրիստոսի: Եւ 'ի դնել նոցա երիցս անգամ ծունր և կալ յաղօթս, և յարեաւ 'ի ծովու անդ հողմ սաստիկ, և սկսաւ ընկենուլ 'ի կղզի անդր ձկունս սաստիկ յոյժ, մինչև շեղջս շեղջս կուտէր 'ի ցամաքի կղզւոյն. և ընդ նմին փայտ սաստիկ յոյժ: Իբրև հանին կուտեցին զփայտն, խորհէին թէ հուր պիտոյ է, որով զփայտն լուցցուք: Յանկարծակի ինքնին լուցեալ փայտն հրով վառէր, և նոքա յարուցեալք գոհացեալ, զաղօթսն կատարելոյ՝ մատեան արկին 'ի խորովս, և բազմեցան և մատեան յուտել: Եւ իբրև կերան յագեցան, և պէտք եղեալ ըմպելոյ ջուր՝ յոտն եկաց սուրբն Ներսէս, և մատուցեալ փորեաց զաւազն 'ի կղզւոջ, և բխեաց աղբեւր՝

գալում լինելիքի գուշակությունն՝ Մովսեսի գավազանով ապառաժը
խոցելով ջուր էր հոսեցնում նրանց համար և այս օրինակով առաջին
անգամ նրանց կյանքը պահպանում, և ինքն էլ անապատում քիչ
հացով ժողովուրդը կերակրեց, և նման այն ծառին որ խոյ բերեց՝
ինքն էլ խաչին գամվեց ու կախվեց, և վերի օրինակի համաձայն ինքն
էլ կողից խոցվեց և այնտեղից մեզ համար հանեց փրկության ջուր,
որպեսզի ապաշխարությամբ լվացվինք ու մաքրվինք, կյանք գտնենք.
ինքը մեզ համար հաց եղավ, իր արյունը տվեց մեզ խմելու, որպեսզի
մարմինը մարմնի հետ խառնե, արյունը արյունի հետ, աստվածությունը
մեր հոգու հետ միացնե և մեզ սուրբ հոգու հետ և վերջում մեզ աստվա-
ծության հետ բնակակից դարձնե: Արդ՝ նա որ այսքան երախտիք էր
մեզ ցույց տալիս, մինչդեռ մենք նույնիսկ շնորհակալության խոսք
չէինք ասում իրեն, ի՞նչպես կարող էր կարծել, թե նա սովամահ կթող-
նե մեզ, որ թեկուզ մի փոքր չափով թշնամանք կրեցինք նրա անվան
համար: Ո՛չ, այդպես չէ. մենք հավատով խնդրենք, և մեզ կերակուր
կտրվի: Ինչ է, մենք նշա՞ն ենք խնդրում. ո՛չ, նշանը թերահավատների
համար է պետք և չարերին ուղղության բերելու համար. իսկ մեր վերա-
բերությամբ՝ տերը գիտե մեր կարիքները ու օգտակարը և ըստ
այնմ կպատրաստե՝ ինչ որ մեզ պետք է: Մենք այնպես չենք՝ ինչպես
ասաց թե «Չար ազգը նշան է խնդրում», քավ լիցի: Ինչ որ մեզ կարևոր
է՝ առանց մարդկանց օգնության էլ կարող է ստացվել: Տերը կարող է
առանց կերակրի էլ մեզ կենդանի պահել, կարող է և կերակուր տալ,
կարող է և արդարացնել, կարող է մեզ մահվան արժանացնել իր ան-
վան համար, տալով մեզ սովորական բնական մահը, որից մարդ
ազատում չունի[87], և մեզ արքայության մասնակից դարձնել. կարող
է մեզ խաղաղ մահով վախճանեցնել և արքայության արժանացնել»:

Այս և սրանց համապատասխան ուրիշ բաներ խոսելուց հետո նա
ասաց. «Բոլորդ ծունր դրեք, որ արժանանանք Քրիստոսի մարդասիրու-
թյան»: Եվ երբ նրանք երեք անգամ ծունր դրին և աղոթեցին՝ ծո-
վումը սաստիկ քամի բարձրացավ և սկսեց կղզին թափել մեծ քանա-
կությամբ ձուկ, այնպես որ կղզու վրա կույտակներ ձևացան, և սրա
հետ միասին շատ-շատ փայտ: Երբ փայտը հանեցին, կույտ շինեցին՝
մտածեցին թե կրակ է հարկավոր, որով փայտը վառենք: Հանկարծ
փայտը ինքն իրան կրակ առավ ու սկսեց վառվել: Նրանք աղոթելուց
վեր կացան գոհությամբ, ձուկը խորովեցին, բազմեցան և սկսեցին
ուտել: Երբ կերան կշտացան ու խմելու ջուր հարկավոր եղավ՝ ոտքի
կանգնեց սուրբ Ներսեսը, կղզու մեջ ավազը փորեց. բղխեց անուշ ջրի
աղբյուր, և այնտեղից շարունակ խմում էին կղզու վրա եղողները:

ջուր քաղցր անոյշ, և անտի ըմպէին որք հանապազորդ էին կղզւոյն:

Յայնմ կղզւոջ զայս օրինակ կերակրեալ լինէին 'ի ծովէ անտի. և հանապազ մխիթարէր զնոսա սուրբն Ներսէս, և ասէր. Այսպէս յիշեցէք և 'ի մտի կալարուք զբանն տեառն զոր ասաց, թէ «Խնդրեցէք զարքայութիւնն աստուծոյ և զարդարութիւն նորա, և այն ամենայն տացի և յաւելցի»: Տեսէք, եղբարք, զի անաւասիկ իբրև հայր յորդիս մատուցեալ է առ մեզ աստուած՝ խրատել զմեզ, զի զմեզ պիտանիս արասցէ, և զանուանս քաջութեան ժառանգեցուսցէ մեզ, և զմեզ մեծաց վարձուց արժանիս արասցէ: Զի զպատճառս սակաւիկ առաքինութեան ի մէնջ խնդրէ. այնչափ միայն. զի սիրեսցուք զնա. և ապա զանթիւ զանչափ զանկշիռ զանհամեմատ բարեացն առնէ զբարերարութիւնս սքանչելեաց իւրոց. և ցուցանէ զբարիատուր զերախտապարգև հատուցմունս վասն իւրոյ մարդասիրութեանն: Քանզի և զանձն իւր ոչ խնայեաց դնել 'ի վերայ մեր. այլ կերակուր և ըմպելի ես եղև մեզ:

Եւ այսպէս հանապազ հանդերձ եղբարքն գոհանալ և օրհնել զտէր Յիսուս Քրիստոս, զցայգ և զցերեկ կային 'ի պաշտաման տեառն անդադար: Արեգական մտանելոյ կային եղբարքն, և ապա տէրունատուր կերակրովն ուրախ լինէին, յընգենուլ ալեացն 'ի պատրաստել զկերակուր: Իսկ սուրբն Ներսէս յեւթն աւուրն 'ի կիրակիէն հասեալ միայն, ապա ճաշակէր: Այլ զայս օրինակ համակ տայր նոցա զքաջութիւն սուրբն Ներսէս ամս ինն, որ եղեն յայն կղզւոջ:

## Է

### ՅԱՂԱԳՍ ԱՍՏՈՒԾՈՅ ՍՔԱՆՉԵԼԵԱՑՆ՝ ՈՐ ԵՂԵՆ 'Ի ՆԵՐՍԷՍ ԵՒ ԿԱՄ 'Ի ԲԱՐՍԵՂԻՈՍ. ԵՒ ՎԱՍՆ ՆԱԽԱՆՁՈՒՆ ԵՒՍԵԲԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌ ԲԱՐՍԵՂՈՍ

Իսկ եպիսկոպոսն Կեսարու Եւսեբիոս յորժամ ետես զզարմանալիսն զնախ իջանել զաղաւնոյն՝ որ եկն 'ի յերկնից, և հանգչել նախ յերիցապետն Կեսարու սուրբն Բարսիլիոս, 'ի դժկամակ միտս լինէր ընդ նմա. և տեսանէր զնա իբրև զոր հակառակորդ և զթշնամի: Քանզի հռչակ հարեալ էր ընդ երկիր ամենայն. ասէին և պատմէին՝ թէ յորժամ ձեռնադրէին զսուրբ կաթողիկոսն Ներսէս, էջ հանգեաւ 'ի նմանութիւն աղաւնոյ 'ի վերայ՝ նախ յերիցապետն 'ի սուրբն Բարսիլիոս. և ապա յարուցեալ նստաւ 'ի քահանայապետն Ներսէս: Եւ այս հռչակ հարկանէր զնոցանէ. մանաւանդ յաշխարհն Գամրաց: Մեծապէս բաւէին մարդ-

Այս կղզու վրա այս կերպով նրանք կերակրվում էին ծովից, և սուրբ Ներսեսը շարունակ նրանց մխիթարում էր և ասում. «Այսպես հիշեցե՛ք և մտքերումդ պահեցե՛ք տիրոջ խոսքը, որ ասաց. դուք աստծու արքայությունն ու նրա արդարությունը փնտրեցեք, և այդ բոլորը ձեզ կտրվի ու կավելանա: Տեսնո՞ւմ եք, եղբայրներ, որ աստված մեզ հետ վարվում է՝ ինչպես որդոց հետ՝ մեզ խրատելու համար, որպեսզի մեզ պիտանի մարդիկ դարձնե, քաջության անուն մեզ ժառանգեցնե և մեծամեծ վարձերի արժանացնե: Իբրև փոխարեն նա մեզանից մի փոքր առաքինություն է պահանջում— որ նրան սիրենք, որի փոխարեն նա անքիվ, անչափ, անհաշիվ անհամեմատ բարիքներ, բարերարություններ և սքանչելիք է անում մեզ համար և իր մարդասիրությամբ բարի հատուցում է անում. որովհետև նա նույնիսկ իր անձը չխնայեց մեզ համար դնել, այլ մեզ համար կերակուր և ըմպելիք դարձավ»:

Այս կերպով եղբայրները շարունակ գոհությամբ օրհնում էին տեր Հիսուս Քրիստոսին, գիշեր ցերեկ անդադար տիրոջ պաշտոնն էին կատարում: Նրանք սպասում էին արեգակի մայր մտնելուն, ապա տիրոջ տված կերակրովն ուրախանում էին, որ ալիքները դուրս էին ձգում՝ կերակուր պատրաստելու համար: Այս կերպով սուրբ Ներսեսը միշտ որտապնդում էր նրանց ինը տարի[88], որ այն կղզումը մնացին:

## Է

### ԱՍՏԾՈՒ ՍՔԱՆՉԵԼԻՔԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԵՐԵՎԵՑ ՆԵՐՍԵՍԻ ԵՎ ԲԱՍԻԼԻՈՍԻ ՎՐԱ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՎՍԵԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԸ ՆԱԽԱՆՁՈՒՄ ԷՐ ԲԱՍԻԼԻՈՍԻՆ

Իսկ Կեսարիայի Եվսեբիոս եպիսկոպոսը երբ այն զարմանալիքը տեսավ, այսինքն որ երկնքից իջած աղավնին նախ նստեց Կեսարիայի երիցապետ սուրբ Բարսիլիոսի վրա՝ մտքումը ատելություն զգաց նրա դեմ և նրան համարում էր իրեն հակառակորդ[89] և թշնամի, որովհետև բոլոր երկրում հռչակված էր, թե երբ Ներսես սուրբ կաթողիկոսին ձեռնադրում էին՝ (ս. հոգին) աղավնու կերպարանքով իջավ ու կանգնեց նախ երիցապետ սուրբ Բարսիլոսի վրա և հետո նրա վրայից թարձրացավ նստեց Ներսես քահանայապետի վրա: Այս հռչակը նրանց մասին տարածվում էր մանավանդ Գամիրք աշխարհում: Մարդիկ շատ

կանն սքանչելիքն ամենայն. և ամենայն մարդ պատուէին զսուրբն Բարսիլիոս. Մանաւանդ վասն սրբութեան վարուցն նորա, և կարգացն ճշմարտութեան, և բազում խոնարհութեան նորա, և վասն աստուածախօս ջերմեռանդն աղօթիցն նորա, և վասն վարուց կարգաց պարկեշտութեանն. և կամ վասն աղքատասիրութեանն և վասն տառապելասէր[20] վարուցն, և պատուիրանակատար մշտակիր հանապազորդութեան նորա, կամ վասն բազում գիտութեանն, զի աղբեր էր անսպառ իմաստութեամբն. և վասն ուսուցիչ հաւատարիմ վարդապետութեան նորա, զի փիլիսոփայական արուեստիւն խնոյր արկանէր հանապազ զամենայն զուր բացեալ զբերանս հերետիկոսացն, և զհաւատս ճշմարիտ ամենասուրբ երրորդութեանն ամենեցուն հաստատէր: Վասն այսր ամենայնի նայէին ընդ նա իբրև ընդ առաքեալ Քրիստոսի, իբրև զհրեշտակ երկնաւոր. և ամենայն ոք վկայէր թէ արժանի իսկ էր նա Հոգւոյն աստուծոյ:

Իսկ նա զանձն կարի 'ի խոնարհութեան ունէր, և անարժան համարէր, թէպէտ և ամենայն ոք վասն գիտութեան արուեստին կարօտէր առ նա գալ. մանաւանդ արտաքինքն իսկ ճարտարապետք փիլիսոփայիցն առ նա ընթանային վասն իւրեանց արուեստին: Այլ նա զբազումս դարձուցանէր 'ի պէսպէս յիւրաքանչիւր կարծեացն խոտորութենէ 'ի ճշմարտութեանն հաւատս, երկրպագու Քրիստոսի անթիւ մարդկան կացուցանէր: Եւ ամենայն երկիր սկսան 'ի նա նայել, որպէս թէ անդուստ յերկնից 'ի վերուստ իջեալ իցէ. այնչափ՝ որպէս զի թէ կամիցի ոք պատմել, ոչ կարասցէ: Այլ յորժամ խոժոռադէմ երեսօք տեսանէր զիւր եպիսկոպոսն ընդ ինքեան, սուրբն Բարսիլիոս տեղի տայր նմա, թողոյր զքաղաքն, և գնայր նա անտի, ելեալ բնակէր մի 'ի շինացն՝ ուր և նմա պատշան իցէ կալ անդ:

Ը

ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՅՍՐՆ ՎԱՂԷՍ ՀԱԼԱԾԵԱԼ ԶԱՄԵՆԱՅՆ ՈՒՂՂԱՓԱՌ ՀԱՒԱՏԱՑԵԱԼՍ. ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԿԱՄԵՑԱՒ ՅԱՆԴՄԱՆՈՒԹԻՒՆ ԱՌՆԵԼ ԿԱՅՍՐՆ 'Ի ՄԷՋ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆՆ ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ, ԵՒ 'Ի ՄԷՋ ՉԱՐՈՂ ԱՂԱՆԴՈՅՆ ԱՐԻԱՆՈՍԱՑ, ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՍՔԱՆՉԵԼԵԱՑՆ ՏԵՍԼԵԱՄԲՆ ՍՈՒՐԲՆ ԲԱՐՍԻԼԻՈՍ ԿՈՉԵՑԵԱԼ 'Ի ՊԱՅՔԱՐՆ, ԵՒ ՅԱՂԹԷՐ՝ ԱՍՏՈՒԾՈՅ ԶՕՐՈՒԹԵԱՄԲՆ՝ ԱՌ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՒՆ ԵՒՍԵԲԻ. ԵՒ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԵՒՍԵԲԻՈՍ ՎՃԱՐԵԸ 'Ի ԲԱՆԴԻՆ. ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԲԱՐՍԵՂ ԱՐՁԱԿԵԱԼ ԼԻՆԷՐ

Ընդ այն ժամանակս անօրէն կայսրն Վաղէս մեծաւ բարկութեամբ դատէր ընդդէմ ճշմարտութեանն մշակացն. այս ինքն որ միանգամ

ակնածում էին այս սքանչելիքից և բոլորը պատվում էին սուրբ Բարսիլիոսին, մանավանդ որ նա մաքուր վարք ուներ, ճշմարիտ կարգերի էր հետևում, շատ խոնարհ էր, ջերմեռանդ աղոթում էր աստծուն, պարկեշտ էր պահում իրեն. սիրում էր աղքատներին և տառապյալներին և միշտ ու հանապազ կատարում էր (աստվածային) պատվիրանները: Բացի սրանցից նա մեծ գիտության տեր էր, իմաստության անպակաս աղբյուր էր և հավատարիմ ուսուցիչ ու վարդապետ. որովհետև նա իր փիլիսոփայական արվեստով միշտ փակում պապանձեցնում էր հերետիկոսների զուր բացած բերանները և ամենասուրբ երրորդության ճշմարիտ հավատը հաստատում էր ամենքի առաջ: Այս բոլորի պատճառով ամենքը նրա վրա նայում էին իբրև Քրիստոսի առաքյալի, ինչպես մի երկնավոր հրեշտակի վրա, և բոլորն էլ վկայում էին, թե նա հիրավի արժանի էր աստծու հոգուն:

Իսկ նա իրեն շատ խոնարհ էր պահում և անարժան էր համարում, թեպետ ամեն մարդ ցանկանում էր նրա մոտ գալ նրա գիտության պատճառով. մանավանդ նրա մոտ հանախում էին փիլիսոփաների պարագլուխներն իրենց արվեստի պատճառով. նա (նրանցից) շատերին իրենց սխալ կարծիքներից դարձնում էր դեպի ճշմարիտ հավատը, անբիվ մարդիկ դարձնում էր Քրիստոսի երկրպագողներ: Բոլորն այնպես սկսեցին նայել նրա վրա, իբրև թե նա հենց երկնքից իջած լինի— այն աստիճան որ պատմել չի լինի: Բայց երբ նա նկատում էր իր եպիսկոպոսի խոժոռած երեսը իր դեմ՝ սուրբ Բարսիլիոսը տեղի էր տալիս, բողնում էր քաղաքը, գնում ապրում էր գյուղերից մեկում, որտեղ նրան պատշաճ էր մնալ:

Ը

ԹԵ ԻՆՉՊԵՍ ՎԱՂԵՍ ԿԱՅՍՐԸ ՀԱԼԱԾԵՑ ԲՈԼՈՐ ՈՒՂՂԱՓԱՌ ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻՆ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԿԱՄԵՑԱՎ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ ՍԱՐՔԵԼ ՃՇՄԱՐԻՏ ՀԱՎԱՏԱՑՅԱԼՆԵՐԻ ԵՎ ԱՐԻԱՆՈՍՅԱՆ ՁԱԽ ԱՂԱՆԴԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԵՎ, ԵՎ ԻՆՉՊԵՍ ՍՔԱՆՉԵԼԻ ՏԵՍԻԼՔՈՎ ՍՈՒՐԲ ԲԱՐՍԻՂԻՈՍԸ ՀՐԱՎԻՐՎՈՒՄ ԷՐ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅԱՆԸ ԵՎ ԱՍՏԾՈՒ ԶՈՐՈՒԹՅԱՄԲ ՀԱՂԹՈՒՄ ԷՐ ԵՎՍԵԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՆԵՐԿԱՅՈՒԹՅԱՄԲ. ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՎՍԵԲԻՈՍԸ ՎԱԽՃԱՆՈՒՄ ԷՐ ԲԱՆՏՈՒՄ, ԻՍԿ ԲԱՐՍԵՂԸ ԱԶԱՏ ԱՐՁԱԿՎՈՒՄ

Այս ժամանակներս անօրեն Վաղես կայսրը մեծ բարկությամբ կռվում էր ճշմարտության մշակների հետ, այսինքն նրանց հետ, որոնք

զհաւատն Քրիստոսի արժանապէս հաւատացեն՝ թէ ճշմարիտ արդարև Որդի աստուծոյ իցէ, և ծնունդ 'ի բնութենէն Հօրն աստուծոյ: Վասն այսորիկ կամէր հալածանս տանջանս չարչարանս միահաղոյն[21] յարուցանել, և սաստիւ իշխանութեամբ առ ամենեսեան գրեալ հրաման:

Ապա 'ի մի վայր եղեալ՝ խորհեցան մոլեկան արիանոսացն աղանդոյն վարդապետք. զի ասէին՝ թող ընդ նոսա պայքար յանդիմանութեան հակառակութեան լիցի, արքայ. և որ կողմն յաղթեսցէ, յայտ լիցի, զի մի զնա բռնադատ, զրադատ ինչ երևեսցի յաղթութիւնն: Եւ թագաւորն Վաղէս զայս լուեալ խնդալից լինէր. բնտրեաց իւր արս ճարտարս և պատրաստաբանս, զորս կարծէր դպիրս բանիբունս, որ անուանեալք էին չեպիսկոպոսունս աղանդոյն արիանոսաց: Եւ յղեաց առ եպիսկոպոսն Կեսարու Եւսեբիոս. և ժամ խնդրէր 'ի նոցանէ բանիցն քննութեան, զի 'ի հանդէս ածիցէ առ նա զնովաւ, և որ ճշմարիտն իցէ՝ յայտնի երևեսցի: Ապա իբրև սահմանեցաւ ժամադրութիւն, առեալ եպիսկոպոսն Եւսեբիոս զկղերն զամենայն, և 'ի մեծ հոգս մտանէր. ուստի կարծիցես բանիցն պատասխանիս պատրաստել. զի և բանիւ ոչինչ կարի էր առաւել: Ապա հաստատեցաւ այս բան 'ի խորհրդեանն, զի յղեսցեն հաւանեցուսցեն զերանելին Բարսիլիոս, զի եկեսցէ նա: Զի նա. ասէ, կարող է բանիւ զօրութեանն. նա մեծ է, ասեն, 'ի նմա շնորհքն խափանել զնենգութիւն դաւանանութեանն սատանայի. զի խորհի նա 'ի վերայ սրբոյ եկեղեցւոյ նորա, զոր իւրքն արեամբքն ստացաւ:

Գրեաց թուղթ աղաչանաց եպիսկոպոսն Եւսեբիոս առ երիցապետն Բարսեղ, և մեծաւ պաղատանօք որ ինչ վասն պատուին պաշտամանն. զի մի՛ դիցէ ինչ 'ի մտի զառաջին եղեալ բանիցն զժտութիւն. այլ վասն զի առ աստուած հաւատոց են[22] բանքն և քննութիւնքն, վաղվաղակի փութասցի զալ առանց դանդաղանաց: Արկին և կղերքն ամենայն ձեռնագիր աղաչանաց, զի մի՛ ինչ դանդաղեսցի զալ, այլ յարուցեալ փութանակի երթիցէ: Եւ արս հաւատարիմս պատուականս յղեցին վասն վաղվաղ գալոյ:

Եւ այն ինչ արքն յուղի անկան, որ երթայինն ածել զնա անդր. արդ մինչ դեռ յուղի անկեալ երթային արքն՝ էին 'ի ճապարհի, սուրբն Բարսիլիոս ու էին՝ մինչ դեռ 'ի պաշտաման տեառն կայր, անկաւ նմա քուն ծանր թանձրամած, և տեսանէր 'ի տեսլեան, զի այգի մի էր մեծ և վայելուչ, քաջաբեր լի պտղով. և խոզք երեք անգեալ էին յայգին, և մտեալ 'ի ներքս 'ի յայգին՝ ապականէին զայգին և բրէին: Պատառէին բազում ունչս որթոյ, արմատաքի խլէին և զտաշտն գլխովին և զբազուկ ընչովին, և մեծամեծ ապականութիւնս 'ի ներքո գործէին: Եւ մատուցեալ էին այգէգործքն, ջանային և ոչ կարէին հանել զվնասակար

Քրիստոսի մասին արժանապես դավանում էին, թե նա իսկապես աստծու որդի է, հոր աստծու բնությունից ծնված: Սրա պատճառով նա ընդհանուր հալածանք, տանջանքներ ու չարչարանքներ կամենում էր հարուցանել, և (այս մտքով) խիստ հրաման գրեց ամենքին:

Ապա արիանոսների մոլի աղանդի ուսուցիչները մի տեղ ժողովվեցին ու ասացին թագավորին. «Թող դեմ առ դեմ վիճաբանություն կազմակերպենք, թագավո՛ր, և ո՛ր կողմը որ հաղթե՝ թող հայտնի դառնա, և այնպես չերևա, թե հաղթությունը բռնությամբ և ստությամբ ենք տարել»: Վաղես թագավորը այս խոսքով ուրախացավ. նա իր կողմից ընտրեց ճարտար՝ վիճաբանության հմուտ մարդիկ, որոնք համարվում էին բանիբուն և ուսյալ՝ արիոսական աղանդի չեպիսկոպոսների մեջ: Կեսարիայի Եվսեբիոս եպիսկոպոսին էլ (մարդ) էր ուղարկում, հայտնելով որ նշանակված է նրանց դավանության քննություն, որ նա գա և իր ներկայությամբ քննություն կատարվի, որպեսզի հայտնի դառնա, թե ո՛րն է ճշմարիտը: Երբ այս ժամադրությունը հաստատվեց՝ Եվսեբիոս եպիսկոպոսը բոլոր հոգևորականներին հավաքեց, և տարակուսանքի մեջ էր ընկել, թե ինչպես պիտի կարողանա (հակառակորդների) խոսքերին պատասխանել[90], որովհետև խոսելու մեջ էլ շատ շնորհք չուներ: Խորհրդակցության մեջ որոշեցին, որ մարդ ուղարկեն Երանելի Բարսիլիոսի մոտ համոզելու, որ գա. որովհետև, ասում էին, նա հզոր է խոսքով, նա մեծ շնորհ ունի սատանայի դավանան նենգությունը խափանելու. որովհետև նա մտածում է (Քրիստոսի) եկեղեցու մասին, որը նա հաստատեց իր արյունով:

Եվսեբիոս եպիսկոպոսը աղաչանքի թուղթ գրեց Բարսեղ երիցապետին, որի մեջ արժանավայել պատվով ու մեծ պաղատանքով խընդրում էր, որ առաջ պատահած գժտությունը մտքից հանե, այլ փութա առանց դանդաղելու գա, որովհետև խոսք ու քննություն պետք է կատարվի հավատի մասին: Բոլոր հոգևորականներն էլ աղաչանքի թուղթ ստորագրեցին, որ չդանդաղի, անմիջապես գա. հավատարիմ պատվավոր մարդիկ էլ ուղարկեցին, որ շտապեցնեն նրա գալուստը:

Երբ այս մարդիկ, որ գնում էին նրան բերելու, ճանապարհ ընկան ու ճանապարհին էին՝ սուրբ Բարսիլիոսը իր եղած տեղում տիրոջ պաշտոնը կատարելիս՝ մի ծանր խոր քնի մեջ ընկավ: Երազում տեսնում էր մի մեծ վայելուչ այգի, առատ պտուղներով լի. երեք խոզ ընկել էին այգին, մտել ու ապականում փորփրում էին այգին: Վազերի տակ շատ տեղ գետինը փորում էին, վազերն արմատախիլ անում, հողով հանդերձ դուրս էին հանում, քարուքանդ էին անում: Այգեպանները եկել աշխատում էին, բայց չէին կարողանում վնասարար խոզերը

խոզսն յայգւոյ անտի: Ապա զաղաղակ ճարեալ գոչէին առ Բարսիլիոս, և ասէին. Եթէ ոչ դու, Բարսիլիոս, եկեսցես, ոչ ոք կարէ հանել զխոզս յայգւոյ աստի, և ոչ մեծ ապականութիւնս դադարեսցէ. անապարես եկ ճասիր, զի տակաւին աւասիկ վնասս մեծամեծս առնեն: Ապա մատուցեալ Բարսիլիոս հանէր զվնասակարս զխոզսն յայգւոյ անտի, և կազմէր զխախտածն:

Եւ զարթեաւ սքանչելին Բարսեղ, և զարմացեալ ընդ այն տեսիլն, էր մտախոհ. և խորհէր ընդ միտս իւր վասն տեսլեանն՝ թէ զինչ իցէ. և անդէն ճասեալ մատուցանէին նմա զթուղթն առաքեալքն 'ի Կեսարիայ քաղաքէ Եւսեբի եպիսկոպոսի: Այլ իբրև ընթերցաւ, խնդայր և ուրախ լինէր. զի գիտաց թէ յաստուծոյ պատրաստեցաւ կոչել զնա ջատագով ճշմարտութեանն առ 'ի տալ պատասխանի: Յարուցեալ փութանակի գնաց զհետ կոչելեացն թղթին. և չոգաւ առ եպիսկոպոսն Եւսեբիոս: Եւ իբրև խորհեցան ընդ միմեանս զարժանն, ասաց Բարսիլիոս ցեպիսկոպոսն Եւսեբիոս, զի խնդրեսցէ 'ի կայսերէ իշխանութիւն՝ զոք յերիցանց տանել ընդ իւր: Եւ մտանէր Եւսեբիոս առ կայսրն, խնդրէր 'ի նմանէ և ասէր. Երկուս ածեր ինձ ախոյեանս, թո՛ղ եկեսցէ մի ոք ընդ իս յերիցանց իմոց: Եւ ճարցանէր կայսրն ցարիանոս եպիսկոպոսն, և յանձին կալան նոքա Եւսեբի քանի[23] ածցէ ընկերս ընդ ինքեան, յորժամ զայցէ յատեանն:

Իսկ իբրև ժամ ատենին ճասանէր, առեալ կայսերն զեպիսկոպոսն Եւսեբիոս, և ընդ նմա երանելին Բասիլիոս երիցապետն, և երկու ախոյեանքն ճակառակութեանն՝ որք 'ի կողմանէն կուսէ սատանայի էին, այս ինքն արիանոսք չեպիսկոպոսքն, և մտին 'ի քանից 'ի քննութիւն ճակառակութեան վասն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի Որդւոյն աստուծոյ, եթէ իցէ ծնունդ և որդի 'ի բնութենէ Հօր աստուծոյ, եթէ ոչ: Ապա Հոգւով սրբով լցեալ լինէր երանելին Բարսիլիոս, որ կայր զկնիազոյն եպիսկոպոսին Եւսեբի. և սա զրէր վկայութիւնս 'ի գրոց յԱրարածոց 'ի սկզբանէ յորինաց և 'ի մարգարէից և յԱռաքելոց և յամենայն աստուածաշունչ գրոց. յայտ առնէր և ցուցանէր, և զերկոսեան ախոյեանսն սատանայի կարկեալս ըմբռնեալս ամօթապարտեալս ճանդերձ թագաւորաւն կացուցանէր:

Ապա նայեցաւ թագաւորն Վաղէս ընդ եպիսկոպոսն, և ետես զի քրտնեալ էր, սկսանէր խօսել և ասէր. Այդ զի՞ է, զի զայդչափ ճոսին 'ի քէն քրտունքդ, զի 'ի բանս ճշմարտութեան քննութեան վարձկանազրչաւդ յաղթեցեր: Ետ պատասխանի Բասիլիոս թագաւորին և ասէր. Երկուս խոզս և մի էշ վարեալ այնչափ ընդ երկար ճանապարհ, և դու ասես. Զի՞ ես քրտնեալ այդչափ: Ապա զղջացաւ թագաւորն՝ թէ ընդէ՞ր

այգուցը դուրս անել: Ապա նրանք ձայն էին տալիս Բարսիլիոսին ու ասում. «Եթե դու, Բարսիլիո՛ս, չգաս՝ ուրիշ ոչ ոք չի կարողանա այս խոզերը այգուց դուրս հանել և ապականությունը չի դադարի. շտապի՛ր, ե՛կ, հասի՛ր, տե՛ս թե ի՛նչ մեծ վնասներ են գործում»: Ապա ինքը Բարսիլիոսը՝ ներս էր մտնում, վնասարար խոզերը դուրս էր անում այգուց և խախտված տեղերը նորից կարգի բերում:

Քնից զարթեց սքանչելի Բարսեղը, զարմանում էր այս տեսիլքի վրա և մտածում էր, թե այդ ի՞նչ է նշանակում, և ահա եկան այն մարդիկ, որ Եվսեբիոս եպիսկոպոսի կողմից ուղարկված էին Կեսարիա քաղաքից, և թուղթը հանձնեցին: Կարդաց և ուրախ եղավ, որովհետև իմացավ, որ աստծուց էր թելադրված՝ իրեն հրավիրել ճշմարտությունը պաշտպանելու և (արիանոսներին) պատասխան տալու: Ուստի իսկույն վեր կացավ, հրավիրողների հետ միասին գնաց Եվսեբիոս եպիսկոպոսի մոտ: Հարկավոր բաների մասին խորհրդակցեցին, Բարսիլիոսը Եվսեբիոս եպիսկոպոսին ասաց, որ կայսրից իրավունք խնդրե իրենցից մեկին իր հետ տանելու: Եվսեբիոսը գնաց կայսեր մոտ և խնդրեց ասելով. «Դու իմ դեմ երկու ախոյան ես հանում, թող ինձ հետ էլ գա իմ երեցներից մեկը»: Կայսրը հարցրեց արիանոս եպիսկոպոսներին, նրանք էլ համաձայնեցին, որ Եվսեբիոսը ատյան գալիս իր հետ բերե մի քանի ընկերներ:

Երբ ատյանի ժամը հասավ՝ կայսրը առավ Եվսեբիոս եպիսկոպոսին և նրա հետ երանելի Բարսիլիոս երիցապետին, իսկ հակառակորդներից, որոնք սատանայի կողմից էին՝ նրանց երկու ախոյաններին, արիանոս եպիսկոպոսներին, և քննության ու վիճաբանության մեջ մտան Հիսուս Քրիստոսի, աստծու որդու մասին, արդյոք նա ծնո՞ւնդ է և որդի հոր աստծու բնությունից թե ոչ: Երանելի Բարսիլիոսը, որ կանգնած էր Եվսեբիոս եպիսկոպոսի ետևը, սուրբ հոգով լցված՝ վկայություններ էր գրում Արարածոց գրքից, օրենքներից, մարգարեներից, առաքյալներից, ամբողջ աստվածաշունչ գրքից, բացատրում էր և ապացուցանում և սատանայի արքանյակ երկու ախոյաններին՝ թագավորի հետ միասին պապանձեցնում էր և ամոթապարտ դարձնում:

Այս ժամանակ Վաղես թագավորը նայեց եպիսկոպոսի վրա ու տեսավ որ քրտնել է: Սկսեց խոսել ու ասաց. «այդ ի՞նչ բան է՝ ինչո՞ւ ես այդքան քրտնել, ճշմարտությունը քննելու ժամանակ դու այդ վարձկան գրչի միջոցով հաղթեցիր»: Եպիսկոպոսը թագավորին պատասխանեց ու ասաց. «երկու խոզ ու մի էշ այսքան երկար ճանապարհ քշեցի, և դու դեռ ասում ես, թե ինչո՞ւ ես քրտնել»: Թագավորը զղջաց, որ

զԲարսիլիոսն հրամայեցին օժանդակ բնաւ Եւսեբի թողուլ 'ի ներքս: Ապա յոտն կացեալ ամօթով արհանոսքն ասացին ցթագաւորն, թէ ընդէ՞ր այս աշխատութիւն քննութեանց են. այլ տիրաբար տուր հրաման. զի որք քո կամացդ ոչ լուիցեն, անկցին 'ի տագնապ նեղութեան: Եւ լուծեալ զատեանն վճարեցաւ:

Եւ ետ հրաման՝ զի զԵւսեբիոս արկանել 'ի բանդ, և ընդ նմա զբազումս, և նեղութիւն 'ի վերայ ուղղափառ օրթոդոքսաց քրիստոնէից հասուցանէր. և ետ հարկս 'ի վերայ եկեղեցեացն տուժիւք մեծաւ ծանրութեան տուգանօք: Յայնժամ 'ի դառն կապանացն պատուհասէն մեռանէր եպիսկոպոսն Եւսեբիոս 'ի ներքս 'ի բանդին: Իսկ վասն սրբոյն Բարսեղի ասէին ժողովուրդքն Կեսարու. Եթէ ոչ արձակէք զդա 'ի բանդէդ, այրեմք զքաղաքս զամենայն: Յորժամ ամենեքեան միաձայն զայս աղաղակէին, թողացոյց թագաւորն, և արձակել հրամայէր զերանելին Բարսիլիոս:



ՅԱՂԱԳՍ ԹԷ ՈՐՊԷՍ ԱՐԱՐԻՆ ԶՍՈՒՐԲՆ ԲԱՐՍԻԼԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ, Ո՛ՐՊԷՍ ԵՂԵՆ ՅԱՍՏՈՒԾՈՅ ՍՔԱՆՉԵԼԻՔՆ. ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՀՐԱՄԱՅԵԱՑ ԶԱՄԵՆԱՅՆ ԳԱՆՁՍՆ ՈՐ 'Ի ՔՐԻՍՏՈՍ ՀԱՒԱՏԱՑԵԱԼ ԷԻՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ՝ ԺՈՂՈՎԵԼ, ԵՒ ՆՈՔԱ ԽՆԴՈՒԹԵԱՄԲ ԲԵՐԷԻՆ ԵՒ ՏԱՅԻՆ 'Ի ԴՈՒՐՍ ՎԱՍՆ ԿԵՆԱՐԱՐԻՆ ՄԵԾԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ. ԵՒ ԿԱՄ ԶԻԱՐԴ ԽՆԴՐԷԻՆ ՈՒԽՏԻՒՔ ԵՒ ԽՆԴՐՈՒԱԾՈՎՔ 'Ի ՎԵՐԱՅ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ

Ապա ժողովեցան ամենայն եպիսկոպոսք իշխանութեանն Կեսարու, և ընտրեցին զսուրբն Բարսիլիոս առնել արքեպիսկոպոս Կեսարու: Եւ իբրև ժողովեալք էին 'ի միահամուռ հասարակ միաբան ամենայն եպիսկոպոսք 'ի ձեռնադրել զսուրբն Բարսեղ, էջ աղաւնին յերկնից և հանգեաւ 'ի վերայ նորա, որպէս յառաջնումն յառնելն զեպիսկոպոսապետն Ներսէս: Եւ եղեն զարմանալիք մեծապէս յաչս ամենեցուն. սկսան գոհանալ զմարդասիրէն Քրիստոսէ, զի որ յանձն իւր յայտնեաց զնշանս աստուածութեանն, զայն և ոչ 'ի ծառայիցն և 'ի սրբոցն արգելոյր: Եւ եկաց Բարսեղ յաթոռ կաթողիկոսութեանն Կեսարու:

Այլ թագաւորն Վաղէս նեղէր զքրիստոնէից ժողովուրդն. Զի, ասէ, որ քրիստոնեայ անուն յիշխանութեան իմում կայցէ, մի գտցի նորա արծաթ և ոսկի, զի տայցէ յարքունիս: Եւ սկսան ժողովել 'ի զօրաց 'ի զօրավարաց և 'ի քաղաքաց քաղաքաց երդմամբ, զի որ զայն անունն ունիցին, մի՛ գտցի ոսկւոյ կամ արծաթոյ զանակ առ ումեք. ապա

թույլ տվին Բարսիլիոսին էլ ներս մտնել Եվսեբիոսին օգնական: Իսկ արիանոսները ամոթահար վեր կենալով ասացին թագավորին. «Ի՞նչ պետք են այս քննությունները ու նեղությունները. իբրև տեր հրամայի՛ր, որ քո կամքին չհնազանդողները հալածանքի ենթարկվին»: Սրա վրա ատյանը լուծվեց ու վերջացավ:

Եվ (Վաղես թագավորը) հրամայեց բանտը դնել Եվսեբիոսին և նրա հետ ուրիշ շատերին, և ուղղահավատ ուղղափառ քրիստոնյաներին նեղություն էր տալիս, բոլոր եկեղեցիների վրա հարկ դրեց շատ մեծ տուգանքով:

Եվսեբիոս եպիսկոպոսը բանտի մեջ մեռավ դառն նեղություններից: Իսկ սուրբ Բարսեղի վերաբերմամբ Կեսարիայի ժողովուրդներն ասում լին. «եթե դրան բանտից չարձակեք՝ ապա մենք քաղաքին կրակ կտանք կայրենք»: Երբ բոլորն սկսեցին այսպես աղաղակել՝ ապա թագավորը ներեց և հրամայեց երանելի Բարսիլիոսին ազատ արձակել:



ԹԵ Ի՞ՆՉՊԵՍ ԲԱՐՍԵԼԻՈՍԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԸՆՏՐԵՑԻՆ ԵՎ Ի՞ՆՉՊԵՍ ԱՍՏԾՈՒՑ ՍՔԱՆՉԵԼԻՔ ԵՂԱՎ. ԿԱՄ Ի՞ՆՉՊԵՍ ՀՐԱՄԱՅԵՑ ՔՐԻՍՏՈՍԻ ՀԱՎԱՏԱՑՈՂ ԺՈՂՈՎՐԴԻՆ՝ ԲՈԼՈՐ ԳԱՆՁԵՐԸ ԲԵՐԵԼ ԵՎ ՆՐԱՆՔ ՈՒՐԱԽՈՒԹՅԱՄԲ ԲԵՐՈՒՄ ՏԱԼԻՍ ԷԻՆ ԵԿԵՂԵՑՈՒՆ ԿԵՆԱՐԱՐ ԱՍՏԾՈՒ ՀԱՄԱՐ, ԿԱՄ Ի՞ՆՉՊԵՍ ՈՒԽՏ ՈՒ ԽՆԴՐՎԱԾՔՆԵՐ ԷԻՆ ԱՆՈՒՄ ԻՐԵՆՑ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Ապա Կեսարիայի սահմանի բոլոր եպիսկոպոսները ժողովվեցին և սուրբ Բարսիլիոսին ընտրեցին Կեսարիայի արքեպիսկոպոս: Երբ բոլոր եպիսկոպոսները միատեղ ժողովված էին սուրբ Բարսեղին ձեռնադրելու՝ երկնքից աղավնին իջավ ու հանգչեց նրա վրա՝ ինչպես առաջին անգամ, երբ ձեռնադրում էին Ներսես եպիսկոպոսապետին: Զարմանքը բոլորին բռնեց. սկսեցին գոհություն մատուցանել մարդասեր Քրիստոսին, որ ինչպես իր վրա ցույց տվեց աստվածության նշանները՝ նույնը ցույց տվեց (իր) ծառաների և սրբերի վրա: Եվ Բարսեղը նստեց Կեսարիայի կաթողիկոսության աթոռը:

Իսկ Վաղես թագավորը նեղում էր քրիստոնյա ժողովուրդներին. «ով որ, ասում էր նա, իմ իշխանության մեջ քրիստոնյա անուն է կրում՝ նա ոսկի և արծաթ չպիտի ունենա, պարտավոր է պետության տալ»: Եվ սկսեցին զանազան քաղաքներից, զորքերից ու զորավարներից երդումով ժողովել, որպեսզի քրիստոնյա անուն կրողներից ոչ մեկի մոտ ոչ մի դանկ[91] ոսկի կամ արծաթ չմնա, իսկ եթե գտնվի՝

եթէ առ ումեք գտցի, մեռցի: Ապա ամենայն ոք խնդութեամբ բերէին տային 'ի դուրս վասն անուանն Քրիստոսի, կամեցեալք խնդութեամբ կրել զպատուհաս: Ապա ստիպել սկսան և գործակալքն թագաւորին ժողովել արծաթ և ոսկի 'ի ժողովրդոցն կեսարացւոց քաղաքին. ապա քաջալերել սկսաւ զնոսա երանելին Բարսիլիոս, զի խնդամիտ սրտիւ բերցեն: Սկսաւ ասել ցնոսա այսպէս, թէ՝ Բերէք 'ի ձեռն իմ, ես լինիմ երաշխաւոր. զի նոյն ինքն տէր Քրիստոս միածին Որդին աստուծոյ, վասն որոյ նա խրոխտացեալ է 'ի մարտս, սատակեսցի 'ի նմանէն: Այլ դուք վասն տեառն ձերոյ զափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալարուք. զի ձեզ յերկինս պահի զանձն՝ որ ոչ անցանէ, այլ զի զայս զանձս ես տաց ձեզ դարձուցեալ ձեռն 'ի ձեռն 'ի հուպ ժամանակի: Ապա ամենայն ժողովուրդք քաղաքին կեսարու եկին բերին 'ի մի վայր ժողովեցին որ մի անգամ ոսկի կամ արծաթ ուրուք գտաւ. լցին զեկեղեցի, և ածին զիշխանսն թագաւորին զհաւատարիմս. կնքեցին զդուրս եկեղեցւոյն:

Յետ այսորիկ ետ հրաման թագաւորն Վաղէս կապել կրկին զեպիսկոպոսապետն Բարսեղ, արկանել 'ի բանտ 'ի նեղութիւն. սոյնպէս զամենայն եպիսկոպոսունս ընդ ամենայն քաղաքս: Այլ ամենայն ժողովուրդն յուխտս և 'ի խնդրուածս լինէին վասն բարկութեանն հասելոյ, զի դադարեսցէ, և դարձ լիցի ճշմարիտ հաւատոցն յիւրաքանչիւր տեղի և յիւրաքանչիւր ժողովուրդս:

## Ժ

### ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԿՈՉԵԱՑ ԿԱՅՍՐՆ ՎԱՂԷՍ ԶՍՈՓԷՍՏԷՍՆ 'Ի ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ ԸՆԴԴԷՄ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ, ԵՒ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԵՏԵՍ ՍՈՓԵՍՏԷՍՆ ԶՍՔԱՆՉԵԼԻՍՆ. ՏԵՍԱՆԵԼՈՎ ԶՔԱՋՄՈՒԹԻՒՆ ՎԿԱՅԻՑՆ 'Ի ՆԵՐՔՍ 'Ի ՎԿԱՅԱՐԱՆԻՆ. ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԿԱՅՍՐՆ ՎԱՂԷՍ ՍԱՏԱԿԵՑԱՒ ՆՇԱՆՕՔՆ ԵՂԵԼՈՎՔ ՅԱՍՏՈՒԾՈՅ. ԵՒ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ԼԻՆԷՐ ԵԿԵՂԵՑԵԱՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ

Ապա խնդիր հրամայէր առնել թագաւորն Վաղէս, զի տեսցեն գտցեն այր մի ճարտար, որ կարող իցէ դնել զրով բանս դիմադարձութեան ընդդէմ հաւատոց քրիստոնէութեան: Եւ պատմեցին նմա, զի էր այր մի սոփեստէս ճարտար 'ի քաղաքի միոջ: Ապա առաքեաց կայսրն առ նա մագիստրիանոսս, զի երթիցեն փութով և անզբաղապէս զայրն առ նա ածցեն. և առեալ ածին փութապէս:

Իբրև գնացեալ զայր օթևանս երկուս, դէպ եղև նոցա դիպել այլ քաղաքի միոջ. և արտաքոյ քաղաքին վկայանոց մի սուրբ տիկնոջն Թեկ-

այնպիսին մեռնի: Ապա ամեն ոք խնդությամբ բերում հանձնում էին եկեղեցուն Քրիստոսի անվան համար, հոժարությամբ հանձն առնելով այդ պատուհասը: Այս կերպով թագավորի գործակալները ստիպեցին Կեսարիա քաղաքի ժողովրդին՝ ոսկին ու արծաթը ժողովելու: Երանելի Բարսիլիոսն սկսեց քաջալերել ժողովրդին, որ ուրախ սրտով բերեն: Նրանց այսպես էր ասում. «բերե՛ք իմ ձեռքս հանձնեցեք, և ես երաշխավոր եմ լինում, որ ինքը մեր տեր Հիսուս Քրիստոսը, աստծու որդին, որի դեմ թագավորը խրոխտացել կռվում է՝ նրան կսատակեցնե: Բայց դուք ձեր տիրոջ համար հանձն առեք ուրախությամբ ձեր ստացվածքների հափշտակությունը, որովհետև երկնքում ձեզ համար պահվում է այն գանձը, որ չի կորչում. իսկ այստեղի գանձը ես կարճ ժամանակում անձամբ ձեր ձեռքը կհանձնեմ դարձյալ»: Ուստի Կեսարիա քաղաքի բոլոր ժողովուրդը բերեց մի տեղ ժողովեց որքան ոսկի կամ արծաթ յուրաքանչյուրի մոտ կար. բերին լցրին եկեղեցին, կանչեցին թագավորի հավատարիմ իշխաններին և եկեղեցու դռները կնքեցին:

Սրանից հետո Վաղես թագավորը հրամայեց նորից կապել Բարսեղ եպիսկոպոսապետին, բանտը ձգել և նեղել, նույնպես և բոլոր քաղաքներում բոլոր եպիսկոպոսներին: Բայց բոլոր ժողովուրդը ուխտ ու խնդրվածքներ էր կատարում, որ այս վերահաս բարկությունը դադարի և ճշմարիտ հովիվները դառնան գան իրենց տեղերը, իրենց ժողովուրդների մոտ:

### ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՎԱՂԵՍ ԿԱՅՍՐԸ ՍՈՓԵՍՏԵՍԻՆ ԿԱՆՉԵՑ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ ՄԱՔԱՌԵԼՈՒ. Ի՛ՆՉՊԵՍ ՆԱ ՏԵՍԱՎ ՍՔԱՆՉԵԼԻՔԸ, ՈՐ ՎԿԱՆԵՐԸ ԺՈՂՈՎՎԵԼ ԷԻՆ ՎԿԱՅԱՐԱՆՈՒՄ, ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ՎԱՂԵՍ ԿԱՅՍՐԸ ՍԱՏԿԵՑԱՎ ԱՍՏԾՈՒՑ ԵՐԵՎՑԱԾ ՆՇԱՆՆԵՐՈՎ, ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ ԳՏԱՆ ԱՍՏԾՈՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԸ:

Այն ժամանակ Վաղես թագավորը հրամայում էր փնտրել գտնել մի ճարտար մարդ, որ կարող լինի գրով հակաճառել քրիստոնեական հավատի դեմ: Նրան պատմեցին, թե ինչ-որ քաղաքում կա մի ճարտար սոփեստես[92]: Կայսրը նրա մոտ մագիստրոսներ[93] ուղարկեց, որ շուտով գնան և նրան անհապաղ իր մոտ բերեն: Գնացին իսկույն տարան:

Երկու օրևան անցնելով նրանք եկան հասան մի ուրիշ քաղաք. քաղաքից դուրս կար մի վկայարան սրբուհի Թեկղիի[94]: Երբ այստեղ հա-

ղի: Իբրև պատահեաց այնմ, էջ սոփեստէս և իւր վանս ունէր 'ի ներքս 'ի վկայանոցի անդ. իսկ մագիստրիանոսքն ունէին վանս իւրեանց 'ի քաղաքին: Եւ իբրև կերաւ հաց սոփեստէսն, էարկ անկողին, և փակեաց զդուրս վկայանոցին. և ինքն 'ի նիստ եղեալ 'ի վերայ անկողնին, կամէր լինել 'ի կողմն. մինչ դեռ արթուն էր, աչօք բացօք տեսանէր, զի յանկարծ բացան դրունք վկայանոցին, որ եղև ժողով մեծ բազմութեան վկայիցն, որ երևեցան մեծապէս փառօք: Եւ ելանէր ընդ առաջ նոցա սուրբ տիկինն Թեկղէս զարդարեալ մեծապայծառ, զի նշոյլք որպէս 'ի լուսոյ հատանէին 'ի նմանէն. և առնէին միմեանց ողջոյն. և ասէր ցնոսա տիկինն Թեկղ, թէ՝ Բարի՛ եկիք, սիրելիք բարեկամք և վաստակաւորք Քրիստոսի: Տուեալք միմեանց ողջոյն, արկեալք զիւրաքանչիւր զաթոռսն, նստէին կարգաւ: Ապա սկսանէին սուրբքն խօսել, և ասէին. Սուրբք տեառն, որ չև են հրաժարեալ յերկրէս, դեռ ևս աստէն 'ի նեղութեան են. են որք 'ի կապանս են, են որք 'ի փիւղակէս են, են որք յաքսորս, և են որք յայլ բռնութեան են 'ի զրպարտութեան 'ի հարկս և 'ի խոշտանգանս չարչարանաց: Եւ մեք փութապէս ժողովեցաք, զի մի անտեսութեամբ անփոյթ արասցուք նախանձախնդիր լինել տեառն հաւատացելոց: Վասն զի մանաւանդ բազում մշակք տեառն խափանեալ կան, և բազում անդք 'ի դերև ելին, և բազում այգիք խոպանացան. պարտ է մեզ զխափանիչս մշակացն զՎաղէս խափանել, զի ամենայն մշակ 'ի գործ իւր կանխեսցէ: Եւ քաջ մշակն Բասիլիոս յիւրմէ գործոյն կայր խափանեալ: Արդ եկայք առաքեսցուք 'ի մէնջ երկուս, որք երթիցեն վճարիցեն 'ի կենաց զչարագործն Վաղէս: Ապա միում անուն էր Սարգիս 'ի նոցանէ, և միւսումն Թէոդորոս. արձակէին զնոսա, դնէին ժամ և ասէին. 'Ի սոյն ժամ եկեսջիք դուք և մեք: Եւ յարուցեալ գնացին և մեկնեցան:

Եւ զայս ամենայն լուեալ սոփեստէսն, որ էր 'ի վկայանոցին, և տեսեալ զայս տեսիլ աչօք բացօք, և կայր զարմացեալ, և անքուն լինէր մինչև յառաւօտն զցայգն: Եւ ընդ այգս այգոյն եկին հասին մագիստրիանոսքն. և ասեն ցսոփեստէսն. Արի գնասցուք զճանապարհս: Եւ խօթապատճառս լինէր, և ոչ կարէր 'ի տեղւոյն խաղալ: Իբրև սկսան նոքա ստիպել զնա, իսկ նա թալանայր, հանէր զոգին, ոգի զոգւով ածէ.., և ոչ կարէր բանիցն տալ պատասխանի մինչև յերեկոյ: Ապա իբրև երեկոյ եղև, թողին զնա մագիստրիանոսքն 'ի վկայանոցին, և գնացին 'ի քաղաքն 'ի վանս իւրեանց: Եւ սոփեստէսն փակէր զդուրս վկայանոցին, 'ի կողմն եղեալ յիւրում տեղւոջն, յանկարծակի դարձեալ երևեցաւ նմա, զի բացան դրունք վկայանոցին, եկին կուտեցան, և լի եղև վկայանոցն նոքիւն վկայիւք: Եւ ելանէին միմեանց ընդ առաջ մե-

սան սոփեստեսը իջավ և իրեն կացարան ընտրեց վկայարանի ներսը, իսկ մագիստրոսներն իջևանեցին քաղաքում: Սոփեստեսը հաց կերավ, անկողին ձգեց, վկայարանի դռները փակեց, անկողնի վրա նստեց և ուզում էր պառկել: Եվ մինչդեռ արթուն էր՝ բաց աչքերով տեսավ, որ վկայարանի դռները բացվեցին և երևաց վկաների մեծ բազմություն մեծ փառքով: Նրանց առաջ դուրս եկավ սրբուհի տիկին Թեկղին փառավոր զարդարված, կարծես լույսի ճառագայթներ էին թափվում վրայից: Իրար ողջունեցին, տիկին Թեկղին ասում էր նրանց. «Բարով եկաք, Քրիստոսի սիրելիներ, բարեկամներ և վաստակավորներ»: Իրար ողջունելուց հետո, աթոռներ դրին ու կարգով նստեցին: Հետո սրբերն սկսեցին խոսել և ասում էին. «Տիրոջ այն սրբերը, որոնք դեռ ապրում են աշխարհում. ճգնությունների մեջ են, ոմանք կապանքներում, ոմանք բանտերում, ոմանք աքսորում, ուրիշները ենթարկված են բռնությունների. պարսիկի հարկերի, տանջանքների: Մենք փութացինք այստեղ ժողովվել, որպեսզի անուշադիր չմնանք այս (չարչարանքներին), այլ նախանձախնդիր լինինք աստծուն հավատացողների համար: Մանավանդ որ տիրոջ շատ մշակներ խափանվել են, շատ արտեր անմշակ են մնացել, շատ այգիներ խոպանացել են. հարկավոր է մշակների (գործը) խափանող Վաղեսին խափանել, որպեսզի ամեն մի մշակ իր գործին կանգնի: Բասիլիոս քաջ մշակն էլ իր գործից խափանվել է: Եկե՛ք, մեզանից երկուսին ուղարկենք, որ գնան, չարագործ Վաղեսին կյանքից զրկեն»: Ապա ընտրում էին երկուսին, մեկի անունը Սարգիս, մյուսինը Թեոդորոս[95], նրանց ուղարկում էին և ժամադիր էին լինում. «(Վաղը) նույն այս ժամին եկեք, մենք էլ կգանք»: Հետո վեր կացան, իրարուց բաժանվեցին գնացին:

Այս բոլորը լսեց սոփեստեսը, որ վկայարանում էր գտնվում, բաց աչքերով տեսավ, մնացել էր զարմացած, մինչև լույս անքուն մնաց: Լույսը բացվելուն պես մագիստրոսներն եկան և ասացին սոփեստեսին. «Վե՛ր կաց, մեր ճանապարհը գնանք»: Նա պատճառ բերեց թե տկարացել է, չի կարող տեղից շարժվել: Երբ նրան սկսեցին ստիպել՝ նա թալկացավ, ուշաթափվեց, հազիվ էր շունչ քաշում և մինչև երեկո չէր կարողանում նրանց պատասխան տալ: Երբ երեկո եղավ՝ մագիստրոսները նրան թողին, գնացին քաղաք, իրենց կացարանը: Իսկ սոփեստեսը վկայարանի դռները փակեց և իր տեղում ընկողմանեցավ: Նրան հանկարծ դարձյալ երևաց, որ վկայարանի դռները բացվեցին, եկան ժողովվեցին և վկայարանը լցվեց նույն վկաներով: Իրար առաջ էին դուրս

ծաւ ուրախութեամբ,՝ և տային միմեանց ողջոյն. ապա արկանէին զաթոռս իւրաքանչիւր կարգաւ յօրինեալ բոլորէին կարգէին 'ի նստել: Ապա գային սուրբքն Սարգիս և Թէոդորոս երկոքեան 'ի գործոյն՝ յոր առաքեալ էին, և մտանէին 'ի ժողովս սրբոցն: Ապա հայեցան բազմութիւն ժողովոյ վկայիցն, եթէ՝ ո՞րպէս յոր գործ երթեալ էիք՝ վճարեցէք: Պատասխանի տուեալ ասէին, թէ՝ էր իսկ յորժամ 'ի ձէնջ գնացաք, սպանաք զթշնամին ճշմարտութեանն զՎաղէս. և 'ի՛ սոյն ժամ առ ձեզ դարձեալ եկեալ եմք աւասիկ առ ձեզ: Եւ յարուցեալ գոհանային ամենայն բազմութիւն ժողովոյն զտեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ. և ինքեանք մեկնեցան յիւրաքանչիւր տեղիս: Եւ յահի մեծի լինէր սոփեստէսն մինչև յայգ յառաւօտն:

Ապա իբրև այգ եղև, եկին մագիստրիանոսքն, ասեն ցսոփեստէսն. Արի գնասցուք առ կայսրն: Նորա պատասխանի տուեալ, ասէ. Կայսրն մեռաւ, արդ մեք առ ո՛ երթիցուք: Եւ բազում վինումն 'ի մէջ եղեալ նոցա վասն այսր բանիս, և գրաւական եդեալ 'ի մէջ վասն այսր բանիս մինչև յերիս աւուրս: Եթէ ոչ, ասէ, հարցին աւար վաճառք, և քաղաքք յափշտակեսցին, ես՝ եթէ կայցէ նոյն կայսրն՝ գլխատեցայց, զի իշխեցի զայս ճառել: Ապա թոյլ տային նմա մագիստրիանոսքն մինչև յերիս աւուրս. և յետ երից աւուրցն ստուգեցաւ զրոյցն, զի մեռեալ էր կայսրն:

Ապա յետ այսորիկ արձակեցան ամենայն, որ միանգամ ոք կայր 'ի պատիժս կամ յաքսորս. և դարձան ուրուք ուրուք որ միանգամ ինչք էին յափշտակեալք: Սոյնպէս և զկեսարացւոցն հրաման ետուն տալ զիւրաքանչիւր իրաց. և կոչեցեալ սրբոյն Բարսղի, զի զիւրաքանչիւր առցեն, և ոչ կամէին հուպ լինել: Զի թէպէտ և ասէր ցնոսա Բարսեղ՝ եթէ ահաւասիկ երաշխաւոր իմ թափեցաւ ձեզ, զի ասացի, թէ և տաց ձեզ ձեռն 'ի ձեռն 'ի ձեռս ձեր: Եւ ոչ ինչ կամէին ունկնդիր լինել, այլ ասէին. Այդ 'ի գանձ տեառն երթիցէ, որ դատեցաւ զդատաստանս մեր, և խնդրեաց վրէժ սուրբ եկեղեցւոյ ուխտի իւրոյ: Եւ ոչ ոք 'ի կեսարացւոց անտի հպեցաւ յարծաթ իւր, և ոչ մի ոք. բայց թողին զայն 'ի գանձ եկեղեցւոյն: Ապա էառ զայն արքեպիսկոպոսն, արար աւազանս մկրտութեան կնքոյ տալոյ. և կան հաստատեալ աւազանքն արծաթիք 'ի տուն լուսարանին մինչև ցայսօր ժամանակի:

գալիս մեծ ուրախությամբ, իրար ողջունում էին և աքոռներ դնելով կարգով բոլորվում նստում էին: Հետո եկան սուրբ Սարգիսն ու Թեոդորոսը այն գործից, որի համար ուղարկված էին, և մտնում էին սրբերի ժողովը: Ապա ժողովված վկաների բազմությունը հարցրեց. «Ինչպես վերջացրիք այն գործը, որի համար գնացել էիք»: Նրանք պատասխանեցին ասելով. «Հենց որ երեկ ձեր մոտից գնացինք՝ ճշմարտության թշնամուն Վաղեսին սպանեցինք[96] և միևնույն այս ժամին դարձանք եկանք մեզ մոտ»: Ժողովված բոլոր բազմությունը վեր կացավ, գնացավ մեր տեր Հիսուս Քրիստոսից, հետո բաժանվեցին, ամեն մեկը գնաց իր տեղը: Սոփեստեսը մեծ ահի մեջ մնաց մինչև առավոտ:

Երբ լուսացավ՝ մագիստրոսներն եկան և ասացին Սոփեստեսին. «Վե՛ր կաց, գնանք կայսեր մոտ»: Նա պատասխան տվեց ու ասաց. «Կայսրը մեռավ, էլ ո՞ւմ մոտ պիտի գնանք»: Այս մասին նրանց մեջ մեծ վեճ բացվեց, գրազ եկան այս առիթով մինչև երեք օր: «Եթե, ասաց նա, ապրանքները չքալանվին, փաղաքները չկողոպտվին, եթե կայսրը նույնը մնա՝ ապա թող ես գլխատվիմ, որ այսպիսի բան համարձակվեցա ասել»: Նրան մագիստրոսները երեք օր ժամանակ տվին, երեք օրից լուրը ստուգվեց որ կայսրը մեռել է:

Սրանից հետո ազատ արձակվեցին բոլոր նրանք, որոնք պատիժների էին ենթարկված կամ աքսորված էին. և ումից ինչ որ հափշտակված էր՝ վերադարձրին: Նույնպես կեսարացոց համար հրաման տվին՝ ամեն մեկի իրերը վերադարձնել: Սուրբ Բարսեղը կանչեց, որ ամեն մեկը իր բերած իրը վերցնի, բայց ոչ ոք չէր ուզում մոտենալ: Թեպետ և Բարսեղը նրանց ասում էր. «Ահա իմ երաշխավորած իրերն ազատվեցին, և ես ձեզ խոստացա, թե անձամբ ձեր ձեռքը կհանձնեմ ձեր ստացվածքները». բայց նրանք չէին ուզում նրան լսել, այլ ասում էին. «Այդ իրերը թող մտնեն տիրոջ գանձարանը, որ մեր դատաստանը տեսավ և իր եկեղեցու սուրբ ուխտի վրեժն առավ»: Այսպես կեսարացիներից ոչ ոք իր արծաթին չնայեց, բոլորը թողին եկեղեցու գանձարանին: Ապա արքեպիսկոպոսը նրանցից շինել տվեց մկրտության ավազաններ, և այս արծաթե ավազանները մինչև այժմ էլ հաստատ մնում են լուսարանի[97] տանը:

## ԺԱ

### ՅԱՂԱԳՍ ԴԱՐՁԻ ԻՇԽԱՆԱՑՆ ԱՆԴՐԷՆ ՅԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ, ՈՐՔ ԵՐԹԵԱԼՔ ԷԻՆ ԱՌ ԿԱՅՍՐՆ ՎԱՂԷՍ, ԶԻ ԵԿԻՆ ԴԱՐՁԱՆ ԱՌ ՏԷՐՆ ԻՒՐԵԱՆՑ ԱՐՇԱԿ. ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՏՐՏՄԵԱԼ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԱՐՇԱԿԱՅ ԸՆԴ ԿԱՅՍՐՆ, Ո՛ՐՉԱՓ ԻՆՉ ՎՆԱՍԵԱՑ ԱՍՊԱՏԱԿԱՒ ԿՈՂՄԱՆՑ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՅՈՒՆԱՑ

Այսոքիկ են իշխանքն, որք չոգան 'ի թագաւորէն մեծէ Արշակայ 'ի Հայոց աշխարհէն առ կայսրն Յունաց առ Վաղէս: Ինքնին մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս. և մեծ նահապետն Մամիկոնեան տոհմին, որում անուն Վարդան կոչիւր. եղբայր սա մեծի սպարապետին Հայոց որում Վասակն կոչէր. որ դայեակք և սնուցիչք էին թագաւորին Արշակայ: Եւ ընդ նմա Մեհեն նահապետն Ռշտունեաց, և Մեհառ նահապետն Անձևացեաց, և Գարջոյլ Մաղխազ նահապետն Խորխոռունեաց, և Մուշկ նահապետն Սահառունեաց, և Դեմետ նահապետն Գնթունեաց, և Կիշկէն նահապետն Բագէնից, և Սուրիկ նահապետն Հռփձորոյ, և Վրկէն նահապետն Հաբուժենից. սոքա չոգան դեսպանութեամբ 'ի սէր միաբանութեան առ կայսրն Վաղէս: Իսկ թագաւորն Վաղէս արգել աքսորեաց զմեծ քահանայապետն Ներսէս, և փոխանակ սորա արձակեաց զեղբօրորդի զթագաւորին Արշակայ զԳնել և զՏիրիթ. և զանձս բազումս և անթիւ վասն զմիտս հանել թագաւորին Արշակայ, 'ի ձեռս Վարդանայ և որք ընդ նմա էին, առաքէր: Եկին հասին դեսպանքն երթեալք 'ի կայսրէն առ թագաւորն Հայոց մեծաց Արշակ. և մատուցանէին նմա զհրովարտակն կայսերն. և ընդ նմին զիր տուրչելոյ և ամբաստանութեան: Զի գրեալ էր կայսրն զաբոյն Ներսիսէ առ թագաւորն Հայոց Արշակ, թէ նա սպան զորդին իւր զմիամօր, վասն այսորիկ արգելաւ աստէն. զի մի՛ մեղադիր ինչ լինիցիս, ընկալ և զպատանեակսդ առաջի զարձակեալսդ զերկոսեան զեղբօրորդիսդ Արշակայ, զԳնելն և զՏիրիթն: Ունէին և զանթիւ կարասի զանձուցն առաջի թագաւորին:

Իսկ թագաւորն Արշակ, իբրև լուաւ և ետես զայս ամենայն, անշնորհ առնէր զտալիսն և զբերելիսն կարասոյն: 'Ի ցասումն մեծապէս բարկութեամբ ընդ կայսրն նիւթեաց, եթէ զիա՛րդ իշխեաց արգելուլ զայնպիսի այր զմեծ և զպատուական, զգլուխ և զվարդապետ զառաջնորդ աշխարհի և զթագաւորութեան միոյ: Քարինք բազումք, ասէ, 'ի վերայ կայսերն, և ձեր 'ի բերելդ. քարինք և մեր շատ կան 'ի թափել զատամունս նորա 'ի տալն, և ձեր 'ի բերելդ. զմեր վատթարութիւնս յո՛ տարայց. արդ այդմ երախտեացդ ես դարձուցանեմ: Տայր հրաման Վասակայ իւրում զօրավարին զօր ժողովել, զգունդս վանդակել, ելանել հարկանել և աւար առնուլ զկողմանս Գամրաց: Իսկ զօրավարն

## ԺԱ

## ԻՇԽԱՆՆԵՐԻ ՆՈՐԻՑ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ՎԵՐԱԴԱՌՆԱԼԸ, ՈՐՈՆՔ ԳՆԱՑԵԼ ԷԻՆ ՎԱՂԵՍ ԿԱՅՍԵՐ ՄՈՏ ԵՎ ԷԼԻ ԴԱՐՁԱՆ ԻՐԵՆՑ ՏԻՐՈՋ ԱՐՇԱԿԻ ՄՈՏ, ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԸ ՋԱՅՐԱՑԱՎ ԿԱՅՍՐԻ ՎՐԱ ԵՎ Ո՛ՐՔԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՄԲ ՎՆԱՍԵՑ ՀՈՒՆԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԵՐԻՆ

Սրանք են այն իշխանները, որոնք Հայոց աշխարհից Արշակ մեծ թագավորի կողմից գնացին Հունաց Վաղես կայսեր մոտ: Ինքը, Հայոց մեծ եպիսկոպոսապետ Ներսեսը և Մամիկոնյան ցեղի մեծ նահապետը Վարդան անունով, Հայոց մեծ սպարապետ Վասակի եղբայրը, որոնք Արշակ թագավորի դայակներն ու սնուցանողներն էին: Նրանց հետ Ռշտունյաց Մեհեն նահապետը, Անձևացյաց Մեհառ նահապետը, Խորխոռունյաց Գարջույլ Մախազ նահապետը, Սահառունյաց Մուշկ նահապետը, Գնթունյաց Դեմետ նահապետը, Բագենից Կիշկեն նահապետը, Հրսիձորի Սուրիկ նահապետը, Հաբուժենից Վրկեն նահապետը[98]: Սրանք դեսպանությամբ գնացին Վաղես կայսեր մոտ սեր և միաբանություն հաստատելու. իսկ Վաղես թագավորը արգելեց ու աքսորեց Ներսես մեծ քահանայապետին և նրա փոխարեն արձակեց Արշակ թագավորի եղբորորդիներին՝ Գնելին և Տիրիթին, և Արշատ թագավորի սիրտը առնելու համար անթիվ անհամար գանձեր տվեց Վարդանի և նրա հետ եղողների ձեռքը և ճանապարհ դրեց:

Դեսպանները կայսեր մոտից մեկնելով՝ եկան հասան Մեծ Հայքի թագավոր Արշակի մոտ, նրան մատուցին կայսեր հրովարտակը, որ պարունակում էր տրտունջ և ամբաստանություն: Որովհետև կայսրը Հայոց Արշակ թագավորին գրել էր սուրբ Ներսեսի մասին, թե նա սպանեց իր մեկ հատիկ որդուն, այս պատճառով այստեղ արգելվեց: Մեզ չմեղադրես. ընդունի՛ր մեր ազատ արձակած երկու պատանիներին, Արշակի եղբորորդիներին, Գնելին և Տիրիթին: (Դեսպանները) մատուցին թագավորին նաև անթիվ գանձերը:

Իսկ Արշակ թագավորը երբ լսեց ու տեսավ այս ամենը՝ դժգոհություն հայտնեց գանձերը տվողին էլ, բերողներին էլ: Սաստիկ զայրույթ արտահայտեց կայսեր դեմ, թե ի՛նչպես նա համարձակվեց արգելանքի ենթարկել այնպիսի մեծ և պատվավոր մարդու, որ մի աշխարհի և թագավորության գլխավորը, ուսուցիչն ու առաջնորդն էր: (Այդ) «շատ քարերը, ասում էր, կայսեր գլխին թափին և ձեր՝ որ բերել եք: Քարեր մենք էլ շատ ունենք՝ (դրանց) տվողի և ձեր՝ բերողների ատամները թափելու. ի՛նչպես պետք է այս անպատվությանը դիմանամ: Ես այս երախտիքի փոխարենը կհատուցանեմ»: Հրաման տվեց իր Վասակ զորավարին՝ զորք ժողովել, զենքեր կազմակերպել, գնալ,

սպարապետն Վասակ, վաղվաղակի զտուեալ հրամանս նորա կատարէր. զզօրս բազումս իբրև զերկերոյր և զվաթսուն հազարաց 'ի մի վայր կուտէր. հարկանէր աւար առնոյր զկողմանս Գամրաց մինչև 'ի քաղաքն յանկուրացւոց. զվեց ամ զմիմեանց զհետ աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց: Լցան աւարաւ բազմաւ և պէսպէս մեծութեամբ, բռնութեամբ սաստիւ մեծաւ թշնամութեամբ ընդ կողմանս ընդ այնոսիկ:

## ԺԲ

ՅԱՂԱԳՍ ԽԱԴԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԲԱԳՐԱՒԱՆԴԱՑՒՈՑ, ԶՈՐ ԷՐ ԶԵՌՆԱԴՐԵԱԼ ԵՒ ԹՈՂԵԱԼ ԷՐ ՆԵՐՍԷՍԻ ԵՏԵՂԱՊԱՀ ՅԻՒՐ ՏԵՂԻ. ԵՒ ԹԷ ՈՐՊԻՍԻ՛ ԱՅՐ ԷՐ. ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՔԱՓ ՆՇԱՆՔ ԿԱՄ ԶՕՐՈՒԹԻՒՆՔ ՈՐ 'Ի ՆՄԱՆԷՆ ԼԻՆԷԻՆ, ԿԱՄ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՅՐ 'Ի ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆՆ, ԵՒ ՈՉ ԱՌՆՈՅՐ ԱԿՆ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՄԵԾԻ ԱՐՇԱԿԱՅ, ԵՒ ԸՆԴԴԻՄԱՆԱՅՐ ԵՒՍ ԸՆԴԴԷՄ ՆՈՐԱ ՎԱՍՆ ԱՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾՈՑ ԻՆՉ. ԿԱՄ ՈՐՊԷՍ ԽՆԱՄ ՏԱՆԷՐ ԱՂՔԱՏԱՑ ԻԲՐԵՒ ԶԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏՆ ՆԵՐՍԷՍ

Այրս այս Խադ բուն էր սա 'ի Կարին գաւառէ, ի՛ գեղջէ Մարագայ. ձեռնասուն էր սա եպիսկոպոսապետին Ներսէսի, զառաջեաւ իւրով զսա էր սնուցեալ: Այլ իբրև 'ի միտս աջողակս եբեր, և յառաջադէմ եղև 'ի հաւատս, և հաւատարիմ յամենայն գործ գտաւ. իսկ իբրև յայնմ ևս առաւել 'ի պաշտօնն՝ զոր ունէր զսէրն ընդ եկեղեցին աստուծոյ, ապա աղքատաց ևս տեսչութիւն 'ի սրբոյն Ներսէսէ սմա հաւատացաւ. իսկ յայնմ ևս առաւել զբարեխնամութիւն ցուցանէր:

Ապա եպիսկոպոսապետն Ներսէս յորժամ երթայր յուղեգնացութիւնն յերկիրն Յունաց, ձեռնադրեաց զայս Խադ յեպիսկոպոսութիւն Բագրաւանդայ և Արշարունեաց, եթող զսա իւր փոխանակ տեղապահ, և գնաց: Իսկ աշխարհ ամենայն Հայոց լեզուին, 'ի գաւառաց գաւառաց, կողմանց կողմանց, տեղեաց տեղեաց մեծամեծք աշխարհակալք գաւառատեարք նահապետք մեծազգեացք և ամենայն ուխտ քահանայութեան, ժողովք միաբանական ժողովրդոցն, 'ի սուգ տխրութեան ընկղմեալ էին վասն իւրեանց հօտապետ գլխաւորին, զի հեռացաւ 'ի նոցանէ: Իսկ սուրբն Խադ եպիսկոպոսն առ հասարակ աշխարհի տայր հրաման 'ի պահս և յաղօթս մտանել և 'ի խնդրուածս, զի դարձ լիցի սրբոյն Ներսէսի: Եւ զամենայն ժամանակս, որչափ և արգելաւ նա անդ, համակ խնդրէին պահօք ժողովուրդքն. և ամենայնի իսկ Խադն առաջնորդէր նոցա, ոչ ինչ պակաս քան զիւրեանց բուն զհովուապետն Ներսէս, մինչև 'ի գալուստն նորա. մինչև կատարեաց տէր զաշխարհի խնդրուածս, և դարձաւ սուրբն Ներսէս 'ի տեղի իւր:

զարնել և ավարի առնել Գամիրքի կողմերը: Զորավար Վասակ սպարապետը ինքնուրույն կատարում էր նրա հրամանը, մի տեղ էր ժողովում մոտ երկու հարյուր վաքսուն հազար զորք, գնում զարնում ավարի էր առնում Գամիրքի կողմերը մինչև Անկյուրիա քաղաքը. վեց տարի[99] հետևեհետև ավերում էր Հունաց սահմանի երկիրները: Լիացան մեծ ավարով և տեսակ-տեսակ մեծություններով, բուռն թշնամությամբ սաստկապես (ապականելով) այդ կողմերը:

ԺԲ

ԲԱԳՐԵՎԱՆԴԱՑԻ ԽԱԴ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ, ՈՐԻՆ ՆԵՐՍԵՍԸ ՁԵՌՆԱԴՐԵԼ ԷՐ ՈՒ ԻՐԵՆ ՏԵՂԱՊԱՀ ԹՈՂԵԼ, Ի՜ՆՉՊԻՍԻ ՄԱՐԴ ԷՐ ՆԱ. ԿԱՄ Ի՜ՆՉ ՍՔԱՆՉԵԼԻՔՆԵՐ ԷԻՆ ԿԱՏԱՐՎՈՒՄ ՆՐԱ ՁԵՌՔՈՎ, ԵՎ Ի՜ՆՉՊԵՍ ՀԱՍՏԱՏ ԷՐ ՄՆՈՒՄ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՄԵՋ, ՉԷՐ ԱԿՆԱԾՈՒՄ ԱՐՇԱԿ ՄԵԾ ԹԱԳԱՎՈՐԻՑ, ԱՅԼ ԵՎ ԸՆԴԴԻՄԱՆՈՒՄ ԷՐ ՆՐԱՆ ՆՐԱ ԱՆՕՐԵՆ ԳՈՐԾԵՐԻ ՀԱՄԱՐ, ԵՎ Ի՜ՆՉՊԵՍ ԽՆԱՄՈՒՄ ԷՐ ԱՂՔԱՏՆԵՐԻՆ՝ ՆԵՐՍԵՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ ՆՄԱՆ

Այս Խադը բուն Կարին գավառից էր, Մարագ գյուղից. նա Ներսես եպիսկոպոսապետի ձեռնասունն էր, նրա մոտ սնված: Նա ցույց տվեց ընդունակություններ, հավատի մեջ առաջադեմ հանդիսացավ, բոլոր գործերում հավատարիմ գտնվեց իր պաշտոնի մեջ առավելապես սեր ցույց տվեց դեպի աստծու եկեղեցին: Ապա սուրբ Ներսեսը նրան հավատաց աղքատների հոգաբարձության գործը. այստեղ էլ նա առավելապես երևաց իբրև բարեխնամ տեսուչ:

Ուստի երբ Ներսես եպիսկոպոսապետը պատրաստվում էր Հունաց աշխարհը ուղևորվելու՝ այս Խադին ձեռնադրեց Բագրևանդի և Արշարունյաց եպիսկոպոս և նրան թողեց իրեն փոխանորդ ու տեղապահ և ինքը գնաց: Իսկ հայերեն խոսող ամբողջ աշխարհը բոլոր գավառներում, կողմերում, տեղերում, մեծամեծ աշխարհակալներ, գավառատերերը, նշանավոր ցեղերի նահապետները և ամբողջ քահանայական ուխտը ժողովրդի բազմության հետ ընկղմված էին սգի ու տրտմության մեջ, որովհետև հեռացավ իրենց գլխավոր հոտապետը: Իսկ Խադ սուրբ եպիսկոպոսը բոլոր աշխարհին հրաման էր տալիս պաս պահել, աղոթք անել, խնդրել, որ սուրբ Ներսեսը ետ դառնա: Եվ բոլոր այն ժամանակ, որ նա արգելանքի տակ էր՝ ժողովուրդը պահեցողությամբ աղոթում էր նրա համար: Իսկ Խադը ամեն բանում նրանց առաջնորդում էր, ոչ պակաս քան բուն հովվապետ Ներսեսը, մինչև որ տերը կատարեց աշխարհի խնդրվածքը, և սուրբ Ներսեսը ետ դարձավ իր տեղը:

Զայնու ժամանակաւ Արշակ արքայ Հայոց ոչ ինչ կարի 'ի ճանապարհ աստուծոյ գնացեալ լինէր. զի որչափ 'ի մատաղութեանն հասակին ըստ աստուածային իմաստութեանն գնացեալ լինէր, նոյնչափ յաւագութեանն 'ի լիութեան 'ի շաղաշատութեան հասաւ[24]. զոր սուրբ հովիւն Խադ բազում անգամ յանդիմանեալ կշտամբէր, որում ոչ ինչ անսացեալ լինէր:

Զայնու ժամանակաւ շինեաց իւր արքայն դաստակերտ մի 'ի հովիտն անուանեալ 'ի Կոգ գաւառի: Եւ ետ հրաման ընդ ամենայն գաւառս իշխանութեան իւրոյ, և հրամայեաց կարգել քարոզ ընդ ամենայն տեղիս աշխարհացն հրապարակին իւրոյ. և ամենայն կողմանս գաւառաց իւրոց լի առնէր հրամանաւն արքունի, զի եթէ ոք ումեք ինչ պարտիցի, եթէ ոք ուրուք ուստեք ինչ վնասեալ իցէ, կամ ոք ումեք ինչ դատ պարտիցի, ամենեքեան եկեսցեն 'ի դաստակերտն շինեցին: Եթէ արիւնահեան ոք իցէ, կամ վնաս ուրուք ումեք արարեալ իցէ, կամ զկին ուրուք տարեալ իցէ, կամ պարտապան իցէ, կամ ոք զուրուք կարասի ունիցի, կամ ոք յումեքէ երկիւղած ինչ իցէ, և եկեսցէ յայն տեղի, դատ և իրաւունք մի՛ լիցին: Իսկ եթէ ոք ումեք ինչ պարտիցի և որում պարտիցին, եկեալ յայն տեղին՝ առանց դատի և իրաւանց կալցին, և 'ի դուրս տարցեն:

Իբրև ել հրաման յարքայէն, ժողովեցան այնուհետև յայն տեղի ամենայն զողք և աւազակք, արիւնահեանք, սպանողք, ստաք և մարդելոյզք, վնասակարք, գանձահատք, զրկողք, ստադատք, զրախօսք, գերփողք, յափշտակողք, ժլատք: Բազում վնաս վնաս առնէին, և անդր անկանէին. բազում կանայք զարս թողուին, և անդր անկանէին. բազում արք զիւրեանց կանայս թողուին, և զայլոց կանայս առեալ՝ անդր անկանէին. բազում ծառայք զիւրեանց տերանց զգանձս ըմբռնեալ, փախուցեալք անդր անկանէին. բազում աւանդառուք զաւանդս լի զպահեստս բարձեալ, անդ անկանէին. գերփէին աւերէին զերկիրն ամենայն: Զի թէպէտ և կարի յոյժ բազմացաւ աղաղակն, դատ չկայր, և իրաւունք ումեք յարքունուստ ոչ ելանէին: Վասն այսորիկ ամենայն մարդ հառաչելով վայէին, և ասէին 'ի հաւանել բանիցն իւրեանց. այս բանք ըստ այսմ օրինակի պաշտէին, առ հասարակ ամենեցուն ասելով՝ թէ իրաւունք մեռան, և վասն այսորիկ ոչ գտանէին. այլ թէ էր, և կորուսեալ էին, ուր և էր ջանայաք խնդրէաք գտանէաք:

Իսկ տեղին աւանանայր, քաղաքանայր. մեծացաւ, բազմացաւ և ելից զհովիտն ամենայն: Ապա տայր հրաման արքայն Արշակ դնել անուն դաստակերտին յիւրակից անունն Արշակաւան. և շինեցին ևս անդ ապարանս արքունի: Եւ յայնմ հետէ ոչ ինչ երկնչէին 'ի տեառնէ

Այս ժամանակներն Հայոց Արշակ թագավորը այնքան էլ չէր գնում աստվածահաճո ճանապարհով։ Որքան որ նա մանկության հասակում աստվածային իմաստությամբ էր վարվում, այնքան էլ չափահաս դառնալիս լկտության[100] խենեշության մեջ ընկավ, և թեպետ խաղ սուրբ հովիվը հաճախակի հանդիմանում էր՝ նա ուշադրություն չէր դարձնում։

Այս ժամանակ թագավորը իր համար մի դաստակերտ շինեց Հովիտ կոչված Կոգ գավառում, և իր իշխանության բոլոր գավառներին հրաման ուղարկեց. հրամայեց որ ամեն տեղ մունետիկները կանչեն հրապարակներում, բոլոր գավառներում բոլոր կողմերում հայտնեն թագավորական հրամանը, որ «եթե մեկը մեկին պարտք է, եթե մեկը ուրիշին մի բանով վնասել է՝ թող բոլորը գան այդ դաստակերտը, և ապահով կլինեն։ Եթե մեկը (ուրիշի) արյուն է թափել, մեկին վնասել է, կինը տարել է կամ պարտապան է. կամ մեկի գույքը գրավել է, կամ որևէ մեկից երկյուղ ունի՝ թող գա այն տեղը. նրա դեմ դատ ու պահանջ չի լինի։ Եվ եթե մեկը մեկին մի բան պարտք է և պարտատերը այդ տեղը գա (պահանջելու)՝ նրան առանց դատի ու արդարադատության բռնեն և դուրս հանեն»։

Երբ թագավորից այս հրամանը դուրս եկավ՝ ապա այդ տեղում ժողովվեցին բոլոր գողերը, ավազակները, արյունապարտները, մարդասպանները, ստախոսները, խաբեբաները, վնասարարները, գրպանահատները, զրկողները, դատի մեջ ստողները, զրպարտողները, կողոպտողները, հափշտակողները, ժլատները[101]։ Շատ հանցանքներ էին գործում, և այնտեղ ապավինում։ Շատ կանայք իրենց մարդկանց թողնում էին ու այնտեղ ընկնում. շատ տղամարդիկ իրենց կանանց թողնում էին և ուրիշների կանանց առնելով այնտեղ էին ընկնում. շատ ծառաներ իրենց տերերի գանձերը ճանկ ձգելով փախչում այնտեղ էին ընկնում. շատ ավանդառուներ իրենց մոտ պահեստի դրված ավանդները վերցնում այնտեղ էին ընկնում. ամբողջ աշխարհը գերփում ավերում էին։ Թեպետ և ամեն կողմից աղաղակ բարձրացավ՝ բայց դատ չկար, ոչ ոքի իրավունքը արքունիքից չէր պաշտպանվում։ Այս պատճառով բոլոր մարդիկ վա՜յ տալով հառաչում էին. բոլորի բերանում ընդհանուր խոսք էր դարձել և միշտ ասում էին, թե «իրավունքը մեռավ. եթե նա գոյություն ունենար, բայց կորած լիներ՝ կփնտռեինք, մի տեղ կգտնեինք նրան»։

Իսկ այն տեղը ավան ու քաղաք դարձավ մեծացավ, բազմամարդացավ, ամբողջ հովիտը բռնեց։ Արշակ թագավորը հրամայեց այդ դաստակերտի անունը դնել Արշակավան, իր անունով. նրա մեջ նաև թագավորական ապարանք շինեցին։ Այնուհետև այլևս տերից ամե-

ամենեւին. և ամենայն մարդ զրկեալ էր իրօքն այնօքիւք, և բազմաց կառաչ աղաղակի տրտնջելոյն յաճախեալ բազմանայր: Վասն որոյ բազում անգամ ընդդիմանայր նմա և յանդիմանէր սուրբն Խադ եպիսկոպոսն. մանաւանդ յորժամ ստիպէին զնա, թէ ե՛կ ուղղեա սեղան յեկեղեցւոջն յաւանն յԱրշակաւանն: Իսկ նա բազում անգամ կշտամբէր և յանդիմանէր զթագաւորն Արշակ և զամենայն մեծամեծս և զիշխանս: Բայց ես, ասէ; ետեղապահ եմ. և ոչ ինչ առանց այնորիկ, որ թողն զիս հայրն, ունիմ իշխանութիւն գործել ինչ: Ապա կամեցեալ Արշակ թագաւորն պատուաւ և ագահութեամբ կարասոյն մեքենայիւ խաբել զսուրբ եպիսկոպոսն Խադ, բազում ոսկի և բազում զանձս արծաթոյ, և բազում նժոյգս զարքունական ձիոյ՝ արքունի օճառովք, ոսկիվարաւանդ ապրդմովն, տայր նմա. պատրել հանել զմիտս նորա, յինքն յանգուցանել: Իսկ նա զկարասին, զոր առնոյր յարքայէն, յանդիման նորա աղքատաց բաշխէր, և զյանդիմանութիւնն ոչ ինչ թուլացուցանէր, մինչև հրամանն տայր հալածել զեպիսկոպոսն Խադ 'ի բանակէ անտի:

Իսկ նա ա՛ռ շրջել ընդ աշխարհն, կարգել և խրատել, ուսուցանել և դարմանել զաղքատսն, որպէս էր նմա յանձն արարեալ սրբոյն Ներսիսի, և իւր գնացեալ: Բազում նշանք և արուեստք և զօրութիւնք բժշկութիւնք հիւանդաց լինէին 'ի ձեռս նորա. բազում յոյժ առնէր սքանչելիս մեծամեծս: Բայց իբրև պաշտէր զաղքատսն, և սպառէր թափէր զամենայն յուրանս և զնորամանս և զմառանս զինւոյն, և զկարասս ամենայն մառանացն տայր բաշխել աղքատացն, երթայր յայլում աւուր տեսանէր լցեալ ինքնին իբրև 'ի հրամանէ աստուծոյ. և դարձեալ օր ըստ օրէ մատակարարէր աղքատացն, և այն տեղս տեղս լցեալ լինէր:

Այսպիսի սքանչելիք մեծամեծք լինէին 'ի ձեռն առնս այսորիկ. էր սա զարմանալի անուանի և հոյակապ 'ի մէջ ամենայն Հայոց. շրջէր խրատէր և ուսուցանէր զեկեղեցիս Հայոց ընդ ամենայն տեղիս իբրև զիւր վարդապետն զՆերսէս: Բայց 'ի ժամանակեան միոջ եկին գողք, և գողացան զեզինս եկեղեցւոյն սրբոյ զԽադայ եպիսկոպոսին, առին և գնացին: Իսկ 'ի միում աւուր աչք կուրացեալ եղեն գողոցն, և ինքեանք յանհիմաստս առ խարխափս եկին ածին 'ի դուռս սրբոյն Խադայ զամենայն եզինսն: Իսկ ինքն սուրբն Խադ ելեալ տեսանէր զնոսա, և գոհանայր զտեառնէ՝ որ այնչափ վերակացու և այցելու եղև հաւատացելոց իւրոց: Կայր յաղօթս եպիսկոպոսն Խադ, և բժշկէր զաչս գողոցն, և հրաման տայր լուանալ զանձն նոցա, և դնէր հաց առաջի նոցա, և քաջ ուրախ առնէր զնոսա մեծապէս: Ապա օրհնէր զնոսա, և տայր նոցա զեզինսն՝ զոր իւրեանցն էր գողացեալ, և արձակէր զնոսա զիւրեանց ճանապարհն. և գնացին: Այսպէս բազում համբերութիւնս յամենայն գործս

նևին չէին վախենում, ամենքը զրկանքներ էին կրում այդ պատճառով տրտունջ, բողոք, աղաղակ երկինքն էին բարձրացնում: Այս գործի համար սուրբ հայր եպիսկոպոսը շատ անգամ նրան հանդիմանում էր և դիմադարձություն էր անում, մանավանդ երբ նրան ստիպում էին, թե ե՛կ Արշակավան ավանի եկեղեցում սեղան կանգնեցրու: Իսկ նա նախատում ու հանդիմանում էր Արշակ թագավորին և բոլոր մեծամեծներին և իշխաններին: «Ես, ասում էր, տեղապահ եմ, ես իրավունք չունիմ որևէ բան անել առանց իմ հոր, որ ինձ թողեց (տեղապահ): Ապա Արշակ թագավորը մտածեց խորամանկությամբ՝ պատիվների, ստացվածքների միջոցով խաբել սուրբ հայր եպիսկոպոսին, տվեց նրան շատ ոսկի և արծաթ, արքունական ախոռից շատ նժույգներ՝ արքունական սարքերով, ոսկեղեն կրծակալներով ու փորկապերով. սրանցով կամենում էր նրա խելքը հանեցնել, իր կողմը դարձնել: Իսկ նա թագավորի առաջ աղքատներին էր բաժանում այն ստացվածքը, որ թագավորը տալիս էր, բայց հանդիմանությունը չէր պակասեցնում մինչև այն աստիճան, որ թագավորը հրամայեց՝ բանակից նրան հալածել:

Եվ նա գնաց աշխարհում շրջելու. քարեկարգում էր, խրատում և ուսուցանում, խնամում էր աղքատներին, ինչպես իրեն պատվիրել էր սուրբ Ներսեսը գնալիս: Նրա ձեռքով կատարվում էին շատ նշաններ ու սքանչելիքներ, հիվանդների բժշկություններ: Բայց երբ նա օգնում էր աղքատներին և դատարկում էր բոլոր կնունները ու ամանները, մառանի բոլոր կարասները աղքատներին բաժանելով՝ մյուս օրը գնում տեսնում էր, որ նրանք նորից լցվել են, կարծես ստածու հրամանով այն էլ բաժանում էր աղքատներին, և նրանք շարունակ լցվում էին:

Այսպիսի մեծ սքանչելիքներ էր կատարում այս մարդը. նա մի զարմանալի, անվանի և հռչակված անձ էր բոլոր Հայաստանում. շրջում էր ամեն տեղ Հայոց եկեղեցիները, խրատում և ուսուցանում էր ինչպես իր ուսուցիչ Ներսեսը: Մի անգամ երկու գող էին եկել, սուրբ հայր եպիսկոպոսի եկեղեցու եզները գողացել տարել էին: Մյուս օրը այս գողերի աչքերը կուրացան, և նրանք առանց գիտակցելու, խարխափելով բոլոր եզները բերին սուրբ հայրի դուռը: Ինքը սուրբ հայրը դուրս եկավ, նրանց տեսավ և գթություն տվեց աստծուն, որ այնքան վերակացու և խնամող է իրեն հավատացողներին: Հետո հայր եպիսկոպոսը աղոթքի կանգնեց, գողերի աչքերը բժշկեց, հրամայեց նրանց լողացնել, ապա նրանց առաջը հաց դրեց և շատ ուրախացրեց: Այնուհետև նրանց օրհնեց. տվեց այն եզները, որ նրանք գողացել էին և ճանապարհ դրեց, և նրանք գնացին: Այսպես բոլոր իր գործերում մեծ

իւր ցուցանէր. և բազում առնէր նշանս և զքանչելիս: Եւ էին նորա երկու դստերք. և ետ զմինն Ասրկոյ ումեմն կին, և զկնի աներոյն իւր՝ նա կալաւ զաթոռն Խադայ:

## ԺԴ

### ՅԱՂԱԳՍ ՈՐ ԻՆՉ ԻԲՐԵՒ ԴԱՐՁԱՒ ՍՈՒՐԲ ԿԱԹՈՂԻԿՈՍՆ ՆԵՐՍԷՍ ՅԵՐԿՐԷՆ ՅՈՒՆԱՑ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿՇՏԱՄԲԷՐ ԶԱՐՔԱՅՆ, ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԼԻՆԷԻՆ ՆՇԱՆՔ ԱՀԱԳԻՆՔ 'Ի ՎԵՐԱՅ ԱՒԱՆԻՆ ԱՐՇԱԿԱՒԱՆԻ, ԵՒ ՍԱՏԱԿԵՑԱՆ ԱՌ ՀԱՍԱՐԱԿ ՅԱՆԿԱՐԾՕՐԷՆ ԱՄԵՆԱՅՆ ԲԱԶՄՈՒԹԻՒՆ ՄԱՐԴԿԱՆ՝ ՈՐՔ ՅԱՅՆՄ ՏԵՂԻՈՋ ԷԻՆ

Այլ իբրև սատակեցաւ կայսրն, դարձան ամենայն հովիւքն եպիսկոպոսքն՝ որք աքսորեալք էին, և կեցեալք էին յիւրաքանչիւր քաղաքս: Յայնժամ դարձաւ և սուրբ կաթողիկոսն Ներսէս յանապատ 'ի կղզւոյ անդի, ուր էր զնոսա արգելեալ. և համաշխարհի էին խնդրուածք. միաանգամ աշխարհի շնորհեցաւ: Իբրև եկն յաշխարհն Հայոց, ընդ առաջ երթային նմա 'ի գաւառաց գաւառաց եպիսկոպոսք հանդերձ իւրաքանչիւր ժողովրդովք, և նախարարք ամենայն և ամենայն գաւառակալք: Եւ բերէին առաջի նորա զիւրաքանչիւր հիւանդս, և բժշկէր զնոսա. ուր և բազում իսկ և կարի յաճախէր զոհութիւն 'ի փառս աստուծոյ, և ամենայն մարդիկն առ բազում զուբ հովուապետին՝ համարէին զանձինս իւրեանց թէ ինքեանք իբրև զնոսա 'ի գերութենէ դարձեալ իցեն:

Եւ առնէին ուրախութիւն բազում հոգևորս մեծաւ ցնծութեամբ: Համաշխարհն ամենայն ոք իւրաքանչիւր տեառն աստուծոյ զեղեալ ուխտրս կատարէին, որ 'ի վերայ հոգևոր զանձին հայրապետին՝ որ առաւ նոցա. և կատարեաց նոցա զխնդրուածս նոցա, և զորբութիւն արտառութեան անձանցն ստակեղ ցաւոցն ստարբեկութեանն, միաանգամ սիրով գթով վարդապետութեամբ հոգևոր հարբն մխիթարեաց զամենեսեան: Ամենեքեան 'ի դժնէ տրտմութենէն զուարթացեալք, յուրախութիւն դառնային: Ինքն իսկ թագաւորն Արշակ երթայր ընդ առաջ նորա, մինչև 'ի կողմանս Բաքասերոյն, և անդի մեծաւ զուարթութեամբ դարձան: Եւ սկսան նորոգել և պայծառանալ վարք աշխարհի և կարգացն և օրինացն եկեղեցեացն:

Այլ իբրև եկն հայրապետն Ներսէս 'ի Հայս, 'ի վերայ հասանէր իւրում ետեղապահին սրբոյն Խադայ, զի էր կացեալ 'ի ճշմարտութեան և յուղղութեան, և գնացեալ էր զճանապարհս տեառն աստուծոյ, և ոչ էր թիւրեալ յաջ կամ յահեակ, բազում զոհութիւնս մատուցանէր աստուծոյ, զի զԽադ զհոգևոր որդեակն իւր եգիտ ըստ կամացն՝ որպէս ինքն

համբերություն էր ցույց տալիս և շատ սքանչելիքներ էր գործում: Նա երկու աղջիկ ուներ. նրանցից մեկը կնության տվեց մի ոմն Աառնիկի (կամ Աառիկի), որ աներոջ՝ Խադի մահից հետո նրա աթոռը նստեց:

## ԺԳ

## ԹԵ Ի՛ՆՉ ԳԱՏԱՀԵՑ ՆԵՐՍԵՍ ՍՈՒՐԲ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՀՈՒՆԱՑ ԱՇԽԱՐՀԻՑ ՎԵՐԱԴԱՌՆԱԼԻՍ ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՆԱ ՆԱԽԱՏՈՒՄ ԷՐ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԵՎ Ի՛ՆՉ ԱՀԱՎՈՐ ՆՇԱՆՆԵՐ ԿԱՏԱՐՎԵՑԻՆ ԱՐՇԱԿԱՎԱՆ ԱՎԱՆՈՒՄ ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՀԱՆԿԱՐԾԱԿԻ ՄԻԱԺԱՄՈՒԹ ԿՈՏՈՐՎԵՑԻՆ ԱՅՆՏԵՂ ԵՂԱԾ ԲՈԼՈՐ ՄԱՐԴԻԿ

Երբ Վաղես կայսրը սատկեց՝ ետ դարձան բոլոր հովիվ եպիսկոպոսները, որոնք աքսորված էին և ապրում էին զանազան քաղաքներում: Ետ դարձավ նաև սուրբ Ներսես կաթողիկոսը այն անապատ կղզուց, ուր նրանք աքսորված էին: Նա նորից շնորհվեց իր աշխարհին, որ նրա համար խնդրվածքներ էր անում: Երբ նա հասավ Հայոց աշխարհը՝ նրան ընդառաջ էին գնում զանազան գավառներից եպիսկոպոսներն իրենց ժողովուրդներով, բոլոր նախարարները, գավառների տերերը: Նրա առաջ էին բերում իրենց հիվանդները և նա բժշկում էր նրանց, որի համար գոհություն ու փառք էին տալիս աստծուն, բոլոր մարդիկ այնպես էին սիրում հովվապետին, որ համարում էին, թե իրենք ևս նրա հետ գերությունից ետ են դարձել:

Մեծ ցնծությամբ շատ ուրախություն էին անում. ամեն ոք կատարում էր իր ուխտն աստծուն, որպեսզի իրենց հոգևոր գանձն ու հայրապետը ետ դառնա, և աստված կատարեց նրանց խնդրվածքը, նրանց ցավալի որբությունը, նրանց սրտերը մաշող վշտերը փարատեց և իրենց հոգևոր գթասիրտ հոր վարդապետությամբ բոլորին մխիթարեց. բոլորը զվարթացան, դժնդակ տրտմությունը ուրախության փոխվեց: Ինքը Արշակ թագավորը նրան ընդ առաջ գնաց մինչև Բաքասերի[101] կողմերը և այնտեղից մեծ զվարթությամբ ետ եկան: Աշխարհի վարքը, եկեղեցիների կարգերը նորոգվեցին ու պայծառացան:

Արդ՝ երբ Ներսես հայրապետը Հայաստան վերադարձավ՝ վերահասու եղավ իր տեղապահի՝ սուրբ Խադի գործերին և տեսավ, որ նա ճշմարտությամբ և ուղղությամբ էր գործել, գնացել էր տեր աստծու ճանապարհով, ո՛չ աջ էր շեղվել և ոչ ձախ. ուստի մեծ գոհություն էր մատուցանում աստծուն, որ իր հոգևոր որդուն Խադին տեսավ այնպես՝ ինչպես ինքն էր կամենում. նրան ընդունում էր սիրով ու կարոտով: Բայց երբ Խադից լսում էր թագավորի անօրենությունները, չար գոր-

Գիտես, ո՛վ թագաւոր. վասն այսր ամենայնի ասացեալ է կանխասա-ցութեանն աստուծոյ բերանովք մարգարէիցն, եթէ «Վայ որ շինէ զտուն իւր՝ և ոչ արդարութեամբ, և վերնայարկս իւր՝ և ոչ իրաւամբք». եթէ «Յառակ առցին ողբքն, և ասասցեն՝ եթէ վա՛յ որ ագահեսցէ զագահու-թիւն անձին իւրում, որ ոչ է իւր. զի եթէ տունք գեղեցիկք իցեն և մեծա-մեծք փցեն, սակայն յաւէր դարձցին. զի մի՛ ոք բնակիցէ 'ի նոսա մարդ, այլ ճարակ հօտից լիցի, և դաղարք զազանաց և որջք զազանաց և որջք թռչնոց և ճագարաց և աղուեսուց, բոյն խորդոց և ագռաւուց, և անդք սահմանակցաց. վասն այդորիկ աւերեսցին գործք ձեռաց քոց և մի՛ շինեսցին, և միանգամայն սատակեսցին ամենայն անօրէնքն բնակեալքն 'ի նմա. և եղիցին դաղարք եզանց և ճարակք ցռոց, և աղուէսք մուտ և ելս խաղասցեն յարկս նոցին. և մի՛ շինեսցին, և մի՛ ևս բնակեսցեն, մինչև զյափտեան»:

Եւ զայս ամենայն խօսեցաւ հայրապետն Ներսէս, և զնացեալ 'ի թագաւորէն ելեալ շրջէր ընդ գաւառս աշակերտութեանն ուղղել կարգել և հաստատել զեկեղեցիսն յամենայն գաւառս Հայոց: Եւ յետ երից աւուրց անցանելոյ բանիցն ասացելոց 'ի վերայ, որ խօսեցեալ եղեն 'ի բե-րանոյն երանելոյն Ներսէսի, մատնեաց տէր զգեւղաքաղաքն զԱրշա-կաւանն 'ի ձեռս հարուածոցն: Եւ սկսաւ հատանել զոր շարակեղն իմն կոչեն, իսկ կէսքն ժանդ անուանեն. ելանէր 'ի վերայ մարդկանն և անասնոցն: Ոչ աւելի եղև հարուածոցն 'ի վերայ նոցա քան զերիս աւուրս յերկարեցաւ, զի անմարդացաւ. քան զքսան հազարք սատակեցան երդք մարդկան, ոչ մնաց 'ի նոցանէ և ոչ մի. զի առ հասարակ սատակեցան կոտորեցան յանկարծօրէն քանդեցան. զի միահաղոյն եկն սատակումն 'ի վերայ նոցա:

Եւ յետ այսորիկ իճքնին թագաւորն ելանէր 'ի խնդիր հայրապետին Ներսէսի. և գտեալ՝ խնդրէր 'ի նմանէ, զի մատուսցէ աղօթս վասն նո-րա, զի մի՛ գուցէ և նա սատակեսցի, քանզի կարի զարհուրեալ էր: Ապա խօսել սկսանէր եպիսկոպոսապետն Ներսէս ընդ թագաւորին, և ասէր. Զի այժմ յաշխարհիս յայսմիկ, վասն զի արդարք և մեղաւորք զոյգ հասարակ խառն են, վասն արդարոցն խնային մեղաւորք առ ժա-մանակ մի և ապրին, և յերկարին յաշխարհիս վասն նոցա կենացն և նոքա 'ի պատճառս նոցա: Զի որոմն սերմանեալ բշնամւոյն 'ի վերայ սուրբ բւսոյն սերմանն ցորենոյն, ընդ նմին զոյգ հասարակ բուսեալ են. խնային վասն ցորենոյն սրբութեան և բոյս աղտեղութեան որոմնն. զի մի՛ գուցէ մինչ զորոմնն քաղահան արարեալ խլիցեն, խլիցի ընդ նմա և ցորեանն: Վասն այնորիկ առ ժամանակս վայելեն 'ի դարմանոյ ցորենոյն և որոմն ընդ նմին 'ի ցօղս և յանձրևս և յոռոգմունս, և 'ի

ասելով. «Գիտցած լինիս, ո՛վ թագավոր, որ այս (քո արածի) մասին է գուշակել աստված մարգարեի բերանով, թե «վա՜յ նրան, որ տուն է շինում ոչ արդարությամբ և վերնահարկ է կառուցանում՝ ոչ իրավունքով», և դարձյալ՝ թե «Իբրև առակ ողբեր պիտի ասեն. վա՜յ նրան, որ ագահությամբ խլում է այն որ իրենը չէ, որովհետև եթե գեղեցիկ ու մեծամեծ տներ լինեն՝ ավերակ կդառնան և նրանց մեջ մարդ չի բնակի, նրանք ոչխարների արոտատեղ կդառնան, գազանների, բորենիների որջեր, ճագարների և աղվեսների ծերպեր, կռունկների և ագռավների բույներ, ցանքերի արտեր: Ուստի քո ձեռների շինածները կավերվին ու էլ չեն շինվի, նրա մեջ բնակած բոլոր անօրենները միանգամայն կկոտորվին. այնտեղ եզները կպառկին, ցիռերը կարածեն, աղվեսները նրա հարկերը ել ու մուտ կանեն. նրանք չեն շինվի և նրանց մեջ հավիտյան մարդ չի բնակի»: Այս բոլորը խոսեց Ներսես հայրապետը և թագավորից հեռանալով գնաց շրջելու Հայաստանի բոլոր գավառները՝ ուսուցանելով, եկեղեցիներում կարգեր հաստատելու:

Երանելի Ներսեսի բերանից ելած այս խոսքերից հետո հազիվ էր անցել երեք օր, որ աստված Արշակավան գյուղաքաղաքը հարվածների ենթարկեց: Մարդկանց և անասունների վրա սկսեցին դուրս գալ վատորակ պալարներ, որ ոմանք կոչում են ժանտ[103]: Այս հարվածը երեք օրից ավելի չտևեց, որ (քաղաքը) անմարդացավ. մոտ քսան հազար ընտանիք կոտորվեցին, մարդկանցից մեկը կենդանի չմնաց, որովհետև բոլորը հանկարծակի կոտորվեցին, ոչնչացան. կոտորածն ընդհանուր է,ր:

Ապա ինքը թագավորը դուրս էր գալիս Ներսես հայրապետին փնտռելու. նրան գտավ և խնդրում էր իր համար աղոթել, մի գուցե ինքն էլ մեռնի, որովհետև ահաբեկ էր եղել: Այն ժամանակ Ներսես եպիսկոպոսապետը խոսել սկսեց թագավորի հետ և ասաց. «Որովհետև այս աշխարհիս վրա արդարներն ու մեղավորները խառն են ապրում, ուստի արդարների պատճառով մեղավորներն էլ խնայվում են և ապրում են. արդարների պատճառով մեղավորների կյանքն էլ երկարում է այս աշխարհում: Ինչպես թշնամու ձեռքով մաքուր ցորենի մեջ ցանած որոմը, որ նրա հետ միասին բուսնում է՝ խնայվում է, մաքուր ցորենի հետ (անում է) և կեղտոտ որոմը, մի գուցե որոմը քաղհան անելիս ցորենն էլ պոկվի: Այս պատճառով որոմն էլ ցորենի պես առժամանակ դարմանվում է ցողով, անձրևով, ոռոգումով, ջերմությամբ և պայծառ

ջերմութիւնս խառակեալ և 'ի նեշտ արևս արեգականն: Այսպէս այս լինի մինչև 'ի ժամանակս նոցա, մինչև եկեսցէ ժամանակն յորժամ հնձեսցի ցորեան արմտեացն. զայն ի շտեմարանս արքայութեանն ժողովեսցեն, և զորոմն յայրումն յաւիտենական հրոյն. որ է ինքն հունձք կատարած ժամանակաց, յորժամ Որդին աստուծոյ եկեալ հասանիցէ, և տացէ հրաման երկնաւոր մշակացն ընդ նմա իջելոց 'ի վերուստ՝ 'ի գերեզմանացն հնձել զամենայն ննջեցեալսն յարուցեալս:

Արդ այնուհետև ընդրութիւն առնիցէ. զարդարսն նմանս ցորենոյ ընդ ինքեան յարքայութիւնն իւր ընդունիցի, և զմեղաւորսն որոմանս նմանեալս՝ յանշէջ 'ի յաւիտենական 'ի հուրն հրամայիցէ արկանել: Արդ այժմ ժամանակն հնձոց չև ևս էր, դու կանուխ քաղահան որոմանն 'ի ցորենոյն արարեր, և կանուխ զորոմնն 'ի մի վայր առանց ցորենոյն ժողովեցեր. վասն այդորիկ յայնժամ կանխեաց հուրն, անխնայ յարձակեցաւ այրել, զամենայն որոմնն 'ի մի վայր ժողովեալս 'ի միում վայրի գտեալս միահաղոյն վախճանեաց: Այլ այր դու, տես զանձն քո, զի մի՛ և դու կորիցես, և աշխարհս վասն քո: Իսկ թագաւորն 'ի գունս հարեալ, մեծաւ աղաչանօք և բազում աղօթկերօք աղաչէր թագաւորն՝ հաշտել ընդ նմա. և եդ ուխտ, զի այլ ոչ ևս երբէք անցցէ զբանիւք նորա:

ԺԴ

ՅԱՂԱԳՍ ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻՆ, ՅՈՐԺԱՄ ԵԿՆ ԷՋ 'Ի ԳԱՒԱՌՆ ՏԱՐՕՆՈՅ՝ ԵԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԵԿՆ ԵՒ 'Ի ՏԵՂԻ ԱՂՕԹԻՑՆ ԱԾՏԻԾԱՅ, ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԴԱՏԱՊԱՐՏԵԱԼ ԳՆԱՑ ԱՆՏԻ ՅԻՒՐՈՅ ԲԵՐԱՆՈՅՆ 'Ի ԽՕՍԻՑՆ. ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԱՆԿԵԱԼ, ՄԱՀՈՒՆ ՊԱՐՏ ԵՂԵԱԼ, ՍԱՏԱԿԵՑԱՒ 'Ի ԾԱՒԱՍՊԱՑ ԱՐՄՐՈՒՆԻՒՈՅ

Եւ էր մարդպետն Հայր այր չար և ժանտաբարոյիւք անօրէն և անիրաւ քան զառաջին Հայր անուն մարդպետսն: Սա կոտորեաց զամենայն ազգս նախարարացն 'ի ժամանակս թագաւորութեանն Տիրանայ արքայի. և սոյնպէս առ թագաւորութեամբն Արշակայ՝ ևս չար քան զառաջինն գործել չար առ ամենայն մարդ: Արդ ելանէր սա շրջէր ընդ մարդպետութիւնն իւր. ապա եկն էջ Հայր Մարդպետ 'ի գաւառն Տարօնոյ ընդ իւր գեւղսն տեսանել:

Զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնսն. զի հնգետասան գաւառ զայն ձեռական իշխանութեան ունէին իբրև սեպհական 'ի բնմէ, առանձին առոշոգի նոցա էր կարգեալ: Եւ յայն գաւառ գլխաւոր գաւառք այս էին՝ Այրարատ, Դարանաղէ,

տարեգակի լույսով: Այս այսպես կշարունակվի մինչև հունձի ժամանակը, երբ ցորենի բերքը հնձում ու ժողովում են արքայության շտեմարաններում, իսկ որոմը հավիտենական կրակի մեջ են ածում ու այրում: Այս հունձը՝ ժամանակների վերջն է, երբ աստծու որդին կգա և իր հետ իջած երկնավոր մշակներին կհրամայի հնձել գերեզմաններից դուրս եկած բոլոր ննջեցյալներին: Այն ժամանակ նա ընտրություն կանի. արդարներին ցորենի նման իր հետ արքայություն կտանի, իսկ մեղավորներին որոմի նման կհրամայի ածել հավիտենական անշեջ կրակը:

Արդ՝ դեռ հունձի ժամանակը չհասած՝ դու որոմը քաղհան արիր ցորենից և վաղաժամ մի տեղ հավաքեցիր առանց ցորենի, ուստի և կրակը վաղաժամ եկավ և բոլոր որոմը, որ միատեղ հավաքված էր՝ մի անգամից ոչնչացրեց. իսկ դու զգույշ եղիր քո մասին, մի գուցե դու էլ կորչես, աշխարհս էլ քո պատճառով»: Իսկ թագավորը ծունկ չոգած մեծ աղաչանքով, պաղատանքով խնդրում էր (Ներսեսից) իր հետ հաշտվել, և ուխտեց, որ այնուհետև նրա խոսքից երբեք դուրս չի գա:

## ԺԴ

### ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՏԱՐՈՆ ԳԱՎԱՌԸ ԳԱԼՈՎ ՄՏԱՎ ԱՇՏԻՇԱՏԻ ԱՂՈԹԱՐԱՆԸ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԱՅՆՏԵՂԻՑ ԳՆԱՑ՝ ԻՐ ԲԵՐԱՆԻ ԽՈՍՔԵՐՈՎ ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾ ԵՎ ԻՆՉՊԵՍ ՄԱՀԱՊԱՐՏ ԴԱՌՆԱԼՈՎ ՇԱՎԱՍՊ ԱՐԾՐՈՒՆՈՒՑ ՍՊԱՆՎԵՑ

Եվ Հայր մարդպետը չար ու չարամիտ մարդ էր, ավելի անօրեն և անիրավ քան նախկին Հայր մարդպետները: Սա էր, որ Տիրանի թագավորության ժամանակ կոտորել տվեց բոլոր նախարարական ցեղերը, նույնպես Արշակի թագավորության ժամանակ ավելի շատ չարիքներ էր գործում բոլոր մարդկանց՝ քան առաջ: Արդ՝ սա դուրս էր եկել իր մարդպետության (սահմանները) շրջելու. եկավ իջավ նա Տարոն գավառը՝ իր գյուղերը տեսնելու:

Այս ժամանակները սուրբ Ներսես շրջում էր իր ձեռական իշխանության[104] մեջ: Որովհետև տասն և հինգ գավառ այդ ձեռական իշխանությունն ունեին ի բնե իբրև հատուկ իրենց սեփական: Այս գավառում գլխավոր գավառներն էին Այրարատ, Դարանաղի, Եկեղյաց, Տարոն,

եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք, և որ ընդ մէջ նոցա և որ շուրջ զնոքօք: Եկն էջ և Հայրն Մարդպետ զիւրով իշխանութեամբն շրջել. ապա եկն և սուրբ կաթողիկոսն Ներսէս յառաջին տեղին, ուր նախ էր զեկեղեցին շինեալ 'ի Գրիգորէ, և զվկայարանսն սրբոցն զվկայիցն, և անդ զյիշատակս սրբոցն կատարէր: Ապա դէպ եղև անցանել Հայր Մարդպետին առ տեղօքն, ցանկացաւ ելանել 'ի սուրբ տեղիսն Աշտիշատու կալ յաղօթս, և առնուլ ողջոյն 'ի սրբոյ եպիսկոպոսապետէն Ներսէսէ: Ապա իբրև կային յաղօթս, ետուն ողջոյն. հրամանն տայր սուրբ հայրապետն Ներսէս, եկեղեցն հաց պատրաստել: Եւ մինչ դեռ նոքա պատրաստէին ինչ ըստ նմա արժանի աւագօրէն սպաս, նա ելանէր յեպիսկոպոսական կայենէն յապարանիցն մինչև 'ի վկայարանս սրբոցն. 'ի մեծ և 'ի գեղեցիկ հրապարակին զերթևեկս առեալ շրջէր, զնեմս առեալ: Ապա տեսանէր զգեղեցկութիւն վայրացն, զնիստ շքեղութեան 'ի բարձրաւանդակ տեղեացն և զնայեացն 'ի խոնարհ, զի կարի վայելուչ էր տեղին. և շարակնեաց:

Ապա եմուտ բազմեցաւ յուտել և ըմպել: Իսկ յորժամ արբեցաւ սխաղակեցաւ, սկսաւ ներքինին խօսել բանս հպարտս և ամբարտաւանս յարբելեաց՝ դնէր թշնամանս Տրդատայ արքայի, 'ի մեռեալս և կենդանեացն 'ի կեանս, ազգի և տակի և տոհմի Արշակունեաց թագաւորացն Հայոց: Ձիա՞րդ, ասէ, զայսպիսի տեղիս կանանցանանդերձ մարդկան տուեալ է, և ոչ արանց: Եւ զսուրբ տեղեօքն քամահեալ արհամարհէր, և ասէր՝ եթէ զայս տեղիս 'ի բաց քակեմ, զի աստ պարտ է շինել զապարանս արքունի: Եւ թէ ես Հայր Մարդպետ կենդանի իցեմ և առ թագաւորաւն հասից, ասէ, որ ինչ աստ իցէ, զայն 'ի բաց փոխեցից. և որ աստ իցեն, ասէ զնոսա հանից, և զտեղիս՝ արքունի սենեակ կազմեցից:

Իսկ սուրբ եպիսկոպոսապետն յորժամ լսէր, և ասէ՝ եթէ տէր մեր Յիսուս Քրիստոս, որ ընտրեաց նախ զայս տեղի՝ դնել զանուն իւր աստ, որոյ անունն առ հասարակ ընդ ամենայն տեղիս փառաւորեալ է Հարբն և սուրբն Հոգովն հանդերձ, որ պատուիրեաց մի՛ ամենևին յայլոյ ինչ ակն դնել կամ ցանգալ. իսկ որք ծլատեալք 'ի նորա նուէրսն բերեն աչս, և այնմ ցանկան, վասն այսորիկ նա մի՛ հասցէ առ այն՝ որով սպառնացաւն, այլ խափան լիցի իւր յառաջև նմա բազում մակարդ մեղացն իւրոց գործելոց: Ապա գնայր Մարդպետն Հայր 'ի սուրբ տեղեացն, և էջ յափն գետոյն հոսանացն Եփրատու, հովիտսն քանձրախուռն անտառին, 'ի գետախառնունսն երկուց գետոցն, 'ի բաւուբ խարծիցն մամխեացն, որ 'ի տեղւոջն 'ի հնոցն իմն շինած քաղաք՝ զոր շինեալ Սանատրուկ արքայի, որում անունն տեղւոյն Մծուրք կոչի:

Բզնունիք, Ծոփք, և նրանց մեջ ու նրանց շուրջն եղածները: Արդ՝ երբ Հայր մարդպետը եկել էր իր իշխանության մեջ շրջելու՝ սուրբ Ներսես կաթողիկոսն էլ եկել էր այնտեղ, ուր առաջին եկեղեցին էր շինված Գրիգորից և սուրբ վկաների վկայարանները, և այստեղ սրբերի հիշատակն էր կատարում: Հայր մարդպետը, դեպի բերմամբ, այդ տեղերով անցավ, ցանկաց Աշտիշատի սուրբ տեղերը բարձրանալ, որպեսզի աղոթե և Ներսես սուրբ եպիսկոպոսապետի ողջույնն առանա: Աղոթք արին, իրար ողջունեցին, և սուրբ Ներսես հայրապետը հրամայեց եկողների համար հաց պատրաստել: Մինչ մարդիկ զբաղված էին նրա համար արժանավոր հոխ հաց պատրաստելով՝ նա եպիսկոպոսական կացարանից դուրս եկավ և ճեմում էր ապարանքից մինչև սրբերի վկայարանները, մեծ և գեղեցիկ հրապարակում: Երբ նա տեսավ այդ տեղերի գեղեցկությունը, տեղի բարձր շքեղ դիրքը և ներքևը բացված տեսարանը, որ շատ վայելուչ էր՝ նախանձով ու չկամությամբ լցվեց:

Հետո ներքինին ներս մտավ, բազմեց, կերուխումն սկսվեց: Երբ նա լավ խմեց ու հարբեցավ սկսեց հպարտ ու ամբարտավան խոսել: Հարբած դրությամբ սկսեց նախատինք թափել Տրդատ թագավորի վրա, Հայոց Արշակունի թագավորների՝ կենդանիների և մեռածների վրա, նրանց ցեղի և արմատի վրա: «Ինչպես, ասում էր նա, այսպիսի տեղերը տվել են կանանց շորեր հագած հոգևորականներին և ոչ թե տղամարդկանց»: Քամահրելով ու արհամարհելով սուրբ տեղերը՝ ասում էր. «Մենք այս տեղերը կքանդենք. այստեղ պետք է արքունի ապարանք շինել: Եթե ես, Հայր մարդպետս, կենդանի մնամ և թագավորի մոտ հասնեմ՝ ինչ որ այստեղ կա՝ քանդել կտամ, այստեղ եղողներին կհեռացնեմ և այստեղ թագավորի բնակության սենյակներ կշինեմ»:

Իսկ սուրբ եպիսկոպոսապետը երբ այս լսեց՝ ասաց. «Մեր տեր Հիսուս Քրիստոսը նախ այս տեղն ընտրեց, որ իր անունով կոչե, որի անունը ամեն տեղ փառավորվում է իր հոր և սուրբ հոգու հետ: Նա պատվիրեց ուրիշների ունեցածին աչք չդնել ու չցանկալ: Իսկ ով որ ագահաբար աչք է դնում և ցանկանում է նրան նվիրվածին՝ նա չի հասնի այն նպատակին, ինչ որ սպառնաց, այլ նրա գործած բազմաթիվ մեղքերը նրա մտադրությունը կխափանեն»:

Սրանից հետո Հայր մարդպետը սուրբ տեղերից հեռացավ և իջավ Եփրատ գետի ափը, խիտ անտառով ծածկված հովիտը, մամուխի ծառերի թավուտները, երկու գետերի խառնուրդի մոտ, որտեղ հնուց ի վեր մի քաղաք է շինված եղել Սանատրուկ թագավորից Մծուրք կոչված տեղում:

Արդ իբրև եկն եհաս յայն տեղի, ապա յուզեցաւ դատաստան բարկութեան 'ի տեառնէ 'ի վերայ անօրէնն Հայրի, և իւրոց զօրացն և բանիցն խօսելոյ: Ապա մատնեցաւ նա 'ի ձեռս առն միոյ, որոյ անուն Շաւասպ կոչէր, մնացորդ ազգին Արծրունեաց: Մինչդեռ նստէր նա 'ի կառս, և երթայր զճանապարհն, եկն Շաւասպն: Սկսեալ պատմել Մարդպետին սուտ 'ի քմաց իւրոց, և ասէ. Արջ մի տեսի սպիտակ իբրև զձիւն: Եւ հրամայեաց զՄարդպետն իջանել 'ի կառաց անտի, և հեծանել 'ի նժոյգն. և մտեալ պառակէին մայրեացն: Իսկ իբրև ընդ բաւթսն անկանէին, զկնի եղեալ սակաւ մի Շաւասպն յետսագոյն մնացեալ, յետոյ յառաջ նետիւ հարկանէր զմէջ ներքինւոյն Հայրի. անդէն թափ հանեալ զնետն, և անդ յերկիր անգեալ սատակեցաւ: Եւ առն աստուծոյ ասացեալքն հուպ ընդ հուպ վաղվաղակի կատարեցաւ. զի ամենևին բան 'ի գետին ոչ անկանէր առն աստուծոյ:

ԺԵ

ՅԱՂԱԳՍ ԱՆՕՐԷՆՈՒԹԵԱՆ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԱՐՇԱԿԱՅ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԽՍՊԱՆ ԶՈՐԴԻ ԵՂԲՕՐ ԻՒՐՈՅ, ՈՐՈՒՄ ԱՆՈՒՆ ԳՆԷԼ, 'Ի ՔՍՍՈՒԹԵՆԷ ԶԱՐՈՒԹԵՆԷ ՏԻՐԻԹԱՅ. ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՅԱՆԴԻՄԱՆԵԱԼ ԵՂԵՒ ՅԱՌՆԷՆ ԱՍՏՈՒԾՈ 'Ի ՆԵՐՍԻՍԷ. ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԶՄԵՒՍ ԵՎՍ ԵՂԲՕՐՈՐԴԻՆ ՏԻՐԻԹ. ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԶԿԻՆՆ ԳՆԵԼԱՅ ԱՌԱՌ ԻՒՐ ԿԻՆ. ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԷԱՌ ԻՒՐ ԿԻՆ 'Ի ՅՈՒՆԱՑ ԶՈՂԻՄՊԻՆ, ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ԵՐԷՑՆ ՄՐՋԻՒՆԻԿՆ ՄԱՀՈՒԱՆ ԴԵՂՈՎՆ ԶՆԱ ԸՆԴ ՕՐԷՆՍՆ ՍՊԱՆԱՆԷՐ՝ ԽՈՐՀՐԴՈՎ ՓԱՌԱՆՁԵՄԱՅ

Զայնու ժամանակաւ էր դուստր մի գեղեցիկ Անդովկայ ուրումն, մի 'ի նախարարացն նահապետին Սիւնեաց, որում անուն Փառանձեմ կոչէր. զորմէ կարի անուանեալ էր գեղեցկութեամբ և պարկեշտութեամբ: Ապա Գնել պատանեակն եղբօրորդին արքային էառ զնա 'ի կնութիւն իւր: Եւ համբաւ գեղեցկութեան աղջկանն ընդ վայրսն տարածեցաւ, և համբաւ գեղոյ նորա յանախեալ բազմանայր և հնչէր: Ապա առ համբաւ ցանկութեան անուանն արփեալ լինէր մին ևս հօրեղբօրորդին Գնելոյ, որում անուն Տիրիթ կոչէր: Վասն որոյ անգանէր 'ի գաղտագողօնս, մինչ զի զնուն իւր տեսանել կարացէ: Եւ յորժամ կարացն տեսլեանն՝ որում ցանգայր, այնուհետև հնարս խնդրէր առն կնոջն կորստեան, ո՛ զիտէ՝ զկին նորա նմա հնար լիցի յափշտակել:

Ապա Տիրիթն 'ի հնարս նենգութեան մտանէր, և բազում վարձէր իւր օգնականս և սատարս, որով զիւր չարախօսութիւնն յառաջ վարել կարասցէ: Եւ քսիս ստութեան զԳնելոյն նենգութեամբ առ թագաւորն Արշակ մատուցանէր՝ թէ Գնել թագաւորել կամի, և զքեզ սպանանել. և

Երբ նա այստեղ հասավ՝ տիրոջ բարկության դատաստանը կատարվեց անօրեն Հայրի, նրա գործերի և նրա խոսածների վրա: Նա մատնվեց մի մարդու ձեռքը, որ կոչվում էր Ճավասպ և Արծրունյաց ցեղի մնացորդն էր[105]: Երբ նա կառք նստած գնում էր ճանապարհով՝ Ճավասպը նրա մոտ եկավ. սկսեց իր գլխից հնարել և ասաց. «Մի արջ տեսա ձյունի նման սպիտակ»: Նա այնքան հրապուրեց մարդպետին, որ սա կառքից իջավ, ձի հեծավ, սկսեցին անտառում (արջին) հետևել: Երբ թավուտների մեջ ընկան՝ Ճավասպը փոքր ինչ ետ մնաց և Հայր ներքինուն հետևից մեջքին խփեց նետով, այնպես որ նետը նրա մարմնով անցավ: Նա գետին գլորվեց ու սատկեցավ: Այսպես աստծու մարդու ասածը անմիջապես կատարվեց, որովհետև աստծու մարդու ոչ մի խոսքը գետին չէր ընկնում:

## ԺԵ

### ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ԱՆՕՐԵՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ, ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՏԻՐԻԹԻ ՉԱՐ ՔՍՈՒԹՅԱՄԲ ՍՊԱՆԵՑ ԻՐ ԳՆԵԼ ԵՂԲՈՐՈՐԴՈՒՆ ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՀԱՆԴԻՄԱՆՎԵՑ ԱՍՏԾՈՒ ՄԱՐԴՈՒՑ՝ ՆԵՐՍԵՍԻՑ, ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ՍՊԱՆԵՑ ԻՐ ՄՅՈՒՍ ԵՂԲՈՐՈՐԴՈՒՆ ՏԻՐԻԹԻՆ, ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ԻՐԵՆ ԿԻՆ ԱՌԱՎ ԳՆԵԼԻ ԿՆՈՋԸ, Ի՛ՆՉՊԵՍ ՀՈՒՆԱՍՏԱՆԻՑ ՈԼՈՄՊԻԻՆ ԻՐԵՆ ԿԻՆ ԲԵՐԵԼ ՏՎԵՑ, ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ՄՐՋՅՈՒՆԻԿԸ ՓԱՌԱՆՁԵՄԻ ԽՈՐՀՐԴՈՎ ՆՐԱՆ ՍՊԱՆԵՑ, (ՀԱՂՈՐԴՈՒԹՅԱՆ) ԽՈՐՀՐԴԻ ՄԵՋ ՄԱՀՎԱՆ ԴԵՂ ԽԱՌՆԵԼՈՎ

Այս ժամանակները Սյունյաց նախարարներից մեկը, Անդովկը, մի գեղեցիկ դուստր ուներ Փառանձեմ անունով, որ շատ հռչակված էր իր գեղեցկությամբ ու պարկեշտությամբ: Ապա Գնել պատանին, թագավորի եղբոր որդին, նրան կին առավ: Այս աղջկա գեղեցկությունը շատ հռչակվեց ու տարածվեց այդ տեղերում: Այս համբավից բորբոքված՝ Տիրիթը, Գնելի մյուս հորեղբոր որդին, սիրահարվեց իր հարսին[106] և մի հնարք էր որոնում որ կարողանա հարսին տեսնել: Երբ իր ցանկությանը հասավ, հարսին տեսավ այնուհետև սկսեց հնարքներ մտածել այդ կնոջ մարդուն կորցնելու, հուսալով թե գուցե կարողանա հետո նրա կինը հափշտակել:

Տիրիթն սկսեց նենգավոր հնարքներ մտածել. վարձում էր շատ օգնականներ ու գործակիցներ, որոնցով կարողանա իր չարախոսությունը առաջ տանել: Եվ նենգությամբ ստահոդ քսություններ էր ուղարկում Արշակ թագավորին, (իբրև) թե «Գնելը մտադրություն ունի թագավորել և քեզ սպանել: Բոլոր մեծամեծները, նախարարները և

ամենայն մեծամեծք և նախարարք և ազատք սիրեն զԳնել, և ամենայն աշխարհիս նախարարք կամին զտէրութիւն նորա 'ի վերայ իւրեանց առաւել քան զքո: Արդ, ասեն, գիտեա և տես, արքայ, զինչ գործեսցես. որպէս և կամիս, զիարդ մարթասցիս ապրել: Եւ այսպիսի բանիւք գրգռէին զթագաւորն Արշակ, մինչև հաստատէին 'ի միտս թագաւորին զիւրեանց ասացեալսն:

Ապա ոխացեալ թագաւորն ընդ պատանեկին Գնելոյ, և բազում անգամ հալածական առնէր զնա. և նիւթեալ լինէր նենգութիւն բազում ժամանակս: Ապա զնաւասարդաց ժամանակօքն առնէր խորհուրդ թագաւորն Արշակ, կոչել առ ինքն զպատանեակն Գնել և սպանանել: Ապա առաքէր զՎարդան զեղբայր սպարապետին զնահապետ ազգին Մամիկոնեան տոհմին, զի մեծաւ երդմամբ և նենգութեամբ կոչել կարասցէ, զի մի' խորհուրդն յայտնեսցի. գուցէ փախիցէ և ապրիցի. այլ զի պատրանօք և հրապուրանօք ածիցէ մինչև 'ի տեղին մահուն: Եւ էր բանակ թագաւորին 'ի Շահապիվանի 'ի բուն բանակի տեղսն Արշակունեացն 'ի ներքոյ Սիւսեացն և 'ի վերայ ասպարիսացն: Եւ առաքեալ զՎարդանն, զմեծ նահապետն յարքայէն Արշակայ, եկն եգիտ զպատանեակն Գնել 'ի մօտաւոր տեղւոջն, այս ինքն 'ի գեւղն Առաւիտոց անուանեալ: Մեծաւ ուխտիւ և բազում պատրանօք զպատանեակն Գնել հանդերձ իւրով կնաւն և դրամբն հաւանեցուցանէր երթալ հասանել 'ի բանակն արքունի. իբրև այն թէ 'ի մեծարանս ինչ զնա կոչիցէ թագաւորն, բազում խնդանօք տարեալ հասուցանէր՝ եթէ թագաւորն Արշակ ոչ կամեցեալ զտօնս նաւասարդաց առանց քո անցուցանել, զի հաճեալ և քաղցրացեալ է ընդ քեզ, վասն զի ըստ բանից չարախօսացն ոչ ինչ գտաւ 'ի քեզ չարութիւն. և եհաս ինքն 'ի վերայ, զի զուր այժմ ածէր զքեզ՝ որ 'ի նմանէն մեծ սիրոյ արժանի ես:

Ապա չուեաց ամենայն կազմութեամբն իւրով Գնել, երթեալ հասանէր 'ի բանակն արքունի զգիշերն ամենայն բազում փութով տագնապաւ: Վասն զի վաղիւն հասելոյ առաւօտուն օրն լուսանայր կիւրակէն: Եւ յայնմ աւուր տօն դիպեցաւ յիշատակի մեծին Յովհաննու, որ 'ի Գրիգորէ և 'ի Տրդատայ յաւանին Բագաւանին կարգեալ էր: Ապա յայնմ յիշատակ աշխարհաբնակք մարդկան՝ որ ժողովեալն էին, և բազում եպիսկոպոսք՝ որ յայլոց գաւառաց. և ապա մեծ եպիսկոպոսապետն Ներսէս փոխանակ իւր յղեաց զիւր աթոռակիցն զխադ, և զիւր արքիդիակոնն եպիսկոպոսին՝ որում անուն Մուրիկ կոչէր. զի երթիցեն նոքա, պէտք զինչ և իցեն ժողովոյն՝ ընդ նոքա վճարեսցեն: Եւ ինքն անդէն մնաց յարքունական բանակին, զի զնոյն հաղորդութեանն և անդ

ազատները սիրում են Գնելին, մեր բոլոր աշխարհիս նախարարները գերադասում են, որ Գնելը լինի իրենց տերը քան թե դու, ուրեմն, թագավո՛ր. նայիր թե ի՛նչ պիտի անես, ի՛նչպես պիտի կարողանաս քեզ փրկել»: Այսպիսի խոսքերով գրգռում էին Արշակ թագավորին, մինչև որ նրան համոզեցին:

Ուստի թագավորը Գնել պատանուն ոխանալով՝ շատ անգամ հալածում էր նրան և երկար ժամանակ նենգավոր խորհուրդ էր մտածում նրա դեմ: Ապա նավասարդի (տոներին) մոտ Արշակ թագավորը մտածեց պատանուն իր մոտ հրավիրել և սպանել: Նրա մոտ էր ուղարկում Մամիկոնյան ցեղի նահապետ Վարդանին, սպարապետի եղբորը, որ նենգությամբ, մեծամեծ երդումներով կարողանա կանչել, որ այս խորհուրդը բոլորովին գաղտնի մնա, մի գուցե փախչի ազատվի, այլ խաբելով ու հրապուրելով բերե հասցնե մինչև մահվան տեղը: Թագավորի բանակը գտնվում էր Շահապիվանում, Արշակունիների բուն բանակատեղում, պարսպապատ որսատեղի տակ, ձիարշավի հրապարակի վրա[107]:

Վարդան մեծ նահապետը Արշակ թագավորի կողմից եկավ, գտավ պատանի Գնելին մոտակա տեղում, այսինքն Առավյուտոց գյուղում: Մեծ երդումներով ու վարպետ խաբեությամբ համոզեց պատանի Գնելին՝ իր կնոջ ու տանու մարդկանց հետ գնալ արքունի բանակը, (հավատացնելով), թե Արշակ թագավորը նրան մեծարանքի համար է հրավիրում: Թագավորը, (ասաց նա), չկամեցավ նավասարդի տոները առանց քեզ անց կացնել. նա այժմ բարեհաճ է դեպի քեզ, որովհետև իմացավ, որ քո մեջ չկա շարություն, ինչպես որ շարախոսները էին ասում. նա համոզվեց, որ մինչև այժմ ի զուր էր քեզ ատում, մինչդեռ դու նրա կողմից արժանի ես սիրո»:

Գնելը իր ամբողջ կազմությամբ ճանապարհ ընկավ. ամբողջ գիշերը մեծ շտապով գնալով եկավ հասավ արքունի բանակը, որովհետև նաչորդ օրը, որ լուսանում էր՝ կիրակի էր: Այդ օրն էր հանդիպում մեծն Հովհաննես (Մկրտչի) հիշատակի տոնը, որ Գրիգորից և Տրդատից սահմանված էր Բագավան ավանում: Այդ տոնին եկել էին աշխարհական մարդկանց մեծ բազմություն և զանազան գավառներից շատ եպիսկոպոսներ: Ներսես մեծ եպիսկոպոսապետն էլ իր կողմից ուղարկեց իր աթոռակից Խադին և իր եպիսկոպոսական ավագ սարկավագին Մուրիկ անունով[108], որ երթան այնտեղ և ինչ որ հարկավոր է կատարեն. իսկ ինքը մնաց արքունական բանակում, որպեսզի նադորդության (խորհուրդը) այնտեղ էլ կատարեն: Եվ այդ գիշեր բանակում

կատարեսցեն: Եւ յայնմ գիշերի ցայգապաշտօն մեծ եղև 'ի բանակին առ կաթողիկոսին:

Իսկ իբրև առաւօտն ծագեաց, հասանէր վաշտն Գնելոյ 'ի բանակն արքունի. և մինչ Գնելն արքունական բանակին լինէր միջամուխ, ազդ լինէր թագաւորին եկն նորա: Ապա ելանէր հրաման յարքունուստ, արտա՞ս ունել և տանել սպանանել: Եւ մինչ դեռ գայր նա ընդ բանակամէջն, և էր հեծեալ յերիվարին իւրում, իբրև մերձ եղև 'ի հրապարակն արքունի, և անդ 'ի յարքունուստ հասանէին բազում սպասաւորք վառեալք սուսերաւորք նիզակաւորք վաղրաւորք սակրաւորք սունաւորք և սպարակիրք հետևակք, որք մատուցեալք բուռն հարեալք ընկենուին յերիվարէ անտի զպատանեակն Գնել. և ձեռն յետս կապէին զնա, և առեալ գնային 'ի տեղի կառափելոյն: Եւ քանզի կին նորա եկեալ էր ընդ նմա ժանուաւ, 'ի նմին 'ի նորին վաշտու էր ընդ առն իւրում: Իսկ իբրև տեսանէր թէ կալան զայր իւր և կապեցին, վաղվաղակի ընթացաւ յեկեղեցախորանն ժողովուրդն, ուր պաշտօն մարդկան բանակին առ աստուած կատարէր, մինչ դեռ առաւօտին աղօթքն մատչէին. և անդ Ներսէս մեծ եպիսկոպոսապետն: Իսկ կինն հասեալ առ արքեպիսկոպոսապետն, գոյժ արկանէր նմա զիւրոյ առնն տարապարտ կորուստն, ճչեալ մեծաձայն: Վաղ հասիր, ասէ, դեռ զամուսինն իմ զուր առանց վնասու և յանցանաց խողխողեն: Իսկ նորա խափանեալ զպաշտօնն, ընթանայր 'ի խորանն արքունի, հասեալ 'ի դրացն 'ի ներքս առ թագաւորն անգանէր: Իսկ թագաւորն իբրև տեսանէր զմեծ քահանայապետն, գիտացեալ զբարեխօսութիւն համոզելոյն վասն առնն մահուանն զի մի՛ մեռցի, յայնժամ թագաւորն զիւր սամոյրսն զգլխովն ածեալ, 'ի փոյթ կնքանն մտեալ, զիւր դէմս երեսացն ծածկէր. քնոյ պատճառ եդեալ՝ զի նորա բանսն մի՛ լուիցէ:

Իսկ սուրբն Ներսէս մատուցեալ բուռն հարկանէր զթագաւորէն. խօսէր ընդ նմա, և ասէր. Թագաւոր, յուշ լիցի քեզ քո տէրն՝ որ վասն մերոյ սիրոյ խոնարհեցաւ յիւրմէ 'ի քնական բարձրութենէն, և եղև եղբայր ծառայութեան մերոյ անարժանութեանս. ոչ վասն այլ իրիք, այլ զի լիցի վարդապետ սիրոյ. զի մենք խնայելով 'ի միմեանս, նայեցեալ յաստուածեղէն վարդապետն, զմիմեանս սիրեսցուք երկեղիւ. զի մի միմեանց վնասել իշխեսցուք: Իսկ եթէ դու 'ի քո եղբայր և 'ի ծառայակիցն և յընկերակիցն և 'ի հարազատն ոչ խնայեսցես, որ կամօքն եղբայրացեալ է մեզ տէրն՝ 'ի քեզ ոչ խնայեսցէ: Զի նա մեզ այսպէս ասաց. «Որ ձեզ լսէ, ինձ լսէ. և որ զձեզ ընդունի, զիս ընդունի. և որ զձեզ անարգէ, զիս անարգէ»: Եւ որ այժմ դեռ մեւք ընդ քեզ խօսի, լուր Քրիստոսի, զի մի՛ կորիցես դու. գուցէ անկեալ 'ի թագաւորութենէդ

կաթողիկոսի ներկայությամբ գիշերային մեծ պաշտամունք (նախատոնակ) կատարվեց:

Լույսը բացվելու դեմ Գնելի խումբը հասավ արքունի բանակը: Երբ Գնելը բանակի մեջ էր մտնում՝ թագավորին իմաց տվին նրա գալուստը: Ապա արքունիքից հրաման տրվեց՝ բանակից դուրս պահել նրան և տանել սպանել: Եվ մինչ նա ձի հեծած անցնում էր բանակի միջով և մոտենում էր արքունի հրապարակին՝ այդտեղ արքունիքից վրա էին հասնում բազմաթիվ սպասավորները՝ զինված սրերով, նիզակներով, սվիններով, վաղրերով ու սակրերով, և սպարակիր հետևակ զորք: Նրանք հասան, բռնեցին Գնել պատանուն, ձիուց վեր ձգեցին, ձեռները հետևը կապեցին և առան տարան գլխատելու տեղը: Նրա կինը նրա հետ էր գալիս ժանվարով[109], խմբի հետ: Երբ տեսավ որ իր ամուսնին բռնեցին ու կապեցին՝ իսկույն վազեց խորան-եկեղեցին, որտեղ բանակի մարդկանց համար աստվածային պաշտամունքն էր կատարվում, առավոտյան աղոթքը, որտեղ գտնվում էր նաև Ներսես մեծ եպիսկոպոսապետը: Կինը հասնելով եպիսկոպոսապետի մոտ՝ գուժում էր իր անմեղ ամուսնի կորուստը: Ճիչ բարձրացրեց ասելով. «Տատապի՛ր, հասի՛ր, ամուսնուս առանց մեղքի, առանց հանցանքի տանում են անիա մորթելու»: (Կաթողիկոսը) պաշտոնը խափանելով, վազում էր թագավորի խորանը, դրան մոտ հասնելով՝ ներս էր ընկնում թագավորի մոտ: Իսկ թագավորը, երբ տեսավ մեծ քահանայապետին, գիտենալով, որ եկել է բարեխոսելու և համոզելու, որ (Գնելը) չսպանվի՝ սամույրենին գլխին քաշած, երեսը ծածկած մտավ խորանի քունջը[110], քնած ձևանալով, որպես թե նրա խոսքերը չէ լսում:

Իսկ սուրբ Ներսեսը մոտեցավ, բռնեց թագավորից, սկսեց խոսել. «Հիշի՛ր, թագավոր, ասում էր նա, մեր տիրոջ, որ մեր սիրո համար իջավ իր բուն բարձրությունից, եղբայր դարձավ մեզ՝ անարժան ծառաներիս, ոչ ուրիշ նպատակով՝ այլ միայն որպեսզի սիրո վարդապետող լինի, որպեսզի մենք էլ մեր աստվածային վարդապետին նայելով՝ միմյանց խնայենք, միմյանց սիրենք, իրար վնասել չհամարձակինք: Իսկ եթե դու քո եղբորը, ծառայակցին, ընկերակցին ու հարազատին չխնայես՝ մեր տերն էլ, որ կամավորապես մեզ եղբայրակից է դարձել՝ քեզ չի խնայի: Որովհետև նա մեզ այսպես ասաց. «Ով ձեզ լսէ՝ ինձ կլսէ. ով ձեզ ընդունէ՝ ինձ կընդունէ, և ով որ ձեզ անարգէ՝ ինձ կանարգէ»: Լսիր Քրիստոսին, որ ներկայումս քեզ հետ խոսում է մեր բերանով, մի զուցե թագավորությունիցդ զրկվիս, կենդանույն մեռնակ

քումմէ, կենդանւոյն միայն շրջիցիս, և ոչ ոք քեզ օգնիցէ: Այլ այժմ լո՛ւր Քրիստոսի, և խնայեա յանձն քո, մի՛ հեղուլ զարիւն եղբօր քո հարազատի՝ սպանանել զարդարն 'ի տարապարտուց յանխնայ:

Իսկ թագաւորն սալացեալ, ոչ ինչ լսէր. զերեսսն վտաւատօքն ծածկեալ՝ ոչ բանայր, և ոչ կամէր առնել բանիցն պատասխանի. այլ ընկողմնեալ պառեալ ծածկեալ կայր 'ի գահոյսն, զի և շարժել անգամ ոչ տայր: Իսկ մինչ դեռ նա զայս և այսպիսի բանս ողոքոյ ընդ թագաւորին խօսէր, զայր արտաքուստ դահճապետն Երազմակ մտանէր 'ի խորանն արքունի, սկսանէր պատմել՝ զի 'ի գլուխ հանի կատարեցի, ասէ, զամենայն հրամանս արքունի. առի գնացի զԳնէլ, տարայ մինչև յորմ Սիւսին սպանի, և անդէն թաղեցի:

Ապա խօսել սկսանէր սուրբն Ներսէս, և ասէր. Արդարև իսկ իբրև օձի քարբի, զի խնու զականջս իւր՝ զի մի՛ լուիցէ նա զձայն թովչի հարտարի, և մի՛ առցէ զդեղ 'ի դեղատուէ իմաստնոյ, սոյն օրինակ և դու խցեր զականջս, և կափուցեր զլսելիս, զի մի՛ լուիցես զօգտակար քարքառոց զաստուածեղէն բանիցն խրատուն. այլ զգազանաց առեալ զքարուցս, սկսար լինել մարդախանձ: Վասն այնորիկ որ 'ի վերայ նոցա ասացաւ, լիցի այն 'ի վերայ քո. որպէս ասէն. «Աստուած փշրեսցէ զատամունս նոցա 'ի բերանս նոցա, և զծանիս առիւծուց խորտակեաց Տէր»: Վասն զի ընդդէմ դարձար Քրիստոսի տեառն քո, վասն այնորիկ անարգ լիջիր դու իբրև զջուր հեղեալ. և 'ի լարել աղեղան սորա՛ տկարասջիր: Եւ կործանումն՝ որ բերանով մարգարէին ածի 'ի վերայ ձեր, ըմպել ազգիդ Արշակունեաց զյետին բաժակն, արքջիք արբեսջիք և կործանեսջեք, և այլ մի՛ ևս կանգնեսջիք: Եւ անսպառ ժամանակին հրոյն սպառնալիք հասանիցեն ձեզ 'ի տեառնն զալստեան. և անկջիք 'ի խաւարն, և մի՛ ևս տեսջիք զարև փառաց Որդւոյն աստուծոյ: Այլ դու, Արշակ, փոխանակ զի զգործս Կայէնի գործեցեր, զանէծսն Կայէնի զգեցջիր. անկջիր կենդանւոյն 'ի թագաւորութենէդ քումմէ, և չարչարեսցիս առաւել քան զՏիրան զհայրն քո, և դառն մահուամբ զկեանս քո յերկրէս մեծ նեղութեամբ վճարեսջիր:

Եւ զայս ամենայն խօսեցեալ ընդ թագաւորին քահանայապետին մեծին Ներսէսի, գնաց 'ի թագաւորէն, և այլ ոչ դարձաւ անդրէն յայն բանակ: Իսկ զպատանեակն Գնէլ առնուին գնային մօտ 'ի Սիւսն արքունի, և անդէն կտափէին 'ի սարակ լերինն. որում տեղւոյն Լսին անուանեալ է, մօտ յորմածս արգելոցացն որսոյն էրիոցն, ընդդէմ մուրատասանին աղբերացն բազմոցացն արքունի, յանդիման բանակետեղ բնին:

Ապա հրաման եղև յարքայէն. Ամենայն մարդիկն որ իցեն 'ի բանակին, մեծ և փոքր առ հասարակ, մի՛ ոք իշխեսցէ չերթալ. այլ ամե-

շրջես, և ոչ ոք քեզ չօգնե։ Լսի՛ր Քրիստոսին, ինքդ քեզ խնայիր. քո ճարազատ եղբոր արյունը մի՛ թափիր, արդար մարդուն անմեղ տեղը անխնա մի՛ սպանիր»։

Իսկ թագավորը քար կտրածի պես ոչինչ չէր լսում, երեսը ծածկել էր շորովը և չէր բաց անում, չէր կամենում նրա խոսքերին պատասխանել. այլ զանույքում կողքի ընկած փաքաքվել ծածկվել էր, տեղիցը շարժվել անգամ չէր ուզում։ Եվ մինչդեռ (սուրբն Ներսես) այսպիսի բողոքական խոսքերով հորդորում էր թագավորին՝ Երազմակ դահճապետը մտավ ներս, թագավորի խորանը, և սկսեց պատմել. «Արքունի բոլոր հրամանները կատարեցի, ասաց. Գնելին առա տարա մինչև որսատեղի պատի տակը, սպանեցի և նույն տեղում թաղեցի»։

Այն ժամանակ սուրբ Ներսեսը խոսել սկսեց և ասաց. «Ինչպես որ քարք օձը խցկում է իր ականջները, որպեսզի ճարտար բռվիչի ձայնը չլսե և դեղ չընդունե իմաստուն դեղատվից՝ այնպես էլ դու ականջներդ խցկեցիր, լսողությունդ փակեցիր, որպեսզի աստվածային խոսքի խրատը չլսես, այլ գազանների բարք ստանալով՝ սկսեցիր մարդիկ ուտել։ Ուստի ինչ որ գազանների մասին է ասված՝ քեզ վրա կկատարվի։ Ասված է. «Աստված նրանց ատամները նրանց բերաններում կփշրե, և առյուծների ժանիքները տերը խորտակեց»։ Որովհետև դու քո տիրոջ Քրիստոսին դեմ դարձար՝ ուստի անպիտան ու անարգ դառնաս ինչպես թափված ջուրը, և տկարանաս՝ իբր նրա աղեղը լարե։ Եվ այն կործանումը, որ մարգարեի բերանով ասվեց՝ կհասնի ձեր վրա, որ դուք, Արշակունյաց ցեղդ, կխմեք վերջին բաժակը, կխմեք, կհարբեք ու կկործանվեք, և այլևս չեք կանգնի։ Եվ տիրոջ (երկրորդ) գալստյան ժամանակ հավիտենական կրակի սպառնալիքը ձեր վրա հասնի, ընկնեք խավարի մեջ և այլևս չտեսնեք աստծու որդու փառքի արևը։ Իսկ դու, Արշակ, որովհետև Կայենի գործը գործեցիր՝ Կայենի անեծքին գաս. կենդանույն թագավորությունից զրկվիս և չարչարանքներ կրես քո Տիրան հորից ավելի և դառն մահվամբ մեծ նեղության մեջ կյանքդ վերջացնես»։ Ներսես մեծ քահանայապետը այս բոլորը խոսեց թագավորին և նրա մոտից գնաց և այլևս բանակը չդարձավ։

Իսկ Գնել պատանուն առնում տանում էին արքունի որսատեղի մոտ և գլխատում էին լեռան մի բլուրի վրա, որին Լսին են ասում, որսերի արգելոցի պատի մոտ, բանակատեղի դեմուդեմ. մուրտաստանի աղբյուրի մոտ ասրված արքունի բազմոցների հանդեպ։

Ապա հրաման դուրս եկավ թագավորից. բանակում եղող բոլոր մարդիկ, մեծ և փոքր առհասարակ առանց բացառության, գնան կոծ

նայն ոք առ հասարակ երթիցեն դիցեն աշխար կոծոց, և լացցեն զԳնել մեծ սեպուհն Արշակունի զսպանեալն: Իսկ ինքն թագաւորն գնացեալ 'ի լալիսն, նստեալ լայր զեղբօրորդին իւր, զոր ինքն եսպան: Երթեալ նստէր մօտ առ դին, լայր ինքն, և տայր հրաման՝ կոծ մեծ և աշխար դնել շուրջ զսպանելովն դիակամբն: Իսկ կինն սպանելոյն Փառանձեմն զհանդերձսն պատառեալ, զգէսս արձակեալ, մերկատիտ 'ի մէջ աշխարանին կոծէր. ձայն արկանելով ճչէր, յողբս արտասուաց յաղիողորմ գուժի առ հասարակ զամենեսեան լացուցանէր: Իսկ թագաւորն Արշակ 'ի լալիսն տեսանէր զկինն սպանելոյն, առփէր և ակն դնէր՝ առնուլ զնա իւր կնութեան:

Իսկ այն որ զնենգութիւն՝ քսութեանց նիւթեաց, և դաւով 'ի վերայ իւրոյ հարազատին սպանութիւնս կատարեաց, վասն նորին կնոջն արար զայն. զի մեծապէս սիրով հարեալ էր 'ի նմա: ԶՏիրիթն ասեմ, որ յառաջագոյն հարեալ 'ի կնոջն յայնմիկ, վասն որոյ զնենգութիւնս սպանութեանցն թագաւորաւն գործեաց: Իսկ մինչ դեռ 'ի նմին կոծն սաստկացեալ էր, Տիրիթն սկսանէր ժոյժ չունելոյ տռփանացն: Պատգամ յղէր առ կին մեռելոյն, ասէ՝ զի մի՛ կարի զանձն քո աշխատ առնէր այդչափ, զի այր բարի ես եմ քան զնա. ես սիրեցի զքեզ, վասն այսորիկ մատնեցի զնա 'ի մահ, զի զքեզ առից ինձ կնութեան: Արդ մինչ դեռ կոծ մոլութեան զդիակամբն ջայլէին, զայսպիսի պատգամս առաքէր Տիրիթն: Բողոք բառնայր՝ թէ լուարուք ամենեքեան, զի մահ առն իմոյ վասն իմ եղև. զի որ ինձ ակն եդ վասն իմ, զայրն իմ ետ սպանանել: Զհերն փետէր, ճչէր ընդ կոծելն:

Ապա իբրև մեծ իրքն համարձակ յայտնեցան 'ի լսելիս ամենեցուն և 'ի ձայնարկուքն ամենայն, եղև նա մայր ողբոցն, և ձայնարկուեքն ամենայն 'ի ձայն ողբոցն սկսան նուագել զիրսն տրփանացն Տիրիթայ, զակն դնելն, զքսութիւնն զհնարս մահու նիւթել, զսպանումն, ձայնիւքն մրմնջոցն 'ի վերայ սպանելոյն 'ի մէջ կոծոյն բարբառէին գեղգեղեալ խանդաղատութեամբ: 'Ի նուաճել իւրեանց ձայնիցն, իրքն յայտնեալ հռչակ հարկանէր: Զոր իբրև լուաւ թագաւորն Արշակ, և եհաս 'ի վերայ իրացն, զարմացեալ լինէր արմանայր ընդարմանայր, ստրջացեալ 'ի միտ առնոյր զիրսն: Ապա խօսել սկսանէր թագաւորն, ծափս զծափի հարեալ մեծաւ զղջմամբ ընդ իրսն՝ զոր գործեաց, ասէ. Վասն զի 'ի կնոջն Գնելոյ զանարժան սիրով հարաւ Տիրիթն, առ այնմ զչարիսն նիւթեաց զքսութիւն, զմահուն գոռութիւն զոր և տարապարտ. և զմեզ ևս արդար արեանն շաղախեաց վասն իւրոյ պղծութեանն. զեղբայրն իւր ետ կորուսանել, և զանհնարին չարիսն և զանէծս որ ոչ անցանեն՝ ետ մեզ ժառանգել:

անեն և ողբան սպանված Արշակունի մեծ սեպուհ Գնելին. ոչ ոք չհամարձակվի եւ մնալ: Ինքն էլ թագավորը կոծի տեղը գնալով՝ նստել ողբում էր իր եղբորորդուն, որին ինքն սպանեց: Գնացել նստել էր դիակի մոտ, ինքը լալիս էր և հրամայում էր լաց ու կոծը սաստկացնել սպանվածի համար: Իսկ սպանվածի կինը, Փառանձեմը, զգեստները պատառոտած, վարսերը արձակած, կուրծքը բաց, կոծում էր սգատեղում, բարձր ճչում էր, աղիողորմ ողբով ու արտասուքով բոլորին լացացնում էր: Իսկ Արշակ թագավորը սգատեղում տեսնում էր սպանվածի կնոջը, ցանկանում էր նրան և մտքում որոշում էր նրան կին առնել:

Իսկ նա, որ նենգությամբ այն քսությունը սարքեց և դավով (թագավորի ձեռքով) կատարել տվեց հարազատի սպանությունը, այսինքն Տիրիթը, սաստիկ սիրահարված էր այդ կնոջը, այդ պատճառով էլ թագավորի ձեռքով նենգությամբ այդ սպանությունը կատարեց: Արդ՝ երբ կոծը սաստկացած էր՝ Տիրիթն այլևս չէր կարողանում իր կրքերը զսպել: Մարդ էր ուղարկում մեռելի կնոջ մոտ և ասում. «Շատ էլ մի՛ չարչարվիր, ես նրանից լավ տղամարդ եմ. ես քեզ սիրեցի, այս պատճառով էլ նրան մեռցնել տվի, որպեսզի քեզ կնության առնեմ»: Արդ՝ մինչ բազմությունը դիակի շուրջը մոլեգնաբար կոծում էր՝ Տիրիթն այսպիսի պատգամ էր ուղարկում: Կինը բողոք բարձրացրեց. «Լսեցե՛ք բոլորդ, իմ ամուսնու մահը իմ պատճառով եղավ. մեկը ինձ աչք տնկեց և ամուսնուս սպանել տվեց»: Մազերը փետում էր, ճչում էր կոծելիս:

Երբ այս կարևոր իրողությունը բացվեց, ամենքին հայտնի դարձավ, ձայնարկուներն էլ լսեցին՝ (Փառանձեմը) ողբի մայր դարձավ, ձայնարկուները[111] սկսեցին ողբաձայն խաղի նման երգել Տիրիթի սիրահարությունը, (կնոջ վրա) աչք տնկելը, քսությունը, մահվան հնարք գտնելը, սպանությունը: Սպանվածի վրա կոծ անելով. աղիողորմ ձայնով երգում էին այս բաները: Երբ նրանց ձայները դադարեցին՝[112] իրողությունն արդեն տարածվել հռչակվել էր: Արշակ թագավորը երբ այս լսեց և հանգամանքներին վերահասու եղավ՝ զարմացավ, ապշեց մնաց և սարսափում էր եղածի վրա: Ապա սկսեց նա խոսել ծափը ծափին խփելով՝ մեծ զղջումով իր արած գործի համար. «Որովհետև Տիրիթը անարժան սիրով սիրահարվել էր Գնելի կնոջ՝ այս պատճառով էլ այդ չարիքը հնարեց քսությամբ, անմեղ մահվան պատճառ դարձավ. մեզ էլ իր պղծության համար արդար արյունի մեջ շաղախեց, իր եղբորը կորցնել տվեց և մեզ ժառանգել տվեց աններելի չարիք և անեծք, որոնք չեն անցնի»:

Ապա իբրև հասանէր թագաւորն յիրացն հաստատութեան ՚ի վերայ, և ճշգրտէր զիրսն, խլխլեալ անսայր բանին առ ժամանակ մի: Իսկ իբրև զմեռեալն ծածկեցին անդէն ՚ի տեղւոջն՝ յորում սպանաւն, և աւուրք հարուստ անցին ՚ի վերայ իրացն գործելոց, պատգամ յղէր Տիրիթն առ թագաւորն: Կամ լիցի, ասէ, քեզ արքայի, զի հրաման տացես՝ զՓառանձեմ կին Գնելոյ թող առից ինձ կնութեան: Զոր իբրև լուեալ արքային, ասէ. Արդ հաստատ գիտեմ զոր լուայն թէ ստոյգ է, վասն կնոջն իւրոյ եղև մահն Գնելոյ: Եւ անդէն արքայն մահ խորհէր, սպանանել զՏիրիթ ևս փոխանակ ընդ մահուն Գնելոյ: Զոր իբրև լուաւ Տիրիթ, զահի հարեալ յարքայէն՝ գիշերի փախստական լինէր: Ապա ազդ լինէր թագաւորին Արշակայ փախուստն Տիրիթայ, տայր հրաման թագաւորն Արշակ ազատագունդ բանակին զհետ լինել Տիրիթայն. զի իբրև հասցեն նմա, անդէն՝ ՚ի տեղւոջն սպանցեն: Բազումք և քաջք զհետ լինէին փախուցելոյն Տիրիթայ. ապա երթեալ հասանէին ՚ի գաւառին Բասենոյ ՚ի մէջ մայրեացն. ՚ի տեղւոջն՝ յորում հասանէին, անդէն զՏիրիթն սպանանէին:

Եւ յետ այսորիկ էառ իւր Արշակ զկինն սպանելոյն զՓառանձեմն: Եւ որչափ սիրէր արքայն Արշակ զկինն, նոյնչափ ատեաց կինն զարքայն Արշակ. ասելով՝ թէ թաւ է մարմնով, և թուխ է գունով: Ապա իբրև կինն ՚ի նա ոչ յանգոյց զմիտս իւր, առաքեաց արքայն Արշակ յերկիրն Յունաց, և խնդրեաց էած անտի կին ՚ի կայսերական տոհմէն ազգաւ, զի անուն էր նորա Ողոմպի: Եւ ուժգին սիրով սիրեաց զնա, և նախանձուկս արկանէր նովաւ առաջին կնոջն. և կինն Փառանձեմ ոխացաւ ընդ Ողոմպին, և խնդրէր սպանանել զնա: Բայց ծնաւ ապա Փառանձեմ թագաւորին ուստր մի, և կոչեցին զանուն նորա Պապ, և սնուցին զնա, և ՚ի չափ հասուցին: Եւ իբրև չրթափեաց և եղև հուժկու, ետուն զնա պատանդ ՚ի դուռն կայսերն յերկիրն Յունաց:

Իսկ Փառանձեմն ՚ի մեծ նախանձու և ոխութեամբ գնայր ընդ Ողոմպինոյն, և խնդրէր սպանանել զնա դեղովք: Իբրև ոչինչ հնարս մեքենայից չկարէր գտանել, վասն զի անձինն իւրում կարի զգոյշ կայր, մանաւանդ ՚ի կերակրոց և յըմպելեաց, բայց զիւրոց նաժշտացն կերակուրս արարեալ և կամ զնոցին պարզեալ զգինի ճաշակէր, և եթէ ոչ ինչ գտանէին հնարք դեղել զնա մահուան դեղօքն, ապա դրան երէց ոմն արքունի՝ որ էր ՚ի ժամանակին յայն, որում անուն Մրջիւնիկ, յԱրշամունեաց տեղեացն ՚ի նահանգէն Տարօն գաւառէն, զնա ՚ի բանս արկանէր Փառանձեմն անօրէնն: Զանարժանս զանկատար զանջնջելի զչարեացն մեղացն չմոռացական տանջանացն կատարեաց զգործսն զանարժանս զանտես զանլուր, այս ինքն ընդ կենաց դեղն զդեղ մահուն խառնելով. որ ուրեք երբէք այսպիսի գործք յումեքէ ՚ի վերայ երկրի ոչ գործեցան:

Երբ թագավորը ճշտությամբ իմացավ գործի հանգամանքները՝ առժամանակ սուտ-խուլ եղավ, սպասում էր։ Իսկ երբ մեռելը թաղեցին նույն տեղում որտեղ սպանվել էր, և այս անցքի վրա բավական ժամանակ անցավ՝ ապա Տիրիթը պատգամավոր էր ուղարկում թագավորի մոտ. «Թարեհանի՛ր, արքա, և հրաման տուր, որ Գնելի կնոջ Փառանձեմին ինձ կին առնեմ»։ Թագավորն այս լսելով ասաց. «Այժմ հաստատ գիտցա որ լսածս ճիշտ էր. Գնելի մահը նրա կնոջ պատճառով եղավ»։ Թագավորն խսկույն մտածեց Տիրիթին նույնպես սպանել Գնելի մահվան փոխարեն։ Տիրիթն երբ այս լսեց՝ թագավորից անհարեկված՝ գիշերով փախավ։ Թագավորին իմաց տվին Տիրիթի փախուստը։ Արշակ թագավորը հրաման տվեց ազատների բանակին՝ հետամուտ լինել Տիրիթին և որտեղ որ նրան հասնեն՝ նույն տեղում սպանեն։ Շատ քաջ հեծյալներ փախստական Տիրիթին հետամուտ եղան, գնացին հասան մինչև Բասեն գավառը և անտառի մեջ, որտեղ նրան հանդիպեցին՝ տեղնուտեղը սպանեցին Տիրիթին։

Հետո Արշակը իրեն կին առավ սպանված (Գնելի) կնոջը՝ Փառանձեմին։ Եվ որքան Արշակ սիրում էր կնոջը՝ այնքան էլ սա ատում էր Արշակ թագավորին, ասելով, թե՝ «թավամազ մարմին ունի, թուխ գույն ունի»։ Վերջը, երբ կնոջ սիրտը Արշակին չկպավ՝ սա մարդ ուղարկեց Հունաց երկիրը և այնտեղից՝ կայսերական տոհմից, խնդրեց բերել տվեց իրեն կին Ոլոմպի անունով։ Նրան ուժգին սիրով սիրեց և նրանով զբաղվում էր առաջին կնոջ նախանձը։ Փառանձեմը սրտումը ոխ պահեց Ոլոմպիի դեմ և միջոց էր փնտռում նրան սպանելու։ Բայց հետո Փառանձեմը թագավորից ունեցավ մի տղա, որի անունը դրին Պապ, նրան մեծացրին, չափահաս դարձրին։ Երբ նա առույգ պատանի դարձավ՝ նրան պատանդ ուղարկեցին կայսեր դուռը, Հունաց երկիրը։

Իսկ Փառանձեմը, մեծ նախանձով ու ոխով լցված էր դեպի Ոլոմպին և միջոց էր որոնում՝ դեղերով նրան սպանելու. բայց չէր կարողանում ոչ մի հնարք գտնել, որովհետև (Ոլոմպին) շատ զգույշ էր իր անձին, մանավանդ կերակուրների և ըմպելիքների մեջ. Նա ուտում էր միայն իր նաժիշտների պատրաստած կերակուրը և խմում էր նրանց պարզած գինին։ Երբ ոչ մի հնարք չգտնվեց նրան մահացու դեղերով բունավորելու՝ ապա անօրեն Փառանձեմը իրեն դավակից էր դարձնում Մրջյունիկ անունով մեկին Տարոն գավառի Արշամունիքից, որ այն ժամանակ արքունական դռան երեց էր։ Անարժան՝ երբեք չկատարված, անջնջելի՝ անմոռանալի չարագործություն՝ հավիտենական տանջանքի արժանի. չտեսնված, չլսված անարժան գործ կատարեց, կյանքի դեղի

Ընդ տէրունական ընդ սուրբ ընդ աստուածական մարմինն ընդ հացն օրհնաց խառնէին զդեղն սատակման. երէցն Մրջիւնիկ անուն, տալով յեկեղեցւոջն Ողոմպեայ տիկնոջն ընձեռել զմահուն գործ, և սպանանէր: Ըստ չարեացն կատարելոց զՓառանձեմայն ամենայն չարեօք լցեալ զկամս կատարէր. և յանօրէնն Փառանձեմայն պարգև առեալ չերիցուն զգեւղն` ուստի իսկ ինքն էր 'ի նահանգէն Տարօն գաւառէն, որում անուն Գոմկունք կոչին:

Այլ սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ ես յաւել տեսանել զերեսս թագաւորին Արշակայ մինչև յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ ոմն անուն, և կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէութեանն. և էր ըստրուկ 'ի ստրկաց արքունի: Ապա հրաման տայր թագաւորն` կոչել զամենայն եպիսկոպոսս Հայոց աշխարհին, զի եկեսցեն ձեռնադրեսցեն զՉոնակն 'ի կաթողիկոսութեան Հայոց: Եւ ոչ մի ոք ոչ հաւանեաց գալ. բայց միայն Աղձնեաց և Կորդուաց եպիսկոպոսք եկին, և զՉոնակն ձեռնադրեցին կաթողիկոսութիւն ըստ հրամանի թագաւորին: Եւ էր Չոնակն այր զգօն, և ոչ ինչ ունէր լեզու յանդիմանութեան կամ խրատու, այլ հաւանեալ էր թագաւորին զինչ և նա գործիցէ:

ԺԶ

ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԿՈՉԵՑԵԱԼ ԵՂԵՒ ԱՐՇԱԿ ԱՐՔԱՅ ՀԱՅՈՑ 'Ի ՇԱՊՀՈՅ ԱՐՔԱՅԷ ՊԱՐՍԻՑ, ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՄԵԾԱՐԵՑԱՒ 'Ի ՆՄԱՆԷՆ ՄԵԾԱՊԷՍ. ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՎԱՍԱԿ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՀԱՅՈՑ ՍՊԱՆԱՆԷՐ ԶՍՈՐԱԿԱԼ ԱՍՊԱՍՏԱՆԻՆ ԱՐՔԱՅԻՆ ՊԱՐՍԻՑ. ԿԱՄ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՐՇԱԿ ԱՐՔԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱՒՆ ԵՐԴՈՒԵԱԼ ԱՐՔԱՅԻՆ ՊԱՐՍԻՑ, ՈՒԽՏԷՐ ՆՄԱ, ԿԱՄ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՍՏԵԱՑ ՅԵՏՈՑ ԵՒ ՓԱԽԵԱՒ. ԿԱՄ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՐՔ ԽԻԹԱՆԱՍՈՒՆ ԶԱՍՏՈՒԾՈՅ ՊԱՇՏՕՆԵԱՅՍՆ ԿՈՏՈՐԷՐ ԱՐՔԱՅՆ ՊԱՐՍԻՑ ՎԱՍՆ ՆՈՐԱ

Յայնմ ժամանակի կոչէր առ ինքն Շապուհ արքայն Պարսից զթագաւորն Հայոց զԱրշակ. և մեծարեցաւ 'ի նմանէ բազում պատուով և մեծաւ փառօք, բազում գանձու ոսկւով և արծաթով, ամենայն մեծութեամբ թագաւորութեանն: Եւ իբրև զեղբայր որպէս զորդի զգեալ եղև 'ի նմանէ և երկրորդական զմեծ տուն տայր նմա յԱտրպատական աշխարհին. և 'ի միասին 'ի միում տախտի գահուն 'ի ժամ ուրախութեանն բազմէին, զմիագոյն զմիանշան զհամահանդերձ զարդու: Եւ զմիօրինակ զթագն օր ըստ օրէ ինքեան և նմա թագաւորն Պարսից զարդ պատրաստէր. զոյգ երկոքին 'ի միասին որպէս զեղբարս հարազատս ան-

մեջ մահվան դեղ խառնելով: Տերունական սուրբ և աստվածային մարմնի, այսինքն հաղորդության հացի հետ խառնում էին սպանիչ դեղը, և Մրջյունիկ անունով երեցը եկեղեցում Ոլոմպի տիկնոջն էր տալիս այն մահաբեր (հաղորդությունն) և սպանում էր: Անօրեն Փառանձեմի ամենաչար կամքը նրա ուզածի պես կատարելով՝ այս չերեցը[113] նրանից պարգև էր ստանում Տարոնի գավառում Գոմկունք գյուղը, որտեղից ինքն էր:

Իսկ սուրբ Ներսես կաթողիկոսն այլև Արշակ թագավորի երեսը չտեսավ մինչև նրա կորչելու օրը: Ուստի Ներսեսի փոխարեն քրիստոնեության գլուխ նշանակեցին մի ոմն Չունակի, որ արքունի ստրուկների մեջ ամենից ստրուկն էր: Թագավորը հրամայեց, որ Հայոց աշխարհի բոլոր եպիսկոպոսները ժողովվեն, Չունակին՝ Հայոց կաթողիկոս ձեռնադրեն: Ոչ ոք չհամաձայնեց գալ, բացի Աղձնիքի և Կորդուքի եպիսկոպոսներից, որոնք և Չոնակին կաթողիկոս ձեռնադրեցին թագավորի հրամանով: Այս Չոնակը մեղմ ու հանդարտ մարդ էր, հանդիմանելու կամ խրատելու լեզու չուներ, այլ համակերպվում էր թագավորի արածներին՝ ինչ էլ նա գործեր:

ԺԶ

ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԸ ՀՐԱՎԻՐՎԵՑ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻՑ ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՆՐԱՆԻՑ ՄԵԾԱՄԵԾ ՊԱՏԻՎՆԵՐՈՎ ՄԵԾԱՐՎԵՑ ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ՍՊԱՐԱՊԵՏ ՎԱՍԱԿ ՄԱՄԻԿՈՆՅԱՆՆ ՍՊԱՆԵՑ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԱԽՈՌԻ ԱԽՈՌԱՊԵՏԻՆ, ԿԱՄ Ի՛ՆՉՊԵՍ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԸ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԵՐԴՈՒՄ ՏՎԵՑ ԱՎԵՏԱՐԱՆԻ ՎՐԱ ԵՎ ՀԵՏՈ ԵՐԴՄԱՆ ՈՒԽՏԸ ԱՏԵԼՈՎ ՓԱԽԱՎ, ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ՆՐԱ ՊԱՏՃԱՌՈՎ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԸ ՅՈԹԱՆԱՍՈՒՆ ՄԱՐԴ ԷՐ ԿՈՏՈՐԵԼ ՏԱԼԻՍ ԱՍՏԾՈՒ ՊԱՇՏՈՆՅԱՆԵՐԻՑ

Այս ժամանակ Պարսից Շապուհ թագավորը իր մոտ էր հրավիրում Հայոց Արշակ թագավորին և նրանց մեծարեց մեծ պատվով ու փառքով, ոսկու և արծաթի շատ գանձով և թագավորական ամեն տեսակ մեծություններով: Նրան փայփայեց ինչպես իր եղբորը, ինչպես իր որդուն, նրան պարգևեց երկրորդական մեծ տունը[114] Արքայական աշխարհում. ուրախության ժամանակ նրանք մի տախտի վրա էին բազմում գահերում, միևնույն գույնի և միևնույն նշաններով ու զարդերով միատեսակ զգեստ էին հագնում. ամեն օր միատեսակ թագ էր պատրաստում Պարսից թագավորը իր համար և նրա համար. ինչպես երկու

բաժինս յղփացեալք էին 'ի միում ուրախութեան, և յանպատում ուրախութեան ուրախ լինէին:

Ապա եղև դէպ օր մի յաւուրց, եկն եմուտ թագաւորն Հայոց Արշակ շրջել զապարանաւ միով զարքային Պարսից. իսկ ախոռապետն արքային Պարսից նստէր 'ի ներքս 'ի տան ապարանին: Իբրև տեսանէր զթագաւորն, ոչ ինչ առ յուս կալեալ մեծարեաց զնա, և ոչ ինչ շուքս դնէր նմա. այլ և անարգանս ևս դնէր բշնամանաց, ասելով 'ի պարսկերէն լեզու՝ թէ այծից Հայոց արքայ, եկ նիստ 'ի խրձան խոտոյ 'ի վերայ: Զոր բանս իբրև լսէր սպարապետն զօրավարն Հայոց մեծաց, որում Վասակն կոչէր, 'ի Մամիկոնեան տոհմէն, մեծաւ բարկութեամբ և բազում սրտմտութեամբ բարկանայր. 'ի վեր առեալ զսուսերն, զոր ընդ մէջն ունէր, հարեալ անդէն 'ի տեղւոջն զախոռապետն արքային Պարսից զգլխատէր 'ի ներքս յապարանի անդ: Զի ոչ կարաց լսել և ժոյժ ունել զնուոյ թագաւորին զանարգանս. զիւր մահն առաջի եդեալ յաւ համարէր բազում անգամ, քան զտեառն իւրոյ լսել զվատթարութեան բշնամանս: Իբրև 'ի Պարսից աշխարհի էին, յայլոց 'ի տեղի և 'ի նոցուն հրապարակի աներկիւղ և անկասկած յանկարծօրէն զայսպիսի զգործ կարաց գործել: Իսկ թագաւորն Պարսից յորժամ զայս լսէր, բազում շնորհ ունէր զօրավարին Վասակայ, ընդ քաջարութեանն զարմացեալ և ընդ բազում աներկիւղութիւնն: Եւ բազում պարգևաց և պատուոյ արժանի առնէր, զքաջութիւն և զտիրասիրութիւնն գովեալ: Վասն այնր իրաց մեծաւ սիրով սիրէր զնա, և ըստ արժանի իւրում պատուէր զնա. մեծարէր զամենայն աւուրս հաշտութեան և խաղաղութեանն, որ 'ի մէջ նոցա էր:

Ապա մինչ դեռ անդէն ևս էր արքայն Հայոց առ արքային Պարսից, և մեծ սէր էր 'ի մէջ նոցա և մեծ խաղաղութիւն, երկնչելով երկեաւ թագաւորն Պարսից Շապուհ, եթէ զուգէ ստեսցէ սիրոյն նորա Արշակ արքայ Հայոց, և լիցի միաբան ընդ կայսերն Յունաց, և կամ կողմնակ ինչ լիցի 'ի նմանէ: Եւ ոչ հաւատայր նմա, թէ պահեսցէ առ նա զմտերմութիւն սիրոյն, և կացցէ յուխտին միաբանութեան ընդ նմա: Վասն այսորիկ երդումն պահանջէր 'ի նմանէն, մինչև կարի ստիպեալ բռնադատեաց զնա: Հաւանեաց, ասէ, և երդուիր ինձ յօրէնս քո, զի մի՛ ստեսցես ինձ: Իսկ իբրև կարի բռնադատեցաւ և 'ի նեղ անզաւ և շտապեալ տագնապեցաւ, եառուն հրաման ածել զերիցունս եկեղեցւոյն Տիպոնի քաղաքի, որում անուն զլխաւորին Մարի. և բերին զաւետարանն սուրբ, և տայր երդումն արքայն Պարսից Շապուհ արքային Հայոց Արշակայ՝ երդնուլ յաստուածեան աւետարանն, զի այլ մի՛ ևս ստեսցէ նմա. այլ կացցէ յուխտի նորա, և պահեսցէ զդաշինս նորա: Եւ վասն

հարազատ եղբայրներ նրանք անբաժան իրար հետ էին լինում ուրախությունների ժամանակ և անպատմելի ուրախություններով լիանում էին։

Այս օրերից մեկում՝ դեպք եղավ, որ Հայոց Արշակ թագավորը մտավ շրջելու Պարսից թագավորի ախոռներից մեկում. իսկ Պարսից թագավորի ախոռապետը նստած էր ներսը ախոռում. երբ նա թագավորին տեսավ՝ իսկի ուշադրություն չդարձրեց, ոչ մի մեծարանք ու պատիվ ցույց չտվեց, դեռ նրան ծաղրի և անարգանքի ենթարկեց՝ պարսկերեն լեզվով ասելով. «Այծ-հայերի թագավոր[115], ե՛կ այս խոտի խուրձի վրա նստիր»։ Երբ այս խոսքերը լսեց մեծ Հայոց զորավար և սպարապետ Վասակը, Մամիկոնյան տոհմից՝ սաստիկ բարկացավ ու զայրացավ, քաշեց իր սուրը, որ մեջքից կախած ուներ, զարկեց, տեղնուտեղը գլխատեց Պարսից թագավորի ախոռապետին հենց ախոռի մեջ, որովհետև նա չկարողացավ տանել այն անարգանքը, որ հասցնում էր իր թագավորին. նա ավելի լավ էր համարում իր անխուսափելի մահը, քան լսել իր տիրոջ հասցրված որևէ վիրավորանք կամ անարգանք։ Երբ նրանք Պարսից աշխարհումն էին, օտար երկրում օտարների ներկայությամբ՝ նա կարողացավ հանկարծ աներկյուղաբար այսպիսի բան գործել։ Իսկ Պարսից թագավորը երբ այս բանը լսեց՝ մեծ շնորհակալություն հայտնեց Վասակ զորավարին, զարմանալով նրա քաջարտության և մեծ աներկյուղության վրա։ Շատ պարգևներ ու պատիվներ էր տալիս նրան, գովելով նրա քաջությունն ու տիրասիրությունը։ Այս պատճառով էլ շատ սիրում էր նրան, նրա արժանիքի համաձայն պատվում ու մեծարում էր նրան բոլոր ժամանակ՝ մինչ նրանց մեջ հաշտություն ու խաղաղություն էր տիրում։

Արդ՝ մինչ Հայոց թագավորը Պարսից թագավորի մոտ էր և երկուսի մեջ մեծ սեր ու խաղաղություն կար՝ Պարսից Շապուհ թագավորը երկյուղ զգաց, մի՛ գուցե Հայոց Արշակ թագավորը իր սերը տռե, Հունաց կայսեր հետ միաբանի կամ իրենից անջատվի, որովհետև չէր հավատում նրան, թե նա իր մտերմական սերը կպահէ և իր հետ կապած միաբանության ուխտին հաստատ կմնա։ Ուստի պահանջում էր, որ նա երդում տա և սաստիկ ստիպմունքով բռնադատում էր. «Համաձայնի՛ր, ասում էր նա, և քո հավատով երդվի՛ր, որ ինձ չես խաբի, չես դավաճանի»։ Երբ սաստիկ ստիպմունքից նեղն ընկավ ու շվարեց՝ ապա կանչեցին Տիզբոն քաղաքի եկեղեցու երեցներին, որոնց գլխավորի անունն էր Մարի. բերել տվին սուրբ ավետարանը, և Պարսից Շապուհ թագավորը երդում էր անել տալիս Հայոց Արշակ թագավորին աստվածային ավետարանի վրա, որ նրան չի խաբի, չի դավաճանի, այլ հաս-

տատ կմնա իր ախտին և նրա հետ դաշինքը անխախտ կպահպանե: Եվ որովհետև այս գործի մեջ միջնորդի դեր էր կատարում Վարդանը, Մամիկոնյան տոհմի տանուտերն ու նահապետը, Վասակ սպարապետի երեց եղբայրը՝ ուստի Շապուհը նրան պատվում ու սիրում էր, իսկ Հայոց զորավար Վասակը նախանձ զգաց իր երեց եղբոր Վարդանի դեմ. կամեցավ խանգարել (դաշնը) Հայոց Արշակ թագավորի և[116]... փախչել: Բայց Շապուհն ասում էր. «Երբ դուք երդումը հավատարմությամբ տված լինեիք՝ ի՞նչպես նա կկարողանար երդման դեմ գնալ և կամ խախտել: Ես գիտեմ, ասում էր, որ դուք կախարդությամբ ինձ խաբեցիք, դուք սիրեցիք նրան՝ որ ձեր կրոնին է պատկանում, նրա հետ հենգությամբ խորհուրդներդ մեկ արիք և ինձանից փախցրիք: Դուք ավելի կամենում եք, որ Արշակունիները լինեն ձեր տերը և այս բանին հետամուտ եք»:

Եվ Շապուհ թագավորը երդվեց արեգակի, ջրի ու կրակի վրա, թե կենդանի չեմ թողնի ոչ մի մարդ, որ քրիստոնեական հավատն ունի», և հրամայում էր բոլորին տանել սպանել: Եվ տարան նրանց գլխավորին, Մարի երեցին, և մյուս երեցներին ու սարկավագներին, ավելի քան յոթանասուն մարդ, և մի գրի մեջ կտրում էին նրանց շլինքները: Իսկ այն սուրբ ավետարանը, որի վրա Արշակ թագավորը երդվեց՝ կապել էր տալիս երկաթե լարերով և իր մատանիով կնքելով՝ հրամայում էր գանձարանում զգուշությամբ պահել:

ԾԷ

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԸ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐ ԲԱՐՁՐԱՑՐԵՑ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅԱՆ ԴԵՄ[117]

Նույն այն ժամանակ, երբ Մարի երեցն սպանվեց յոթանասուն (մարդկանց) հետ՝ Շապուհ թագավորը մեծ հալածանք բարձրացրեց քրիստոնեական հավատի դեմ. հարկերով, տեսակ-տեսակ վշտերով ու հարվածներով նեղում էր քրիստոնյաներին: Հետո իր իշխանության բոլոր տեղերում հրաման արձակեց, թե «Ով որ իմ իշխանության մեջ քրիստոնյա անունն է կրում, բոլորին պետք է արի քաշել, որպեսզի իմ իշխանության մեջ չմնա քրիստոնյա անունը կրող ոչ մի մարդ»: Այնուհետև բյուրերով ու հազարներով կոտորում էին, որովհետև թագավորից այնպես հրաման տրվեց, որ ոչ մի քրիստոնյա չմնա նրա իշխանության սահմաններում:

ԺԸ

## ՅԱՂԱԳՍ ՎԱՐԴԱՆԱՅ ՄԱՀՈՒՆ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ԱՐՇԱԿԱՅ, ՆԵՆԳՈՒԹԵԱՄԲ ԻՒՐՈՅ ԵՂԲՕՐՆ ՎԱՍԱԿԱՅ ՍՊԱՐԱՊԵՏԻՆ

Իսկ Վարդանն, Մամիկոնեան տոհմին տանուտէրն, զայր հասանէր հրեշտակութեամբ յարքայէն Պարսից առ արքայն Հայոց Արշակ. և մատուցանէր զհրովարտակն առաջի նորա: Եւ պատմէր նմա 'ի նմանէ բանս խաղաղութեան և զհաշտութեան, և զերդմանցն հաստատութիւն: Եւ տայր պատգամ, թէ որ ինչ եղեն, այն ահա թողեալ լիցի վնասն. բայց դու յայսմ հետէ կաց յուխտին բանի, և մի՛ անցաներ ըստ բան երդմանցն քում օրինաց՝ յոր երդուար: Ապա թէ ոչ, դու գիտես, և քո օրէնքն որում ստեսն: Իսկ Արշակ թագաւորն սիրով ունէր և սիրով լսէր պատգամին, և հաւանէր զասացելոցն: Եւ խաղաղութեամբ արձակէր զմեծ նախապետն 'ի տուն իւր, զի երթիցէ հանգիցէ յաշխատութենէն յերկայն ճանապարհէն. և գնաց:

Եւ յորժամ եկն նախապետն Վարդան առ Արշակ, ոչ դիպեցաւ անդ կրսեր եղբայր նորին Վասակ առ արքայի: Ապա յետ այսորիկ եկն Վասակն, և գրգռէր զթագաւորն ընդ իրում եղբօրն երիցու, ասելով՝ թէ Վարդան է որ մատնէ զքեզ թագաւորին Պարսից, և կամի կորուսանել զքեզ. եթէ ոչ անապարեսցես վաղագոյն սպանցես զնա, դու կորնչիս և աշխարհս Հայոց: Ապա և կին թագաւորին ևս գրգռէր զթագաւորն սովին բանիւք, և զբանս զօրավարին Վասակայ հաւատարիմ առնէր նմա: Վասն զի ունէր նա զոխսն զայն ընդ Վարդանայ, զի նենգութեամբ և դաւով և մեծաւ երդմամբ սա այս Վարդան կոչեաց զԳնէլն զայր նորա. յորժամ սպանանէր զնա թագաւորն Արշակ: Իսկ կինն զնոյն ոխութիւնս պահէր նմա, վասն այնորիկ աւելի ևս գրգռէր կինն թագաւորին 'ի վերայ նորա. մինչ զի և զօր գումարեցին 'ի վերայ Վարդանայ, զի երթեալք սպանցեն զնա. նա և ինքն իսկ իւր եղբայր Վասակ երթայր 'ի վերայ նորա:

Ապա երթեալ գտանէին զնա յիրում գաւառին 'ի Տայս, յիւր ամուր բերդին՝ որում անուն էրախանի կոչի: Իբրև տեսին զգունդն թէ Վասակ է, ոչ ինչ երկեան և ոչ զգուշացան կամ կասկածեցին. համարեցան զզօրն եղբօրն՝ թէ խաղաղութիւն է եկն նորա, մինչ իջին առ խորանին դուրս, զի էր հարեալ զխորանն 'ի ձոր յունջ բերդին: Եւ մարդիկ զօրացն Վասակայ էին ամենեքեան 'ի ծածուկ վառեալք և 'ի վերայ ագուցեալք հանդերձ: Եւ մինչ դեռ նա լուանայր զգլուխ իւր մերկանդամ, հասանէին սուսերօք բազում մարդիկ, և խոցոտէին զնա մինչ դեռ նա կայր

## ՎԱՐԴԱՆԻ ՄԱՀԸ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻՑ ՆՐԱ ԽՆԴՐՈՐ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏԻ ՆԵՆԳՈՒԹՅԱՄԲ

Իսկ Վարդանը, Մամիկոնյան տոհմի տանուտերը, Պարսից թագավորի կողմից պատգամավոր էր գալիս Հայոց Արշակ թագավորի մոտ և (Շապուհի) հրովարտակը մատուցանում էր նրան: (Շապուհի) կողմից նրա հետ խոսում էր խաղաղության, հաշտության և երդումը հաստատ պահելու մասին: Հաղորդում էր (Շապուհի) պատգամը, թե «Ինչ որ եղավ՝ եղավ, այդ հանցանքը մոռացության եմ տալիս. բայց դու այսուհետև հաստատ կաց ուխտիդ և մի՛ դուրս գար քո երդումից՝ որ ավիր քո հավատով: Ապա թե ոչ՝ դու գիտես և քո հավատը, որին սոտում ես»: Արշակ թագավորը սիրով լսում ընդունում էր այս պատգամը, համաձայնում էր նրա ասածներին: Հետո նա խաղաղությամբ արձակեց մեծ նահապետին, որ իր տունը գնա և հանգստանա երկայն ճանապարհի նեղությունից: Նա էլ գնաց:

Երբ Վարդան նահապետը Արշակի մոտ եկավ՝ նրա կրտսեր եղբայրը, Վասակը, պատահմամբ թագավորի մոտ չէր: Իսկ սրանից հետո, երբ Վասակն եկավ՝ սկսեց թագավորին գրգռել իր երեց եղբոր դեմ ասելով, թե «այդ Վարդանն է, որ քեզ մատնում է Պարսից թագավորի ձեռքը և ուզում է քեզ կորցնել: Եթե դու չշտապես, նրան մեջտեղից չվերացնես՝ թե դու կկորչես և թե Հայոց աշխարհը»: Թագավորի կինն էլ (Փառանձեմը) նույնպիսի խոսքերով գրգռում էր թագավորին և հաստատում էր Վասակ զորավարի ասածները: Որովհետև նա (սրտումը) պահած ուներ ոխը այս Վարդանի դեմ, որովհետև այս Վարդանն էր, որ մեծ երդումով նենգությամբ դավանանքներն հրավիրեց իր ամուսին Գնելին՝ երբ Արշակ թագավորը որոշել էր նրան սպանել: Կինը այդ ոխը դեռ պահում էր նրա դեմ, ուստի ավելի ևս գրգռում էր թագավորին նրա դեմ, մինչև որ զորք գումարել տվին, որ գնան Վարդանին սպանեն. ինքը Վասակն էլ գնաց իր եղբոր վրա:

Գնում գտնում էին նրան Տայքում, իր գավառում, իր ամուր բերդում որ կոչվում էր Էրախանի: Երբ տեսան որ գունդը Վասակի գունդն է՝ երկյուղի կամ կասկածի մեջ չընկան, չզգուշացան. մտածեցին թե եղբոր զորքն է, եկել է խաղաղության համար: Այս կերպով հասան մինչև վրանի դուռը, որովհետև (Վարդանը) վրան էր զարկել բերդի տակ, ձորում: Վասակի զորքերը ծածուկ զինված էին և վրայից սովորական զգեստ հագած: Եվ մինչ նա մերկանդամ լվանում էր գլուխը՝

խոնարհեալ՝ զի արկցեն ջուր 'ի վերայ նորա: Եւ ոչ ոք տայր ժամանել յառնել, զի անդէն 'ի կողի սպանանէին զնա:

Եւ կինն նորա յղի էր, և հասեալ էին աւուրք ծննդեան իւրոյ: Մինչ դեռ 'ի վեր 'ի բերդին նստէր 'ի զահոյս իւրում, եղև գոյժ սաստիկ. իսկ նա իբրև զձայն գուժոյն լսէր, վազէր 'ի զահոյից անտի: Եւ ընդ վազելն ծնանէր զմանուկն: Եւ կոչէին զանուն մանկանն յանուն հօր իւրոյ Վարդան:



## ԺԹ

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՆՄՏՈՒԹԵԱՄԲ ԳՆԱՑ 'Ի ՍՊԱՆՈՒԹԻՒՆՍ ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՅԱՆԽՆԱՅ ԱՐՇԱԿ ԱՐՔԱՅ ՀԱՅՈՑ

Այլ ահա 'ի ժամանակին՝ յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս, և ոչ ոք գոյր ընդդիմացեալ թագաւորին՝ որ տայր նմա զյանդիմանութեան զխրատն, այնուհետև ըստ կամաց չարութեանն իւրոյ գնացեալ լինէր նա. և զբազումս 'ի նախարարացն կոտորեաց, զբազումս ազգատ արարեալ անհիտեաց, և զբազմաց տունս հատանէր յարքունիս: Բայց զտոհմս Կամսարականացն՝ որ էին գաւառաց տեարք, Շիրակայ և Արշարունեաց, ազգատ[25] առնէր. և զգաւառսն ունէր յոստան:

Բայց յազգէն յայնմանէ մանկիկ մի փոքրիկ, անուն Սպանդարատ, թագուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրավարն Հայոց Վասակ, որ յետոյ լինէր ժառանգ աշխարհին: Թագաւորն Արշակ հրաման տայր՝ յԱրշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր, Արտագերս անուն: Եւ զգաւառն յուտեստ 'ի պատրաստութիւն համբարաց թողոյր բերդին, վասն զի կարի ամուր էր բերդն այն:



## Ի

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱՐԴ ՊԱՏԵՐԱԶՄ ՍԱՍՏԿԱՑԵԱԼ ԷՐ 'Ի ՄԷՋ ՅՈՒՆԱՑՆ ԵՒ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՐՇԱԿ ԱՐՔԱՅ ՀԱՅՈՑ ԶՕՐԱԿԻՑՆ ԼԻՆԷՐ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ՀԱՆԷՐ ԸՆԴ ՍՈՒՐ ԶԶՕՐՍՆ ՅՈՒՆԱՑ. ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԴԱՒԱՃԱՆՈՒԹԵԱՄԲ ՍԻՒՆԵՑՆ ԱՆԴՈՎԿԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆ ԼԻՆԷՐ ԱՐՔԱՅՆ ՊԱՐՍԻՑ

Այլ զառաջինն իբրև փախեաւ թագաւորն Արշակ յարքայէն Շապհոյ, և անարգեաց զնա յետ երդմանցն իւրոց, զառաջինն Շապուհ ար-

վրա էին հարձակվում շատ մարդիկ սրերով, խոցոտում էին նրան՝ մինչ նա կռացել էր, որ ջուր ածեն վրան: Էլ միջոց չունեցավ գլուխը վեր բարձրացնելու, որովհետև կողից խփելով սպանեցին նրան:

Իսկ նրա կինը հղի էր, ծնելու օրերը մոտեցել էին: Մինչ նա վերը բերդում իր բազմոցում նստած էր՝ հանկարծ սաստիկ ճիչ բարձրացավ. նա երբ սարսափի ճիչը լսեց՝ բազմոցից վար վազեց և վազելիս երեխային ծնեց: Երեխային հոր անունով Վարդան կոչեցին:

ԺԹ

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԸ ԱՆՄՏՈՒԹՅԱՄԲ ԱՆԽՆԱ ԿՈՏՈՐՈՒՄ ԷՐ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՆ

Իսկ այն ժամանակ, երբ Ներսես սուրբ եպիսկոպոսապետը արքունական բանակից հեռացավ, և ոչ ոք չկար թագավորին դիմադրող, որ նրան խրատեր ու հանդիմաներ՝ այնուհետև նա սկսեց իր չար կամքին հետևել.— նախարարներից շատերին կոտորեց, շատերին սերհատեց և ժառանգ չթողեց, շատերի կալվածները արքունիք գրավեց: Կամսարականների տոհմերը, որոնք Շիրակի և Արշարունիքի տերերն էին՝ սերհատեց և այս գավառները Ոստանին[118] միացրեց:

Բայց հայոց զորավար և սպարապետ Վասակը նրանց ցեղից փախցնում ու փրկում էր մի փոքրիկ մանուկ, Սպանդարատ անունով, որ հետո այդ գավառները ժառանգեց: Իսկ Արշակ թագավորը հրամայեց Արշարունյաց գավառում իր համար շինել մի ամուր բերդ Արտագերս անունով և այս գավառը հատկացրեց բերդին իբրև համբարանոց՝ ուտելիքի համար, որովհետև այդ բերդը շատ ամուր էր:

Ի

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՍԱՍՏԿԱՑԵԼ ԷՐ ՀՈՒՆԱՑ ԵՎ ՊԱՐՍԻՑ ՄԵՋ ԵՎ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԸ ՕԳՆՈՒՄ ԷՐ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԵՎ ՍՐԻ ԷՐ ԱՆՑԿԱՑՆՈՒՄ ՀՈՒՆԱՑ ԶՈՐՔԵՐԸ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԱՆԴՈԿ ՍՅՈՒՆԻԻ ԴԱՎԱՃԱՆՈՒԹՅԱՄԲ ԱՐՇԱԿԸ ՓԱԽՈՒՍՏ ԷՐ ՏԱԼԻՍ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻՑ[119]

Այն ժամանակ, երբ Արշակ թագավորը փախավ Շապուհ թագավորի մոտից և իր երդումից հետո նրան անարգեց՝ սկզբում Շապուհը այնքան էլ խստություն գործ չդրեց նրա դեմ, որովհետև դեռ խիստ

քայն Պարսից ոչ ինչ խառնութեամբ ջանացաւ ընդ նմա. վասն զի մարտ դեռ բազում սաստկացեալ էր ՚ի մէջ իւր և ՚ի մէջ թագաւորին Յունաց: Եւ իբրև հաղ քան զհաղ յաւել լինել պատերազմ, իսկ թագաւորն Հայոց Արշակ զառաջինն ընդ միտս իւր մեծամտեալ էր, և նայէր տեսանել՝ թէ ո՞վ ՚ի նոցանէն կոչեսցէ զնա ՚ի թիկունս օգնականութեան յաղագս գործոյ պատերազմին: Ակն ունէր, երթալ կամելով յօժարութեամբ ՚ի թիկունս կայսերն Յունաց. իսկ նոքա ոչ կոչեցին զնա, և ոչ շուք ինչ եդին նմա և ոչ մեծարանս:

Իսկ թագաւորն Պարսից Շապուհ յղէր առ նա հրեշտակս խաղաղութեան. յուշ առնէր նմա զառաջին երդումն, ասելով՝ եթէ կամ լիցի եղբօր զի եկեսցես օգնեսցես ՚ի գործ պատերազմիս, զի ՚ի թիկունս հասցես քո զնդաւդ. ասէ. Թէ դու ՚ի մեր կոյս լինիս, գիտեմք զի մեր լինելոց է յաղթութիւնն: Ապա յորժամ զայս լսէր Արշակ արքայ Հայոց, մեծաւ ուրախութեամբ կամեցաւ երթալ ՚ի թիկունս օգնականութեան, զօրավիգն լինել Շապհոյ թագաւորին Պարսից: Ապա տայր հրաման թագաւորն Արշակ Վասակայ իւրում սպարապետին, գունդ գումարել, զօրս պատրաստել: Եւ նա վաղվաղակի կատարէր զհրամանս թագաւորին. չորեքհարիւր հազար զօր կուռ վառեալք, որ ընտիրք և պատերազմողք էին, լի արութեամբ արուեստաց նահատակութեանն: Նիզակաւորք, սուսերաւորք, աղեղնաւորք, անվրէպք, կորովիք, վագրաւորք, սակրաւորք, որք ոչ գիտէին զերկեւղ զանգիտելոյ յարանց յախոյանց. համակ հեծելազօրք զրահաւորք, պատենազէնք, սաղաւարտաւորք, դրօշաւորք, կազմ նշանաւորք բազմաձայն փողարօքն:

Խաղաց գնաց թագաւորն Արշակ բազմակոյտ նախարարօքն, չուեաց ընդ Աղձնիս ընդ իւր իշխանութիւնն. չոգաւ թափեցաւ յերկիրն արուաստանի դէմ յանդիման մծբնացւոց քաղաքին, որ էրն տեղի ճակատուն պատերազմին: Ապա երթեալ տեսանէին զի ժամադիր արարեալ միմեանց վասն իրաց պատերազմին կողմանցն երկոցունց: Իսկ զօրքն Յունաց հասեալք, մածեալք բանակեալք էին իբրև զաւազ առ ափն ծովու բազմութեամբք: Իսկ զօրքն Պարսիկ չև էին հասեալ ՚ի ժամադիր տեղի պատերազմին: Իսկ զօրքն արքային Հայոց կանուխ քան զՊարսսն ՚ի տեղի ճակատուն հասանէին, և զտեղի առեալ կային: Ապա տապել սկսան զօրքն Հայոց ընդ իւրեանց նիստ խափանածոյն. և ոչ առնուին յանձն մնալ կամ անսալ զօրացն Պարսից, այլ կամեցան յարձակել դիմել հասանել ՚ի վերայ թագաւորին Յունաց ինքեանք առանց Պարսից զօրացն, անձամբք վճարել զգործ պատերազմին: Եւ այր ամենայն զօրացն Հայոց ինքնակամք իւրաքանչիւր արձակ արձակ խաղային. Եւ առաւել զօրավարն նոցին Վասակ քան զամենայն զօրսն ելնել առնէր,

պատերազմ էր մղվում նրա և Հունաց թագավորի մեջ: Երբ պատերազմը հետզհետե երկարեց՝ Արշակ թագավորը սկզբում մեծամտելով սպասում էր, թե նրանցից ո՛րը իրեն օգնության կկանչե այդ պատերազմում: Նա նույն ուներ և հոժարությամբ ուզում էր գնալ Հունաց կայսեր օգնության: Բայց սրանք ո՛չ նրան հրավիրեցին, և ոչ մի պատիվ կամ հարգանք ցույց տվին: Իսկ Պարսից Շապուհ թագավորը նրա մոտ էր ուղարկում խաղաղության պատգամավորներ. հիշեցնում էր նրա նախկին երդումն և ասում. «Բարեհաճի՛ր, եղբայր, այս պատերազմում ինձ օգնել. քո գնդով ե՛կ ինձ օգնության. եթե դու մեր կողմը լինիս՝ գիտեմ որ հաղթությունը մերը կլինի»:

Արշակ թագավորը երբ այս լսեց՝ մեծ ուրախությամբ հոժարացավ օգնության գնալ Պարսից Շապուհ թագավորին. ուստի նա հրաման տվեց իր Վասակ սպարապետին՝ գունդ գումարել, զորք պատրաստել: Վասակը շատ շուտով կատարում էր թագավորի հրամանը—կազմակերպում էր չորս հարյուր հազար մարդուց բաղկացած լավ սպառազինված զորք՝ ընտիր ռազմիկ մարդկանցից, արիասիրտ կռվողներ, որոնք զինված էին նիզակներով, սրերով, աղեղներով, վաղրերով, սակրերով, անսխալ խփող և ուժեղ նետաձիգներ, ախոյանների առաջ տեղի չտվող կռվողներ, ամբողջ հեծելազորքը պահպանակներով, զրահավորված սաղավարտներով պաշտպանված, իրենց դրոշներով, նշաններով և բազմաձայն պատերազմական փողերով:

Արշակ թագավորը բազմաթիվ նախարարների հետ վեր կացավ գնաց, անցավ իր իշխանության միջով՝ Աղձնիքով, և ներս խուժեց. Արվաստանի[120] աշխարհը, Մծբին քաղաքի դիմաց, որտեղ պիտի լիներ պատերազմը: Եկավ այնտեղ, տեսավ, որ երկու կողմերն այդ տեղն էին նշանակել պատերազմելու համար, և Հունաց զորքերը հասել, խմբվել, բանակել էին այնտեղ բազմությամբ՝ ինչպես ավազը ծովի ափին, իսկ Պարսից զորքերը դեռ չէին հասել պատերազմի համար նշանակված տեղը: Իսկ Հայոց թագավորի զորքերը ճակատամարտի տեղն էին հասել պարսիկներից առաջ և կանգ առել, սպասում էին: Հայոց զորքերն սկսեցին նեղվել իրենց պարապ անգործ նստելուց, չէին համաձայնում սպասել Պարսից զորքերի գալուն, այլ կամենում էին հենց իրենք, առանց Պարսից զորքերի՝ մենակ հարձակվել Հունաց թագավորի վրա, անձամբ պատերազմի գործը գլուխ բերել: Հայոց զորքերից ամեն մեկը ինքնակամ ու համարձակ ցույցեր էին անում, և բոլոր զորքերից ավելի նրանց Վասակ զորավարը վռազում էր, սան-

կապակոտոր լինէր, չմնայր հաւանութեան մինչև զօրքն Պարսից եկեսցեն, այլ զի միայն ինքեամբք վճարեսցեն զգործ պատերազմին:

Ապա միահամուռ զօրքն Հայոց անկանէին առաջի և խնդրէին յիւրեանց թագաւորէն Արշակայ, զի մի՛ պահեսցէ զնոսա մինչև եկեսցէ արքայն Պարսից Շապուհ, այլ վասն որոյ իրիք եկեալ իցեն, վաղագոյն նոցա զպատերազմն առ յանդիման արարեալ համարձակեսցէ յարձակել քան զանսայլն յօտար աշխարհին. առաւել մղձկէին, զի լաւ հաշուէին զմեռանելն առաւել քան զյամելն յօտար աշխարհին: Ապա թոյլ տայր նոցա թագաւորն Արշակ, և յանդիմանէր նոցա զգործ պատերազմին: Ապա կարգէր կազմէր պատրաստէր զամենայն զզօրսն Հայոց Վասակ զօրավարն սպարապետն Հայո՛ց մեծաց: Վարէր զինէր ժամակալ լինէր Վասակ. հանդերձ ամենայն պատերազմող զօրօքն այրարատեան զնդաւն ելանէր անկանէր 'ի վերայ բանակին: Առ հասարակ ընդ սուր հանեալ կոտորէին, այնպէս զի ոչ ապրեցուցանէին 'ի նոցանէ և ոչ զմի: Եւ առնուին զկապուտ զաւար յունական զօրուցն, զի ոչ գոյր չափ կամ թիւ որչափ լցան զանձօք. և անհամար կարասեաւ մեծաւ աւարացն յղփացան:

Եւ յետ այսորիկ զտեղի ունէր արքայն Հայոց հանդերձ իւրովք զօրօքն, մինչև գայր հասանէր Շապուհ արքայն Պարսից ամենայն անթիւ և անչափ զօրօքն Պարսից: Իբրև եկն ետես զքաջութիւն գործոյն Հայաստան զօրացն, զի զնակատ մղեալ, զպատերազմ յարդարեալ, զյաղթութիւն կազմեալ և զգործ վճարեալ, կայր զարմացեալ մեծապէս. և պատուէր զԱրշակ արքայ Հայոց մեծապէս, և զամենայն մեծամեծս Հայոց. նոյնպէս և զսպարապետն Հայոց զՎասակ:

Ապա խօսել սկսանէր թագաւորն Պարսից Շապուհ ընդ զօրս իւր թէ զի՛նչ պարգևս բարեաց, կամ զի՛նչ հատուցումն կարեմք մեք հատուցանել արքայիս Հայոց Արշակայ, զի զայսպիսի գործ գործեաց, կամ զայսպիսի քաջութիւն արարեալ, կամ զայսպիսի թշնամիս եհար և զայսպիսի պատերազմ մղեաց, կամ այսպիսի՛ նակատու յաղթեաց և զայսպիսի անուն ստացաւ մեզ: Զի եթէ մեք լեալ էաք, ամենայն Արեաց զօրք հանդերձ այսպիսի աջողութեամբ գայր 'ի ձեռն, քաջ թէ զոյգ հասարակ այսպիսի գործ 'ի միաին կարէաք գործել. արդ Հայոց արքայ իւրով զօրութեամբքն ընդ մեր նահատակեալ, զայսչափ քաջութիւնս արար, զոր ոչ ոք կարէ առնել ամենևին: Արդ զորպիսի՞ հատուցումն բարեաց կարացուք մեք առնել նմա: Եւ այսպիսի անզեալ էր 'ի խորհուրդս, թէ զի՛նչ այն ինչ իցէ զոր տայցեմ ես նմա: Ապա տային պատասխանի նախարարքն իւր Շապհոյ արքային Պարսից, և ասեն ցնա՝ թէ զինչ և կամիս, իւ կամիս, կարող ես հանել զնա. ոսկի քո շատ

ձերը կտրում, չէր կամենում սպասել Պարսից զորքի գալստյան, այլ որ միայն իրենք պատերազմը վարեն ու վերջացնեն:

Ապա ամբողջ զորքերն ընկնում էին Արշակ թագավորի առաջ և խնդրում էին, որ իրենց չպահե մինչև Պարսից Շապուհ թագավորի գալուստը, այլ թույլ տա կատարել այն՝ ինչ բանի համար եկել են՝—իրավունք տա հարձակվել (հույների վրա) հենց հիմա: Նրանք մաշվում էին՝ օտար աշխարհում պարապ նստելուց. լավ էին համարում մեռնել, քան օտար աշխարհում ժամանակ քաշ տալ: Այն ժամանակ Արշակ թագավորը թույլ տվեց և պատերազմի գործը նրանց առաջարկեց: Ապա Վասակը, Մեծ Հայքի զորավարն ու սպարապետը, կազմում պատրաստում էր բոլոր Հայոց զորքը: Նա սպառազինվեց, և սահմանված ժամանակին բոլոր իր պատերազմական զորքով՝ այրարատյան քանակով հարձակվեց (հունաց) բանակի վրա: Բոլորին առհասարակ սրի անց կացրին, կոտորեցին, մի մարդ նրանցից կենդանի չթողին: Եվ հունական զորքից այնքան ավար առան, որ չափ ու թիվ չկար. բոլորը լցվեցին ու լիացան գանձերով և անչափ իրերով:

Սրանից հետո Հայոց թագավորն իր զորքով այնտեղ մնաց սպասեց՝ մինչև որ եկավ հասավ Պարսից Շապուհ թագավորը անթիվ անհամար զորքով: Երբ նա եկավ ու տեսավ հայկական զորքի քաջարի գործը, որ ճակատ էին կազմել, պատերազմը վարել, հաղթություն տարել և ամեն ինչ վերջացրել՝ շատ և շատ զարմացավ. Հայոց Արշակ թագավորին մեծապես պատվեց, ինչպես և բոլոր Հայոց մեծամեծներին և Հայոց Վասակ սպարապետին:

Պարսից Շապուհ թագավորն սկսեց խոսել իր զորքի հետ, թե «ի՞նչպիսի վայելուչ պարգևներ կամ ի՞նչպիսի փոխարինություն կարող ենք մենք հատուցանել Հայոց այս Արշակ թագավորին, որ այսպիսի գործ գործեց, այսպիսի քաջություն ցույց տվեց, այսպիսի թշնամու ջարդեց, այսպիսի պատերազմ մղեց, այսպիսի ճակատամարտում հաղթեց, մեզ համար այսպիսի անուն վաստակեց: Որովհետև եթե մենք լինեինք բոլոր արյաց զորքերով՝ հազիվ թե կարողանայինք այսպիսի աջողություն ձեռք բերել, այլ (Հայոց զորքի հետ) միասին այս գործը գլուխ կբերեինք[12]. իսկ Հայոց թագավորը իր զորքով մեր փոխարեն կռվի դուրս գալով այնպիսի քաջություն գործեց, որ ուրիշ ոչ ոք չէր կարող գործել: Արդ՝ ի՞նչպիսի բարիքներ պետք է մենք նրան հատուցանենք»: Եվ ընկել էր մտածմունքի մեջ, թե արդյոք ի՞նչ բան պետք է նրան տալ:

Պարսից նախարարները պատասխան տվին Շապուհ թագավորին և ասացին. «Ինչ որ կամենաս, ինչով որ կամենաս՝ կարող ես նրան բա-

և արծաթ և կերպաս և մարգարիտ, զինչ և միանգամ դու կամիս շնորհել նմա, տուր նմա: Ապա տայր պատասխանի Շապուհ թագաւորն Պարսից իւրոց իշխանացն, և ասէ. Արդ ոչ եթէ սէր ինչ է, զոր դուք ասացէք. այլ եկայք, անքակ սէր արասցուք մեք ընդ Արշակայ արքային Հայոց, զի մինչև յափտեան անբաժին լիցի նա 'ի մէնջ: Տացեմ զդուստր իմ կնութիւն Արշակայ արքայի Հայոց, և տաց նմա տուն մեծ. զի յորժամ գնասցէ 'ի Հայոց գալ առ մեզ, այնպէս տացուք նմա տուն, զի 'ի Հայոց մինչև 'ի Տիզբոն մինչև առ մեզ համակ յիւրում տան ագցի, մինչև առ մեզ եկեսցէ: Թագաւորին զայս արասցուք. իսկ զօրավարին Վասակայ կամ այլոց մեծամեծացն և զօրավարացն տացուք ոսկի և արծաթ, կերպաս և մարգարիտ:՝ Եւ հաճեցան մեծամեծքն և խորհրդակիցք թագաւորին Պարսից ընդ այս խորհուրդ. և հաստատէին զասացեալսն՝ թէ արժան է զայդ առնել:

Իսկ թագաւորն Պարսից Շապուհ մեծաւ ստիպելով ստիպէր զթագաւորն Հայոց զԱրշակ, զի առցէ զնասցէ զնա ընդ ինքեան յԱսորեստան, զի անդ մեծափառ պատուով և փեսայութեամբ մեծարեսցէ զնա: Իսկ Արշակ և ամենայն զօրք իւր տաղտապէին[26] երթալ զհետի ճանապարհին. զի ամենայն ոք յանձնիւր տուն յիւրաքանչիւր տեղի զօրէն բարուց Հայաստան մարդկան անձկացեալ էին: Եւ եղև իբրև 'ի վերայ հասանէր իրացն Անդովկ նահապետն Սիւնեաց զաւառին, եթէ Շապուհ թագաւորն Պարսից կամի տալ զդուստր իւր կնութեան Արշակայ թագաւորին Հայոց, մեծապէս երկեաւ, և բախեցաւ նորա կասկած մտացն իւրոց: Զի եղ 'ի մտի իւրում՝ թէ յորժամ առցէ Արշակ կին իւր զդուստր թագաւորին Պարսից, յայտ է այնուհետև՝ թէ անարգի դուստր նորա: Վասն զի Փառանձեմ դուստր Անդովկայ, որ էր կին լեալ Գնելոյ, 'ի ժամանակի անդ էր կին Արշակայ թագաւորին Հայոց. կասկածէր նա՝ թէ գուցէ յորժամ այլ առցէ, զնորայն անարգեսցէ:

Անկանէր այնուհետև Անդովկ 'ի հնարս հնարել, և 'ի ծուփս խորհրդոց, գտանել պատճառս՝ զի ո՛ զիտէ կարասցէ գրուել զսէրն մեծ, որ էր անկեալ 'ի մէջ թագաւորացն երկոցունց: Նախ բազում ոսկի զօրավարին Հայոց Վասակայ Անդովկն մատուցանէր. սոյնպէս և զամենայն մեծամեծսն կաշառէր, զի հնարեսցի քակել զմեծ սէրն, որ իցեն 'ի մէջ թագաւորացն երկոցունց: Եւ ամենայն մեծամեծքն ձեռն յանձին նարկանէին, առեալ ոսկւոյն կաշառօք խաւարեցան: Ապա զմի ոմն յաւագաց թագաւորին Պարսից 'ի ներքին 'ի բուն խորհրդականացն 'ի բանի իւրում առնէր Անդովկն զհնարաւորութեամբքն, զենզաւորութեանն զաւանանութեամբ, մեքենայութեամբքն, զի բանս արկցէ ընդ թագաւորին Պարսից ընդ Շապուհ և ընդ Արշակ: Եւ տայր նմա Անդովկ ոսկի բազում

վականություն տալ: Ոսկին ու արծաթը, կերպասներն ու մարգարիտները շա՞տ. տո՛ւր ինչ որ ուտիցդ անցնում է»: Պարսից Շապուհ թագավորը իր իշխաններին պատասխանեց ասելով. «Այդ, ինչ որ դուք եք ասում՝ սեր չէ. եկեք անքակտելի սեր հաստատենք Հայոց Արշակ թագավորի հետ, այնպես որ նա մինչև վերջը անբաժան մնա մեզանից: Ես Հայոց Արշակ թագավորին կնության տամ իմ դուստրը և այնպիսի մեծ կալված տամ նրան, որ Հայաստանից մեզ մոտ գալիս՝ Հայաստանից մինչև Տիզբոն իր կալվածում իջևանի, մինչև մեզ մոտ հասնի: Թագավորին այսպես անենք, իսկ Վասակ զորավարին կամ մյուս մեծամեծներին ու զորապետներին տանք ոսկի, արծաթ, կերպաս և մարգարիտ»: Պարսից թագավորի մեծամեծներն ու խորհրդակիցները հավանություն տվին նրա այս խորհրդին և հաստատեցին նրա խոսքերը, թե լավ է այդպես անել:

Եվ Պարսից Շապուհ թագավորն սկսեց ստիպել ու թախանձել Հայոց Արշակ թագավորին, ուզում էր նրան իր հետ տանել Ասորեստան[122], որպեսզի այնտեղ մեծ փառքով նրան իրեն փեսայացնի: Իսկ Արշակ թագավորը և բոլոր իր զորքը ձանձրալի էին համարում այդքան երկայն ճանապարհ գնալը, որովհետև ամեն մարդ, հայ մարդու բնական սովորությամբ, կարոտել էր իր տանն ու տեղին: Իսկ երբ Անդոկը, Սյունյաց գավառի նահապետը, իմացավ, թե Պարսից Շապուհ թագավորն ուզում է իր աղջիկը կնության տալ Հայոց Արշակ թագավորին՝ շատ վախեցավ և միտքը կասկածի մեջ ընկավ: Նա հասկացավ, որ եթե Արշակը կին առնե Պարսից թագավորի դուստրը՝ ապա իր դուստրը անարգություն կկրե. որովհետև այդ ժամանակ Փառանձեմը, Անդոկի դուստրը, որ Գնելի կինն էր եղել՝ Հայոց Արշակ թագավորի կինն էր. ուստի (Անդոկ) կասկածում էր, որ եթե թագավորը ուրիշ կին առնե՝ իր աղջկանը կանարգե:

Այնուհետև Անդոկը մտածմունքների մեջ էր ընկնում, մի հնարք էր փնտրում, որևէ միջոց, որով գուցե կարողանա խափանել սերը երկու թագավորների մեջ: Նախ և առաջ նա շատ ոսկի էր տալիս Հայոց Վասակ զորավարին, նույնպես և կաշառում էր բոլոր մեծամեծներին, որպեսզի աշողեցնե երկու թագավորների մեջ եղած մեծ սերը քակել: Բոլոր մեծամեծները համաձայնություն տվին, իրենց առած ոսկու կաշառքով կուրացան: Այնուհետև Անդոկը իր խորհրդին դավակից էր դարձնում Պարսից թագավորի ավագներից մեկին, որ մի հնարքով, որևէ միջոցով ննենգությամբ տարաձայնություն ձգե Պարսից Շապուհ թագավորի և Արշակի մեջ: Անդոկը նրան անչափ ու անհամար ոսկի էր

և անհամար, և դնէր բանս 'ի բերան, զի իբրև կերպարանս գուշակի արասցէ ասել զարքայ Արշակ, թէ ապրեցո զանձն քո, զի ճշգրիտ խորհուրդ խորհեալ է թագաւորին Պարսից ունել զքեզ և սպանանել: Եւ յորժամ դու զայս ասասցես, ասէ, և զմեզ հրամայեսջիր կոչել 'ի խորհուրդն. և զքո բանս աւագանին հաստատեսն:

Ապա զայր մտանէր խորհրդակից արքային Պարսից առ արքայն Հայոց. խօսել սկսանէր ընդ նմա զբանս 'ի բերան եդեալ Անդովկայն չարագործի, և ասէր՝ թէ՛ արքայդ Հայոց Արշակ, ապրեցո զանձն քո. զի խորհուրդ խորհեալ է թագաւորին Պարսից Շապհոյ ունել զքեզ և սպանանել: Նայր հիացեալ և զարմացեալ արքայն Արշակ ընդ բանսն ընդ այնոսիկ, և ասէ. 'Ի մեծի վաստակոցն իմոց 'ի վերայ ա՞յս հատուցումն 'ի նոցանէն: Ապա հրաման տայր կոչել զառաջեաւ իւրով արքայ Արշակ զամենայն զմեծամեծս իւր, և զամենայն խորհրդակիցս իւր, զՎասակ սպարապետն, և զԱնդովկն զաներ իւր, և որ միանգամ էին նախարարքն. և պատմէր նոցա զոր միանգամ լուաւ ինքն 'ի պարսկէ անտի: Ապա և նոքա ընդ մի բերան ասէին ընդ նմա, թէ մեք զայդ վաղ լուաք, զքեզ չիշխեցաք ասել. այլ իրքդ այդ հաստատ են: Բայց արդ, արքայ, գիտեա տես զիա՞րդ ապրեցուցես զանձն քո և զմեզ: Ապա արքայ Արշակ բազում պարգև զանձուց ոսկւոյ և արծաթոյ տայր պարսկին այնմիկ, որ ասաց նմա զբանս զայսոսիկ: Եւ ինքեանք կազմեցան պատրաստեցան. խորհուրդ խորհեցաւ Արշակ թագաւորն Հայոց, և յառնէին 'ի գիշերի որ միանգամ մարդ էր 'ի բանակին Հայոց. հեծան 'ի ձիս, և փախեան: Եւ առ եւեղ թողին զխորանս և զվրանս զկահ և զկարասի և զկազմած իւրեանց, և զբանակն իւրեանց, և գնացին զաղտուկ. և ոչ ոք 'ի բանակէն Պարսից գիտացին զայն մինչև ցայգ ցառաւօտն:

Եւ իբրև եղև ժամ այգորելի առ թագաւորն Պարսից, և ամենայն թագաւորք և իշխանք մեծամեծք իւր այգորեալ զային արքային Պարսից, բայց միայն ոչ ուրեք 'ի մէջ երևէր թագաւորն Հայոց Արշակ հանդերձ իւրովք մեծամեծօքն: Ապա տայր հրաման Շապուհ թագաւորն Պարսից իւրոցն, երթեալ տեսանել՝ թէ զինչ իրք իցեն 'ի բանակին Հայոց թագաւորին Արշակայ, զի այնչափ ժամս յամեաց զալ յայգորել թագաւորին Պարսից Շապհոյ: Ապա երթեալ տեսանէին, զի թափուր կայր բանակն առանց մարդոյ. զի թողեալ էր իւրեանց զխորանս և զվրանս և զհովանոցս և զարահակս և զգահոյս և զանկողինս և զկահ և զկազմածս և զկարասի իւրեանց, և զգանձս իւրեանց անգամ. բայց միայն զզէնս իւրեանց որ բարձեալ էին ընդ ինքեանս և գնացեալք: Եւ որք չոգան 'ի բանակն, զային զամենայնն պատմէին Շապհոյ արքայի Պար-

տալիս և նրան խրատ էր տալիս, որ քոռ ձևանալով Արշակ թագավորին ասե, թե «Գլխիդ ճարը տես. Պարսից թագավորը հաստատ միտք դրել է քեզ բռնել ու սպանել»: «Երբ դու այս ասես՝ ասում էր Անդոկը, ապա առաջարկիր (թագավորին), որ մեզ խորհրդի կանչե, և բոլոր ավագները քո խոսքը կհաստատեն»:

Պարսից թագավորի խորհրդակիցը գալիս էր Հայոց թագավորի մոտ և սկսում էր ասել այն բաները՝ ինչ որ նրան խրատ էր տվել չարագործ Անդոկը. նա ասում էր. «Արշակ թագավոր, գլխիդ ճարը տես, որովհետև Պարսից Շապուհ թագավորը միտքը դրել է քեզ բռնել ու սպանել»: Արշակ թագավորըապշած մնաց այս խոսքերը լսելիս և ասաց. «Իմ այնքան մեծ ծառայության հատուցումն ա՞յս է ուրեմն սրանց կողմից»: Հրամայում էր Արշակ թագավորը իր մոտ կանչել բոլոր իր մեծամեծներին, բոլոր խորհրդականներին, Վասակ սպարապետին, իր աներոջը՝ Անդոկին և առհասարակ բոլոր եղած նախարարներին, և նրանց պատմեց այն ամենը, ինչ որ լսել էր պարսիկից: Եվ նրանք բոլորը միաբերան ասացին նրան. «Մենք այդ բանը վաղուց էինք լսել, բայց չէինք վստահանում քեզ ասել. բայց դա հաստատ բան է: Հիմա, թագավոր, այն նայիր, թե ի՛նչպես պետք է քեզ և մեզ փրկես»: Այն ժամանակ Արշակ թագավորը ոսկու և արծաթի շատ գանձ պարգև էր տալիս այն պարսկին, որ այն խոսքերն իրեն ասել էր: Արշակ թագավորը մի միջոց մտածեց,— կազմակերպվեցին, պատրաստվեցին, և մի գիշեր վեր կացան որքան մարդ որ կային Հայոց բանակում, ձիերը հեծան ու փախան: Տեղումը թողին նրանք իրենց խորաններն[123] ու վրանները, իրենց կահավորությունն ու սարքը, իրենց իրեղենները ու բանակը, և գաղտուկ գնացին, այնպես որ Պարսից բանակից ոչ ոք այս բանը չիմացավ՝ մինչև լուսացավ:

Առավոտը, երբ ժամանակը հասավ Պարսից թագավորին բարիլույսի գնալու, և թագավորներն ու մեծամեծ իշխաններր գնում էին Պարսից թագավորին բարիլույս մաղթելու՝ միայն Հայոց Արշակ թագավորն էր իր մեծամեծներով, որ ոչ մի տեղ չէր երևում: Ապա Պարսից Շապուհ թագավորը հրաման էր տալիս իր մարդկանց, որ գնան տեսնեն, թե ի՛նչ է պատահել Արշակ թագավորի բանակում, որ նա այնքան ուշացավ Պարսից թագավորին բարիլույսի գալու: Գնում տեսնում էին, որ բանակը դատարկ էր, մեջը մարդ չկար, որովհետև (զորքերը) թողել էին իրենց խորանները ու վրանները, հովանոցները ու սրահակները, բազմոցները ու անկողինները, կահկարասիքը և սարքերը, մինչև անգամ իրենց գանձերը, այլ միայն իրենց զենքերն էին վերցրել ու գնացել: (Հայոց) բանակը գնացողներն եկան և այս բոլորը պատմեցին

սից: Եւ իբրեւ լուաւ Շապուհ արքայն Պարսից, քանզի այր իմաստուն էր, գիտացեալ 'ի կարծիս իմաստութեան իւրոյ զիրսն՝ որ ինչ եղեն, անդէն ասաց՝ թէ այն փախուստ թագաւորին Հայոց յիմոց ատի եղեալ է. զի 'ի մէնջ 'ի մերմէ 'ի դրանէ ատի էին, ասէ, որք փախուցին զայրն զայն զԱրշակ: Ապա իւրոց աւագացն 'ի մեծամեծացն դեսպան ձիով զբազումս յղէր զհետ թագաւորին Հայոց, հանդերձ երդմամբ 'ի սէր միաբանութեան եւ յանդիմանութեան. զի դարձցին եւ զշարախօսութեան զբանս 'ի մէջ ածեալ կշտամբեսցին: Եւ ոչ կամեցաւ արքայն Հայոց ունկնդիր լինել բանիցն պատգամաւորացն թագաւորին Պարսից Շապհոյ, եւ ոչ դարձաւ այլ անդրէն յերկիրն Պարսից: Ապա յայն օրէ հետէ եւ անդր յուզեցաւ պատերազմ գրգռութեան մարտից նախատոց 'ի մէջ թագաւորին Հայոց Արշակայ եւ 'ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ ամս աւելի քան զերեսուն:

## ԻԱ.

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻ՛ՆՉ ԵՂԵՒ ՊԱՏԵՐԱԶՄ ԸՆԴ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՐՍԻՑ ԵՒ ԸՆԴ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՒՈՐՆ ՀԱՅՈՑ ԶԱՌԱՋԻՆՆ, ԿԱՄ ԶԻ՛ՆՉ ՅԱՂԹԵՑ ԱՐՇԱԿ ԱՐՔԱՅ ՀԱՅՈՑ

Ապա ամս ութ, յետ գնալոյն փախչելոյն արքային Հայոց Արշակայ 'ի թագաւորէն Պարսից Շապհոյ, լուռ լինէր թագաւորն Պարսից թշնամութենէ. եւ խօսէր համակ ողոքով, եւ աղաչէր զԱրշակ արքայ Հայոց՝ սիրով հաշտ եւ միաբան կալ ընդ նմա յուխտի խաղաղութեան: Վասն զի 'ի մեծ վտանգ շտապի էր թագաւորն Պարսից ստէպ ստէպ յանդադար պատերազմացն 'ի թագաւորաց անտի Յունաց: Իսկ Արշակ արքայ Հայոց ոչ ինչ կամէր առնել նմա, եւ ոչ հուպ ինչ լինել 'ի նա. եւ յղեալ դեսպանս, եւ ոչ ինչ տալ պատարագս ընծայից, եւ ոչ հուպ ինչ կամ մօտ լինել 'ի նա բնաւին. եւ զանունն անգամ նոցա ոչ կամէր լսել: Իսկ թագաւորն Պարսից ստէպ ստէպ յղէր պատարագս առ նա, առաքէր դեսպանս: Եւ ինքն հապճեպ կռուէր ընդ թագաւորսն Յունաց:

Այլ իբրեւ եղեւ խաղաղութիւն 'ի մէջ թագաւորացն Յունաց եւ 'ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ, ուխտից նամակ գրեալ եւ կնքեալ տայր թագաւորն Յունաց թագաւորին Պարսից: Եւ գրեալ էր յուխտից նամակին այսպէս. Ետու քեզ, ասէ, զնծբին քաղաք՝ որ է յարուեստանի, եւ զՄիջագետս Ասորոց, եւ մէջաշխարհին Հայոց. ձեռնթափ եմ, ասէ, թէ կարասցես յաղթել նոցա եւ արկանել 'ի ծառայութիւն, ես 'ի թիկունս ոչ եկից նոցա: Արդ 'ի նեղ ուրեմն անգեալ թագաւորն Յունաց, եւ 'ի

Պարսից Շապուհ թագավորին: Երբ Պարսից Շապուհ թագավորը այս լսեց՝ որովհետև խելոք մարդ էր՝ իր խելքով բանի եղելությունը հասկացավ և խիկույն ասաց. «Հայոց թագավորի այդ փախուստը իմ մարդկանցից է եղել. մեզանից, մեր դռան մարդկանցից են եղել այն մարդուն՝ Արշակին փախցնողները»: Ապա իր ավագ մեծամեծներից շատերին ձիով դեսպան էր ուղարկում Հայոց թագավորի հետևից՝ սիրո և միաբանության երդումով, որպեսզի հետ դառնա, միասին քննեն չարախոսությունները ու պատժեն: Բայց Հայոց թագավորը չկամեցավ լսել Պարսից Շապուհ թագավորի ուղարկած պատգամը և է՛լ չդարձավ Պարսից աշխարհը: Այդ օրից սկսած պատերազմ՝ կռիվներ ու ճակատամարտեր ծագեցին Հայոց Արշակ թագավորի և Պարսից Շապուհ թագավորի միջև, որոնք տևեցին ավելի քան երեսուն տարի:

ԻԱ

ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ԵՎ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԵՋ ԵՎ ԻՆՉՊԵՍ ՀԱՂԹԵՑ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԸ

Հայոց Արշակ թագավորի Պարսից Շապուհ թագավորից փախչելուց գնալուց հետո Պարսից թագավորը ութ տարի լուռ էր մնում, թշնամություն չէր անում, այլ շարունակ քաղցրությամբ խոսում և աղաչում էր Հայոց Արշակ թագավորին՝ սիրով ու հաշտ ապրել իր հետ խաղաղության դաշինքով: Որովհետև Պարսից թագավորն այս ժամանակ մեծ վտանգի ու տագնապի մեջ էր՝ Հունաց թագավորների կողմից տեղի ունեցած անարգար պատերազմների պատճառով: Իսկ Հայոց Արշակ թագավորը ամենևին չկամեցավ նրան լսել, ո՛չ նրա մոտ գնալ, ո՛չ պատգամավորներ ուղարկել, ոչ մի նվեր կամ ընծա ուղարկել. բոլորովին չկամեցավ նրան մոտենալ, անունն անգամ չէր ուզում լսել: Իսկ Պարսից թագավորը նրան հանախակի նվերներ ու դեսպաններ էր ուղարկում և ինքը եռանդով կռվում էր Հունաց թագավորների հետ:

Այնուհետև խաղաղություն հաստատվեց Հունաց թագավորների և Պարսից Շապուհ թագավորի մեջ: Հունաց թագավորը դաշնագրի թուղթ գրեց ու կնքեց, տվեց Պարսից թագավորին, որի մեջ գրված էր այսպես. «Քեզ եմ տալիս Մծբինը[124], որ Արվաստանում է գտնվում, և Ասորոց Միջագետքը. Հայաստանի ներքին նահանգներից էլ ձեռք եմ քաշում. եթե կարող ես՝ նրանց նաղթի՛ր և քո իշխանության տակ նվաճիր, ես նրանց օգնության չեմ գա»: Այսպես ուրեմն Հունաց թագավորը

նեղին վշտի՝ զայս ձև օրինակի բանիցն կնքէր մուրհակ, և տայր թագաւորին Պարսից. և ապա նողոպրէր 'ի նմանէ:

Այլ իբրև եղև խաղաղութիւն 'ի մէջ թագաւորին Յունաց և 'ի մէջ թագաւորին Պարսից, այնուհետև կազմէր զզօրս իւր թագաւորն Պարսից Շապուհ, և խաղաց 'ի վերայ Արշակայ արքային Հայոց մարտի պատերազմաւ: Իսկ սահմանապահքն թագաւորին Հայոց, որ նստէին 'ի Գանձակ Ատրպատականի, վաղ ազդ առնէին նմա զիրսն մինչև հասեալ էր նա 'ի սահմանս Ատրպատականի: Ապա իբրև զայն զգայր թագաւորն Հայոց Արշակ, հրաման տայր Վասակայ իւրում սպարապետին՝ կազմել զամենայն զզօրս իւր, և հասանել 'ի դիմի հարկանել թագաւորին Պարսից Շապհոյ: Ապա արագ ժողովեր 'ի մի վայր, հանդէս առնէր Վասակ սպարապետն ամենայն զօրաց Հայոց. և գտան հեծելազօր սպառազէնք կուռ վառեալք նիզակաւորք համակ վաշտուն բիւր, միասիրտք միաբան միամիտք: Եւ հանդերձ նոքօք յառաջ խաղայր սպարապետն Հայոց Վասակ հասանէր, բախեալ 'ի դիմի հարկանէր թագաւորին Պարսից: Առ հասարակ զօրսն զամենայն հարկանէին 'ի սուր սուսերի իւրեանց. և միայն նողոպրեալ արքայն Պարսից Շապուհ փախչէր: Սոքա հասանէին, զերէին, այրացուեր առնէին առ հասարակ զերկիրն Պարսից. և ինքեանք կային ունէին զճակատուն տեղի, այս ինքն զսահմանս Պարսից պահէին:

ԻԲ

ՅԱՂԱԳՍ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ ՈՐ ԸՆԴ ԵՐԻՍ ՏԵՂԻ ԵՂԵՒ ՃԱԿԱՏՆ ԵՐԿՐԻՆ ՀԱՅՈՑ ԸՆԴ ԶՕՐՍՆ ՊԱՐՍԻՑ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՆՇԱՆ ՅԱՂԹՈՒԹԵԱՆ ՅԱՅՍՄ ԵՒՍ ՀԱՅՈՑ ԿԱՆԳՆԷՐ

Յայնմ ժամանակի թագաւորն Պարսից Շապուհ ժողովեաց զզօրս իւր անթիւ և անհամար, իբրև զաւազ առ ափն ծովու. և փիղս բազումս, զի ոչ գոյր նոցա թիւ: Ընդ երիս բաժանեալ զզօրսն, երկուց գնդացն զԱնդիկան և զՀազարաւուխտ զօրագլուխս կացուցանէր. և միում գընդին ինքնին թագաւորն լինէր զօրագլուխ: Եւ հրաման տայր թագաւորն զօրացն՝ ընդ երիս տեղիս խաղալ մտանել արշաւել յաշխարհն Հայոց: Ապա այս բանք վաղագոյն ազդ լինէին առ թագաւորն Հայոց Արշակ, և առ զօրավարն նոցին Վասակ. ապա և սոքա բազում զօր յաշխարհէն ժողովեցին, զի ոչ գոյր համար բազմութեանն: Եւ թէ բիւր անապարեցին, սակայն զօրքն Պարսից արշաւէին յերկիրն Հայոց, և ընդ երիս ասպատակէին:

նեղն էր ընկնում և ճարահատյալ այսպիսի դաշնագիր էր կնքում և ուղարկում Պարսից թագավորին և այս կերպով խալսում էր նրանից:

Արդ՝ երբ խաղաղություն հաստատվեց Հունաց թագավորի և Պարսից թագավորի մեջ՝ այնուհետև Պարսից Շապուհ թագավորը կազմակերպեց իր զորքերը և պատերազմով եկավ Հայոց Արշակ թագավորի վրա: Հայոց թագավորների սահմանապահները, որ նստած էին Ատրպատականի Գանձակում՝[125] վաղօրոք այս բանը իմաց էին տալիս Արշակ թագավորին, դեռ (Շապուհը) Ատրպատական չհասած: Հայոց Արշակ թագավորն այս իմանալուն պես հրաման էր տալիս իր Վասակ սպարապետին՝ իր բոլոր զորքերը կազմակերպել և հանել, Պարսից Շապուհ թագավորին դիմադրել: Վասակը շուտով մի տեղ էր ժողովում զորքը, Հայոց բոլոր զորքին զորահանդես էր կատարում. դուրս եկավ վաթսուն բյուր հեծյալ, լավ զինված նիզակավոր զինվոր, միասիրտ, միաբան, համատարիմ մարդիկ: Նրանց հետ Հայոց Վասակ սպարապետը առաջ շարժվեց, հասավ ու ընդհարվեց Պարսից թագավորի հետ: (Նրա) բոլոր զորքերն առհասարակ կոտորում էին իրենց սրերով, և միայն Պարսից Շապուհ թագավորը մի ձիով փախչում էր: Իսկ սրանք հասնում, գերում էին, ավերում ու այրում էին առհասարակ Պարսից աշխարհը, և պահպանում էին ճակատամարտի տեղը, այսինքն Պարսկաստանի սահմանները:

## ԻԲ

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՍՐԱՆԻՑ ՀԵՏՈ ԵՐԵՔ ՏԵՂ ՃԱԿԱՏԱՄԱՐՏ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՊԱՐՍԻՑ ԶՈՐՔԵՐԻ ՀԵՏ ԵՎ ԻՆՉՊԵՍ ՀԱՂԹՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՐՁՅԱԼ ՀԱՅԵՐԻՆ ԷՐ ՄՆՈՒՄ

Այն ժամանակ Պարսից Շապուհ թագավորը ժողովեց իր զորքերը անթիվ ու անհամար բազմությամբ, ինչպես ավազը ծովի ափին, և բազմաթիվ փղեր. որոնց թիվ չկար: Նա իր զորքերը երեք գնդի բաժանեց, երկու գնդերին զորագլուխ նշանակեց Անդիկանին և Հազարավուխտին, իսկ երրորդ գնդին զորագլուխ լինում էր ինքը թագավորը: Եվ հրաման տվեց թագավորը՝ երեք տեղից մտնել ու արշավել Հայոց աշխարհը: Այս բաներն էլ վաղօրոք հայտնվում էին Հայոց Արշակ թագավորին և նրա Վասակ զորավարին: Սրանք էլ աշխարհից զորք հավաքեցին, որոնց բազմության թիվ ու համար չկար, և թեպետ շատ աճապարեցին, բայց և այնպես Պարսից զորքերը Հայաստան մտան և երեք ուղղությամբ ասպատակեցին:

Ապա թագաւորն Արշակ և զիւր զօրսն բաժանէր ընդ երիս. և տայր զմի գունդն Վասակայ սպարապետին, և զերկրորդ գունդն 'ի ձեռն Բագասի եղբօր նորին, որ 'ի գործ արութեան քաջ էր անհնարին, բայց 'ի գործ իմաստութեան բախած էր. և զմիւս գունդն իւր թագաւորն Արշակ առնոյր: Եւ տայր հրաման՝ յառաջ խաղալ պատրաստել, առ դիպան պատահել զօրացն Պարսից: Ապա գայր սպարապետն Վասակ, գտանէր պառաջին առաջն զօրացն Պարսից զՀազարաւուխտն, զի հասեալ էին 'ի գաւառն Վանանդայ, 'ի տեղւոջն՝ որ անուանեալ կոչէր յԾրևեալ. և բախէր ընդդէմ զօրացն Պարսից մարտիւ պատերազմաւ: 'Ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից, դարձան 'ի փախուստ, ցրուեցան սփռեցան: Հասանէր զօրավարն Վասակ, արկանէր զզօրսն ամենայն փախստէիցն Պարսից. ոչ ապրեցուցանէին և ոչ զմի և թափեցին աւար բազում և զփիղսն:

'Ի նմին ամսեան 'ի նմին շաբաթու 'ի նմին աւուր հասանէր Բագոս, հանդերձ զօրօք՝ որ ընդ իւրև էին, գտանէր զառաջ երկրորդ զօրացն Պարսից և զԱնդիկան զօրագլուխ նոցա, զի հասեալ մածեալ բանակէին 'ի վերայ ձկնատենիցն Առեստեայ: Ապա վաղ զգացին զօրքն Պարսից զհասանել Բագոսին, և պատրաստեցան 'ի մարտ պատերազմի ընդդէմ զօրացն Հայոց: Ապա հասանէր Բագոսն ամենայն գնդաւն. ընդդէմ յարձակէին ճակատուն Պարսից, անդէն հարկանէին սատակէին զամենայն առ հասարակ զզօրսն Պարսից, և գլխովին զԱնդիկան սպանանէին: Ապա դիպէր Բագոսն գնդին փղացն, և տեսանէր զմի 'ի փղաց անդի մեծապէս զարդարեալ, և զարքունական նշանս 'ի վերայ արձակեալ: Համարեցաւ զթագաւորն 'ի փղին յայնմիկ. իջանէր յերիվարէն, հանեալ զսուսերն իւր յարձակէր 'ի վերայ փղին, զէն վերացոյց, եմուտ 'ի ներքոյ փղին, հարկանէր զներտս փղին, և անդէն ընկենոյր զփիղն 'ի վերայ անձին իւրոյ, և սատակէին երկոքեան. զի ոչ ժամանէր ելանել ներքուստ 'ի փղէն: Յայնմ ճակատու, բայց միայն զի մեռաւ զօրագլուխ զօրացն Բագոսն, այլ 'ի Պարսից զօրացն ոչ ապրեցուցանէին յայնցանէ և ոչ մի:

Իսկ 'ի նոյն ամի 'ի նմին շաբաթի 'ի նմին իսկ աւուր, քանզի 'ի մի օր[27] եղեն ճակատքն երեքեան, արդ հասանէր թագաւորն Արշակ, հանդերձ զօրօքն՝ որ ընդ իւրն էին. գտանէր զինքնին թագաւորն Շապուհ, զի հասեալ մածեալ բանակէին 'ի գաւառն Բասենոյ 'ի տեղիսն՝ որ անուանեալ կոչի Ոսխա[28]: Ապա անկանէր գիշերի արքայն Արշակ և վերայ բանակին Պարսից, և անդէն ընդ սուր հանէր զամենեսեան. բայց միայն միանձի մազապուր նողոպրէր թագաւորն Շապուհ, փախուցեալ անկանէր յաշխարհն Պարսից: Ապա յայնմ ժամանակի յերիցունց գնդացն մի-

Այն ժամանակ Արշակ թագավորն էլ իր զորքերը երեք մասի բաժանեց. մի գունդը տվեց Վասակ սպարապետի ձեռքը, երկրորդ գունդը նրա Բագոս եղբորը, որ քաջության և արիության մեջ նմանը չուներ, բայց խելքի կողմից պակասավոր էր. իսկ երրորդ գունդը վերցնում էր ինքը Արշակ թագավորը: Ապա հրաման էր տալիս առաջ շարժվել, գնալ, Պարսից զորքերին ճակատ առ ճակատ պատահել:

Վասակ սպարապետը գալիս էր, Պարսից զորքերի առաջին գունդը, Հազարավուխտի հետ, գտնում էր հասած Վանանդ գավառը, մինչև այն տեղը, որ կոչվում է Երևյալ, և պատերազմով ընդհարվում էր Պարսից զորքերի հետ, որոնք փախուստի դիմեցին և ցրիվ եկան: Վասակ զորավարը հասնում կոտորում էր Պարսից բոլոր փախստական զորքերը: Ոչ մեկին կենդանի չէին թողնում և խլում էին շատ ավար ու փղեր:

Միևնույն ամսում, միևնույն շաբաթում, միևնույն օրը Բագոսը իր զորքերի հետ գալիս հասնում էր Պարսից զորքի երկրորդ գնդին, Անդիկան զորագլխի հետ, որոնք եկել կուտակվել, բանակ էին դրել Առեստի ձկնորսարանում: Պարսից զորքերը շուտով իմացան Բագոսի հասնելը, պատրաստվեցին Հայոց զորքերի դեմ պատերազմելու: Բագոսը իր բոլոր գնդով հասավ. հարձակվեցին Պարսից ճակատի վրա, Պարսից բոլոր զորքն առհասարակ կոտորեցին, Անդիկանին էլ միասին սպանեցին: Ապա Բագոսը հանդիպում էր փղերի գնդին. տեսնում էր որ փղերից մեկը շատ զարդարված էր և կրում էր արքունական նշաններ: Բագոսը կարծեց, թե այդ փղի վրա (Շապուհ) թագավորն է, ձիուց իջավ, սուրը քաշեց, փղի վրա հարձակվեց. զենքը բարձրացրեց, փղի տակ մտավ, փղին փորից զարկեց. փիղն ընկավ նրա վրա և երկուսը միասին մեռան, որովհետև (Բագոսը) ժամանակ չունեցավ փղի տակից դուրս գալու: Այդ կռվի մեջ միայն Բագոսը մեռավ, Հայոց զորքի զորագլուխը, իսկ Պարսից զորքերից ոչ մեկին կենդանի չթողին:

Միևնույն տարում, միևնույն շաբաթում, միևնույն օրը—որովհետև երեք ճակատամարտերն էլ միևնույն օրը պատահեցին— գալիս հասնում էր Արշակ թագավորը իր զորքերի հետ և գտնում էր իրան՝ Շապուհ թագավորին, որ եկել կուտակվել բանակ էր դրել Բասյան գավառում, Ոսխա կոչված տեղերում: Ապա Արշակ թագավորը գիշերով հարձակվում էր Պարսից բանակի վրա, բոլորին սրի էր անց կացնում. հազիվ Շապուհ թագավորը միայն մեկ ձիով ճողոպրում էր, փախչում Պարսից աշխարհն ընկնում: Այն ժամանակ (Հայոց) երեք գնդերից հաղթության

մեանց դիպէին աւետաւորքն յաղթութեանցն. բայց 'ի Բագուէ, զի մեռաւ միայն 'ի միում ճակատուն, այլ և ոչ մի 'ի նոցանէն ոչ ծախէին. յաստուծոյ եղև մեծ աջողութիւնն յաղթութեանն: Եւ սոքա 'ի կողմանս Պարսից ասպատակէին, և հարկանէին մինչև 'ի կողմանս՝ որ կոչին Խարտիզան: Եւ լցան գանձիւք բազմօք և զինու և զարդու և բազում աւարաւ և անչափ մեծութեամբ, և հարստացան անցին ըստ չափ:

## ԻԳ

### ՅԱՂԱԳՍ ՄԵՐՈՒԺԱՆԱՅ ԱՐԾՐՈՒՆՒՈՅ, ՈՐ ԱՊՍՏԱՄԲԵԱՑ ՅԱՐՔԱՅԷՆ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿԱՅ, ԵՒ ԱՆԿԱՒ ԱՌ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ, ԵՒ ԱՌԱՒԵԼ ԳՐԳՌԷՐ ԶՊԱՏԵՐԱԶՄՈՒՆՍՆ, ԵՒ ԹԷ ԶԻԱ՞ՐԴ ՈՒՐԱՑԱՒ ՅԱՍՏՈՒԾՈՅ, ԵՒ ԿԱՄ ԶԻԱ՞ՐԴ ԵՂԵՒ ԽՈԶԸՆԴԱԿՆ ԵՒ ԽՈԶՈՏՆ ԵՐԿՐԻՆ ՀԱՅՈՑ ՄԻՆՉԵՒ ՅԱՊԱՑ

Յայնմ ժամանակի ապստամբեաց յարքայէն Հայոց մի ոմն 'ի նախարարաց մեծամեծացն, Մերուժան անուն Արծրունի, և չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից Շապհոյ, և դնէր ընդ նմա ուխտ երդմամբ, զի յաւիտեան ծառայ լիցի նմա: Նախ ուրացաւ 'ի կենացն իւրոց, զոր յաստուածն ունէր. զի եթող զօրէնս քրիստոնէութեան, և խոստովան եղև վասն անձին իւրոյ՝ թէ չեմ քրիստոնեայ. և կալաւ զօրէնս մազդեզանցն, այսինքն զմոգուցն. եպագ երկիր արեգական և կրակի, և խոստովան եղև՝ թէ աստուածք այն են, զոր թագաւորն Պարսից պաշտէ: Եդ ուխտ ընդ Շապհոյ արքային Պարսից՝ յայնմ հետէ թէ իցէ և կարասցէ յաղթել Շապուհ և ունել Հայոց զաշխարհն, և ինձ դարձ լիցի յիմ աշխարհն և յիմ տունն, նախ ես, ասէ, շինեցից ատրուշան յիմում տանն սեպհականին, այս ինքն տուն կրակին պաշտելոյ: Եւ կեանս և մահ դնէր ընդ նոսա, խոստացեալ բանիւք և արդեամբք: Եւ զզօրսն Պարսից պատրաստէին առաւել ևս քան զառաջինն, և առաջնորդ ունէին զչարագործն Մերուժանն, ասպատակեալ յաշխարհն Հայոց: Յանկարծօրէն այրացաւեր զերկիրն Հայոց առնէին առաջնորդ Մերուժանաւ. զորս տային 'ի կոխումն փղաց, և զկանայս ընդ ցից սայլից հանէին. առնուին կոտորէին զամենայն բնակիչսն վերնագաւառացն Հայոց:

Մինչ դեռ թագաւորն Արշակ 'ի կողմանսն ստորին գաւառացն յԱնգեղ տան էր յուտեստ, զմիջնաշխարհն քանդեալ բրեալ զօրքն Պարսից ապականէին: Ապա զօրաժողով լինէր Վասակ զօրավարն Հայոց, և որ հասին 'ի ժամանակի անդ 'ի ձեռն նորա տասն հազար հեծեալ ընտիր ընտիր և քաջ այրեձի, կազմ զինու և բազում պատրաստութեամբ. և հանդերձ նոքօք խաղայր, 'ի կիրք ձգեալ հասանէր զօրացն Պարսից:

ավետաբերները հանդիպում էին միմյանց: Բացի Բագոսից, որ ճակատամարտներից մեկում մեռավ՝ ուրիշ ոչ ոք չէր կորել. աստծուց շնորհվել էր մեծ աջողություն ու հաղթություն, իսկ (Հայոց զորքերն) ասպատակում էին Պարսից աշխարհը, ավերում էին մինչև Խարտիզան կոչված տեղը: Լիացան բազմաթիվ գանձերով. զենքերով, զարդերով ու շատ ավարով, և չափից դուրս հարստացան:

## ԻԴ

### ՄԵՐՈՒԺԱՆ ԱՐԾՐՈՒՆՈՒ ՄԱՍԻՆ, ՈՐ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻՑ ԱՊՍՏԱՄԲԵԼՈՎ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ՄՈՏ ԳՆԱՑ ԵՎ ԱՎԵԼԻ ԵՎՍ ԳՐԳՌՈՒՄ ԷՐ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ, ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՆԱ ՈՒՐԱՑԱՎ ԱՍՏԾՈՒՆ ԵՎ ԱՅՆՈՒՀԵՏԵՎ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ԽԱՆԳԱՐԻՉՆ ԵՂԱՎ ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋԸ

Այն ժամանակ Հայոց թագավորից ապստամբեց մեծ նախարարներից մեկը Արծրունյաց ցեղից, Մերուժան անունով. նա գնաց ներկայացավ Պարսից Շապուհ թագավորին և երդումով ուխտ դրեց, որ առ միշտ նրա հպատակը կլինի: Նա ուրացավ իր կյանքը՝ իր աստվածը, որովհետև հրաժարվեց քրիստոնեությունից և իր մասին վկայեց, թե քրիստոնյա չեմ, ընդունեց մազդեզանց՝ այսինքն մոգերի կրոնը, երկրպագեց արեգակին ու կրակին. խոստովանեց թե աստվածները նրանք են՝ որոնց պաշտում է Պարսից թագավորը: Նա ուխտ դրեց Պարսից Շապուհ թագավորի հետ, թե ապագայում եթե Շապուհը կարողանա հաղթել և Հայոց աշխարհը նվաճել և ես կարողանամ իմ աշխարհը և իմ տունը վերադառնալ՝ նախ ես, ասում էր, ատրուշան կշինեմ իմ սեփական տանը, այսինքն կրակը պաշտելու տուն: Կյանքի և մահվան ուխտ էր դնում նրանց հետ խոսքով ու գործով: (Այնուհետև) պատրաստում էին Պարսից զորք՝ առաջինից ավելի մեծ քանակությամբ՝ Հայոց աշխարհն ասպատակելու: Նրանց առաջնորդն եղավ չարագործ Մերուժանը: Նրա առաջնորդությամբ Հայոց աշխարհը կրակի և ավերածի էին մատնում, ոմանց փղերին ոտնակոխ էին անել տալիս, կանանց սայլերի ցցի վրա էին հանում, Հայոց աշխարհի վերին գավառներն առնում, բոլոր բնակիչները կոտորում էին:

Մինչդեռ Արշակ թագավորը ուտեստի՝ կերակրվելու համար[126] ստորին գավառներում էր, Անգեղ տանը՝ Պարսից զորքերը միջնաշխարհը քարուքանդ էին անում: Ապա Հայոց Վասակ զորավարը զորք էր ժողովում. նա կարողացավ այդ ժամանակ կազմակերպել ու սարքավորել տասը հազար ընտիր ու քաջ հեծելազոր, նրանցով առաջ շարժվեց, փութով հասավ Պարսից զորքի վրա: Երբ Պարսից թագավորի

Իսկ իբրև զգացին զօրավարքն զօրաց թագաւորին Պարսից՝ եթէ զօրաժողով է 'ի վերայ նոցա զօրավարն Հայոց Վասակ, զմնացորդս աշխարհին գերփեցին գերեցին առին և փախեան յաշխարհն իւրեանց ճեպով տագնապաւ: Ապա զհետ կրթեր Վասակ Մամիկոնեան, և երթայր հասանէր նոցա. չուէին 'ի սահմանս Ատրպատականին: Իսկ զօրքն թագաւորին Պարսից թողին զգերին, և փախստական լինէին հանդերձ Մերուժանաւն: Եւ թափէր անչափ և անթիւ զամենայն զառեալ գերութիւնն, և դառնային խաղաղութեամբ առ թագաւորն Արշակ:

## ԻԴ

ՅԱՂԱԳՍ ՄԵՐՈՒԺԱՆԱՅ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՊՍՏԱՄԲԷՐ ԵՒ ԳՐԳՌԷՐ ԶԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ, ԵՒ ԱՌՆԷՐ ՊԱՏԵՐԱԶՄ. ԵՒ ԶԻԱ՛ՐԴ ԼԻՆԷՐ ԱՌԱՋՆՈՐԴ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՀՈՅ, ԵՒ ԱԾԷՐ ՀԷՆ ՅԱՇԽԱՐՀՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ. ԵՒ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԳԵՐԷՐ ԶՈՍԿԵՐՍ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ. ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԶՕՐԱՎԱՐՆ ՎԱՍԱԿ ԹԱՓԵԱՑ ԶԳԵՐԵԱԼՍՆ ԵՒ ՅԱՂԹԵԱՑ ԹՇՆԱՄԻՈՅՆ

Ապա յետ այսորիկ Մերուժան վատանշան գրգռէր զթագաւորն Պարսից զՇապուհն 'ի վերայ թագաւորին Արշակայ մեծաւ բարկութեամբ: Ապա զօրաժողով լինէր թագաւորն Պարսից Շապուհ. և լրտեսս արձակէր, դիտել զարքայն Հայոց զԱրշակ: Եւ մինչ նա դեռ զգուշացեալ Արշակ արքայն Հայոց հանդերձ իւրովք զօրօքն զԱտրպատական սահմանօքն, զի անդ սպասէր զօրացն Պարսից, նոցա առաջնորդ կալեալ զՄերուժանն՝ ընդ այլ կաթել ասպատակ յաշխարհն Հայոց առնէին: Զի ընդ Աղձնիս և ընդ Ծոփս մեծ, ընդ Անգեղ տունն և ընդ գաւառն Անձտայ ընդ Ծոփս Շահունեաց, ընդ Մզուր գաւառն և ընդ Դարանաղէ, ընդ Եկեղեաց, զկողմանս այնց գաւառացն Շապուհ թագաւորն Պարսից հանդերձ անթիւ զօրօքն ասպատակել հեղեալ ծաւալէր բազմութեամբ իբրև զջուրս բազումս:

Այրեացաւեր առնէին, և զանթիւ մարդիկ արկանէին 'ի սուր սուսերի իւրեանց. զկանայս և զմանկտի հանէին ընդ ցից սայլից, զկէսս զոր 'ի ներքոյ կամացն արկեալ կասուին: Եւ զարանց բազմութիւնս տային 'ի կոխումն փղաց. և զառանց թուոյ զմատաղ մանկտոյն, զայն 'ի գերութիւն վարէին. և զբազում ամուրս քանդէին, և զբերդս աւերէին զամուրս: Եւ առին աւերեցին զմեծ քաղաքն Տիգրանակերտ, որ էր 'ի գաւառին Աղձնեաց յիշխանութեան բդեշխին. քառասուն հազար երդ, զայն նոյնհետայն 'ի գերութիւն խաղացուցին. և ինքեանք 'ի Ծոփս

զորավարներն իմացան, թե Հայոց Վասակ սպարապետը զորք է ժողովել իրենց դեմ՝ աշխարհում մնացածներին կողոպտեցին, գերի վերցրին ու շտապ-շտապ փախան իրենց աշխարհը։ Նրանց հետամուտ եղավ Վասակ Մամիկոնյանը և հասավ (այն ժամանակ), երբ նրանք անցնում էին Ատրպատականով։ Պարսից թագավորի զորքերը գերիները թողին ու փախան Մերուժանի հետ։ (Հայոց զորքերը) գերությունից ազատեցին անչափ ու անթիվ բազմություն և խաղաղությամբ դարձան Արշակ թագավորի մոտ։

## ԽԴ

### ՄԵՐՈՒԺԱՆԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՊՍՏԱՄԲԵԼՈՎ ԳՐԳՌՈՒՄ ԷՐ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻՆ, ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄ ԷՐ ԱՆՈՒՄ. ԻՆՉՊԵՍ ՆԱ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԱՌԱՋՆՈՐԴ ԴԱՌՆԱԼՈՎ ԱՍՊԱՏԱԿ ԶՈՐՔ ԷՐ ԲԵՐՈՒՄ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ, ԻՆՉՊԵՍ ԳԵՐԻ ԷՐ ՏԱՆՈՒՄ ԱՐՇԱԿՈՒՆԻ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՈՍԿՈՐՆԵՐԸ, ԵՎ ԻՆՉՊԵՍ ՎԱՍԱԿ ԶՈՐԱՎԱՐԸ ԹՇՆԱՄՈՒՆ ՀԱՂԹԵՑ ԵՎ ԳԵՐԻՆԵՐԸ ՆՐԱՆՑԻՑ ԵՏ ԽԼԵՑ

Սրանից հետո փառանշան Մերուժանը Պարսից Շապուհ թագավորին գրգռելով սաստիկ բարկացրեց Արշակ թագավորի վրա։ Այս Պարսից Շապուհ թագավորը զորք էր ժողովում, լրտեսներ էր արձակում՝ Հայոց Արշակ թագավորին դիտելու։ Եվ մինչ Հայոց Արշակ թագավորը իր զորքով Ատրպատականի սահմանների մոտ էր գտնվում, այդ կողմերին զգուշանալով— որովհետև այդտեղ էր նա սպասում Պարսից զորքերին՝—սրանք, Մերուժանին առաջնորդ բռնելով՝ ուրիշ կողմ շուռ տալով[27] ասպատակեցին Հայոց աշխարհը։ Նրանք անցան Աղձնիքով, Մեծ Ծոփքով, Անգեղ տանով, Անձիտ գավառով, Շահունի Ծոփքով, Մզուր գավառով, Դարանաղիով, Եկեղյաց գավառով։ Պարսից Շապուհ թագավորը անթիվ զորքերով այս գավառները մտավ ու ծավալվեց հեղեղի նման։

Կրակի ու ավերածի էին մատնում աշխարհը, անթիվ մարդիկ էին կոտորում իրենց սրերով, կանանց ու երեխաներին սայլերի ցցերի վրա էին հանում, մի մասն էլ կամերի տակ էին ձգում, կալսել էին տալիս, տղամարդկանց բազմությունը ձգում էին փղերի ոտների տակ կոխան լինելու և անթիվ խանակությամբ մանր երեխաների գերի էին տանում։ Շատ ամրոցներ քանդում էին, շատ ամուր բերդեր ավերում։ Նրանք առան Տիգրանակերտ մեծ քաղաքը, Աղձնիք գավառում, բռնչի իշխանության մեջ, և այնտեղից քառասուն հազար ընտանիք անմիջապես գերի քշելով՝ իրենք արշավեցին Մեծ Ծոփք գավառը։ Այնտեղի բերդե-

մեծ արշաւեցին: Եւ անդ էին բերդք, զոր առին. և էր, զոր ոչ կարացին առնուլ: Եւ գային պահ արկանէին շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն, որ է յԱնգեղ տանն գաւառին. զի անդ էին բազում Հայոց թագաւորացն գերեզմանք շիրմացն արանցն Արշակունեաց. բազում գանձք մթերեալ մնացեալ կային ի՛ նախնեացն 'ի հնոց ժամանակաց հետէ: Զուան պահ արկին զբերդաւն. ապա իբրև ոչ կարէին առնուլ վասն ամրութեան տեղւոյն, թողուին և գնային: Եւ զբազում բերդօք զանց առնէին, զի ոչ կարէին մարտնչել ընդ ամուրսն. բայց միայն մատնեցաւ 'ի ձեռս նոցա ամուր բերդն Անի 'ի Դարանաղեաց գաւառին անդ, զի չարագործն Մերուժանն հնարաւորութեամբ մեքենայէր ամուր բերդին այնմիկ: Ելանէին 'ի վեր, և կործանէին զպարիսպ նորա, և իջուցանէին անթիւ գանձս 'ի բերդէն: Եւ բանային զգերեզմանս զառաջին թագաւորացն Հայոց զարանց քաջաց զԱրշակունեաց, և խաղացուցանէին, 'ի գերութիւն զոսկերս թագաւորացն. բայց միայն զգերեզման շիրմին Սանատրկոյ արքային ոչ կարացին բանալ վասն անհեդեդ սկայագործ հաստաշինած ճարտարագործ արարածոցն: Ապա գնացեալք անտի 'ի բաց մերժէին, ընդ այլ դիմեալ՝ ասպատակս կապէին, ընդ կողմանսն Բասէնոյ յառաջ խաղային և ինքեանք, կամէին 'ի թիկանցն կուսէ անկանել հասանել ի՛ վերայ զօրացն թագաւորին Հայոց:

Ապա մինչ դեռ այս ամենայն լինէր, զուժկան հասանէր առ թագաւորն Արշակ, և ասեն նմա. Դու աւադիկ առաջոյ սպասես թշնամեացն, նստիս յԱտրպատականի. իսկ թշնամիքն զթիկամբքն անկեալ կոտորեցին զաշխարհս. և արդ դիմեալ գան 'ի վերայ քո: Ապա իբրև զայս լսէին թագաւորն Հայոց Արշակ և զօրավարն նորին Վասակ, հանդէս առնէին զօրացն իւրեանց: Եւ գտան 'ի ժամանակին անդ ընդ ձեռամբն զօրավարին Վասակայ արք գործոց իբրև վաթսուն հազար, ընտիրք և պատերազմողք. որ միամիտք և միասիրտք էին միաբանութեան գործոցն պատերազմին, հասանել մարտնչել 'ի վերայ որդւոց և կանանց իւրեանց, և 'ի վերայ աշխարհին դնել զանձինս իւրեանց մինչև 'ի մահ և 'ի վերայ աշխարհին գաւառացն բնակութեան, հասանել մարտնչել 'ի վերայ եկեղեցեացն իւրեանց, 'ի վերայ ուխտին պաշտամանն սրբոյ եկեղեցեաց իւրեանց, 'ի վերայ հաւատոց ուխտին անուան աստուծոյ իւրեանց, փոխանակ բնակ տերանց իւրեանց արշակունեաց: Զի անգամ ոսկերք թագաւորացն մեռելոց և բազում ժողովուրդք խլեալք յիւրաքանչիւր տեղեաց, փոփոխեցան յօտարութիւն:

Ապա Վասակ սպարապետն հանդերձ վաթսուն հազարօք յառաջ խաղայր, դարձեալ ընդ կրուկ թողոյր զթագաւորն Արշակ յամուր տեղւոջ ուրեմն յերկրին Մարաց, հանդերձ սպասաւորօքն: Եւ ինքն գայր

րից մի մասը առան, մյուս մասը չկարողացան առնել: Այնտեղից եկան պաշարեցին Անգեղ ամուր բերդը Անգեղ տան գավառում, որովհետև այնտեղ կային Հայոց շատ Արշակունի թագավորների գերեզմաններ և վաղուցվանից ի վեր այնտեղ ամբարված էին շատ գանձեր: Գնացին պաշարեցին բերդը և երբ, տեղի ամրության պատճառով, չկարողացան առնել՝ թողին ու գնացին: Շատ բերդեր էլ թողին անցան, որովհետև չէին կարողանում այն ամրոցների հետ կռվել: Նրանց ձեռքն անցավ միայն Անի բերդը Դարանաղիք գավառում, որովհետև չարագործ Մերուժանը մի հնարք մեքենայեց այդ ամուր բերդի դեմ: Վեր էին բարձրանում, պարիսպները կործանում էին և բերդից անհամար գանձեր էին դուրս բերում: Բաց էին անում Հայոց նախկին թագավորների, քաջ Արշակունիների գերեզմանները և թագավորների ոսկորները գերի էին տանում: Չկարողացան բանալ միայն Սանատրուկ թագավորի շիրիմը՝ նրա անհեդեդ հսկայական պինդ ու նարտար շինվածքի պատճառով: Այնտեղից հեռանալով, ուրիշ կողմ ասպատակեցին, առաջ շարժվելով դեպի Բասենի կողմերը. մտադրվում էին թիկունքից հարձակվել Հայոց թագավորի զորքերի վրա:

Երբ այս ամենը կատարվում էր՝ գուժկան էր գալիս Արշակ թագավորի մոտ. նրան հայտնեցին, թե «Դու այդտեղ Ատրպատականում նստած՝ թշնամուն սպասում ես առաջից, իսկ թշնամիները քո թիկունքը անցնելով աշխարհը կոտորեցին և հիմա գալիս են քեզ վրա»: Երբ այս լսեցին Հայոց Արշակ թագավորը և նրա Վասակ զորավարը՝ զորահանդես կազմեցին: Վասակ զորավարի ձեռքի տակ այդ ժամանակ պատրաստ գտնվեց պատերազմական գործի պիտանի մոտ վաթսուն հազար մարդ, ընտիր պատերազմողներ, որոնք միաբան, միասիրտ, հոժարակամ գնում էին պատերազմի, ուրախ հասնելու ու պատերազմելու իրենց կանանց ու որդոց համար, իրենց կյանքը զոհելու աշխարհի համար, իրենց բնակած տեղերի համար, կռվելու իրենց եկեղեցիների համար, սուրբ եկեղեցիների պաշտոնյաների համար, իրենց հավատի ու ատծու համար, իրենց բնիկ տերերի՝ Արշակունիների համար: Որովհետև նույնիսկ թագավորների ոսկորներն ու բազմաթիվ ժողովուրդ տեղահան արված՝ տարության էին քշված:

Ապա Վասակ սպարապետը իր վաթսուն հազարովը առաջ էր շարժվում. իր եւեն էր թողնում Արշակ թագավորին սպասավորների հետ Մարաց աշխարհում մի ամուր տեղում, իսկ ինքը գալիս հասնում

հասանէր, 'ի միջնաշխարհին Հայոց 'ի գաւառն Այրարատու. և հասանէր գտանէր զզօրսն Պարսից, զի հասեալ մածեալ էին բազմութեամբ իբրև զաւազ առ ափն ծովու, բանակեալ զգաւառաւն Այրարատեան: Ապա հասեալ Վասակ հանդերձ գնդաւն՝ որ ընդ իւրն էին, անկանէր 'ի վերայ բանակին բազաւորին Պարսից 'ի գիշերի յեղակարծումն ժամանակի: Եւ անդէն առ հասարակ ընդ սուր հանէին զզօրսն ամենայն Պարսից. բայց միայն բազաւորն միածի նողոպրեալ մազապուր փախչէր: Զհետ հալածէին զմնացեալսն փախուցեալսն արտաքոյ իւրեանց սահմանացն, և թափէին 'ի նոցանէ աւար բազում և անթիւ, զի ոչ գոյր նոցա չափ համարոյ: Եւ առ հասարակ արկանէին զնոսա 'ի սուր սուսերի իւրեանց, և թափէին 'ի նոցանէն զոսկերս բազաւորացն իւրեանց, զոր պարսիկք խաղացուցեալ տանէին 'ի զերութիւն յաշխարհն Պարսից: Զի ասէին ըստ իւրեանց հեթանոսութեանն ըստ օրինացն, թէ վասն այսորիկ բարձեալ տանիմք զոսկերս բազաւորացն Հայոց աշխարհն մեր, զի փառք բազաւորացն և բախտքն և քաջութիւն աշխարհիս ստոի գնացեալ ընդ ոսկերս բազաւորացն յաշխարհն մեր եկեսցեն: Ապա թափէր Վասակ զզերութիւնն ամենայն զՀայաստան աշխարհին. և զոսկերս բազաւորացն Հայոց, զորս թափեաց Վասակ, հանեալ թաղեցին յամուր 'ի գեղն՝ որ Աղձքն անուանին, յԱյրարատ գաւառին՝ որ կայն 'ի խինձս 'ի գոգս, 'ի ձոցս յանձուկս 'ի դժուարս լերինն մեծի, զոր Արագածն կոչեն: Եւ ինքեանք փոյթ արարեալ զաշխարհն նուաճել, յարդարել կարգել յօրինել շինել զամենայն զգերութիւնս յաւերածոյն և այրեցածոյն: Բայց յայնմ նուագի ևս ապրէր Մերուժանն չարազործն, փախուցեալ ընդ արքային Պարսից: Եւ յայնմ հետէ պահ ունէին իւրեանց աշխարհին. արքայն Արշակ հանդերձ զօրավարաւն Վասակաւ յերկոսին դուռս սահմանացն զզուշանային մինչև զամենայն աւուրս կենդանութեան իւրեանց:

ԻԵ

ՑԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՐՇԱՒԻԵԱՑ ԱՐՔԱՅՆ ԱՐՇԱԿ ՅԵՐԿԻՐՆ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ՔԱՆԴԷՐ ԵՒ ՀԱՐԿԱՆԷՐ ԶԲԱՆԱԿՆ ՇԱՊՀՈՅ ԱՐՔԱՅԻՆ 'Ի ԹԱՒՐԷԶ

Ապա զօրաժողով լինէր Արշակ արքայ Հայոց, և կուտէր առ ինքն զօրս բազումս իբրև զաւազ բազմութեամբ, և խաղայր 'ի վերայ աշխարհին Պարսից: Ապա առնոյր Վասակ զզունդն Հայոց, և զՀոնսն հանդերձ Ալանօքն կոչել յօգնականութիւն, և հասանէր դիմէր յօգնականութիւն բազաւորութեանն Հայոց 'ի վերայ Պարսից: Այլ բազաւորն Պարսից հանդերձ ամենայն իւրովք զօրօքն 'ի ժամանակի անդ յայնմիկ

էր Հայաստանի միջնաշխարհը, Այրարատյան գավառը. գտնում էր այնտեղ Պարսից զորքերը, որոնք այնտեղ կուտակվել բանակ էին դրել մեծ բազմությամբ, ինչպես ավազը ծովի ափին: Վասակն իր հետ եղած գնդով այնտեղ հասնելով՝ գիշերով անսպասելի կերպով գրոհ էր տալիս Պարսից թագավորի բանակի վրա: Եվ տեղն ու տեղը սրի էին անց կացնում Պարսից բոլոր զորքերը. միայն թագավորը հազիվ ճողոպրում, փախչում էր մի ձիով: Մնացածներին հալածելով փախցնում էին իրենց սահմաններից դուրս և նրանցից այնքան ավար էին խլում, որ թիվ ու հաշիվ չկար: Նրանց բոլորին առհասարակ կոտորում էին իրենց սրերով. խլում էին նրանցից իրենց թագավորների ոսկորները, որ պարսիկները գերի էին տանում Պարսից աշխարհը: Որովհետև նրանք, ըստ իրենց հեթանոսական՝ կրոնի, ասում էին. «Սրա համար ենք մենք Հայոց թագավորների ոսկորները մեր աշխարհը տանում, որ այս աշխարհի թագավորների փառքը, բախտն ու քաջությունը այստեղից թագավորների ոսկորների հետ մեր աշխարհը փոխադրվին»: Արդ՝ Վասակը խլում է նրանցից Հայաստան աշխարհի բոլոր գերիները, իսկ թագավորների ոսկորները. որ նրանցից Վասակը խլեց՝ տարան թաղեցին Աղձք կոչված ամուր գյուղում, Այրարատ գավառում, որ գտնվում է Արագած մեծ լեռան նեղ ու դժվարամուտ խորշերից մեկում: Իսկ իրանք հոգ տարան աշխարհը խաղաղացնելու, բարեկարգելու, գերիները տեղավորելու, այրածն ու ավերածը նորոգելու: Բայց այս անգամն էլ չարագործ Մերուժանը Պարսից թագավորի հետ փախչում ազատվում էր: Այնուհետև Արշակ թագավորը Վասակ զորավարի հետ պահպանում էին աշխարհը, սահմանագլխի երկու դռներն[128] զգուշությամբ պահելով՝ որքան ժամանակ որ կենդանի էին:

## ԻԵ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐՆ ԱՐՇԱՎԵՑ ՊԱՐՍԻՑ ԱՇԽԱՐՀԸ, ՔԱՆԴՈՒՄ ԷՐ ԵՎ ԿՈՏՈՐՈՒՄ ԷՐ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ԲԱՆԱԿԸ ԹԱՎՐԻԺՈՒՄ

Այնուհետև Հայոց Արշակ թագավորը զորք էր ժողովում, կուտակում էր ավազի բազմությամբ զորք և վեր էր կենում գնում էր Պարսից աշխարհի վրա: Վասակը վերցնում էր Հայոց գունդը, օգնության էր կանչում նաև Հոներին և Ալանններին, որոնք գալիս էին Հայոց թագավորին օգնության պարսիկների դեմ: Նույն այդ ժամանակ Պարսից

քանզի և նա խաղացեալ գայր 'ի վերայ Հայաստան երկրին ընդ դէմ սոցա, ապա սոքա փութացեալք հասանէին յԱտրպատական. և գտանէին զբանակն արքային Պարսից 'ի Թաւրէշ բանակեալ:

Հասանէր Վասակ սպարապետն հանդերձ քսան բիւրուքն, անկանէր 'ի վերայ բանակին Պարսից: Միաձի ճողոպրեալ թագաւորն փախչէր, և առնուին յաւարի զամենայն կարաւանն Պարսից. և զամենայն զօրսն Պարսից բազմութեանն կոտորեցին, և առին աւար բազում 'ի բանակէն, զի ոչ գոյր նոցա թիւ: Ասպատակ տուեալ առնուին զամենայն Ատրպայական երկիրն. քանդեալ բրէին զերկիրն, մինչև 'ի հիմանց կործանէին. և խաղաղացուցանէին զգերութիւն երկրին քան զաւազս բազմութեամբ: Եւ զամենայն զայր երկրին հանէին ընդ սուր. և ինքեանք զգուշացեալք սահմանօք երկրին իւրեանց, պահ արկեալ պահէին մեծաւ զգուշութեամբ:

## ԻԶ

### ՅԱՂԱԳՍ ՎՆԱՅ ՊԱՐՍԿԻ, ԵՒ ՉՈՐԵՔՀԱՐԻՒՐ ՀԱԶԱՐԱՅՆ՝ ՈՐ ԵԿԵԱԼ ԷԻՆ 'Ի ՎԵՐԱՅ ՀԱՅՈՑ, ԵՒ ՆԿՈՒՆ ԼԻՆԷԻՆ 'Ի ԶՕՐԱՑՆ ՀԱՅՈՑ

Ապա գումարեաց թագաւորն Պարսից Շապուհ զՎինն 'ի վերայ արքային Հայոց Արշակայ չորեքհարիւր հազարաւ: Ապա գայր ելանէր Վինն, ասպատակ սփռէր ընդ ամենայն երկիրն սահմանացն Հայոց: Եւ ապա իբրև գիտացեալ թագաւորն Հայոց Արշակ, հասանէին 'ի վերայ զօրացն Պարսից. կոտորեալ առ հասարակ ընդ սուր հանէր զամենայն զօրսն Պարսից, և զմնացեալսն փախստական առնէր մինչև 'ի կողմանս սահմանացն Պարսից: Սատակէին զնոսա, և ինքեանք դարձեալ ունէին զճակատուն տեղի:

## ԻԷ

### ՅԱՂԱԳՍ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՊԱՐՍԻՑ ԱՆԴԻԿԱՆԱՅ, ՈՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԲԻՒՐՈՒՆ ՀԱՍԱՆԷՐ՝ ԱՒԱՐ ԱՌՆՈՒԼ ԶԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՀԱՅՈՑ ԵԼԱՆԷՐ ԸՆԴ ԱՌԱՋ ՆՈՐԱ ԵՐԿՈՏԱՍԱՆ ԲԻՒՐՈՒ, ՀԱՐԿԱՆԷՐ ԶՆԱ ԵՒ ԶԶՕՐՍ ՆՈՐԱ

Ապա յետ այսորիկ առաքէր արքայն Պարսից 'ի վերայ արքային Հայոց գունդ կազմեալ պատրաստեալ արս ընդիրս պատերազմողս իւր և զքառասուն բիւր, գալ առնուլ այրել աւերել զերկիրն Հայաստան, և

թագավորն էլ իր բոլոր զորքերով շարժվել գալիս էր Հայաստան աշխարհի վրա սրանց դեմ. սրանք էլ շտապով հասան Ատրպատական և Պարսից զորքը գտնում էին բանակ դրած Թավրեժում[129]։

Վասակ սպարապետը քսան բյուրով հարձակվում էր Պարսից բանակի վրա։ Թագավորը մի ձիով փախչում էր. (հայերը) ավար էին առնում պարսիկների ամբողջ կարավանը[130], Պարսից բազմաթիվ զորքէ ամբողջապես կոտորում էին և բանակից հաշվից դուրս ավար էին առնում։ Ասպատակում էին ամբողջ Ատրպատական աշխարհը, քարուքանդ էին անում երկիրը. հիմքից կործանում էին և գերիներ էին բերում այնտեղից աստղերի բազմությամբ. այդ երկրի բոլոր մարդկանց սրի էին քաշում և իրենք երկրի սահմաններին պահապան կանգնելով՝ մեծ զգուշությամբ պահպանում էին։

## ԻԶ

### ՎԻՆ ՊԱՐՍԻԿԻ ԵՎ ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԱԶԱՐ (ԶՈՐՔԻ) ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՔ ԵԿԵԼ ԷԻՆ ՀԱՅՈՑ ՎՐԱ ԵՎ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆ ԿՐԵՑԻՆ ՀԱՅՈՑ ԶՈՐՔԵՐԻՑ

Ապա Պարսից Շապուհ թագավորը Վինին չորս հարյուր հազար զորքով գումարեց Հայոց Արշակ թագավորի դեմ։ Գալիս էր Վինը և ասպատակում էր Հայոց աշխարհի բոլոր սահմանները։ Երբ Հայոց Արշակ թագավորն այս իմացավ՝ վրա էր հասնում Պարսից զորքերին, բոլոր նրանց զորքը կոտորում և առհասարակ սրի էր քաշում, մնացածներին էլ փախցնում էր մինչև Պարսկաստանի սահմանները։ Նրանց կոտորեցին և ետ դառնալով պահպանում էին նակատի տեղը։

## ԻԷ

### ՊԱՐՍԻՑ ԱՆԴԻԿԱՆ ԶՈՐԱՎԱՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ ԳԱԼԻՍ ԷՐ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀՆ ԱՎԱՐ ԱՌՆԵԼՈՒ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏԸ ՆՐԱ ԴԵՄ ԷՐ ԵԼՆՈՒՄ ՏԱՍՆԵՐԿՈՒ ԲՅՈՒՐՈՎ ԵՎ ՋԱՐԴՈՒՄ ԷՐ ՆՐԱ ԶՈՐՔԵՐԸ

Սրանից հետո Պարսից թագավորը Հայոց թագավորի վրա էր ուղարկում լավ կազմակերպված գունդ, քառասուն բյուր ընտիր պատերազմող մարդիկ, որ գան Հայաստան աշխարհն առնեն, այրեն ու

Անդկան զօրագլուխ նոցա. գայր հասանէր ասպատակ առնէր յերկիրն Հայոց: Ապա գայր հասանէր ընդ առաջ նորա Վասակ Մամիկոնեան սպարապետն Հայոց երկոտասան բիւրուք. հարկանէր սատակէր զնա և զզօրս նորա, քաքէր զզարդ նոցա, և ոչ ապրեցուցանէր 'ի նոցանէ, և ոչ մի. և ինքն կայր քաջութեամբ ունելով զճակատուն տեղի:

## ԽԸ

ՅԱՂԱԳՍ ՀԱԶԱՐԱՒՈՒԽՏՈՅՆ՝ ՈՐ ԷՐ ՄԻ 'Ի ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՊԱՐՍԻՑ. ԶՈՐ ԱՌԱՔԵԱՑ ՇԱՊՈՒՀ ԱՐՔԱՅ ՈՒԹՍՈՒՆ ԲԻՒՐՈՔ ՀԱՐԿԱՆԵԼ ԶԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ. ԵԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՎԱՍԱԿ ԵՒ ԸՆԴ ԱՌԱՋ ՆՈՐԱ ՄԵՏԱՍԱՆ ՀԱԶԱՐԱՒ. ՀԱՐԿԱՆԷՐ ՍԱՏԱԿԷՐ ԶՆԱ ԵՒ ԶԶՕՐՍ ՆՈՐԱ 'Ի ՍԱՀՄԱՆՍ ԱՂՁՆԵԱՑ

Եկն եհաս Հազարաւուխտ 'ի զօրացն Պարսից. գայ այրեացաւեր առնել, 'ի հիմանց տապալել զերկիրն Հայոց: Եւ դիմեալ ընդ երկիրն Աղձնեաց. կամեցաւ ծաւալել ընդ երկիրն Հայոց և ընդ ամենայն սահմանս նոցա: Ապա ելանէր Վասակ ընդ առաջ նորա հանդերձ մետասան հազարաւ. հարկանէր սատակէր, և զզօրսն զմնացեալսն փախստական արկանէր յերկիրն Պարսից. և զՀազարաւուխտն անդէն սպանանէր:

## ԽԹ

ՅԱՂԱԳՍ ԴՄԱՒՈՒՆԴ ՎՍԵՄԱԿԱՆԱՅ, ՈՐ ԻՆՆՍՈՒՆ ԲԻՒՐՈՒՆ ՏԱԳՐԻԿ ԶՕՐՕՔՆ՝ ԶՈՐ ԱՌԱՔԵԱՑ 'Ի ՎԵՐԱՅ ԱՐՇԱԿԱՅ ԱՐՔԱՅԻՆ ՀԱՅՈՑ ՇԱՊՈՒՀ ԱՐՔԱՅՆ ՊԱՐՍԻՑ: ԱՊԱ ԵԼԱՆԷՐ ՎԱՍԱԿ ԶՕՐԱՎԱՐՆ ՀԱՅՈՑ. ՀԱՐԿԱՆԷՐ ԶՆԱ ԵՒ ԶԶՕՐՍ ՆՈՐԱ

Ապա գայր հասանէր 'ի Կաւոսականի տոհմէն Դմաւունդ Վսեմական, հանդերձ իննսուն բիւրուն՝ որ առաքեալ էին 'ի Շապհոյ արքայէն Պարսից յերկիրն Հայոց. տալ ընդ նոսա մարտ պատերազմի: Ապա կազմեցան պատրաստեցան զօրքն երկրին Հայոց, և Վասակ զօրավար նոցա. ելին պատերազմել 'ի դիմի հարկանել նոցա: Ապա 'ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից յերեսաց նոցա, դարձան 'ի փախուստ: Հասանէր Վասակ. կոտորէր սպանանէր հարկանէր 'ի նոցանէն. զի և մի ոչ ապրեցուցանէր. և զՎսեմականն 'ի մէջ զօրացն սպանանէր: Եւ սինլքորքն[29] արտաքոյ իւրեանց սահմանացն հալածեալ տանէին:

ավերեն։ Նրանց զորագլուխն էր Անդիկանը, որ գալիս ասպատակում էր Հայոց աշխարհը։ Ապա նրա դեմ էր դուրս գալիս Հայոց սպարապետ Վասակ Մամիկոնյանը տասներկու բյուրով. ջարդում կոտորում էր նրան և նրա զորքերը, խլում էր նրանց զարդերը, ոչ մեկին կենդանի չէր թողնում. և ինքը հաղթությամբ պահպանում էր ճակատի տեղը։

ԻԸ

ՀԱԶԱՐԱՎՈՒԽՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՊԱՐՍԻՑ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՑ ՄԵԿՆ ԷՐ, ՈՐԻՆ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԸ ՈՒԹՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ ՈՒՂԱՐԿԵՑ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ԱՎԵՐԵԼՈՒ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՎԱՍԱԿԸ ՆՐԱ ԴԵՄ ԵԼԱՎ ՏԱՍՆԵՎՄԻ ՀԱԶԱՐՈՎ, ՋԱՐԴԵՑ ՈՒ ԿՈՏՈՐԵՑ ՆՐԱՆ ՈՒ ՆՐԱ ԶՈՐՔԵՐԸ ԱՂՁՆԻՔԻ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒՄ

Հազարավուխտը եկավ հասավ Պարսից զորքերով, որպեսզի Հայոց աշխարհը այրի ավերի, հիմնահատակ անի։ Նա դիմեց Աղձնիքի վրա, կամենալով այնտեղից սփռվել Հայոց աշխարհի բոլոր սահմանները։ Ապա նրա դեմ էր դուրս գալիս Վասակը տասնևմի հազարով. ջարդում կոտորում էր նրա զորքերը, մնացածին փախցնում էր Պարսից երկիրը, իրեն Հազարավուխտին էլ սպանում էր։

ԻԹ

ԴՄԱՎՈՒՆԴ ՎՍԵՄԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԸ ԻՆՆՍՈՒՆ ԲՅՈՒՐ ՏԱՊԱՐԻՍՏԱՆԻ[31] ԶՈՐՔՈՎ ՈՒՂԱՐԿԵՑ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ԴԵՄ, ԵՎ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ԶՈՐԱՎԱՐԸ ՆՐԱ ԴԵՄ ԷՐ ԴՈՒՐՍ ԳԱԼԻՍ, ՋԱՐԴՈՒՄ ԷՐ ՆՐԱՆ ԵՎ ՆՐԱ ԶՈՐՔԵՐԸ

Ապա գալիս հասնում էր Դմավունդ Վսեմականը Կավոսական տոհմից իննսուն բյուր զորքով, որոնց ուղարկել էր Պարսից Շապուհ թագավորը Հայոց դեմ պատերազմելու։ Այն ժամանակ Հայոց աշխարհի զորքերը և նրանց Վասակ զորավարը կազմակերպվեցին, պատրաստվեցին և դուրս եկան նրանց դեմ պատերազմելու։ Պարսից զորքերը պարտություն կրեցին նրանցից և փախուստի դիմեցին։ Վասակը հասնում էր, ջարդում կոտորում էր նրանց, ոչ մեկին կենդանի չէր թողնում. Վսեմականին էլ սպանում էր զորքերի մեջ։ Իսկ սինլքորներին հալածում էին իրենց սահմաններից դուրս։

## Լ

### ՅԱՂԱԳՍ ՎԱՀՐԻՃԱՅ՝ ՈՐ ԶՈՐԵՔՀԱՐԻՒՐ ԲԻՒՐՈՒՆ ԳԱՅՐ ՀԱՍԱՆԷՐ, ՏԱՅՐ ՊԱՏԵՐԱԶՄ ԸՆԴ ԱՐՇԱԿԱՅ ԱՔԱՅԻՆ, ԵՒ ԶԻԱ՛ՐԴ ՄԱՏՆԵՑԱՒ 'Ի ՁԵՌՍ ՎԱՍԱԿԱՅ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՀԱՅՈՑ ԱՄԵՆԱՅՆ ԶՕՐՕՔՆ ՀԱՆԴԵՐՁ

Ապա գայր հասանէր Վահրիճ 'ի Վահրիճայ, և զօրքն Պարսից չորեքհարիւր բիւրուն առաքեալ 'ի Շապհոյ արքայէն 'ի վերայ Հայաստան աշխարհին, աւար առնուլ և կորուսանել զերկիրն զօրացն թագաւորութեանցն Հայոց. և գային հասանէին 'ի տեղին, որ կոչին Մախազեան: Ապա քառասուն հազարաւ ելանէր Վասակ զօրավարն ընդդէմ նոցա. հարկանէր սատակէր զզօրս նոցա, սպանանէր զՎահրիճն, և կոտորէր զզօրսն Պարսից, և ոչ թողոյր 'ի նոցանէ և ոչ մի. և զգուշանայր զսահմանօք երկրին իւրոյ:

## ԼԱ

### ՅԱՂԱԳՍ ԳՈՒՄԱՆԴ ՇԱՊՀՈՅ, ՈՐ ՄԵԾԱՒ ՊԱՐԾԱՆՕՔ ՊԱՐԾԵԱԼ ԱՌԱՋԻ ԱՐՔԱՅԻՆ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՀՈՅ, ԵՒ ԱՌԵԱԼ ԱԾԷՐ 'Ի ՎԵՐԱՅ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ ԻՆՆՀԱՐԻՒՐ ՀԱԶԱՐ ԶՕՐՍ. ԵՒ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՆԿՈՒՆ ԼԻՆԷԻՆ. ԶԱՐԱԶԱՐ ՄԵՐԺԵԱԼ ԼԻՆԷԻՆ ՅԱՇԽԱՐՀԷՆ ՀԱՅՈՑ

Եւ եղև յետ այսորիկ գայր հասանէր Գումանդ Շապուհ, առաքեալ 'ի Շապհոյ արքայէ Պարսից իննհարիւր հազարաւ, պարծեցեալ առաջի թագաւորին: Եւ գնացեալ, գայր հասանէր յաշխարհն Հայոց. և առաջնորդ ունէր 'ի ձեռին զՄերուժանն վատանշան, որ էր յԱրծրունեաց տոհմէն յերկրէն Հայոց: Ապա գայր հասանէր, և զեղծ գտանէր զսահմանապահսն՝ որք պահէին զսահմանս Հայոց: Ապա լցան սփռեցան ծաւալեցան ընդ ամենայն երկիրն Հայոց, աւար առնուլ քանդել աւերել զերկիրն ամենայն Հայոց աշխարհին: Ապա կազմէր պատրաստէր Վասակ զօրավարն Հայոց, հասանէր անկանէր 'ի վերայ արքայագնդին. և նախ զԳումանդ Շապուհն սպանանէր: Եւ ապա ընդ ցիրն ասպատակ սփռեալ հալածէին, զամենայն զօրսն Պարսից կոտորեալ, անմի արարեալ սպառեցին: Բայց միայն չարագործն Մերուժանն միաձի ճողոպրեալ, փախչէր անկանէր յերկիրն Պարսից:

## Լ

### ՎԱՀՐԻՃԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՉՈՐՍ ՀԱՐՈՒՐ ԲՅՈՒՐՈՎ ԳԱԼԻՍ ՀԱՍՆՈՒՄ ԷՐ ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄ ԷՐ ՏԱԼԻՍ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ՀԵՏ, ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՆԱ ԱՄԲՈՂՋ ԶՈՐՔՈՎ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏԻ ՁԵՌՔԸ ՄԱՏՆՎԵՑ

Ապա գալիս հասնում էր Վահրիճի (որդի) Վահրիճը չորս հարյուր բյուր Պարսկական զորքով, որոնց ուղարկել էր Շապուհ թագավորը Հայոց աշխարհի վրա՝ Հայոց թագավորության երկրներն ավար առնելու, զորքերը կոտորելու: Նրանք գալիս հասնում էին Մախազյան կոչված տեղը: Ապա Վասակ զորավարը նրանց դեմ էր դուրս գալիս քառասուն հազարով. զարնում կոտորում էր Պարսից զորքերը, ոչ մեկին (կենդանի) չէր թողնում. սպանում էր նաև Վահրիճին, և զգուշությամբ պահպանում էր երկրի սահմանները:

## ԼԱ

### ԳՈՒՄԱՆԴ ՇԱՊՈՒՀԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՄԵԾ ՊԱՐԾԱՆՔՈՎ ՊԱՐԾԵՑԵԼ ԷՐ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ԱՌԱՋ ԵՎ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՎՐԱ ԵԿԱՎ ԻՆԸ ՀԱՐՅՈՒՐ ՀԱԶԱՐ ԶՈՐՔՈՎ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆ ԿՐԵԼՈՎ ԶԱՐԱԶԱՐ ՀԱԼԱԾՎՈՒՄ ԷՐ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՑ

Սրանից հետո Պարսից Շապուհ թագավորի կողմից ուղարկվում էր Գումանդ Շապուհը ինը հարյուր հազար զորքով, որ պարծեցել էր թագավորի առաջ: Նա գալիս հասնում էր Հայոց աշխարհը, իր ձեռքի տակ առաջնորդ ունենալով փախստական Մերուժանին, որ Հայոց աշխարհից էր, Արծրունյաց տոհմից: Եկավ հասավ, Հայոց սահմանները պահպանող սահմանապահ (գունդը) գտավ անփույթ և անզգույշ. (ուստի) ներս թափվեցին սփռվեցին ամբողջ Հայաստան աշխարհում, ավարում, քանդում, ավերում էին ամբողջ աշխարհը: Ապա Հայոց Վասակ զորավարը կազմակերպվում, պատրաստվում էր, հասնում հարձակվում էր արքայական գնդի վրա և նախ և առաջ Գումանդ Շապուհին էր սպանում: Ապա Հայկական զորքը Պարսից զորքերի վրա ասպատակելով բոլորին կոտորում էին, առանց մի մարդ կենդանի թողնելու: Բայց միայն չարագործ Մերուժանը մի ձիով փախչում ընկնում էր Պարսից աշխարհը:

ԼԲ

ՅԱՂԱԳՍ ԴԵՀԿԱՆ ՆԱՀԱՊԵՏԻ, ՈՐ ԱՌԱՔԵՑԱՒ 'Ի ՇԱՊՀՈՅ ԱՐՔԱՅԷ ՊԱՐՍԻՑ 'Ի ՎԵՐԱՅ ԱՐՇԱԿԱՅ ՀԱՅՈՑ ԱՐՔԱՅԻՆ՝ ԶՕՐՕՔ ԲԱԶՄՕՔ. ԱՊԱ ՀԱՍԱՆԷՐ ՍԱՏԱԿԷՐ ԶՆՈՍԱ ԶՕՐԱՎԱՐՆ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ

Յետ այսր ամենայնի Շապուհ արքայն Պարսից զօրաժողով լինէր, և կուտէր զօրս անչափս և անթիւ և անհամար իբրև զաւազ ծովու, և կուռ վառեալ՝ որք նիզակ 'ի ձեռն առնուին, չորեքհարիւր բիւր զօրս բազումս: Եւ զԴեհկան նահապետն, որ տոհմիկ իսկ էր ազգաւ տոհմին զօրավարացն Հայոց՝ այս ինքն Մամիկոնենից, առաքէր զնա թագաւորն Պարսից Շապուհ յերկիրն Հայոց 'ի վերայ Արշակայ արքային Հայոց:

Գայր հասանէր 'ի սահմանս երկրին Հայոց. ապա և զհայացիսն ոչ ինչ ծուլացեալ 'ի քուն գտանէր այլ կազմ պատրաստք կային նմին գործոյ ճակատուն պատերազմի: Եւ զօրավարն Վասակ ելանէր ընդ առաջ նոցա եւթանասուն հազարաւ. հարկանէր սատակէր զզօրսն ամենայն Պարսից, սպանանէր զիւր զազգայինն զԴեհկան նահապետն, և զմնացեալսն առաջի իւր տանէր փախստական ձիահալածք արարեալք: Բայց Մեհրուժանն Արծրունի փախուցեալ ապրէր, որ առաջնորդէր նոցա:

ԼԳ

ՅԱՂԱԳՍ ՍՈՒՐԵՆԱՅ ՊԱՀԼԱՒԻ. ՈՐ ԵԿՆ ԵՒ ՆԱ ԶՕՐՕՔ ԲԱԶՄՕՔ. ԵՒ ՍԱ ԵՒՍ ՆՄԻՆ ԼԻՆԷՐ ԻԲՐԵՒ ԶԱՌԱՋԻՆՆ

Ապա կրկին լինէր զօրաժողով Շապուհ արքայ Պարսից, կազմէր պատրաստէր զունդս բազումս զօրացն և փիղս անթիւ, զօրս ընտիրս և պատերազմողս. և Սուրէն Պահլաւ, որ ազգակից իսկ էր Արշակայ թագաւորին Հայոց, և Մեհրուժանն առաջնորդ նոցա. և արձակեաց 'ի վերայ նոցա: Ապա քանզի և Վասակ զօրավարն Հայոց խաղաց գնաց ընդ առաջ նոցա երեսուն հազարաւ, հարկանէր 'ի դիմի զՍուրէն և սպանանէր, և զզօրսն կոտորեաց. բայց Մեհրուժան փախչէր:

ԼԴ

ՅԱՂԱԳՍ ԱՊԱԿԱՆ ՎԵՄԱԿԱՆԻ. ԶԻ ԵԿՆ ԵՒ ՆԱ ՅԱՅՍ ՊԱՏԵՐԱԶՄ, ԵՒ ՆՄԱ ԶԱԽՈՂԵՑԱՒ ՈՐՊԷՍ ԱՌԱՋՆՈՑՆ

Իսկ յետ Սուրենայ եկն Վեմական. գայր հասանէր անչափ բազմութեամբ և անթիւ զօրօք, և Մեհրուժան առաջնորդ առաքեալ 'ի Շապ-

## ԼԲ

### ԴԵՀԿԱՆ ՆԱՀԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ ՄԵԾ ԶՈՐՔՈՎ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ՎՐԱ, ԵՎ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ԶՈՐԱՎԱՐԸ ՀԱՍՆՈՒՄ ԿՈՏՈՐՈՒՄ Է ՆՐԱՆՑ

Այս բոլորից հետո Պարսից Շապուհ թագավորը զորք էր ժողովում ու կուտակում անչափ և անհամար բազմությամբ, ինչպես ավազը ծովի ափին, չորս հարյուր բյուր լավ սպառազինված մարդիկ, նիզակ գործածողներ: Եվ Դեհկան նահապետին, որ տոհմով ազգակից էր Հայոց թագավորներին, այսինքն Մամիկոնյաններին, (այս զորքով) ուղարկում էր Հայոց աշխարհը, Հայոց Արշակ թագավորի վրա:

Նա գալիս հասնում էր Հայաստանի սահմանները, բայց ծուլացած կամ քնած չէր գտնում հայերին. Նրանք կազմ և պատրաստ էին պատերազմական գործին: Եվ Վասակ զորավարը նրանց դեմ էր դուրս գալիս յոթանասուն հազարով. ջարդում, կոտորում էր Պարսից բոլոր զորքերը, սպանում էր իր ազգական Դեհկան նահապետին և մնացածներին իրենց առաջը խառնելով՝ ձի հեծած հալածում փախցնում էին: Բայց Մերուժան Արծրունին, որ նրանց առաջնորդում էր՝ փախչելով փրկվում էր:

## ԼԳ

### ՍՈՒՐԵՆ ՊԱՀԼԱՎԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՆՈՒՅՆՊԵՍ ԵԿԱՎ ՄԵԾ ԶՈՐՔՈՎ ԵՎ ԱՌԱՋԻՆՆԵՐԻ ՆՄԱՆ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆ ԿՐԵՑ:

Պարսից Շապուհ թագավորը նորից զորք էր ժողովում, կազմակերպում և պատրաստում էր բազմաթիվ գնդեր և անթիվ փղեր, ընտիր ու պատերազմող մարդիկ, Սուրեն Պահլավի (ձեռքի տակ), որ Հայոց Արշակ թագավորի ազգական էր, և Մերուժանի առաջնորդությամբ արձակում էր նրանց վրա: Ապա Հայոց Վասակ զորավարն էլ վեր կացավ գնաց նրանց դեմ երեսուն հազարով: Սուրենի հետ ընդհարվեց, նրան սպանեց, զորքերը կոտորեց: Բայց պիղծ Մերուժանը փախչում էր:

## ԼԴ

### ԱՊԱԿԱՆ ՎՍԵՄԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՆՈՒՅՆՊԵՍ ԵԿԱՎ ԱՅՍ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻՆ ԵՎ ԱՌԱՋԻՆՆԵՐԻ ՆՄԱՆ ԱՆՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՆԴԻՊԵՑ

Սուրենից հետո եկավ Վսեմականը, որ գալիս հասնում էր անթիվ զորքերի բազմությամբ. Մերուժանն էլ Պարսից Շապուհ թագավորի

նոյ արքայէն Պարսից ՚ի գործ պատերազմի ՚ի վերայ երկրին Հայոց: Ապա առաքեցաւ ընդ առաջ նորա Վասակ սպարապետ զօրավարն Հայոց. հարկանէր սատակէր զԱպականն Վսեմական հանդերձ զօրօքն, և զմին ՚ի նոցանէն ոչ ապրեցուցանէր: Բայց միայն փախչէր չարագործն Մերուժան:

## ԼԵ

### ՅԱՂԱԳՍ ԶՐԿԱՅ ՆՈՒԻՐԱԿԱԳԵՏԻ, ՈՐ ԱՌԱՔԵՑԱՒ ՚Ի ՇԱՊՀՈՅ ԱՐՔԱՅԷՆ ՚Ի ՎԵՐԱՅ ՀԱՅՈՑ ԲԱԶՈՒՄ ԶՕՐՕՔ ՚Ի ՊԱՏԵՐԱԶՄ, ԵՒ ՍԱՏԱԿԵՑԱՒ ԻՒՔԵՒ ԶԱՌԱՋԻՆՍՆ

Յետ այսորիկ Զիկ նուիրակապետն զիւր արձակեաց Շապուհ արքայ Պարսից, մղել զպատերազմ Հայոց. և զՄերուժանն առաջնորդ ընդ նոսա առնէր: Եւ գումարէր գումարտակ բազում իբրև զաւազ ծովու բազմութեամբ. և գային հասանէին յերկիրն Հայոց: Ապա ելանէր ՚ի դիմի հարկանէր նոցա Վասակ զօրավարն Հայոց. Զիկն սպանանէր, և զզօրսն զկէսն կոտորէր, և զկէսն առաջի իւրեանց փախստական առնէին: Այն անգամ ևս ոչ կարէին ՚ի բուռն արկանել զՄերուժանն:

## ԼԶ

### ՅԱՂԱԳՍ ՍՈՒՐԵՆԱՅ ՊԱՐՍԿԻ, ՈՐ ՅԵՏ ԶՐԿԱՅՆ ԵՒՍ ԵԿՆ ՚Ի ՊԱՏԵՐԱԶՄՆ. ԵՒ ՆԱ ՚Ի ԲՈՒՌՆ ԱՆԿԵԱԼ ՎԱՍԱԿԱՅ, ՀԱՆԴԵՐՁ ԻՒՐՈՎՔ ԶՕՐՕՔՆ ՍԱՏԱԿԵՑԱՒ

Եւ եղև յետ մահուն Զրկայ, Սուրէն պարսիկ խաղաց ՚ի թագաւորէն Պարսից Շապհոյ. վաթսուն բիւրու եկն եհաս, տալ պատերազմ ընդ թագաւորին Հայոց Արշակայ. և առաջնորդ ունէր զՄերուժանն: Ապա ժողովեաց զամենայն զօրս նախարարացն Վասակ սպարապետն Հայոց. ելանէր ՚ի գիշերի անկանէր ՚ի ներքս ՚ի ղակիշն ի՝ հետիոտս սուսեր ՚ի ձեռն տասն հազարաւ ընտիր ընտիր արամբք: Առ հասարակ կոտորէին հարկանէին և սատակէին զզօրսն Պարսից. և ձերբակալ առնէին զՍուրէն պարսիկ. և ածէին զնա առ արքայն Արշակ: Ապա հրաման տայր քարակոչկոն առնել զնա: Բայց Մերուժանն ապրէր փախըստեայ:

կողմից առաջնորդ էր նշանակված՝ Հայոց աշխարհի դեմ պատերազմելու համար: Ապա Վասակ Հայոց սպարապետն ուղարկվեց նրանց ընդառաջ: Ջարդում էր Պարսից զորքերը, մի մարդ կենդանի չթողնելով, սպանում էր Ասպական Վսեմականին: Միայն չարագործ Մերուժանը փախչում էր:

## ԼԵ

### ԶԻԿ ՆՎԻՐԱԿԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻՑ ՄԵԾ ԶՈՐՔՈՎ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՀԱՅՈՑ ԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՎ ԱՌԱՋԻՆՆԵՐԻ ՆՄԱՆ ԿՈՏՈՐՎԵՑ

Սրանից հետո Պարսից Շապուհ թագավորը իր Զիկ նվիրակապետին[132] արձակեց Հայաստան պատերազմի, և նրանց առաջնորդ էր նշանակում Մերուժանին: Նրանց ձեռքի տակ գումարում էր մեծ գունդ, ծովի ավազի բազմությամբ: Նրանք գալիս հասնում էին Հայոց աշխարհը: Նրանց դեմ էր դուրս գալիս Հայոց Վասակ զորավարը. Զիկ նվիրակապետին սպանում էր, զորքերի կեսը կոտորում էր, մյուս կեսը առաջ խառնելով փախստի էին մատնում: Բայց այս անգամ էլ չկարողացան ձեռք ձգել չար Մերուժանին:

## ԼԶ

### ՍՈՒՐԵՆ ՊԱՐՍԿԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԶԻԿԻՑ ՀԵՏՈ ՆՈՒՅՆՊԵՍ ԵԿԱՎ ՊԱՏԵՐԱԶՄԵԼՈՒ ԵՎ ՎԱՍԱԿԻ ՁԵՌՔՆ ԱՆՑՆԵԼՈՎ ԶՈՐՔԵՐԻ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ ԿՈՏՈՐՎԵՑ

Զիկի մահից հետո Սուրեն պարսիկը Պարսից Շապուհ թագավորի կողմից եկավ վաթսուն բյուրով Հայոց Արշակ թագավորի հետ պատերազմելու, և առաջնորդ ուներ Մերուժանին: Ապա Հայոց Վասակ սպարապետը ժողովեց նախարարների բոլոր զորքերը և գիշերով հետիոտս հարձակվեց Պարսից ամրացրած բանակի[133] վրա սրերով զինված տասը հազար ընտիր մարդկանցով: Բոլոր Պարսից զորքն անհասարակ կոտորում, ոչնչացնում էին, ձերբակալում էին Սուրեն պարսիկին և բերում էին Արշակ թագավորի մոտ, որ հրամայեց նրան քարկոծելով սպանել. բայց Մերուժանը փախչելով ազատվում էր:

ԼԷ

## ՅԱՂԱԳՍ ՀՐԵՒՇՂՈՒՄԱՅ, ՈՐ ԱՌԱՔԵՑԱՒ ՅԱՐՔԱՅԷՆ ՊԱՐՍԻՑ 'Ի ՎԵՐԱՅ ՀԱՅՈՑ ԻՆՆՍՈՒՆ ԲԻՒՐՈՒ ԵՒ ԱՅՆ ԱՆԳԱՄ ԵՒՍ ՆՇԱՆ ՅԱՂԹՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ԿԱՆԳՆԷՐ

Եւ Հրեւշողումն արձակէր 'ի պատերազմ 'ի վերայ աշխարհին Հայոց: Զի և սա իսկ 'ի նմին յազգէ թագաւորին Հայոց ազգական էր, այլ քանզի Շապհոյ արքայի գայր հասանէր հանդերձ զօրօք բիւրուն բիւրուն, տալ պատերազմ ընդ Հայաստանեայսն: Ապա կարգէր կազմէր պատրաստէր Վասակ զօրավարն Հայոց զամենայն զգունդս զօրացն, և դիմեաց 'ի վերայ նոցա մարտիւ պատերազմաւ: Փախստականս տանէին զնոսա, արկեալ առաջի իւրեանց. և Հրեւշողումն և Մերուժանն փախչէին:

ԼԸ

## ՅԱՂԱԳՍ ԱՂԱՆԱՅՈԶԱՅՆ ՈՐ ՉՈՐԵՔՀԱՐԵՒՐ ԲԻՒՐԱՒ ԳԱՅՐ ՀԱՍԱՆԷՐ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՊԱՐՍԻՑ՝ ՏԱԼ ՊԱՏԵՐԱԶՄ ԸՆԴ ԱՐՔԱՅԻՆ ՀԱՅՈՑ, ԵԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՆԵՂԵԱԼ ՊԱՐՏԵՑԱՒ 'Ի ՁԵՌՆ ՎԱՍԱԿԱՅ

Իսկ Աղանայոզանն, որ Պահլաւն էր 'ի տոհմէն Արշակունեաց, որ նա խրոխտացեալ առաջի Շապհոյ թագաւորին Պարսից, և գնայր գայր հասանէր 'ի սահմանս Հայոց: Ապա այս վաղագոյն ազդ լինէր թագաւորին Հայոց Արշակայ. սոյնպէս և սա զիւր զօրսն կազմէր 'ի ձեռն Վասակայ իւրոյ սպարապետին: Եւ զամենայն նախարարսն Հայոց ընդ նմա գումարեալ, գայր հասանէր ընդ առաջ զօրացն Պարսից. հարկանէր կոտորէր զամենեսեան առ հասարակ. և զմնացեալսն փախստեայս առնէին յերկիրն Պարսից. և բնաւին զզուշանային սահմանացն իւրեանց:

ԼԹ

## ՅԱՂԱԳՍ ԲՈՅԵԿԱՆ ՄԵԾ ՆԱԽԱՐԱՐԻՆ ՊԱՐՍԻՑ, ՈՐ ԵԿՆ ԵՒ ՍԱ ՔԱՌԱՍՈՒՆ ԲԻՒՐԱՒ. ԶՈՐ ՀԱՐԿԱՆԷՐ ՋՆՋԷՐ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ

Յետ այսորիկ Բոյեկան մեծ նախարար Պարսից. և քառասուն բիւր ընդ նմա, գային հասանէին յԱտրպատական. կամէին ասպատակ առնել յերկիրն Հայոց: Ապա զառաջեօք անցանէր Վասակ իւրով Հայաստան գնդաւն, հարկանէր զզօրսն ամենայն Պարսից, և զԲոյեկանն սպանանէր 'ի Թաւրէժն: Եւ այրէր անդ զապարանս թագաւորին Պարսից.

## ԼԷ.

### ՀՐԵՎՇՈՂՈՒՄԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՀԱՅՈՑ ՎՐԱ ԻՆՆՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ, ԵՎ ԱՅՍ ԱՆԳԱՄ ԷԼ ՀԱՂԹՈՒԹՅՈՒՆԸ ՄՆՈՒՄ ԷՐ ՀԱՅԵՐԻՆ

Հրեվշողումն էր գալիս պատերազմի Հայոց աշխարհի վրա: Սա էլ Հայոց թագավորի ազգականն էր, նրա ցեղից լինելով, որ Շապուհ թագավորի հրամանով իննսուն բյուր զորքով գալիս հասնում էր՝ հայերի հետ պատերազմելու: Ապա Հայոց Վասակ զորավարը կազմակերպում պատրաստում էր զորքերի բոլոր գնդերը և պատերազմով դիմում էր նրա վրա: Բոլորին իրենց առաջը խառնելով փախուստի մատնեցին: Հրեվշողումն և Մերուժանն էլ փախչում էին:

## ԼԸ.

### ԱԼԱՆԱՅՈԶԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ ԳԱԼԻՍ ՀԱՍՆՈՒՄ ԷՐ ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ԲՅՈՒՐՈՎ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄԵԼՈՒ, ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՆԵՂՎԵՑ ՈՒ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆ ԿՐԵՑ ՎԱՍԱԿԻՑ.

Իսկ Ալանայոզանը, որ Պահլավ էր, Արշակունիների տոհմից, խռոխտացել էր Պարսից Շապուհ թագավորի առաջ (հայերի դեմ): Նա գալիս հասնում էր Հայաստանի սահմանները: Այս բանը վաղօրոք հայտնի էր դառնում Արշակ թագավորին. սա նույնպես իր զորքը կազմակերպեց իր Վասակ սպարապետի ձեռքով, նրա ձեռքի տակ գումարելով բոլոր հայ նախարարներին: Նա գալիս էր Պարսից զորքի դեմ, բոլորին առհասարակ կոտորում էր, մյուսներին փախցնում էին Պարսից աշխարհը և իրենք զգուշությամբ պահպանում էին իրենց սահմանները:

## ԼԹ.

### ՊԱՐՍԻՑ ԲՈՅԵԿԱՆ ՄԵԾ ՆԱԽԱՐԱՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԵԿԱՎ ՔԱՌԱՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ, ՈՐՈՆՑ ԿՈՏՈՐՈՒՄ ՈՉՆՉԱՑՆՈՒՄ ԷՐ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏԸ

Սրանից հետո Պարսից Բոյեկան մեծ նախարարը քառասուն բյուրով գալիս հասնում էր Ատրպատական, կամենալով Հայոց աշխարհն ասպատակել: Նրա առաջն էր դուրս գալիս Վասակը իր Հայկական գնդով, կոտորում էր Պարսից բոլոր զորքը, Բոյեկանին էլ սպանում էր Թավրեժում: Այնտեղ նա այրում էր Պարսից թագավորի ապա-

գտեալ անդ զպատկեր թագաւորին Պարսից, նետաձիգ եղեալ՝ նետա-ց առնէր: Բայց միայն փախչէր Մերուժանն ընդ նոսա եկեալ:

## Խ

### ՅԱՂԱԳՍ ՎԱՉԱԿԱՆԱՅ, ՈՐ ԵԿՆ 'Ի ՀԱՅՍ ՈՒԹՆԵՒՏԱՍՆ ԲԻՒՐՈՒՆ, ԵՒ ԿԱՄԷՐ ԱՌՆՈՒԼ ԶՀԱՅՍ. ԱՊԱ ԵՒ ԶՆԱ ՎԱՆԵԱՅ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՀԱՅՈՑ ԵՒ ԶԶՕՐՍ ՆՈՐԱ

Վաչականն ումն 'ի նախարարացն Պարսից արշաւէր յերկիրն Հայաստան, հանդերձ ութևտասան բիւրօք: Ապա ժողովէր զօրավարն Հայոց Վասակ զամենայն զզօրսն Հայոց. և թողոյր զթագաւորն Արշակ յամուր տեղին Դարիւնաց, և ինքն զօրավարն Հայոց Վասակ խաղայր անկանէր հանդերձ զօրօքն Հայոց զբանակաւն Վաչականայ: Սպանանէր զՎաչականն, և կոտորէր զբանակսն Պարսից. բայց միայն ապրէր սակաւուք փախուցեալ Մերուժանն, եկեալ առաջնորդ նոցա:

## ԽԱ

### ՅԱՂԱԳՍ ՄՇԿԱՆԱՅ ԵՒ ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՀԻՆԳ ԲԻՒՐՈՒՆ. ՈՐ ԱՐՇԱՎԷՐ ՅԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԿՈՏՈՐԵԱԼ ԵՂԵՒ 'Ի ՎԱՍԱԿԱՅ ԵՒ 'Ի ԶՕՐԱՑ ՀԱՅՈՑ

Եւ Մշկան ումն անուն, մի 'ի նախարարացն Պարսից, և նա եկեալ մղէր ճակատս ընդ թագաւորին Արշակայ: Ապա զօրավարն Հայոց Վասակ ճակատէր զզօրսն Հայոց ընդդէմ նոցա. և դէմ յանդիման մեծաւ բռնութեամբ միմեանց յարձակէին: Եւ յաղթահարէր զզօրսն Պարսից գունդն Հայաստան. սատակէին, և ոչ մի 'ի նոցանէն ոչ ապրեցուցանէր. և յական յանուանէ զՄշկանն սպանանէին, և Մերուժանն փախչէր:

## ԽԲ

### ՅԱՂԱԳՍ ՄԱՐՈՒԺԱՆԱՅ ԵՒ ՎԱԹՍՈՒՆ ԲԻՒՐՈՒՆ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԵԿԵԱԼՔ 'Ի ՎԵՐԱՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԱՐՇԱԿԱՅ, ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՀԱՐԿԱՆԷՐ ՍԱՏԱԿԷՐ ԶՆՈՍԱ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏՆ

Մարին անուն մեծ նախարար գայր մարտնչէր ընդ երկիրն Հայոց: Ապա հանդերձ զօրօքն վաթսուն բիւրուն գայր հասանէր միջամուխ[30] լինէր յերկիրն Հայոց. և առաջնորդ 'ի ձեռին ունէր զՄերուժանն Արծրունի: Ապա և պատահէր պատերազմաւ Վասակ ամենայն զօրօքն

ռանքը և գտնելով թագավորի պատկերը՝ նետաձգությամբ նրան ծակո-
տում էր: Բայց միայն Մերուժանը, որ նրանց հետ եկել էր՝ փախ-
չում էր:

Խ

ՎԱՉԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ ԵԿԱՎ ՏԱՍՆԵՎՈՒԹ ԲՅՈՒՐՈՎ ԵՎ ԿԱՄԵՆՈՒՄ ԷՐ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՆՎԱՃԵԼ, ԵՎ ՀԱՅՈՑ ՍՊԱՐԱՊԵՏԸ ՎԱՆԵՑ ՆՐԱՆ ԵՎ ՆՐԱ ԶՈՐՔԵՐԻՆ

Պարսից նախարարներից մեկը, Վաչական անունով, տասնևութ բյուրով արշավում էր Հայոց աշխարհի վրա: Ապա Հայոց զորավար Վասակը ժողովում էր Հայոց բոլոր զորքերը, Արշակ թագավորին թողնում էր Դարյունքի ամուր բերդում և ինքը, Հայոց Վասակ զորավարը, Հայոց զորքերով հարձակվում էր Վաչականի բանակի վրա: Սպանում էր Վաչականին, կոտորում էր Պարսից բանակը. միայն Մերուժանը, նրանց առաջնորդը, քիչ մարդկանցով փախչում ազատվում էր:

ԽԱ

ՄՇԿԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԵՐԵՍՈՒՆ ԵՎ ՀԻՆԳ ԲՅՈՒՐՈՎ ԱՐՇԱՎԵՑ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆԱ ԿՈՏՈՐՎԵՑ ՎԱՍԱԿԻՑ ԵՎ ՀԱՅՈՑ ԶՈՐՔԻՑ:

Պարսից նախարարներից մեկը, Մշկան անունով, նույնպես գալիս ճակատում էր Արշակ թագավորի դեմ: Ապա Հայոց զորավար Վասակը Հայոց զորքը ճակատեցնում էր նրանց դեմ, և մեծ սաստկությամբ հարձակվում էին միմյանց վրա: Հայկական գունդը հաղթահարում էր Պարսից զորքերին, նրանց կոտորում էին, ոչ մեկին կենդանի չէին թողնում. ճականե ճանձլանե սպանում էին Մշկանին, իսկ Մերուժանը փախչում էր:

ԽԲ

ՄԱՐՈՒԺԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՎԱԹՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ ԵԿԱՎ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ՎՐԱ ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆՐԱՆՑ ԿՈՏՈՐՈՒՄ ՈՉՆՉԱՑՆՈՒՄ ԷՐ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏԸ:

Մի մեծ նախարար, Մարեհան[134] անունով, գալիս էր Հայոց աշխարհի հետ պատերազմելու: Նա վաթսուն բյուրով գալիս միջամուխ էր լինում Հայոց աշխարհը, իր ձեռքի տակ առաջնորդ ունենալով Մերուժան Արծրունուն: Ապա Վասակը Հայոց բոլոր զորքերով պատերազմով

Հայոց. հարկանէր սատակէր զզօրսն Պարսից կոտորէր, և զՄարուժանն սպանանէր: Բայց միայն փախչէր Մերուժան:

ԽԳ

ՅԱՂԱԳՍ ԶԻՆԴԱԿԱՊԵՏԻՆ,. ՈՐ ԻՆՆՍՈՒՆ ԲԻՒՐՈՎ ԵԿՆ 'Ի ՎԵՐԱՅ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԱՊԱ ՀԱՍԱՆԷՐ ՍԱՏԱԿԷՐ 'Ի ՄԵԾ ՀԱՐՈՒԱԾՍ ԶԶՕՐՍՆ ՊԱՐՍԻՑ ՎԱՍԱԿ ԶՕՐԱՎԱՐՆ

Զինդկապետ ոմն, զօրագլուխ զօրացն քաջաւորին Պարսից, հանդերձ իննսուն բիւրուն զայր հասանէր 'ի սահմանս Ատրպատականի: Ապա կանխէր և ելանէր ընդ առաջ նոցա Վասակ զօրավարն Հայոց. անկանէր 'ի գիշերի 'ի վերայ ղակշին պարսկաց, և հանէր ընդ սուր առ հասարակ զամենեսեան, և սպանանէր զգնդկապետն 'ի մէջ բանակին: Բայց միայն նողոպրեալ ապրէր Մերուժանն վատանշան:

ԽԴ

ՅԱՂԱԳՍ ԱՐՔԱՅՈՐԴԻՈՅՆ ՊԱՊԱՅ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԱՅՏՆԻ ԷԻՆ ԴԵՒՔՆ 'Ի ՆՄԱ, ԵՒ ՀԱՆԴԵՐՁ ՆՈՔՕՔ ԳՈՐԾԷՐ ԶԳՂԾՈՒԹԻՒՆ

Պապ որդին Արշակայ ծնաւ 'ի մօրէն Փառանձեմայ սիւնւոյ, որ էր լեալ կին Գնելոյն. զոր եսպան արքայն Արշակ, և առ զկին նորա Փառանձեմ իւր կին, և ծնաւ 'ի նմանէ որդի՝ որ կոչեցաւ Պապ: Եւ եղև իբրև ծնաւ զնա մայրն իւր, քանզի անօրէն մարդ էր և ամենևին յաստուծոյ ոչ երկնչէր, նուիրեաց զնա դիւաց. և բնակեցին դևք բազումք 'ի մանուկն, և վարէին զնա ըստ կամաց իւրեանց: Սնաւ և աճեաց, և գործէր զմեղս. զպոռնկութիւն, զպղծութիւն արուագիտութեան և զանասնագիտութիւն, և զագրալի զարշութիւն. բայց կարի զարուագիտութիւն: Դարձեալ ինքն իգանայր այլոց, և այսպէս մմկեալ թաւալեալ էր:

Եւ երբեմն իբրև զգաց մայր նորա զարուագիտութիւնն, և ոչ կարացեալ համբերել պարսաւանացն վատանուանութեանն, ասէ ցսենեկապան որդւոյն իւրոյ, թէ յորժամ նա խնդրեսցէ 'ի պղծութիւն զարսն՝ ընդ որ սովորն է անկանել, դուք զիս 'ի ներքս կոչեսջիք: Յորժամ պատանեակն Պապ ինքն ընդ անկողին մտեալ՝ խնդրէր զարսն 'ի պղծութիւն, եմուտ մայր նորա և նստաւ զառաջեաւ նորա՝ իւր որդւոյն: Ապա սկսաւ ճչել վայել պատանեակն. և ասէ ցմայր իւր. Յարիցես գնասցես 'ի բաց զի մեռանիմ խոռվիմ կսկծիմ պայքիմ, թէ ոչ յարի-

ընդհարվում էր նրան, շարդում, կոտորում, ոչնչացնում էր Պարսից զորքերը. Մարունանին էլ սպանում էր: Միայն Մերուժանը փախչում էր:

### ԻԳ

### ԶԻՆԻԿԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԻՆՆՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ ԵԿԱՎ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ ՎՐԱ, ԱՊԱ ՎԱՍԱԿ ԶՈՐԱՎԱՐԸ ՀԱՍՆՈՒՄ ԿՈՏՈՐՈՒՄ ԷՐ ՊԱՐՍԻՑ ԶՈՐՔԵՐԸ ՄԵԾ ՀԱՐՎԱԾՈՎ

Մի ոմն զինդիկապետ[135], Պարսից թագավորի զորքերի զորագլուխը, իննսուն բյուրով գալիս հասնում էր Ատրպատականի սահմանները: Հայոց Վասակ զորավարը անապարում դուրս էր գալիս նրանց առաջ. գիշերով հարձակվում էր Պարսից ամրացրած բանակի վրա, բոլորին սրի էր քաշում, զորապետին էլ սպանում էր բանակի մեջ: Միայն վատանշան Մերուժանը հողոպրում, ազատվում էր:

### ԻԴ[136]

### ՊԱՊ ԱՐՔԱՅՈՐԴՈՒ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ԴԵՎԵՐԸ ՀԱՅՏՆԻ ԵՐԵՎՈՒՄ ԷԻՆ ՆՐԱ ՎՐԱ ԵՎ ՆՐԱՆՑ ՀԵՏ ՊՂԾՈՒԹՅՈՒՆ ԷՐ ԳՈՐԾՈՒՄ

Արշակի որդին Պապը ծնվեց սյունի Փառանձեմից, որ Գնելի կինն էր եղել, որին սպանեց Արշակ թագավորը և նրա կնոջը, Փառանձեմին իրեն կին առավ, և նրանից ունեցավ որդի, որ կոչվեց Պապ: Երբ մայրը նրան ծնեց՝ որովհետև անօրեն մարդ էր և աստծուց բոլորովին երկյուղ չուներ՝ նրան դևերին նվիրեց, և բազմաթիվ դևեր մանուկի մեջ բնակեցան ու նրան վարում էին ըստ իրենց կամքի: Նա սնվեց, մեծացավ և մեղքեր էր գործում — պոռնկություն, պիղծ արվագիտություն, անասնագիտություն և զազրելի, զարշելի գործեր, բայց մանավանդ արվագիտություն: Բացի սրանից իրեն էլ իգանում էր ուրիշներին. այսպես թավալված էր (զազրելի գործերի մեջ):

Մի անգամ երբ մայրը իմացավ, թե նա արվագիտությամբ է պարապում՝ չկարողանալով այդ վատանուն խայտառակության համբերել՝ իր որդու սենեկապետին ասաց, թե «երբ նա պղծության համար կպահանջե այն մարդկանց, որոնց հետ պղծությունը կատարում է՝ դուք ինձ ներս կանչեցեք»: Երբ պատանի Պապը անկողին մտնելով պահանջեց այդ մարդկանց պղծության համար՝ մայրը ներս մտավ և որդու առաջ նստեց: Ապա պատանին սկսեց նչել, բղավել և ասաց մորը. «Վեր կաց գնա՛ այստեղից, որովհետև մեռնում խորովվում եմ, կայրիմ կպայթիմ, եթե այստեղից չգնաս»: Իսկ մայրն ասաց. «Ես այստե-

ցես գնացես ՚ի տանէս: Իսկ մայրն ասէ, թէ ոչ գնացեալ ելից ՚ի տա-
նէ աստի: Իսկ նա ճաղ քան զճաղ ճչէր, բազմացուցանէր զվայելն: Իսկ մայրն նայեցեալ տեսանէր աչօք իւրովք օձք սպիտակք, զի պատեալք էին զգահոյիցն ոտամբք, և ճապատէին ՚ի վերայ պատանեկին Պապայ, մինչ դեռ ընկողմանեալ էր նա. կայր ՚ի մահիճսն, վայէր և խընդրէր զպատանեակսն ընդ որ սովորն էր գիտանալ: Իսկ մայրն գիտացեալ յիշեաց զայն, որոց ՚ի ծննդեանն նուիրեաց զորդին իւր. գիտաց թէ նոքա են, որ ՚ի կերպարանս օձիցն ճապատէին զորդւովն իւրով. յարտասուս հարեալ, ասաց. Վա՜յ ինձ, որդեակ իմ. զի քեզ տագնապ էր, և ես ոչ գիտէի: Յարուցեալ գնաց եթող զտեղին, կատարել զպէտս ցանկութեանն: Եւ այսպէս դիւօք վարեալ, յայսպիսի գործս զամենայն աւուրս կենաց իւրոց ըմբռնեալ Պապն որդին Արշակայ, մինչ եհաս ՚ի թագաւորութիւնն, մինչև ՚ի մահ իւր:

## ԽԵ

### ՅԱՂԱԳՍ ՍԱԿՍՏԱՆ ԱՆԴԵՐՁԱՊԵՏԻ, ՈՐ ԱՌԱՔԵՑԱՒ ՚Ի ՇԱՊՀՈՅ ԹԱԳԱՒՈՐԷՆ ՊԱՐՍԻՑ ԶՈՐԵՔՀԱՐԻՒՐ ՀԱԶԱՐԱՒ, ԵՒ ՓԱԽՈՅՑ ԵՒՍ ԶՆԱ ՎԱՍԱԿ ԶՕՐԱՎԱՐՆ ՀԱՅՈՑ

Ապա յետ այսորիկ ժողովեաց թագաւորն Պարսից Շապուհ զզօրս իւր, և հազարս չորեքհարեւր. և Սակստան անդերձապետ զօրագլուխ նոցա: Ապա խաղացին գնացին ՚ի կողմանս Հայոց. եկին ծաւալեցան ճակատեցան ընդ թագաւորութեանն Հայոց Արշակայ: Ապա ՚ի մի վայր եկեալք ամենայն մեծամեծք նախարարացն Հայոց, խորհուրդ խորհէին. քանզի ոչ առնուին յանձն երբէք, թէ թագաւորն Արշակ մտցէ ընդ նոսա ՚ի պատերազմ: Ապա զօրավարն Վասակ, հանդերձ ամենայն մեծամեծօքն և նախարարօքն ամենայն Հայոց մեծաց, հարկանէր սատակէր զամենայն զօրսն Պարսից: Եւ սպանանէր Սակստան անդերձապետըն. բայց միայն ապրէր Մերուժանն Արծրունի փախուցեալ:

## ԽԶ

### ՅԱՂԱԳՍ ՇԱՊՍՏԱՆ ՏԱԿԱՌԱԳԵՏԻՆ, ՈՐ ԵԿՆ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ ԲԻՒՐՈՒՆ ՚Ի ՎԵՐԱՅ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ. ԱՊԱ ԵՒ ԶՆՈՍԱ ՀԱՐԿԱՆԷԻՆ ՍԱՏԱԿԷԻՆ ԶՕՐՔՆ ՀԱՅՈՑ

Շապստան տակառապետն գայր հասանէր հինգ հարիւր բիւրուն ՚ի վերայ աշխարհին Հայոց, և կամէր մտանել յաշխարհն Հայոց: Ապա կազմեալ պատրաստեալ գունդն զօրաց թագաւորին Հայոց, և Վասակ

ղից դուրս չեմ գա, չեմ գնա»: Իսկ նա ավելի և ավելի սաստկացնում էր ճչելն ու վայելը: Իսկ մայրը նայեց ու տեսավ իր աչքերով, որ սպիտակ օձեր պատել էին բազմոցի ոտները և փաթաթվում էին պատանի Պապին, մինչ նա պառկած անկողնում, բղավում էր, պահանջում էր այն պատանիներին, որոնց հետ խառնակվում էր: Մայրը այս տեսնելով՝ հիշեց՝ թե ո՛ւմ էր նվիրել ինքը իր որդուն ծնած ժամանակ: Հասկացավ թե այն (դևերն) են, որ օձերի կերպարանքով փաթաթվում են որդուն: Արտասվելով ասաց. «Վա՜յ ինձ, իմ որդյակ. ես չգիտեի որ դու տանջվում ես»: Վեր կացավ, այնտեղից հեռացավ, որպեսզի (Պապը) ցանկությունը կատարե: Ե՛վ այսպես, դևերից վարվելով՝ այսպիսի գործերի անձնատուր էր եղել Արշակի որդին Պապը իր կյանքի բոլոր ընթացքում, մինչև թագավորության հասնելը, մինչև իր մահը:

## ԽԵ

### ՍԱԿՍՏԱՆ ԱՆԴԵՐՁԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՀԱԶԱՐՈՎ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ, ՈՐԻՆ ՆՈՒՅՆՊԵՍ ՓԱԽՑՐԵՑ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ԶՈՐԱՎԱՐԸ

Սրանից հետո Պարսից Շապուհ թագավորը գումարեց իր զորքերը, չորս հարյուր հազար մարդ և նրանց զորագլուխ նշանակեց Սակստան անդերձապետին[137]: Նրանք շարժվեցին եկան Հայոց կողմերը, ծավալվեցին և պատերազմի բռնվեցին Հայոց Արշակ թագավորի հետ: Ապա Հայոց բոլոր մեծամեծ նախարարները մի տեղ հավաքվելով խորհուրդ արին. նրանք ոչ մի կերպ չէին համաձայնում, որ Արշակ թագավորն էլ իրենց հետ պատերազմի դուրս գա: Այնուհետև Վասակ զորավարը Մեծ Հայքի բոլոր մեծամեծների և նախարարների հետ ջարդում կոտորում էր Պարսից բոլոր զորքերը. սպանում էր նաև Սակստան անդերձապետին, բայց միայն Մերուժան Արծրունին փախչելով ազատվում էր:

## ԽԶ

### ՇԱՊՍՏԱՆ ՏԱԿԱՌԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՀԻՆԳ ՀԱՐՅՈՒՐ ԲՅՈՒՐՈՎ ԵԿԱՎ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՎՐԱ, ՆՐԱՆՑ ԷԼ ԿՈՏՈՐՈՒՄ ԷԻՆ ՀԱՅՈՑ ԶՈՐՔԵՐԸ

Շապստան տակառապետը[138] հինգ հարյուր բյուրով գալիս հասնում էր Հայոց աշխարհի վրա, ուզում էր ներս խուժել Հայոց աշխարհը: Ապա Հայոց թագավորի կազմակերպված ու պատրաստ գունդը և Հայոց

զօրավարն Հայոց, ելանէր 'ի դիմի հարկանէր զօրացն Պարսից: Հարկանէին կոտորէին զզօրսն Պարսից, և սպանանէին զՇապստան տակառապետն պարսկաց: Բայց միայն փախչէր Մերուժանն, ապրեալ լինէր:

## ԽԷ

### ՅԱՂԱԳՍ ՄՈԳԱՑ ՀԱՆԴԻՐՁԱՊԵՏԻՆ՝ ՈՐ ԳԱՅՐ ՀԱՍԱՆԷՐ ՈՒԹՈՒՏԱՍՆ ԲԻՒՐՈՒՆ, ՏԱԼ ՃԱԿԱՏ ԸՆԴ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ. ԵՒ ՍԱ ԿՈՐՍԱՆԷՐ ԻԲՐԵՒ ԶԱՌԱՋԻՆՍՆ

Ապա և Մոգաց անդերձապետն գայր հասանէր ութուտասն բիւրու, տալ ճակատս ընդ թագաւորին Հայոց Արշակայ: Ապա գնային հասանէին 'ի մի վայր ամենայն զօրքն Հայաստան երկրին և Վասակ զօրավարն սպարապետն, որ էր դայեակ թագաւորին Հայոց Արշակայ: Եթէ կարի շատ անապարեալ հասանէին, այնչափ ժամանեցին՝ մինչև 'ի Մաղխազան կարացին հասանել: Եւ անդ ընդ միմեանս զունդն երկոքեան բախէին. 'ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից, փախստական լինէին յերեսաց Վասակայ զօրավարին և ամենայն զօրացն Հայոց: Եւ սպանանէին անդ զՄոգաց անդերձապետն, և զզօրսն անմի արարեալ. բայց միայն Մերուժանն 'ի տաճիկ ձի նստեալ փախչէր:

## ԽԸ

### ՅԱՂԱԳՍ ՀԱՄԲԱՐԱԿԱՊԵՏԻՆ, ՈՐ ԻՆՆՍՈՒՆ ԲԻՒՐՈՒՆ ԵԿԵԱԼ ՄԱՐՏՆՉԷՐ ԸՆԴ ԶՕՐՍ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ. ԵՒ ՍԱՏԱԿԵՑԱՒ 'Ի ՍԱՂԱՄԱՍ 'Ի ԶՕՐԱՑՆ ՀԱՅՈՑ ԵՒ 'Ի ԶՕՐԱՎԱՐԷՆ ՎԱՍԱԿԱՅ

Ապա համբարակապետն թագաւորին Պարսից, և սա գայր հասանէր 'ի գաւառն Կորճէից 'ի Սաղամաս հանդերձ իննսուն բիւրօք: Եւ դակիչ ածեալ յամուր տեղւոջ միոջ, կամէր կռուել ընդ թագաւորին Հայոց ընդ Արշակայ: Ապա գայր զօրավարն Հայոց, հանդերձ տասն հազարաւ զինու ընտիր զօրու. և դարանամուտ լինէր ընդ կողմանս բանակին, և 'ի գիշերին անկանէր 'ի դակիչն: Եւ զամենեսեան ընդ սուր հանէին առ հասարակ, և ոչ մի ոչ ապրեցուցանէին. բայց միայն Մերուժանն արտաքոյ գնդին դիպեալ, փախչէր:

Վասակ զորավարը դուրս էին գալիս Պարսից զորքի դեմ և ընդհարվում էին նրանց հետ. ջարդում կոտորում էին Պարսից զորքերը, սպանում էին նաև Պարսից Շապատան տակառապետին: Բայց միայն Մերուժանը փախչելով ազատվում է:

## ԻԷ

### ՄՈԳԱՑ ՀԱՆԴԵՐՁԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՏԱՍՆԵՎՈՒԹ ԲՅՈՒՐՈՎ ԳԱԼԻՍ ՀԱՍՆՈՒՄ ԷՐ ՊԱՏԵՐԱԶՄԵԼՈՒ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ ՀԵՏ ԵՎ ԿՈՏՈՐԱԾՎՈՒՄ ԷՐ ԱՌԱՋԻՆՆԵՐԻ ՆՄԱՆ

Այնուհետև Մոգաց հանդերձապետն[139] էր գալիս տասնևութ բյուրով՝ Հայոց Արշակ թագավորի դեմ պատերազմելու: Ապա մի տեղ էին գալիս ժողովվում Հայաստան աշխարհի բոլոր զորքերը և Վասակ զորավար-սպարապետը, որ Հայոց Արշակ թագավորի դայակն էր: Որքան էլ շատ անհապարեցին՝ հազիվ Մաղխազանում կարողացան նրանց հասնել: Երբ երկու գնդերն իրար ընդհարվեցին՝ Պարսից զորքերը պարտություն կրեցին և փախուստ տվին Վասակ զորավարի և Հայոց բոլոր զորքերի առջևից: Այնտեղ սպանեցին Մոգաց հանդերձապետին, զորքերը մինչև վերջին մարդը կոտորեցին: Միայն Մերուժանը տանիկ[139] ձի հեծած փախչում էր:

## ԻԸ

### ՀԱՄԲԱՐԱԿԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԻՆՆՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ ԳԱԼՈՎ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ԷՐ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԶՈՐՔԵՐԻ ՀԵՏ ԵՎ ՍԱՂԱՄԱՍՈՒՄ ԿՈՏՈՐՎԵՑ ՀԱՅՈՑ ԶՈՐՔԵՐԻՑ ԵՎ ՎԱՍԱԿ ԶՈՐԱՎԱՐԻՑ

Ապա Պարսից թագավորի համբարակապետը[140] իննսուն բյուրով գալիս հասնում էր Կորճայքի գավառը՝ Սաղամաս, և մի ամուր տեղում դակիչ պատրաստելով կամենում էր կռվել Հայոց Արշակ թագավորի հետ: Ապա գալիս էր Հայոց զորավարը տասն հազար ընտիր զորքով, գարանամուտ էր լինում բանակի մի քանի կողմերում և գիշերով հարձակվում էր դակիչի վրա: Բոլորին անհասարակ սրի էին քաշում, ոչ ոքի կենդանի չէին թողնում: Միայն Մերուժանը գնդիցը դուրս պատահելով՝ փախչում էր:

## ՅԱՂԱԳՍ ՄՈՐԻԿԱՆԱՅ՝ ՈՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԲԻՒՐՈՔ ԵԿՆ ԿՌՈՒԵԼ ԸՆԴ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ, ԵՒ 'Ի ՎԱՍԱԿԷ ԵՒ ԶՕՐԱՑՆ ՀԱՅՈՑ ՍԱՏԱԿԵՑԱՒ

Ապա Մորիկան ոմն մեծ զօրագլուխն Պարսից քառասուն բիւրօք զայր հասանէր 'ի մարտ պատերազմի ընդ Արշակայ արքային Հայոց: Ապա և զօրքն Հայոց խրոխտացեալ հանդերձ իւրեանց զօրավարաւն Վասակաւ, գազանաբար առիւծաբար դէմ ընդդէմ յարձակէին. և անդէն սատակէին զզօրսն պարսից, և սպանանէին զՄորիկանն: Բայց Մերուժանն և այն անգամ փախչէր:



## ՅԱՂԱԳՍ ՔԱԿԵԼՈՅ ԵՒ ՔԱՅՔԱՅԵԼՈՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ՀԱՅՈՑ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԱՊՍՏԱՄԲԵՑԻՆ ԲԱԶՈՒՄՔ 'Ի ՆԱԽԱՐԱՐԱՑՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ԶԵՌՍ ԵՏՈՒՆ 'Ի ՇԱՊՈՒՀ ԱՐՔԱՅՆ ՊԱՐՍԻՑ. ԵՒ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՀԱՊ ՑՐՈՒԵՑԱՆ ԱՅՍՐ ԱՆԴՐ, ԵՒ ՆՈՒԱՂԵԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆ ՀԱՅՈՑ

Զերեսուն և զչորս ամս եառուն պատերազմ երկիրս Հայոց ընդ թագաւորին Պարսից, և յետ այնորիկ ձանձրացան պարտեցան լքան աշխատեցան երկոքին կողմանքն: Եւ սկսան սորսորել գնալ 'ի թանակէն Հայոց թագաւորին. թողին զիւրեանց արքայն Արշակ: Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին: Նախ բդեաշխն Աղձնեաց, և Նոշիրականն[31] բդեաշխն, և Մահկեր տանն, և Նիհորականն և Դասընտրէին և ամենայն նախարարութիւն Աղձնեաց. և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ, և չոգան կացին առաջի արքային պարսկաց Շապհոյ. և պարիսպ ածէին 'ի Հայոց կուսէ՝ որ Զորայն կոչեն, դրունս դնէին. և զատուցին զիւրեանց աշխարհն 'ի Հայոց:

Եւ յետ սորա Գուգարաց[32] բդեաշխն, և յետ սորա Զորայ գաւառին տէրն, և Կողբայ գաւառին տէրն, և ընդ նոսա Գարդմանաձորոյ տէրն: Եւ որք մօտ էին 'ի նոսա կողմն այնր ձեռին, որ շուրջ էին զնոքօք, միաբանեցին ապստամբեցին 'ի թագաւորէն Հայոց Արշակայ. և չոգան գնացին առաջի կացին թագաւորին Պարսից Շապհոյ: Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ, և ամուր գաւառն Տմորեաց, և ամուր աշխարհն Կորդրեաց. ապա և տէր գաւառին Կորդուաց չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից:

## ԽԹ

## ՄՌԻԿԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՔԱՌԱՍՈՒՆ ԲՅՈՒՐՈՎ ԵԿԱՎ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ ՀԵՏ ԿՌՎԵԼՈՒ ԵՎ ԿՈՏՈՐՎԵՑ ՎԱՍԱԿԻՑ ԵՎ ՀԱՅՈՑ ԶՈՐՔԵՐԻՑ

Ապա մի ոմն Մռիկան, Պարսից մեծ զորագլուխ, քառասուն բյուրով գալիս հասնում էր Հայոց Արշակ թագավորի հետ պատերազմելու: Ապա և Հայոց զորքը Վասակ զորավարի հետ խրոխտալով՝ գազանաբար, առյուծաբար հարձակվեցին նրանց վրա, Պարսից զորքերը կոտորեցին և Մռիկանին էլ սպանեցին: Բայց Մերուժանը այս անգամ էլ փախչում էր:

## Ծ

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ՔԱԿՎԵՑ ՈՒ ՔԱՅՔԱՅՎԵՑ ԵՎ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ՆԱԽԱՐԱՐՆԵՐԻՑ ՇԱՏԵՐԸ ԱՊՍՏԱՄԲԵՑԱՆ ՈՒ ԶԵՌՔ ՄԵԿՆԵՑԻՆ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻՆ, ԵՎ ԻՆՉՊԵՍ ՇՈՒՏՈՎ ԱՅՍ ՈՒ ԱՅՆ ԿՈՂՄԸ ՑՐՎԵՑԱՆ ԵՎ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ՆՎԱԶԵՑ

Երեսուն և չորս տարի մեր Հայոց աշխարհը պատերազմ մղեց Պարսից թագավորի դեմ, որից հետո երկու կողմերն էլ ծանրացան, հոգնեցին, պարտություն կրեցին, լքվեցին: Եվ սկսեցին Հայոց թագավորի բանակից քակվել ու հեռանալ, թողին իրենց Արշակ թագավորին, և այս քայքայումն սկսում էին մեծամեծ ավագները: Նախ Աղձնիքի բդեշխը և Նոշիրական բդեշխը և Մահկերտունը և Նիհորականը և Դասաբնտեն[141]. և Աղձնիքը ամբողջ նախարարությունը, նրանց զորքն ու Աղձնիքի տոհմը ապստամբեցան Հայոց Արշակ թագավորից, գնացին Պարսից Շապուհ թագավորի առաջ կանգնեցին, պարիսպ քաշեցին Ձորա կոչված տեղում, դռներ դրին և իրենց աշխարհը Հայաստանից զատեցին:

Սրանից հետո Գուգարքի բդեշխը, իսկ սրանից հետո Ձորա գավառի տերը, Կողբի գավառի տերը, նրանց հետ նաև Գարդմանաձորի տերը և բոլոր նրանք, որ այդ կողմերն էին գտնվում, նրանց մոտ և շուրջն էին՝ միասին ապստամբեցան Արշակ թագավորից և գնացին Պարսից Շապուհ թագավորի առաջ կանգնեցին, Հայոց Արշակ թագավորից ապստամբեցան նաև Արծախի ամուր գավառը, Տմորիքի ամուր գավառը և Կորդրիքի ամուր աշխարհը, հետո նաև Կորդիք գավառի տերը գնաց կանգնեց Պարսից Շապուհ թագավորի առաջ:

Յետ այսորիկ ապստամբեաց 'ի թագաւորէն Հայոց և ձեռին իշխանութեանն տանն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն, յետս եկաց 'ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց. յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից. Եթող զարքայն Հայոց և գնաց Սաղամուտ տէրն Անձաւեայ, և ընդ նմա իշխանն մեծի Ծոփաց. և գնացին առ թագաւորն Յունաց: Միջնաշխարհն մնացեալքն յերկուացան յարքայէն, և ոչ կամէին լսել թագաւորին իւրեանց. ոչ մի ինչ իրս՝ զոր նա կամէր: Եւ զձձեցաւ թագաւորութիւնն մեծապէս:

Եւ Վահան եղբայր Վասակայ սպարապետին, 'ի Մամիկոնեան 'ի տոհմէն, անկաւ 'ի բանս հրապուրանաց նա 'ի Մերուժանայ Արծրունոյ քեռորդւոյ իւրոյ: Եւ սա ապստամբեաց յԱրշակայ յարքայէն Հայոց, և չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից Շապհոյ: Եւ հանեաց զմիտս նորա, և նախ ուրացաւ նա 'ի կենաց իւրոց՝ զոր 'ի Քրիստոսն ունէր, և յանձն առ պաշտել զօրէնս մոգութեանն. այս ինքն երկիր պագանել կրակի և ջրոյ և արեգական, և ուրանալ զօրէնս քրիստոնէութեանն՝ յորում ծնեալն էր: Եւ եղև նա ըստ մտի թագաւորին Պարսից. և մատուցանէր ևս ամբաստան գրգռութիւն զարքայէն Հայոց Արշակայ, և զիւրմէ տանուտեառնէն Վասակայ. և յիշեցուցանէր ևս նմա զմահն Վարդանայ, թէ յաղագս քո մեռաւ: Եւ եղև նա այնուհետև սիրելի Շապհոյ արքային, և ետ նա կին Վահանայ զՈրմիզդուխտ քոյր իւր. և շնորհեաց նմա բարձ և զպատիւ՝ որ նոցուն լեալ էր նախնեաց, և մտերիմ փեսայ արար զնա իւր թագաւորն. և 'ի մէջ զօրաց իւրոց չքեղացոյց զնա, և խոստացաւ նմա կեանս մեծամեծս առնել: Իսկ թիւն Հայոց պակասեաց յայսմ հետէ և յապա:

## ԾԱ

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՄԻԱԲԱՆ ՀԱՄՕՐԷՆ ԱՇԽԱՐՀՕՐԷՆ՝ ՈՐ ՄԻԱՆԳԱՄ ՄՆԱՑԵԱԼՔ ՅԱՇԽԱՐՀԻՆ՝ ԺՈՂՈՎԷԻՆ ԱՌ ՆԵՐՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ԶԲՈՂՈՔ ՀԱՐԿԱՆԷԻՆ ԱՌԱՋԻ ՆՈՐԱ, ԵՒ ԶԵՌՆԹԱՓ ԼԻՆԷԻՆ, ԵՒ ԹՈՂԻՆ 'Ի ԶԵՌԱՑ ԶԻՒՐԵԱՆՑ ԹԱԳԱՒՈՐՆ ԱՐՇԱԿ

Ապա ժողովեցան մարդիկ ամենայն աշխարհին իշխանութեանն թագաւորութեանն Հայոց. և եկին առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, մեծամեծք նախարարք և կուսակալք կողմակալք գաւառատեարք գործակալք և դասապետք շինականաց. 'ի մի վայր եկեալ ժողովեցան, խօսել սկսան ընդ Ներսիսի և ասեն. Դու տէր, քեզէն գիտես, զի այս երեսուն ամ է թագաւորին մերոյ Արշակայ, զի ոչ մի ամ մեզ

Սրանից հետո Հայոց թագավորից ապստամբեցավ Հայոց թագավորական տան սեփական իշխանությունը Ատրպատական աշխարհում. Հայոց թագավորից հեռացավ նաև Կազրից աշխարհը. Հայոց թագավորին թողեց ու հեռացավ Անձիտի տեր Սաղամուտը և նրա հետ Մեծ Ծոփքի իշխանը, նրանք գնացին Հունաց թագավորի մոտ։ Միջնաշխարհում մնացածները երկմտեցին թագավորից և չէին կամենում նրան լսել և ոչ մի բան անել՝ ինչ որ նա կամենում էր։ Եվ (Հայոց) թագավորությունը մեծապես քայքայվեց։

Եվ Վահանը, Մամիկոնյան տոհմից, Վասակ սպարապետի եղբայրը, հրապուրվեց Սերուժան Արծրունու խոսքերից, որ իր քրոջ որդին էր։ Նա էլ ապստամբեցավ Հայոց Արշակ թագավորից և գնաց կանգնեց Պարսից Շապուհ թագավորի առաջ։ Նրա սիրտը գրավեց, ուրացավ իր քրիստոնեական կրոնը և հանձն առավ ծառայել մոգության կրոնին. այսինքն երկրպագել կրակին, ջրին և արեգակին, ուրանալով քրիստոնեական հավատը, որի մեջ ծնվել էր։ Եվ նա հաճելի դարձավ Պարսից թագավորին, և ամբաստանություններով գրգռում էր Հայոց Արշակ թագավորի և իր (տոհմի) տիրոջ՝ Վասակի դեմ. հիշեցնում էր նաև Վարդանի մահը, թե քո պատճառով մեռավ։ Այնուհետև նա սիրելի դարձավ Շապուհ թագավորին, և նա Վահանին կնության տվեց իր Որմիզդուխտ քույրը, շնորհեց նրան այն բարձն ու պատիվը, որ սկզբում (Մամիկոնյանները) ունեին, իր մտերիմ փեսան դարձրեց, իր զորքերի մեջ շքեղացրեց և խոստացավ նրան մեծամեծ կալվածներ։ Իսկ Հայոց թիվը այդ ժամանակից սկսեց պակասել ու պակասել։

## ԾԱ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՇԽԱՐՀՈՒՄ ՄՆԱՑԱԾՆԵՐԸ ԲՈԼՈՐԸ ՄԻԱՍԻՆ ՄԻԱԲԱՆ ԺՈՂՈՎՎՈՒՄ ԷԻՆ ՀԱՅՈՑ ՆԵՐՍԵՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՄՈՏ, ԲՈՂՈՔՈՒՄ ԷԻՆ ԻՐԵՆՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ԴԵՄ ԵՎ ՆՐԱՆՑԻՑ ՁԵՌՔ ԷԻՆ ՔԱՇՈՒՄ, ԹՈՂՆՈՒՄ ԷԻՆ

Ապա Հայոց աշխարհի թագավորության բոլոր մարդիկ ժողովվեցին եկան Հայոց մեծ եպիսկոպոսապետ Ներսեսի մոտ,— մեծամեծներ, նախարարներ, կուսակալներ, կողմնակալներ, գավառատերեր, գործակալներ, գյուղերի համփաներ[142], սրանք բոլորը մի տեղ հավաքվելով սկսեցին խոսել Ներսեսի հետ և ասացին. «Տե՛ր, դու ինքդ գիտես, որ ահա երեսուն տարի է մեր Արշակ թագավորի (ժամանակ), որ մենք ոչ մի տարի պատերազմից հանգիստ չենք ունեցել, շարունակ

հանգիստ ոչ եղև 'ի պատերազմէ. և համակ սրով և սուսերօք և 'ի սլաքս և 'ի տէգս նիզակաց զքրտունս երեսաց մերոց ջնջեցաք: Եւ արդ ոչ կարեմք այսմ զծոյծ[33] ունել, և ոչ այլ կարեմք տալ հակառս. զի լաւ է մեզ՝ թէ ծառայեսցուք մեք թագաւորին Պարսից որպէս ընկերքն մեր արարին, զի թողին զնա և գնացին առ թագաւորն Պարսից. և մեք սոյնպէս առնելոց եմք, զի ոչ այլ ևս կարեմք կռուել: Թէ պէտ իցէ թագաւորին Արշակայ կռուել ընդ Շապհոյ, Վասակաւ և Անդովկաւ աներաւ իւրով տացէ պատերազմ. այլ յայսմիկ Հայոց աշխարհէս և ոչ մի այր ոչ ոք է երթալոց 'ի թիկունս օգնականութեան նորա: Նմա եթէ պէտ իցէ, տացէ պատերազմ, թէ պէտ՝ մի՛. մեր թողեալ զնա՝ մեզ չէ փոյթ:

Իսկ սուրբն Ներսէս խօսէր ընդ նոսա որպէս օրէն էր, եթէ տեսէք և քաջ զմտաւ ածէք, և յիշեցէք զբանն տեառն պատուիրանին միաբանութեամբ որպէս պատուիրեացն ծառայից՝ հնազանդ կալ տերանց իւրեանց: Զի ամենեքեան դուք աւադիկ կայք և վկայէք, մանաւանդ զի ամենեքեան դուք կեցեալ էք յազգէդ արշակունեաց. ոմանք 'ի ձէնջ գաւառատեարք լեալք 'ի նոցանէն, և ոմանք մեծամեծք աշխարհաց, ոմանք աւագ աւագ աւանաց գեղից և գանձուց տեարք լեալ էք, և պէսպէս դաստակերտացն: Զի թէպէտ և առ արարիչն աստուած յանցաւոր իցեն պեղծ ազգն Արշակունեաց, սակայն զձեզ կեցուցեալ զամենեսեան և յաղբոյ թօթափեալ է, զոմն գործով, զոմն պատուով զոմն իշխանութեամբ, զոմն գործակալութեամբ: Զի թէպէտ և առ աստուած մեղաւոր է Արշակ արքայ, և պարտական է տոկոսեաց արարչին իւրոյ՝ առ 'ի տանել նմա վրէժս, սակայն աստուած վասն բազում և անչափ մարդասիրութեան իւրոյ՝ խնայեաց 'ի նա, և վասն նորա 'ի ձեզ:

Եւ դուք աւադիկ կամիք անկանել հեթանոսաց 'ի ծառայութիւն, և կորուսանել զկեանս ձեր յաստուծոյ, և մերժել զբնակ տեարսն ձեր՝ զորս տուեալ է ձեզ յաստուծոյ, և օտար տերանց ծառայել, և նոցին անաստուած կրօնիցն ցանկալ: Բայց լա՞ւ լիցի ձեզ զնոյն սիրել և յանձրն առնուլ, և նմին հաւանել, և մերժել յանձանց ձերոց զարարչապաշտ թագաւորն: Զի թէ բեւր չար իցէ Արշակ, սակայն աստուածապաշտ է. և եթէ մեղաւոր ևս իցէ, սակայն թագաւոր ձեր է. որպէս և դուքդ ասացէք առաջի իմ, թէ այսչափ ամք են՝ զի մարտեայք ևս 'ի վերայ անձանց ձերոց և հոգւոց, 'ի վերայ աշխարհի, 'ի վերայ կանանց և որդւոց ձերոց: Եւ որ մեծն է քան զամենայն, 'ի վերայ եկեղեցեաց ձերոց, 'ի վերայ ուխտի հաւատոց ձերոց, զոր ունիմք 'ի տէր մեր Յիսուս Քրիստոս. և համակ տէր ետ ձեզ յաղթութիւն անուան իւրոյ: Եւ արդ կամիք փոխանակ Քրիստոսի արարչին ձերոյ՝ ծառայել ձեզ անաստուածն մոգութեան անօրինացն և նոցուն պաշտօնէիցն. 'ի թողուլ

մեր երեսների քրտինքը սրբել ենք սրերով, սլաքներով, նիզակների տեգերով: Մենք այլևս չենք կարող դիմանալ, ոչ էլ դուրս գալ պատերազմի. ավելի լավ է որ մենք էլ հպատակվենք Պարսից թագավորին, ինչպես արին մեր ընկերները, որոնք նրան թողին ու գնացին Պարսից թագավորի մոտ. մենք էլ նրանց պես պիտի անենք, որովհետև այլևս չենք կարող կռվել: Եթե Արշակ թագավորը կամք ունի Շապուհի հետ կռվելու՝ թող Վասակի և իր աների Անդոկի միջոցով պատերազմի, այլ այս Հայոց աշխարհից ոչ ոք, ոչ մի մարդ նրան չի գնա օգնության: Նա ուզում է՝ թող պատերազմի, չէ ուզում՝ չպատերազմի, մեր պետքը չէ, մենք նրան թողել ենք»:

Իսկ սուրբն Ներսես խոսում էր նրանց հետ ինչպես հարկն էր. «Լավ մտածեցեք, ասում էր նա, հիշեցե՛ք տիրոջ պատվիրանը միաբանության մասին, որ ծառաները հնազանդ լինեն իրենց տերերին: Դուք ահա բոլորդ կաք ու վկա եք, որ բոլորդ Արշակունյաց ազգից եք ձեռք բերել ձեր դիրքը. ձեզանից ոմանք նրանից են նշանակվել գավառների տերեր, ոմանք աշխարհների մեծամեծներ, ոմանք խոշոր ավանների և գյուղերի, ոմանք գանձերի և զանազան դաստակերտների: Որովհետև Արշակունյաց պիղծ ազգը թեպետ և հանցավոր է արարիչ աստծու առաջ, բայց ձեզ բոլորիդ աղբից բարձրացրել և ապրեցրել է, մեկին գործ տալով, մյուսին պատիվ, մեկին իշխանություն, մյուսին գործակալություն: Որովհետև թեպետ Արշակ թագավորը մեղավոր է, աստծու առաջ և իր արարչին պարտական է տոկոսը հատուցանել[143], վրեժը կրել, բայց աստված իր մեծ և անչափ մարդասիրությամբ խնայեց նրան և նրա պատճառով ձեզ:

Իսկ դուք ահա կամենում եք հեթանոսների ծառայության տակ ընկնել, կորցնել ձեր կյանքն աստծով, մերժել ձեր բնիկ տերերին, որոնք տրված են ձեզ աստծուց, ծառայել օտար տերերի և նրանց անաստված կրոնին ցանկալ: Աստված չանե[144], որ դուք այդ (կրոնը) սիրեք, հավանեք ու հանձն առնեք, հեռանալով ձեր աստվածապաշտ թագավորից: Որովհետև Արշակը թեկուզ բյուր անգամ էլ չար լինի՝ սակայն աստվածապաշտ է, որքան էլ մեղավոր լինի՝ սակայն ձեր թագավորն է: Դուք ինքներդ իմ առաջ ասացիք, թե այսքան տարի է, որ կռվում եք ձեր անձերի և հոգիների համար, աշխարհի համար, ձեր կանանց և որդոց համար, և որ ամենից գլխավորն է՝ ձեր եկեղեցիների, ձեր հավատի ուխտի համար, որ ունիք Հիսուս Քրիստոսի անունով, և տերը միշտ ձեզ է շնորհել հաղթություն իր անվան համար: Հիմա դուք փոխանակ ձեր արարիչ Քրիստոսին՝ ուզում եք ծառայել անօրենների անաստված մոգական կրոնին և նրա պաշտոնյաներին, թողնելով մեր

նախ զարարիչն մեր և զնորուն պատուիրանն՝ զոր պատուիրեաց ձեզ.
միամիտ կալ առ տեարսն մարմնաւորս՝ զորս նորայն արարեալ է. զու-
գէ բարկացեալ տէր աստուած ձեր, և խլիցէ զձեզ արմատաքի, և մատ-
նեսցէ զձեզ հեթանոսացն 'ի չար ծառայութիւն սարկութեանն մինչև
յաւիտեան, և. ոչ երբէք բարձցի լուծն ծառայութեանն 'ի ձէնջ: Եւ բողոքէք
դուք առ տէր, և նա ոչ լսիցէ ձեզ. վասն զի անձամբ անկանիք դուք
'ի ծառայութիւն հեթանոս տերանց և անաստուած անգէտ մարդկան,
'ի ձեռս հեթանոս արանց տերանց խստասրտաց. և բազում չարի դի-
պեալ եղանիցէ առաջի ձեր, և ոչ կարիցէք նողոպրել յայնմանէ:

Իսկ նոքա, որ միանգամ էին 'ի մի վայր ժողովեալ. զաղաղակ հար-
կանէին. քարոզ կարդացեալ՝ միմեանց ձայն տանէին, շփոթէին ամ-
բոխէին և ասէին. Հա՛պա գնասցուք, ասեն, սփռեսցուք յիւրաքան-
չիւր տեղիս. զի այդմ բանից մեք ինչ ոչ կամիմք լսել: Սփռեցան յիւ-
րաքանչիւր տունս իւրեանց:

ԾԲ

ՅԱՂԱԳՍ ՇԱՊՀՈՅ ԱՐՔԱՅԻ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՅԱՅՆՄ ԺԱՄԱՆԱԿԻ ԼՈՒՑԱՆՑ ԶՊԱՏԵՐԱԶՄ ՏԱԼ ԸՆԴ ԱՐՇԱԿԱՅ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ, ԵՒ ՄԵՂՄԵԿԱՆՕՔ ԱՌ ԻՆՔՆ ԿՈՉԷՐ 'Ի ՀԱՇՏՈՒԹԻՒՆ

Ապա Շապուհ արքայ Պարսից մեծաւ աղաչանօք և պատարագօք
հրովարտակօք և սիրով զԱրշակ առ ինքն կոչէր, զի յայնմ հետէ արաս-
ցեն 'ի մէջ իւրեանց սէր և խաղաղութիւն և բարեկամութիւն մեծ: Իսկ
Արշակ արքայ թէպէտ պատերազմ կամէր տալ, այլ ոչ կամէին յանձն
առնուլ այսմիկ ամենայն զօրքն աշխարհին Հայոց: Ապա թէ կամաւ
կամաւ՝ թէ ոչ կամաւ. սակայն եղ սիրտ՝ խոնարհութեամբ հրովարտա-
կս առ Շապուհ արքայ Պարսից, որպէս վայելէ ծառայի առ տէր իւր,
տալ: Եւ առաքէր յիւրմէ նմա պատարագս հաշտութեան:

ԾԳ

ՅԱՂԱԳՍ ԿՈՉԵԼՈՅՆ ԿՐԿԻՆ ԱՆԳԱՄ ՇԱՊՈՒՀ ԱՐՔԱՅԻ ԶԱՐՇԱԿ ԱՐՔԱՅ ՀԱՅՈՑ. ԵՒ ՆՈՐԱ ԵՐԹԱԼՈՅՆ. ԵՒ ՄԻԱՀԱՂՈՅՆ ԿՈՐՆՉԵԼՈՅՆ ՆՈՐԱ

Ապա յետ այսորիկ դարձեալ առաքեաց առ Արշակ արքայ Հայոց
Շապուհ արքայ Պարսից. և ասէ. Իսկ եթէ հան եմք ես և դու ընդ մի-
մեանս, եկ տեսցուք զմիմեանս. և յայսմ հետէ իբրև զհայր և զորդի լի-

արարչին ու նրա պատվիրանը, թե պետք է հավատարիմ մնալ մարմնավոր տերերին, որոնց նա է նշանակել: Թույլ տեր աստված էլ ձեզ վրա բարկանա, ձեզ արմատախիլ անե, ձեզ մատնի հեթանոսների ձեռքը՝ հավիտյան սարկաբար նրանց ծառայելու, և ծառայության լուծը երբեք ձեր վրայից չվերանա: Եվ երբ դուք բողոքով դիմեք տիրոջը՝ նա ձեզ չի լսի, որովհետև դուք ինքներդ եք մտնում հեթանոս տերերի և անաստված օտար մարդկանց ծառայության տակ. (հանձնվում եք) հեթանոս մարդկանց և խստասիրտ տերերի. շատ և շատ չարիքներ դուրս կգան ձեր առաջ, որոնցից չեք կարողանա նողոպրել»:

Իսկ նրանք, որոնք միատեղ հավաքված էին՝ աղաղակ բարձրացրին, իրար ձայն էին տալիս, շփոթություն և աղմուկ հարուցանելով. «Վեր կենանք, գնանք, ասում էին, նրանք. քաշվենք գնանք մեր տեղերը. այդ խոսքերը չենք կամենում բնդունել»: Սփռվեցին գնացին ամեն մեկը իր տունը:

ԾԲ

ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՅԴ ԺԱՄԱՆԱԿ ԴԱԴԱՐԵՑՐԵՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ԴԵՄ ԵՎ ՆԵՆԳՈՒԹՅԱՄԲ ԻՐ ՄՈՏ ԷՐ ԿԱՆՉՈՒՄ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Այս Պարսից Շապուհ թագավորը մեծ աղաչանքներով, ընծաներով և հրովարտակներով՝ Արշակ թագավորին սիրով իր մոտն էր կանչում, որ այնուհետև իրար մեջ սեր և խաղաղություն և մեծ բարեկամություն հաստատեն: Իսկ Արշակ թագավորը բեպետ և ուզում էր պատերազմ տալ. բայց Հայոց աշխարհի բոլոր զորքը այս բանին չէր համաձայնում: Ուստի նա կամա ակամա սիրտ արավ՝ խոնարհությամբ հրովարտակ ուղարկել Պարսից Շապուհ թագավորին՝ ինչպես հպատակն իր տիրոջը: Իր կողմից էլ նրան հաշտության ընծաներ էր ուղարկում:

ԾԳ

ԹԵ ԻՆՉՊԵՍ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԸ ԿՐԿԻՆ ԱՆԳԱՄ ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԿԱՆՉԵՑ ԵՎ ԻՆՉՊԵՍ ՆԱ ԳՆԱՑ ՈՒ ՄԻԱՆԳԱՄԱՅՆ ԿՈՐԱՎ

Սրանից հետո Պարսից Շապուհ թագավորը դարձյալ (պատգամ) ուղարկեց Հայոց Արշակ թագավորին և ասաց. «Եթե ես և դու իրար հետ հաշտ ենք՝ ապա եկ, միմյանց հետ տեսություն անենք և այնուհետև

ցուք ընդ միմեանս։ Ապա թէ ոչ տեսանես դու զիս, խնդրես պատերազմ 'ի մէջ իմ և 'ի մէջ քո։ Իսկ Արշակ խնդրէր հաւատարիմ երդումն ուխտիւ 'ի նմանէն, զի յայսմ հետէ անկասկած երթիցէ առ նա։ Եւ նա ետ բերել՝ ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ, և յղեաց։ Զի թէ իցէ և զայն երդման ևս զհետ ոչ եկեսցէ, ապա կազմ լիցի տալ ճակատս պատերազմի 'ի մէջ իւրեանց։

Իսկ զայն ևս յորժամ տեսին և լուան ամենայն մարդիկն երկրին Հայոց, ստիպեցին բռնաբօսեցին[34] զիւրեանց թագաւորն զԱրշակ և շտապեցին, զի յարիցէ գնասցէ երթիցէ յանդիման լիցի թագաւորին Պարսից Շապհոյ։ Յայնմ հետէ, թէ կամաւ կամաւ՝ և թէ ոչ կամաւ, յարեաւ թագաւորն Հայոց Արշակ, առ ընդ իւր զզօրավարն սպարապետն Հայոց զդայեակն իւր, խաղաց գնաց յերկրէն Հայոց յերկիրն Պարսից առ Շապուհ արքայ Պարսից. չոգաւ յանդիման եղև թագաւորին Պարսից Շապհոյ։ Իբրև տեսին զնոսա, արկին զերկոսեանն զարքայն Արշակ և զսպարապետն Վասակ, և պահէին զնոսա արձակ 'ի մէջ ազատագունդ փուշտիպան զօրացն։ Եւ կոչեաց արքայ Շապուհ զարքայ Արշակ, և իբրև զծառայ իւր պատուհասեաց զնա. և նա յանցաւոր և մահապարտ զանձն իւր առ նա համարեցաւ։ Դարձեալ անգրէն 'ի նոյն գունդ փուշտիպանաց ետուն զԱրշակ արքայ 'ի պահեստ։

ԾԴ

ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԶԴԻՒԹՍՆ ԵՒ ԶՔԱՒԴԵԱՅՍՆ ՀԱՐՑԵԱԼ ՇԱՊՀՈՅ՝ ՓՈՐՁԵՐ ԶՄԻՏՍ ԱՐՇԱԿԱՅ, ԵՒ ՏԱՅՐ ԶՆԱ ՅԱՆՈՒՇ ԲԵՐԴՆ, ԵՒ ԿԱՄ ԶՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՀԱՅՈՑ ԶԱՐՄԱՀ ՀՐԱՄԱՅԷՐ ԱՌՆԵԼ

Ապա կոչեաց թագաւորն Պարսից Շապուհ զդիւթսն և զաստեղագէտսն և զքաւդեայսն. խօսէր ընդ նոսա և ասէր՝ եթէ ես բազում անգամ կամեցայ սիրել զԱրշակ արքայ Հայոց, և նա համակ անարգեաց զիս։ Եւ եդի ընդ նմա ուխտ խաղաղութեան, և երդուաւ ինձ յիւրեանց օրէնս քրիստոնէութեանն 'ի գլխաւորութիւն այնմ, զոր աւետարանն կոչեն. նախ այն երդմանն ստեաց։ Ես նմա բեւր բարիս խորհեցայ որպէս հայր որդւոյ կատարել նմա, և նա ինձ չար ընդ բարւոյ հատոյց։ Իսկ ես կոչեցի զերիցունս եկեղեցոյն Տիսփոնի քաղաքի, և կարծեցի թէ նոքա նենգութեամբ ինչ ետուն նմա զերդումն և ետուն ինձ ստել։ Եւ պատուհասեալ զնոսա որպէս զմահապարտս. իսկ ասաց ցիս Մարի երէց զըլխաւորն նոցա. ասէին՝ թե մեք արդարութեամբ տուաք նմա զերդումն.

իբրև հայր և որդի լինենք միմյանց, իսկ եթե չես գա՝ ուրեմն պատերազմ ես ուզում մեր երկուսիս մեջ»: Արշակը նրանից խնդրեց ուխտի հավատարիմ երդում, որ անկասկած լինելով գնա: (Շապուհը) Պարսից թագավորության հավատարիմ երդման օրինակով՝ բերել տվեց աղ, կնքեց վարազագիր մատանիով[145] և ուղարկեց (Արշակին, ասելով), որ եթե այդ երդումից հետո էլ չգա, ապա թող պատրաստվի պատերազմի:

Երբ Հայոց աշխարհի բոլոր մարդիկ այս տեսան ու լսեցին՝ ապա ստիպեցին, բռնադատեցին, շտապեցրին իրենց Արշակ թագավորին, որ վեր կենա, գնա, ներկայանա Պարսից Շապուհ թագավորին: Այնուհետև Հայոց Արշակ թագավորը կամա ակամա վեր կացավ, վերցրեց իր հետ Հայոց զորավար սպարապետ (Վասակին) իր դայակին. ճանապարհ ընկավ Հայոց աշխարհից Պարսից աշխարհը, Պարսից Շապուհ թագավորի մոտ. գնաց ներկայացավ Պարսից Շապուհ թագավորին: Երբ նրանց տեսան՝ երկուսին էլ[146] Արշակ թագավորին և Վասակ սպարապետին արձակ պահում էին ազնվական թիկնապահ զորքերի մեջ: Եվ Շապուհ թագավորը կանչեց Արշակ թագավորին և խիստ նախատեց նրան իբրև իր ծառայի, իսկ նա նրա առաջ իրեն հանցավոր և մահապարտ ճանաչեց: Դրանից հետո նրան դարձյալ թիկնապահների գնդին հանձնեցին, որ պահեն:

## ԾԴ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ՇԱՊՈՒՀԸ ՎՀՈՒԿՆԵՐԻՆ ԵՎ ՔԱՎԴԵԱՆԵՐԻՆ ՀԱՐՑՆԵԼՈՎ՝ ՓՈՐՁՈՒՄ ԷՐ ԱՐՇԱԿԻ ԴԻՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՈՒՂԱՐԿՈՒՄ ԱՆՀՈՒՇ ԲԵՐԴԸ, ԿԱՄ ԻՆՉՊԵՍ ՀՐԱՄԱՅՈՒՄ ԷՐ ՉԱՐԱՉԱՐ ՄԱՀՈՎ ՍՊԱՆԵԼ ՀԱՅՈՑ ՎԱՍԱԿ ՍՊԱՐԱՊԵՏԻՆ

Ապա Պարսից Շապուհ թագավորը կանչում էր վհուկներին, աստղահմաններին և քավդեաներին[147], նրանց հետ խոսում էր ու ասում. «Ես շատ անգամ կամեցա սիրել Հայոց Արշակ թագավորին, բայց նա ինձ միշտ անարգեց: Ես նրա հետ խաղաղության դաշն կապեցի, և նա երդվեց քրիստոնեական կրոնի գլխավոր (սրբության) վրա, որին ավետարան են ասում. նա այն երդումը ստեց: Ես բյուր բարիքներ կամեցա նրան անել՝ ինչպես հայրը որդու, իսկ նա բարիքի դեմ չարիք ինձ հատուցեց: Ես Տիզբոն քաղաքի եկեղեցու երեցներին կանչեցի, կարծելով, թե նրանք նենգությամբ նրան երդվեցրին և ստել տվին: Երբ ես նրանց նախատում էի ինչպես մահապարտներին՝ ինձ ասաց նրանց գլխավորը, Մարի երեցը. «Մենք նրան արդարությամբ երդվեցրինք, իսկ եթե նա իր երդումը ստեց՝ ապա նույն ավետարանը նրան էլի ձեր ոտքը կբերե»: Ես նրան չլսեցի, և հրամայեցի նրանց—յոթանասուն մարդու

քայց եթէ նա ստեաց, նոյն աւետարանն ածէ զնա առ ոտս ձեր։ Եւ ես նոցա ոչ լուայ. և ետու հրաման՝ եւթանասուն զնոսա ՚ի մի գուբ փորոտել, և զուսումնակիցս նոցա հանել ընդ սուր։ Զաւետարանն՝ յոր երդուաւ Արշակ արքայ, որ է գլխաւորութիւն ուսմանց նոցա քրիստոնէութեանն, կապեցի շղթայիւք. և կայ ՚ի գանձի իմում։ Բայց բանքն Մարեայ երիցոյ ուշ եղեն ինձ. և յիշեցի զի ասէր՝ թէ մի՛ սպանաներ զմեզ, այլ ես գիտեմ՝ զի նոյն աւետարանն ածէ զԱրշակ արքայ ՚ի ծունկս քո։ Ահաւասիկ բանք արդարութեամբ կատարեցան, զոր ասէրն։ Բայց Արշակ արքայ Հայոց այս երեսուն ամ է Արեաց՝ զի ետուն ընդ նմա ճակատս, և յաղթել և ոչ մի ամ ոչ կարացաք. և ելեալ է եկեալ ոտիւք իւրովք։ Բայց թէ գիտէի՝ թէ յայսմ հետէ կայցէ յուխտին իմում և ՚ի՛ հնազանդութեան բարեաւ ուխտի, մեծապէս մեծարանօք արձակէի զնա խաղաղութեամբ յիւր աշխարհն։

Իսկ քաղդեայքն ետուն նմա պատասխանի և ասեն. Թող մեզ այսօր, և վաղիւն պատասխանի արասցուք քեզ։ Իսկ ՚ի վաղիւ անդր ժողովեցան եկին ամենայն քաղդեայքն և աստեղագէտքն, և ասեն ցարքայն. Այժմ զի եկեալ է առ քեզ թագաւորն Հայոց Արշակ, զիա՞րդ խօսի ընդ քեզ. կամ զի՞նչ ձայն ածէ, կամ զիա՞րդ ունի զանձն։ Ասէ արքայն. Իբրև զմի ՚ի ծառայից իմոց համարի զինքն. հող ոտից իմոց չանայ լինել։ Ասեն նոքա. Առ արա զոր ասեմք քեզ. պահեա դու զնոսա աստէն, և առաքեա դու դեսպանս յերկիրն Հայոց, և տուր բերել անտի հող ՚ի սահմանացն Հայոց իբրև բեռինս երկուս, և կահոյր մի ջուր։ Եւ հրաման տացես հարկանել զկէս խորանի յատակ ՚ի բերեալ հողոյն Հայոց. և տացես քեզէն զձեռանէ արքային Հայոց Արշակայ, և տարցես նախ յայն տեղ՝ որ բնակ իսկ իցէ հողն, և հարցցես զնա բանս։ Եւ դարձեալ տացես դու զձեռանէ նորա, և տարցես ՚ի հայատակսն ՚ի հարեալ հողոյն. և լուիցես դու բանս ՚ի նմանէ, և ապա գիտասցես դու՝ եթէ կա՞յ յուխտի քո և պահէ՞ զդաշինս քո թէ ոչ, յետ արձակելոյ քո զնա ՚ի Հայս։ Ապա թէ ՚ի վերայ հայ հողոյն խիստ ինչ բարբառեսցի, գիտասջիր՝ զի որ օր հասանէ յերկիրն Հայոց, զնոյն ձայն ածէ ընդ քեզ, և զնոյն պատերազմ նորոգէ ընդ քեզ. զնոյն ճակատս և զնոյն թշնամութիւն յուզէ։

Ապա թագաւորն Պարսից, քանզի զայս լուեալ ՚ի քաղդէիցն, տաճիկ ուղտուք արձակէ ՚ի Հայս արս զհողոյ և զջրոյ, զի եկեսցեն բարձցեն նմա զհմայսն։ Եւ ընդ սակաւ աւուրս եկին բերին զայն ինչ, զորմէ յղեացն։ Ապա հրաման տայր թագաւորն Շապուհ, զկէս յատակին իւրոյ խորանին հարկանել ՚ի բերեալ հողոյն Հայոց. և զջուրն ցանել ՚ի վերայ նորա. և զկէսն ՚ի նոյն հողն զիւրոյ բնակութեան երկրին թողուլ։ Եւ

շլինքները կարել մի գրքի մեջ, իսկ նրանց համատակիցներին հրամայեցի որի քաշել: Այն ավետարանը, որի վրա Արշակ թագավորը երդվեց, որ և նրանց քրիստոնեական կրոնի գլխավոր (գիրքն) է՝ շղթաներով կապեցի և այսպես մնում է իմ գանձարանում: Բայց իմ միտքս եկան Մարի երեցի խոսքերը. հիշեցի որ նա ասում էր. «Մեզ մի՛ սպանիր. ես գիտեմ որ նույն ավետարանը Արշակ թագավորին կբերե, քո առաջ ծունկ կչոքեցնե»: Անա նրա ասած խոսքերն հիրավի կատարվեցին: Որովհետև Հայոց Արշակ թագավորը անա երեսուն տարի է որ Արյաց հետ պատերազմ է մղում, և ոչ մի տարի մենք չկարողացանք հաղթել, իսկ այժմ ինքն իր ոտով ելել եկել է ինձ մոտ: Բայց եթե գիտենայի, թե այսուհետև նա ինձ հետ դաշնը կպահե, հնազանդության անկեղծ ուխտով, ապա շատ մեծարանքներով նրան խաղաղությամբ կարձակեի, որ գնա իր աշխարհը»:

Քավդյաները նրան պատասխան տվին և ասացին. «Այսօր մեզ ժամանակ տուր, վաղը քեզ կպատասխանենք»: Հաջորդ օրը բոլոր քավդյաներն ու աստղահմաները ժողովվեցին եկան և ասացին թագավորին. «Հիմա որ Հայոց Արշակ թագավորը եկել է քեզ մոտ, ի՞նչպես է քեզ հետ խոսում, ի՞նչ լեզու է բանեցնում կամ ի՞նչպես է իրեն պահում»: Թագավորն ասաց. «Նա իրեն համարում է ինչպես մեկը իմ ծառաներից. ուզում է իմ ոտքի հողը դառնալ»: Նրանք ասացին թագավորին. «Ա՛ռ արա՛ ինչ որ քեզ ասում ենք. նրանց այստեղ պահիր, մարդ ուղարկիր Հայոց աշխարհը, բերել տուր այնտեղից, Հայաստանի սահմաններից մոտ երկու բեռ հող և մի ամանով ջուր: Հետո հրամայիր, որ քո խորանի հատակի կեսի վրա շաղ տան Հայաստանից բերած հողը, ապա դու ինքդ Հայոց Արշակ թագավորի ձեռքից բռնած նախ տա՛ր խորանի այն տեղը, ուրտեղ բնական գետինն է, և նրան հարցմունքներ արա: Հետո նրա ձեռքերը բռնած հայկական հող շաղ տված տեղը տար և լսի՛ր թե ի՛նչ կխոսի, և այն ժամանակ կգիտենաս, թե երբ նրան արձակելու լինիս Հայաստան, քո ուխտն ու դաշինքը կպահե՞ թե ոչ: Որովհետև եթե հայկական հողի վրա խիստ լեզվով խոսի՝ իմացի՛ր, որ Հայոց աշխարհը հասնելուն պես հենց նույն օրը նույն լեզուն կբանեցնե, նույն պատերազմը կնորոգե քեզ հետ, նույն ճակատամարտերը, նույն թշնամությունը կշարունակե»:

Պարսից թագավորը քավդյացիներից այս լսելով՝ մարդիկ ուղարկեց Հայաստան տանիկ ուղտերով հողի և ջրի, որ գնան այդ հմայության նյութերը բերեն: Քիչ օրերից հետո եկան ու բերին ինչի համար որ ուղարկված էին: Ապա Շապուհ թագավորը հրաման էր տալիս՝ իր խորանի հատակի կեսի վրա շաղ տալ Հայաստանից բերած հողը և

եա ածել զԱրշակ արքայ Հայոց զառաջև իւրով, և զայլ մարդիկն 'ի բաց հրամայեաց կացուցանել. և զծեռանէ առեալ` շրջէր ճեմելով: Եւ երթեալ առեալ ընդ խորանն. ասէ ցնա յորժամ 'ի պարսիկ 'ի հողոյն 'ի վերայ ճեմէին` թէ ընդէ՞ր եղեր իմ թշնամի Արշակ արքայ Հայոց. զի ես որպէս զորդի սիրեցի զքեզ, և կամեցայ տալ քեզ զդուստր իմ 'ի կնութիւն, և որդի ինձ առնել զքեզ. իսկ դու խստացար ընդ իս, և քովք կամօք` առանց իմոց կամաց` եղեր ընդ իս թշնամի. և այս լի երեսուն ամ է, զի պատերազմեցար ընդ իս:

Ասէ Արշակ արքայ, թէ մեղայ քեզ և յանցեայ. զի ես եկի և կոտորեցի, և յաղթեցի թշնամեաց քոց. և ակն ունէի 'ի քէն պարգև կենաց, և թշնամիք իմ հրապուրեցին զիս, և արկին երկիւղուկս 'ի քէն, և փախուցին 'ի քէն: Եւ երդումն իմ, զոր երդուայ քեզ, յառաջ ածին զիս. և եկի աւասիկ առաջի քո: Եւ աւասիկ ծառայ քո 'ի ձեռս քո կամ. զինչ և պէտք է քեզ, արա զիս, զինչ և կամ իցէ. սպան զիս, զի.ես ծառայ քո առ քեզ կարի յանցաւոր եմ, մահապարտ եմ:

Իսկ Շապուհ արքայ առեալ զձեռանէ նորա, շրջէր ճեմելով, 'ի չքմեղս առեալ զնա ածէր 'ի հայակողմն 'ի հողն հարեալ յատակն: Իսկ իբրև յայն տեղի հասանէր, և զհայ զհողն կոխէր, մեծամեծս ըմբոստացեալ հպարտացեալ` այլ ձայն շրջէր. սկսանէր խօսել և ասել. 'Ի բաց կաց յինէն ծառայ չարագործ տիրացեալ տերանցն քոց. այլ ոչ թողից զքեզ և որդւոց քոց զվրէժ նախնեաց իմոց, և զմահն Արտաւանայ արքայի: Զի այժմիկ ձեր ծառայից զմեր տերանց ձերոց զբարձ կալեալ է. բայց ոչ թողից, եթէ ոչ տեղիդ մեր առ մեզ եկեսցէ[35],

Իսկ դարձեալ առնոյր զձեռանէ, դարձեալ տանէր յայն հող Պարսից. ապա աշխարէր զասացեալսն, խոնարհէր բուռն հարկանէր զոտից նորա, մեծապէս ապաշխարելով զղջմամբ զասացեալ բանսն: Իսկ յորժամ առեալ զձեռանէ զնա տանել 'ի հայ հողն, և ս խստագոյն քան զառաջինսն բարբառէր. իսկ դարձեալ միւսանգամ հանէր յայնմ հողոյն, բանիւք յապաշխարութիւն դառնայր: Յայզուէ և երեկոյն այնպէս շատ փորձ փորձեաց զնա. զի իբրև 'ի վերայ հարեալ հողոյն տանէր, խստացեալ ամբարտաւանէր. իսկ 'ի վերայ բուն զետնոյն յատակին` և կայր, 'ի զղջումն դառնայր:

Իսկ իբրև երեկոյ եղև ժամ ընթրեաց թագաւորին Պարսից, քանզի սովորութիւն էր Հայոց թագաւորին բազմական անդէն ընդ նմին առ նմա 'ի նորին տախտին արկանել բազմական, օրէնք էին` զի թագաւորն Պարսից և թագաւորն Հայոց 'ի միում պախտի բազմէին 'ի միում զահոյս: Իսկ այն օր նախ զառղ բազմականացն թագաւորացն, որ անդն էին, զամենեցունց կարգեցին. հուսկ յետոյ զկնի ամենեցունց 'ի ներքոյ

վրայից ջուր ցանել, իսկ մյուս կեսը թողնել բնական հողով: Եվ Հայոց Արշակ թագավորին բերել տվեց իր առաջ և մյուս մարդկանց հրամայեց հեռանալ, և նրա ձեռքիցը բռնած ճեմելով շրջում էր: Խորանում երթևեկելիս, երբ ճեմում էին պարսկական հողի վրա՝ ասաց նրան. «Արշակ թագավոր Հայոց, դու ինչո՞ւ ինձ թշնամի եղար. ես քեզ որդու նման սիրեցի, կամեցա աղջիկս քեզ կնության տալ, իսկ դու իմ դեմ խստացար, ինքդ քեզանից, հակառակ իմ կամքի, ինձ թշնամի դարձար և ահա ամբողջ երեսուն տարի է ինձ հետ պատերազմեցար»:

Արշակ թագավորը ասում է. «Մեղանչեցի և հանցավոր եմ քո առաջ. որովհետև ես եկա, քո թշնամիներին հաղթեցի ու կոտորեցի և հույս ունեի քեզանից կյանքի պարգև ստանալու. բայց իմ թշնամիները ինձ մոլորեցրին, քեզանից վախեցրին և փախչել տվին: Եվ երդումս, որով քեզ երդվեցի՝ ինձ քո առաջը բերեց, ես հիմա քո առաջն եմ, քո ծառադ քո ձեռքի տակ եմ. ինչպես ուզում ես՝ վարվիր ինձ հետ, եթե կամենում ես՝ սպանիր, որովհետև ես, քո ծառադ, շատ հանցավոր եմ քո առաջ, մահապարտ եմ»:

Շապուհ թագավորը նրա ձեռքից բռնած շրջում էր ճեմելով և, իբրև միամտաբար, բերում էր հայկական հող շաղ տված հատակի վրա: Իսկ երբ (Արշակը) այն տեղն էր հասնում, հայկական հողի վրա ոտք էր դնում՝ սաստիկ ըմբոստանալով հպարտանալով լեզուն փոխում էր, սկսում էր խոսել և ասել. «Հեռո՛ւ ինձանից, չարագործ ծառա, որ տերերիդ վրա տեր ես դարձել, և ես չեմ ների քեզ և քո որդոց իմ նախնիների վրեժը և Արտավան թագավորի մահը[148]. Որովհետև այժմ դուք, ծառաներդ, ձեր տերերի՝ մեր բարձն եք հափշտակել, բայց ես չեմ թույլ տա այդ, մինչև դարձյալ մենք մեր տեղը չգրավենք»:

(Շապուհը) դարձյալ նրա ձեռքից բռնած տանում էր պարսկական հողի վրա. այն ժամանակ (Արշակը) զղջում էր ասածների վրա, խոնարհում էր, նրա ոտներն էր ընկնում, սաստիկ ափսոսում զղջում էր ասածների վրա: Իսկ երբ ձեռքիցը բռնած տանում էր հայկական հողի վրա՝ առաջինից ավելի խիստ էր խոսում: Նորից հեռացնում էր այդ հողի վրայից՝ սկսում էր խոսքերով ապաշխարել: Առավոտից մինչև երեկո շատ անգամ փորձեց նրան, որ երբ հայկական հող շաղ տված հատակի վրա էր տանում՝ (Արշակը) խստանում ամբարտավանում էր, իսկ խորանի բնական հողի վրա լալիս էր[149], զղջում արտահայտում:

Երբ երեկո եղավ, Պարսից թագավորի ընթրիքի ժամը հասավ— սովորությունն այնպես էր, որ Հայոց թագավորի համար բազմելու տեղ էին պատրաստում միևնույն տախտի վրա, իրար մոտ. օրենք էր, որ Պարսից թագավորն ու Հայոց թագավորը մի տախտի վրա էին բազ-

քոյորին զԱրշակայ բազմականն առնէին, ուր զհայ հողն յատակն հարեալ էր: Նախ ամենեքեան իբրև բազմեցան յիւրաքանչիւր չափու, յետոյ ածէին բազմեցուցանէին զարքայն Արշակ: Արդ եկաց բազմեալ ուռուցեալ վայր մի. իսկ յոտն եկաց, ասէ ցթագաւորն Շապուհ. Իմ այդ տեղի, ուր դուդ ես բազմեալ. յոտն կաց այգի, թող ես այդր բազմեցայց, զի տեղի ազգի մերոյ այդ լեալ է. ապա եթէ յաշխարհն իմ հասից, մեծամեծ վրէժս խնդրեցից 'ի քէն:

Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից, բերել շղթայս և արկանել 'ի պարանոցն Արշակայ և յոտս և 'ի ձեռս նորա երկաթս, և խաղացուցանել զնա 'ի յԱնդմըշն՝ զոր Անուշ բերդն կոչեն, և պնդեալ զնա մինչև անդէն մեռցի: Եւ եղև 'ի վաղիւ անդր ետ հրաման Շապուհ արքայ, ածել զառաջեաւ իւր զՎասակ Մամիկոնեան զզօրավարն սպարապետն Հայոց մեծաց. սկսաւ պատուհասել զնա, քանզի էր Վասակ անձամբ փոքրիկ, ասէ ցնա արքայն Պարսից Շապուհ. Աղուէս, դո՞ւ էիր խանգարիչ՝ որ այսչափ աշխատ արարեր զմեզ. դու ես այն՝ որ կոտորեցեր զԱրիս այսչափ ամս, և զի՞ գործես. զմահ աղուեսու սպանից զքեզ: Իսկ Վասակ տուեալ պատասխանի, ասէ. Այժմ քո տեսեալ զիս անձամբս փոքրիկ, ոչ առեր զչափ մեծութեան իմոյ. զի ցայժմ ես քեզ առեւծ էի, և արդ աղուէս: Բայց մինչ ես Վասակն էի, ես սկայ էի. մի ոտնս 'ի միոյ լերին կայր, և միւս ոտնս իմ 'ի միոյ լերին կայր. յորժամ յաջ ոտնս յենուի, զաջ լեառն ընդ գետին տանէի. յորժամ 'ի ձախ ոտնն յենուի, զձախ լեառն ընդ գետին տանէի: Ապա հարցանէր թագաւորն Պարսից Շապուհ և ասէ. ադէ՝ տուր ինձ գիտել, ո՞վ են լերինքն այնոքիկ՝ զորս դուն ընդ ունջ տանէիր: Եւ ասէ Վասակ. Լերինքն երկուք, մի դու էիր, և մի թագաւորն Յունաց: Այն մինչ տուեալ էր ինձ աստուծոյ, զքեզ ընդ գետին տանէի և զթագաւորն Յունաց, մինչև օրհնութիւն հօրն մերոյ Ներսէսի հանգուցեալ էր 'ի վերայ մեր, և աստուծոյ զմեզ 'ի ձեռանէ չէր թողեալ. մինչև զնորա բանն արարաք, և խրատ նորա եկաց առ մեզ, գիտացաք տալ քեզ խրատ. մինչև մեզէն աչօք բացօք անկաք 'ի խորխորատ: Արդ զինչ և կամիս, արա: Ապա ետ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց Վասակ, և զմորթն հանել և լնուլ խոտով, և տանել ընդ նոյն բերդ յԸնդմըշն՝ որ Անյուշն կոչեն. ուր արգելին իսկ զթագաւորն Արշակ:

մում, մի զանի վրա— իսկ այդ օրը նախ պատրաստեցին բոլոր այնտեղ գանված թագավորների բազմելու տեղերը, և ամենից վերջը, բոլորից ներքև, Արշակի բազմելու տեղը պատրաստեցին, որի հատակում հայկական հող էին շաղ տվել: Նախ բոլորը բազմեցին ըստ իրենց աստիճանների, հետո բերին բազմեցրին Արշակին: Նա մի կարճ ժամանակ բազմեց մնաց մռութները կախած. հետո ոտի կանգնեց ու ասաց Շապուհ թագավորին. «Իմն է այդ տեղը, որտեղ դու բազմել ես. վեր կաց այդ տեղից, որ ես այդտեղ բազմեմ, որովհետև մեր (Արշակունյաց) ազգի տեղն այդ է եղել. իսկ եթե ես իմ աշխարհը դառնամ՝ քեզանից մեծ վրեժներ կպահանջեմ»:

Այն ժամանակ Պարսից Շապուհ թագավորը հրաման էր տալիս բերել երկաթե շղթաներ, կապել Արշակի պարանոցը, ոտքերն ու ձեռքերը, տանել նրան Անդմըշն բերդը, որին ասում են Անհուշ բերդ, և կապած պահել այնտեղ մինչև մեռնի:

Հաջորդ օրը Շապուհ թագավորը հրամայեց իր առաջը բերել Վասակ Մամիկոնյանին, Մեծ Հայքի զորավար-սպարապետին: Որովհետև Վասակը փոքր էր մարմնով՝ Պարսից Շապուհ թագավորը ասաց նրան. «Աղվե՛ս, այդ դո՞ւ էիր այն խանգարիչը, որ այսքան տարի մեզ և քաջերին չարչարեցիր, դո՞ւ էիր, որ այսքան տարի կոտորում էիր արիներին. հիմա ի՞նչպես պետք է իմ ձեռքից ազատվիս. ես քեզ աղվեսի մահով պիտի սատկեցնեմ»: Վասակ սպարապետը պատասխան տալով ասաց. «Այժմ ինձ տեսնում ես փոքր մարմնով և սուրս էլ վրաս չէ՝ իմ մեծության չափը չիմացար, որովհետև մինչև այժմ ես քեզ համար առյուծ էի, իսկ այժմ աղվես դարձա: Բայց երբ ես դեռ Վասակ էի՝ ես հսկա էի. մի ոտս մի լեռան վրա էր, մյուսը մյուս լեռան վրա. երբ աջ ոտքիս վրա էի հենվում՝ աջ կողմի լեռը գետնին էի կոխում, երբ ձախ ոտքիս վրա էի հենվում՝ ձախ կողմի լեռն էի գետին կոխում»: Շապուհ թագավորը հարցրեց և ասաց. «Ձի՞ լինի ասես, այդ ի՞նչ լեռներ են, որ դու տափին էիր կոխում»: Վասակն ասաց. «Երկու լեռներից մեկը դու էիր, մյուսը Հունաց թագավորը. քանի որ աստված հաճ էր մեզ հետ՝ քեզ էլ էի գետին կոխում, Հունաց թագավորին էլ. քանի որ մեր հոր Ներսեսի օրհնությունը մեր վրա կար, և աստված մեզ ձեռքից չէր թողել: Քանի որ մենք նրա խոսքը լսում էինք և նրա խրատով էինք վարվում՝ կարողացանք քեզ խրատ տալ, մինչև որ մենք ինքներս բաց աչքերով խորխորատի մեջ ընկանք: Հիմա ինչ ուզում ես արա»: Ապա Պարսից թագավորը հրամայեց՝ Հայոց Վասակ զորավարի մորթը հանել, խոտով լցնել և տանել նույն Անդմըշ բերդը, որ Անհուշ է կոչվում, որտեղ բանտարկեցին և Արշակ թագավորին:

## ԾԵ.

### ՅԱՂԱԳՍ ԳԵՐՈՒԹԵԱՆՆ ԵՒ ՀԱՐՈՒԱԾՈՅՆ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ ԵՒ ԱՒԵՐԱԾՈՅՆ, ԵՒ ԳԵՐՈՒԹԵԱՆ ՏԱՆԵԼՈՅՆ. 'Ի ՊԱՐՍ. ԵՒ ՉԱՐԱՄԱՀ ԼԻՆԵԼՈՅՆ ՏԻԿՆՈՋՆ ՓԱՌԱՆՁԵՄԱՅ ԵՒ ՔԱՂԱՔԱՑՆ ՀԱՅՈՑ ԱՒԵՐԵԼՈՅ, ԵՒ ՀԻՄԱՆՑ ԱՇԽԱՐՀԻՆ ՏԱՊԱԼԵԼՈՅ

Ապա արձակեաց արքայն Պարսից Շապուհ 'ի վերայ աշխարհին Հայոց երկուս ոմանս յիշխանաց անտի իւրոց, միումն Զիկ անուն և միումն Կարէն, հինգ հարեւր բիւրով. զի եկեսցեն բրեսցեն քանդեսցեն զաշխարհն Հայոց: Եւ եկին հասին 'ի վերայ երկրին Հայոց: Ապա իբրև ետես տիկին աշխարհին Հայոց, կինն Արշակայ թագաւորին Հայոց Փառանձեմ, զզօրս թագաւորին Պարսից, եթէ եկին լցին զաշխարհս Հայոց, առեալ ընդ իւր մարդիկ իբրև մետասան հազար ազատս ընտիրս սպառազէնս պատերազմողս, և հանդերձ նոքօք դիմեաց եմուտ 'ի բերդն Արտագերից՝ որ 'ի յերկրին Արշարունեաց՝ յերեսաց զօրացն Պարսից: Ապա եկին հասին ամենայն զօրքն Պարսից, շուրջ զբերդաւն նստէին, պահ արկանէին. պատեցին պաշարեցին: Իսկ նոքա 'ի ներքս ամրացեալք, յուսային 'ի տեղւոյն ամրութիւնն. և նոքա լակիշ ածեալ, նստէին արտաքուստ շուրջ զձորօքն: Եւ նստան շուրջ զբերդաւն ամիսք երեքտասան, և առնուլ զբերդն ոչ կարացին, զի կարի ամուր էր տեղին: Աւերեցին քանդեցին զերկիրն ամենայն. ելանէին առնուին աւար զերկիրն ամենայն, շուրջ 'ի գաւառացն և յաշխարհացն ածէին զգերի մարդկանն և զանասնոյ 'ի լակիշն իւրեանց. այլուստ բերէին համբարս, և ուտէին. և զբերդն պաշարեալ պահէին:

Իսկ Պապ որդին Արշակայ ոչ դիպեցաւ անդ 'ի Հայոց աշխարհին, զի առ թագաւորն Յունաց դիպեցաւ: Զի թէպէտ և զայս ամենայն լուան ազատագունդ բանակն Հայոց, չոգան իւրեանց խնդրել թիկունս օգնականութեան. և էր նոցա զօրավարն Մուշեղ որդին Վասակայ սպարապետին: Եւ չոգան նոքա առ իւրեանց արքայորդին. մինչ դեռ նոքա ընդ թագաւորին Յունաց խօսէին, հաւանեցուցանէին զնոսա թիկունք լինել իւրեանց: Իսկ յերկիրն Հայոց ստէպ առաքէին դեսպանս առ տիկին աշխարհին առ Փառանձեմ, զի ժուժկալ լինիցի բերդին, և մի՛ ձեռս տացէ 'ի պարսիկս: Եւ դեսպանս ստէպ ստէպ յորդւոյ նորա 'ի Պապայ զմիմեանց զկնի 'ի շաբաթու շաբաթու եկեալ հասանէին. և զաղտ ընդ զաղտնի դուռն ուրեմն մեքենաւորութեամբ 'ի բերդն մտանէին, տային քաջալերս տիկնոջն. և յերկարեաց 'ի բերդին ամիսս երեքտասան պաշարումն: Այլ որք գային և երթային, ստէպ ստէպ գային՝ թէ պինդ կաց, զի հասեալ է Պապ որդի քո և գունդ կայսերական 'ի թիկունս օգնականութեան: Եւ յերկարեաց խռախոյսն որ հասանէր, զի ասէին.

# ՄԵ

## ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ԳԵՐՈՒԹՅՈՒՆԸ, ՀԱՐՎԱԾՆԵՐԸ ԵՎ ԱՎԵՐՄՈՒՆՔԸ. ՓԱՌԱՆՁԵՄ ՏԻԿՆՈՋ ԳԵՐԻ ՏԱՐՎԵԼԸ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ ԵՎ ՋԱՐԱՋԱՐ ՄԱՀԸ: ՀԱՅՈՑ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԱՎԵՐՄՈՒՆՔԸ ԵՎ ԱՇԽԱՐՀԻ ՀԻՄՆՈՎԻՆ ԿՈՐԾԱՆՎԵԼԸ

Այնուհետև Պարսից Շապուհ թագավորը Հայոց աշխարհի վրա արձակեց իր իշխաններից երկուսին, մեկի անունը Զիկ, մյուսինը Կարեն, հինգ հարյուր բյուր զորքով, որ գան Հայոց աշխարհը քարուքանդ անեն: Նրանք եկան Հայոց աշխարհի վրա: Երբ Հայոց աշխարհի տիկինը, Հայոց Արշակ թագավորի Փառանձեմ կինը, տեսավ, որ Պարսից թագավորի զորքերը լցվեցին Հայոց աշխարհը՝ առավ իր հետ մոտ տասնևմի հազար ընտիր սպառազինված պատերազմող մարդիկ ազատներից, և Պարսից զորքերից խույս տալով դիմեց գնաց Արտագերս բերդը[150] Արշարունյաց գավառում: Հետո Պարսից բոլոր զորքերը հասան, բերդի շուրջը նստեցին, պատեցին, պաշարեցին: Նրանք ներսը ամրացան, հույս դնելով տեղի ամրության վրա, իսկ սրանք դակիչ քաշելով նստան դուրսը, ձորերի շուրջը: Այսպես տասներեք ամիս բերդի շուրջը նստեցին և չկարողացան բերդն առնել, որովհետև տեղը շատ ամուր էր: Ամբողջ երկիրը քանդեցին, ավերեցին, դուրս էին գալիս, շրջակա գավառները և աշխարհները ավարի էին առնում, մարդիկ և անասունները գերելով բերում էին իրենց դակիչը. ուրիշ տեղերից կենսամթերք էին բերում և ուտում, բերդը պաշարման մեջ պահելով:

Իսկ Պապը, Արշակի որդին, այդ ժամանակ Հայոց աշխարհում չպատահեց, նա Հունաց թագավորի մոտ էր[151], իսկ ազատների տոհմերից բաղկացած բոլոր բանակը, այս բաները լսելով՝ գնացին իրենց համար օգնություն խնդրելու. նրանց զորագլուխն էր Մուշեղը, Վասակ սպարապետի որդին: Նրանք գնացին իրենց արքայորդու մոտ և բանակցում էին Հունաց թագավորի հետ, նրան համոզում էին իրենց թիկունքը լինել: Իսկ Հայոց աշխարհը նրանք հաճախ դեսպաններ էին ուղարկում աշխարհի տիկնոջ՝ Փառանձեմի մոտ, որ դիմադրե, բերդը պաշտպանե, Պարսից ձեռքը չտա: Նրա որդուց՝ Պապի կողմից էլ հաճախակի դեսպաններ էին գալիս, շաբաթ շաբաթի վրա, գաղտնի դռնով մի հնարքով բերդն էին մտնում, սիրտ էին տալիս տիկնոջը. այսպես բերդի պաշարումը տևեց տասներեք ամիս: Իսկ դեսպանները շարունակ գնում գալիս էին ասելով թե՝ «Պինդ կաց, Պապ որդիդ գալիս է և կայսերական զունդ է բերում օգնության»: Այս քաջալերությունը եր-

Վայրիկ մի ևս սակաւիկ մի ևս կալցիս ժոյժ, և ահա հասեալ է օգնականութիւն:

Եւ եղև յետ չորեքտասաներորդ ամսեանն հարուածոց՝ որ յաստուծոյ հասին 'ի վերայ զաղթականին բերդնորդեացն, զի մահ անկաւ 'ի վերայ նոցա՝ որք 'ի բերդին էին, զի 'ի տեառնէ հասին պատուհասք: Առաջի տիկնոջն Փառանձեմայ ուտէին և ըմպէին և ուրախ լինէին որք էին 'ի տաճարին. յանկարծակի 'ի միում ժամու հարիւր այր, և 'ի միւսում երկերիւր, և էր՝ զի հինգ հարիւր այր մեռան 'ի բազմականին՝ յորժամ բազմեալ կային. և օր ըստ օրէ սատակէին: Յորժամ սկսան, զամիս մի ոչ յերկարեաց՝ զի սատակեցան առ հասարակ. զի էին արք իբրև մետասան հազար, և կանայք իբրև վեց հազար. զի ամիս մի ոչ կացին, զի ամենեքեան՝ որ էին 'ի բերդին՝ առ հասարակ սատակեցան:

Բայց մնաց 'ի բերդին Փառանձեմ տիկին, երկու նաժշտօք: Ապա եկն եմուտ զաղտ 'ի ներս 'ի բերդն Հայր Մարդպետ ներքինին, և թշնամանեաց զտիկինն մեծապէս իբրև զբոզ մի: Սկսաւ դնել թշնամանս ազգին Արշակունեաց, զի վատախորհուրդք են, վատանշանք, կորուսին զաշխարհս ևս. իրաւի անց ընդ ձեզ այդ, և այլ զի անցցէ: Ել զաղտուկ, և փախեաւ: Իսկ տիկինն Փառանձեմ իբրև ետես՝ եթէ միայն մնացի, եբաց զդուռն բերդին, և թողացոյց զօրսն Պարսից մտանել 'ի բերդն: Եւ եկին կալան զտիկինն, և իջուցին 'ի բերդէն: Ելանէին 'ի բերդն 'ի վեր զօրավարն Պարսից, գերէին զգանձս թագաւորին Հայոց, որ կային 'ի բերդին. և սկսան կրել իջուցանել զամենայն զգանձսն, որ կայր 'ի բերդին: Զինն տիւ և զինն գիշեր համակ իջուցին զոր զտին յԱրտարագէրսն բերդին, հանդերձ տիկնաւն խաղացուցին:

Եւ յետ այսորիկ եկին 'ի քաղաքն մեծ յԱրտաշատ, և առին զնա, և կործանեցին զպարիսպ նորա. առին անտի զգանձս մթերեալս՝ որ կային, և գերեցին զամենայն քաղաքն: Եւ խաղացուցին 'ի յԱրտաշատ 'ի քաղաքէ ինն հազար տուն երգ Հրեայս, զոր ածեալն էր գերի Տիգրանայ արքայի Արշակունւոյ յերկրէն պաղեստինացոց. և քառասուն հազար երդ Հայ, զոր յԱրտաշատ քաղաքէ խաղացուցին: Եւ զամենայն շինուած քաղաքին հրձիգ արարին զփայտակերտն, և զքարակերտն քանդեցին. զպարիսպն ըստ նմին օրինակի և զամենայն շինուած քաղաքին մինչև 'ի հիմունսն ապականեցին, և ոչ թողին մի, և ոչ թողին բնաւ քար 'ի քարի վերայ. անմարդի և թափուր յամենայն բնակչաց իւրոց կացուցանէին:

Եւ եղև յորժամ ածին ժողովեցին զամենայն զգերին քաղաքին 'ի մի վայր, և անցուցին ըստ Տափերն կամուրջ, և առնէին համար գեր-

կար ձգձգվում էր, որովհետև ասում էին. «Մի քիչ էլ, մի փոքր ժամանակ էլ համբերի՛ր, օգնությունը հասել է»:

Տասնչորսերորդ ամսից հետո աստծուց հարված հասավ բերդում ապաստանած գաղթականների վրա. բերդում եղողների մեջ մահ ընկավ, աստվածային պատուհաս: Փառանձեմ տիկնոջ առաջ սեղանատանը նստած ուտում խմում ուրախանում էին՝ և հանկարծ մի ժամում հարյուր մարդ, մյուսում երկու հարյուր, պատահում էր որ մինչև հինգ հարյուր մարդ մեռնում էին՝ մինչ սեղան բազմած էին լինում: Եվ այսպես օրեց-օր կոտորվում էին: Մահը սկսվելու օրից մի ամիս էլ չքաշեց, որ բոլորը կոտորվեցին, մոտ տասն և մի հազար տղամարդ և մոտ վեց հազար կին. մի ամիս չանցավ՝ որ բերդում եղածները բոլորը կոտորվեցին. բերդումը մնաց միայն տիկին Փառանձեմը երկու նաժիշտով:

Ապա գաղտնի կերպով բերդը մտավ ներքինի Հայր մարդպետը և տիկնոջը սաստիկ նախատեց ինչպես մի բոզի: Սկսեց նախատինքներ թափել Արշակունյաց ազգի վրա, թե վատախորհուրդ, վատանշան են, Հայոց աշխարհն էլ կորցրին. տեղն է՝ ինչ որ ձեզ պատահեց և ինչ որ էլի պիտի պատահի: Գաղտուկ դուրս եկավ ու փախավ: Իսկ տիկին Փառանձեմը տեսնելով, որ մենակ մնաց՝ բերդի դուռը բացեց և Պարսից զորքը թողեց բերդից ներս: Եկան տիկնոջը բռնեցին և բերդից իջեցրին: Հետո Պարսից զորավարները[152] բերդն էին բարձրանում, ավար էին անում Հայոց թագավորի գանձերը, որ բերդում պահվում էին. բոլորը վար իջեցրին: Ինը օր, ինը գիշեր չարունակ իջեցնում էին՝ ինչ որ գտան Արտագերս բերդում, և տիկնոջ հետ միասին գերի քշեցին:

Այնուհետև եկան Արտաշատ մեծ քաղաքը. նրան առան, պարիսպները կործանեցին. այնտեղ էլ պահված գանձերը առան և ամբողջ քաղաքը գերի վարեցին: Արտաշատ քաղաքից գերի տարան ինը հազար տուն հրեա, որոնց Արշակունի Տիգրան թագավորը գերի էր բերել Պաղեստինացոց աշխարհից, և քառասուն հազար տուն հայ: (Այսքան մարդ) Արտաշատ քաղաքից տարան: Քաղաքի շինություններից փայտաշենները կրակ տվին այրեցին, քարաշենները քանդեցին, նույնպես և պարիսպը. քաղաքի բոլոր շինվածքները հիմնահատակ կործանեցին, ոչ մի քար քարի վրա չթողին, քաղաքը բնակիչներից թափուր, անմարդի, ավերակ դարձրին:

Երբ քաղաքի բոլոր գերիները մի տեղ ժողովեցին՝ անց կացրին Տափերի կամուրջով. գերիներին համարեցին և չերտավոր զորքերով

տայն, 'ի մէջ շերտափակ զօրացն պատէին, ասեն զօրագլուխն Պարսից ցՁուիթ երէց քաղաքին Արտաշատու. Եկեալ 'ի միջոյ գերւոյդ, երթ գնա դու յո պէտք է քեզ: Եւ ոչ առնոյր զայս յանձն երէցն Ձուիթն, այլ ասէր. Յո զխաշնդ տանիք, և զհովիւս տարայք. զի ոչ է մարթ հովուի թողուլ զխաշն իւր, այլ պարտ է հովուի դնել զանձն 'ի վերայ ոչխարին իւրոյ: Եւ զայս ասացեալ եմուտ 'ի գերութիւնն, և խաղաց 'ի գերութիւն ընդ իւրում ժողովրդեանն յերկիրն Պարսից:

Առնուին և զՎաղարշապատ քաղաք. քանդէին բրէին զքաղաքն 'ի հիմանց տապալէին, և խաղացուցանէին յայնմ ևս քաղաքէ իննևտասն երդս հազար: Ընդ ամենայն քաղաքս ոչ թողին ամենևին շինած. զի զամենայն տապալէին, քակեալ քանդէին. և ընդ ամենայն երկիրն ասպատակ սփռեալ՝ զամենայն այր 'ի չափ հասեալ կոտորէին, զկանայս և զորդիս 'ի գերութիւն վարէին. և զբերդս ամենայն թագաւորին Հայոց կալան, և լցեալ բազում ամբարօք՝ բերդակալս թողուին: Առնուին և զմեծ քաղաքն զԵրուանդաշատ, և խաղացուցանէին անտի երդս քսան հազար Հայ, և երդս երեսուն հազար Հրեայ. և զքաղաքն 'ի հիմանց տապալեալ բրեալ յատակէին: Ապա առնուին և զքաղաքն Բագրևանդայ Զարեհաւան, և խաղացուցանէին անտի հինգ հազար երդ Հայ, և ութ հազար երդ Հրեայ. և զքաղաքն 'ի հիմանց տապալէին յատակէին: Առնուին և զքաղաքն մեծ Զարիշատ՝ որ էր 'ի գաւառին յԱղոյհովտի, չորեքտասան հազար երդ Հրեայ, և տասն հազար երդ Հայս. և զնա 'ի հիմանց քանդեալ ապականէին: Առին և զամուր քաղաքն Վան, որ է 'ի գաւառին Տոսպայ. և հրձիգ արարեալ, քակէին զհիմունս նորա. և խաղացուցանէին անտի երդս հինգ հազար Հայ, և ութ և տասն հազար երդս Հրեայս:

Զայս ամենայն բազմութիւն Հրէից, զոր գերեցին տարան յերկրէն Հայոց, ածեալ էր յերկրէն պաղեստինացւոց մեծի թագաւորին Հայոց Տիգրանայ 'ի ժամանակին՝ յորժամ գերեաց նա և ած 'ի Հայս զքահանայապետն Հրէից զՀիրկանոս զառաջին ժամանակաւ: Եւ էած մեծ արքայն Տիգրան զամենայն զհրէութիւնն զայն բնակեցոյց 'ի քաղաքսն Հայոց յիւրում դարուն 'ի ժամանակին: Իսկ յայսմ ժամանակի աւերեցին զքաղաքսն, և գերեցին զբնակեալսն անդ. և զամենայն երկիրն Հայոց և զամենայն գաւառն ընդ նմին գերեալ, խաղացուցեալ[36] և զայլ գերութիւնս գաւառաց գաւառաց, կողմանց կողմանց, փորի փորի, զաշխարհի աշխարհի, ածին ժողովեցին 'ի քաղաքն Նախճաւան. զի անդ էր զօրաժողով իւրեանց զօրացն: Ապա առին և զնա քանդեցին. անտի երդս Հայս երկուս հազարս, և Հրեայ երդս վեշտասան հազարս անտի խաղացուցին գնացուցին ամենայն գերութեամբն հանդերձ: Եւ անդէն

շրջապատեցին. ապա Պարսից զորագլուխներն ասացին Արտաշատ քաղաքի Զվիթ երեցին. «Գերիների միջից դուրս եկ ու գնա՛ ուր ուզում ես»: Զվիթը այս բանը հանձն չառավ ու ասաց. «Ուր որ այդ խաշինքը տանում եք՝ հովվին էլ նրա հետ տարեք. պետք չէ որ հովիվը իր խաշինքը թողնե, այլ պետք է իր կյանքը զոհե ոչխարների համար»[153]: Այս ասելով նա մտավ գերիների մեջ և գերի գնաց Պարսից աշխարհը իր ժողովրդի հետ:

Առնում էին Վաղարշապատ քաղաքն էլ. քանդում, բռում էին, հիմքից կործանում էին. այս քաղաքից էլ գերի էին տանում տասնևինը հազար տուն: Ամբողջ քաղաքում չենք չթողին, բոլորը քարուքանդ էին անում, կործանում: Ասպատակներ ուղարկելով՝ բոլոր չափահաս մարդկանց կոտորում էին, կանանց, երեխաներին գերի էին վերցնում: Հայոց թագավորության բոլոր բերդերն առան, մեծ քանակությամբ պաշարեղեն հավաքեցին նրանց մեջ և բերդապահներ թողին: Առան Երվանդաշատ մեծ քաղաքն էլ. այս տեղից դուրս բերին քսան հազար տուն հայ և երեսուն հազար տուն հրեա, իսկ քաղաքը հիմնահատակ կործանեցին: Հետո առան Բագրևանդի Զարեհավան քաղաքը. այնտեղից էլ գերի վերցրին հինգ հազար տուն հայ և ութ հազար տուն հրեա և քաղաքը հիմնիվեր կործանեցին: Առան նաև Զարիշատ մեծ քաղաքը Աղիովիտ գավառում, (գերի վերցրին) տասնևչորս հազար տուն հրեա և տասը հազար տուն հայ, և այն էլ հիմնահատակ կործանում էին: Առան նաև Վան ամուր քաղաքը Տոսպ[154] գավառում, կրակ տվին այրեցին, հիմքերը քանդեցին. այնտեղից էլ դուրս բերին հինգ հազար տուն հայ և տասն և ութ հազար տուն հրեա:

Հրեաների այս բոլոր բազմությունը, որ Հայոց աշխարհից գերի տարան՝ Հայոց Տիգրան մեծ թագավորը բերել էր Պաղեստինացոց երկրից հին ժամանակ, երբ նա գերեց և Հայաստան բերեց հրեաների Հյուրկանոս քահանայապետին: Տիգրան մեծ թագավորը այս բոլոր հրեությունը իր դարում բերեց բնակեցրեց Հայաստանի քաղաքներում: Իսկ այս ժամանակ (պարսիկները) ավերեցին այդ քաղաքները, նրանց բնակիչներին գերեցին, նրանց հետ միասին Հայոց ամբողջ աշխարհն ու գավառները: Դուրս բերին գերիներ զանազան գավառներից, կողմերից, ձորագավառներից, աշխարհներից, ժողովեցին բերին Նախճավան[155] քաղաքը, որ իրենց զորքերի զորաժողովի տեղն էր: Այս քաղաքն էլ առան քանդեցին, այնտեղից էլ հանեցին երկու հազար տուն հայ և տասնևվեց հազար տուն հրեա և մյուս գերիների հետ տարան: Հայոց

յերկիրն Հայոց ոստիկանս բաղին և վերակացուս, 'ի ծառայութիւն մատնել[37] զմնացորդս երկրին. և ինքեանք զտիկինն Փառանձեմ առեալ, հանդերձ գանձիւք և բազմութեամբ գերեօքն յերկրէն Պարսից խաղացուցանէին. և գնացեալք երթային տանէին հասուցանէին յերկիրն Պարսից առ Շապուհ արքայն Պարսից:

Եւ եղև իբրև շոգան տարան զտիկինն Փառանձեմ յերկիրն Պարսից, և զայլ ամենայն գերութիւնն Հայոց և զգանձսն կալան առաջի թագաւորին և զտիկինն Փառանձեմ, շնորհ մեծ ունէր թագաւորն Պարսից իւրոց զօրավարացն: Եւ իբրև կամեցաւ թագաւորն Պարսից Շապուհ թշնամանս առնել ազգին աշխարհին Հայոց և թագաւորութեանն, ետ հրաման ժողովել զամենայն զզօրս իւր և զմեծամեծս իւր և զփոքունս և զամենայն մարդիկ աշխարհին իւրոյ՝ որ ինքն իշխէր, և 'ի մէջ ամբոխին ածել զտիկինն Հայոց զՓառանձեմն: Եւ հրամայեաց 'ի հրապարակին իմն առնել հրապոյրս մեքենայից, որով հրամայեաց զկինն արկանել, և արձակել տիկնոջն Փառանձեմայ 'ի խառնակութիւն պոռնկութեանն անասնական պղծութեանն: Այսպէս սատակեցին զտիկին զՓառանձեմ: Իսկ զայլ գերին զամենայն տարան բնակեցուցին, որ յԱսորեստան, որ յերկրին Խուժաստանի:

## ԾԶ

## ՅԱՂԱԳՍ ՎԿԱՅՈՒԹԵԱՆ ՋՈՒՀԹԱՅ ԵՐԻՑՈՒ ՅԵՐԿՐԻՆ ՊԱՐՍԻՑ

Ապա իբրև շոգան տարան յերկիրն Պարսից զամենայն գերութիւն Հայոց, և զՋուիթ երէց Արտաշատ քաղաքի ունէին կապանօք առաջի թագաւորին Պարսից Շապհոյ: Եւ նայէր թագաւորն Պարսից Շապուհ, և տեսանէր զերէցն Ջուիթ այր բարձր և անձնեայ, և ի տիոց մանուկ. և հեր գլխոյն ալեօրեալ էին, այլ մօրուքն դեռ տակաւին սեաւ ևս կային: Ապա յորժամ զառաջինն խօսել սկսաւ, ասէ. Եթէ տեսանէ՞ք զառնդ զայդր զչարութիւն. քանզի յայտ է, 'ի հերաց այտի երևի՝ թէ կախարդ է. զի հերքն սպիտակ են, և մօրուքն սեաւ: Իսկ երիցուն տուեալ պատասխանի, ասէ. Թէ քեզ պէտ իցէ, այլ զինչ կամիս խօսել և առնել՝ խօսեաց. այլ վասն այդորիկ գիտեա, զի յիրաւունս սպիտակացեալ են նախ հերքս. զի բազում աւուրբք երէց են, զոնեա հնգետասան ամօք քան զմօրուս նախարդոյս են: Իսկ թագաւորն հրաման տայր մինչև 'ի վաղիւն պահել զնա. իսկ 'ի վաղիւն հրաման տայր ածել 'ի հրապարակն շղթայիւք: Եւ ելին ոստիկանք արքունի հարցանել, եթէ իցէ՝ յանձն

աշխարհում քաղին ոստիկաններ[156] ու վերակացուներ, երկրի մնացորդ ժողովուրդը հպատակեցնելու, իսկ իրենք տիկին Փառանձեմին առնելով գանձերով և բազմաթիվ գերիներով տարան Պարսից աշխարհը, եկան բերին հասցրին Պարսից աշխարհը Շապուհ թագավորի մոտ:

Երբ Փառանձեմ տիկնոջը բերին հասցրին Պարսից աշխարհը և Հայաստանի բոլոր գերությունն ու գանձերը և Փառանձեմ տիկնոջը թագավորի առաջ հանեցին՝ Պարսից թագավորը մեծ շնորհակալություն հայտնեց իր զորավարներին: Պարսից Շապուհ թագավորը կամեցավ նախատինք հասցնել (Արշակունյաց) ազգին, Հայոց աշխարհին և թագավորությանը: Հրամայեց կանչել իր բոլոր քաջերը, իր մեծամեծները և ստորին պաշտոնյաները և իր տիրած աշխարհի բոլոր մարդկանց, և այս բազմության մեջ բերել Հայաստանի տիկնոջը՝ Փառանձեմին: Եվ հրամայեց հրապարակում շինել ինչ-որ մեքենայություն, որի վրա ձգել տվեց տիկնոջը և արձակել նրա վրա՝ անասնական պիղծ խառնակության համար[157]: Այս կերպ սպանեցին տիկին Փառանձեմին: Իսկ գերիների բոլոր բազմությունը տարան բնակեցրին մի մասը Ասորեստանում, մյուս մասը Խուժաստան երկրում:

## ԾԶ

## ՉՎԻՔ ԵՐԵՑԻ ՆԱՀԱՏԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՍԻՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Երբ Հայաստանի բոլոր գերիներին տարան հասցրին Պարսից աշխարհը՝ Արտաշատ քաղաքի Զվիք երեցին էլ Պարսից Շապուհ թագավորի առաջ բերին. Պարսից Շապուհ թագավորը նայում տեսնում էր Զվիք երեցին, որ բարձրահասակ բարեկազմ մարդ է, երիտասարդ հասակով, բայց գլխի մազերը արդեն ալեհեր էին, իսկ մորուքը դեռ սև էր: Ապա՝ առաջին անգամ խոսելիս ասաց. «Տեսնո՞ւմ եք այդ մարդու չարությունը. հենց մազերից երևում է, որ դա կախարդ է, որովհետև մազերն սպիտակ են, մորուքը սև»: Իսկ երեցը պատասխան տվեց ու ասաց. «Երբ խոսել ես ուզում՝ խոսիր ինչ որ կամենում ես, բայց մազերիս մասին գիտցի՛ր, որ նրանք իրավացի են սպիտակել, որովհետև շատ ավելի մեծ են տարիքով, գոնե տասնհինգ տարի վաղ են բուսել քան մորուքս»: Թագավորը հրամայում էր պահել նրան մինչև հաջորդ առավոտը: Մյուս օրը հրամայեց՝ շղթաներով նրան հրապարակը բերել: Եկան արքունական ոստիկանները ու հարցրին, եթե հանձն կառնես մոգության օրենքը պաշտել, այն դեպքում չի մեռնի:

առցէ պաշտել զօրէնս մոգութեանն, ոչ մեռցի: Իսկ նա ոչ առնոյր յանձն. այլ կամեցեալ մեռանել խնդութեամբ վասն աստուծոյ, երթեալ 'ի տեղի մահուան, և աղաչեաց զվերակացուս իւրոյ մահուանն, զի թողացուսցեն նմա սակաւ մի կալ յաղօթս: Եւ մատուցեալ յառաջագոյն, եդ ծունր և ասէ.

## ՄԷ

## ԱՂՕԹՔ 'Ի ԺԱՄ ՄԱՀՈՒՆ ՋՈՒԻԹԱՅ

Արարիչ մեր, որ արարեր զերկինս և զերկիր և զծով յոչնչէ, և ստեղծեր զմեզ 'ի հողոյ. և զհողեղէնս այսպէս իմաստունս բանաւորս և կենդանիս արարեր: Եւ շնորհեցեր մեզ զգիտութիւն քո, զոր ցուցեր ազգաց որդւոց մարդկան 'ի ձեռն սրբոց քոց մարգարէիցն կարապետացն քոց. և դու քեզէն եկիր իջեր մարդացար երևեցար յերկրի, և ընդ մարդկան շրջեցար. և զկատարեալ իմաստութիւնդ քո շնորհեցեր արարածոց քոց, զոր առաքելովքն քարոզեցեր քոց ստացուածոց յաշխարհի: Եւ վարդապետօքն սրբովք, զորս եդիր 'ի քում յեկեղեցւոջ լուսաւորս, զամենեսեան իմաստնացուցեր: Եւ զիս, զայր զանարժան, արժանի արարեր քում ծառայութեանդ. և պատրաստեցեր զիս տառապեալս սնանել և ուսանել ընդ ձեռօք քո սրբոյ և մեծի և քո քահանայապետին Ներսիսի՝ քո պաշտօնէին, և 'ի ձեռաց նորա առնուլ զձեռնադրութիւն երիցութեան, և 'ի ձեռաց նորա զիս նուիրեալ քեզ 'ի քահանայութեան: Եւ յայնմ աշտիճանէ պատրաստեցեր ըմպել զվկայութեան բաժակն փրկութեան, զոր ըմբելով՝ զանուն տեառն կարդացից. զաղօթս իմ ես տեառն տաց առաջի ամենայն ժողովրդոց նորա: Ընդ որում քեզ փառք և զօրութիւն և իշխանութիւն միածնի Որդւոյ քո սիրելոյ Յիսուսի Քրիստոսի, և կենդանարար Հոգւոյդ քում սրբոյ, յառաջ քան զամենայն յաւիտեանս այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Եւ իբրև զայս ամենայն ասաց, բազում մարդիկ ամբոխի ժողովեալ էին. ասացին զամէնն: Ապա զայրացեալք վերակացուք սպանողութեանն, թէ ընդէ՞ր այնչափ երկար թողացուցին նմա խօսել, ապա տագնապաւ 'ի տեղի մահուն հասուցանէին: Իսկ նա մեծաւ խնդութեամբ կարկառեալ զպարանոցն, վճարէր 'ի սուսերէն:

Նա հանձն չառավ, այլ ուրախությամբ կամեցավ մեռնել աստծու համար: Իր մահվան վերակացուներից խնդրեց թույլ տալ որ մի քիչ աղոթե: Եվ առաջ անցնելով՝ ծունկ չոգեց և ասաց.

## ԾԷ

## ՉՎԻԹԻ ԱՂՈԹՔԸ ՄԱՀՎԱՆ ԺԱՄԻՆ

Ո՜վ մեր արարիչ, որ ոչնչից ստեղծեցիր երկինքն ու երկիրը և ծովը, որ մեզ հողից ստեղծեցիր, և հողեղեններիս այսպես իմաստուն, բանական և կենդանի հորինեցիր: Դու մեզ շնորհեցիր քո գիտությունը, որ մարդկային ազգերին հայտնեցիր սուրբ մարգարեների՝ քո կարապետների ձեռքով. հետո ինքդ եկար, (երկնքից) իջար, մարդ դարձար, երկրի վրա երևեցար և մարդկանց հետ շրջեցար, և քո կատարյալ իմաստությունը շնորհեցիր քո արարածներին, որ քո առաքյալների ձեռքով քարոզեցիր աշխարհում քեզ հետևողներին, և սուրբ վարդապետների միջոցով, որոնց իբրև լուսատուներ հաստատեցիր քո եկեղեցում՝ բոլորին իմաստնացրիր: Ինձ էլ, անարժանիս, արժանավոր դարձրիր քեզ սպասավորելու, տառապյալիս միջոց տվիր սնվելու և ուսանելու քո պաշտոնյայի՝ քո սուրբ և մեծ Ներսես քահանայապետի ձեռքի տակ և նրա ձեռքով երեց ձեռնադրվելու և նրանից նվիրվելու քո քահանայության, և այս աստիճանում ինձ պատրաստեցիր՝ փրկության բաժակը խմել համբերությամբ, որը ես կխմեմ՝ աստծու անունը կանչելով և իմ աղոթքը կուղղեմ տիրոջը նրա բոլոր ժողովրդի առաջ: Քեզ փառք և զորություն և իշխանություն և քո սիրելի որդուն Հիսուս Քրիստոսին և քո կենդանարար մշտնջենական սուրբ հոգուն, այժմ և միշտ և հավիտյանս հավիտենից. ամեն:

Երբ այս բոլորն ասաց՝ ժողովված բազմամարդ ամբոխը ասաց. «ամեն»: Ապա սպանության վերակացուները զայրացան, թե ինչո՞ւ թողին նրան այնքան երկար խոսելու, ուստի շտապեցնելով մահվան տեղն էին հասցնում: Իսկ նա մեծ ուրախությամբ պարանոցը մեկնելով՝ սրի հարվածով վախճանվում էր:

ԾԵ

ՅԱՂԱԳՍ ԳԱԼՈՅՆ ՇԱՊՀՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ ՅԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ՄԻԱՆԳԱՄԱՅՆ ՍԱՏԱԿԵԼ ԶՄՆԱՑԵԱԼՍ ԵՐԿՐԻՆ. ԵՒ ԲԻՒՐ ՉԱՐԵԱՑՆ, ԶՈՐ ԿՐԵՑԻՆ

Ապա յետ այսորիկ խաղաց գնաց թագաւորն Պարսից Շապուհ ամենայն իշխանութեամբ զօրաց իւրոց, և չոգաւ ել յերկիրն Հայոց. և առաջնորդ ունէր ընդ իւր զՎահան 'ի Մամիկոնեան տոհմէն, և զՄերուժանն յԱրծրունեաց տոհմէն: Ապա հասեալ ապականէին յերկիրն Հայոց, և առնուին զամենայն գերին 'ի մի վայր ժողովեցին: Եւ բազումք 'ի նախարարացն Հայոց թողուին զկանայս իւրեանց և զորդիս և զընտանիս, և փախեան ընդ այս ընդ այն գնացին: Իսկ զամենայն կանայս նախարարացն Հայոց, զոր թողին և փախեանն, ապականին ժողովէր. և ածին զնոսա առ Շապուհ արքայ Պարսից:

Իբրև էր բանակն Շապհոյ թագաւորին Պարսից 'ի գաւառն Բագրեւանդայ յաւերս քաղաքին Զարեհաւանի, զոր յառաջնումն եկեալք զօրքն Պարսից աւերեցին, և ածին ժողովեցին առաջի թագաւորին Պարսից զամենայն գերին մնացորդաց աշխարհին Հայոց. ապա հրաման տայր թագաւորն Պարսից Շապուհ, զամենայն այր 'ի չափ հասեալ կոխան արարեալ փղաց, և զամենայն զկին և զմանուկ հանել ընդ ցից սայլից: Հազարք հազարաց և բիւրք բիւրուց սպանին, զի ոչ գոյր թիւ կամ համար սպանելոցն. և զկանայս ազատացն և նախարարացն զփախուցելոցն հրաման տայր ածել յասպարէզն՝ որ էր 'ի Զարեհվան քաղաքի: Եւ հրաման տայր հոլանել զամենայն ազատ կանանին, և նստուցանել առաջի անառակ ասպարիսին. և ինքն Շապուհ արքայ հեծեալ 'ի ձի, չառակի անցանէր առ կանանովն. և որ յակն գային, մի մի 'ի նոցանէ պղծեալ 'ի խառնակութիւն տանէր առ ինքն: Քանզի մօտ յասպարէզն հարեալ էր խորանն, յոր տեսեալ մտանէր գործել զանօրէնութիւն. և այնպէս զբազում աւուրս առնէր զայն ընդ կանայսն: Եւ զազգի Սիւնեաց տոհմին զամենայն զայր 'ի չափ հասեալ կոտորեցին, և զկանայս սպանին, և զամենայն մանր մանկտիսն ներքինիս հրամայէր առնել, և խաղացուցանել յերկիրն Պարսից: Եւ առնէր զայս ամենայն վասն վրիժուցն Անդովկայ, որ եղև պատերազմ ընդ Ներսեհ արքայ Պարսից:

Եւ տայր հրաման Շապուհ արքայն Պարսից զամուր ամուր տեղիսն Հայոց բերդս շինել, հրամայեաց և բերդակալս կացուցանել: Եւ զազատ կանանին անդէն 'ի բերդեանն բաշխէր և թողոյր. զի եթէ ոչ արք նոցա եկեսցեն նմա 'ի ծառայութիւն, սպանցեն զկանայս նոցա բերդակալքն՝ առ որս եթող զնոսա: Եւ եթող յաշխարհին զԶիկն և զԿարենն,

## ԾԸ.

## ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ՀԱՅԱՍՏԱՆ ԳԱԼԸ ԵՎ ԱՇԽԱՐՀԻ ՄՆԱՑԱԾ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՈՏՈՐԵԼԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՎՐԱ ԲՅՈՒՐԱՎՈՐ ՉԱՐԻՔՆԵՐԸ

Սրանից հետո Պարսից Շապուհ թագավորը իր իշխանության բոլոր զորքերով վեր կացավ եկավ հասավ Հայոց աշխարհը: Նա իրեն առաջնորդ ուներ Վահանին, Մամիկոնյան տոհմից, և Մերուժանին, Արծրունյաց տոհմից: Գալիս հասնում պաշարում էին Հայոց աշխարհը, բոլորին գերի էին վերցնում ու մի տեղ ժողովում: Եվ Հայոց նախարարներից շատերը թողնում էին իրենց ընտանիքները, կին, որդի, փախչում, ցրվում էին այս և այն կողմը: Եվ պաշարողները ժողովում էին փախած հայ նախարարների բոլոր կանանց և բերում էին Պարսից Շապուհ թագավորի մոտ:

Պարսից Շապուհ թագավորի բանակը գտնվում էր Բագրևանդ գավառում Զարեհավան ավանի ավերակներում, որը ավերել էին առաջուց եկած զորքերը: Այստեղ բերին ժողովեցին Պարսից թագավորի ու ողջ Հայոց աշխարհի մնացորդների բոլոր գերությունը: Այս հրաման էր տալիս Պարսից Շապուհ թագավորը՝ բոլոր չափահաս տղամարդկանց փղերին ոտնակոխ անել տալ, իսկ բոլոր կանանց ու երեխաներին սայլերի ցցի վրա հանել: Հազարներով ու բյուրերով սպանեցին. թիվ ու համար չկար սպանվածներին: Իսկ փախած նախարարների և ազատների կանանց հրամայում էր բերել Զարեհավան ավանի ձիարշավի հրապարակը: Եվ հրամայում էր այն ազնվական կանանց մերկացնել և հրապարակի երկու կողմում նստեցնել, իսկ ինքը՝ Շապուհը, ձի նստած, արշավելով անցնում էր կանանց միջով, և որոնք որ աչքին դուր էին գալիս՝ մեկ-մեկ առնում էր իր մոտ պիղծ խառնակության. որովհետև նրա խորանը զարկած էր հրապարակի մոտ. այնտեղ էր մտնում անօրեն գործը կատարելու: Այսպես վարվում էր այդ կանանց հետ շատ օրեր: Եվ Սյունյաց տոհմի բոլոր չափահաս տղամարդկանց կոտորեցին, կանանց սպանեցին և բոլոր մանր տղաներին հրամայում էր ներքինացնել և Պարսից աշխարհը տանել: Այս բոլորը նա անում էր վրեժ առնելու համար Անդոկից, երբ պատերազմ եղավ Պարսից Ներսեհ թագավորի հետ[158]:

Եվ Շապուհ թագավորը հրաման տվեց՝ Հայաստանի ամուր ամուր տեղերում բերդեր շինել և բերդակալներ նշանակելով՝ ազնվական կանանց մաս-մաս տեղավորում էր այդ բերդերում պահելու, հրամայելով, որ երբ նրանց ամուսինները գան իրեն ծառայության՝ այդ բերդակալները տան այն կանանց, որ թողել էր նրանց մոտ: Եվ Հայոց

զնոցա իշխանս զօրօք բազմօք. և զիշխանութիւն մնացորդացնետ 'ի ձեռս Վահանայ և Մերուժանայ, և ինքն գնաց յԱտրպայական:

### ԾԹ.

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ԻԲՐԵՒ ՄՆԱՑԻՆ ՎԱՀԱՆ ԵՒ ՄԵՐՈՒԺԱՆ, ԹԷ ԶԻ՛ՆՉ ՇԱՏ ՉԱՐԻՍ ԳՈՐԾԵՑԻՆ ԸՆԴ ԵՐԿԻՐՍ ՀԱՅՈՑ. ԵՒ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՍԱՏԱԿԵՑԱՆ ՎԱՀԱՆ ԵՒ ԿԻՆՆ ԻՒՐ ՅԻՒՐԵԱՆՑ ՈՐԴԻՈՑՆ

Այնուհետև Վահանն Մամիկոնեան և Մերուժանն Արծրունի, սոքա երկոքեան արք պիղծք անօրէնք էին, ապստամբեալք էին յուխտէ աստուածպաշտութեանն և զանաստուածն Մազդեզանց աղանդն յանձն առեալ պաշտէին, սկսան այնուհետև յերկրին Հայոց աւերել զեկեղեցիս՝ զտեղիս աղօթից քրիստոնէից յամենայն կողմանս Հայոց՝ գաւառաց գաւառաց և կողմանց կողմանց: Եւ նեղէին զբազում մարդիկ՝ զոր 'ի բուռն արկանէին, թողուլ զաստուածպաշտութիւն և 'ի պաշտօն դառնալ Մազդեզանցն: Եւ յետ այսորիկ տային հրաման Վահանն և Մերուժանն, զամենայն կանայս փախուցելոցն զնախարարացն՝ որ թողինն և գնացինն, տային հրաման 'ի բերդեանն զի նեղեսցեն զնոսա՝ դարձուցանել յօրէնս Մազդեզանց. եթէ ոչ առնուցուն յանձն, սատակեսցեն զամենեսեան չարաչար: Եւ բերդակալեանն յորժամ զայն հրաման ընկալան, ամենայն ոք ո՛ ոք առ ումեք էին՝ նեղեցին զնոսա ըստ հրամանին տուելոյ: Ապա իբրև ոչ մի ոք յանձն առնուին ուրանալ 'ի քրիստոնէութենէն, չարամահ սպանանէին զամենեսեան յամենայն 'ի բերդսն՝ յորս տուեալ էր զնոսա անդ:

Իսկ Վահանայ էր քոյրաքիւ 'ի Մամիկոնեան տոհմէն, քոյր Վարդանայ, Համազասպուհի[38]. և էր նա կին Գարեգնի տեառնն Ռշտունեաց գաւառին: Զսա եթող և փախեաւ Գարեգին այր իւր 'ի ժամանակին, յորում եկն Շապուհ արքայ Պարսից յերկիրն Հայոց. իսկ զտիկինն Ռըշտունեաց 'ի միջնաբերդն Վան բերդի, որ էր քաղաքն 'ի Տոսպ գաւառին: Իսկ անօրէնն Վահան և Մերուժանն հրաման տային բերդակալին, զի նեղեսցէ զկինն. եթէ ոչ առցէ յանձն զօրէնս Մազդեզանցն, տայր հրաման կախել զբարձր աշտարակէն և սպանանել: Իբրև ոչ առնոյր յանձն Համազասպուհի պահել զօրէնս Մազդեզանցն, հանէին 'ի բարձր աշտարակն՝ որ կայր 'ի վերայ բարձր զանուն քարին, որ հայի 'ի կողմն ծովակին ի զետոյ կուսէ. և մերկացուցին զնա իբրև 'ի մօրէ. և արկեալ կապ զոտիցն, գլխիվայր կախեցին զնա զբարձուէն կուսէ. և այնպէս մեռաւ 'ի կախաղանին: Եւ էր նա սպիտակ մարմնով, և պայծառ

աշխարհում նրանց վրա իշխան թողեց Ջիկին և Կարենին բազմաթիվ զորքով. մնացորդների վրա իշխանությունը հանձնեց Վահանին ու Մերուժանին և ինքը գնաց Ատրպատական:

## ՄԹ

### ՎԱՀԱՆԻ ԵՎ ՄԵՐՈՒԺԱՆԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԵՐԲ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ ՄՆԱՑԻՆ ՈՐՔԱ՞Ն ՇԱՏ ՉԱՐԻՔՆԵՐ ԳՈՐԾԵՑԻՆ ԱՇԽԱՐՀԻՆ ԵՎ Ի՞ՆՉՊԵՍ ՎԱՀԱՆՆ ԵՎ ԻՐ ԿԻՆԸ ՍՊԱՆՎԵՑԻՆ ԻՐԵՆՑ ՈՐԴՈՒ ՁԵՌՔՈՎ

Այնուհետև Վահան Մամիկոնյանը և Մերուժան Արծրունին,— այս երկու պիղծ, անօրեն, դժնյա մարդիկ, որոնք ետ էին կացել աստվածապաշտության ուխտից և ուրացությամբ հանձն էին առել ու պաշտում էին Մազդեզական անաստված կրոնը՝[159] սկսեցին Հայոց աշխարհում, բոլոր գավառներում, ամեն տեղ ավերել եկեղեցիները, քրիստոնյաների աղոթքի տեղերը: Եվ շատ մարդկանց, որոնք նրանց ձեռքն էին ընկնում՝ ստիպում էին աստվածապաշտությունը թողնել, Մազդեզական պաշտամունքն ընդունել: Սրանից հետո Վահանն ու Մերուժանը հրամայում էին բերդերին, որ այն կանանց, որոնց ամուսին նախարարները թողել ու փախել էին՝ ստիպել, որ դառնան Մազդեզական կրոնին, իսկ եթե չհամաձայնեն՝ բոլորին չարաչար մահով սպանել: Բերդապահներն այս հրամանն ստանալով՝ ամեն մեկը իր մոտ եղածին նեղում, ստիպում էր՝ ինչպես հրամայված էր: Եվ երբ նրանցից ոչ մեկը հանձն չառավ քրիստոնեությունն ուրանալ՝ բոլորին չարաչար մահով սպանեցին բոլոր բերդերում, որտեղ տեղավորված էին:

Վահանը մի խորթ քույր[160] ուներ Մամիկոնյան տոհմից, Վարդանի քույրը, Համազասպուհի անունով, որ Ռշտունյաց գավառի տիրոջ՝ Գարեգինի կինն էր: Նրա ամուսինը, Գարեգինը, փախել էր այն ժամանակ, երբ Պարսից Շապուհ թագավորը եկել էր Հայոց աշխարհը, իսկ Ռշտունյաց տիկինը (Համազասպուհին) պահվում էր Վան քաղաքի միջնաբերդում, Տոսպ գավառում: Իսկ անօրեն Վահանն ու Մերուժանը բերդապահին հրամայում էին որ տիկնոջ նեղե, իսկ եթե նա հանձն չառնե Մազդեզական կրոնը՝ այս դեպքում բարձր աշտարակից կախե և սպանե: Երբ Համազասպուհին հանձն չառավ Մազդեզական օրենքը՝ նրան հանեցին բարձր աշտարակը, որ գտնվում էր ժայռի բարձր գագաթին, դեպի ծովակի կողմը դարձած ետևի կողմից. նրան մերկացրին՝ ինչպես մորից մերկ և ոտներին չվան ձգելով՝ գլխիվայր կախեցին այն բարձր տեղից, և այսպես մեռավ կախաղանի վրա: Նրա մարմինը սպիտակ

տեսանելովն. կայր կախեալ յերևոյթ տեսիլ նշանակի, և փաղփաղէր մարմինն 'ի բարձունէն զոր օրինակ ձիւն սպիտակութեամբն. և բազում մարդիկ ժողովէին տեսանել օր քան օրէ, զի իբրև սքանչելի ինչ երևէր յաշխարհին: Յայս տեսիլ տիկնոջն Համազասպուհեայ՝ էառ կին մի դայեակն նորին, ապա նա պարէգօտ մի՝ զոր անակիւղս կոչեն, և էած զօտի ընդ մէջ իւր. և կայր առ բարձր զահուն քարին 'ի ներքոյ աշտարակին՝ զորմէ կախեալ էր զանն իւր, մինչև կողոպտեցաւ ամենայն մարմինք դիոցն: Եւ որչափ 'ի վայր վայրէին ոսկերքն, նա յիւր ծոցն ժողովէր բովանդակ զամենայն ոսկերս սանին. և առեալ գնաց յիւրսն:

Եւ այնչափ չար էին արքն երկոքին, զի անգամ իւրեանց ումեք ոչ ողորմէին. այլ անխնայութեամբ դատէին զօտարս և զիւրեանց ընդանիս: Ատրուշանս շինէին 'ի բազում տեղիս, և զմարդիկ հնազանդէին օրինացն Մազդեզանց. և բազում յիւրեանց սեփհականսն շինէին ատրուշանս, և զորդիս և զազգայինս իւրեանց տային յուսումն Մազդեզանցն: Ապա որդի մի Վահանայ, անուն Սամուէլ, եհար սատակեաց զՎահան զհայր իւր, և զՈրմիզդուխտ զմայր իւր՝ զքոյր Շապհոյ Պարսից թագաւորին. և ինքն փախստական լինէր յերկիրն Խաղտեաց:

էր, պայծառ տեսքով, կախված մնում էր տեսարանի համար: Նրա մարմինը բարձրում փայլում էր ձյունի սպիտակությամբ, և շատ մարդիկ օրեցօր գալիս էին նրան նայելու՝ իբրև մի սքանչելի երևույթի: Համազասպուհու այս տեսարանը նկատելով՝ մի կին, նրա դայակը, մի կարճ պարեգոտ հագավ, որին ասում են անակյուղոս[61], մեջքը գոտի կապեց, և մնում սպասում էր բարձր աշտարակի ներքև, ժայռի բարձր գագաթի տակ. որտեղից կախված էր իր սանը, մինչև որ քայքայվեց նրա ամբողջ մարմինը: Եվ որքան որ ներքև էին թափվում նրա ոսկորները՝ նա ժողովում էր, իր ծոցը դնում և այսպես իր սանիկի բոլոր ոսկորները ժողովեց, տարավ նրա ազգականների մոտ:

Եվ այնչափ չար էին այն երկու մարդիկ, որ մինչև անգամ իրենց մերձավորներին չէին խնայում, այլ անողորմաբար չարչարում էին թե՛ օտարներին և թե իրենց ընտանիքներին: Շատ տեղերում ատրուշաններ էին շինում, մարդկանց բռնի հնազանդեցնում էին Մազդեզական կրոնին, իրենց սեփական կալվածներում էլ շինում էին շատ ատրուշաններ և իրենց ազգականներին տալիս էին Մազդեզական կրոնը սովորելու: Ապա Վահանի մի որդին Սամուել անունով, զարկեց սպանեց իր հոր Վահանին և իր մոր Որմզդուխտին, Պարսից Շապուհ թագավորի քրոջը, և ինքը փախավ գնաց Խաղտիքի աշխարհը:

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ

# ԲԻՒԶԱՆԴԵԱՅ

## ՀՆԳԵՐՈՐԴ ԽՈՍՏԱԲԱՆՈՒԹԻՒՆ
## ԶՈՐ ԱՍԵԼՈՑ ԵՄ ԿԱՐԳԵԼ ԶԴՊՐՈՒԹԻՒՆ ԴՊՐՈՒԹԵԱՆՑ ԿԱՆՈՆ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ՄԱՏԵՆԻՑ

## ԲՈՒԶԱՆԴԻ
## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ

### ՑԱՆԿ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅԱՆ, ԻՆՉ ՈՐ ԱՍԵԼՈՒ ԵՄ, ՊԱՏՄԱԿԱՆ ՋՐՈՒՅՑՆԵՐԻ ԳԼՈՒԽՆԵՐ

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Ա. Պապի թագավորելը Հունաց աշխարհում. Հայաստան գալն ու աշխարհին տիրելը և ի՛նչպես աջողվեց՝ ինչ որ առհասարակ գործում էր:

Բ. Հայոց Մուշեղ զորավարի մասին, թե ի՛նչպես հարձակվեց Պարսից Շապուհ թագավորի բանակի վրա և սոսկալի ջարդ տվեց նրանց, այնպես որ Շապուհը մի ձիով ճողոպրում էր:

Գ. Հայր մարդպետի մասին, թե ի՛նչպես Պապը հրամայեց նրան սպանել:

Դ. Երկրորդ պատերազմի մասին, որ տեղի ունեցավ Բագրավանդ գավառի Բագրավան ավանում Հայոց Պապ թագավորի և Պարսից զորքերի միջև:

Ե. Մյուս պատերազմի մասին հայերի և պարսիկների միջև Ատրպատականի Գանձակ քաղաքում. Ուռնայրի լուր հաղորդելը, Հայոց այն անգամ էլ հաղթությունը տանելը:

Զ. Դղակ մարդպետի մասին, որին սահմանապահ նշանակեցին, թե ի՛նչպես նա խորհրդակից էր լինում Պարսից թագավորին և խոստանում է նրա ձեռքը մատնել Հայոց թագավորին, և Դղակի սպանվելը Պապ թագավորի հրամանով:

Է. Հայոց Արշակ թագավորի մահվան մասին, թե ի՛նչպես մեռավ Խուժաստան աշխարհում. Անուշ բերդում ինքն իր ձեռքով, և Դրաստամատն էր լինում նրա մահվան պատճառը:

Ը. Թե ի՛նչպես դադարեց պատերազմը պարսիկների կողմից, որից հետո Մուշեղ սպարապետը սկսեց կռվել նրանց հետ, որոնք ապստամբել էին Հայոց թագավորից, և մեծամեծ պատերազմներով շատ տեղեր նվաճում էր: Նախ և առաջ Հայոց թագավորի կալվածի մասին Ատրպատականում:

Թ. Նոշիրականի մասին:

Ժ. Կորդուքի, Կորդիքի և Տմորիքի մասին:

ԺԱ. Մարերի մասին:

ԺԲ. Արցախի մասին:

ԺԳ. Աղվանքի մասին:

ԺԴ. Կասպիցի մասին:

ԺԵ. Վրաստանի մասին:

ԺԷ. Յաղագս մեծաց Ռափաց:
ԺԸ. Յաղագս Անգեղ տանն:
ԺԹ. Յաղագս գաւառին Անձտայ:
Ի. Յաղագս եպիսկոպոսապետին Հայոց Ներսիսի, թէ որպիսի՛ այր, կամ զի՛նչ շատ գործեաց սքանչելիս:
ԻԲ. Յաղագս թագաւորին Պապայ, թէ զիա՛րդ էր դիւօք, կամ ո՛րպէս անօրէն:
ԻԳ. Յաղագս յանդիմանութեան սրբոյն Ներսէսի, զի հանապազ թշնամի էր թագաւորին Պապայ վասն մեղաց:
ԻԴ. Յաղագս մահուն մեծի եպիսկոպոսապետին Ներսիսի 'ի թագաւորէն Պապայ, ո՛րպէս կամ զիա՛րդ սպանաւ 'ի նմանէ:
ԻԵ. Յաղագս տեսլեանն, որ երեւեցաւ առանցն սրբոց Շաղիտայի և Եպիփանու, մինչդեռ նստէին 'ի լերինն:
ԻԶ. Յաղագս Եպիփանու սրբոյ:
ԻԷ. Յաղագս Եփիփանու սրբոյ:
ԻԸ. Յաղագս մեծամեծ նշանաց սքանչելեացն՝ որ երեւեցաւ յաստուծոյ 'ի Մամբրեա յետ գնալոյն անտի Եպիփանու:
ԻԹ. Յաղագս Յուսկայ՝ որ էր 'ի տոհմէն Աղբիանոս եպիսկոպոսի, զոր կացոյց փոխանակ Ներսիսի թագաւորն Պապ յիւրոց կամաց, առանց մեծի եպիսկոպոսապետին Կեսարու. և վասն այնորիկ յայնմհետէ բարձաւ իշխանութիւն հայրապետացն Հայոց զեպիսկոպոսս ձեռնադրել:
Լ. Յաղագս սգոյն՝ որ սգային զհայրապետեան Ներսէս, և լինէին զնմանէ կարօղին:
ԼԱ. Յաղագս թէ ո՛րպէս զկնի մեռանելոյն հայրապետին Ներսիսի, թէ ո՛րպէս 'ի նախանձ մտեալ առապելեաց թագաւորն Պապ զամենայն զեղեալն հրօսն կանոնիցն, որ ինչ միանգամ եդան 'ի Ներսիսէ առ կենդանութեամբ նորա 'ի նմանէ:
ԼԲ. Յաղագս թագաւորին Պապայ, թէ ո՛րպէս խռովեցաւ ի՛ թագաւորէն Յունաց, կամ ո՛րպէս սպանաւ 'ի զօրավարացն Յունաց:
ԼԳ. Յաղագս որ ինչ խորհեցան իշխանքն Հայոց. ապա անցին կացին յուռ:
ԼԴ. Յաղագս թագաւորելոյն Վարազդատայ 'ի վերայ երկրին Հայոց յետ Պապայ:
ԼԵ. Յաղագս թէ ո՛րպէս 'ի բանս չարախօսութեան և անմիտ մարդկան եկեալ թագաւորն Վարազդատ, և զզօրավարն Հայոց զՄուշեղ սպանանէր:
ԼԶ. Յաղագս անմտութեան կարծեացն ընտանեացն Մուշեղի և այլ մարդկան:
ԼԷ. Յաղագս գալոյն Մանուէլի 'ի գերութենէ Պարսից, և խնդրելոյ զվրէժն Մուշեղայ, և հալածելոյ զթագաւոր զՎարազդատ յերկրէն Հայոց:
ԼԸ. Յաղագս թէ զիա՛րդ սպարապետն Հայոց Մանուէլ հանդերձ ամենայն աշխարհաւն ձեռն ետ 'ի թագաւորն Պարսից, և մարզպան և աշխարհակալ աշխարհին Հայոց առ զառաջինն 'ի թագաւորէն Պարսից զՍուրէն, և մեծաւ պարգեօք մեծարեցաւ 'ի նմանէն. կամ որպէս խարամանկութեամբ Մերուժանայ Արծրունւոյ եղև ապստամբութիւնն և պատերազմունք յուզեցան:
ԼԹ. Յաղագս Գումանդ Շապհոյ, զի առաքեցաւ 'ի թագաւորէն Պարսից տալ պատերազմ ընդ Հայս, և սատակեցաւ 'ի Մանուէլէ զօրօք իւրովք հանդերձ:
Խ. Յաղագս Վարազայ, թէ ո՛րպէս կամ զիա՛րդ առաքեցաւ 'ի թագաւորէն Պարսից, և սատակեցաւ 'ի Մանուէլէ իբրև զառաջինն:

ԺԶ. Աղձնիք գավառի մասին:

ԺԷ. Մեծ Ծոփքի մասին:

ԺԸ. Անգեղտան մասին:

ԺԹ. Անձիտ գավառի մասին:

Ի. Հայոց Մուշեղ սպարապետի մասին:

ԻԱ. Հայոց Ներսես եպիսկոպոսապետի մասին, թե ի՛նչպիսի մարդ էր և ո՛րքան սքանչելիքներ գործեց:

ԻԲ. Պապ թագավորի մասին, թե ի՛նչպես դևերից բռնված ու անօրեն մարդ էր:

ԻԳ. Սուրբ Ներսեսի հանդիմանությունը Պապ թագավորին, որին թշնամի էր նրա մեղքերի պատճառով:

ԻԴ. Մեծ եպիսկոպոսապետ Ներսեսի մահվան մասին, թե ի՛նչպես սպանվեց Պապ թագավորից:

ԻԵ. Տեսիլքի մասին, որ երևաց սուրբ Շաղիտային և Եպիփանին, մինչ նստած էին լեռան վրա:

ԻԶ. Սուրբ Շաղիտայի մասին:

ԻԷ. Սուրբ Եպիփանի մասին:

ԻԸ. Մեծամեծ սքանչելի նշանների մասին, որոնք Մամբրեում երևացին սատանաց՝ Եպիփանի այնտեղից մեկնելուց հետո:

ԻԹ. Հուսիկի մասին, որ Աղբիանոս եպիսկոպոսի տոհմից էր և որին Պապ թագավորը Ներսեսի փոխանակ նշանակեց իր կամքով, առանց Կեսարիայի մեծ եպիսկոպոսապետին, որի պատճառով այնուհետև Հայոց կաթողիկոսների՝ եպիսկոպոս ձեռնադրելու իշխանությունը դադարեց:

Լ. Թե ի՛նչպես սգում էին Ներսես հայրապետին և նրա կարոտը քաշում:

ԼԱ. Թե ի՛նչպես Ներսես հայրապետի մեռնելուց հետո Պապ թագավորը, նախանձից շարժված, տապալեց այն բոլոր կարգ ու կանոնը, որ սահմանել էր Ներսեսը իր կենդանության ժամանակ:

ԼԲ. Պապ թագավորի մասին, թե ի՛նչպես երես դարձրեց Հունաց թագավորից և սպանվեց Հունաց զորագլուխներից:

ԼԳ. Թե ի՛նչպես խռովություն արին Հայոց իշխանները և ի՛նչպես լուռ կացին մնացին:

ԼԴ. Պապից հետո Վարազդատի թագավորելը Հայոց աշխարհի վրա:

ԼԵ. Թե ի՛նչպես Վարազդատ թագավորը չարամիտ և անմիտ մարդկանց խոսքերին լսելով սպանում էր Հայոց զորավար Մուշեղ սպարապետին:

ԼԶ. Մուշեղի ընտանիքի և այլ մարդկանց անմիտ կարծիքի մասին:

ԼԷ. Մանուելի դարձը պարսկական գերությունից, Մուշեղի վրեժը պահանջելը և Վարազդատին Հայաստանից հալածելը:

ԼԸ. Թե ի՛նչպես Հայոց Մանուել սպարապետը բոլոր աշխարհի հետ ձեռք մեկնեց Պարսից թագավորին, և սկզբում Հայոց աշխարհի մարզպան և կառավարիչ բերեց Պարսից թագավորի կողմից Սուրենին և մեծ պարգևներ ստացավ Շապուհից, և թե ի՛նչպես Մերուժան Արծրունու խորամանկությամբ ապստամբություն ծագեց և պատերազմներ առաջ եկան:

ԼԹ. Գումանդ Շապուհի մասին, որ Պարսից թագավորի կողմից ուղարկվեց հայերի հետ պատերազմելու, և իր զորքերի հետ ջարդվեց Մանուելից:

Խ. Վարազի մասին, թե ի՛նչպես ուղարկվեց Պարսից թագավորից և Մանուելից ջարդվեց առաջինի նման:

ԽԱ. Յաղագս Մոկանայ, որ առաքեաց դարձեալ թագաւորն Պարսից ՚ի վերայ երկրին Հայոց և ՚ի վերայ Մանուէլի զօրօք բազմօք, և սատակեցաւ ՚ի Մանուէլէ իբրև զառաջինսն:

ԽԲ. Յաղագս խաղաղութեան Հայոց ամս եւթն:

ԽԳ. Յաղագս Մերուժանայ Արծրունւոյ, որ հանդերձ զօրօքն Պարսից եկն ՚ի վերայ Մանուէլի, և սատակեցաւ ՚ի նմանէ:

ԽԴ. Յաղագս թէ զիա՛րդ թագաւորեցոյց Մանուէլ մեծ սպարապետն զմանուկն Արշակ. ապա և ինքն Մանուէլ մահու մեռանէր:

ԽԱ. Մուշկանի մասին, որին Պարսից թագավորը դարձյալ ուղարկեց մեծ զորքով Հայոց աշխարհի և Մանուելի վրա և Մանուելից ջարդվեց առաջինների նման:

ԽԲ. Յոթը տարի տևող խաղաղության մասին:

ԽԳ. Մերուժան Արծրունու մասին, որ Պարսից զորքով եկավ Մանուելի վրա և նրանից սպանվեց:

ԽԴ. Թե ի՛նչպես Մանուելը սպարապետը թագավորեցրեց մանուկ Արշակին, նաև ինքն էլ մեռավ:

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ

### ԿԱՆՈՆՔ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐՔ ՄԱՏԵՆԻՑ ՏԱՆ ՈՐԴՒՈՑՆ ԹՈՐԳՈՄԵԱՅ ԻՇԽԱՆԻՆ ՀԱՅՈՑ

### Ա.

ՅԱՂԱԳՍ ԹԱԳԱՒՈՐԵԼՈՑ ՊԱՊԱՅ ՅԵՐԿՐԻՆ ՅՈՒՆԱՑ, ԵՒ ԳԱԼՈՑ Ի՛ ՀԱՅՍ, ԵՒ ՅԻՆՔՆ ՈՒՆԵԼՈՅ ԶԱՇԽԱՐՀ ԻՒՐ, ԵՒ ԿԱՄ ՈՐ ԻՆՉ ՄԻԱՆԳԱՄ ԳՈՐԾԵԱՑ, ԵՒ ՅԱՋՈՂԵՑԱՒ ՆՄԱ

Ապա յետ այսր ամենայնի Մուշեղ որդի Վասակայ ժողովեաց զամենայն ազատագունդ մարդկանն մնացելոյն՝ որ միանգամ մնացեալ էին, և չոգաւ ճանդերձ ընծայիւք առ թագաւորն Յունաց։ Եւ եցոյց զպաղատանս աշխարհին Հայոց, և զամենայն անցս տառապանաց՝ որ անցեալ էր ընդ նոսա, և խնդրեաց ՚ի կայսերէն զՊապ զորդի Արշակայ թագաւոր ՚ի վերայ Հայոց աշխարհին։ Մեծ թագաւորն Յունաց թագաւորեցոյց զՊապ զորդին Արշակայ ՚ի վերայ աշխարհին Հայոց, որպէս և խնդրեաց նա ՚ի նմանէ. և մեծապէս թիկունք լինէր արքայն Յունաց. զՏէրենտ անուն ստրատելատն և զԱդէ ոմն կոմս արձակէին ընդ արքային Պապայ յերկիրն Հայոց վեց հարիւր բիւրու։

Եւ եկին հասին ՚ի սահմանս Հայոց. և Մուշեղ լինէր զօրավար սպարապետ Հայոց փոխանակ Վասակայ հօր իւրոյ։ Եւ գային ՚ի մի վայր ժողովէին ամենայն գրուեալք փախուցեալք թագուցեալք, որ էին յերկրին Հայոց. գային ՚ի մի վայր բովանդակէին, և լինէին ՚ի խնդիր սրբոյն մեծի հայրապետին Ներսէսի թագաւորն և ամենայն մարդիկ աշխարհին Հայոց, մեծամեծք գաւառակալք և գաւառատեարք։ Որք եկեալք ժողովեալք, զկաթողիկոսն զմեծն Ներսէս խնդրէին. զի գիտէին թէ նա կարող է աղօթս առնել, և խնդրել յաստուծոյ վասն շինութեան ամենայն աշխարհին Հայոց, և փրկել ՚ի թշնամեացն. և դարձեալ զինչ

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ

### ԹՈՐԳՈՄՅԱՆՑ ՏԱՆ՝ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ[162] ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԳԼՈՒԽՆԵՐ

### ՊԱՊԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ ՀՈՒՆԱՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆ ԳԱԼՆ ՈՒ ԱՇԽԱՐՀԻՆ ՏԻՐԵԼԸ. ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՋՈՂՎԵՑ՝ ԻՆՉ ՈՐ ԱՌՀԱՍԱՐԱԿ ԳՈՐԾՈՒՄ ԷՐ

Այս բոլորից հետո Մուշեղը, Վասակի որդին, ժողովեց բոլոր մարդկանց ազնվական գնդերից, որքան որ մնացել էին, և նրանց հետ միասին գնաց Հունաց թագավորի մոտ, Հայոց աշխարհի պաղատական խնդիրը ներկայացրեց, պատմեց բոլոր տառապանքները, որ անցել էին նրանց գլխով, և կայսրից խնդրեց՝ Պապին, Արշակի որդուն, թագավոր դնել Հայոց աշխարհի վրա: Հունաց մեծ թագավորը Պապին, Արշակի որդուն, թագավորեցրեց Հայոց աշխարհի վրա, ինչպես նա նրանից խնդրեց, և մեծ օգնություն ցույց տվեց Հունաց թագավորը, Պապ թագավորի հետ Հայոց աշխարհն ուղարկելով Տերենտ անունով սպարապետին և Ադե կոմսին վեց հարյուր բյուր զորքով:

Եկան հասան Հայոց աշխարհը. Մուշեղը դառնում էր Հայոց զորավար սպարապետ իր հոր Վասակի փոխանակ: Եվ Հայոց աշխարհի բոլոր այն մարդիկ, որոնք ցրվել, փախել, թաքնվել էին, գալիս, մի տեղ էին հավաքվում: Եվ թագավորն և աշխարհի բոլոր մարդիկ, մեծ և փոքր գավառների տերերը փնտրում էին Ներսես մեծ հայրապետին: Նրանք ժողովվելով փնտրում էին Ներսես մեծ կաթողիկոսին, որովհետև գիտեին, թե նա կարող է աղոթք անել և աստծուց խնդրել Հայոց աշխարհին շենություն և փրկություն թշնամիներից, որովհետև ինչ որ

և խնդրէր յաստուծոյ, տայր աստուած նմա. և միւ ևս, զի իմաստութեամբ իմն կարէր սոցա զօգտակար խրատն մատուցանել: Վասն այսորիկ ոչ եթէ փոքր ինչ էր խնդիրն այնպիսւոյն առն լինել, որ կարէր նոցա օգուտ խրատու իմաստութեան շնորհել, և ըստ ժամանակին դիպացն պատահելոյ՝ միտս օգտակարս դնել, որովք զճանապարհս՝ որ կայրն առաջի՝ գնալ մարթասցեն:

Ապա ինքն թագաւորն Պապ երթայր հասանէր գտանէր զեպիսկոպոսապետն Ներսէս հանդերձ աւագանովն Հայոց. աղաչէր զնա, զի հայր Հայոց ամենայն օգտի խրատու առաջնորդ՝ և խնդրեսցէ ևս վասն նոցա: Ապա մեծաւ ջանիւ հազիւ հաւանեցուցին զնա երթալ նմա ընդ նոսա 'ի բանակն արքունի. զի յաւուրց ժամանակին 'ի մահուանէն Գնելոյ մինչև յայն ժամանակն թագաւորութեանն Պապայ ոչ էր երթեալ նա 'ի բանակն արքունի: Ապա յայնմ ժամանակի մեծաւ աղաչանօք տարան զնա 'ի բանակն արքունի ընդ ինքեանս. և նա էր նոցա վերակացու և խրատատու, կարգիչ և առաջնորդ. և հանապազ խնդրէր վասն նոցա յաստուծոյ: Եւ էր իմաստութեան իրաց առաջնորդ, և հանապազ կցորդ հոգոց և բարձիչ վշտաց աղօթիւք իւրովք. և յամենայնի ամենայնիւ երբէք հայր երևեալ:

Ապա կարգէր կազմէր յօրինէր Մուշեղ սպարապետ զամենայն զգունդս Հայոց զօրացն, և առնէր հանդէս ամենայն զօրացն գնդին՝ որ հասին 'ի ձեռս նորա տասն հազար: Եւ ածէր զամենայն հանդէսն կարգեալս և պատրաստեալս վառեալս 'ի պատերազմ, զդրօշս փողփողեալս և նշանս արձակեալս. և ցուցանէր զհանդէս զօրացն Հայոց սպարապետն Հայոց Մուշեղ առաջի իւրեանց թագաւորին Պապայ, և մեծի քահանայապետին Ներսէսի, և առաջի Տէրենտի և Ադէի զօրագլխացն Յունաց: Եւ մեծ շնորհակալութիւն առնէր նմա թագաւորն Պապ Հայոց, մեծամեծ պարգևս շնորհէր զօրավարին Մուշեղի. և սոյնպէս զօրագլուխքն Հոռոմոց շնորհակալ լինէին նմա: Սոյնպէս և եպիսկոպոսապետն Ներսէս օրհնէր զզօրավարն Մուշեղ, և ասէր. Տէր Քրիստոս օրհնեսցէ զքեզ, և յաջողեսցէ քեզ, և տացէ քեզ զյաղթութեանն շնորհս զամենայն աւուրս կենաց քոց. 'ի ձեռն քո և 'ի ձեռն ազգի քո փրկեսցէ զերկիրս Հայոց մինչև յաւիտեան:

Ապա զօրավարն Հայոց Մուշեղ գունդ կազմեաց պատրաստեաց, և յառաջեաց հանդերձ Հայոց գնդաւն. առաջապահ անցանէր առաջի թագաւորին Պապայ և զօրացն Յունաց կայսերական գնդին: Ապա 'ի Դարանաղեաց գաւառին լկնեալ յարձակեցաւ Մուշեղն: Իբրև զայր[4] առաջապահին հասանէր 'ի միջնաշխարհն Հայոց, սպանանէր Մուշեղ զզօրագլուխսն Պարսից զԿարէնն և Զիկն, և զամենայն զզօրսն արկա-

նա աստծուց խնդրեր՝ աստված տալիս էր նրան. բացի սրանից նա իր իմաստությամբ կարող էր իրենց օգտակար խրատներ տալ: Ուստի կարևոր էին համարում փնտռել գտնել այն մարդուն, որ կարող էր նրանց օգտակար, իմաստուն խրատներ տալ և նայելով հանգամանքներին՝ իր ժամանակին օգտակար խորհուրդներ տալ:

Ապա ինքը Պապ թագավորը գնում փնտռում գտնում էր Ներսես եպիսկոպոսապետին, (և) բոլոր Հայոց ավագանիի հետ աղաչում էր նրան, որ հայր լինի բոլոր հայերին, օգտակար խրատներով առաջնորդե և իրենց համար աստծուն խնդրվածք անե: Մեծ ջանքերով հազիվհազ նրան հանեցրին, որ նրանց հետ արքունական բանակն երթա, որովհետև դեռ Գնելի մահվան ժամանակից մինչև Պապի թագավորության այդ ժամանակը նա արքունական բանակը չէր գնացել: Իսկ այժմ մեծ աղաչանքներով նրան իրենց հետ տարան արքունական բանակը: Եվ նա նրանց վերակացու և խրատատու եղավ, կարգադրող և առաջնորդ, և նրանց համար միշտ աստծուն խնդրվածք էր անում. առաջնորդում էր իմաստությամբ, միշտ մասնակից էր նրանց հոգսերին, վշտերն ամոքում էր աղոթքներով և ամենքի համար ամեն բանով իբրև հայր էր երևում:

Այնուհետև Մուշեղ սպարապետը կարգի էր բերում, կազմակերպում էր Հայոց զորքերի բոլոր գնդերը և զորահանդես էր կատարում բոլոր զորքերին, որ նրա ձեռքի տակ ժողովվեցին, թվով տասը հազար: Եվ կազմակերպած՝ պատերազմի համար սպառազինված գնդերի զորահանդեսը՝ ծածանվող դրոշակներով, բացած նշաններով, բերում հանդիսավոր կերպով ցույց էր տալիս իրենց Պապ թագավորին, Ներսես մեծ քահանայապետին, և Տերենտ և Ադե Հունաց զորագլուխներին: Եվ Հայոց Պապ թագավորը մեծ շնորհակալություն էր հայտնում Մուշեղ զորավարին ու մեծամեծ պարգևներ շնորհում: Նույնպես նրանից շնորհակալ էին լինում Հոռոմների զորագլուխները: Ներսես եպիսկոպոսապետն էլ օրհնում էր Մուշեղ զորավարին և ասում էր. «Քրիստոս տերը քեզ օրհնե, քեզ աջողություն տա, քեզ հաղթություն շնորհե քո բոլոր կյանքում, քո ձեռքով, քո տոհմի ձեռքով նա փրկե Հայոց աշխարհը մինչև հավիտյան»:

Ապա Հայոց Մուշեղ զորավարը գունդը կազմակերպեց, պատրաստեց և այս Հայոց գնդով իբրև առաջապահ գնաց Պապ թագավորից և Հունաց կայսերական գնդից առաջ: Ապա Դարանաղի գավառում Մուշեղը համարձակ[163] հարձակում էր գործում՝ երբ իբրև առաջապահ գալիս հասնում էր Հայաստանի միջնաշխարհը. այստեղ Մուշեղն սպանում էր Պարսից Զիկ և Կարեն զորագլուխներին. բոլոր զորքերը սրի բերան էր

նէր ի սուր սուսերի իւրոյ, եւ ոչ մի զոք ապրեցուցանէր: Եւ մինչեւ 'ի բուն 'ի սահմանսն ի՛ Գանձակ Ատրպատականի զերկիրն յիւր վարեալ, բռնացեալ ունէր:

Եւ եկն եմուտ թագաւորն Պապ յերկիրն Հայոց, եւ թագաւորեաց 'ի վերայ նորա. եւ թափեաց յինքն զամուր ամուր բերդիցն, զոր կալեալ էր պարսկացն. եւ բերդն Դարօնից, որ է յերկրին Կոգայ, ուր կային գանձք արշակունեացն սաստիկ յոյժ: Քանզի դիպեցան մտերիմք բերդակալքն. զի թէպէտ 'ի ժամանակէն՝ իբրեւ տարան զթագաւորն Հայոց զԱրշակ 'ի Պարսս՝ յայնմ հետէ ժամանակէ մարտեան ընդ բերդին ընդ այնմիկ պարսիկք, եւ ոչ կարացին առնուլ, մինչեւ եկն Պապ թագաւորն յերկիրն Հայոց. զի պահեցաւ գանձն եւ եհաս ամբողջ 'ի Պապ թագաւորն մինչեւ եկն: Եւ զօրսն Յունաց յԵռանեղ եւ 'ի Բախիշն ընդ ամենայն երկիրն Հայոց բաշխէին ընդ ամենայն գաւառսն. բայց միայն Մերուժանն չարագործ փախչէր միաձի:

Իսկ Մուշեղ զօրավարն հայաստանեաց շրջէր ընդ երկիրն, եւ աւերէր զաւրուշանսն Մազդեզանցն: Իսկ զՄազդեզունսն, որ միանգամ 'ի բուռն արկին, զամենեսեան տայր հրաման սպարապետն Մուշեղ ունել եւ հրով խորովել: Եւ բազում բերդակալս բերդացն շարամահս առնէին, եւ զբազում պատուաւոր տեարս՝ որ պատուականք էին առաջի թագաւորին Պարսից՝ ունէր ձերբակալս Մուշեղ, եւ տայր մորթել եւ լնուլ խոտով եւ կանգնել 'ի վերայ պարսպացն: Ընդ բազում տեղիս զայս առնէր 'ի վրէժս հօրն իւրոյ Վասակայ:

Եւ շինէին զամենայն աւերեալսն 'ի բշնամեացն, եւ զեկեղեցիսն նորոգեցին. եւ թագաւորութիւնն հաղ քան զհաղ նորոգէր, եւ իրք ժամանակին հաղ քան զհաղ յառաջադէմ աջողէին: Եւ սուրբն Ներսէս իմաստուն հայրապետն առաջնորդէր եւ լուսաւորէր, խրատէր եւ կարգէր եւ շինէր աղքատաց հանգիստ, որպէս եւ ինքն 'ի բնէ իսկ սովոր էր. եւ զվարս թագաւորութեանն իսկ յօրինէր ամենաբարի կրօնիւք, որպէս եւ տեսեալ էր իւր առ հնօքն թագաւորօքն: Եւ առաւել զկարգս եկեղեցւոյ պաշտամանն եպիսկոպոսաց երիցանց եւ սարկաւագաց, եւ շինուածս եկեղեցւոյ եւ վկայանոցաց զամենայն նորոգեաց ուսոյց եւ յարդարեաց:

Զօրավարն Հայոց Մուշեղ զգունդ իւր կազմէր, եւ երթայր 'ի սահմանսն՝ կալ անդ, զգուշացեալ զսահմանօքն երկրին իւրոյ՝ պահել զիւր աշխարհին հրամանաւ իւրոյ թագաւորին Պապայ:

տալիս, կենդանի չէր թողնում ոչ ոքի, և մինչև բուն սահմանը՝ Ատրպատականի Գանձակ քաղաքը, ամբողջ երկիրը գրավելով պահում էր:

Եվ Հայոց Պապ թագավորը եկավ մտավ Հայոց աշխարհը և թագավորեց նրա վրա. նա առավ բոլոր այն ամուր բերդերը, որ գրավել էին պարսիկները, տիրացավ և Դարոնք բերդին Կոգի երկրում, որտեղ պահվում էին Արշակունիների գանձերը շատ մեծ քանակությամբ, որովհետև բերդապահները հավատարիմ մարդիկ էին: Որովհետև թեպետ այն ժամանակից ի վեր, երբ Հայոց Արշակ թագավորին Պարսկաստան տարան, շարունակ պարսիկները կռվում էին այդ բերդի հետ, սակայն չկարողացան առնել. մինչև որ Պապ թագավորն եկավ Հայոց աշխարհը և գանձն ամբողջապես հասավ Պապ թագավորին: Իսկ Հունաց զորքերը (տեղավորվում էին) Խոանդում և Բախիշում և բաշխում էին Հայոց աշխարհի բոլոր գավառներում[164]. բայց միայն շարագործ Մեհրուժանը փախչում էր մի ձիով:

Եվ Հայոց Մուշեղ զորավարը շրջում էր երկրում. ավերում էր Մազդեզական ատրուշանները, և մազդեզականներին, որքան որ ձեռք էին անցնում՝ Մուշեղ սպարապետը հրամայում էր բռնել ու կրակով խորովել: Եվ բերդերի շատ բերդապահներ չարաչար մահով սպանում էին, և շատ պատվավոր ազնվականների, որոնք Պարսից թագավորից պատիվ էին վայելում՝ ձերբակալ էր անում Մուշեղը, մորթերը հանել էր տալիս, խոտով լցնել և պարիսպների վրա կանգնեցնել: Այսպես նա անում էր իր հոր Վասակի վրեժն առնելու համար:

Շինում էին բշնամիներից ավերված բոլոր տեղերը, եկեղեցիները նորոգում. և թագավորությունը հետզհետե նորոգվում էր, և գործերը կամաց կամաց կարգի էին գալիս, աջողվում էին: Իսկ սուրբ Ներսեսը, իմաստուն հայրապետը, առաջնորդում, լուսավորում էր, խրատում և կարգավորում. շինում էր աղքատների համար ապաստարան, ինչպես ի բնե սովոր էր. կարգավորում էր և թագավորության վիճակը ամենաբարի կարգերով՝ ինչպես տեսել էր հին թագավորների ժամանակ: Մանավանդ նա բարեկարգեց եկեղեցական պաշտամունքը, եպիսկոպոսների, երեցների և սարկավագների (կյանքը). եկեղեցիների և վկայանոցների շենքերը ամբողջապես նորոգեց ու բարեկարգեց:

Իսկ Հայոց Մուշեղ զորավարը իր թագավորի՝ Պապի հրամանով կազմում էր իր գունդը, գնում էր երկրի սահմանագլուխը՝ և այնտեղ մնում էր՝ զգուշությամբ սահմանները պահելու, աշխարհը պահպանելու համար:

## Թ

### ՅԱՂԱԳՍ ԶՕՐԱՎԱՐԻՆ ՄՈՒՇԵՂԱՅ ՀԱՅՈՑ, ԹԷ ՈՐՊԷՍ ԱՆԿԱՒ 'Ի ՎԵՐԱՅ ԲԱՆԱԿԻՆ ՇԱՊՀՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ԵՀԱՐ ԶՆԱ 'Ի ՀԱՐՈՒԱԾՍ ԱՆՀՆԱՐԻՆՍ, ՄԻՆՉ ԶԻ ՄԻԱՅՆ ՇԱՊՈՒՀ ԺՈՂՈՎԵՑԻ

Ապա Մուշեղ որդի Վասակայ, սպարապետն Հայոց մեծաց, ընդ-րեաց իւր արս ընտիրս միամիտս ազատս ազգայինս քառասուն հա-զար, միաբանս միակամս, և կազմեաց զնոսա ձիով և բոշակաւ և զինու. և առեալ զնոսա ընդ իւր, երթայ նստել 'ի սահմանս Ատրպատ-նացն, և պահել զաշխարհն Հայոց: Ապա յայնմ ժամանակի կազմեաց պատրաստեցաւ Շապուհ արքայ Պարսից ամենայն կազմութեամբ զօ-րովք իւրովք, եկն եհաս յերկիրն Ատրպայականի. և Մեռուժանն առաջ-նորդ զնդին բանակի նորա, և բուն բանակն ուրեմն թագաւորին 'ի Թաւրէշն բնակեալ էին:

Եւ հասանէր սպարապետն զօրավարն Հայոց Մուշեղ, անկանէր 'ի վերայ բանակին քառասուն հազարաւ, և անդէն ձեռն 'ի գործ արարեալ կոտորէր: Ապա միաձի մազապուր թագաւորն Պարսից Շապուհ են-ղոպրեալ փախչէր. և զամենայն կարեան բանակին առ հասարակ ընդ սուր հանէր Մուշեղ հանդերձ զօրօքն Հայոց: Զի բազումս կոտորէին, և զբազումս յաւազանոյն Պարսից ձերբակալս առնէին, և առնուին զզան-ձըս թագաւորին Պարսից յաւարի. և ըմբռնէին զտիկնանց տիկինն հան-դերձ այլովք կանամբքն: Եւ զամենայն մաշկաւարզան 'ի բուռն արկա-նէր Մուշեղ սպարապետն, և զամենայն աւազանին՝ արս իբրև վեց հարիւր՝ հրամայէր մորթել զօրավարն Հայոց Մուշեղ, և լնուլ խոտով. և տայր բերել առ Պապ արքայն Հայոց: Առնէր զայս 'ի վրէժս հօրն իւրոյ Վասակայ:

Բայց զկանայսն Շապհոյ թագաւորին Պարսից ոչ ումեք ինչ թոյլ տայր Մուշեղ զօրավարն Հայոց անարգել ինչ զնոսա ումեք. այլ ժա-նաւարս տայր նոցա կազմել ամենեցուն, և հանեալ արձակէր զամե-նեսեան զհետ առն նոցա Շապհոյ արքայի: Եւ 'ի պարսկացն ընդ նոսա արձակէր, զի երթիցեն առ Շապուհ թագաւորն Պարսից ողջս և անա-րատս: Իսկ թագաւորն Պարսից զարմացեալ ընդ բարերարութիւնն Մու-շեղի և ընդ քաջութիւնն և ընդ ազատութիւնն, զի ոչ արար ինչ նմա յաղագս կանանցն բշնամանս: Եւ էր 'ի ժամանակին յայնմիկ երիվարն Մուշեղի, ներմակ ձի մի. իսկ թագաւորն Պարսից Շապուհ յորժամ առնոյր գինի 'ի մատուցեան ըմպել, յորժամ ուրախութեանն իւրոյ խրա-խութիւնս առնէր զօրացն իւրոց, ասէր. Ճերմակաձին գինի արբցէ: Եւ եւս նկարել զտաշտ 'ի պատկեր զՄուշեղ ներմակաւն. և 'ի ժամ ուրա-

## Ը

### ՀԱՅՈՑ ՄՈՒՇԵՂ ԶՈՐԱՎԱՐԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՐՁԱԿՎԵՑ ՊԱՐՍԻՑ ՇԱՊՈՒՀ ԹԱԳԱՎՈՐԻ ՎՐԱ ԵՎ ՍՈՍԿԱԼԻ ՋԱՐԴ ՏՎԵՑ ՆՐԱՆ, ԱՅՆՊԵՍ ՈՐ ՇԱՊՈՒՀԸ ՄԻ ՁԻՈՎ ՃՈՂՈՊՐՈՒՄ ԷՐ

Ապա Մուշեղը, Վասակի որդին, Մեծ Հայքի սպարապետը, ընտրեց քառասուն հազար ընտիր և հավատարիմ մարդիկ ազնվականներից և ազգականներից, միաբան և միակամ, պատրաստեց նրանց համար ձի, զենք և ուտեստ, և իր հետ առնելով գնաց Ատրպատականի սահմանում նստեց՝ Հայոց աշխարհը պահպանելու համար: Նույն ժամանակ Պարսից Շապուհ թագավորն էլ իր զորքով ամենայն պատրաստությամբ եկավ Ատրպատական աշխարհը. և նրա բանակի մի գնդի առաջնորդն էր Մերուժանը, իսկ թագավորի բուն գունդը մնում էր Թավրեժում:

Եվ Հայոց զորավար ու սպարապետ Մուշեղը իր քառասուն հազարով գալիս հարձակվում էր (Շապուհի) բանակի վրա և կոտորում էր բոլորին: Պարսից Շապուհ թագավորը մի ձիով փախչելով ճողոպրում էր, իսկ բանակի ամբողջ բազմությունը սրի էր անցկացնում Մուշեղը Հայոց զորքի հետ: Շատերին կոտորում էին, Պարսից ավագներին շատերին ձերբակալում էին, ավար էին առնում Պարսից թագավորի գանձերը, բռնում էին նաև տիկնանց տիկնոջ՝ մյուս կանանց հետ միասին: Մուշեղը ձեռք էր բերում նաև մաշկավարզանը[165], իսկ մոտ վեց հարյուր ավագների Հայոց Մուշեղ զորավարը հրամայում էր մորթել, մորթերը հանել ու խոտով լցնել, և ուղարկում էր Հայոց Պապ թագավորին: Այսպես նա անում էր իր հոր Վասակի վրեժն առնելու համար:

Բայց Պարսից Շապուհ թագավորի կանանց որևէ անարգանք հասցնել թույլ չէր տալիս Հայոց Մուշեղ զորավարը, այլ հրամայում էր բոլորի համար ժանվարներ պատրաստել և նրանց բոլորին ազատ արձակեց իրենց ամուսնու՝ Շապուհ թագավորի ետևից: Պարսիկներից էլ մարդիկ արձակեց, որ ողջ և անարատ գնան Պարսից Շապուհ թագավորի մոտ: Պարսից թագավորը զարմացավ Մուշեղի բարերարության, քաջության և ազնվության վրա, որ իրեն ոչ մի անարգանք չհասցրեց կանանց վերաբերմամբ: Այդ ժամանակները Մուշեղը մի ճերմակ ձի ուներ. իսկ Պարսից Շապուհ թագավորը երբ գինու (գավաթը) ձեռքն էր առնում, երբ ուրախության ժամանակ իր զորքին հյուրասիրում էր՝ ասում էր. «Ճերմակաձին թող գինի խմե»: Եվ մի գավաթի վրա նկարել տվեց Մուշեղի պատկերը՝ ճերմակ ձին հեծած, և ուրախությունների ժամանակ

խութեանն իւրոյ դնէր զուաշտն առաջի իւր, և յիշէր հանապազ զնոյն բանս ասելով՝ թէ ճերմակածին զինի արբցէ:

Այլ Մուշեղ և ամենայն զօրքն Հայոց անչափ առին զաւար 'ի բանակէն Պարսից, և անչափ լցան գանձօք և ստացուածովք. և բազում աւարամասն Պապայ պահէին թագաւորին իւրեանց. և զօրացն Հայոց՝ որ անդէն առ թագաւորին Պապայ էին մնացեալ՝ հանէին աւարամասն և զօրավարացն Յունաց՝ որ էին առ թագաւորին Հայոց. նոյնպէս և ամենայն զօրացն տային բաշխիլ 'ի մեծամեծ աւարացն ածելոցն: Այլ իբրև դարձան զօրքն Հայոց յաշխարհն իւրեանց, բազումք 'ի զօրացն Հայոց ամբաստանէին առ թագաւորին Պապայ զՄուշեղէ զսպարապետէն, թէ ընդէ՞ր արձակեաց զկանայս թագաւորին Պարսից զթշնամւոյն մերոյ և թագաւորին Հայոց Պապայ. վասն այսր իրաց ոչ ինչ սակաւ լինէր թշնամութեամբ ընդ Մուշեղի մինչև 'ի բազում ժամանակս:

Դ

ՅԱՂԱԳՍ ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻՆ, ԵԹԷ ՈՐՊԷՍ ՍՊԱՆԱՆԵԼ ՀՐԱՄԱՅԵԱՑ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՊ

Ապա պատմեցաւ թագաւորին Պապայ յաղագս օրերացն[42] զոր եդ Հայր Մարդպետն տիկնոջն Փառանձեմայ, մօր թագաւորին Պապայ, թշնամանս ծաղանաց 'ի բերդարգել պաշարմանն. զի իբրև զբոզ մի, այնպէս թշնամանեաց զնա 'ի ժամանակի՝ իբրև եմուտ անդր զաղտագողի, և եդ անարգանս տիկնոջն, և եկն ել անտի և փախեաւ. եւ տուն զայս ամենայն զրոյց թագաւորին: Ապա մինչդեռ Մարդպետն Հայր զիւրով իշխանութեամբ շրջէր յերկրին Տարօնոյ, և Մուշեղ սպարապետն Հայոց էր 'ի նմին գաւառին յիւրում բերդին՝ որում Ողական կոչեն, որ կայ 'ի վերայ գետոյն Եփրատայ, եկն եհաս մի դեսպան յարքայէն Պապայ առ զօրավարն Հայոց Մուշեղ. և ունէր առ նա հրովարտակ, և գրեալ էր 'ի հրովարտակին անդր հրաման առ նա, զի չարաման սատակեսցէ զՀայր Մարդպետն: Եւ նա իբրև զայս հրամանս ընկալեալ 'ի ձեռն առնոյր, յղէր առ Մարդպետն Հայր դաւով, և մեծարանաց պատճառանաւ առ ինքն կոչէր յՈղականն. և էին աւուրք ձմերայնոյ, և սառնակացեալ կցեալ էր գետն Եփրատ: Ապա կոչեալ եղև առ նա Հայր Մարդպետն իբրև 'ի պատիւ մեծարանաց. եկն եմուտ Մարդպետն 'ի բերդն յՈղական: Եւ հրաման զօրավարն Մուշեղ զօրականացն ունել զնա, և մերկանալ իբրև 'ի մօրէ, և կապել զձեռս նորա 'ի ներքոյ ծնկաց նորա, և իջուցանել զնա 'ի գետն, և դնել 'ի վերայ սառինն կցելոյ զե-

այդ գավառը ղնում էր իր առաջ և շարունակ նույն բանն էր կրկնում—«ճերմակածին քող գինի խմե»:

Իսկ Մուշեղը և Հայոց բոլոր զորքը Պարսից բանակի ավարն առան և լիացան գանձերով ու ստացվածքներով. ավարից մեծ բաժին պահում էին իրենց Պապ թագավորի համար, նույնպես և Հայոց այն զորքերի համար, որ մնացել էին Պապ թագավորի մոտ: Ավարից մաս հանեցին նաև Հունաց զորավարների համար, որոնք Պապ թագավորի մոտ էին, այնպես էլ բոլոր զորքերին բաժին[166] էին հանում բերած ավարներից:

Բայց երբ Հայոց զորքերը իրենց աշխարհը դարձան՝ Հայոց զորքերից շատերը Պապ թագավորի առաջ ամբաստանում էին Մուշեղ սպարապետին, թե ինչո՛ւ նա ազատ արձակեց Պարսից թագավորի կանանցը, որ մեր թշնամին է և Հայոց Պապ թագավորի թշնամին: Այս բանի պատճառով (Պապը) երկար ժամանակ ոչ-ինչ թշնամությամբ էր վարվում Մուշեղի հետ:

## Գ

## ՀԱՅՐ ՄԱՐԴՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԸ ՀՐԱՄԱՅԵՑ ՆՐԱՆ ՍՊԱՆԵԼ

Ապա Պապ թագավորին պատմեցին այն վիրավորանքների մասին, որ Հայր մարդպետը հասցրել էր Պապ թագավորի մորը՝ Փառանձեմին, այն անարգանքները, որ նա հասցրեց (Փառանձեմի) բերդում պաշարված ժամանակ. որովհետև այդ ժամանակ նա բերդը մտավ զաղտուկ, ինչպես մի բոզի անարգեց տիկնոջը և դուրս եկավ ու փախավ: Այս բոլորը պատմեցին թագավորին: Արդ՝ երբ Հայր մարդպետը շրջում էր իր իշխանության մեջ Տարոն գավառում և Մուշեղն էլ նույն գավառումն էր, իր Ողական ամրոցում, Եփրատ գետի վրա՝ Պապ թագավորից դեսպան եկավ Հայոց Մուշեղ զորավարի մոտ և բերեց նրան մի հրովարտակ: Հրովարտակում հրամայված էր Մուշեղին, որ շարաշար մահով սպանե Հայր մարդպետին: Այս հրամանն ստանալով՝ (Մուշեղը) նենգությամբ մարդ էր ուղարկում Հայր մարդպետի մոտ և հրավիրում էր նրան իր մոտ Ողական ամրոցը մեծարանքի համար: Ձմեռվա ցուրտ օրեր էին, և Եփրատ գետը սառել էր: Հայր մարդպետը, մեծարանքի հրավիրվելով՝ եկավ մտավ Ողական բերդը: Եվ Մուշեղ զորավարը զորքին հրաման տվեց՝ նրան բռնել, մորից մերկ մերկացնել, ձեռները ծնկների ներքև կապել, գետն իջեցնել և դնել գետի սառույցի

տոյն. և սատակեցաւ անդէն: Եւ եղև 'ի վաղիւ անդր շոգան տեսին, զի ուղիղ գլխոյն 'ի ցռոյն վայրեալ 'ի բաց իջեալ թափեալ էր ընդ քիթս նորա: Եւ փոխանակ 'ի նորա տեղի հայրութեան մարդպետութեանն զԴրգղակ ոմն անուն, որ յաւուրս Արշակայ թագաւորին կամ Տիրանայ հօր նորա զամու միոջ լեալ նոյն գործ մարդպետութեանն:

Դ

ՅԱՂԱԳՍ ԴԱՐՁԵԱԼ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ, ՈՐ ԵՂԵՒ 'Ի ԲԱԳԱՒԱՆ ՅԱՒԱՆԻՆ ԲԱԳՐԵՒԱՆԴ ԳԱՒԱՌԻՆ ԸՆԴ ՊԱՊ ԹԱԳԱՒՈՐՆ ՀԱՅՈՑ ԵՒ ԸՆԴ ԶՕՐՍՆ ՊԱՐՍԻՑ

Ապա յետ այսորիկ թագաւորն Պարսիցն կրկին լինէր զօրաժողով ամենայն ուժով և ամենայն զօրութեամբն իւրով. խաղայր գնայր ամենայն զօրօքն իւրովք հասանէր յաշխարհն Ատրպայականի: Եւ ինքն անդր ղաղարէր սակաւուք, և զամենայն զօրացն զբազմութիւն առաքէր 'ի վերայ թագաւորին Պապայ 'ի պատերազմ: Եւ եկեալ զօրքն Պարսից ասպատակ առնէին և 'ի միջնաշխարհն Հայոց. ապա և թագաւորն Հայոց Պապ զօրաժողով առնել հրամայէր 'ի Բագաւանն: Եւ զօրքն Յունաց, որ էին յեռանդին 'ի Բախշանն[43], 'ի մի վայր ժողովեցան առ թագաւորն Պապ, և ածին փոս զբանակաւն իւրեանց մօտ 'ի լեառնն 'ի Նպատ մեր 'ի գետն Եփրատ, և կազմեալ պատրաստեալ կային գործոյ ճակատուն:

Ապա զօրավարն սպարապետն Հայոց Մուշեղ ժողովէր զամենայն զօրսն Հայոց աւելի եւս քան զինուն հազար, և կազմէին պատրաստութեամբ: Իսկ իբրև զօրահաւաքն առնէր Շապուհ Պարսից թագաւորն զզօրս իւր 'ի վերայ աշխարհին Հայոց և 'ի վերայ զօրացն Յունաց, Ուռնայր արքայ Աղուանից անդ էր առ թագաւորին Պարսից: Ապա յառաջ կայր և խնդրէր պարգևս Ուռնայր 'ի Շապհոյ արքայէն Պարսից, և ասէր՝ թէ կամ լիցի քեզ, արանց քաջ[44], զի և ինձ պարգև հրաման տացես, զի Հայոց զնդին Պապայ արքային ես ինձէն՝ ելից իմով զնդովս նահատակ: Զի Արեաց զնդին պատեհ է, դիպան ելանել զօրացն Յունաց, իսկ ես իմով զնդաւս Հայոց իշխանացն ելից: Եւ Շապուհ թագաւորն հաճեցաւ, և շնորհ կալաւ, և հրամայեաց: Բայց Մերուժանայ Արծրունւոյ պատասխանի տուեալ Ուռնայրի, ասաց. Աստ արկեր զգաֆւ գիրկս. բայց թէ ժողովել կարիցես, մեծ զարմանք իցեն: Եւ գաղտուկ խորհրդով զայս գուշակութիւն Մերուժանն 'ի ձեռն հրեշտակի առ Մուշեղ զօրավարն Հայոց հասուցանէր՝ թէ գիտեա և պատրաստեաց, Մու-

վրա: Այնտեղ էլ սատկեց: Մյուս օրը գնացին տեսան, որ ցռից գլխի ուղեղը քթից դուրս էր թափել: Նրա փոխանակ Հայր մարդպետի պաշտոնին (նշանակեցին) Դղակ անունով մեկին, որ մի անգամ արդեն Արշակ թագավորի կամ նրա հոր Տիրանի ժամանակ, վարել էր նույն մարդպետության պաշտոնը:

Դ

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ԲԱԳՐԱՎԱՆԴ ԳԱՎԱՌԻ ԲԱԳՐԱՎԱՆ ԱՎԱՆՈՒՄ ՀԱՅՈՑ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ԵՎ ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ՄԻՋԵՎ

Սրանից հետո Պարսից թագավորը նորից զորաժողով էր լինում բոլոր ուժով ու զորությամբ, և բոլոր զորքերովը շարժվում գալիս հասնում էր Ատրպատական աշխարհը: Ինքը քիչ զորքերով մնում էր այնտեղ, իսկ զորքերի բոլոր բազմությունը պատերազմի էր ուղարկում Պապ թագավորի դեմ: Պարսից զորքը գալով ասպատակում էր և հասնում մինչև Հայաստանի միջնաշխարհը: Այն ժամանակ Հայոց Պապ թագավորն էլ հրամայում էր զորաժողով անել Բագավանում: Հունաց զորքն էլ, որ գտնվում էր Եռանդում ու Բախիշում, եկավ, միասին ժողովվեցին Պապ թագավորի մոտ, իրենց բանակի շուրջը փոս կարեցին Նպատ լեռան մոտ, Եփրատ գետից ոչ հեռու կազմակերպվեցին, պատրաստվեցին ճակատամարտի:

Ապա Հայոց Մուշեղ սպարապետը ժողովում էր հայկական զորքը, ավելի քան իննսուն հազար մարդ, կազմակերպեցին, պատրաստվեցին: Իսկ երբ Պարսից Շապուհ թագավորը իր զորքերը բաժանում էր Հայոց աշխարհի և Հունաց զորքերի դեմ՝ այնտեղ էր պատահում, Պարսից թագավորի մոտ, Աղվանից Ուռնայր թագավորը: Արդ՝ Ուռնայրը առաջ էր գալիս և Պարսից Շապուհ թագավորից պարգև էր խնդրում, ասելով. «Արա՛նց քաջ, շնորհ արա և ինձ իբրև պարգև հրաման տուր, որ Պապ թագավորի հայկական զորքին ես ինքս դուրս գամ ախոյան իմ գնդով, որովհետև Արյաց գնդին պատեհ և հարմար է Հունաց զորքերի դեմ դուրս գալ, իսկ ես իմ գնդովս Հայոց իշխաններին դեմ դուրս կգամ»: Շապուհ թագավորը հավանություն տվեց, շնորհակալություն հայտնեց ու հրամանը տվեց: Բայց Մերուժան Արծրունին պատասխան տվեց ու ասաց Ուռնայրին. «Դու գազը գրկեցիր, շատ զարմանք կլինի՝ երբ ժողովես»: Եվ Մերուժանը մի մարդու միջոցով գաղտնապես լուր ուղարկեց Հայոց Մուշեղ զորավարին. «Գիտցիր և պատրաստվի՛ր, Մուշեղ, որ Աղվանից Ուռնայր թագավորը մեծ պարծանքով քեզ պարգև է խնդրել:

չեղ. զի մեծաւ պարծանօք պարգև խնդրեալ է զձեզ Ուռնայրի արքային Աղուանից. արդ գիտես զինչ գործիցես:

Բայց մինչ դեռ խօսեցեալ գային զօրքն Պարսից 'ի վերայ Հայոց, և Ուռնայր արքայ Աղուանից իւրով գնդաւն ընդ նոսա, խօսէր թագաւորն Աղուանից ընդ այնոսիկ՝ որ ընդ իւրն էին. ասէր. Յանձն լիցի ձեզ, յիշելով 'ի ժամանակի՝ իբրև ձերբակալ արասցուք զզօրսն Յունաց, զբազումս 'ի նոցանէն ապրեցուցիք. զի կալեալս կապեալս տարցուք յաղթանս[45] 'ի գործ կաւագործութեան զաղատոս որմնաշէնս պիտոյից մերոց քաղաքաց ապարանից և այլոց պիտոյից: Այլ իբրև եկին հասին մերձեցան 'ի միմեանս գունդքն երկոքեան Յունացն և Պարսիցն, և հանդերձեալք խառնել ընդ միմեանս, ինքնին թագաւորն Հայոց Պապ վառեցաւ կազմեցաւ պատրաստեցաւ, և կամեցաւ 'ի ճակատ ելանել: Ապա չառնոյր զայն նմա յանձն Տերէնտն զօրավարն Յունաց, թէ 'ի ճակատ մտցէ. այլ ասէ. Թագաւորն Յունաց զմեզ վասն քո յղեաց, եթէ երթայք զնա պահեցէք. արդ իցէ՝ թէ քեզ դէպ ինչ տայցէ, մեք զմեր թագաւորն ո՞րո՞վ երեսօք տեսանեմք, կամ զի՞նչ տայցեմք նմա պատասխանի եթէ իցէ՝ և մեք աստի առանց քո ապրեսցուք և առ մեր թագաւորն հասանեմք, և լինիցիմք այնուհետև գլխապարտք առաջի մերոյ թագաւորին: Այլ արա դու, արքայ, զոր մեք ասեմք քեզ. առ դու զեպիսկոպոսապետդ Հայոց զՆերսէս, և ել նիստ 'ի վերայ Նպատ լերինն յամուր և յանկասկած տեղւոջ, և սուրբ արքեպիսկոպոսապետն Ներսէս արասցէ աղօթս և խնդրեսցէ 'ի տեառնէ, զի տէր տացէ մեզ զյաղթութիւն: Եւ 'ի բարձունէն նայեսցիս, և տեսջիր զջան վաստակոց պատերազմին մերոյ զքաջութիւն և զվատութիւն, զոր առաջի քո գործեսցեն:

Ապա թագաւորն Պապ հաւանեցաւ բանիցս այսոցիկ. առ ընդ իւր զմեծ քահանայապետն Ներսէս, և ելանէր նստէր 'ի վերայ Նպատական լերինն. և ամենայն զօրքն Յունաց և Հայոց իջանէին 'ի տեղի պատերազմին: Ապա եկն և զօրավարն սպարապետն Հայոց Մուշեղ, և եբեր զնշանսն իւր և զզէնն առ Ներսէս եպիսկոպոսապետն, զի օրհնեսցէ զնա, և իջցէ 'ի պատերազմ: Եւ 'ի ժամանակին յայնմիկ յիշեաց թագաւորն Պապ զհին զրոյցսն, և ասէ. Յիշեցի ես զայն, զի բարեկամ է Մուշեղն թագաւորին Պարսից Շապհոյ: Ո՛չ այդ այն Մուշեղն է, որ արձակեաց զկանայս թագաւորին Պարսից Շապհոյ հանդերձ ժանուարօք և վաշտականօքն. և լուեալ ևս է իմ, թէ 'ի պարսիկս խօսի. արդ մի՛ մտցէ դա 'ի ճակատ:

Ապա զօրավարն Հայոց Մուշեղ բարեխօս առնէր առ թագաւորն Պապ զմեծ քահանայապետն Ներսէս: Իսկ թագաւորն Պապ ասէ ցե-

Նայի՛ր թե ինչ պիտի անես»:

Բայց մինչ Պարսից զորքերը չվում գալիս էին[167] Հայոց վրա՝ նրանց հետ էր և Աղվանից Ուռնայր թագավորն իր գնդով: Աղվանից թագավորը խոսում էր իր մոտ եղողների հետ և ասում էր. «Ձեզ հիմակվանից հիշեցնում եմ, որ մտքերդ պահեք, երբ մենք Հունաց զորքերը ձերբակալենք՝ նրանցից շատերին կենդանի թողեք, որպեսզի կապենք ու տանենք Աղվանք[168] և իբրև կավագործ, գալատոս և որմնադիր աշխատեցնենք մեր քաղաքների, ապարանքների և ուրիշ պիտույքների համար»:

Երբ երկու գնդերը, Պարսից և Հունացը, եկան իրար մոտեցան և պատրաստվում էին կռվի՝ Հայոց Պապ թագավորն էլ զինվեց ու պատրաստվեց ճակատամարտի մեջ մտնելու: Բայց Տերենտը, Հունաց զորավարը, չէր թույլ տալիս, որ Պապ թագավորը կռվի մեջ մտնի: Նա ասաց. «Հունաց թագավորը մեզ ուղարկեց քեզ համար, թե գնացե՛ք նրան պահպանեցե՛ք: Արդ՝ եթե քեզ մի բան պատահի, մենք ի՞նչ երեսով պետք է տեսնենք մեր թագավորին կամ ի՞նչ պիտի պատասխանենք՝ երբ մենք այստեղ առանց քեզ կենդանի մնանք ու մեր թագավորի մոտ հասնենք. մենք գլխապարտ կմնանք մեր թագավորի առաջ: Դու, արքա, արա՛ ինչ որ ասում ենք քեզ, ա՛ռ Ներսես եպիսկոպոսապետին, գնա՛ Նպատ լեռը, մի ամուր անվտանգ տեղ նստի՛ր, և թող սուրբ Ներսես եպիսկոպոսապետը աղոթք անե և խնդրե աստծուց, որ մեզ տա հաղթություն: Այնտեղից բարձրից կնայես և կտեսնես մեր ջանքերն ու աշխատանքը պատերազմի ընթացքում, ամեն մեկի քաջությունն ու երկչոտությունը, որ քո առաջ կկատարվին»:

Պապ թագավորը համաձայնեց այս խոսքերին, հետը վերցրեց Ներսես քահանայապետին և ելավ նորից Նպատ լեռան վրա. իսկ Հունաց և Հայոց զորքերն իջնում էին պատերազմի տեղը: Ապա եկավ նաև Հայոց զորավար-սպարապետ Մուշեղը, բերեց եպիսկոպոսապետ Ներսեսի մոտ իր նշաններն ու զենքը, որ օրհնե և ինքը այնուհետև իջնե պատերազմի: Այս ժամանակ Պապ թագավորը հիշեց հին զրույցներն ու ասաց. «Ես հիշեցի, որ Մուշեղը բարեկամ է Պարսից Շապուհ թագավորին: Դա այն Մուշեղը չէ՞, որ Պարսից Շապուհ թագավորի կանանց ազատ արձակեց ժանվարներով ու պահապան վաշտով: Այն էլ եմ լսել, որ պարսիկների հետ բանակցություններ ունի: Թող նա պատերազմ չմտնե»:

Այն ժամանակ Հայոց զորավար Մուշեղը դարձավ մեծ քահանայապետ Ներսեսին, խնդրելով բարեխոսել Պապ թագավորի առաջ: Իսկ թագավորն ասում էր Ներսես քահանայապետին. «Դու մի՛ բարեխո-

պիսկոպոսապետն Ներսէս, թէ մի՛ լինիր դու բարեխօս. զի իբրև իջանէ, 'ի զօրուն Պարսից անկանի: Իսկ նա ևս քան զևս յաճախէր մատուցանել զբարեխօսութիւնն: Իսկ թագաւորն, քանզի քանիւ ինչ ոչ անցանէր զնորա 'ի ժամանակին յայնմիկ, ասէ ցՆերսէս. Կամք քո կատարեսցին: Բայց նախ երդումն տուր յաջ քո, զի մեզ մի՛ ստեսցէ, և ապա արձակեսջիր 'ի պատերազմ: Ապա կոչեն զՄուշեղ զառաջեաւ արքային, և եկն եպագ երկիր արքային. և մատուցեալ բուռն հարկանէր զաջոյ եպիսկոպոսապետին Ներսէսի, և երդնոյր: Սոյնպէս և 'ի թագաւորին Պապայ ձեռն արկանէր, երդնոյր և ասէր՝ թէ, կեցից և մեռայց 'ի վերայ քո որպէս նախնիքն իմ 'ի վերայ նախնեացն քոց, որպէս և հայրն իմ 'ի վերայ հօրն քո Արշակայ, սոյնպէս և ես 'ի վերայ քո. բայց միայն չարախօսացն ունկն մի՛ դնիցես:

Ապա օրհնէր զնա քահանայապետն Հայոց Ներսէս բազում օրհնութեամբ: Ապա թագաւորն Հայոց Պապ զերիվարն զիւր և զիւր նիզակն հրամայեաց մատուցանել առն քաջի զօրավարին Մուշեղի. այլ նա ոչ առ. Իմովն, ասէ, գործեցից. ապա դու, արքայ, զինչ և տացես՝ 'ի ձեռս քո եմ: Եւ զիւր նշանն և զզէնն մատուցանէր առ Ներսէս, զի օրհնեսցէ: Եւ հեծանէր իւրով զնդաւն հանդերձ, և զամենայն ճակատն Հայոց յարդարեալ յաջմէ զօրացն Յունաց, յաջում թևի նա խաղայր յառաջ:

Իսկ թագաւորն Պապ և եպիսկոպոսապետն Ներսէս կային 'ի վերայ Նպատ լերինն. և սուրբն Ներսէս զբազուկսն հանապազատարած համբարձեալ յերկինս, խնդրէր 'ի տեառնէ՝ զի անխնայեսցէ տէր 'ի յուխտ իւր և 'ի սուրբ եկեղեցիս իւր, զոր պատուական արեամբն իւրով ստացաւ. և մի՛ տալ զժողովուրդսն 'ի ձեռս անաստուած հեթանոսաց, զի մի՛ երբէք ասիցեն 'ի հեթանոսս՝ թէ ո՛ւր է աստուած նոցա: Եւ մինչ դեռ նա զաղօթսն մատուցանէր առ աստուած, խաղացեալ ճակատեալ իբրև զհուր ամենայն զօրքն Հայոց ընդդէմ զօրացն Պարսից, իսկ զունդըն Մուշեղեան յառաջեալ քան զայլ զունդսն՝ յառաջամուխ տագնապեալ երթային. մինչ զի նայէր թագաւորն և տեսանէր զի լաւ ակն անկանէին, մինչ զի ոչ երևէին թագաւորին նշանքն Մուշեղի: Իսկ իբրև չերևել սկսան նշանքն, աղաղակել սկսաւ թագաւորն Պապ առ Ներսէս և ասէ. Դու խլեցեր այրեցեր զիս. զի ասացի ես բանս, մի՛ յղեր զայրն զայն 'ի գործ պատերազմիս. ահա 'ի զօրուն Պարսից անկաւ, և արդ մեծամեծ վնաս գործեսցէ: Եւ ասէ եպիսկոպոսապետն Ներսէս. Մի՛, արքայ, մի՛ կարծեր. զի ոչ ստէ մեզ այրն այն. այլ տեսցես քեզէն զքաջութիւն նորա, զոր գործեսցէ ծառայ քո առաջի քո:

Իսկ թագաւորն Պապ կարի ստիպէր առ եպիսկոպոսապետն Ներսէս ասել՝ թէ, ստէպ կաց յաղօթս և աղաչեա զտէր մինչ դեռ խառնուրդս

սիր, որովհետև հենց որ իջնե՝ Պարսից զորքերին կխառնվի»: Բայց (Ներսեսը) ավելի և ավելի էր բարեխոսում: Եվ որովհետև այդ ժամանակ թագավորը նրա ոչ մի խոսքից չէր անցնում՝ ասաց Ներսեսին. «Թող քո կամքը կատարվի. բայց նախ պահանջի՛ր քո աջի վրա երդվել, որ մեզ չի դավաճանի, հետո արձակիր որ գնա պատերազմի»: Հետո Մուշեղին կանչեցին թագավորի առաջ. նա եկավ երկրպագեց թագավորին, հետո Ներսես եպիսկոպոսապետի աջը բռնելով երդվեց: Նույնպես բռնեց Պապ թագավորի ձեռքը և երդվեց՝ ասելով. «Ես կապրիմ ու կմեռնեմ քեզ համար, ինչպես իմ նախնիքները քո նախնիքների համար. ինչպես իմ հայրը քո հոր Արշակի համար. ես էլ նույնպես (կմեռնեմ) քեզ համար, միայն թե չարախոս մարդկանց չլսես»:

Այնուհետև Հայոց Ներսես քահանայապետը նրան օրհնեց մեծ օրհնությամբ, իսկ Հայոց Պապ թագավորը հրամայեց իր ձին ու նիզակը մատուցանել Մուշեղ քաջ զորավարին: Բայց նա չառավ. «Ես, արքա, ասաց նա, իմ ունեցածով կգործեմ, իսկ հետո ինչ էլ որ տալու լինիս՝ քո հրամանի տակ եմ»: Բերեց իր նշանն ու զենքը Ներսեսի մոտ, որ օրհնե: Այնուհետև նա ձի հեծավ, իր գնդով Հայոց զորքի հակառը պատրաստեց Հունաց զորքի աջ կողմում, և աջ թևում առաջ շարժվեց:

Իսկ Պապ թագավորն ու Ներսես եպիսկոպոսապետը կանգնած մնացին Նպատ լեռան վրա, և սուրբ Ներսես իր մշտատարած ձեռքերը երկինք բարձրացնելով խնդրում էր տիրոջից, որ խնայե իր (հովատացյալների) ուխտին և իր սուրբ եկեղեցիներին, որ ստացել էր իր պատվական արյունով. իր ժողովուրդը չմատնե անաստված հեթանոսների ձեռքը, երբեք հեթանոսները չասեն, թե ո՞ւր է նրանց աստվածը:

Մինչդեռ նա աղոթում էր աստծուն, Հայոց բոլոր զորքերի հակառը կռվի նման գնում էր Պարսից զորքերի դեմ, իսկ Մուշեղի գունդը բոլոր մյուս գնդերից առաջ անցնելով՝ շտապ-շտապ գնում էր. այնպես որ մինչ թագավորը նայում էր՝ այլևս նրա աչքից քաշվեց, և Մուշեղի նշաններն այլևս չէին երևում թագավորին: Երբ նրա նշանները դադարեցին երևալ՝ Պապ թագավորը դարձավ Ներսեսին աղաղակելով. «Դու իմ տունը քանդեցիր[169], ինձ փոխեցիր. ես ասում էի, թե այդ մարդուն պատերազմի մի՛ ուղարկիր. ահա նա գնաց Պարսից զորքերի հետ խառնվեց և մեզ մեծ վնաս կհասցնե»: Ներսես եպիսկոպոսապետն ասաց. «Այդպես բան մի՛ մտածիր, թագավոր, նա մեզ չի դավաճանի. դու ինքդ կտեսնես այն քաջությունը, որ ծառայդ կգործե քո առաջ»:

Իսկ Պապ թագավորը շատ թախանձում էր Ներսես եպիսկոպո-

են: Իսկ իբրև կարի ձանձրացոյց, ասէ եպիսկոպոսապետն Ներսէս զթագաւորն Պապ. Եթէ իցէ՝ ուղղեցես զսիրտ քո առ տէր, զթասցէ 'ի վերայ քո և 'ի վերայ աշխարհիս. և իցէ՝ թէ սրբեցես զքեզ 'ի պղծութենէ գործոց քոց, ընկալցի և ոչ թողցէ 'ի ձեռաց զքեզ, և ոչ մատնեսցէ զքեզ 'ի ձեռն թշնամեացն քոց: Իսկ ես ո՞վ եմ, զի աղաչես դու զիս, իբրև եթէ ես այր մի տառապեալ կարիցեմ հակառակ ընդդէմ կամացն՝ զոր ինչ կամիցի առնել աստուած՝ առնել առ նա աղօթս, զի այնու շրջիցեմ զկամս նորա: Այլ այն՝ որ արար զամենայն յոչընչէ, և ունի զտիեզերս 'ի ձեռին իւրում և զամենայն բնակիչս նորա իբրև զմարախ, որ չափեաց զերկինս թզաւ և զերկիրս ամենայն քլաւ իւրով, որ եդ զլերինս 'ի կշիռս և երարձ զդաշտս կշռորդօք, որ գիտաց զիմաստութիւն Հօր իւրոյ և եղև նմա խորհրդակից, որ ընդ Հօրն առնէ զամենայն վճիռ դատաստանաց, դեռ այժմ իսկ զաւելս և զմուտս, զհիւսիսի և զհարաւ եղեալ 'ի կշիռս, և դեռ զկշիռսն 'ի վեր ունի. և ըստ մի մի ծանրութեան, յոր կողմ հակեսցէ կշիռն մեղացն, ըստ այնմ և դատի զարարածս իւր: Զի նա գիտէ զչափ արարածոց իւրոց գործոց, և ըստ արժանի գործոց իւրեանց հատուցանէ նոցա. զի դեռ այժմիկ ժամանակ է կշտամբութեան և ժամանակ յանդիմանութեան և ժամանակ դատելոյ. զի դեռ աւադիկ յայսմ ժամու ոչ մարդ ընդ մարդկան հակառեալ պատերազմին, այլ դատաւորն դատաւորաց յարեաւ դատել զերկիր: Արդ դեռ յայսմ ժամուս ժամանակս դատաստանաց է, ո՞վ է որ կարէ իշխել բանալ զբերան իւր առաջի նորա յայսմ ժամանակիս և կամ ո՞վ է որ գիտէ զմիտս տեառն, զի և խրատտու ևս լինիցի նմա. զի ամենայն ինչ 'ի նմանէն և 'ի նոյն և նովաւ ամենայն. նմա փառք յաւիտեանս: Զի թէ ըստ գործոց մեղաց մերոց հատուցանէ մեզ տէր, մեզ ընդ դէմ կամաց նորա մի՛ լիցի երթալ, և խնդրել ինչ 'ի նմանէ. այլ ասել՝ եթէ՝ «Յիրաւունս անցուցեր դու զայս ամենայն ընդ մեզ. արդար ես դու տէր, և ամենայն գործք քո ճշմարիտ են: Ճանապարհք քո ուղիղ են, և ամենայն դատաստանք քո ուղիղ են: Զի զդատաստան արդարութեան ածեր 'ի վերայ մեր, ըստ ամենայնի զոր ինչ ածեր 'ի վերայ մեր, զի արդարութեամբ և յիրաւի ածեր 'ի վերայ մեր վասն մեղաց մերոց: Զի անօրինեցաք և յանցեաք և ապստամբեցաք մեք 'ի քէն. մեղաք յամենայնի և պատուիրանաց քոց ոչ անսացաք: Ոչ պահեցաք և ոչ արարաք որպէս պատուիրեցեր մեզ, զի բարի գտցուք մեք 'ի քէն. արդ զամենայն՝ զոր արարեր և զոր ինչ ածեր 'ի վերայ մեր՝ արդար դատաստանաւ արարեր. զի դատաստանք քո քաղցր են: Արդ մի՛ մատներ զմեզ 'ի սպառ վասն անուան քո, փրկեա

սապետին, ասելով. «Շատ աղոթք արա, աստծուն աղաչիր՝ մինչ կռիվը շարունակվում է»: Երբ շատ ձանձրացրեց՝ Ներսես եպիսկոպոսապետն ասաց Պապ թագավորին. «Երբ քո սիրտը դարձնես դեպի տերը՝ նա կգթա քեզ վրա և աշխարհիս վրա. եթե քեզ մաքրես քո պիղծ գործերից՝ քեզ նա կընդունե, իր ձեռքից քեզ բաց չի թողնի և քեզ թշնամիներիդ ձեռքը չի մատնի. իսկ ես ո՞վ եմ, որ դու ինձ աղաչում ես, իբրև թե ես, մի ողորմելի մարդ, կարող եմ աստծուն աղոթք անել, որ նա իր կամքից ետ կենա, իր կամեցածին հակառակ վարվի: Որովհետև նա է, որ ամեն ինչ ոչնչից ստեղծեց, որ բոլոր տիեզերքը իր բնակիչներով իր ձեռքում պահում է ինչպես մարախ: Նա երկինքը թզով չափեց և բոլոր երկիրը՝ քիլով[170], լեռները կշեռքի առավ, դաշտերը կշեռքի մեջ դրեց: Նա գիտցավ իր հոր իմաստությունը և նրան խորհրդակից եղավ, որ և հոր հետ վճռում է բոլոր դատաստանները: Դեռ այժմ էլ արեվելքն ու արևմուտքը, հյուսիսն ու հարավը դրել է կշեռքի մեջ և դեռ կշեռքը վեր բռնած ունի, և նայելով թե մեղքերի կշեռքը ո՛ր կողմը կհակվի ամեն մի մեղքի ծանրությամբ՝ ըստ այնմ էլ նա կդատե իր արարածներին: Որովհետև նա գիտե իր արարածների գործերի չափը և ամենքին կհատուցանե համապատասխան իրենց գործերին, որովհետև ներկայումս ժամանակ է նախատելու, հանդիմանելու և դատելու, որովհետև ներկայումս ոչ թե մարդիկ են դուրս եկել միմյանց դեմ նակատելու և պատերազմելու, այլ դատավորներն է վեր կացել երկիրը դատելու: Ուրեմն այս ժամը դատաստանի ժամանակն է: Ո՞վ կհամարձակի այս ժամին իր բերանը բանալ նրա առաջ, կամ ո՞վ է, որ տիրոջ միտքը գիտե և դեռ խրատ էլ կտա նրան. որովհետև ամեն ինչ նրանից է և նրանով է, և նրան փառք հավիտյանս: Որովհետև եթե տերը մեզ հատուցանում է համաձայն մեր գործերի՝ մենք չենք կարող նրա կամքի դեմ գնալ և նրանից որևէ բան խնդրել, այլ պետք է ասենք. «Իրավացի կերպով այս բոլորը մեզ վրա բերիր. արդար ես դու, տեր, և բոլոր քո գործերը ճշմարիտ են: Քո ճանապարհներն ու բոլոր դատաստաններն ուղիղ են, որովհետև մեր նկատմամբ արդար դատաստան արեցիր ըստ ամենայնի, արդարությամբ և իրավացիորեն կատարեցիր մեր մեղքերի համար: Որովհետև մենք անիրավություն ու հանցանք գործեցինք և ապստամբվեցինք քո դեմ, ամեն ինչում մեղք գործեցինք և քո պատվիրաններին չենթարկվեցինք: Պաս չպահեցինք և արդարություններ չկատարեցինք, ինչպես պատվիրեցիր մեզ, որ մենք քեզանից բարիք գտնենք: Արդ՝ այն ամենը, ինչ որ կատարեցիր և ինչ որ մեզ վրա բերեցիր, արդար դատաստանով կատարեցիր, որովհետև քո դատաստանները հաննելի են: Արդ՝ մեզ մի՛ լքիր իսպառ, քո անվան

զմեզ վասն սխանչելեաց քոց, և փառաւոր արա զանուն քո, տէր. զի մի՛ երբէք ամաչեսցեն ոյք յուսացեալ լինին 'ի քեզ: Ամաչեցեալ լիցին բռնութիւնք նոցա, և ամենայն զօրութիւնք նոցա խորտակեսցին. ծանիցեն զի դու ես տէր աստուած միայն, որ փառաւորեալդ ես 'ի վերայ ամենայն տիեզերաց»: Եւ յամենայնի ամենեքին քո միայնոյ կատարեցին կամք քո ամենազօր, որ հզօրդ ես և կարող և արդար յամենայնի, և սիրես ողորմել նեղելոց և տագնապելոց: Զօգնութն մեր դու գիտես, տէր, և պատրաստել մեզ որպէս և քեզ հաճոյ իցէ. զի եթէ իցէ մեզ օգուտ նեղութիւնք յանախեա մեզ. և եթէ հաճոյ է առաջի քո ողորմութիւն, շնորհեա մեզ: Զի որպէս իցեն կամք տեառն յերկինս, սոյնպէս և կատարեսցէ. և որով զաւազանաւ կամիցիս խրատել, 'ի ձեռդ քո եմք յամենայն ժամ: Քաւեա, տէր, զանօրէնութիւնս զմեղս և զյանցանս ծառայից քոց. զի ո՞վ իցէ այն մարդն, որ ոչ յանցանիցէ կամ մեղանչիցէ առաջի քո. զի ոչ ոք իցէ արդար 'ի վերայ երկրի, և ոչ ոք է մինչև 'ի մի: Զի դու միայն ես, որ առանց մեղացդ ես. քո միայն արդարութիւն, որ արարեր զմեզ յոչընչէ, և ետեր զմեզ յայս կենդանութիւն, և ցուցեր մեզ ճանապարհս կենաց և փրկութեան և զհողս այսպէս իմաստունս և խօսունս արարեր. և եղեր ընդ մեր փրկանք, զի անմահութեան վիճակին հասուցես զմեզ: Յիշեա զեկեղեցի քո՝ զոր քո սուրբ արեամբդ ստացար, զի մի՛ զնուիրեալսն քեզ 'ի ձեռս շանց մատներ[46], այլ յամենայնի է ողորմութիւն քո, դարձցի ստամբութիւն բարկութեան քո յուխտէ քումմէ, և փրկեա զեկեղեցի քո, տէր աստուած մեր:

Արդ մինչ դեռ կայր 'ի վերայ լերինն, զայս և այսպիսի և որ ինչ նման է այս բանից՝ աւելի և բազում քան զսոյն խօսեցաւ, մինչ դեռ կայր առ նմա բազաւորն Պապ 'ի վերայ լերինն, բազում և ազգի ազգի և պէսպէս աղօթս մատուցանէր մինչև ցերեկոյն և 'ի մտանել արեգականն, մինչև վաղճանեցաւ ճակատն:

Այլ 'ի պատերազմին օգնական աստուծոյ հասանէր 'ի վերայ Յունացն, և Հայաստան զնդին լինէր յաղթութիւն, և 'ի պարտութիւն մատնեցաւ գունդն Պարսից, դարձան 'ի փախուստ, ցրուեցան սփռեցան դաշտաց՝ լերանց բարձանց՝ խորոց ձորոց: Ապա զհետ նոցա լինէին զօրքն Յունաց և Հայոց. հասանէին, զմեծ և զփոքր առ հասարակ սատակէին. բայց սակաւք 'ի բազմաց քաջածիք փախստեայք լինէին: Ապա զհետ լինէին փախստէիցն զօրքն Հայոց, և մինչև 'ի Գանձակ յԱտրպայական 'ի սահմանս Հայոց հալածէին զզօրսն Պարսից. ընդ փախուցեալսն զբազումս սատակէին զճանապարհայն: Եւ Մուշեղ սպարապետն Հայոց հարկանէր զզօրսն Պարսից 'ի հարուածս անհնարինս.

համար, փրկի՛ր մեզ քո հրաշքների համար և փառավոր արա քո անունը, տեր որպեսզի չամաչեն նրանք, ովքեր քեզ հետ հույս են կապել. նրանց բռնությունները թող նվաստանան, նրանց ամբողջ զորությունը թող խորտակվի, ոչնչանա, որովհետև միայն դու ես տեր աստվածը, որ փառավորված ես ամբողջ տիեզերքի վրա: Եվ ամեն բանում ամբողջովին միայն քո ամենազոր կամքը կկատարվի, որ հզոր ես, կարող և ամեն ինչում արդար և սիրում ես ողորմալ նեղյալներին ու տագնապյալներին: Դու ես իմանում մեր օգուտը, տե՛ր, և պատրաստում ես մեզ համար, ինչպես որ քեզ հաճելի է: Եթե նեղությունները մեզ օգտակար են, հաճախակի դարձրու, և եթե հաճելի է քեզ ողորմությունը, շնորհիր մեզ:

Ինչպես որ տիրոջ կամքը երկնքում է, այնպես էլ թող կատարի: Եվ ինչ գավազանով էլ կամենաս մեզ խրատել, միշտ քո ձեռքում ենք: Քավիր, տե՛ր, քո ծառաների այս անօրինությունները, մեղքերն ու հանցանքները: Որովհետև ո՞վ է այն մարդը, որ քո հանդեպ հանցանք կամ մեղք չի գործում. ոչ ոք երկրի վրա արդար չէ, ո՛չ մեկը: Դու ես միայն, որ առանց մեղքերի ես, և արդարությունը միայն քոնն է, դու մեզ ոչնչից ստեղծեցիր ու մեզ այս կենդանությանը արժանացրիր և մեզ ցույց տվիր կյանքի ու փրկության ճանապարհները և հողեղեններիս այսպես իմաստուն ու խոսուն ստեղծեցիր: Եվ դարձար մեր փրկանքը, որպեսզի անմահության վիճակին հասցնես մեզ: Հիշի՛ր քո եկեղեցին, որ քո սուրբ արյունով ստացար, և քեզ նվիրվածները շների ձեռքը մի՛ մատներ. ամեն ժամանակ դու ողորմած ես, քո սրտմտությունն ու բարկությունը քո ուխտից հեռացրո՛ւ և փրկի՛ր քո եկեղեցին, տեր աստված մեր»:

Այսպես, լեռան վրա կանգնած, այս և սրանց նման և էլ ավելի բաներ խոսեց (Ներսեսը) մինչ թագավորի հետ կանգնած էր լեռան վրա. բազմաթիվ ու տեսակ տեսակ աղոթքներ էր անում մինչև երեկո, արեգակի մայր մտնելը, մինչև կռիվը վերջացավ:

Իսկ պատերազմի մեջ աստծու օգնությունը հասնում էր հույներին և հաղթություն էր շնորհվում Հայկական գնդին: Պարսից գնդերը պարտություն կրեցին, փախուստի դիմեցին և ցրվեցան սփռվեցին դաշտերում, լեռների կատարներում, խորերում և ձորերում: Նրանց հետամուտ էին ելնում Հունաց և Հայոց զորքերը, հասնում կոտորում էին մեծ և փոքր առհասարակ. շատերից քչերը, որոնք լավ ձիաներ ունեին՝ կարողացան փախչել: Փախստականների ետևից էին ընկնում Հայոց զորքերը և շատերին կոտորում էին ճանապարհին, և այսպիսով Պարսից զորքերին հալածում էին մինչև Ատրպատական, Հայաստանի սահմանները:

ապաս արարեալ և դիպէր գնդին Աղուանից, և առ հասարակ զամենայն զզօրսն սատակէր: Եւ հասանէր Ուռնայրի արքային Աղուանից 'ի փախըստեանն, և նիզակաբնաւն 'ի կառափն մատուցեալ ծեծէր բազում, ասելով՝ թէ այդմ շնորհս կալ[47], զի այր թագաւոր ես և թագ ունիս. ես ոչ սպանից զայր թագաւոր, թէ կարի նեղ հասցէ ինձ: Եւ ուր հեծելով թոյլ ետ նմա փախչել երթալ գնալ յաշխարհն Աղուանից:

Այլ յորժամ դարձան ամենայն զօրքն Հայոց, ոչ գոյր չափ գլխանոյն ախոյենիցն՝ զոր բերեալ էր առաջի թագաւորին Հայոց Պապայ զօրավարն Հայոց Մուշեղ: Սոյնպէս ըստ իւրաքանչիւր չափու ամենայն նախարարքն և մեծամեծքն և բովանդակ ամենայն զօրքն. և եղև մեծ յաղթութիւն յերկրին Հայոց, և 'ի մէջ զօրացն Յունաց: Նոյնպէս լցան բազում աւարաւ զանձուցն զինու և զարդու, ոսկւով և արծաթով և բազում կարասեաւ, ձիովք և ջորեօք և ուղտօք, զոր ինչ թափեցին. զի ոչ գոյր թիւ կամ չափ, այլ կարի բազում էր յոյժ:

Բայց ապա ամբաստան լինէին քսութեամբ առ մեծ թագաւորն Պապայ զզօրավարէն Մուշեղի և ասէին՝ թէ գիտեա, արքայ, զի մեծաւ նենգութեամբ է ընդ քեզ, և քեզ մահու սպասէ. զի զքո թշնամիսն համակ արձակէ, զի զբազումս բազում անգամ 'ի բուռն արկեալ՝ սովոր է արձակել զթշնամիսն. զի զՈւռնայր արքայ արձակեալ, թոյլ ետ ապրել, 'ի բուռն արկեալ զհակառակորդս քո: Եւ վասն այսր իրաց բազում անգամ լինէր գժտութիւն թագաւորին Պապայ ընդ զօրավարին Մուշեղի. և բազում անգամ յանդիմանէր զնա վասն այսր իրաց: Իսկ զօրավարն Մուշեղ տայր պատասխանի թագաւորին Պապայ, և ասէր՝ եթէ զիմ զընգերսն զամենեսեան ես կոտորեցի. իսկ որ թագս ունէին՝ նոքա իմ ընգերք չէին, այլ քո. եկեսցես որպէս ես զիմսն սպանի, դու զքոյսն. այլ իմ յայր թագաւոր ոչ ձգեալ ձեռն երբէք որ թագ ունի, և ոչ ձգեմ, և մի՛ այլ ձգել լիցի: Եթէ կամիս սպանանել զիս, սպան. այլ ես, եթէ գայ ինձ 'ի ձեռն երբէք այր թագաւոր՝ որպէս եկն բազում անգամ, ես ոչ սպանանեմ զայր թագաւոր՝ որ զամ մի թագ ունի, եթէ ոք իսկ զիս սպանցէ:

Թագաւորն Պապ իբրև լսէր զբանս զայս, յարտասուս հարեալ, և յարուցեալ 'ի գահոյիցն, բուռն հարկանէր զՄուշեղէ. արկանէր զնովաւ զիրկս և լայր 'ի վերայ պարանոցին Մուշեղի, և ասէ. Մահապարտ են այնոքիկ՝ որ իշխեն խօսել չարութիւն զՄուշեղէ, զառնէ քաջէ և զպատուականէ: Զի այր՝ որ ազգաւ պատուական է իբրև զմեզ, և նախնիքն դորա իբրև զնախնիսն մեր, և թողեալ նախնեացն դորա զթագաւորու-

Իսկ Մուշեղ Հայոց սպարապետը չարաչար կոտորում էր Պարսից զորքերը և աջ ու ձախ ցրում էր Աղվանից զորքին և բոլոր զորքերը ջարդում էր. հասնում էր Աղվանից Ուռնայր թագավորին՝ մինչև նա փախչում էր: Մոտենալով՝ իր նիզակի կոթով երկար ծեծում էր նրա գագաթը՝ ասելով «Շնորհակալ եղիր, որ թագավոր մարդ ես, գլխիդ թագ ես կրում. ես թագավոր մարդու չեմ սպանի՝ մինչև անգամ եթե շատ նեղն էլ ընկնեմ»: Եվ թույլ տվեց նրան ութ ձիավորի հետ փախչել գնալ Աղվանից աշխարհը:

Իսկ երբ Հայոց բոլոր զորքերը ետ դարձան՝ թիվ չկար ախոյանների այն գլուխներին[172], որ Հայոց Մուշեղ քաջ զորավարը բերել էր Հայոց Պապ թագավորի առաջ: Այնպես էլ բոլոր նախարարները ու մեծամեծները և ամբողջ զորքը, ամեն մեկն իր չափին: Եվ մեծ հաղթություն եղավ Հայոց աշխարհի և Հունաց զորքի համար: Նրանք լիացան մեծ ավարով—գանձերով, զենքերով, զարդերով ոսկով ու արծաթով, շատ կարասիներով, ձիերով, ջորիներով և ուղտերով, որ խլեցին (պարսիկներից): Ավարը շատ շատ էր. նրան թիվ ու չափ չկար:

Բայց Մուշեղ զորավարին քսությամբ ամբաստանում էին Պապ մեծ թագավորի առաջ ասելով. «Պետք է գիտենաս, արքա, որ շատ ենթադրությամբ է վարվում (Մուշեղը) քեզ հետ և քո մահվան է սպասում, որովհետև նա քո թշնամիներին շարունակ ազատ արձակում է. շատ անգամ իր ձեռքն է ձգել թշնամիներին, բայց էլի արձակել է. որովհետև նա Ուռնայր թագավորին արձակեց և կյանքը բաշխեց քո հակառակորդի, որ իր ձեռքումն էր»: Այս պատճառով հաճախ զժտություն էր պատահում Պապ թագավորի և Մուշեղ զորավարի մեջ, և շատ անգամ այս պատճառով (Պապը) հանդիմանում էր նրան: Իսկ Մուշեղ զորավարը պատասխան էր տալիս Պապ թագավորին և ասում էր. «Ես իմ ընկերներին՝ բոլորին կոտորեցի, իսկ նրանք որ թագ էին կրում, իմ ընկերները չէին, այլ քո. ե՛կ, ինչպես ես իմ ընկերներին սպանեցի՝ այնպես էլ դու քոյինքը, բայց ես թագավոր մարդու վրա, որ գլխին թագ է կրում՝ ոչ ձեռք եմ մեկնել և ոչ մեկնում եմ և ոչ էլ կմեկնեմ: Եթե ուզում ես ինձ սպանել՝ սպանի՛ր, բայց ես, եթե երբևիցե մի թագավոր մարդ ձեռքս անցնի, ինչպես շատ անգամ պատահել է՝ ես չեմ սպանի թագավոր մարդու, որ թագ է կրում, թեկուզ ինձ էլ սպանեն»:

Պապ թագավորը երբ այս խոսքերը լսեց՝ արտասվեց, գահույքից վեր կացավ, բռնեց Մուշեղին, փաթաթվեց նրան և լաց եղավ Մուշեղի վզին փաթաթված, և ասաց. «Մահապարտ են այն մարդիկ, որոնք հանդգնում են չար բերան բանալ Մուշեղի՝ այս քաջ և պատվական մարդու մասին: Նա մի մարդ է՝ որ ծագումով մեզ չափ պատվական է, և

թիւնն ճենաց աշխարհին, եկեալք առ մեզ նախնիքն՝ 'ի նախնեացն մերոց 'ի վերայ կեցեալք և մեռեալք են, և հայր սորա 'ի վերայ հօրն իմոյ մեռաւ, և սա միամտութեամբ մինչև 'ի մահ վաստակեալ է, և բազում անգամ աստուած ետ մեզ յաղթութիւն յաղօթս և 'ի խնդրուածս հօր մերոյ սքանչելւոյն Ներսիսի, 'ի ձեռն դորա շնորհեցաւ բազում խաղաղութիւն, զիա՞րդ ասեն ցիս զայս բանս եթէ՝ Մուշեղ քեզ մահու սպասէ. սա աւասիկ այր իրաւախոհ է, զի յօտար տեարսն վասն բարեկամութեան խնայեաց, զիա՞րդ դա 'ի բնակ տեարս ձեռն ձգէր: Յայնմ ժամանակի բազում պարգևս և պատիւս և բազում գեւղեան զօրավարին Մուշեղի Պապն շնորհէր:

## Ե

### ՅԱՂԱԳՍ ՄԻՒՍՈՅ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՀԱՅՈՑ ԸՆԴ ՊԱՐՍ 'Ի ԳԱՆՁԱԿ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ. ԵՒ ՎԱՍՆ ԳՈՒՇԱԿՈՒԹԵԱՆՆ ՈՒՌՆԱՅՐԻ, ԶԻ ՅԱՅՆՄ ԵՒՍ ՅԱՂԹՈՒԹԻՒՆ ԼԻՆԷՐ ՀԱՅՈՑ ԳՆԴԻՆ

Ապա լինէր գուշակ Մուշեղի Ուռնայր արքայ Աղուանից, յղէր առ նա հրեշտակ և տայր նմա տեղեկութիւն. ասէր. Մեծ շնորհակալութիւն ունիմ փոխանակ զի ոչ սպաներ դու զիս. և աստուած էած զիս 'ի ձեռս քո, և դու անխայեցեր. զայս սէր քո ոչ մոռացայց մինչև իցեմ ես: Բայց գուշակեալ իմ քեզ, զի Շապուհ թագաւորն Պարսից ամենայն զօրօք իւրովք կազմի գալ անկանել յանպատրաստից եկն 'ի վերայ քո: Ապա ստրատն Յունաց կազմեաց զօրս իւր՝ որ ընդ իւրով ձեռամբ էին, և խաղացոյց տանել գնալ 'ի սահմանս Հայոց 'ի Գանձակէ կուսէ յատրպայական տանէ: Սոյնպէս և Մուշեղ սպարապետն գումարեաց 'ի մի վայր զզօրսն ամենայն Հայոց. և էին կուռ վառեալք իննսուն հազարք ընդիրք նիզակ 'ի ձեռն. թող զսպարակիրս: Եւ սոքա վաղագոյն ըստ գուշակութեան անապարեցին հասին յիւրեանց սահմանն, բայց միայն թագաւորն մնաց անդէն 'ի Հայոց աշխարհին: Եւ եպիսկոպոսապետն Ներսէս անդէն մնայր յաշխարհին, և խնդրուածս առնէր ընդ ամենայն աշխարհին. հրամայէր վասն զօրացն որ էին 'ի պատերազմին:

Իսկ թագաւորն Պարսից Շապուհ զայր հասանէր ամենայն զօրօքն իւրովք 'ի տեղի պատերազմին, և գտանէր զզօրսն Յունացն և զգունդն Հայոց, զի կազմեալ պատրաստեալ էին 'ի գործ պատերազմին: Եւ լինէին խառնուրդք ճակատուն. 'ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից: Մանաւանդ գունդք նիզակաւորացն յարձակեալք մոլեգնեալք, քաջութեամբ զախոյեանս 'ի վերուստ յերիվարացն յերկիր կործանէին

սրա նախնիները մեր նախնիների նման էին. սրա նախնիները բողել են Ճենաց աշխարհի թագավորությունն ու եկել են մեզ մոտ ապրել ու մեռել են մեր նախնիների համար. սրա հայրը իմ հոր համար մեռավ, և սա հավատարմությամբ ծառայել է մեզ. և շատ անգամ սատված, մեր հոր՝ սրանչելի Ներսեսի աղոթքներով ու խնդրվածքներով, մեզ հաղթություն շնորհեց սրա ձեռքով և խաղաղություն մեզ տվեց: Ինչպես կարող եմ ինձ ասել, թե Մուշեղը քո մահվան է սպասում. սա արդարամիտ մարդ է. երբ սա օտար թագավորներին խնայեց իր ազնվականությամբ, ինչպե՞ս կարող է ձեռք բարձրացնել իր բնիկ տերերի վրա»: Եվ ապա Պապ թագավորը մեծ պարգևներ ու պատիվներ և շատ գյուղեր էր պարգևում Մուշեղ զորավարին:

Ե

## ՄՑՈՒՍ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ՀԱՅԵՐԻ ԵՎ ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ՄԻՋԵՎ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ԳԱՆՁԱԿ ՔԱՂԱՔՈՒՄ. ՈՒՌՆԱՅՐԻ ԼՈՒՐ ՀԱՂՈՐԴԵԼԸ. ՀԱՅՈՑ ԱՅՍ ԱՆԳԱՄ ԵՎ ՀԱՂԹՈՒԹՅՈՒՆ ՏԱՆԵԼԸ

Ապա Աղվանից Ուռնայր թագավորը գաղտնի լուր էր ուղարկում Մուշեղին. նրա մոտ մարդ էր ուղարկում և տեղեկություն էր հաղորդում, ասելով. «Շատ շնորհակալ եմ քեզանից, որ ինձ չսպանեցիր. ատված ինձ քո ձեռքը տվեց, բայց դու ինձ խնայեցիր, այս քո սերը չեմ մոռանա՝ փանի կենդանի եմ: Բայց իմաց եմ տալիս քեզ, որ Պարսից Շապուհ թագավորը պատրաստվում է բոլոր իր զորքերով անսպասելի կերպով հարձակվել քո վրա»: Այն ժամանակ Հունաց ստրատելատը կազմակերպեց իր ձեռքի տակ եղած զորքերը և շարժեց տարավ Ատրպատական աշխարհից՝ Գանձակի կողմից դեպի Հայաստանի սահմանները: Այնպես էլ Հայոց Մուշեղ զորավարը մի տեղ ժողովեց Հայոց բոլոր զորքերը, որոնք հենսուն հազար ընտիր մարդիկ էին, լավ զինված, նիզակները ձեռքերին, չհաշված սպարակիրներին: Սրանք էլ, ստացված տեղեկության համաձայն, շտապով վաղօրոք հասան իրենց սահմանները. միայն թագավորը մնաց Հայոց աշխարհում: Ներսես եպիսկոպոսապետն էլ մնաց աշխարհում և հրամայում էր՝ բոլոր աշխարհում աղոթք անել այն զորքերի համար, որ գնացել էին պատերազմի:

Իսկ Պարսից Շապուհ թագավորը իր բոլոր զորքերով գալիս հասնում էր պատերազմի տեղը, և տեսնում էր, որ Հունաց զորքերը և Հայոց գունդը արդեն կազմ և պատրաստ են պատերազմին: Երկու ճակատները խառնվում էին իրար, և Պարսից զորքը պարտություն կրեց: Մա-

յանդիման թագաւորին Պարսից Շապհոյ. և ընդ ընկենուլն խրախոյս բառնային աղաղակելով ամենայն զօրքն պատերազմիկք Հայոց համակ, զայս բանս ասելով, եթէ՝ առ Արշակ քաջ: Չի զամենայն ախոյեանսն, զոր 'ի ճակատուն յայն սպանանէին, նմա նուիրէին իւրեանց առաջի թագաւորին Արշակայ. զի զամենայն զոր սպանանէին, ասէին. Արշակայ թագաւորին մերոյ զոհ լիցի: Եւ յորժամ Հայոց ազատանոյն ախոյեանցն նիզակաւորացն ռազմ արարեալ յարձակեալ, զզօրսն Պարսից նիզակաւորքն առեալ ընկենուին, ասէին 'ի խրախուսելն. Առ Արշակ քաջ: Իսկ յորժամ զենեալ գլխատէին զախոյեանսն՝ ասէին. Արշակայ զոհ լիցի:

Եւ լեգէոն զօրուն բազմութիւնն, այս ինքն Յունաց զօրացն սպարապետն, սոյնպէս և Հայոց սպարապետն զթիկունս ունէր զօրացն Հայոց, վահանօք փակեալք զինքեամբք՝ իբրև զամուր քաղաք ինչ 'ի թիկանց լինիցի: Յորժամ տարածանէին ինչ զօրքն Պարսից զզօրսն Յունաց և կամ զգունդ նիզակաւորացն Հայոց, ի՛ լեգէոն վահանաւորացն Յունաց կամ 'ի սպարապետն Հայոց իբրև 'ի բերդ մտեալ հանգչէին: Իսկ յորժամ ոգի առեալ սակաւ մի, և անդուստ ելեալ յարձակէին, անթիւ 'ի զօրացն Պարսից ընկեցեալ առաջի իւրեանց ոտից սատակեալս գըլխատէին. խրախուսելով 'ի նոյն բանս՝ յԱրշակ թագաւորն իւրեանց, անչափս և անթիւ 'ի զօրացն Պարսից կոտորեցին: Եւ յորժամ դարձեալ սակաւիկ մի ինչ յաղթահարէին զնոսա զօրքն Պարսից, և նոքա իբրև 'ի բերդ ամուր դիմէին 'ի լեգէոն, 'ի զօրսն վահանաւորս, և նոցա բացեալ զվահանսն՝ զնոսա 'ի մէջ առեալ փակէին: Եւ յայնմ աւուր հարկանէին սատակէին զզօրսն Պարսից զօրքն Յունաց, և Տերէնտ սարատեղատ նոցա, և գունդքն Հայոց և Մուշեղ սպարապետ նոցա: Եւ սակաւուք փախչէր Շապուհ թագաւորն Պարսից 'ի պատերազմէ անտի. և նոցա սահմանապահս կացուցանէին, և ինքեանք առ իւրեանց թագաւորն Պապ դառնային մեծաւ անուամբ, և բարի աւարաւ, և հոյակապ շքեղութեամբ:

Այլ Շապուհ թագաւորն յորժամ յաշխարհն իշխանութեանն իւրոյ հասանէր, զարմացեալ ընդ քաջութիւն զնդին կռուոյն որ դիպեցաւ նմա, և ասէր՝ եթէ զարմացեալ եմ ես զոր ինչ տեսի. զի իմ 'ի մանկութենէ իմմէ համակ 'ի ճակատու և 'ի կռիւ մտեալ եմ, և բազում ամք են՝ զի հասի 'ի թագաւորութիւն, և առանց կռուոյ ամ չեմ լեալ. բայց իմ չեւ կռիւ զայս էր տեսեալ, որ այս անգամս դիպեցաւ ինձ: Չի յորժամ Հայոց նիզակաւորքն առաջի կարգէին, այսպէս յարձակէին որպէս զլեառն մի բարձր և կամ որպէս զաշտարակ մի հաստաբերդ հզօր և անշարժ. և յորժամ մեք զնոսա սակաւ մի շարժէաք, նոքա 'ի լեգէոն

նավանդ նիզակավորների գնդերը մոլեգնաբար հարձակվելով՝ իրենց ձիերի վրայից հարվածելով՝ քաջությամբ գետին էին գլորում իրենց ախոյաններին Պարսից Շապուհ թագավորի դեմուդեմ: Երբ գետին էին գլորում՝ Հայոց բոլոր զորքերը քաջալերական ձայնով աղաղակում էին—«Քաջ Արշակի համար»: Ամեն անգամ որ այդ պատերազմում մի ախոյան էին սպանում՝ նրան էին նվիրում, իրենց նախկին թագավոր Արշակին, ասելով. «Մեր Արշակ թագավորին մատաղ եղիր»: Երբ Հայոց ազատների նիզակավոր ախոյանները խմբովին հարձակվում էին Պարսից նիզակավորների վրա ու վեր էին գլորում քաջալերությամբ ասում էին. «Քաջ Արշակի համար». իսկ երբ այս ախոյաններին մորթում՝ գլխատում էին՝ ասում էին. «Արշակ թագավորին մատաղ եղիր»:

Իսկ լեգեոնների[173] զորքի բազմությունը, այսինքն Հունաց ասպարակիր զորքը, նույնպես և Հայոց ասպարակիրները պահպանում էին Հայոց զորքի թիկունքը. վահաններով պատսպարված լինելով, ինչպես մի ամուր քաղաք (կովողների) թիկունքում: Երբ Պարսից զորքերը փոքր ինչ վանում էին Հունաց զորքերին կամ Հայոց նիզակավոր գնդերը՝ սրանք Հունաց վահանավոր լեգեոնների կամ Հայոց ասպարակիրների մեջ էին մտնում ինչպես բերդերի մեջ և հանգչում էին: Իսկ երբ մի փոքր շունչ էին քաշում՝ ապա այնտեղից դուրս գալով հարձակվում էին և պարսիկներից անթիվ մարդիկ իրենց ոտների տակ էին գլորում և սպանում ու գլխատում էին՝ նույն քաջալերական խոսքերն ասելով իրենց Արշակ թագավորի համար: Այսպիսով նրանք անչափ և անթիվ զորքեր կոտորեցին պարսիկներից: Հետո երբ պարսիկները փոքր ինչ նրանց հաղթում էին՝ նրանք դարձյալ իբրև մի բերդ ապաստանում էին լեգեոնի վահանավոր զորքերի մեջ, որոնք իրենց վահանները բաց անելով նրանց ներս էին ընդունում ու փակում: Այդ օրը Հունաց զորքն ու նրանց Տերենտ ստրատելատը և Հայոց գնդերն ու նրանց Մուշեղ սպարապետը Պարսից զորքերը ջարդեցին, ոչնչացրին: Պարսից Շապուհ թագավորը քիչ մարդկանցով փախչում էր այդ պատերազմից: Իսկ սրանք սահմանապահներ էին դնում և իրենք դառնում էին իրենց Պապ թագավորի մոտ բարի անունով, մեծ ավարով և շքեղությամբ:

Իսկ Շապուհ թագավորը երբ հասնում էր իր իշխանության երկիրը՝ զարմանք էր հայտնում կովող գնդի քաջության վրա, ինչ որ ինքը տեսավ: «Զարմացել եմ ես, ասում էր նա, իմ տեսածիս վրա: Մանկությունից ի վեր միշտ կովի ու պատերազմի մեջ եմ եղել, շատ տարի է որ թագավոր եմ դարձել, և տարի չեմ անց կացրել առանց կովի, բայց ջերմ կռիվ այս էր, որին այս անգամ պատահեցի: Որովհետև երբ Հայոց նիզակավորները առաջ էին գալիս՝ այնպես էին հարձակվում

Հոռոմոց ապաստան լինէին. և նոցա զվահանափակսն բացեալ, զնոսա իբրև ՚ի քաղաքորմ պարսպաւոր ամրացեալ ընդունէին: Եւ անտի սակաւիկ մի ոգի առեալ, դարձեալ ելեալք մարտնչէին, մինչև անմի զզօրսն Արանց առնէին: Եւ միւս ևս՝ որ ընդ այս եմ զարմացեալ ես, ընդ մտերմութիւն միամտութեանն հայաստան գնդին ընդ տիրասիրութեանն: Զի այնչափ ամք են՝ զի տէրն նոցա Արշակ կորուսեալ է ՚ի նոցանէն, և նոքա ՚ի պատերազմին ՚ի նա խրախուսէին: Եւ յորժամ զախոյեանսն ընկենուին, համակ ասէին՝ թէ առ Արշակ, և նա չէր ՚ի մէջ նոցա, և նոքա առ զուր տիրասիրութեանն՝ զոր առ բնակ տէրն իւրեանց ունէին, զամենայն ախոյեանսն՝ զոր սպանանէին՝ նմա նուիրէին: Եւ կամ մոյեկան զունդն մուշեղեան, զի ինձ այսպէս թուէր՝ եթէ հուր բոց ՚ի զընդէն ելանիցէր և ՚ի նշանացն, իբրև ՚ի հուրն հրդեհի այնպէս անցանէր ընդ զունդն որպէս բոց ընդ եղէգն: Եւ այսչափ ժամանակք են՝ զի Արշակ տէրն նոցա ՚ի նոցանէն կորուսեալ է, զի յԱնդմըշն բերդի կայ յերկրին Խուժաստանի, և նոքա առ զուրն համարէին՝ թէ ՚ի գլուխ նոցա նա իբրև թագաւոր կայցէ, և կամ ընդ նոսա արդեւք ՚ի մէջ գնդին կայցէ ՚ի գլուխ ճակատուն պատերազմին, և նոքա առ նմա առնիցեն պաշտօն յանդիման նորա: Այլ, ասէր, երանի՛ որ Հայոց գնդին տէր իցէ, այնպիսի տիրասէր և միաբան միամիտ զօրացն:

## Զ

### ՑԱՂԱԳՍ ԴՂԱԿԱՑ ՄԱՐԴՊԵՏԻ՝ ԶՈՐ ԿԱՑՈՒՑԻՆ ՍԱՀՄԱՆԱԿԱԼ. ԵՒ ՆԱ ԽՈՐՀՐԴԱԿԻՑ ԵՂԵԱԼ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՒՈՐԻՆ. ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԽՈՍՏԱՆԱՅՐ ՄԱՏՆԵԼ ԶԱՐՔԱՅՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ՎԱՍՆ ՄԱՀՈՒՆ ԴՂԱԿԱՑ ՚Ի ՊԱՊԱՅ ԱՐՔԱՅԷ

Ապա Տէրէնդ զօրավարն զօրացն Յունաց և Մուշեղ զօրավար զօրացն Հայոց զԴղակ Մարդպետ, որ անուանեալ կոչէր ըստ գործոյն՝ հայր թագաւորին, թողին զնա սահմանապահ ՚ի Գանձակ՝ որ էր սահման ընդ Պարս և ընդ Հայս: Եւ մնաց առ նմա երեսուն հազար ընտիր ընտիրք, նիզիկաւորք կուռ վառեալք պատեզէնք[48] և զրահաւորք կազմ ամենայնիւ: Եւ Տէրէնդն և Մուշեղ ամենայն զօրօք, որ էին ընդ նոսա, գնացին յաշխարհն առ թագաւորն Պապ: Իսկ մարդպետն Դղակ, յղէր հրեշտակս խորհրդով առ Շապուհ արքայն Պարսից, և խոստանայր մատնել ՚ի ձեռս նորա զթագաւորն Հայոց Պապ, և զզօրավարն Յունաց զՏէրէնտն, և զզօրավարն Հայոց զՄուշեղ, և առնոյր ՚ի նմանէ զանձս պարգևաց սաստիկ յոյժ: Բայց այլ մեծամեծ նախարարք, որ

ինչպես մի բարձր լեռ կամ ինչպես մի հաստ՝ հզոր և անշարժ աշտարակ. իսկ երբ մենք նրանց փոքր ինչ վանում էինք, նրանք ապաստանում էին հոռոմների լեգեոնների մեջ, որոնք իրենց կից առ կից վահանները բաց անելով նրանց ներս էին ընդունում ինչպես մի պարսպապատ ամրոցի մեջ: Եվ այնտեղ փոքր ինչ շունչ առնելով՝ նորից դուրս էին գալիս ու կռվում, մինչև որ արյաց զորքերն սպանեցին: Մի ուրիշ բանի վրա էլ եմ զարմացած—Հայկական զնդի միասիրտ հավատարմության և տիրասիրության վրա. որովհետև այսքան տարի է, որ նրանց տերը, Արշակը, կորած է նրանց համար, բայց նրանք նրանով էին քաջալերվում պատերազմի ժամանակ: Երբ իրենց ախոյաններին զարկում էին՝ միշտ ասում էին. «Արշակի համար», իսկ նա նրանց մեջ չէր, բայց նրանք իրենց սիրուց և տիրասիրությունից, որ ունեին իրենց բնիկ տիրոջ նկատմամբ՝ ամեն մի ախոյանի, որին սպանում էին՝ նրան էին նվիրում: Կամ Մուշեղի այն մոլեգնած ձիու... բայց ինձ այնպես էր թվում, թե այդ զնդից բոց ու կրակ են թափում, և նշանները այնպես էին (փայլում) զնդի մեջ, կարծես հրդեհի բոց է անցնում եղեգների միջով: Այսքան ժամանակ է, որ նրանց տերը, Արշակը, կորած է նրանց համար, գտնվում է Անդմըշն բերդում, Խուժաստան երկրում, բայց նրանք իրենց սիրուց այնպես էին համարում, թե նա իրենց գլուխ է կանգնած իբրև թագավոր, կամ իրենց հետ զնդի մեջ է գտնըվում, իբրև պատերազմին գլուխ կանգնած և իրենք նրա առաջ նրան են ծառայում: Այո՛, ասում էր նա, երանի՜ նրան, որ Հայոց զնդի տերն է, այնպիսի տիրասեր, միաբան և հավատարիմ զորքի»:

Զ

ԴՂԱԿ ՄԱՐԴՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ՈՐԻՆ ՍԱՀՄԱՆԱԳԱՀ ՆՇԱՆԱԿԵՑԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆԱ ԽՈՐՀՐԴԱԿԻՑ ԷՐ ԼԻՆՈՒՄ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԵՎ ԽՈՍՏԱՆՈՒՄ ԷՐ ՆՐԱ ՁԵՌՔԸ ՄԱՏՆԵԼ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ, ԵՎ ԴՂԱԿԻ ՍՊԱՆՎԵԼԸ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ՀՐԱՄԱՆՈՎ

Ապա Հունաց Տերենտ զորավարը և Հայոց զորքերի գլխավոր Մուշեղը Դղակ մարդպետին, որ ըստ իր պաշտոնի կոչվում էր թագավորի Հայր՝ սահմանապահ թողին Գանձակում, որ սահման էր Պարսկաստանի և Հայաստանի մեջ: Նրա մոտ թողին երեսուն հազար ընտիր զորք—լավ սպառազինված նիզակավորներ, պահպանակներով՝ զրահներով պաշտպանված, կազմ և պատրաստ: Տերենտն ու Մուշեղը բոլոր իրենց հետ եղած զորքերով գնացին (Հայաստան) Պապ թագավորի մոտ: Իսկ Դղակ մարդպետը գաղտնի կերպով պատգամավոր էր ուղարկում Պարսից Շապուհ թագավորի մոտ և խոստանում էր նրա ձեռքը մատնել Հայոց Պապ թագավորին, Հունաց Տերենտ զորավարին և Հայոց

էին առ նմա, գաղտ ազդ առնէին թագաւորին Պապայ, Գնէլն՝ տէր գաւառին Անձևացեաց, և այլք որ էին անդ մնացեալ:

Ապա թագաւորն Պապ յղեաց դեսպանս առ Մարդպետն Դղակ, թէ զորքդ՝ որ են ընդ ձեռամբ քով՝ գումարեա զայդ. Գնելոյ Անձևացւոյ յանձն արասցես, և վաղ եկեսցես. զի պիտոյ է ինձ յղել զքեզ առ թագաւորն Պարսից Շապուհ, զի ես մտից նմա 'ի ծառայութիւն: Ապա յորժամ լսէր Մարդպետն Դղակ, մեծապէս խնդացեալ՝ ասէր ընդ միտս իւր, թէ արդ դիւրին ինձ զկամս իմ կատարել, զոր խոստացայն թագաւորին Պարսից Շապհոյ. յորժամ դուրս գտի իրացս յապահով յանհոգս առնել բանիւք զՊապ, և յանկարծօրէն յանպատրաստից արկանել զթագաւորն Պարսից զգլխով նորա: Եւ ինքն զուարճացեալ, լինէր խօսնակից 'ի մէջ թագաւորացն երկոցունց. դեսպան ձիով վաղ հասուցանէր 'ի գաւառն Այրայրատու 'ի մեծ 'ի գեւղն ընչին արքունի, որում Արդեանսն կոչեն, առ թագաւորն Հայոց Պապ. և զայր յանդիման լինէր թագաւորին: Մեծապէս մեծարեցաւ 'ի նմանէն. և 'ի ժամ ընթրեացն հրաման ետ արքայն Պապ, տանել պատմուճան ազուցանել Մարդպետին Դղակայ. և ազուցին նման դրաստու և վարտիս: Եւ էր հանդերձն անհեդեդ մեծութեամբն. զի խորշ զխորշիւ իջանէր, մինչ զի ոչ կարէր հանդերձել զանձն իւր, զի պատեաց զնա մեծութիւն հանդերձոյն: Եւ ազուցեալ զպատմուճանն մեծ, էած զգօտին ընդ մէջ իւր՝ զորմէ թուրն կախէր. և սուսեր ընդ մէջ ածեալ, և խորշ 'ի գօտւոյ դրատիցն իջեալ, զթուրն և զսուսերն ծածկէր: Իսկ զվարտիսն զգեցեալ, և մոյկս ազուցեալ, և զնըրանն յազդեր կապեալ, և 'ի վերայ նրանին խորշն 'ի վարտեացն իջեալ անկեալ 'ի վերայ նրանին՝ ծածկեալ մինչև 'ի սրունսն. և ոչ ինչ իմացաւ Դղակ թէ այն մեծութիւն հանդերձոյն չարոյ նորա իցէ այն: Իսկ յինն ժամ աւուրն կոչեցին զԴղակն, և ասեն. Կոչեն զքեզ յընթրիս 'ի ներքս յարքունիս: Իսկ յորժամ մուծին 'ի փող տանցն՝ յորում արքայն էր, և էր փողն ընդ երկար, բազում երդս լոյսիջոյցս էր թողեալ. և տանէին զնա ընդ այն, կայր շուրջ սպարակիրն փակեալ սակրաւորքն, և զերդս ամենայն լուսոյն ծածկէին: Ապա մտեալ շուրջ զնովաւ 'ի տեղւոջն ձգձգէին զնա սպարակիրքն: Իսկ նա թէպէտ տանէր ձեռն 'ի զէն 'ի խորշխորշան հանդերձիցն պատատելոցն՝ զոր էր զգեցեալ, ոչ զմի զէն ոչ կարաց գտանել:

Ապա զի էր ինքն Դղակն այր մեծ և անձնեայ, քաջ հարուստ ոսկերօք, սակայն ասպարակիր մարդկանն պատեցին զնովաւ, և բարձին զնա վերըմբարձ. և տանէին զնա մինչև 'ի դուրս տաճարին արքունի:

Մուշեղ զորավարին, և (սրա համար) նրանից պարգև էր ստանում խիստ շատ գանձ: Բայց մյուս մեծամեծ նախարարները, որ նրա մոտ էին, Գնելը և Անձևացյաց գավառի տերը և ուրիշները, որ մնացել էին այնտեղ՝ գաղտնապես (այս դավը) իմաց էին տալիս Պապ թագավորին:

Ապա Պապ թագավորը դեսպաններ ուղարկեց Դղակ մարդպետի մոտ, թե «քո ձեռքի տակ եղած զորքերը հավաքի՛ր և հանձնի՛ր Անձևացի Գնելին, իսկ ինքդ շուտով ե՛կ, որովհետև քեզ* պետք է ուղարկեմ Պարսից Շապուհ թագավորի մոտ, որ նրա հպատակության տակ մըտնեմ»: Երբ այս լսում էր Դղակ մարդպետը՝ իր մտքում շատ ուրախանում էր, թե հիմա ինձ հեշտ կլինի իմ մտերմությունը կատարել, ինչպես խոստացել էի Պարսից Շապուհ թագավորին. այժմ ես ճանապարհը գտա, որ խոսքերով քնեցնեմ Պապին, որ անհոգ ու միամիտ լինի, և հանկարծակի՝ անսպասելի կերպով նրա գլխի վերև կանգնեցնեմ Պարսից թագավորին: Ինքն իր մեջ զվարճանալով՝ պատգամախոս էր դառնում երկու թագավորների մեջ: Շտապով ձիավոր դեսպան էր ուղարկում Այրարատյան գավառը Արդյանք կոչված մեծ գյուղը արքունական կալվածում, Հայոց Պապ թագավորի մոտ, և ինքն էլ գալիս ներկայանում էր նրան և մեծապես մեծարվում: Ընթրիքի ժամանակ Պապ թագավորը հրաման տվեց՝ Դղակ մարդպետին փառավոր զգեստ հագցնել. նրան հագցրին դրաստ[174] և վարտիք: Զգեստը չափից դուրս մեծ էր, որ ծալ-ծալ իջնում էր ներքև, այնպես, որ չէր կարողանում կարգին հագնվել, որովհետև մեծ զգեստը փաթաթվում էր վրան: Այս մեծ պատմուճանը հագնելով՝ մեջքին կապեց գոտին, որից թուրը կախված էր, և սուրը մեջքին կապեց. իսկ զգեստի գոտուց ծալքը իջնելով ծածկում էր թուրն ու սուրը: Վարտիքը և մույկը հագնելուց հետո նրանք[175] ազդրին կապեց. բայց վարտիքից ծալքը իջնում էր նրանի վրա և ծածկում էր մինչև սրունքը. և Դղակը գլխի չընկավ, թե զգեստի այդ մեծությունը նրա գլխի փորձանքն է: Երեկոյան ինը ժամին: Դղակին կանչեցին և ասացին. «Քեզ ներսը արքունիք են հրավիրում ընթրիքի»: Երբ նրանց մտցրին թագավորի տան նրբանցքը—նրբանցքը երկայն էր և լույսի համար շատ երդիկներ ուներ և նրբանցքով տանում էին, չուրջը կանգնած էին ասպարներով պատսպարված սակրավորներ, երդիկներն էլ ծածկել էին: Ապա ասպարակիրները նրան շրջապատելով քաշքշում էին նրան. իսկ նա թեպետ ձեռքը տանում էր զենքերին՝ բայց ոչ մի զենք չկարողացավ գտնել, որովհետև զգեստի ծալքերի մեջ թաքնված էին:

Իսկ Դղակը խոշոր՝ թիկնավետ մարդ էր՝ պինդ ու խոշոր ոսկորնե-

Իսկ իբրեւ ետես թագաւորն՝ թէ անցր տանին, ասէ. Մ՚ի այսր, մի՛ այսր, այլ մուծէք զդա ՚ի տուն պատմուճակացն: Քանզի ՚ի փողին զօրք սպարակրացն մուծին զնա ՚ի ներքս ՚ի տունն պատմուճակացն կապեալ ձեռս յետս, այս ինքն ուր թագ արքունի դնէին. Եւ անդէն խօսել սկսաւ Դղակն եւ ասէ. Ասացէք ցարքայ, զօգէք. ես այս մահու արժանի էի, բայց քեզ արժան էր զիս ՚ի հրապարակի սպանանել, եւ ոչ ՚ի տան թագաց սպանանել, եւ զքո թագդ արեամբ շաղախել: Եւ զայս միայն ժամանեաց ասել. եւ անդէն ՚ի վանսն պատմուճակացն փողոտեցին զնա, եւ հատին զգլուխ նորա, եւ հանին հարին ՚ի նիզակի, եւ կանգնեցին ՚ի հրապարակին արքունի:

## Է

### ՅԱՂԱԳՍ ՄԱՀՈՒԱՆ ԱՐՇԱԿԱՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ, ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՄԵՌԱՒ ՅԵՐԿՐԻՆ ԽՈՒԺԱՍՏԱՆԻ ՅԱՆԴՄԸՇՆ ԲԵՐԴԻՆ ԻՆՔՆ ԻՆՔԵԱՄԲ ԶԵՌՕՔ ԵՒ ԴՐԱՍՏԱՄԱՏՆ ԷՐ ՊԱՏՃԱՌՔ ՄԱՀՈՒՆ

Այլ յայնմ ժամանակի դեռ տակաւին եւս կայր կենդանի Արշակ արքայ Հայոց յերկրին իշխանութեանն թագաւորութեանն Պարսից ՚ի կողմանս Խուժաստանի յԱնդմըշն բերդին. այս ինքն որ անուն Անյուշն բերդն կոչեն: Եւ զայնու ժամանակաւ խաղաղացաւ պատերազմ տալ Պարսից ընդ Հայս. զի Արշակունին թագաւորն Քուշանաց, որ նստէր ՚ի Բաղխ քաղաքի, նա յարոյց տալ պատերազմ ընդ սասանականին Շապհոյ եւ թագաւորին Պարսից: Եւ Շապուհ թագաւորն զամենայն զզօրսն Պարսից գումարեալ խաղացոյց տալ պատերազմ ընդ նմա, եւ զորս միանգամ ածեալ էր գերութիւն յերկրէն Հայոց զամենայն այրեւձի գումարեալ՝ խաղացոյց ընդ ինքեան. եւ զներքինին անգամ թագաւորին Հայոց Արշակայ տանէր ընդ ինքեան ՚ի գործ պատերազմին:

Եւ էր ներքինի մի Հայոց թագաւորին Արշակայ, ոստիկան հաւատարիմ լեալ, ներքինի սիրելի մեծի իշխանութեան եւ մեծի պատուի, եւ անուն Դրաստամատ: Իսկ իբրեւ եղեւ պատերազմ ընդ թագաւորին Քուշանաց եւ ընդ թագաւորն Պարսից, չարաչար տարածէին զզօրսն Պարսից զօրքն Քուշանաց, եւ զբազումս կոտորեցին ՚ի զօրացն Պարսից զօրքն Քուշանաց, եւ զբազումս ձերբակալ արարին, եւ զկէս փախստականս հալածական առնէին: Իսկ Դրաստամատն ներքինին, որ յամս Տիրանայ թագաւորին Հայոց եւ Արշակայ որդւոյ նորա թագաւորին Հայոց լեալ էր իշխան տան գաւառին եւ հաւատարիմ գանձուց Անդեղ բերդին, եւ ամենայն բերդացն արքունի՝ որ ՚ի կողմանս յայնս. սոյնպէս եւ

ռով, բայց սակրավոր մարդիկը նրան շրջապատեցին, վեր բարձրացրին և այսպես տարան մինչև թագավորի սեղանատան դուռը: Երբ թագավորը տեսավ, որ այնտեղ էին տանում ասաց. «Ո՛չ այստեղ, ոչ այստեղ, այլ տարեք դրան հանդերձատունը»: Ապա սպարապետ զինվորները նրան, ձեռները ետևը կապելով, նրբանցքով տարան հանդերձատունը, այսինքն՝ այնտեղ՝ ուտեղ թագավորները թագ էին դնում: Այնտեղ Դղակը խոսել սկսեց ու ասաց. «Թագավորին այսպես ասացեք. «Ես այս մահին արժան էի, բայց քեզ վայել էր ինձ հրապարակով սպանել և ոչ թե թագադրության սենյակում և քո թագը արյունով շաղախել»: Այսքան միայն կարողացավ ասել. իսկույն հանդերձատանը նրան մորթեցին, գլուխը կտրեցին, նիզակի վրա զարկին ու արքունական հրապարակում կանգնեցրին:

### Է

### ՀԱՅՈՑ ԱՐՇԱԿ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՀՎԱՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՄԵՌԱՎ ԽՈՒԺԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՆՀՈՒՇ ԲԵՐԴՈՒՄ ԻՆՔՆ ԻՐ ՁԵՌՔՈՎ ԵՎ ԴՐԱՍՏԱՄԱՏՆ ԷՐ ԼԻՆՈՒՄ ՆՐԱ ՄԱՀՎԱՆ ՊԱՏՃԱՌԸ

Այն ժամանակները դեռ ևս կենդանի էր Հայոց Արշակ թագավորը Պարսից թագավորության իշխանության երկրում, Խուժաստանի կողմերում, Անդմըշն բերդում, որին ասում են Անհուշ բերդ: Այս ժամանակ պարսիկները դադարեցրին պատերազմները հայերի հետ, որովհետև Քուշանների Արշակունի թագավորը, որ նստում էր Բալխ[176] քաղաքում՝ պատերազմ սկսեց Պարսից Շապուհ թագավորի հետ, որ Սասանի տոհմից էր: Եվ Շապուհ թագավորը Պարսից բոլոր զորքերը գումարեց ու տարավ նրա հետ պատերազմելու, նույնպես և Հայոց աշխարհից տարած գերությունից բոլոր հեծելազորքը իր հետ պատերազմի տարավ, մինչև անգամ Հայոց Արշակ թագավորի ներքինուն: Հայոց Արշակ թագավորի այդ ներքինին հավատարիմ պաշտոնյա էր, մեծ իշխանության տեր, շատ սիրված ու պատվված. նրա անունն էր Դրաստամատ:

Երբ Քուշանաց թագավորի և Պարսից թագավորի մեջ պատերազմ սկսվեց՝ Քուշանների զորքերը շատ նեղ ձգեցին Պարսից զորքերին, շատերին կոտորեցին Պարսից զորքերից, շատերին ձերբակալեցին և մյուսներին հալածեցին, փախուստի մատնեցին: Իսկ Դրաստամատ ներքինին, որ Հայոց Տիրան թագավորի և նրա որդու Արշակ թագավորի ժամանակ իշխում էր Անգեղտան[177] գավառի վրա՝ հավատարմությամբ պահում էր Անգեղ բերդի գանձերը, նույնպես և բոլոր արքունական բերդերը, որ այն կողմերում գտնվում էին: Նույնպես և Ծոփաց աշխարհում Բնաբեղ բերդում եղած գանձերը նրա տեսչության տակ էին

յերկրին Մոփաց 'ի Բնաբեղ բերդին զանձքն լեալ էին ընդ նովաւ, և բարձ նորա 'ի վեր քան զամենայն նախարարացն: Եւ քանզի այս գործակալութիւն և մարդպետութիւն, որում Հայրն կաչէին ներքինեաց՝ գործ լեալ էր 'ի բնէ ժամանակաց 'ի թագաւորութեանն Արշակունոյ, և զայս Դրաստամատ ներքինի զիշխանն զԱնգեղ տանն գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից 'ի ժամանակին՝ յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց:

Եւ այս Դրաստամատ էր յայնմ նախատու, յորում վարբարեցին Քուշանքն զՇապուհ արքայն Պարսից: Եւ Դրաստամատ գործեաց անձնարին քաջութիւն այնչափ կռուաւ եւս 'ի վերայ Շապհոյ արքայի, և ապրեցոյց զնա 'ի մահուանէ. և բազումս 'ի Քուշանաց անտի կոտորեաց, և զբազում զախոյանից զգլուխս բերէր զառաջեաւ: Եւ զՇապուհ թագաւորն Պարսից փրկէր 'ի նեղութենէն պատերազմին բշնամեաց անտի, ուր արգելին զնա 'ի խուռն պատերազմին 'ի զօրաց անտի: Իսկ իբրև եղև յորժամ դարձաւ Շապուհ թագաւորն Պարսից յերկիրն Ասորեստանի, և մեծ շնորհակալութիւն առնէր ներքինւոյն Դրաստամատայն վաստակոցն, և ասէր ցնա Շապուհ թագաւորն Պարսից. խնդրեա դու ինչ յինէն. զինչ և խնդրեսցես, տաց քեզ և ոչ արգելից: Եւ ասէ Դրաստամատ ցթագաւորն. Ինձ 'ի քէն այլ ինչ ոչ պիտի, բայց տուր ինձ հրաման, զի երբայց տեսից զբնակ տէրն իմ զԱրշակ արքայ Հայոց: Եւ առ մի օր, իբրև ես երբայց առ նա, հրաման տուր՝ արձակել զնա 'ի կապանացն, և ես իշխեցից լուանալ զգլուխ նորա և օծանել, և ագուցանել նմա պատմուճան, և արկանել նմա բազմականս, և դնել առաջի նորա խորտիկս, և տալ նմա գինի, և ուրախ առնել զնա արուեստականօքն մի օր միայն: Եւ ասէ թագաւորն Շապուհ. Խիստ են խնդրուածքդ, զոր խնդրեցերդ. զի յաւուրց ժամանակաց՝ յորմէ թագաւորութիւնս Պարսից կանգնեալ է, և բերդն այն Անյուշ բերդ կոչեցեալ է, չիք ոք մարդ եղեալ 'ի մարդկանէ՝ որ իշխեցեալ է յիշեցուցանել թագաւորաց զոր յայնմ բերդի եղեալ զոք է թագաւորաց, յիշելով զայն մարդ՝ որ յայնմ բերդի զոք եղեալ է, թող թէ զնա զայր թագաւոր և զիմ ընկեր կապեալ եդեալ յայնմ բերդի զհակառակորդն. քան մինչ աշխատ արարեր զմեզ, և դու աւադիկ զանձն 'ի մահ եդիր և յիշեցուցեր զԱնյուշն, որ ոչ էին լեալ երբէք օրէնք թագաւորութեանս Արեաց 'ի սկզբանէ: Բայց զի վասն՝ քո մեծ վաստակք են առ իս, զոր ինչ խնդրեցերն՝ երթ՝ առեալ լիցի քեզ. բայց քեզ արժան էր զօգուտ քո անձին խնդրել կամ աշխարհս կամ գաւառս կամ զանձս: Բայց յորժամ դու զայդ խնդրեցեր, անցեալ լիցիս զօրինօք Արեաց թագաւորութեանս. երթ, առեալ լիցի քեզ որ ինչ յինէնս խնդրեցեր փոխանակաց քոց:

և նրա բարձը[178] բոլոր նախարարների բարձերից վեր էր: Եվ որովհետև այս պաշտոնը և Հայր կոչված մարդպետությունը ներքինիներին էին հանձնվում Արշակունյաց թագավորության ամենահին ժամանակներից ի վեր, ուստի այս ներքինի Դրաստամատին, Անգեղտան իշխանին էլ գերի էին տարել Պարսկաստան այն ժամանակ՝ երբ Հայոց Արշակ թագավորին բռնեցին:

Այս Դրաստամատը պատահեց այն ճակատամարտում, որի մեջ Քուշանները հաղթահարեցին Պարսից Շապուհ թագավորին: Դրաստամատն այնտեղ անպատմելի քաջություններ գործեց, Շապուհ թագավորի համար այնչափ կռվեց, որ կարողացավ նրան մահից ազատել, և Քուշաններից շատերին կոտորեց և շատ ախոյանների գլուխներ բերեց նրա առաջ: Պարսից Շապուհ թագավորին էլ փրկեց, երբ նրան պատերազմի խառնուրդի մեջ թշնամիները շրջապատել ու նեղն էին ձգել: Իսկ երբ Պարսից Շապուհ թագավորը դարձավ եկավ Ասորեստանի աշխարհը՝ մեծ շնորհակալություն էր հայտնում Դրաստամատին նրա ծառայությունների համար և ասում էր. «Խնդրիր ինձանից ինչ որ ուզում ես, քո խնդրածը կտամ, չեմ մերժի»: Դրաստամատն ասաց թագավորին. «Ես քեզանից ոչինչ չեմ ուզում, բայց միայն՝ որ հրաման տաս ինձ, որ գնամ իմ բնիկ տիրոջը տեսնեմ, Հայոց Արշակ թագավորին: Եվ միայն մի օրվա համար, երբ ես նրա մոտ գնամ՝ հրաման տուր նրան կապանքներից արձակել, և ես իրավունք ունենամ նրան լվալ, գլուխն օծել, ազնիվ զգեստ հագցնել, նրա համար սեղան պատրաստել, նրա առաջ խորտիկներ դնել, գինի տալ և ուրախացնել նվագարաններով, ճիշտ մի օր»: Շապուհ թագավորն ասաց. «Դժվար բան խնդրեցիր, որովհետև այն ժամանակից ի վեր, որ Պարսից թագավորությունը կանգուն է և այն բերդը կոչվել է Անհուշ՝ չի եղել որևէ մարդ, որ համարձակված լինի թագավորներին հիշեցնել որևէ մեկին. որ թագավորները դրել են այն բերդը. չէ հիշատակվել որևէ մարդ, որ դրված է այն բերդում, թող թե թագավոր մարդ և իմ ընկերը, որ կապված է այն բերդում, իմ հակառակորդը՝ որ այնքան ժամանակ մեզ չարչարեց[179]: Դու ահա մահդ աչքդ առար և հիշեցիր Անհուշը—անհիշելին, որ արյաց թագավորության մեջ սկզբից ի վեր չի պատահել այսպես բան: Բայց որովհետև մեծ է քո ինձ ցույց տված ծառայությունը՝ թող կատարվի խնդիրդ. գնա՛, ինչ որ խնդրեցիր տալիս եմ: Բայց դու պետք է քո սեփական օգուտդ մտածեիր, աշխարհներ, գավառներ, գանձեր խնդրեիր: Բայց երբ դու ա՛յդ խնդրեցիր՝ թող այդ բացառություն լինի արյաց թագավորության օրենքից: Գնա՛, քեզ տվի՝ ինչ որ դու ինձանից խնդրեցիր քո ծառայության փոխարեն»:

Եւ ետ նմա փուշտիպան մի հաւատարիմ. և հրովարտակ՝ արքունի մատանեաւն, զի գնացեալ երթիցէ նա 'ի բերդն յԱնդմըշն, և զիարդ և կամք իցէ նորա, զոր օրինակ և խնդրեացն՝ արասցէ կապելոյն Արշակայ, որ յառաջ թագաւորեալն էր 'ի Հայս: Եւ չոգաւ Դրաստամատն հանդերձ փշտիպանաւն և հրովարտակաւն արքունի յԱնուշ բերդն, և ետես զտէրն բնակ. և արձակեաց զԱրշակ 'ի կապանացն երկաթեաց 'ի ձեռակապացն և յոտիցն երկաթոց և յանրոց պարանոցէն շղթայիցն սարեացն. և լուաց զգլուխ նորա, և լոգացոյց զանձն նորա: Եւ ագոյց նմա պատմուճան ազնիւ. և էարկ նմա բազմականս, և բազմեցոյց զնա, և եդ առաջի նորա ընթրիս ըստ օրինաց թագաւորաց, և եդ առաջի նորա գինի որպէս օրէն էր թագաւորացն. սթափեաց զնա և մխիթարեաց, և ուրախ առնէր զնա գուսանօք:

Եւ 'ի ժամ աղանդեր մատուցանելոյ՝ եդին առաջի նորա միրգ, խընձոր և վարունգ և ամիճ, զի կերիցէ. և եդին դանակ նմա, որպէս զի հատցէ և կերիցէ զիարդ և կամեսցի: Եւ Դրաստամատ մեծապէս ուրախ առնէր զնա. կայր յոտն, և մխիթարէր զնա: Իսկ յորժամ արբեցաւ, և գինին եկն զակամբ նորա, արբեցաւ հպարտացաւ և ասէ. Վա՛յ ինձ Արշակայ. այս ես և այս, և յայսմ չափու և այս անցք անցին ընդ իս: Եւ զայս ասացեալ, զդանակն՝ զոր ունէր և ձեռինն, որով զմիրգն կամ զամիճն կամէր ուտել, եհար 'ի սրտի իւրում. և անդէն սատակեցաւ, և մեռաւ անդէն 'ի նմին ժամուն մինչ դեռ կայր 'ի բազմականին: Իսկ յորժամ զայն ետես Դրաստամատն, յարձակեցաւ եհան 'ի նմանէ զնոյն դանակ, և եհար յիւրում կշտին. և անդէն մեռաւ և նա 'ի նմին ժամուն յայնմ:

## Ը

### ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱ՞ՐԴ ԼՈՒԵԱՑ ՊԱՏԵՐԱԶՄՆ 'Ի ԿՈՂՄԱՆՑՆ ՊԱՐՍԻՑ, ԱՊԱ ՍԿՍԱՒ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՄՈՒՇԵՂ ՈՊՈՐԵԼ ԸՆԴ ԱՅՆՈՍԻԿ՝ ՈՐՔ ՄԻԱՆԳԱՄ ԱՊՍՏԱՄԲԵՑԻՆ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՀԱՅՈՑ. ԶԲԱԶՈՒՄ ԿՈՅՍ ԿՈՅՍ ՀԱՐԿԱՆԷՐ ՄԵԾԱՒ ՊԱՏԵՐԱԶՄԱՒ, ՆԱԵՒ ՏԱՆ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՀԱՅՈՑ՝ ՈՐ ՅԱՏՐՊԱՅԱԿԱՆՆ ԷՐ

Ապա իբրև դադարեաց պատերազմն 'ի կողմանցն Պարսից, և յապահովեցան ի̊րք ճակատուն յայնմ կողմանէ, և այնուհետև սկսանէր սպարապետն Հայոց Մուշեղ հարկանէր զայնոսիկ՝ որք ապստամբ եղեն 'ի թագաւորութենէն Արշակունեաց: Նախ հարկանէր զտուն թագաւորին Հայոց, որ յԱտրպայականին էր. զամենայն երկիրն գաւառացն Ատրպատնացն աւերէր, և առնոյր գերէր բազում գերութիւն 'ի նոցանէ.

Եվ նրան տվեց մի հավատարիմ փուշտիպան[180] և հովարտակ՝ արքունական մառանից կնքված, որ ելնե գնա Անդմըշն բերդը և ինչպես որ կամենա, ինչպես որ խնդրեց՝ այնպես էլ վարվի կապյալ Արշակի հետ, որ Հայաստանի թագավոր էր եղել երբեմն: Եվ Դրաստամատը արքունական հովարտակով փուշտիպանի հետ գնաց Անհուշ բերդը, տեսավ իր բնիկ տիրոջ, Արշակին, արձակեց երկաթե կապանքներից, ձեռների և ոտների երկաթե կապանքներից և վզի շղթաների ծանրությունից, նրա գլուխը լվաց, նրան լողացրեց. նրան ազնիվ զգեստներ հագցրեց, սեղան սարքեց նրա համար, նրան բազմեցրեց, նրա առաջ թագավորավայել ընթրիք դրեց, գինի դրեց առաջը, ինչպես թագավորների կարգն էր, նրան զվարթացրեց, մխիթարեց և նվագարաններով ուրախացնում էր:

Երբ տղանդների (դեսսերտի) հերթը հասավ՝ նրա առաջ դրին միրգ—խնձոր, վարունգ և ամիճ[181], և դանակ տվին, որպեսզի կտրե և ուտե ինչպես կամենում է: Դրաստամատն էլ ոտքի կանգնած՝ նրան շատ ուրախացնում էր և մխիթարում: Երբ նա խմեց՝ գինին գլուխը զարկեց, նա հարբեց ու հպարտացավ և ասաց. «Վա՜յ ինձ, Արշակիս. ո՞րտեղից ուր ընկա և ի՞նչ օրի հասա»: Այս ասելով՝ դանակը, որ ձեռքին բռնած ուներ, որով միրգը կամ ամիճը պիտի կտրեր՝ խրեցրեց իր սիրտն և իսկույն մեռավ հենց նստած տեղում: Դրաստամատն երբ այս տեսավ՝ վրա ընկավ, դանակը քաշեց հանեց նրա մարմնից և իր կուշտը խրեցրեց: Նա էլ նույնպես նույն ժամին մեռավ:

## Ը

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ԴԱԴԱՐԵՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՊԱՐՍԻԿՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ, ՈՐԻՑ ՀԵՏՈ ՄՈՒՇԵՂ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՍԿՍԵՑ ԿՌՎԵԼ ՆՐԱՆՑ ՀԵՏ, ՈՐՈՆՔ ԱՊՍՏԱՄԲԵԼ ԷԻՆ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻՑ, ԵՎ ՄԵԾԱՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՈՎ ՇԱՏ ՏԵՂԵՐ ՋԱՐԴՈՒՄ ԷՐ: ՆԱԵՎ ԵՎ ԱՌԱՋ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԿԱԼՎԱԾԻ ՄԱՍԻՆ ԱՏՐՊԱՏԱԿԱՆՈՒՄ

Ապա, երբ պատերազմը Պարսից կողմից դադարեց և (հայերն) այդ կողմից ապահովվեցին՝ այնուհետև Հայոց Մուշեղ սպարապետն սկսում էր ջարդել նրանց, որոնք ապստամբել էին Արշակունյաց թագավորներից: Նախ ջարդում էր Հայոց թագավորի կալվածը Ատրպատականում: Ատրպատականցոց[182] բոլոր գավառներն ավերում էր, մեծ քանակությամբ գերիներ էր վերցնում նրանցից, մնացածներին նվա-

և զմնացորդսն նուաճէր և 'ի ծառայի կացուցանէր, և առնոյր զբազումս պանդանդս 'ի նոցանէ:

Թ

ՑԱՂԱԳՍ ՆՈՇԻՐԱԿԱՆԻ

Հարկանէր Մուշեղ զապստամբս Նոշիրական աշխարհին, որ ապստամբեցին յարքայէն Հայոց. առնոյր աւերէր զերէր, և 'ի մնացորդացն առնոյր պանդանդս. և զբնակիչս երկրին 'ի ծառայի ծառայութեան կացուցանէր:

Ժ

ՑԱՂԱԳՍ ԿՈՐԴՈՒԱՑ ԿՈՐԴԵԱՑ ԵՒ ՏՄՈՐԵԱՑ

Հարկանէր Մուշեղ սպարապետն և զայս գաւառս ապստամբեալս յարքայէն Հայոց, զԿորդուս և զԿորդիս և զՏմորիս. առնոյր զերէր և աւերէր, դնէր հարկ մնացորդացն, և առնոյր պանդանդս:

ԺԱ

ՑԱՂԱԳՍ ՄԱՐԱՑ

Եւ զկողմանսն Մարաց, քանզի և նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց, հարկանէր զնոսա մեծապէս, և զերէր զբաղումս 'ի նոցանէն, և մնացորդացն դնէր հարկս, և առնոյր պանդանդս:

ԺԲ

ՑԱՂԱԳՍ ԱՐՁԱԽԱՑ

Հարկանէր զերկիրն Արձախայ մեծաւ պատերազմաւ, զերէր բազումս 'ի նոցանէն. և զմնացորդացն առնոյր պանդանդս, և զմնացեալսն 'ի ծառայի կացուցանէր:

ԺԳ

ՑԱՂԱԳՍ ԱՂՈՒԱՆԻՑ

Առնէր պատերազմ ընդ երկիրն Աղուանից, հարկանէր զնոսա 'ի հարուածս անճնարինս: Եւ թափէր 'ի նոցանէ բազում գաւառս, զոր հա-

նում էր և հարկատու դարձնում, վերցնում էր նրանցից նաև շատ պատանդներ:

Թ

ՆՈՇԻՐԱԿԱՆԻ ՄԱՍԻՆ

Մուշեղը շարժում էր նաև Նոշիրական աշխարհի ապստամբներին, որոնք ապստամբել էին Հայոց թագավորից: Երկիրն առնում, ավերում և գերում էր, մնացածներից պատանդներ էր վերցնում և երկրի բնակիչներին հպատակ և հարկատու էր դարձնում:

Ժ

ԿՈՐԴՈՒՔԻ, ԿՈՐԴԻՔԻ ԵՎ ՏՄՈՐԻՔԻ ՄԱՍԻՆ

Մուշեղ սպարապետը շարժում էր նաև այս գավառները, որոնք ապստամբել էին Հայոց թագավորից, այսինքն Կորդուքը, Կորդիքը և Տմորիքը. գերիներ էր վերցնում, ավերում էր, մնացածներին հարկատու էր դարձնում և նրանցից պատանդներ առնում:

ԺԱ

ՄԱՐԵՐԻ ՄԱՍԻՆ

Մարաց կողմերն էլ նա սաստիկ շարժում էր, որովհետև նրանք էլ ապստամբել էին Հայոց թագավորից. նրանցից շատերին գերում էր, մնացորդներին հարկատու էր դարձնում և նրանցից պատանդներ վերցնում:

ԺԲ

ԱՐՑԱԽԻ ՄԱՍԻՆ

Արցախի երկիրն էլ շարժում էր մեծ պատերազմով, նրանցից շատերին գերում էր: Մնացորդներից պատանդներ էր առնում և նրանց հարկի տակ դնում:

ԺԳ

ԱՂՎԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Պատերազմում էր նաև Աղվանից երկրի հետ և նրանց սոսկալի ջարդ էր տալիս: Նրանցից ետ էր խլում շատ գավառներ, որ նրանք

տեալ էր նոցա 'ի նոցանէն. զՌստի, զՇակաշէն և զձորն Գարդմանայ, զԿողթ և այլ որ շուրջն էին զնովաւ սահմանք գաւառք: Եւ զԿուր գետ՝ որպէս և յառաջն լեալ էր, ընդ երկիրն Աղուանից և ընդ երկիրն իւրեանց սահման արարեալ կացուցանէին. և 'ի գլխաւորացն բազումս սպանանէին. և զմնացորդսն 'ի հարկի կացուցանէին, և պանդանդս 'ի նոցանէ առնուին:

ԺԴ

ՅԱՂԱԳՍ ԿԱՍԲԻՑ

Ապա խնդրէր զվրէժն մեծապէս սպարապետն Մուշեղ յերկրէն Պարսից և 'ի Փայտակարան քաղաքէ, փոխանակ զի և նոքա նշկահեցին ստեցին արքային Հայոց: Հասեալ, զբազումս 'ի նոցանէ գլխով պատուհաս առնէր սպարապետն զօրավարն Մուշեղ. զբազումս 'ի նոցանէ գերէր, և զմնացորդսն 'ի հարկի կացուցանէր, և առնոյր պանդանդս 'ի նոցանէն, և անդ ոստիկանս վերակացուս թողոյր:

ԺԵ

ՅԱՂԱԳՍ ՎՐԱՑ

Ապա խաղայր սպարապետն Մուշեղ 'ի վերայ Վրաց արքային, և նեղէր զնա մեծապէս. և հարկանէր զերկիրն, և վանէր զամենայն աշխարհն Վրաց. և հանէր ընդ սուր զամենայն ազատս և զազգս նախարարացն, զոր եգիտ: Զփառաւազեանսն հրաման տայր սպարապետն Մուշեղ հանել 'ի խաչ 'ի մէջ աշխարհին Վրաց. և զբդեաշխն Գուգարաց, որ յառաջն ծառայէր թագաւորին Հայոց և ապստամբեաց, կալեալ գլխատէր. և զազգն որձակոտոր առնէր, և զկանայսն և զդստերսն 'ի գերութիւն վարէին: Նոյն օրինակ և որ միանգամ 'ի կողմանն յայն էին նախարարքն, և 'ի թագաւորէն Հայոց եղեն ապստամբ, զամենեսեան գլխատէր. և թափէր զամենայն գաւառն, և առնոյր պանդանդս, և զմնացեալսն 'ի հարկի կացուցանէր: Եւ զհին սահմանսն, որ յառաջուն էր լեալ յերկիրն Հայոց և ընդ երկիրն Վրաց, որ է ինքն մեծ գետն Կուր, այնու հետև յինքն վարեալ՝ դառնայր անտի:

գրավել էին—Ուտին Շակաշենը, Գարդմանաձորը, Կողբը և սրանց ջուրջն եղած սահմանակից շատ գավառներ։ Կուր գետը սահման դարձրեց (մեր) աշխարհի և Աղվանքի մեջ՝ ինչպես որ առաջ էր։ Գլխավորներից շատերին սպանում էին, մնացորդներին հարկի տակ էին դնում և նրանցից պատանդներ էին առնում։

ԺԴ

ԿԱՍՊԲՐԻ ՄԱՍԻՆ

Ապա Մուշեղ սպարապետը սաստկապես վրեժ էր առնում Կասպից[183] երկրից, Փայտակարան քաղաքից, որովհետև նրանք էլ ստամբակել ու դավաճանել էին Հայոց թագավորին։ Մուշեղ զորավարն այնտեղ հասնելով՝ նրանցից շատերին պատժելով գլխատում էր, շատերին գերի վերցնում, մնացածներին էլ հարկատու դարձնելով՝ նրանցից պատանդներ էր վերցնում և այնտեղ վերակացու պաշտոնյաներ էր թողնում։

ԺԵ

ՎՐԱՑ ՄԱՍԻՆ

Ապա Մուշեղ սպարապետը գնում էր Վրաց աշխարհի վրա. նրան սաստիկ նեղում, ջարդում էր. ամբողջ Վրաց աշխարհը նվաճում էր, որի էր քաշում բոլոր ազնվականներին և բոլոր նախարարական տոհմերը, որոնց որ գտնում էր։ Մուշեղ սպարապետը հրամայում էր Փառավազյաններին խաչը հանել Վրաց աշխարհում, իսկ Գուգարաց բդեշխին, որ առաջ ծառայում էր Հայոց թագավորին և վերջը ապստամբել էր՝ բռնելով գլխատեց ու նրա ցեղի արուները կոտորեց, իսկ կանանց ու աղջիկներին գերի վերցրին։ Եվ առհասարակ բոլոր այն կողմի նախարարներին, որոնք Հայոց թագավորից ապստամբել էին՝ գլխատում էր, ամբողջ գավառը նորից նվաճում էր և պատանդներ էր առնում. մնացածներին էլ հարկի տակ էր դնում։ Եվ գրավելով մինչև հին սահմանը, որ առաջուց գոյություն ուներ Հայաստանի և Վրաստանի միջև, այսինքն Կուր մեծ գետը՝ այնտեղից ետ էր դառնում։

ԺԶ

ՅԱՂԱԳՍ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԱՂՁՆԵԱՑ

Դառնայր ապա զօրավարն Մուշեղ յերկիրն Աղձնեաց, և հարկանէր զերկիրն 'ի մեծ 'ի հարուածս. զի և նոքա ապստամբեալ էին յարքայէն Հայոց: Զերբակալ ,արարեալ զբդեաշխն Աղձնեաց, առ նմին կոտորեցին զկանայս, և զորդիս նոցա 'ի գերութիւն վարեցին, և զմնացեալսն 'ի հարկի կացուցանէր, և վերակացուս և ոստիկանս յերկրին Աղձնեաց թողուին:

ԺԷ

ՅԱՂԱԳՍ ՄԵԾԻ ԾՈՓԱՑ

Ապա առնի 'ի Ծոփս մեծ արշաւեցին. և նոքա էին ապստամբեալ: Հարկանէր զերկիրն գաւառին Մուշեղ մեծի Ծոփաց, և զազգն հանէր ընդ սուր. և առնոյր պանդանդս, և ազգն 'ի հարկի կացուցանէր:

ԺԸ

ՅԱՂԱԳՍ ԱՆԳԵՂ ՏԱՆՆ

Հարկանէր և յԱնգեղ տունն զբազումս, և հանէր ընդ սուր: Բայց աշխարհն զի ոստան արքունի լեալ էր վաղ, բնակիչք գաւառին և ինքեանք կային 'ի հարկի ծառայութեան:

ԺԹ

ՅԱՂԱԳՍ ԳԱՒԱՌԻՆ ԱՆՁՏԱՑ

Ապա 'ի գաւառն Անձտայ արշաւէր և հարկանէր Մուշեղ զկողմանս գաւառացն այնոցիկ՝ որ շուրջ էին զնովաւ, քանզի և նոքա ապստամբեցին 'ի թագաւորութենէն Արշակունեաց: Հանէր ընդ սուր զտեարս գաւառին. առնոյր պանդանդս, և նուաճէր. 'ի հարկի ծառայութեան թագաւորին Հայոց Պապայ զամենեսեան առ հասարակ կացուցանէր:

ԺՁ

ԱՂՁՆԻՔ ԳԱՎԱՌԻ ՄԱՍԻՆ

Այնուհետև Մուշեղ զորավարը դառնում էր Աղձնյաց երկրի վրա և մեծամեծ հարվածներ էր հասցնում այդ երկրին, որովհետև սրանք էլ ապստամբել էին Հայոց թագավորից: Աղձնիքի բդեշխին ձերբակալեցին, նրա առաջ սպանեցին կանանցը, իսկ որդոցը գերի վերցրին: Մնացածներին հարկի ենթարկեցին և Աղձնիքում էլ թողեց վերակացուներ ու պաշտոնյաներ:

ԺԵ

ՄԵԾ ԾՈՓՔԻ ՄԱՍԻՆ

Այնտեղից արշավեցին Մեծ Ծոփք, որ նույնպես ապստամբել էր: Մուշեղը ջարդում էր Մեծ Ծոփքը, ազնվական տոհմերը սրի էր քաշում, պատանդներ էր առնում և երկիրը հարկատու էր դարձնում:

ԺԸ

ԱՆԳԵՂՏԱՆ ՄԱՍԻՆ

Անգեղտանն էլ շատերին ջարդում էր և սրի էր քաշում: Բայց որովհետև երկիրը վաղուց ի վեր արքունի տուն[185] էր՝ ուստի բնակիչները հարկատու հպատակ էին մնացել:

ԺԹ

ԱՆՁԻՏ ԳԱՎԱՌԻ ՄԱՍԻՆ

Ապա Մուշեղն արշավում էր Անձիտ գավառը և ջարդում էր շրջակա գավառների հետ միասին, որովհետև նրանք էլ ապստամբել էին Արշակունյաց թագավորներից: Գավառների տերերին սրի էր քաշում, պատանդներ էր առնում, նվաճում էր և բոլորին առհասարակ հարկատու և հպատակ էր դարձնում Հայոց Պապ թագավորին:

## Ի

### ՑԱՂԱԳՍ ՄՈՒՇԵՂԻ ՍՊԱՐԱՊԵՏԻՆ ՀԱՅՈՑ

Այլ քաջն զօրավարն սպարապետն Հայոց լի էր քինի մեծաւ և բազում նախանձու զամենայն աւուրս կենաց իւրոց, և միամտութեամբ և արդար վաստակով ջանայր հանապազ և վաստակէր ՚ի վերայ թագաւորութեանն Հայոց աշխարհին զտիւ և զգիշեր կայր յաշխատութեանն. ջանայր և ճգնէր կալ ՚ի ճակատու պատերազմին, և ոչ թողոյր բնաւ ամենևին և ոչ քան զկորի մի զետին ՚ի սահմանաց երկրին Հայոց ուրեք վարել ՚ի վերայ աշխարհին կեալ և ՚ի մեռանել, ի՛ վերայ անուանն քաջութեան, ՚ի վերայ բնակ տերանց, և ՚ի վերայ բնակչաց աշխարհին, ՚ի վերայ քրիստոնէութեանն հաւատոյ, ՚ի վերայ հաւատացեալ յաստուած և ՚ի Քրիստոս մկրտեալ ժողովրդոց, ՚ի վերայ եկեղեցեաց, և ՚ի վերայ նուիրեալ սպասուց, ՚ի վերայ վկայարանացն Քրիստոսի, և ՚ի վերայ ուխտի աստուծոյ, ՚ի վերայ քերց և եղբարց, ՚ի վերայ մերձաւորաց տոհմին, ՚ի վերայ բարեկաց բարեկիր բարեկամաց, հանապազ կայր զօրավարն Մուշեղ ՚ի նահատակութեան պատերազմին, զանձն փոխանակ առնել աշխարհին. և յանձն իւր անխայէր ՚ի մեռանել, զամենայն աւուրս կենաց իւրոց առաջի իւրոց բնակ տերանցն արշակունեաց վաստակէր:

## ԻԱ

### ՑԱՂԱԳՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻՆ ՆԵՐՍԷՍԻ, ԹԷ ՈՐՊԻՍԻ՛ ԱՅՐ ԷՐ, ԿԱՄ ԶԻ՛ՆՉ ԳՈՐԾԷՐ

Այլ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս չինէր զամենայն աւերեալսն երկրին Հայոց. յանձն առնէր և մխիթարէր, դարմանէր և տեսուչ լինէր ամենայն աղքատաց. և զօրկեալս և զաղքատս հանգուցանէր: Եւ չինէր զեկեղեցիս ընդ ամենայն տեղիս, և զամենայն կործանեալսն կանգնէր. և զամենայն կարգսն տապալեալ ուղղէր և նորոգէր: Շինէր և հաստատէր, խրատէր և յանդիմանէր. բազում առնէր նշանս և զօրութիւնս մեծամեծս և բազում բժշկութիւնս սքանչելեաց: Եւ յօրէնսն սաստէր մեծապէս. և զոր օրհնէր, օրհնէր[49]. և զոր անիծանէր, անիծեալ լինէին: Եւ բազմացոյց զկարգս պաշտօնէից յամենայն տեղիս իշխանութեանն ՚ի սահմանացն Հայոց, և յամենայն գաւառս կացոյց տեսուչս եպիսկոպոսըս. և հանապազ զգուշանայր տեսչութեանն իւրոյ և իշխանութեան, որչափ եկաց նա ժամանակս:

## Ի

## ՀԱՅՈՑ ՄՈՒՇԵՂ ՍՊԱՐԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ

Հայոց քաջ զորավար և սպարապետ (Մուշեղը) ամբողջ իր կյանքում լի էր նախանձախնդրությամբ. նա հավատարմությամբ և արդար աշխատանքով, միշտ ջանասիրությամբ աշխատում էր Հայոց աշխարհի և թագավորության համար: Գիշեր ու ցերեկ նա աշխատանքի մեջ էր. նա ճիգ էր թափում, պատերազմներ էր մղում, թույլ չէր տալիս, որ թեկուզ մի կորու չափ գետին Հայոց աշխարհի սահմաններից խլվի: Նա կյանքը դրել էր աշխարհի վրա: Մուշեղ զորավարը շարունակ արիական պատերազմներ էր վարում քաջության անվան համար, իր բնիկ տերերի, աշխարհի բնակիչների համար, քրիստոնեական հավատի, աստծուն հավատացող և Քրիստոսի անունով մկրտված ժողովրդի համար, եկեղեցիների, նրանց նվիրված սպասների, Քրիստոսի վկայարանների, աստծու ուխտի համար, քույրերի և եղբայրների, մերձավոր տոհմակիցների, մտերիմ բարեկամների համար: Նա իր կյանքը դրել էր աշխարհի համար, իր կյանքին չէր խնայում, իր կյանքի բոլոր օրերում նա աշխատում էր իր բնիկ Արշակունի տերերի համար:

## ԻԱ

## ՆԵՐՍԵՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ. ԹԵ ԻՆՉՊԻՍԻ ՄԱՐԴ ԷՐ ԵՎ ԻՆՉԵՐ ԷՐ ԳՈՐԾՈՒՄ

Իսկ Հայոց Ներսես եպիսկոպոսապետը շինում էր Հայոց աշխարհի բոլոր ավերված տեղերը, խնամում[186] ու մխիթարում էր, դարմանում ու պահպանում էր բոլոր աղքատներին, բորոտների և աղքատների համար ապաստարաններ էր պատրաստում: Ամեն տեղ եկեղեցիներ էր շինում, ավերածները նորոգում էր, բոլոր խանգարված կարգերը վերականգնում էր և ուղղում: Շինում էր և հաստատում, խրատում էր և հանդիմանում, շատ նշաններ ու մեծամեծ զորություններ էր անում և շատ սքանչելի բժշկություններ էր կատարում. օրինազանցներին խստությամբ սաստում էր[187]. ում օրհնում էր՝ նա օրհնվում էր. ում անիծում էր՝ նա անիծվում էր: Հայոց իշխանության բոլոր սահմաններում նա շատացրեց (եկեղեցու) պաշտոնյաների թիվը, ամեն տեղ տեսուչ-եպիսկոպոսներ դրեց և միշտ ուշադիր հետևում էր իր տեսչության և իշխանության գործերին՝ քանի որ ապրում էր:

## ԻԲ

## ՅԱՂԱԳՍ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՊԱՅ, ԹԷ ԶԻԱ՞ՐԴ ԷՐ ԼԻ ԴԻՒՕՔ ԿԱՄ ՈՐՊԷՍ ՎԱՐԷՐ

Այլ թագաւորն Պապ, զի մինչ դեռ տղայիկ այն ինչ ծնեալ էր 'ի մօրէ իւրմէ՝ յայնժամ ձօնեաց զնա դիւաց անօրէն մայրն Փառանձեմ, և վասն այնորիկ լի էր դիւօք 'ի տղայութենէ իւրմէ: Վասն զի հանապազ զկամս դիւաց առնէր, վասն այսորիկ և զբժշկութիւն իսկ ոչ կամէր գտանել, զի հանապազ վարժէր զանձն իւր դիւօք, և կախարդանօք երևէին դևքն 'ի նմա. և ամենայն մարդ զդևսն 'ի նմա աչօք բացօք տեսանէին: Զի յորժամ մարդիկ հանապազօր յայգօրել ելեալ մտանէին, տեսանէին՝ զի յօձից կերպարանս ելանէին 'ի ծոցոյն Պապայ թագաւորին, և պատէին զուսօք նորա, և ամենեքեան ոյք տեսանէին զնա, երկրնչէին 'ի նմանէ և հուպ երթալ: Իսկ նա պատասխանի տայր մարդկանն ասելով՝ թէ մի՛ երկնչիք, զի սոքա իմ են. և ամենայն մարդ յամենայն ժամ տեսանէին զայսպիսի ինչ կերպարանս 'ի նմա:

Զի բազում համբարք դիւաց համբարեալ էին 'ի նմա. և յամենայն ժամ ամենայն մարդոյ երեւէր այս, որք զամ մի զթագաւորն տեսանէին. բայց յորժամ հայրապետն Ներսէս մտանէր առաջի նորա կամ սուրբ եպիսկոպոսն Խադ, դևքն չերևեալ աներևոյթ լինէին: Եւ էր թագաւորն Պապ 'ի պղծութեան թաւալեալ. և երբեմն այլոց էգ եղեալ տայր զինքն 'ի խառնակութիւն. և երբեմն զայլս էգ արարեալ, զարուն խառնակեալ պղծէր. և երբեմն ընդ անասունս խառնակէր: Եւ այսպէս դիւօք վարեալ, որք 'ի նմայն էին բնակեալ զամենայն աւուրս կենաց իւրոց:

## ԻԳ

## ՅԱՂԱԳՍ ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԵԱՆՆ ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԷՍԻ, ԶԻ ՀԱՆԱՊԱԶ ԹՇՆԱՄԻ ԷՐ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՊԱՅ ՎԱՍՆ ՄԵՂԱՑ ՆՈՐԱ

Այլ սուրբն Ներսէս եպիսկոպոսապետն Հայոց հանապազօր ընդդիմացեալ թագաւորին Պապայ, կշտամբէր և յանդիմանէր մեծաւ վկայութեամբ յանդիմանութեամբ. և վասն չարեաց նորա բազմաց ոչ համարձակէր նմա զսեամս եկեղեցւոյն կոխել, և ոչ մտանել նմա 'ի ներքս: Հանապազ կշտամբեալ յանդիմանէր և խրատէր, զի զտցէ զանձն իւր 'ի կորստենէ գործոց իւրոց. և հանապազ խօսէր ընդ նմա, զի փոյթ արասցէ ապաշխարութեան: Դնէր առաջի նորա վկայութիւնս 'ի գրոց, ահ արկանելով յաւիտենական դատաստանացն պատժովք՝ գալ 'ի

## ԻԲ

## ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ, ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԼՑՎԱԾ ԷՐ ԴԵՎԵՐՈՎ ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ԷՐ ՎԱՐՎՈՒՄ

Իսկ Պապ թագավորը, երբ դեռ նոր ծնված երեխա էր՝ նրա անօրեն Փառանձեմ մայրը նրան դևերին նվիրեց, ուստի և նա տղայությունից ի վեր լի էր դևերով: Որովհետև նա միշտ դևերի կամքն էր կատարում, ուստի և չէր կամենում բժշկվել, այլ միշտ իր անձը վարժեցնում էր դևերով, և դևերը կախարդությամբ երևում էին նրա վրա, և ամեն մարդ բաց աչքով տեսնում էր նրա վրա դևերը: Որովհետև երբ մարդիկ ամեն օր գալիս էին թագավորին բարի լույս ողջունելու՝ տեսնում էին որ (դևերը) օձերի կերպարանքով դուրս էին գալիս Պապ թագավորից ծոցից և փաթաթվում էին նրա ուսերին: Բոլոր տեսնողները վախենում էին մոտ գնալ, իսկ նա այդ մարդկանց պատասխանում էր և ասում, թե «Մի՛ վախենաք, սրանք իմն են». և ամեն մարդ ամեն ժամանակ այսպիսի կերպարանքներ էին տեսնում նրա վրա:

Նրա մեջ բո՛ւյն էին դրել մեծ քանակությամբ դևեր ու միշտ երևվում էին այն մարդկանց, որոնք գալիս էին թագավորին տեսնելու. բայց երբ Ներսես հայրապետը կամ Խադ սուրբ եպիսկոպոսը մտնում էին թագավորի մոտ՝ դևերը չիք էին դառնում, աներևութանում էին: Եվ Պապ թագավորը շաղախված էր պղծության մեջ. երբեմն ինքը էգ էր դառնում և իրեն հանձնում էր խառնակության, երբեմն ուրիշ արուների էգ դարձնելով խառնակվում էր նրանց հետ, երբեմն էլ անասունների հետ էր խառնակվում: Եվ այսպես իր կյանքի բոլոր օրերում նա ենթարկված էր դևերին:

## ԻԳ

## ՍՈՒՐԲ ՆԵՐՍԵՍԻ ՀԱՆԴԻՄԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻՆ, ՈՐԻՆ ԹՇՆԱՄԻ ԷՐ ՆՐԱ ՄԵՂՔԵՐԻ ՊԱՏՃԱՌՈՎ

Իսկ Հայոց Ներսես եպիսկոպոսապետը միշտ դիմադրում էր Պապ թագավորին, նրան նախատում էր և հանդիմանում ծանր փաստացի հանդիմանություններով. նրա բազմաթիվ չար գործերի պատճառով թույլ չէր տալիս եկեղեցու շեմքը ոտք դնել և ոչ ներս մտնել: Միշտ նրան նախատում, հանդիմանում, խրատում էր, որ կորստական գործերից հրաժարվի, ուղղության գա. շարունակ նրա հետ խոսում էր, որ ապաշխարության գա: Նրա առաջն էր գնում ս. գրքից վկայություններ վերջին դատաստանի հավիտենական պատիժներով, ահ էր ձգում

զգաստութիւն և 'ի լաւանալ, և յառաջադիմութեան արդարութեան կարգացն և գործոցն սրբութեան փոյթ առնել:

Իսկ թագաւորն Պապ լսելոյ նմա ոչ լսէր. այլ և ընդդիմացեալ ևս մեծաւ թշնամանօք, և մահու սպառնէր նմա, և կամէր սպանանել զնա յայտնի, բայց 'ի թագաւորէն Յունաց յայտնի և անարգել անգամ բանիւք չիշխէր, և ոչ սակաւ մի համարձակել 'ի նա, թող թէ մահու ազդաւ: Նա և իւր իսկ աշխարհի մարդիկն և՝ զօրքն ամենայն չառնուին յանձն զայսպիսի ինչ առնել. այր՝ զորմէ ամենայն մարդիկ աշխարհին Հայոց կախեալ կային զնմանէ վասն արդար գործոցն, սրբութեան գնացիցն յաշխարհի, խաղաղութեամբ մեծի առաջնորդութեանն, նա և վասն յայտնի նշանագործութեանն սքանչելեացն՝ զոր առնէր, իբրև յերկնաւոր հրեշտակ այնպէս նայէին ամենայն մարդ: Եւ թագաւորն ոխացեալ էր ընդ նմա, և խնդրէր սպանանել զնա. այլ յայտնի զայս և բանիւք ճառել ոչ իշխէր, թէ ոչ՝ իւր զօրքն սպանանէին զնա: Զի այնպէս ամենայն մարդ ապաստանեալ էին յաղօթս նորա, և սիրէին զնա առհասարակ մեծամեծք և փոքունք, պատուականք և անարգք, ազատք և շինականք միանգամայն:



## ԻԴ

## ՅԱՂԱԳՍ ՄԱՀՈՒ ՍՐԲՈՅՆ ՄԵԾԻ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ ՆԵՐՍԷՍԻ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՊԱՊԱՅ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ՍՊԱՆԱՒ 'Ի ՆՄԱՆԷ

Այլ թագաւորն Պապ յամենայն ժամ էր թշնամի մեծի քահանայապետին վասն յանդիմանութեան մեղաց իւրոց չարեաց՝ զոր գործէրն, և յանդիմանեալ լինէր յառնէն աստուծոյ 'ի Ներսիսէ հանապազ: Ոչ զգաստանալ կամէր և ոչ գալ յուղղութիւն, և ոչ համբերել կարէր հանապազորդ նախատանացն յանդիմանչին. էարկ 'ի միտս սպանանել զմեծ քահանայապետն աստուծոյ զՆերսէս: Իբրև յայտնի զայս ոչ մարթէր նմա առնել, կեղծաւորել կերպարանէր իբրև այն եթէ յուղղութիւն ինչ եկեալ է. աղաչէր զքահանայապետն աստուծոյ տալ նմա ապաշխարութիւն: Եւ կոչեցաւ յապարանս իւր 'ի Խախ աւանի յեկեղեաց գաւառի. արար նմա ընթրիս, աղաչեաց զայրն աստուծոյ բազմել նմա յարքունական գահոյսն, և իբրև այնու թէ սրբեսցի նա 'ի չարեաց անտի իւրոց, և ինքն այնու հետև յայնմհետէ յապաշխարութիւն մտցէ:

Իսկ իբրև զառաջինն բազմեցոյց, ինքնին թագաւորն յոտն կացեալ հոլանեալ, ի՛ մէջ գետին անցեալ, անապակ մատուցանէր առնն աստուծոյ Ներսիսի յընթրիս անդ, և դեղ մահու ընդ կոտիցն խառնեալ

նրա վրա, որպեսզի զգաստանա և ուղղվի և արդարության կարգերի ու մաքուր գործերի հետևի:

Իսկ Պապ թագավորը ամենևին նրան չէր լսում, այլ դեռ հակառակում էր նրան և հետը թշնամանում, նրա մահվան էր սպասում և ցանկանում էր նրան սպանել, բայց Հունաց թագավորի ահից նա չէր համարձակվում նույնիսկ նրան խոսքով անարգել հայտնապես կամ նրա դեմ խստություն բանեցնել. թող թե մահացնել: Հենց (Հայոց) աշխարհի ժողովուրդն էլ, զորքերն էլ թույլ չէին տա այսպիսի բան անել մի մարդու, որից կախված էին Հայոց աշխարհի բոլոր մարդիկ՝ նրա արդար գործերի, մաքուր վարքի, խաղաղ առաջնորդության պատճառով, և նրա գործած հայտնի սքանչելի նշանների համար բոլորը նրա վրա նայում էին ինչպես երկնավոր հրեշտակի վրա: Եվ թագավորը ոխ էր պահում նրա դեմ, միշտ էր փնտրում նրան սպանելու, և հայտնապես այս բանն անել անգամ չէր համարձակվում, այլապես զորքերը իրեն կսպանեին: Որովհետև բոլոր մարդիկ սպասավորել էին նրա աղոթքին և նրան առհասարակ բոլորը սիրում էին—մեծերն ու փոքրերը, պատվականներն ու հասարակ մարդիկ, ազնվականներն ու շինականները:

## ԻԴ

## ՆԵՐՍԵՍ ՄԵԾ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՍՊԱՆԵՑ ՆՐԱՆ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԸ

Իսկ Պապ թագավորը շարունակ թշնամի էր մեծ քահանայապետին, իր չար գործերի և մեղքերի հանդիմանության պատճառով, որովհետև Ներսեսը, սուրբ մարդը, միշտ նրան հանդիմանում էր: Նա չէր կամենում զգաստանալ, ուղղության գալ, չէր էլ կարող դիմանալ հանդիմանողի մշտական նախատինքներին, ուստի միտքը դրեց սուրբ մեծ քահանայապետ Ներսեսին սպանել: Բայց որովհետև այս բանը հայտնապես անել կարելի չէր՝ ուստի կեղծավորաբար այնպես ձևացրեց, իբրև թե ուղղության է դառնում, և աղաչում էր սուրբ քահանայապետին, որ իրեն ապաշխարանք նշանակե: Նրան հրավիրեց իր ապարանքը Եկեղյաց գավառի Խախ ավանում. նրա համար ընթրիք պատրաստեց, սուրբ մարդուն աղաչեց, որ արքունական գահույքը բազմի, իբրև թե սրանով նա իր չար գործերից կմաքրվի և այնուհետև կսկսի ապաշխարել:

Երբ նրան առաջին տեղում բազմեցրեց՝ ինքը թագավորը, վրայի պատմուճանը հանած, մեջտեղում ոտքի կանգնած՝ ընթրիքի ժամանակ անապակ (գինի) էր մատուցանում սուրբ մարդուն՝ Ներսեսին, և

մատուցանէր նմա: Եւ յորժամ ըմպէր զբաժակն զայն՝ իմացեալ անդէն, խօսել սկսաւ և ասէ. Օրհնեալ է տէր աստուած մեր, որ արժանի արար զիս ըմպել զբաժակս զայս, և հասանել մահու՝ որ վասն տեառն է, որում և ցանկացեալ էի 'ի մանկութենէ իմմէ: Արդ զբաժակս փրկութեան ընկալայց, և զանուն տեառն կարդացից, զի և ես հաւասարեցից հասանել 'ի մասն ժառանգութեան սրբոցն 'ի լոյս: Այլ քեզ, ո՛վ թագաւոր, արժան էր իբրև զայր թագաւոր յայտնի հրաման տալ և սպանանել. զի ո՞վ էր՝ որ արգելոյր զքեզ, կամ ո՛վ էր՝ որ պահէր զձեռն քո 'ի գործոց, զոր ինչ կամէիր գործել: Բայց, տէր, թող սոցա զայս գործս՝ զոր ինչ գործեցին յիս. և ընկալ զհոգի ծառայիս քո, որ հանգուցիչդ ես ամենայն աշխատելոց. և կատարիչ ամենայն բարութեանց:

Զայս և այսպիսի, և որ ինչ նման են այսպիսի բանք, խօսեցաւ. և յարուցեալ գնաց 'ի վանս իւր: Եւ զհետ գնացին նորա 'ի տանարէն արքունի ամենայն մեծամեծքն նախարարքն Հայոց, և Մուշեղ սպարապետն Հայոց, և Հայր Մարդպետ. և ամենայն որ միանգամ էին անդ, մտին ընդ նմա 'ի վանս նորա: Եւ իբրև եմուտ 'ի վանս իւր, վերացուցեալ զպարեգօտս իւր՝ 'ի վերայ սրտին ցուցանէր կապուտակեալ քան զչափ նկանակի միոյ: Իսկ մեծամեծք նախարարացն մատուցանէին թիւրակէս և անդեղեայս վասն ապրելոյ. իսկ նա ոչ կամեցեալ զայն 'ի բաց մերժէր, այլ ասէ. Մեծապէս եղև ինձ բարի, զի եհաս ինձ մեռանել վասն զգուշութեան պատուիրանացն Քրիստոսի: Եւ քանզի դուք ձեզէն գիտէք, զի հրապարակախօսէի ընդ ձեզ՝ զոր ինչ խօսէի, արժան էր ինձ հրապարակաւ մեռանել 'ի ձէնջ, զի այնմ[50] իսկ ցանկացեալ էի. բայց բարւոք եղ ինձ վիճակն ընդ ընտիրս, և ժառանգութիւն իմ հաճոյ եղև ինձ: Օրհնեցից զտէր, որ այս մասին վիճակի ժառանգութեան ապրեցոյց զիս. և մեծապէս խնդութիւն է ինձ, զի վաղվաղակի լուծայց ես յանօրէն և յամբարիշտ աշխարհէ աստի յայսմանէ: Եւ բազում ինչ խօսեցաւ ընդ նոսա, և զգուշացոյց զնոսա. և աղաչեաց զամենեսին զգուշանալ անձանց և պահել զպատուիրանս տեառն:

Եւ յետ այսորիկ սկսաւ զարիւնն գունդ գունդ 'ի ներքուստ ընդ բերանն արտաքս հոսել իբրև զերկուս ժամս: Եւ յետ այսորիկ յարուցեալ եկաց յաղօթս. եդեալ ծունր, խնդրէր զթողութիւն 'ի վերայ սպանողին իւրոյ: Ապա յետ այսորիկ յիշէր յաղօթս իւր զամենայն մարդս, զմերձաւորս և զհեռաւորս, զանարգս և զպատուականս. և զայնոսիկ անգամ, զորս երբէք ոչ ճանաչէր զնոսա, յիշէր յաղօթս իւր: Եւ յետ աղօթիցն կատարելոյ համբարձեալ զձեռս իւր և զաչս իւր ընդ երկինս, ասաց. Տէր Յիսուս Քրիստոս, ընկալ զհոգի իմ: Եւ զայս ասացեալ, արձակեաց զոգի: Եւ առեալ զմարմին սրբոյն Ներսէսի զառնն աստուծոյ

ըմպելիքի մեջ[128] մահվան դեղ խառնելով՝ նրան առաջարկեց։ Երբ (ս. Ներսեսը) այդ բաժակը խմեց՝ իսկույն հասկացավ, խոսել սկսեց և ասաց. «Օրհնյալ է մեր տեր աստվածը, որ ինձ արժանացրեց այս բաժակը խմելու և տիրոջ համար այս մահին հասնելու, որին ցանկանում էի մանկությունից ի վեր։ Արդ՝ այս փրկության բաժակը կընդունեմ և տիրոջ անունը կկանչեմ, որպեսզի ես էլ արժանանամ հասնել և մասն առանալ սրբերի ժառանգությունից լույսի մեջ։ Բայց քեզ, ո՜վ թագավոր, արժան էր իբրև թագավորի հայտնի հրաման տալ ինձ սպանելու. ո՞վ պետք է քեզ արգելեր, կամ ո՞վ պետք է ձեռքդ բռներ ու ետ կանգնեցներ այդ գործից, որ դու կամենում էիր գործել։ Բայց դու, տե՛ր, ների՛ր սրանց այս գործը, որ իմ դեմ գործեցին, և ընդունիր քո ծառայիդ հոգին, դու որ հանգիստ ես պարգևում հոգնած աշխատավորներին և կատարում ես ամեն բարություն»։

Այս և սրա նման ուրիշ բաներ էլ խոսելով՝ վեր կացավ գնաց իր կացարանը։ Նրա հետ արքունական սենյակից դուրս եկան և գնացին Հայոց բոլոր մեծամեծ նախարարները և Հայոց Մուշեղ սպարապետը և Հայր մարդպետը և առհասարակ բոլորը որոնք սեղանատանն էին՝ եկան, նրա հետ նրա կացարանը մտան։ Երբ իր կացարանը հասավ՝ պարեգոտը բացեց և ցույց տվեց սրտի վրա մի տեղ, որ կապտատակել էր մի նկանակի (հացի) մեծությամբ։ Մեծամեծ նախարարները նրան թյուրակե[189] և գեղքափներ էին մատուցանում նրան փրկելու համար, բայց նա չընդունեց, մերժեց ու ասաց. «Ինձ համար մեծ բարիք եղավ այս, որ ինձ վիճակվեց մեռնել Քրիստոսի պատվիրաններին զգույշ մնալու համար։ Դուք ինքներդ գիտեք, որ ինչ որ ձեզ խոսում էի՝ հրապարակով էի խոսում. պետք էր որ ես էլ ձեզանից հրապարակով մեռնեի, որին ցանկանում էի։ Բայց ինձ աջող վիճակ դուրս եկավ (աստծու) ընտրյալների հետ, և իմ ժառանգությունը հանելի է ինձ։ Օրհնում եմ տիրոջը, որ ինձ հասցրեց ժառանգության այս վիճակին և մեծապես ուրախ եմ, որ շուտով կբաժանվիմ ու կհեռանամ այս անօրեն և ամբարիշտ աշխարհից»։ Ուրիշ շատ բան էլ խոսեց նրանց հետ, զգուշացրեց նրանց, բոլորին աղաչեց՝ զգույշ լինել իրենց անձերին և տիրոջ պատվիրանները պահել։

Այնուհետև արյունն սկսեց գունդ գունդ դուրս գալ և բերանից հոսել մոտ երկու ժամ։ Սրանից հետո նա վեր կացավ, ծունկ չոքեց և խնդրում էր թողություն շնորհել իրեն սպանողին։ Սրանից հետո աղոթքում հիշում էր բոլոր մարդկանց, մերձավորներին և հեռավորներին, անարգներին և պատվավորներին, հիշում էր աղոթքում նույնիսկ նրանց, որոնց բոլորովին չէր ճանաչում։ Աղոթքը վերջացնելուց հետո ձեռները

պաշտօնեայք եկեղեցւոյն, և Փաւստոս եպիսկոպոս, և պաշտօնէիցն գլխաւոր Տրդատ, և Մուշեղ սպարապետն և Հայր Մարդպետ, և ամենայն ազատագունդ բանակն արքունի, բարձին յաւանէն 'ի Խախ գեղջէ՝ ուր գործն կատարեցաւ, տարան 'ի Թիլն յաւանն յիւր գեւղն: Հանդերձ սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղիւք վառելովք և մեծապաշտամամբք և բազում յիշատակօք զուրբն յուղարկեցին: Բայց մինչ չև էր ծածկեալ զմարմին սրբոյն, ինքն թագաւորն Պապ երթեալ պատեաց և թաղեաց 'ի մարտիրոսականն 'ի բնակութիւնն. բայց թագաւորն Պապ 'ի չքմեղս լինելով՝ չլուելոյն առնէր, իբրև թէ իւր չիցէ գործեալ զայն:

## ԻԵ

### ՅԱՂԱԳՍ ՏԵՍԼԵԱՆՆ՝ ՈՐ ԵՐԵՒԵՑԱՒ ԱՐԱՆՑՆ ՍՐԲՈՑ ԱՆԱՊԱՏԱՒՈՐԱՑ, ՇԱՂԻՏԱՅ ԵՒ ԵՊԻՓԱՆՈՒ, ՄԻՆՉ ԴԵՌ ՆՍՏԷԻՆ 'Ի ԼԵՐԻՆՆ

Արք երկու կրօնաւորք անապատաւորք մինչ դեռ նստէին 'ի լերինն, անուն միում Շաղիտա, և էր սա ազգաւ ասորի, և նստէր յԱռեւծ լերինն. և միումն անուն Եպիփան, և էր սա ազգաւ Յոյն, և նստէր սա 'ի մեծի լերինն 'ի տեղի դիցն՝ զոր կոչեն աթոռ Անահտայ, և էին սոքա երկոքին լեալ աշակերտք սրբոյն Դանիէլի մեծի՝ զոր վերագոյնն յիշեցաք, և մինչ դեռ յիւրաքանչիւր լերին նստէին սոքա, 'ի ժամու՝ յորում մեռաւ սուրբն Ներսէս, տեսանէին սոքա յիւրաքանչիւր լեռնէ աչօք բացօք 'ի տուընջեան ժամու զայրն աստուծոյ զՆերսէս իբրև յամպս յափշտակեալս: Զի հրեշտակք աստուծոյ տանէին զնա 'ի վեր, և գունդք գունդք գային նմա առաջի: Իբրև տեսին զայս տեսիլ անապատաւորքն, զարմացեալք ընդ գործն ընդ այն. բայց Շաղիտայն՝ որ էրն յԱռեւծ լերինն՝ քանզի էր հմուտ այր, գիտաց եթէ հանգուցեալ է սուրբն Ներսէս, և այն ոգիք նորա երևին նմա. բայց Եպիփան եդ 'ի մտի իւրում, թէ մարմնով իցէ յափշտակեալ զնա: Ապա յարեան յիւրաքանչիւր լեռնէ ընթացեալք փութով մինչև յԵկեղեաց գաւառ. եկին հասին տեսին զի կատարեալ էր սուրբ հայրապետն Ներսէս. և եկին մինչև 'ի Թիլոյ գեւղն, և տեսին զտեղին՝ յորում եդեալ էր զնա, դիպեալք միմեանց արքն հաւատարիմք պատմէին միմեանց զոր ինչ տեսինն՝ առաջի ժողովրդոցն: Բայց էին արքն այն հրեշտակակրօնք, յանապատին սնեալք և կեցեալք. զի և կարօղք էին նշանս առնել մեծամեծս, 'և ամենեցուն գիտելի և ծանօթք էին գործք նոցա:

ու աչքերը երկինք բարձրացնելով ասաց. «Տեր Հիսուս, ընդունի՛ր իմ հոգիս»: Այս ասելով հոգին ավանդեց:

Եվ սատծու մարդու՝ սուրբ Ներսեսի մարմինը վերցրին եկեղեցու պաշտոնյաները և Փավստոս եպիսկոպոսը, պաշտոնյաների գլխավոր Տրդատը[190] և Հայոց Մուշեղ սպարապետը և Հայր մարդպետը և արքունական բանակի ամբողջ ազնվականների գունդը: Մարմինը վերցրին Խախ ավանից, որտեղ սպանությունը կատարվեց, և տարան իր գյուղը Թիլ ավանը: Արքին հուղարկավորեցին սաղմոսներով, օրհնություններով, վառված կանթեղներով, հանդիսավոր պաշտամունքով և շատ հիշատակներով: Բայց մինչ սրբի մարմինը դեռ չէր թաղված՝ ինքը Պապ թագավորը եկավ, մարմինը պատեց և մարտիրոսական դամբարանում թաղեց: Նա չքմեղ էր լինում, անգետ էր ձևանում, իբրև թե ինքը չէ գործել այդ գործը:

## ԻԵ

## ԱՅՆ ՏԵՍԻԼՔԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԵՐԵՎԵՑ ՇԱՂԻՏԱ ԵՎ ԵՊԻՓԱՆ ՍՈՒՐԲ ԱՆԱՊԱՏԱԿԱՆՆԵՐԻՆ, ՄԻՆՉ ՆՐԱՆՔ ՆՍՏԱԾ ԷԻՆ ԼԵՌՆԵՐՈՒՄ

Երկու անապատական կրոնավորներ կային, որոնք նստում էին լեռներում, մեկի անունը Շաղիտա, որ ազգով ասորի էր և նստում էր Առյուծ լեռնում, մյուսի անունը Եպիփան, որ ազգով հույն էր և նստում էր մեծ լեռնում, աստվածների (մեհյանների) տեղում, որ կոչվում է Անահիտի[191] աթոռ: Սրանք երկուսն էլ աշակերտ էին եղել սուրբ մեծն Դանիելին, որին վերը հիշեցինք: Արդ՝ երբ սրանք երկուսը նստած էին այն ժամին, երբ սուրբ Ներսեսը մեռավ՝ նրանցից յուրաքանչյուրն իր լեռնից բաց աչքով ցերեկ ժամանակ տեսնում էր, որ սուրբ Ներսեսը կարծես համբարձվում էր ամպերի մեջ. որովհետև հրեշտակները նրան վեր էին տանում և գունդ գունդ գնում էին նրա առաջ: Անապատականները երբ այս տեսիլը տեսան՝ զարմացան այս տեսիլի վրա: Բայց Շաղիտան, որ Առյուծ լեռան վրա էր նստում, հմուտ մարդ լինելով՝ հասկացավ թե սուրբն Ներսես վախճանել է և ինքը տեսնում է նրա հոգին: Իսկ Եպիփանը այնպես հասկացավ, թե սուրբ Ներսեսը հենց մարմնով համբարձվել է երկինք: Ապա այս երկուսը իրենց լեռներից իջնելով փութով ու արագ հասան մինչև Եկեղյաց գավառը, հարցուփորձ արին, իմացան, թե սուրբ Ներսես հայրապետը վախճանվել է, և եկան մինչև Թիլ գյուղը և տեսան այն տեղը, ուր դրված էր նա: Այստեղ այս համատարիմ մարդիկը իրար հանդիպելով՝ ժողովրդի ներկայությամբ պատմում էին իրենց տեսածները: Բայց այն մարդիկ հրեշտակային վարք ունեին, սնվել ու ապրել էին անապատում, կարող էին նաև մեծամեծ նշաններ գործել, և ամենքին հայտնի ու ծանոթ էին նրանց գործերը:

## ՅԱՂԱԳՍ ՍՐԲՈՅՆ ՇԱՂԻՏԱՅԻ

Շաղիտայս, այր սուրբ, էր լեալ աշակերտ մեծին Դանիէլի. և 'ի տղայութենէ իւրմէ սնեալ էր համակ յանապատս, և ընդ անապատաւորս խոտաճարակ լեալ էր: Եւ յետ հանգստեան սրբոյն Ներսիսի գնաց շոգաւ 'ի գաւառն Կորդուաց, և առնէր նշանս և սքանչելիս, և բնակէր 'ի մէջ առիւծոց. աւելի քան զքսան առեւծ հանապազ շրջէին ընդ նմա հանապազորդեալք: Էր զի լինէր՝ զի յորժամ ցաւ ինչ ցաւէր գազանացն, գային շուրջ պատէին զնովաւ, և ծգծգէին զՇաղիտայն, և նշանաւ առնէին խնդրել զբժշկութիւն: Եւ էր երբեմն՝ զի առեւծ մի մեծ, և էր ելեալ եղէգն ընդ թաթով բազկին առիւծոյն, և եկն առեւծն առ սուրբն՝ Շաղիտայն 'ի լեառնն՝ յորում նստէր. և զօրէն մարդոյ 'ի վեր առեալ զթաթուլն՝ ցուցանէր նմա զվէրն, նշանացէր նմա բժշկել զինքն: Իսկ սուրբն Շաղիտա հանէր զեղէգն՝ որ ընդ վէրն մտեալ էր, և թքանէր 'ի վէրն, և թաշկինակաւն՝ զոր ընդ գլուխն իւր էր ածեալ՝ հանեալ պատէր զթաթ առիւծուն և բժշկէր:

Եւ այսպէս բիւրապատիկ և պէսպէս առնէր զսքանչելիս: Եւ գազանք էին կենաց կցորդ նորա, մինչ շրջէր նա յանապատս զամենայն աւուրս կենաց իւրոց: Եւ 'ի գետ իբրև հասանէր, կօշկօքն անցանէր 'ի վերայ ջուրցն գետոցն, և ոչ թանայինն կօշիկք նորա: Եւ յորժամ 'ի չէն ուրեք իջանէր, զբազում մոլորեալս դարձուցանէր նշանօք և արուեստիւք: Միայն շրջէր. և իբրև իջանէր 'ի շէնս. առնէր բժշկութիւնս բազում հիւանդաց. և էր սա աւուրք ծերացոյն:

Բայց ամենայն մարդ սպասէր և ակն ունէր մահու նորա, վասն ըմբռնելոյ զմարմին նորա: Իսկ սուրբն Շաղիտա իմացեալ զայս՝ թէ սպասեն առնուլ զմարմին նորա բազում մարդիկ, ապա խնդրեաց Շաղիտա յաստուծոյ, զի մի՛ ոք ըմբռնեսցէ զմարմին նորա: Եւ եղև օր մի յաւուրց, որպէս սովորութիւն էր իւր, գնալ 'ի վերայ ջուրցն գետոյն: Եւ մինչ դեռ անցանէր նա ընդ գետն Կորդուաց, ըստ խնդրուածոցն իւրոց՝ որպէս և խնդրեաց նա, յանկարծակի՝ իբրև կայր 'ի մէջ գետոյն՝ յանկարծօրէն ընդ ջրովն մտեալ սուրբն Շաղիտայն ծածկեցաւ: Եւ մեծ զոյժ եղև գաւառին. և ժողովեցան անչափ բազմութիւնք մարդկանն 'ի մի վայր եկեալք կուտեցան, մինչև հատին դարձուցին ընդ այլ շրջեցին զգետն: Եւ խնդրէին զմարմին սրբոյն Շաղիտայի, և ոչ կարացին ուրեք գտանել. զի իւր խնդրուածքն առ աստուած այսպէս էին լեալ յառաջագոյն, սոյնպէս և կատարեցաւ:

ԻՁ

## ՍՈՒՐԲ ՇԱՂԻՏԱՅԻ ՄԱՍԻՆ

Այս Շաղիտան սուրբ մարդ էր. աշակերտել էր մեծն Դանիելին. մանկությունից ի վեր անապատում էր սնվել և անապատականների հետ խոտաճարակ էր եղել: Սուրբ Ներսեսի վախճանելուց հետո Կորդուք գավառը գնաց, նշաններ ու սքանչելիքներ էր կատարում, բնակում էր առյուծների մեջ և ավելի քան քսան առյուծ շարունակ շրջում էին նրա հետ: Պատահում էր, որ երբ գազանների մի տեղը ցավում էր՝ գալիս պառկում էին նրա շուրջը, քաշքշում էին նրան և նշաններով հասկացնում էին որ բժշկե: Մի անգամ մի մեծ առյուծի թաթը եղեգ էր խրվել. առյուծը եկավ սուրբ Շաղիտայի մոտ՝ նրա նստած լեռը, և մարդու նման թաթը բարձրացնելով՝ ցույց էր տալիս վերքը և նշանացի խընդրում էր իրեն բժշկել: Իսկ սուրբ Շաղիտան եղեգը քաշում հանում էր, որ խրվել էր վերքի մեջ. թքում էր վերքի վրա և իր գլխի բաշկինակով պատում էր առյուծի թաթն ու բժշկում էր[192]։

Այսպես նա հազարավոր տեսակ սքանչելիքներ էր անում, և գազաններն էին նրա կյանքի ընկերները՝ մինչ նա շրջում էր անապատում իր կյանքի ամբողջ ընթացքում: Երբ նա մի գետի էր մոտենում՝ կոշիկներով անցնում էր գետի ջրերի վրայով, և կոշիկները չէր թրջվում: Երբ նա մի շեն (գյուղ) էր գալիս՝ նշաններով ու սքանչելիքներով շատ մոլորյալներ դարձի էր բերում, հիվանդներ էր բժշկում:

Նա հասակով ավելի ծեր էր, ամեն մարդ սպասում էր նրա մահին՝ որպեսզի կարողանա մարմինը ձեռք բերել: Սուրբ Շաղիտան իմանալով, թե շատ մարդիկ սպասում են որ իր մարմինը ձեռք բերեն՝ աստծուց խնդրեց, որ իր մարմինը ոչ ոքի ձեռքը չանցնի: Եվ օրերից մեկում, երբ նա ըստ սովորության անցնում էր Կորդուքի գետով, մինչ ջրի մեջ կանգնած էր՝ հանկարծ ջրի տակը գնաց և ծածկվեց սուրբ Շաղիտան համաձայն իր խնդրի՝ ինչպես որ խնդրել էր: Գավառում մեծ գույժ ընկավ. մարդկանց մեծ բազմություն եկան մի տեղ կուտակվեցին, գետի ջուրը կարեցին, ուրիշ կողմ դարձրին և փնտռում էին սուրբ Շաղիտայի մարմինը, բայց ոչ մի տեղում չկարողացան գտնել, որովհետև նա առաջուց այսպես էր խնդրել աստծուց, և իր խնդիրը կատարվեց:

ԻԷ

## ՅԱՂԱԳՍ ՍՐԲՈՅՆ ԵՊԻՓԱՆՈՒ

Այլ երանելին սուրբն Եպիփան էր ընդ[51] արբոյն Շաղիտայի աշակերտ եղեալ մեծին Դանիէլի. և սա 'ի մանկութենէ սնեալ էր յանապատի: Եւ յետ մահուանն մեծի քահանայապետին Ներսիսի եկն բնակեցաւ նա 'ի մեծ Ծոփս յանապատին, որ կոչի անուն տեղւոյն Մամբրէ, 'ի վերայ գետոյն՝ որ անուանեալ կոչի Մամուշեղ: Եւ էր բնակեալ 'ի քարանձաւս, և հանապազորդեալ էր ընդ գազանս անապատի, և ժողովէին առ նա արջք և ինձք: Եւ էր սա հանապազորդեալ յանապատին, և առնէր սա մեծամեծ նշանս և սքանչելիս. և դարձուցանէր զբազում մոլորեալս 'ի հեթանոսութենէ 'ի քրիստոնէութիւն, և լնոյր զերկիրն Ծոփաց վանիւք. և դնէր վարժեար ընդ ամենայն երկիրն Ծոփաց, և լինէր սուրբն Եպիփան լոյս երկրին Ծոփաց, և լուսաւորէր զնոսա մեծապէս:

Անցանէր և յերկիրն Աղձնեաց, լուսաւորէր և զնոսա. և լնոյր զերկիրն Աղձնեաց վանօրով, և շինէր վկայանոց մի յաւանին 'ի քաղաքին Տիգրանակերտի, և յոր յիշատակի սրբոցն 'ի փրկութիւն և 'ի բարեխօսութիւն աշխարհի. և առնէր ինքն նշանս, և դառնայր ինքն յիւր վանսն: Եւ էր մօտ 'ի գետն Մամուշեղ աղբիւր մի, և ձուկն բազում ելանէր ընդ ակն աղբերն. և բազում մարդիկ հանեալ զձուկն, օգտէին 'ի նմանէ: Ապա երկու եղբայրք 'ի վերայ ձկանն հակառակեալք, էսպան մինն զմինն. և իբրև գիտաց սուրբն Եպիփան, ասէ. Յայսմ հետէ այտի ոք ձուկն մի՛ կերիցէ: Եւ անդէն դառնացաւ ձուկն տեղւոյն, և եղև իբրև զլեղի դառն մինչև ցայսօր ժամանակի. և ոչ ոք որսաց զնա մինչև ցայսօր ժամանակի: Բազում և այլ զօրութիւնս առնէր և նշանս անչափս:

Իբրև բազում կարգս ուղղութեան թողոյր 'ի գաւառսն յայնոսիկ սուրբն Եպիփան. իսկ նա էառ ընդ իւր զաշակերտսն իւր արս միանձունս լեռնականս անապատականս, արս հինգ հարիւր, երթալ գնալ յերկիրն Յունաց: Եւ մինչ դեռ երթային, 'ի ճանապարհին դիպեցաւ նոցա կին մի. իբրև անցին ընդ կինն, սկսաւ փորձել զնոսա Եպիփան, և ասէ. Իբրև զի՛ գեղեցիկ էր կինն և վայելուչ: Ասէ մանուկ մի յաշակերտաց[52] անտի. Կինն, զոր դու գովեցեր, միականի էր: Եւ ասէ սուրբն Եպիփան. Դու բնաւ ընդէ՞ր նայեցար տեսանել զերեսս նորա. տեսանե՞ս զի խորհուրդք չարք կան 'ի քեզ: Եւ անդէն մեկնեաց զմանուկն յիւրմէ, և հալածեաց զնա: Եւ ինքն չոգաւ եմուտ 'ի ծով մեծ, և նաւօք

## Իէ

## ՍՈՒՐԲ ԵՊԻՓԱՆԻ ՄԱՍԻՆ

Երանելի սուրբ Եպիփանը սուրբ Շաղիտայի ընկերն էր եղել՝ և մեծն Դանիելի աշակերտը. սա էլ մանկությունից ի վեր սնվել էր անապատում: Ներսես մեծ հայրապետի մահից հետո եկավ բնակեցավ Մեծ Ծոփքում, Մամբրե կոչված տեղի անապատում. Մամուշեղ անունով գետի վրա: Նա բնակում էր քարանձավներում և շարունակ լինում էր անապատի գազանների հետ. նրա մոտ ժողովվում էին արջեր և ինձեր: Նա միշտ լինում էր անապատում, մեծամեծ նշաններ և սքանչելիքներ էր գործում, շատ մոլորյալներ հեթանոսությունից քրիստոնեության էր դարձնում, Ծոփք երկիրը լցնում էր վանքերով, ուսուցիչներ էր նշանակում Ծոփքի ամբողջ երկրում. սուրբ Եպիփանը Ծոփքի երկրի համար լույս էր դառնում, մեծապես լուսավորում էր ժողովուրդը:

Անցնում էր նաև Աղձնյաց երկիրը, նրանց էլ լուսավորում էր, Աղձնյաց երկիրը լցնում էր վանքերով, և մի վկայարան էր շինում Տիգրանակերտ քաղաքում, և սրբերի հիշատակն էին այնտեղ կատարում, որ նրանց բարեխոսությամբ աշխարհը փրկվի, ինքն էլ նշաններ էր կատարում և դառնում գնում էր իր կացարանը: Եվ Մամուշեղ գետի մոտ մի աղբյուր կար, որի ակունքից շատ ձուկ էր դուրս գալիս, և շատ մարդիկ այդ ձկները բռնում օգտվում էին: Մի անգամ երկու եղբայր ձկան պատճառով իրար հետ կռվեցին, և մեկը մյուսին սպանեց: Երբ Եպիփանը այս բանը լսեց՝ ասաց. «Այսուհետև ոչ ոք այդտեղից ձուկ չուտե»: Եվ իսկույն այդ տեղի ձուկը դառնացավ, լեղիի նման դառնացավ մինչև այսօր, և ոչ ոք մինչև այսօր այդ տեղից ձուկ չի ուտում: Ուրիշ անթիվ զորություններ ու նշաններ էր կատարում:

Այդ գավառներում սուրբ Եպիփանը շատ ուղղության կարգեր հաստատեց: Հետո նա առավ իր աշակերտներին,— լեռնաբնակ անապատական մենակյաց մարդիկ, հինգ հարյուր հոգի,— և ճանապարհ ընկավ Հունաց աշխարհը գնալու: Մինչ գնում էին՝ ճանապարհին նրանց մի կին հանդիպեց: Երբ այդ կնոջ մոտով անցան՝ Եպիփանը սկսեց փորձել աշակերտներին և ասաց. «Վա՜հ, ի՜նչ գեղեցիկ ու վայելուչ կին էր»: Նրա աշակերտներից մանկահասակ մեկն ասաց. «Քո գոված կնոջ մի աչքը կույր էր»: Սուրբն Եպիփան ասաց. «Իսկ դու ինչո՞ւ նրա վրա նայեցիր որ երեսը տեսնես, քեզ մեջ ուրեմն չար խորհուրդներ կան»: Անմիջապես այդ մանուկին իրանից հալածեց, հեռացրեց: Ինքը եկավ մեծ ծովի մոտ, նավերով անցան հասան մի անապատ կղզի: Այդ

անցին յանապատ 'ի կղզիս. և ունէր զկղզին զայն օձից բազմութիւնք, և էին յայնմ կղզւոջ բնակեալ օձք իժք և քարբք, բազում զազանք դաժանք թունաւորք: Եւ եղև իբրև չոգաւ, եհաս սուրբն Եպիփան 'ի կըղզին յայն, մերժեցան անտի զազանքն, և թողին զկղզին և գնացին: Եւ այնուհետև ոչինչ վնաս եղև նոցա 'ի կղզւոջն յայնմիկ, այլ բնակեցան անդ խաղաղութեամբ: Անդ եկեաց սուրբն Եպիփան, անդէն 'ի նմին կղզւոջ հանգեաւ:

## ԻԸ

### ՅԱՂԱԳՍ ՄԵԾԱՄԵԾ ՆՇԱՆԱՑՆ ԵՒ ՍՔԱՆՉԵԼԵԱՑՆ, ՈՐ ԵՐԵՒԵՑԱՒ ՅԱՍՏՈՒԾՈՅ 'Ի ՄԱՄԲՐԷ ՅԵՏ ԳՆԱԼՈՅՆ ԵՊԻՓԱՆՈՒ

Ապա իբրև գնայր սուրբն Եպիփան 'ի գաւառէն Ծոփաց յիւրմէ միանձնանոցէն՝ որ անուանեալ կոչի Մամբրէ, եթող անդ բազում եղբարս միաբանս միահաւանս հաւատացեալս կրօնաւորս քրիստոնէիցն, լեառնականս ճգնաւորս միանձունս. և 'ի վերայ նոցա երէց մի գլխաւոր: Բայց էին 'ի նոցանէ ոմանք, որ բնաւ ամենևին այլ ինչ կերակուր չէր ճաշակել նոցա 'ի մանկութենէ իւրեանց, բայց լոկ բանջար և ջուր. և զհամ գինւոյ գիտէին ոչ զիա՛րդ լինի:

Եւ էր անդ եղբայր մի խստակրօն, որ մթին վարս վարէր. և ոչ ճաշակէր ամենևին 'ի բաժակէն կենարար փրկութեանն յուսոյն յարութեանըն, այս ինքն, յարենէն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Զի ոչ կարէր հաւատալ՝ թէ ճշմարտիւ արիւն իցէ Որդւոյն աստուծոյ, յորժամ ելանիցէ ի սեղանն աստուծոյ. այլ նմա գինի լոկ թուէր թէ իցէ, վասն այսորիկ վիճէր հանապազ ընդ բազումս: Իսկ եղև օր մի յաւուրց, իբրև կատարէին անդ զխորհուրդս զոհութեան պատարագին 'ի վկայանոցի անդ յայնմիկ՝ զոր էր շինեալ սրբոյն Եպիփանու, յորժամ հանին զհացն սրբութեան և զգինին՝ արհնանալ պատարագին 'ի վերայ սեղանոյն, և կայր եղբայրն անհաւատ 'ի վկայանոցին: Եւ էրէցն ելեալ կայր 'ի վերայ առաջի սրբոյ սեղանոյն. յորժամ յառաջ քան զմատուցանել զպատարագն համբառնայր ձեռս էրէցն 'ի վերայ սեղանոյն, և ասէր:

Տէր աստուած զօրութեանց, որ արարեր զամենայն յոչընչէ, և ստեղծեր զմարդ 'ի հողոյ կենդանի և անապականացու. և անցին զքոյով պատուիրանօքդ, և անկան 'ի մահ՝ իւրեանց պատուիրանազանցութեամբն: Եւ արդ արդար դատաստանօք քովք մերժեցեր զնոսա 'ի դրախտէն փափկութեան յայս աշխարհ՝ ուստի ստեղծեր, և գրաւեցան լինել ընդ մահապարտութեամբ. սակայն ոչ թողեր 'ի ձեռանէ, բարերարդ

կղզին լիքն էր օձերով, իժեր և քարբեր էին բնակում այդ կղզում, այլ և բազմաթիվ դաժան ու թունավոր գազաններ: Իսկ երբ սուրբն Եպիփան եկավ ճասավ այդ կղզին՝ գազանները այնտեղից փաշվեցին, կղզին թողին ու գնացին: Այնուհետև այն կղզում նրանց ոչ մի վնաս չպատահեց, խաղաղ ապրեցին այնտեղ: Այստեղ էլ ապրեց սուրբ Եպիփանը և նույն կղզում վախճանվեց:

## ԻԸ

### ՄԵԾԱՄԵԾ ՆՇԱՆՆԵՐԻ ԵՎ ՍՔԱՆՉԵԼԻՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՔ ԱՍՏԾՈՒՑ ԵՐԵՎՑԱՆ ՄԱՄԲՐԵՈՒՄ՝ ԵՊԻՓԱՆԻ ԳՆԱԼՈՒՑ ՀԵՏՈ

Երբ սուրբն Եպիփան հեռանում էր Տոփաց գավառից, իր միայնանոցից, որ Մամբրե էր կոչվում՝ այնտեղ թողեց շատ եղբայրներ—միաբաններ, միահավան հավատացյալ քրիստոնյա կրոնավորներ, լեռնաբնակ միանձն ճգնավորներ և մի երեցի նրանց վրա գլխավոր նշանակեց: Նրանց մեջ կային ոմանք, որ մանկությունից ի վեր բնավ ուրիշ կերակուր չէին կերել քան լոկ բանջարեղեն և ջուր, գինու համն էլ չէին առել, թե ինչպես է:

Նրանց մեջ կար մի խստակրոն եղբայր, որ մութ կյանք էր վարում և բոլորովին հրաժարվում էր ճաշակել հաղորդության հույսի կենարար բաժակից, այսինքն մեր տեր Հիսուս Քրիստոսի արյունից: Որովհետև նա չէր կարող հավատալ, թե երբ այդ (գինին) սուրբ սեղանն է բերվում և քահանայի ձեռքով քաշխվում՝ իսկապես աստծու որդու արյուն է դառնում. այլ կարծում էր թե լոկ գինի է մնում. այս պատճառով էլ հաճախ վիճում էր շատերի հետ: Օրերից մեկում, երբ զոհության պատարագի խորհուրդն էին կատարում այն վկայարանում, որ շինել էր սուրբ Եպիփանը՝ և սուրբ հացն ու գինին բերին, պատարագի սեղանի վրա դրին, որպեսզի արյուն դառնա՝ այդ թերահավատ եղբայրն էլ այնտեղ էր գտնվում, վկայարանում. երեցը ելել կանգնել էր սեղանի առաջ և նախքան պատարագը մատուցանելը՝ ձեռները բարձրացնում էր սեղանի վրա և ասում էր.—

«Զորությունների տեր աստված, որ բոլոր արարածները ոչնչից ստեղծեցիր, մարդուն հողից ստեղծեցիր կենդանի և անապական. մարդիկ քո պատվիրանը զանց արին և իրենց պատվիրանազանցության պատճառով մահվան դատապարտվեցին, և դու արդար դատաստանով նրանց դուրս արիր փափկության դրախտից այս աշխարհը, որի (հողից նրանց) ստեղծել էիր և նրանք դատապարտվեցին մահով մեռնելու:

աստուած, այլ տեսչութեամբ և շնորհօք միածնիդ քո վերստին ծնընդեամբ նորոգեցեր զստեղծուածս քո. և բազում կերպարանօք այցելու եղեր արարածոց քոց: Առաքեցեր զմարգարէս, արարեր զօրութիւնս ազգի ազգի նշանս 'ի ձեռն սրբոց քոց՝ որք յազգս ազգս իւրեանց հաճոյ եղեն առաջի քո, ետուր զօրէնս յօգնականութիւն, առաքեցեր հրեշտակս վերակացուս: Իսկ իբրև եկն կատարած ժամանակաց, խօսեցար ընդ մեզ միածին որդւովդ քո՝ որով զաշխարհս արարեր, որ է պատկեր փառաց քոց և կերպարանք էութեան քո, և կրէ զամենայն բանիւ զօրութեամբ. որ ոչ ինչ յափշտակեաց զէակն Հօրն զբնութեանն հաւասար պատիւ անձինն, այլ աստուածն յաւիտենական 'ի յերկրի երևեցաւ, ընդ մարդկան շրջեցաւ, 'ի սրբոյ կուսէն մարմնացաւ, զկերպարանս ծառայի էառ, և եղև 'ի նմանութիւն տկարութեանս մերոյ, զի արասցէ զմեզ նմանակիցս փառաց իւրոց: Զի յամենայն զայթակղութեանց և յամենայն մոլորութենէ փրկեցեր զմեզ. և բարձեր յամենայն երկրէ զանյուսութիւն թերահաւատութեան, և ետուր զյոյս զհաւատս յարութեան ամենայն քոց արարածոց, որոց և զնմանութիւն պատկերի կերպարանաց քոց շնորհեցեր: Եւ հաւատովքն, զոր ետուր զօրանալ 'ի մարդիկ, զամենեսեան առ հասարակ միանգամայն կեցուցեր շնորհելով. զի ոչ եթէ վասն արդարութեանց ինչ մերոց, զի ոչ ինչ արարաք զբարիս 'ի վերայ երկրի, այլ վասն ողորմութեան և գթութեան քո՝ զոր սփռեցեր 'ի մեզ՝ համարձակիմք խնդրել 'ի սրտագիտէդ, որ քննես զսիրտս և զերիկամունս որդւոց մարդկան: Դու, տէր, սրտագէտ յամենայնի, դու գիտես զճշմարտութեան զվաստակոց զառնս զայսորիկ, զի խստամբերութեամբ վարի 'ի վարս վաստակոց իւրոց, և չիք հաւատք 'ի սմա. արդ յաւել 'ի սա հաւատս քան զհատ մանանխոյ, զի մի՛ կորիցէ անձն սորա: Հովիւ քաջ, որ ելերդ 'ի խնդիր ոչխարին կորուսելոյ, և եդիր զանձն քո 'ի վերայ խաշանց քոց, արդ և զսա փրկեա 'ի թերահաւատութենէս՝ յոր ըմբռնեալս է, զի մի՛ յափշտակեսցէ թշնամին զանձն սորա, և քո ստեղծուածս և նմանութիւն կերպարանացս յապականութիւն յաւիտենական կորստեան մատնեսցի:

Եւ զայս աղօթս մատուցանէր էրէցն յառաջ քան զմատուցանելն պատարագին. և յետ այսորիկ մատոյց կատարեաց զպատարագմատոյցն զամենայն: Իբրև ասաց. Հայր մեր՝ որ յերկինս, եդ ծունր և կայր յաղօթս յերկար: Եւ մինչ դեռ եդեալ էր նորա ծունր և կայր յաղօթս, և կայր եղբայրն թերահաւատ 'ի յոտն, 'ի խորանն 'ի բեմէն նայէր ի սեղանն, սկսաւ տեսանել մեծամեծ սքանչելիս աչօք բացօք իւրովք: Քանզի տեսանէր զՔրիստոս, զի իջեալ կայր 'ի վերայ սեղանոյն. և բացեալ էր իւր զկէրսն 'ի կողմանէ, զոր 'ի կողսն գեղարդեամբքն խոցեցին. և

Բայց դու, բարերար աստված, նրանց ձեռքից չքողիր, այլ քո միածնի խնամքով ու շնորհքով քո ստեղծածներր երկրորդ ծնունդով նորոգեցիր և շատ կերպարանքներով այցելու եղար քո արարածներին: Մարգարեներ ուղարկեցիր, տեսակ տեսակ զորություններ ու նշաններ գործեցիր քո սրբերի ձեռքով, որոնք քեզ հաճելի եղան, օրենքներ տվիր օգնության համար, հրեշտակներ ուղարկեցիր վերակացության համար: Իսկ երբ ժամանակների վերջը հասավ՝ մեզ հետ խոսեցիր քո միածին որդու միջոցով, որի հետ աշխարհն ստեղծեցիր, որ պատկեր է քո փառքի, կերպարանք է քո էության, որ կրում է ամեն ինչ զորավոր խոսքով, որ ոչինչ չհափշտակեց հոր էական բնությունից իր անձի պատվի համար, այլ հավիտենական աստվածը երկրի վրա երևաց, մարդկանց հետ շրջեցավ, սուրբ կույսից մարմնացավ, ծառայի կերպարանք առավ և մեր տկարության նմանեցավ, որպեսզի մեզ նմանակից դարձնի իր փառքին: Դու մեզ փրկեցիր ամեն տեսակ գայթակղությունից և մոլորությունից, աշխարհից վերացրիր որևէ անհույս թերահավատություն և քո բոլոր արարածներին շնորհեցիր հարության հույս և հավատ և նմանություն քո պատկերին ու կերպարանքին, և բոլորին առհասարակ կյանք շնորհեցիր այն հավատով, որը զորացրիր մարդկանց մեջ: (Այս բոլորն արիր) ոչ թե մեր որևէ արդարության համար, որովհետև մենք աշխարհիս վրա ոչ մի բարիք չենք գործել, այլ քո ողորմության և գթության շնորհիվ, որ մեր վրա սփռեցիր՝ համարձակում ենք խնդրել սրտագետիցդ, որ քննում ես մարդկանց սրտերն ու երիկամունքը, դու տեր, որ բոլորի սրտերը գիտես, դու ճանաչում ես այս մարդու ճշմարիտ ճգնությունները, որ խստակյաց կյանք է վարում իր ճգնողական կյանքում, սակայն սրա մեջ պակասում է հավատը. արդ՝ տո՛ւր սրան հավատ մի մանանեխի հատի չափ[193], որպեսզի չկորչի: Ո՛վ քաջ հովիվ, որ դուրս եկար կորած ոչխարը փնտռելու, որ քո անձը դիր քո խաշինքների վրա՝ սրան ևս փրկի՛ր թերահավատությունից, որով բռնված է, որպեսզի թշնամին սրան չհափշտակի և այս քո ստեղծածն, որ քո կերպարանքի նմանությունն է կրում՝ հավիտենական կորուստի չմատնվի»:

Այս աղոթքն արավ երեցը պատարագը մատուցանելուց առաջ, հետո սկսեց պատարագը և ամբողջ պատարագամատույցը վերջացրեց: Երբ նա ասաց «Հայր մեր, որ յերկինս ես»՝ ծունկ չոքեց և երկար աղոթք էր անում: Եվ մինչ նա ծունկ չոքած աղոթք էր անում՝ թերահավատ եղբայրը ոտքի կանգնած՝ ներքևից՝ բեմից նայում էր դեպի սեղանը և բաց աչքերով մեծամեծ սքանչելիք սկսեց տեսնել: Նա տեսնում էր Քրիստոսին, որ իջել էր սեղանի վրա, բացել էր կողքի վերքը, որ գեղարդով խոցելուց էր գոյացել, և կողքի վերքիցը արյունը կաթ-

'ի վիրէ կողիցն արիւնն ցնցղկացեալ հոսէր 'ի բաժակ անդր պատարագին, որ եդեալ էր 'ի վերայ սեղանոյն: Իսկ իբրեւ ետես զայս եղբայրն թերահաւատ կրօնաւորն, զարհուրեալ դողացեալ խռովեալ տագնապեալ յերկիր կործանեալ կայր, 'ի բերանս հարեալ, պարտեալ թալացեալ ոգին սպառեալ յինքենէ:

Ապա երէցն յարուցեալ կատարեաց զգործ սրբութեան պատարագին. իջուցեալ զսրբութիւն օրհնացն 'ի բեմբէն, ետես զեղբայրն զի յերկիր կործանեալ թալացեալ կայր: Իբր ետ ում տալ էր զօրէնսն, և եհան զմնացորդսն 'ի սեղանէն, ապա ինքն մատուցեալ բուռն հարկանէր զեղբօրէն. և տեսանէր, զի նա թալացեալ պակուցեալ կայր 'ի գետնին: Ապա ջուր արկանէր ընդ բերանաւն. իսկ նա ուրեմն եբեր զոգի. և զգաստացեալ, մատեաւ եկաց պատմեաց զմեծամեծ սքանչելիսն՝ զոր ինչ ետեսն: Ապա կամեցաւ տալ նմա երէցն 'ի սրբութենէն անտի օրհնացն. իսկ եղբայրն չհաւանեալ չառնոյր յանձն, վասն զի անարժան համարէր զանձն իւր: Այլ հոր հատեալ անձինն, 'ի ներքս իջեալ, զեւթն ամ ապաշխարեալ զթերահաւատութիւն մեղաց իւրոց, և յետ եւթն ամին ապա զանձն արժանի ապաշխարութեան համարէր, ելանել առնուլ ընդ օրէնսն հաւասարել: Սակայն 'ի նոյն հոր իջուցեալ զանձն իւր զամենայն աւուրս կենաց իւրոց, մինչեւ 'ի նմին հոր վախճանեցաւ եղբայրն: Ապա և նոյն երէցն հանգեաւ, և 'ի միասին երկոքին եդան 'ի ներքս 'ի վկայանոցին, ուր սքանչելիք երեւեցան յեղբայրանոցին Եպիփանու:

## ԻԹ.

### ՅԱՂԱԳՍ ՅՈՒՍԿԱՆ՝ ՈՐ ԷՐ 'Ի ԶԱՒԱԿԷ ԱՂԲԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԶՈՐ ԿԱՑՈՅՑ ՓՈԽԱՆԱԿ ՆԵՐՍԻՍԻ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՊ ՅԻՒՐՈՑ ԿԱՄԱՑ՝ ԱՌԱՆՑ ՄԵԾ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻՆ ԿԵՍԱՐՈՒ. ԵՒ ՎԱՍՆ ԱՅՍՈՐԻԿ ԲԱՐՁԱՒ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՐԱՊԵՏԱՑՆ ՀԱՅՈՑ ԶԵՊԻՍԿՈՊՈՍՆ ՁԵՌՆԱԴՐԵԼ

Եւ յետ մահուանն հայրապետին Ներսէսի կացոյց թագաւորն Պապ զՅուսիկ եպիսկոպոս, որ էր 'ի զաւակէ Աղբիանոս եպիսկոպոսին Մանազկերտոյ: Ետ հրաման ունել նմա զտեղի հայրապետացն, իշխել փոխանակ նորա՝ զոր սպան. և էր նա փոխանակ նորա: Բայց լուաւ եպիսկոպոսապետն Կեսարու՝ թէ սպանին զմեծ հայրապետն Ներսէս, և փոխանակ նորա տեղի նորուն զոր կացուցին զՅուսիկ՝ առանց նորա հրամանի եղեալ, զի ոչ որպէս սովոր էին առ հայրապետն տանել 'ի Կեսարիա 'ի ձեռնադրութիւն:

կրքելով հոսում էր պատարագի բաժակի մեջ, որ դրված էր սեղանի վրա: Թերահավատ կրոնավոր եղբայրը այս որ տեսավ՝ զարհուրեց ու դողաց. հուզված, շփոթված գետին կործանվեց, բերանը կարկամած, ուժասպառ, շնչասպառ ուշաթափ եղավ:

Իսկ երեցը (աղոթքից) վեր կենալով՝ սուրբ պատարագի խորհուրդը վերջացրեց և երբ սուրբ օրենքը բեմից իջեցնում էր՝ տեսավ այն եղբորը, որ ուշաթափ ընկած էր գետին: Երբ սրբությունը տվեց ում որ պետք էր, ապա մնացորդը դարձյալ տարավ սեղանի վրա դրեց և ներքև իջնելով բռնեց եղբորից, տեսավ որ ուշագնաց ընկած է գետնի վրա: Ջուր բերեց, բերանին սրսկեց. երբ նա վերջապես շունչ քաշեց և ուշքի եկավ՝ վեր կացավ ու պատմեց իր տեսած սքանչելիքը: Ապա երեցը կամեցավ սուրբ օրենքով նրան հաղորդել, բայց նա հանձն չառավ, չհամաձայնեց, որովհետև իրեն անարժան էր համարում: Այլ նա իր համար մի հոր փորեց և մեջը մտնելով յոթը տարի ապաշխարեց իր թերահավատության մեղքը, և յոթը տարուց հետո համարեց որ իր ապաշխարությունը արժանացել է (թողության), դուրս էր գալիս ուրիշների հետ միասին հաղորդվելու: Բայց էլի նույն հորն էր իջնում բոլոր իր կյանքի օրերում և նույն հորումն էլ այդ եղբայրը վախճանեցավ: Ապա երեցն էլ վախճանեցավ, և երկուսը միասին այն վկայարանի ներսը դրվեցին, Եպիփանի եղբայրանոցում, որտեղ այս սքանչելիքն երևեց:

## ԻԹ

### ՀՈՒՍԻԿԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԱՂԲԻԱՆՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՏՈՀՄԻՑ ԷՐ, ԵՎ ՈՐԻՆ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԸ ՆԵՐՍԵՍԻ ՓՈԽԱՆԱԿ ՆՇԱՆԱԿԵՑ ԻՐ ԿԱՄՔՈՎ ԱՌԱՆՑ ԿԵՍԱՐԻԱՅԻ ՄԵԾ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ, ՈՐԻ ՊԱՏՃԱՌՈՎ ԱՅՆՈՒՀԵՏԵՎ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՁԵՌՆԱԴՐԵԼՈՒ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԴԱԴԱՐԵՑ

Ներսես հայրապետի մահից հետո Պապ թագավորը Հուսիկ եպիսկոպոսին նշանակեց, որ Մանազկերտի Աղբիանոս եպիսկոպոսի տոհմից էր, և նրան հրամայեց հայրապետների տեղը բռնել և իշխել իր սպանած (Ներսեսի) տեղ, և նա եղավ (Ներսեսի) փոխանակ:

Բայց Կեսարիայի եպիսկոպոսապետը լսեց, թե մեծ Ներսես հայրապետին սպանեցին և նրա փոխանակ նշանակեցին Հուսիկին, առանց իր հրամանի՝ հակառակ նախկին սովորության, որ Կեսարիայի հայրապետի մոտ էին տանում ձեռնադրության համար: Այս բանի պատճա-

Եւ իբրեւ այս մեծ զարմանալով ցասման եղեալ հայրապետին Կեսարու վասն բանիս այսորիկ, և եղև ժողով եպիսկոպոսացն սիւննոդոսին նահանգին Կեսարու առանց հայրապետին. և գրեցին թուղթ ցասմամբ մեծապէս: Եւ նոյնպէս և գրեցին թուղթ առ թագաւորն Պապ, և լուծին զիշխանութիւնն կաթողիկոսութեանն. զի որ լիցին հայրապետ Հայոց, նա դրանն արքունի իշխեսցէ՝ զհացն օրհնել. և մի՛ իշխեսցէ ձեռնադրել զեպիսկոպոսն Հայոց, որպէս սովորութիւն էր 'ի բնէ: Եւ յայնմ հետէ բարձաւ իշխանութիւնն Հայոց զեպիսկոպոսն ձեռնադրել. այլ որ լինէին եպիսկոպոսք ամենայն գաւառաց գաւառաց Հայոց և կողմանց կողմանց, այնուհետև յայնմ հետէ որ միանգամ լինէին եպիսկոպոսք սահմանացն Հայոց, երթային 'ի քաղաքն կեսարացւոց և անդ լինէին եպիսկոպոսք: Վասն զի յայնմ հետէ բարձաւ իշխանութիւն յերկրէն Հայոց, այնու հետև ոչ իշխէին եպիսկոպոսք ձեռնադրել. բայց որ լինէր աւագ եպիսկոպոսացն, 'ի վերոյ միայն նստէր, և հաց օրհնէր թագաւորացն: Եւ սա քրիստոնեայ, բայց համարձակութեամբ յանդիմանութեամբ ինչ ընդ ումեք չիշխէր բարբառել. կամ զի երկչոտ էր և հաւան, և ըստ կամաց թագաւորին միայն ունէր զպատիւն, և կայր 'ի լռութեան և 'ի հանդարտութեան զամենայն աւուրս կենաց իւրոց:

## Լ

### ՅԱՂԱԳՍ ՍԳՈՅՆ, ՈՐՊԷՍ ՍԳԱՑԻՆ ԶՀԱՅՐԱՊԵՏՆ ՆԵՐՍԷՍ, ԵՒ ԼԻՆԷԻՆ ԶՆՄԱՆԷ ԿԱԹՈԳԻ

Ապա յետ սպանանելոյն Պապայ զսուրբ հայրապետն Ներսէս, տխրեցաւ ամենայն մարդ խոր տրտմութեամբ, և ամենայն մարդ երկրին Հայոց հառաչէին խօսէին և ասէին. Բարձեալ են արդ փառք Հայոց, զի բարձաւ արդարն աստուծոյ յայսմ երկրէ: Խօսէին իշխանքն և նախարարքն, և ասէին. Գիտեմք արդ թէ կորեաւ երկիրս մեր. զիա՞րդ հեղաւ արիւն արդար 'ի տարապարտուց, մանաւանդ զի վասն աստուծոյ սպանաւ: Եւ խօսէր Մուշեղ սպարապետն Հայոց և ասէր. Սրբոյն աստուծոյ հեղաւ արիւն 'ի տարապարտուց. այսուհետև ես ոչ կարեմ երթալ 'ի վերայ թշնամեաց, և ոչ նիզակ ումեք ուղղել: Զի գիտեմ եթէ Եթող աստուած 'ի ձեռանէ զմեզ. և լքեալ եմք, և ոչ կարեմք համբառնալ զգլուխս մեր. զի գիտեմ ես՝ եթէ չիք յաղթութիւն 'ի վերայ թըշնամեաց երկրիս Հայոց. յաղօթից նորա էր յաղթութիւն որ մեռաւ, և ազգի նոցա: Եւ սգային ամենայն ազատք և շինականք ծագէ 'ի ծագ ամենայն սահմանաց երկրին Հայոց, ազատք և շինականք ամենայն բնակիչք տանն Թորգոմայ, հայ լեզուն առ հասարակ:

ռով Կեսարիայի հայրապետը շատ զայրացավ: Կեսարիայի նահանգի եպիսկոպոսների սյունհոդոսական[194] ժողով գումարվեց, որ ցասմնալից թուղթ գրեց (Հուսիկ) հայրապետին[195]: Նույնպես թուղթ գրեցին Պապ թագավորին և (Հայոց) կաթողիկոսների իշխանությունը լուծեցին, (սահմանելով), որ ով որ Հայոց հայրապետ լինի՝ նա իրավունք ունենա թագավորի սեղանի հացը օրհնել, բայց իրավունք չունենա Հայաստանի համար եպիսկոպոսներ ձեռնադրել, ինչպես ի բնե սովորություն էր: Այդ ժամանակից վերացավ Հայոց (կաթողիկոսների) իրավունքը եպիսկոպոսներ ձեռնադրելու. և այնուհետև Հայաստանի բոլոր գավառներից ու կողմերից, որոնք որ եպիսկոպոս էին լինելու՝ գնում էին Կեսարացոց քաղաքը և այնտեղ ձեռնադրվում էին եպիսկոպոս, որովհետև այդ ժամանակից Հայոց աշխարհից վերացավ այդ իրավունքը, և այնուհետև չէին համարձակում եպիսկոպոսներ ձեռնադրել. բայց նա, որ եպիսկոպոսների մեջ ավագն էր՝ միայն վերով էր նստում և թագավորների սեղանն էր օրհնում: Իսկ սա (Հուսիկը) քրիստոնյա մարդ էր, բայց չէր համարձակում հանդիմանել մեկին, որովհետև երկչոտ էր և համակերպող, որովհետև միայն թագավորի կամքով ուներ իր պատիվը. և լուռ ու հանդարտ մնում էր իր կյանքի բոլոր օրերում:

## Լ

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՍԳՈՒՄ ԷԻՆ ՆԵՐՍԵՍ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ԵՎ ՆՐԱ ԿԱՐՈՏԸ ՔԱՇՈՒՄ

Երբ Պապը սուրբ Ներսես հայրապետին սպանեց՝ այնուհետև ամեն մարդ խոր տրտմության մեջ ընկավ. Հայոց աշխարհի բոլոր մարդիկ միաբան խոսում էին և ասում. «Հայոց փառքը կորավ, աստծու արդարը մեր աշխարհից վերացավ»: Իշխաններն ու նախարարներն էլ ասում էին. «Այժմ գիտենք, որ մեր աշխարհը կորավ, որովհետև անմեղ տեղը արդար արյուն թափվեց, մանավանդ որ նա աստծու համար մեռավ»: Մուշեղ Հայոց սպարապետն էլ ասում էր. «Աստծու սրբի արյունը անմեղ տեղը թափվեց. այսուհետև ես չեմ կարող թշնամու դեմ գնալ, կամ մեկի դեմ նիզակ բանեցնել: Որովհետև գիտեմ, որ աստված մեզ ձեռքիցը թողեց, մենք լքված ենք և չենք կարողանա գլուխներս վեր բարձրացնել. ես գիտեմ, որ այսուհետև հաջողություն էլ չի լինելու Հայոց աշխարհի թշնամիների դեմ, որովհետև մեր հաղթությունը նրա աղոթքից էր՝ որ մեռավ, և նրա տոհմի»: Եվ Հայաստանի բոլոր սահմաններում, ծայրե ծայր, սգում էին նրան ազնվականներն ու շինականները, Թորգոմի տան բոլոր բնակիչները, առհասարակ հայ լեզվով խոսող մարդիկ:

## ԼԱ

### ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԶԿՆԻ ՄԵՌԱՆԵԼՈՅՆ ՀԱՅՐԱՊԵՏԻՆ ՆԵՐՍԻՍԻ, ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ 'Ի ՆԱԽԱՆՁ ՄՏԵԱԼ ՏԱՊԱԼԵԱՑ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՊ ԶԱՄԵՆԱՅՆ ԵԴԵԱԼ ԿՐՕՆՍ ԿԱՆՈՆԻՑՆ՝ ՈՐ ԻՆՉ ԵԴԱՆ 'Ի ՆԵՐՍԻՍԷ ԱՌ ԿԵՆԴԱՆՈՒԹԵԱՄԲ ՆՈՐԱ 'Ի ՆՄԱՆԷՆ

Իսկ թագաւորն *Հայոց* Պապ զի թէպէտ և սպան զհայրապետն աշխարհին *Հայոց* զՆերսէս, սակայն ոչ յագեցաւ մահուամբ նորա, այլ ջանայր այսպէս՝ թէ զինչ միանգամ կարգք իցեն ուղղութեան 'ի Ներսիսէ եդեալ յեկեղեցւոջն, եղծեսցէ և խանգարեսցէ: Եւ սկսաւ նախանձ վարել ընդդէմ յառաջագոյն կանոնելոցն 'ի նմանէ. և սկսաւ հրաման տալ յայտնապէս յաշխարհին աւերել զայրենոցսն և զորբանոցսն՝ զոր շինեալ էր Ներսէս 'ի գաւառս գաւառս, և աւերել զկուսաստանսն 'ի գաւառս գաւառս և յաւանս յաւանս պարսպեալս և ամրացեալս՝ որ նորին Ներսիսի էր շինեալ վասն ամրապահս առանձնոցն[53] զգուշութեան: Քանզի յիւրում կենդանութեան երանելոյն Ներսիսի էր շինեալ. շինեաց զայս կուսաստանս յամենայն գաւառս. զի որ միանգամ կուսանք և հաւատացեալք իցեն՝ անդր ժողովեսցին 'ի պահս և յաղօթս, և կերակրել յաշխարհէ և յիւրաքանչիւր ընտանեաց: Զայն աւերել հրամայէր Պապ թագաւորն, և զկուսանսն հաւատացեալս տայր հրաման 'ի խառնակութիւն պղծութեան:

Եւ յամենայն աւանս էր շինեալ նորին Ներսիսի և հիւանդանոցս, յամենայն կողմանց և ռոճիկս և դարմանս կարգեալս, և արս հաւատարիմս թողեալ տեսուչս հիւանդացն և աղքատացն. նոյնպէս և այնոցիկ յանձն արարեալ որք երկիւղածքն էին յաստուծոյ, որք դատաստանացն յաւիտենականացն և զալստեանն Քրիստոսի սպասէին: Զվերակացուսն հալածէր թագաւորն յիւրաքանչիւր տեսչութենէ, և զտեղիսն ի' բաց աւերէր: Զոր վերակացուն կարգեալ էր յաղագս չքաւորացն և աղքատաց տեսուչ, զնոսա 'ի բաց հալածէր. և հրաման տայր ամենայն աշխարհի իշխանութեանն իւրոյ: Աղքատքն բայց եթէ 'ի մոյր ելցեն. այլ անդր ոք ինչ մ'ի իշխեսցէ տանել, եթէ ոչ նոքա եկեսցեն ժտեսցեն աղաչեսցեն, ապա թէ զտանել հազիւ ինչ կարասցեն: Եւ զկարգս պտղոյն և զտասանորդացն՝ որ 'ի նախնեացն կարգեալ սովորութիւն էր տալ յեկեղեցին, վասն այնորիկ հանէր հրաման ընդ աշխարհ՝ զի մի' ոք տացէ:

Եւ յաւուրսն Ներսիսի հայրապետին ոչ ոք իշխէր 'ի նմանէ հանել կամ թողուլ զկին իւր զամուսին յամենայն երկիրն Հայոց, զոր միանգամ քօղով կամ պսակաւ հարսանեացն օրհնութեամբ առեալ էր. և ոչ այլ առնել միւսանգամ իշխէր ոք համարձակել: Եթէ յանկարծ մե-

ԼԱ.

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՆԵՐՍԵՍ ՀԱՅՐԱՊԵՏԻ ՄԵՌՆԵԼՈՒՑ ՀԵՏՈ ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԸ ՆԱԽԱՆՁԻՑ ՇԱՐԺՎԱԾ, ՏԱՊԱԼԵՑ ԱՅՆ ԲՈԼՈՐ ԿԱՐԳ ՈՒ ԿԱՆՈՆԸ, ՈՐ ՍԱՀՄԱՆԵԼ ԷՐ ՆԵՐՍԵՍԸ ԻՐ ԿԵՆԴԱՆՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿ։

Իսկ Հայոց Պապ թագավորը թեպետև սպանեց Հայոց աշխարհի Ներսես հայրապետին, բայց նրա մահով չհագեցավ, այլ ջանք էր անում խանգարել ու ոչնչացնել ուղղության այն բոլոր կարգերը, որ Ներսեսը սահմանել էր եկեղեցում: Եվ սկսեց նախանձով վարվել նրա առաջուց դրած կանոնների հետ: Հայտնապես հրաման տվեց աշխարհին՝ ավերել որբանոցներն ու այրիների ապաստանները, որ շինել էր Ներսեսը զանազան գավառներում. ավերել կուսանոցները զանազան գավառներում ու ավաններում, որ նույն Ներսեսն էր շինել ու պարիսպներով ամրացրել՝ առևանգումից[196] զգույշ պահպանության համար: Որովհետև երանելի Ներսեսը իր կենդանության ժամանակ շինել էր այս կուսանոցները բոլոր գավառներում, որպեսզի բոլոր հավատավոր կույսերն[197] այնտեղ ժողովվեն, պահեցողությամբ և աղոթքով զբաղվեն, իսկ նրանց ապրուստ տան աշխարհը և նրանց ընտանիքները: Պապ թագավորը հրամայում էր այս կուսանոցներն ավերել, իսկ հավատավոր կույսերը հրամայում էր մատնել պիղծ խառնակության:

Դարձյալ նույն Ներսեսը հիվանդանոցներ էր հիմնել բոլոր կողմերում, սահմանել էր նրանց համար ուտեստ ու դարման, և հավատարիմ մարդիկ էր նշանակել հիվանդանոցներին ու աղքատներին տեսուչ. հանձնել էր այնպիսի մարդկանց, որոնք աստծու երկյուղն ունեին և Քրիստոսի գալստյան և հավիտենական դատաստանի էին սպասում: Թագավորը այս վերակացուներին դուրս էր անում իրենց պաշտոններից. և հիմնարկությունները հրամայում էր ավերել, ոչնչացնել: Նա չքավորների և աղքատների վրա նշանակված տեսուչ-վերակացուներին հալածում էր և իր իշխանության տակ եղած բոլոր աշխարհին հրաման էր տալիս— «Աղքատները թող դուրս գան մուրան, ոչ ոք չհամարձակվի այնտեղ նրանց որևէ բան տանել. թող նրանք շրջեն, խնդրեն, աղաչեն, ապա թե մի ողորմություն ստանան»: Պտղի և տասանորդների կարգն[197] էլ, որ վաղուց ի վեր սովորություն էր դարձած եկեղեցուն տալ՝ դրա վերաբերմամբ էլ ամբողջ աշխարհում հրաման հանեց, որ ոչ ոք չտա:

Ներսես հայրապետի օրերում՝ նրա ահից ոչ ոք չէր համարձակվում Հայոց աշխարհում մեկի կինը խլել և թողնել իր կին ամուսինը, որ առել էր քողով և հարսանիքի պսակով ու օրհնությամբ, և ուրիշ կին առնել չէր համարձակվում: Ներսեսի օրերում երբ հանկարծ մեկը մեռ-

տանէր ոք, ոչ ոք իշխէր անյուսութեամբ արտաքոյ կարգի կանոնի եկեղեցւոյ լալ զմեռեալն. և ոչ կոծ ոք դնէր կամ աշխարանս մեռելոյն, և ոչ ձայնս ոք արկանէր 'ի վերայ մեռելոյն յաւուրսն Ներսիսի. այլ լոկ արտասուօք և ըստ արժանի սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղօք և մոմեղինօք լուցելովք զմեռեալսն յուղարկէին: Իսկ յետ մահուան նորա այնուհետև ամենայն մարդ առին հրաման համարձակութեամբ 'ի թագաւորէն, թողուլ զկանայս զամուսինս իւրեանց. էր զի մի այր տասն կին փոխէր. և առ հասարակ յանօրէնութիւն դարձան միանգամայն: Ապա յետ մահուան Ներսիսի յորժամ զմեռեալսն լային, փողովք և փանդռօք և վնօք զկոծսն պարուցն կաքաւելով, զտիգսն հատեալս, զերեսս պատառեալս, արք և կանայք պղծութեամբ ճիւաղութեամբ պարուք դէմ ընդ դէմ հարկանելով, և կամ ասիս հարկանելով, զմեռեալսն յուղարկէին:

Իսկ յաւուրսն Ներսիսի զաղքատս ընաւ ամենևին 'ի մուր ոչ տեսանէր ընդ ամենայն սահմանսն Հայոց. այլ անդէն 'ի հանգստեանն նոցին, այս ինքն յօրկանոցսն, ամենայն մարդիկ տանէին զամենայն պիտոյս նոցա. անդէն իսկ անկարօտ յամենայն ումեքէ լցեալ էին: Իսկ յետ մահուն քահանայապետին թէ առնէր ոք հանգիստ աղքատացն, մեծ պատիժս կրէր 'ի թագաւորէն:

Իսկ յաւուրսն Ներսիսի ընդ երկիրն Հայոց կարգք պաշտաման եկեղեցւոյն մեծապէս պայծառացեալ էր, և բազմութիւն սրբոց պաշտօնէիցն կանոնելոցն: Եւ յիշատակ սրբոց վկայից յաւուրս նորա յամենայն տեղիս Հայոց մեծախումբ ժողովք հանապազ պայծառանային, և պատիւ հարցն եպիսկոպոսաց յամենայն գաւառս Հայոց յաճախէր ըստ արժանի իւրեանց. և կարգք վանականաց և 'ի շէնս և յանշէնս առ հասարակ ծաղկեալ: Այլ ամենայն եղծեալ ապականեալ խանգարեցաւ յետ մահուան նորա:

Իսկ յաւուրս քահանայապետութեանն Ներսիսի ամենայն գաւառք Հայոց յամենայն 'ի շէնս և ի' գեւղս յամենայն կողմանս Հայոց առ հասարակ 'ի հրամանէ քահանայապետին էին շինեալ օտարատունք հիւանդանոցք օտարանոցք. և ամենայն մարդիկք երկրին Հայոց էին պտղաբերք և ողորմածք առ 'ի յիշել զաղքատս և զնեղեալս զտառապեալս և զօտարս, զհարստահարս, զնշդեհս, զպանդուխտս, զհիւրս զանցաւորս. և էր նոցա կարգեալ վերակացու սրբոյն Ներսիսի, և դարմանս 'ի տեղեաց տեղեաց: Իսկ յետ մահու նորա աւերեաց զայն ամենայն թագաւորն Պապ, և անարգեաց զպատիւ եկեղեցւոյ. և բազում ինչ կարգ և կանոնաց ուղղութեան յօրինուածոց՝ զոր եդ հայրապետն Ներսէս, և անցեալ դարձեալ ի մոռացօնս զամենայն կարգեալն տապալէր: Յետ

նում էր՝ ոչ ոք չէր համարձակվում եկեղեցու կանոնից դուրս անհուսությամբ մեռելի վրա լալ, կոծ ու սուգ անել, ողբեր ասել մեռելի վրա, այլ լոկ արտասուքով, պատշաճ սաղմոսներով և օրհնություններով, կանթեղներով ու վառած մոմերով հուղարկավորում էին մեռելը: Իսկ նրա մահից հետո ամեն մարդ թագավորից հրաման ստացավ՝ համարձակորեն թողնել իրենց ամուսին կանանց. կար մարդ որ տասը կին էր փոխում և առհասարակ բոլորն անօրենության մեջ ընկան: Դարձյալ՝ Ներսեսի մահից հետո, երբ մեռելները ողբում էին՝ փողերով, փանդիռներով ու վիններով[198] կոծի պարեր էին բռնում, մորուքները կտրած, երեսները պատառոտած, կին և տղամարդ դեմ առ դեմ ճիվաղական պարեր խաղալով, ծափ զարնելով հուղարկավորում էին մեռելները:

Իսկ Ներսեսի տարիներին Հայաստանի բոլոր սահմաններում չէր կարելի տեսնել աղքատներին մուրալիս. այլ այն ժամանակ նրանց հանգստի տեղերը, այսինքն՝ ուրկանոցները բոլոր մարդիկ նրանց համար տեսնում էին այն ամենը, ինչ որ պետք էր նրանց: Հենց այնտեղ նրանք առանց կարիքի ու լիացած էին: Իսկ քահանայապետի մահից հետո եթե որևէ մեկը աղքատներին հանգիստ էր տալիս, թագավորից մեծ պատիժներ էր կրում:

Ներսեսի օրերով Հայոց աշխարհում մեծապես պայծառացած էին եկեղեցիներում պաշտամունքի կարգերը. կային կարգ ու կանոնի ենթարկված բազմաթիվ սուրբ պաշտոնյաներ: Նրա ժամանակ սուրբ վկաների հիշատակները Հայաստանի բոլոր տեղերում միշտ կատարվում էին պայծառությամբ, ժողովրդի մեծ բազմության ներկայությամբ: Հայր եպիսկոպոսների պատիվը Հայաստանի բոլոր գավառներում բարձր էր ըստ նրանց արժանավորության: Վանականների կարգերը շեն ու անշեն տեղերում առհասարակ ծաղկած էին: Այս բոլորը նրա մահից հետո ապականվեց ու փչացավ:

Ներսեսի քահանայապետության ժամանակ Հայաստանի բոլոր գավառներում, շեներում և գյուղերում առհասարակ քահանայապետի հրամանով շինված էին օտարանոցներ ու հիվանդանոցներ. և Հայոց աշխարհի բոլոր մարդիկ ողորմածությամբ սնունդ էին մատակարարում, հիշելով աղքատներին, նեղված-տառապածներին, օտարներին, հարստահարվածներին, օտար երկրում և օտարի տան ապրողներին, անցորդ հյուրերին: Նրանց վրա սուրբ Ներսեսը վերակացուներ էր նշանակել և ուտեստ որոշել զանազան տեղերից: Իսկ նրա մահից հետո Պապ թագավորն այս ամենն ավերեց, եկեղեցու պատիվն անարգեց, Ներսես հայրապետի սահմանած շատ կարգերն ու բարեկարգությունները տապալեց ու մոռացության մատնեց: Նրա այս աշխարհից գնալուց հետո շատ

նորա ելիցն յաշխարհէս բազում գաւառք Հայոց և բազում մարդիկ ’ի հնութիւն դիւապաշտութեան դարձան, և ընդ բազում տեղիս Հայոց կուռս կանգնեցին ’ի համարձակութենէ թագաւորին Պապայ. զի ոչ գոյր յանդիմանիչ, և ոչ ոք էր այն՝ յորմէ խիթային. զինչ և կամէին գործել, համարձակութեամբ գործէին. բազում պատկերս կանգնեալ, երկիր պագանէին:

Եւ հատ ևս յարքունիս Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ’ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց: Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր երկուս հողս: Եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գեւղ մի երէց և սարկաւագ, և զայն ’ի սպասու կացուցանէր յիւր ’ի ծառայութեան զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն: Զի նմա այսպէս թուեցաւ՝ եթէ զայն չար ինչ կամացն հեռուկս Ներսիսի առնիցէ ’ի կենդանեաց առ մեռեալս, վասն թշնամութեանն՝ զոր ունէր ընդ նմա: Եւ զայն ոչ ածէր զմտաւ՝ թէ զանձն կորուսանէ: Եւ ’ի ժամանակին նուազէին ամենայն կարգք եկեղեցւոյ պաշտամանն սպասուցն յամենայն երկիրն Հայոց:

## ԼԲ

## ՅԱՂԱԳՍ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՊԱՅ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԽՈՏՈՐԵՑԱՒՆ ’Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՅՈՒՆԱՑ. ԵՒ ԿԱՄ Ո՛ՐՊԷՍ ՍՊԱՆԱՒ ’Ի ԶՕՐԱՑՆ ՅՈՒՆԱՑ

Եւ շրջեաց զմիտս իւր թագաւորն Պապ և խոտորեաց զսիրտ իւր ’ի թագաւորէն Յունաց, և կամեցաւ խառնել զսէր իւր և առնել միաբանութիւն ընդ թագաւորին Պարսից: Եւ սկսաւ թիկունս իւր առնել զարքայն Պարսից, և արձակել անդրէն հրեշտակս յաղագս միաբանութեան: Եւ առաքէր հրեշտակս առ թագաւորն Յունաց, եթէ Կեսարիաւ նետ՝ և տասն քաղաք մեր լեալ է, արդ ’ի բաց տուր. և զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց. արդ եթէ ոչ կամիս խանգար ինչ առնել, տուր ’ի բաց. ապա թէ ոչ, կռուիմք մեծաւ պատերազմաւ: Այլ Մուշեղ և ամենայն իշխանքն Հայոց շատ եդին ’ի մտի արքային, զի մի՛ քակեսցէ զուխտ յերկրէն թագաւորութենէն Յունաց. և ոչ անսաց նոցա, և յայտնեաց զթշնամութիւն իւր՝ զոր ունէր ընդ թագաւորին Յունաց:

Այլ իշխանքն Յունաց և զօրքն նոցին տակաւին էին յերկրինն Հայոց. և անուն իշխանացն՝ միումն Տէրէնտ, միւսումն Ադէ: Եւ յղեաց դեսպան մի գաղտուկ թագաւորն Յունաց առ իշխանսն զօրացն իւրոց՝ որ էին յերկրին Հայոց, և հրաման տայր սպանանել զթագաւորն Հա-

մարդիկ դարձան նախկին կռապաշտության. Հայաստանի շատ տեղերում կուռքեր կանգնեցրին Պապ թագավորի թույլտվությամբ, որովհետև չկար մեկը, որ հանդիմաներ, չկար մեկը, որից քաշվեին, այլ ամեն մարդ համարձակ գործում էր՝ ինչ որ կամենում էր. շատ պատկերներ էին կանգնեցրել և նրանց երկրպագում էին:

Բացի սրանցից՝ Պապ թագավորը եկեղեցուց կտրեց այն հողը, որ Գրիգոր մեծ քահանայապետի ժամանակ տվել էր Տրդատ թագավորը Հայոց բոլոր աշխարհում եկեղեցու սպասավորության ու պաշտամունքի համար, որովհետև յոթը հողից հինգը կտրում էր հօգուտ արքունիքի և միայն երկու հող էր թողնում[199]: Եվ հողերի հաշվով ամեն մի գյուղում երկու-երկու պաշտոնյա էր թողնում, մի երեց և մի սարկավագ. իսկ մյուսներին, այսինքն երեցների ու սարկավագների եղբայրներին ու որդիներին իր հպատակության էր ենթարկում: Նրան այնպես էր թվում, թե այսպես վարվում է Ներսեսի կամքի հակառակ, նրան ընդ հենգն, նրա դեմ ատած իր թշնամության պատճառով. նա այն չէր մտածում, թե դրանով ինքն իրեն է կորցնում:

Եվ այս ժամանակ բոլոր Հայաստան աշխարհում նվազում էին եկեղեցու պաշտամունքի և սպասավորության կարգերը:

## ԼԲ

### ՊԱՊ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵՐԵՍ ԴԱՐՁՐԵՑ ՀՈՒՆԱՑ ԹԱԳԱՎՈՐԻՑ: ԵՎ ԻՆՉՊԵՍ ՍՊԱՆՎԵՑ ՀՈՒՆԱՑ ԶՈՐՔԵՐԻՑ

Եվ Պապ թագավորը իր միտքը ծռեց ու սիրտը շուռ տվեց Հունաց թագավորից և կամեցավ սեր ու միաբանություն հաստատել Պարսից թագավորի հետ. սկսեց իրեն թիկունք դարձնել Պարսից թագավորին, նրա մոտ պատգամավորներ ուղարկեց միաբանություն հաստատելու համար: Հետո պատգամավորներ էր ուղարկում Հունաց թագավորի մոտ, թե «Կեսարիայի հետ ուրիշ տասը քաղաք մերն են եղել, ետ տուր. Ուռհա քաղաքն էլ մեր նախնիքն են շինել, ուստի եթե չես ուզում, որ խռովություն ծագի (մեր մեջ)՝ ետ տուր, հակառակ դեպքում մեծ պատերազմ կծագի մեր մեջ»: Թեպետ Մուշեղը և Հայոց բոլոր իշխանները շատ հորդորեցին թագավորին, որ Հունաց թագավորության հետ իր ուխտը չխզե՝ նրանց չլսեց և հայտնի կերպով ցույց տվեց իր թշնամությունը Հունաց թագավորի հետ:

Իսկ Հունաց իշխաններն ու զորքը դեռ Հայոց աշխարհումն էին. իշխաններից մեկի անունը Տերենտ էր, մյուսինը Ադե: Եվ Հունաց թագավորը գաղտնի մի դեսպան ուղարկեց Հայաստանում եղած իր զորքերի իշխանների մոտ և հրաման տվեց՝ Հայոց Պապ թագավորին

յոց զՊապ։ Եւ եղև իբրև ընկալան զայս հրաման ’ի թագաւորէն Յունաց իշխանքն իւր՝ որ էին ’ի Հայոց երկրին, սպասէին մահու ’ի դէպ՝ սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղև ’ի դիպան ժամանակի իբրև գիտացին Տէրէնդն և Ադէն զօրավարքն զօրացն Յունաց՝ թէ միայն է թագաւորն Հայոց Պապ, և ամենայն մեծամեծքն և զօրքն Հայոց չէին անդ. և էր թագաւորն Հայոց Պապ բանակեալ ’ի դաշտին ’ի Բագրաւանդ գաւառի ’ի Խու անուն տեղւոյն, և բանակ զօրացն Յունաց բանակեալ էր անդէն մօտ առ բանակին Հայոց արքային. ապա զօրավարն Յունաց հաց մեծապէս գործեալ՝ յընթրիս հրաւիրեալ կո՛չեցին զմեծ թագաւորն Հայոց զՊապ մեծապէս ըստ արժանաւորութեան նորա, որպէս օրէն էր զայր թագաւոր ’ի հաց մեծ կոչել և առնէին կազմութիւն պատրաստութեան։

Եւ եկեալ թագաւորն Պապ յընթրիս, մտեալ բազմեցաւ յուտել և յըմպել։ Եւ իբրև մտանէր արքայն ’ի խորանն Տէրէնդի զօրավարին Յունաց, և լեգէոն սպարակիր հետևակն վահան ’ի ձեռն, սակուր զգօտոյ, շուրջ ’ի ներքոյ զորմովք խորանին պատեալ պսակէին. սոյնպէս և արտաքոյ կազմէին ’ի ներքոյ կուռ վառեալք, և ’ի վերոյ հանդերձք զգեցեալք պատրաստէին։ Իսկ թագաւորն Պապ համարէր ’ի միտս իւր թէ ’ի պատիւ ինչ նորա զայն առնիցեն։ Եւ մինչ դեռ յընթրիսն[54] ուտէր, սակրաւոր զօրքն ’ի թիկանց կուսէ նորա կարգեալք պսակեալք կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրև ընդ գինիս մտին, որպէս զառաջին ուրախութեանցն նուագն մատուցին արքային Պապայ, և առ հասարակ թմբկահարք և սրնգահարք քնարահարք և փողահարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան։ Եւ վահանաւոր լեգէոնին հրաման ետուն. և մինչ դեռ թագաւորն Պապ զուրախութեան գինին ունէր ’ի մատունս իւր, և նայէր ընդ պէսպէս ամբոխ զուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն՝ յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր տաշտ ոսկի ’ի մատունս իւր, իսկ աջ ձեռնն եդեալ էր ’ի դաստապան նրանին՝ զոր կապեալն էր յաջու ազդերն իւրում, և մինչ դեռ բերանն ’ի բաժակին էր յըմպելն, և աչօքն յառաջ կոյս սլշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս զուսանացն, հրաման լինէր ակնարկելով զօրացն Յունաց։ Եւ լեգէոն սակրաւորքն երկու ’ի թիկանց կուսէ կային ’ի սպասու ոսկիկմբէ վահանօքն յանկարծօրէն կից ’ի վեր առեալ զսակուրսն, զարկանէին թագաւորին Պապայ. մին կշիռ զուլն հարկանէր սակրաւն, և միւսն ևս սակրաւորն զաջ թաթ ձեռինն՝ որ կայր ’ի վերոյ դաստապանի նրանին՝ հարկանէր, կտրէր և ’ի բաց ընգենոյր։ Անդէն ’ի բերանս տապալէր թագաւորն Պապ. և գինին տաշտիւն և արիւնն պարանոցին նովաւ հանդերձ ’ի վերայ բաժակալ սկրտեղն անկանէր առ հասարակ. և անդէն

պանել: Երբ Հունաց իշխաններն Հայաստանում այս հրամանն առացան իրենց թագավորից՝ հարմար դեպքի էին սպասում, որ Հայոց Պապ թագավորին սպանեն: Պատահեց մի հարմար ժամանակ, երբ Հունաց զորավարները, Տերենտն և Ադեն, իմացան, թե Հայոց Պապ թագավորը մենակ է,— երբ Հայոց մեծամեծներն ու զորքը այնտեղ չէին և Պապ թագավորի բանակը գտնվում էր Բագրևանդ գավառում, Խու կոչված տեղում մի դաշտում, իսկ Հունաց զորքերի բանակը գտնըվում էր Հայոց թագավորի բանակին մոտ—ապա Հունաց զորավարները փառավոր հացկերույթ սարքեցին և Հայոց մեծ թագավոր Պապին ընթրիքի հրավիրեցին մեծ պատվով՝ համաձայն նրա արժանավորության, ինչպես թագավոր մարդու հրավիրում են փառավոր հացկերույթի. ամեն բան կազմել պատրաստել էին:

Պապ թագավորը ընթրիքի գալով՝ մտավ ու բազմեց կերուխումի: Եվ երբ թագավորը մտնում էր Հունաց Տերենտ զորավարի խորանը՝ լեգեոնի ասպարակիր զինվորները, ձեռներին վահան, գոտիներում սակր, ներսը, խորանի պատերի մոտ, չուրջը պատելով պահպանում էին. նույնպես և (խորանից) դուրս պատրաստ կանգնած էին լավ սպառազինված, իսկ վրայից սովորական զգեստ հագած (զինվորներ): Իսկ Պապ թագավորն իր խելքով այնպես էր կարծում, թե իրեն պատվելու համար են այդպես անում: Եվ մինչ ընթրիքի ժամանակ նա ուտում էր՝ սակրավոր զորքը նրա հետևը կանգնած նրան ամեն կողմից պատում[200] էին: Երբ սկսեցին խմել՝ ուրախության առաջին բաժակը մատուցին Պապ թագավորին և իսկույն հնչեցին թմբուկներն ու արինգեները, քնարներն ու փողերը իրենց ներդաշնակ ձայներով: Վահանավոր զորքին հրաման տվին, և մինչ Պապ թագավորը ուրախության գինին բռնած էր մատներով և նայում էր գուսանների խմբին, մինչ ձախ ձեռքը արմունկին հենած՝ մատներում բռնած ուներ ոսկե թասը, իսկ աջ ձեռքը դրել էր նրանի կոթին, որ կապած ուներ աջ ազդրին, մինչ բաժակը բերանն էր տարել, որ խմե, իսկ աչքերով հառած նայում էր գուսանների զանազան խմբերին՝ Հունաց զորքերին աչքի ակնարկով նշան էր արվում. և երկու սակրավոր զինվորները, որ հետևից կանգնած էին սպասավորության ոսկեպատ վահաններով՝ հանկարծորեն միասին սակրերը բարձրացնելով զարկում էին Պապ թագավորին, մեկը ուղիղ վիզն էր կտրում, մյուս սակրավորը զարկում էր աջ ձեռքի թաթին, որ դրված էր նրանի կոթի վրա, կտրում և դեն էր ձգում: Պապ թագավորը տեղն ու տեղը ընկնում էր բերանքսիվայր. թասով գինին, պարանոցից հոսող արյունը և նրա մարմինը միասին ընկնում էին սեղանի վրա: Պապ թագավորն անմիջապես մեռնում էր: Երբ սե-

սատակէր թագաւորն Պապ: Ընդ չփութելոյ տաճարին խռովութեան՝ Գնէլ տէր գաւառին Անձևացեաց յոտն կացեալ յիւրմէ բազմականէն, հանեալ զիւր սուսերն՝ հարկանէր զմի 'ի լեգէոնաց անդի սպանանէր, յայնցանէ՝ որ հարին զթագաւորն: Ապա Տէրէնդ զօրավարին Յունաց զիւր սուսերն հանեալ ածէր, տարակաց 'ի գլխոյն Գնելոյ զսկաւառակն գլխոյն 'ի վերայ աչացն 'ի բաց ընկենոյր: Եւ այլ ինչ ոք ոչ կարաց յանդգնել ասել ինչ ընդ նոսա և ոչ ինչ:

## ԼԳ

### ՅԱՂԱԳՍ ՈՐ ԻՆՉ ԽՈՐՀԵՑԱՆ 'Ի ՅԵՏՈՅ ԻՇԽԱՆՔՆ ՀԱՅՈՑ, ԱՊԱ ԱՆՑԻՆ ԿԱՑԻՆ ԼՈՒՌ

Եւ ժողովեցան եկին ամենայն իշխանքն Հայոց մեծամեծք 'ի մի վայր 'ի միասին, և Մուշեղ սպարապետն, և Հայր Մարդպետ, և ամենայն իշխանքն ասէին: Զի՞նչ արասցուք կամ զի՞նչ գործեսցուք, խնդրեսցո՞ւք զվրէժ թագաւորին մերոյ, թէ ոչ: Եւ ապա հաստատեցաւ այս բան 'ի խորհրդեանն, և ասեն: Ոչ կարեմք հեթանոսաց 'ի պարսկաց 'ի ծառայութիւն մտանել, և թշնամի առնել զթագաւորն Յունաց. և ոչ զերկոսեան թշնամի առնել, և ոչ առանց միոյ թիկանց կարեմք կեալ: Ապա եկաց այս բան 'ի խորհրդին, թէ զինչ եղև՝ ահա եղև, թող ծառայեսցուք թագաւորին Յունաց. կացցուք 'ի հնազանդութեան իշխանութեան թագաւորութեանն Յունաց. զիարդ և կամք իցեն թագաւորութեան Յունաց, արասցեն մեզ: Եւ ոչ ինչ արկին 'ի միտ, կամ վրէժ խնդրել, կամ այլազգ ինչ իրս առնել. այլ անցին կացին լուռ:

## ԼԴ

### ՅԱՂԱԳՍ ԹԱԳԱՒՈՐԵԼՈՅՆ ՎԱՐԱԶԴԱՏԱՅ ՆԵՐԿՐԻՆ ՀԱՅՈՑ ՅԵՏ ՊԱՊԱՅ

Եւ եղև յետ մահուան Պապայ թագաւորին Հայոց, թագաւորեցոյց թագաւորն Յունաց զՎարազդատ ոմն 'ի նմին տոհմէն Արշակունի 'ի վերայ աշխարհին Հայոց: Եկն բազում չքով եմուտ յերկիրն Հայոց, և թագաւորեաց յերկրին Հայոց: Եւ էր նա մանուկ յաւուրց, լի արութեամբ, կորովի ձեռօք, քաջ սրտիւ, և 'ի մտաց թեթև, մանգաբարոյ տղայահանճար մանկամիտ: Բայց սակայն իբրև տեսին զնա, ժողովեցան առ նա ամենայն ազգք Հայոց մեծամեծք նախարարք. և կամեցեալ խնդացին զթագաւորելն նորա 'ի վերայ իւրեանց:

ճաշատանը աղմուկ և շփոթություն ընկավ՝ Անձևացյաց գավառի տեր Գնելը բազմած տեղից վեր կացավ, սուրը քաշեց և սպանեց զինվորներից մեկին, որ խփել էր թագավորին: Այն ժամանակ Հունաց Տերենտ զորավարը իր սուրը հանելով խփում էր և Գնելի գլխից սկավառակը կտրելով աչքերի վրա էր շուռ տալիս: Եվ ուրիշ ոչ ոք ոչինչ չհանդգնեց ասել նրանց և ոչ մի խոսք:

## ԼԴ

### ԹԵ ԻՆՉ ԽՈՐՀՈՒՐԴ ԱՐԻՆ ՀԵՏՈ ՀԱՅՈՑ ԻՇԽԱՆՆԵՐԸ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԼՈՒՌ ԿԱՑԻՆ ՄՆԱՑԻՆ

Եվ Հայոց բոլոր մեծամեծ իշխանները ժողովվեցին միասին, և Մուշեղ սպարապետը, և Հայր մարդպետը, և բոլոր իշխանները. «Ի՞նչ անենք, ի՞նչ գործենք,— ասում էին նրանք,— մեր թագավորի վրեժը պահանջե՞նք թե ոչ»: Վերջը խորհրդի մեջ այս միտքն ընդունվեց. «Մենք չենք կարող հեթանոս պարսիկների ծառայության տակ մտնել և Հունաց թագավորին թշնամացնել, ոչ էլ երկուսին ևս թշնամացնել, որովհետև առանց որևէ մեկի թիկունքի չենք կարող ապրել»: Ապա խորհրդում այսպես որոշվեց. «Ինչ որ եղավ՝ եղավ, թող էլի Հունաց թագավորին ծառայենք, Հունաց թագավորի իշխանությանը հնազանդինք, թող Հունաց թագավորները մեզ հետ վարվեն՝ ինչպես ուզում են»: Այլևս չմտածեցին վրեժ խնդրել կամ ուրիշ մի բան անել, այլ լուռ տեղերումը նստեցին:

## ԼԵ

### ՊԱՊԻՑ ՀԵՏՈ ՎԱՐԱԶԴԱՏԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՎՐԱ:

Հայոց Պապ թագավորի մահից հետո Հունաց թագավորը Հայոց աշխարհի վրա թագավորեցրեց մի ոմն Վարազդատի, որ նույն Արշակունի տոհմից էր: Նա մեծ շքեղությամբ եկավ Հայոց աշխարհը և թագավորեց Հայոց աշխարհում: Նա տարիքով մանուկ էր, արիասիրտ, հզոր ձեռքերով, քաջ սրտով, բայց թեթևամիտ, երեխայի նման խելքը պակաս, մանկամիտ: Բայց երբ նրան տեսան՝ Հայոց մեծամեծների ու նախարարների բոլոր տոհմերը նրա մոտ ժողովվեցին, ուրախանալով որ նա իրենց վրա թագավորեց:

Եւ սպարապետն Հայոց Մուշեղ առաջնորդէր Հայոց. և զգուշանայր զսահմանօքն Հայոց, որպէս սովոր էր կարգել զաշխարհն մեծապէս, և խրատ բարեաց թագաւորին մանկանն Վարազդատայ մատուցանէր: Եւ հոգայր հանապազ վասն թագաւորութեան աշխարհին Հայոց, և զիարդ կամ որպէս շէն լինել մարթասցէ. և հանապազ երկս արկանէր բարեխորհուրդն, զի հաստատուն կալ կարասցէ թագաւորութիւնն: Խորհէր ևս ընդ իշխանսն Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց. 'ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս ամուր պարսպաւորս զօրանիստս հաստատել ընդ ամենայն իրկիրն Հայոց. մինչև 'ի Գանձակ սահման երկիրն, որ Պարսից կուսէ էր, Հայոց սահման էր. և զամենայն ազատսն Հայոց կայսերական թօշակօքն զինուորել. սոյնպէս և զօրաց երկրին Հայոց, զի այսպէս ամենայն զգուշութիւն լիցի առ 'ի թշնամեաց իւրեանց 'ի զօրացն Պարսից: Եւ թագաւորն Յունաց յանձին ունէր մեծաւ խնդութեամբ առնել զայս. զի այսու ամենայնիւ աշխարհն հաստատուն լիցի և անշարժ 'ի նմանէն, զի մի՛ կարասցէ թագաւորն Պարսից յիւր վտարել զաշխարհն Հայոց:

## ԼԵ

## ՅԱՂԱԳՍ ԹԷ Ո՛ՐՊԷՍ 'Ի ԲԱՆՍ ՉԱՐԱԽՈՐՀՈՒՐԴՍ ԵՒ ԱՆՄԻՏ ՄԱՐԴԿԱՆ ԵԼԵԱԼ ԹԱԳԱՒՈՐՆ ՀԱՅՈՑ ՎԱՐԱԶԴԱՏ, ԶԶՕՐԱՎԱՐՆ ՀԱՅՈՑ ՄՈՒՇԵՂ ՍՊԱՆԱՆԷՐ

Այլ իբրև տեսանէին զթագաւորն Հայոց Վարազդատ մեծ նախարարքն Հայոց՝ թէ մանուկ բանսերքուկ է, զչար 'ի բարոյ որոշել չգիտէ, սկսան այնուհետև ըստ կամաց իւրեանց վարել զթագաւորն. որպէս և կամէին, բանիւք իւրեանց տանէին և բերէին զնա: Նա առաւել ունկն դնէր մանկտոյն՝ որ 'ի տիոց հասակակիցք էին նորա, առաւել քան զծերոցն իմաստնոց՝ որք կարող էին զօգտակար խրատն մատուցանել նմա:

Այլ Բատ, որ նահապետն էր ազգին Սահառունեաց տոհմին, դայեակ սնուցիչ թագաւորին Վարազդատայ, կամեցաւ նա զգործ զօրավարութեան սպարապետութեանն Մուշեղայ յինքն յափշտակել 'ի նմանէ: Վասն այսորիկ սկսաւ քսիս մատուցանել զնմանէն առ թագաւորին Վարազդատայ առ իւրում սանուն, և ասել՝ թէ 'ի սկզբան 'ի նախնեացն հետէ զծեր Արշակունեաց տոհմին Մամիկոնէից է կորուսեալ, զի հակառակորդք ձեր դոքա լեալ են 'ի բնէ անտի. և համակ զերկիրս Հայոց դոցա է կերեալ, մանավանդ Մուշեղի. մանաւանդ զի այր չար է և

Իսկ Հայոց Մուշեղ սպարապետը առաջնորդում էր հայերին և զգուշությամբ պահպանում էր Հայաստանի սահմանները, ինչպես սովոր էր աշխարհը բարեկարգ պահել, և բարի խրատներ էր տալիս մանուկ Վարազդատ թագավորին: Եվ միշտ հոգս էր քաշում Հայոց աշխարհի թագավորության համար, թե ինչպես շեն պահե, և միշտ բարեմտությամբ աշխատում էր՝ որ թագավորությունը հաստատ մնա. նա խորհրդակցում էր Հունաց իշխանների հետ և նրանց միջոցով կայսեր հետ, թե հարկավոր է Հայոց աշխարհում քաղաքներ շինել ամեն մի գավառում, որում մի-մի քաղաք[201], որում երկ-երկու, ամուր պարիսպներով պատած, որպեսզի զորանիստ տեղեր դառնան բոլոր Հայոց աշխարհում, մինչև Գանձակ սահմանագլուխը, որ սահման էր Պարսկաստանի և Հայաստանի մեջ: (Նույնպես խորհուրդ էին անում) Հայոց բոլոր ազնվականներին զինավորել կայսերական ծախսով, այնպես էլ Հայոց աշխարհի զորքերը, որպեսզի այս կերպով ամեն զգուշություն ձեռք առնեն իրենց թշնամիների՝ պարսից զորքի դեմ: Եվ Հունաց թագավորը մեծ ուրախությամբ հանձն էր առնում այս բաները կատարել, որպեսզի այս բոլոր միջոցներով աշխարհը հաստատ ու անշարժ կապվի իր հետ, և Պարսից թագավորը չկարողանա Հայոց աշխարհը իրեն գրավել:

## ԼԵ.

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՎԱՐԱԶԴԱՏ ԹԱԳԱՎՈՐԸ ՉԱՐԱՄԻՏ ԵՎ ԱՆՄԻՏ ՄԱՐԴԿԱՆՑ ԽՈՍՔԵՐԻՆ ԼՍԵԼՈՎ՝ ՍՊԱՆՈՒՄ ԷՐ ՀԱՅՈՑ ՄՈՒՇԵՂ ԶՈՐԱՎԱՐԻՆ

Բայց երբ Հայոց մեծ նախարարները տեսնում էին, թե Հայոց Վարազդատ թագավորը դյուրահավատ մանուկ է, չարը բարուց զանազանել չգիտե՝ սկսեցին այնուհետև թագավորին ման ածել իրենց ուզածի պես. նրան տանում ու բերում էին՝ ինչպես իրենք կամենում էին: Նա ավելի լսում էր մանուկներին, որոնք տարիքով իրեն հասակակից էին, քան իմաստուն ծերերին, որոնք կարող էին նրան օգտակար խրատներ տալ:

Իսկ Բատը, Սահառունյաց տոհմի նահապետը, որ Վարազդատ թագավորի դայակն ու ուսուցիչն էր՝ միտքը դրեց Մուշեղից հափշտակել զորավարության՝ սպարապետության գործը: Այս պատճառով նա սկսեց քսություններ անել նրա մասին իր սանիկին՝ Վարազդատ թագավորին, ասելով, թե «Հնուց հետե, նախնյաց ժամանակներից ի վեր, Մամիկոնյանները են կորուսի մատնել ձեր Արշակունյաց տոհմը, որովհետև ի բնե ձեր հակառակորդները են եղել. դրանք են կերել Հայոց աշխարհը, մանավանդ Մուշեղը, որ չար ու նենգավոր մարդ է:

նենգաւոր։ Զի սիրելի է թշնամեաց ձերոց, և ատելի սիրելեաց ձերոց. և համակ ընդ ձեզ նենգաւ է գնացեալ, երկմտութեամբ և դժխեմութեամբ։ Զի ո՞չ այն Մուշեղ է, որ 'ի թագաւորութեան ժամանակ Պապայ 'ի պատերազմունսն Պարսից քանիցս անգամ ձեռնահաս եղև սպանանել զՇապուհ արքայն Պարսից, և ոչ եսպան, այլ արձակեաց զթշնամին. և երբեմն զկանայս Շապհոյ թագաւորին 'ի բուռն էառ, և խնամով գրով ժանուարօք արձակեաց զնոսա զհետ Շապհոյ։ Ո՞չ այդ այն Մուշեղն է, որ զՈւռնայր արքայ Աղուանից 'ի բուռն էառ, և սպանանել ոչ կամեցաւ, այլ արձակեաց զթշնամին։ Ո՞չ այդ այն Մուշեղն է, զի զարքայն Պապ հրամանաւ դորա և դորին խորհրդովդ զօրավարքն Յունաց սպանին. զի դա ոխացոյց և գրգռեաց զարքայն Յունաց 'ի վերայ թագաւորին Պապայ, մինչև ետ սպանանել։ Այլ արժան է մեռանել 'ի ձեռաց քոց, և չէ պարտ կեալ դմա. այլ թէ ոչ անապարեսցես, արքայ, այժմ զհայ երկիրս խորհի լնուլ քաղաքօք, և զօրանիստ առնէ աստ բնակութեան զօրացն Յունաց։ Եւ այնուհետև կամ թագաւորն Յունաց հանէ 'ի քէն զթագաւորութիւնս Հայոց. կամ այս Մուշեղ սպանանէ, և ինքն թագաւորէ։ Եւ այսպիսի բանիւք զաղտնի հանապազ զթագաւորն գրգռէին, մինչև հաւանեցաւ ըստ կամաց նոցա զսպարապետն զզօրավարն Հայոց սպանանել։

Ապա խորհուրդ արարին, թէ ո՞րպէս ըմբռնել կարասցեն զնա. քանզի մեծապէս երկնչէին 'ի նմանէն։ Թէ զգայ, ասեն, մեծ պատերազմ առնէ. և ոչ ոք կարէ զդէմ քաջութեան նորա ունել, բայց հնարիւք մեքենաւորութեամբ ինչ լինիցի հնար։ Այսպէս սպասէին նմա։ Եւ եղև յաւուր միոջ հրաման ետ Վարազդատ արքայ Հայոց ընթրիս մեծ գործել և մեծ պատրաստութիւն առնել. և կոչել հրամայեաց յընթրիսն զամենայն աւագս պատուականս և զմեծամեծս, և զզօրավարն Մուշեղ։ Պատրաստեաց Վարազդատ արս ընտիրս հզօրս, զօրեղք, զի կազմ կայցեն զարծոյն, հարկանել յանկարծօրէն յանպատրաստից յեղակարծումն ժամու 'ի վերայ Մուշեղի։ Զնոսա քաջ ուրախ առնէր մեծապէս, և շատ գինի տայր ըմպել, և բազում առնէր զբօսումն ուրախութեան։ Արքայն Վարազդատ տայր նշանս յառաջագոյն այնոցիկ, զոր էր սպանօղն պատրաստեալ, եթէ յորժամ գիտիցես թէ քաջ արբեալ իցէ և զմտօք գառանցեալ յարբեցութենէ սպարապետն Մուշեղ, ես յառուցեալ իբրև 'ի նեմիշն երթայոյ պատճառաւ, և դուք պատեսջիք զնովաւ։ Եւ եղև իբրև անցին զառանցին 'ի գինւոյն՝ ըստ չափ անցանելով, և թագաւորն Վարազդատ պահէր զանձն 'ի գինւոյն. իբրև գիտաց Վարազդատ՝ թէ արդ յարբեցութենէ մտաց ինչ զգան, ինքն յառուցեալ իբրև յապարանէ զանց առնելոյ պատճառաւ, և աւագանին ամենայն բազմականացն յոտն կա-

Որովհետև նա սիրել է ձեր թշնամիներին և ատել է ձեր սիրելիներին և միշտ ձեզ հետ վարվել է նենգությամբ, երկդիմությամբ ու չարամտությամբ: Մի՞թե դա այն Մուշեղը չէ, որ Պապի թագավորության ժամանակ պարսիկների հետ պատերազմելիս մի քանի անգամ հնարավորություն ունեցավ Պարսից Շապուհ թագավորին սպանելու, բայց չսպանեց, այլ թշնամուն ազատ արձակեց. մի անգամ էլ ձեռք ձգեց Շապուհ թագավորի կանանց, և խնամքով ու հոգատարությամբ ժանվարներով ուղարկեց Շապուհի ետևից: Դա այն Մուշեղը չէ՞, որ Աղվանից Ուռնայր թագավորին ձեռք ձգեց, բայց սպանել չկամեցավ, այլ թշնամուն ազատ արձակեց: Դա այն Մուշեղը չէ՞, որի հրամանով և որի խորհրդով Հունաց զորավարները Պապ թագավորին սպանեցին, որովհետև դա էր որ Հունաց թագավորին թշնամացրեց ու գրգռեց Պապ թագավորի դեմ, մինչև որ սպանել տվեց: Արդ պետք է որ նա քո ձեռքից մեռնի, նա չպետք է ապրի: Եվ եթե դու չշտապես, արքա, նա մտածել է այժմ Հայոց աշխարհը լցնել քաղաքներով, զորանիստներ դարձնել՝ Հունաց զորքերն այնտեղ բնակեցնելու համար: Եվ այնուհետև կա՛մ Հունաց թագավորը քեզանից կխլե Հայոց թագավորությունը կամ հենց այս Մուշեղը (քեզ) կսպանե և ինքը կթագավորե»: Եվ այսպիսի խոսքերով շարունակ գաղտնի գրգռում էին թագավորին, մինչև որ համաձայնեց Հայոց զորավար սպարապետին սպանել ըստ նրանց ցանկության:

Հետո սկսեցին խորհուրդ անել, թե ի՞նչպես նրան բռնեն, որովհետև նրանից շատ էին վախենում: «Եթե գլխի ընկնի, ասում էին, մեծ պատերազմ կհարուցանե, և ոչ ոք չի կարողանա նրա քաջությանը դեմ դնել. պետք է մի հնարք, խորամանկություն բանեցնել»: Եվ այսպես մի օր Հայոց Վարազդատ թագավորը հրաման տվեց մեծ խնջույք սարքել մեծ պատրաստությամբ, և հրամայեց խնջույքին հրավիրել բոլոր ավագ պատվավոր մարդկանց, մեծամեծներին և Մուշեղ զորավարին: Վարազդատը պատրաստեց բոլոր ուժեղ հզոր մարդկանց, որ պատրաստ լինեին զորքին—հանկարծակի, հանպատրաստից, անսպասելի ժամանակ Մուշեղի վրա հարձակվելու: Հյուրերին շատ ուրախացնում էր, շատ գինի էր խմել տալիս և շատ զվարճացնում էր: Վարազդատ թագավորը առաջուց նշան էր տվել իր պատրաստած սպանողներին, թե «Երբ կտեսնեք, որ Մուշեղ սպարապետը լավ հարբել է և հարբեցողությունից խելքը կորցրել է՝ ես վեր կկենամ, իբրև թե արտաքնոց գնալու համար, դուք այդ ժամանակ նրան շրջապատեցեք»: Բոլորը չափից դուրս խմեցին, գինովցան, բայց Վարազդատը գինի խմելուց զգուշանում էր: Երբ նա նկատեց, թե հարբեցողությունից խելքերը կորցրին, վեր կացավ,

ցին առ հասարակ, իբրև նմա պատիւ ինչ առնել: Եւ յանկարծ արքն, որոց էր տուեալ հրաման, երկոտասան այր կից զոյգ զգնի կողմանէ զնմանէ բուռն հարկանէին, վեց այր 'ի մի բազուկն Մուշեղի, և վեց այր 'ի միւս բազուկն: Եւ ընդ ուռն կալ թագաւորին, նայեցեալ ընդ նա՝ եթէ այս ընդէ՞ր է. և թագաւորին պատասխանի տուեալ, ասէ. Երբ առ Պապ արքայ, հարց և տես՝ թէ ընդէ՞ր է այդ: Եւ թագաւորն 'ի դուրս կոյս գնացեալ ելանէր, և ասէ Մուշեղ. 'Ի վերայ բազում իմոց վաստակոցն արեան և քրտան, և սլաքօքն զքիրտն ջնջելոյ, ա՞յս հատուցումն եղև ինձ: Բայց իբրև եհաս ինձ մահս, թէ 'ի վերայ ձիոյ դիպեալ էր...: Զայս միայն բանս ժամանեաց ասել, և այլ ոչ ինչ ոչ: Եւ անդէն Բատ Սահառունի, դայեակն արքային Վարազդատայ, զնրանն՝ զոր յիւրում ազգերն ունէր 'հանեալ, անցոյց ընդ փողս զորավարին Մուշեղի. և անդէն 'ի բաց եհատ զգլուխ նորա: Եւ բարձին զնա, և տարան զմարմին նորա 'ի գեւղն իւր:

## ԼԶ

### ՅԱՂԱԳՍ ԱՆՄՏՈՒԹԵԱՆ ԿԱՐԾԵԱՑ ԸՆԴԱՆԵԱՑՆ ՄՈՒՇԵՂԻ ԵՒ ԱՅԼ ՄԱՐԴԿԱՆ

Եւ եղև իբրև տարան զմարմինն սպարապետին Մուշեղի 'ի տուն իւր առ ընտանիս իւր, ոչ հաւատային ընդանիք նորա մահուն նորա, թէպէտ և տեսանէին զգլուխ նորուն զատ 'ի մարմնոյն անտի: Զի ասէին. Նորա յանքիւ ճակատ մտեալ էր, և վէր երբէք չէր առեալ. ոչ նետ մի դիպեցաւ երբէք, և ոչ այլոց զինու խոցեալ է զդա: Իսկ կէսք յառնելոյ ակն ունէին նմա. մինչև զգլուխն անդէն 'ի կոնեղն կարեալ կցեցին, և հանին եդին 'ի տանիսն աշտարակի միոյ, ասէին՝ թէ վասն զի այր քաջ էր, Առլեզք իջանեն և յարուցանեն զդա: Պահապան կային, և ակն ունէին յառնելոյ մինչև նեխեցաւ մարմինն: Ապա իջուցին յաշտարակէ անտի, և լացին թաղեցին զնա որպէս օրէն էր:

## ԼԷ

### ՅԱՂԱԳՍ ԳԱԼՈՅՆ ՄԱՆՈՒԷԼԻ 'Ի ԳԵՐՈՒԹԵՆԷ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ԽՆԴՐԵԼՈՅ ԶՎՐԷԺՆ ՄՈՒՇԵՂԻ. ԵՒ ՀԱԼԱԾԵԼՈՅ ԶԹԱԳԱՒՈՐՆ ՎԱՐԱԶԴԱՏ ՅԵՐԿՐԷՆ ՀԱՅՈՑ. ԵՒ ՅԻՆՔՆ ՈՒՆԵԼՈՅ ԶԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ

Ապա կացոյց թագաւորն Վարազդատ 'ի գործ զօրավարութեան սպարապետութեանն զԲատ նահապետն Սահառունեաց տոհմին, որ էր

իբրև թե ջուր թափելու գնալու համար, և սեղան բազմած բոլոր ավագները ոտքի կանգնեցին՝ նրան պատվելու համար: Եվ հանկարծ այն մարդիկ, որոնց հրաման էր տվել, տասներկու մարդ մի անգամից միասին ետևի կողմից Մուշեղին բռնեցին, վեց մարդ մի ձեռքից և վեց մարդ մյուս ձեռքից: Երբ թագավորը ոտքի կանգնեց՝ (Մուշեղը) նրան նայեց (հարցական կերպով), թե ինչի՞ց է այս, և թագավորը պատասխանեց ու ասաց. «Գնա՛ Պապ թագավորի մոտ, հարցրո՛ւ և կիմանաս, թե ինչի՛ց է»: Այս ասելով թագավորը դեպի դուռն ուղղվեց ու դուրս ելավ: Եվ Մուշեղն ասաց. «Իմ այնքան ծառայությունների, արյուն ու քրտինք թափելու, քրտինքս սլաքներով սրբելու վարձատրությունն ա՞յս եղավ: Բայց, այս մահը երանի թե ձիու վրա ինձ հասներ»... Այսքան միայն կարողացավ ասել, ավելի ոչինչ: Իսկույն Բատ Սահառունին, Վարազդատ թագավորի դայակը, ազդրից կախած նրանը հանելով՝ խրեցրեց Մուշեղ զորավարի շնչափողը և իսկույն գլուխը կտրեց: Նրա մարմինը վերցրին ու տարան նրա գյուղը:

## ԼԶ

### ՄՈՒՇԵՂԻ ԸՆՏԱՆԻՔԻ ԵՎ ԱՅԼ ՄԱՐԴԿԱՆՑ ԱՆՄԻՏ ԿԱՐԾԻՔԻ ՄԱՍԻՆ.

Երբ Մուշեղ սպարապետի մարմինը իր տունը, իր ընտանիքի մոտ տարան՝ ընտանիքը նրա մահվանը չէին հավատում, թեպետ և տեսնում էին գլուխը մարմնից զատված: Նրանք ասում էին. «Սա անթիվ անգամ կռիվների մեջ էր մտել, ոչ մի վերք չէր ստացել. ոչ մի նետ սրան չէր դիպել և ոչ մի ուրիշ զենքով սա չէր խոցվել»: Իսկ ոմանք էլ հույս ունեին, թե նա կկենդանանա. ուստի գլուխը կարելով կցեցին իրանին և հանեցին մի աշտարակի երդիկը դրին, ասելով. «որովհետև քաջ մարդ էր՝ առլեզները[202] կիջնեն ու սրան կկենդանացնեն»: Պահապան դրին և սպասում էին նրա հարությանը, մինչև որ մարմինն սկսեց նեխվել: Ապա աշտարակից վար իջեցրին, լացին ու թաղեցին՝ ինչպես կարգն էր:

## ԼԷ

### ՄԱՆՈՒԵԼԻ ԴԱՐՁԸ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԳԵՐՈՒԹՅՈՒՆԻՑ. ՄՈՒՇԵՂԻ ՎՐԵԺԸ ՊԱՀԱՆՋԵԼԸ, ՎԱՐԱԶԴԱՏ ԹԱԳԱՎՈՐԻՆ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՑ ՀԱԼԱԾԵԼԸ ԵՎ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ԻՐ ՁԵՌՔԸ ԳՐԱՎԵԼԸ

Իսկ Վարազդատ թագավորը զորավարության ու սպարապետության գործը հանձնեց Բատին, Սահառունյաց տոհմի նահապետին,

իւր դայեակ, բանսարկու քսուն սպանօղն Մուշեղի: Եւ էր նա սպարապետ փոխանակ նորա զօրավար ամենայն Հայոց: Եւ ազգին Մամիկոնեան տոհմին տանուտէր նահապետ կացոյց թագաւորն, Վաչէ անուն 'ի նմին տոհմէ:

Յայնմ ժամանակի դարձան 'ի գերութենէն եկին 'ի գերութենէն եկին 'ի Պարսից, զոր տարեալ էր Շապհոյ արքային, որք երկու եղբարք 'ի Մամիկոնեան տոհմէն. անուն միումն Մանուէլ, և անուն երկրորդին Կոմս[55]: Քանզի զայն ժամանակաւ թագաւորին Պարսից սասանականին տուեալ էր պատերազմ ընդ մեծ թագաւորին Քուշանաց ընդ արշակունոյն, որ նստէր 'ի Բաղհ քաղաքին: Եւ իբրև երթային զօրքն Պարսից 'ի Քուշանացն պատերազմն ապա և զմարդիկ գերութեանն որ 'ի Հայոցն էին՝ թագաւորն Պարսից յղէր 'ի պատերազմ ընդ իւր զօրսն. և Մանուէլս այս երթայր ընդ նոսա հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ: Եւ իբրև եղեն խառնորդք երկոցունց գնդացն ընդ միմեանս, ապա 'ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից յերեսաց զօրացն Քուշանաց. դարձան 'ի փախուստ անհնարին հարուածովք, հասին 'ի վերայ զօրացն Պարսից, զի ոչ մի 'ի նոցանէն ոչ ապրեցուցանէին 'ի զօրացն Պարսից, բանբեր անգամ ոչ ապրէր. բայց Մանուէլ որդի Արտաշինայ 'ի Մամիկոնեան 'ի տոհմէն, հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ, բազում քաջութիւնս կատարեալ 'ի նմին ճակատուն, սակայն հետիոտս ապրէին: Եւ գային յամենայն զօրացն Պարսիցն սոքա միայն հասանէին առ թագաւորն Պարսից ողջ ապրեալք և բազում քաջութիւնս կատարեալ:

Սակայն թագաւորին Պարսից բազում տրտմութիւն լինէր յաղագս իւրոյ զօրացն կատարածոյն. սակայն և զայնու զայրացեալ զակատէր զի զնոսա միայն տեսանէր ողջ եկեալ յամենայն զօրացն իւրոց: Ցասուցեալ ընդ նոսա, այպն արարեալ, հալածեաց յիւրոց սահմանացն. արձակեաց զնոսա յերկիրն իւրեանց: Եւ գնացեալք գային դէմ յանդիման յիւրեանց երկիրն արարեալ: Եւ լին հետիոտք երկոքին եղբարքն. և էին երկոքեան մեծք անհեղեղք, երկոքեան անձնեայք որպէս սկայազունք: Մինչ դեռ գային 'ի ճանապարհի, ոչ կարէր Մանուէլն գնալ, զի ոտիքն ցուած էր. ապա Կոմս եղբայր իւր ստանձեալ առեալ բառնայր, և տասն տասն խրասախ բերէր ըստ անձին զայնչափ այրն զանհեղեղ զանարի. եկն եբեր յերկիրս Հայոց: Եւ եղև իբրև եկն եհաս յերկիրն Հայոց Մանուէլ եղբարբն իւրով Կոմսիւ հանդերձ, իբրև ետես զնա Վաչէն՝ որ յառաջն էր լեալ նահապետ, մինչ չև եկեալ էր 'ի նա՝ ետ ցնա զպատիւ իշխանութեանն զոր առեալ էր 'ի թագաւորէն Վարազդատայ: Քանզի նա էր երէց յազգին, և Մանուէլն ունէր զնահա-

որ իր դայակն էր և Մուշեղի քսու բանսարկուն ու սպանողը: Նա Մուշեղի փոխանակ դարձավ բոլոր Հայոց զորավար սպարապետը: Իսկ Մամիկոնյան տոհմին նահապետ ու տանուտեր նշանակեց թագավորը՝ Վաչեին՝ նույն Մամիկոնյան տոհմից:

Այս ժամանակ Պարսկաստանի գերությունից վերադարձան Մամիկոնյան տոհմից երկու եղբայր, որոնց գերի էր տարել Շապուհ թագավորը, մեկի անունը Մանուել, մյուսինը Կոմս: Որովհետև այդ ժամանակներր Պարսից թագավորը, որ Սասանյան ցեղից էր, պատերազմ էր ունեցել Քուշանների մեծ թագավորի հետ, որ Արշակունի էր և նստում էր Բահլ քաղաքում: Եվ երբ Պարսից զորքերը գնում էին Քուշանների[203] դեմ պատերազմի՝ ապա Պարսից թագավորն իր զորքերի հետ ուղարկում էր և այն մարդկանց, որոնց գերի էր բերել Հայաստանից, նրանց հետ գնում էր և այս Մանուելը իր Կոմս եղբոր հետ: Երբ կռվի մեջ երկու կողմի զնդերն իրար խառնվեցին՝ Պարսից զորքը պարտություն կրեց Քուշանների զորքից և շարաչար հարվածներ կրելով փախուստի դիմեց: (Քուշանները) պարսիկներին հասնելով՝ նրանցից ոչ մեկին կենդանի չթողին, մինչև անգամ մի մարդ կենդանի չմնաց՝ լուր բերող. բայց Մանուելը, Արտաշեսի որդին, Մամիկոնյան տոհմից, և իր Կոմս եղբայրը մեծամեծ քաջություններ գործելով նույն ճակատամարտում կյանքերն ազատեցին, և Պարսից բոլոր զորքերից միայն այս երկուսը հետիոտն գալիս հասնում էին Պարսից թագավորի մոտ ողջ առողջ, շատ քաջություններ կատարած[203]:

Բայց Պարսից թագավորը շատ տրտմած էր իր զորքերի կոտորածի պատճառով. նա ավելի ևս շարացավ ու կատաղեց, երբ տեսավ որ իր բոլոր զորքերից միայն նրանք են ողջ մնացել ու եկել: Նրանց վրա բարկանալով՝ անարգելով հալածեց իր երկրի սահմաններից, որ գնան իրենց երկիրը: Եվ նրանք ճանապարհ ընկան, երեսները դեպի իրենց աշխարհն ուղղած: Երկու եղբայրներն էլ հետևակ էին, երկուսն էլ անհեթեթ մեծությամբ, հաղթանդամ, հսկաների նման: Մինչ գալիս էին ճանապարհով՝ Մանուելը չէր կարող քայլել, որովհետև ոտներում ցավ ուներ: Ապա նրա Կոմս եղբայրը նրան շալակում էր իր վրա. և (օրական) տասը փարսախ[204] շալակած բերում էր այն ահագին անհեթեթ մարդուն, մինչև բերեց հասցրեց Հայոց աշխարհը: Երբ Մանուելը իր Կոմս եղբոր հետ եկավ հասավ Հայոց աշխարհը, և երբ նրանց տեսավ Վաչեն, որ նրա գալուց առաջ (Մամիկոնյանների) նահապետն էր՝ նրան հանձնեց իր իշխանական պատիվը, որ ստացել էր Վարազդատ թագավորից, որովհետև տանի մեջ ավագագույնը նա էր: Այնուհետև Մա-

պետութեան ազգին տանուտէրութեան պատուին. և Վաչէն լինէր երկրորդ:

Իսկ յորժամ եհաս եկաց Մանուէլն 'ի փառս տէրութեան իւրոյ, նախ առանց հրամանի թագաւորին Վարազդատայ յինքն յափշտակեաց զզօրավարութեանն զսպարապետութիւնն. զի այն ինչ որ իւրոց նախնեացն 'ի բնէն կալեալ էր 'ի սկզբանէ զոր արքայն Վարազդատ շնորհ առնէր իւրում դայեկին Բատայ, զայն Մանուէլ յինքն հանեալ ունէր զիշխանութիւնն: Եղև յետ այսորիկ, պատգամ յղէր սպարապետն Հայոց Մանուէլ առ թագաւորն Վարազդատ, և ասէր՝ թէ փոխանակ ամենայն ազգին մերոյ վաստակոցն, զոր 'ի նախնեացն 'ի հնոց ժամանակաց հետէ միամտութեամբ առ ձեզ Արշակունիս վաստակեալ եմք, և եղեալ զանձինս մեր 'ի վերայ ձեր, կեցեալ և մեռեալ եմք 'ի վերայ ձեր, ամենայն նախնիքն մեր առաջինքն անկան 'ի պատերազմունս 'ի վերայ ձեր, Վասակ հայր Մուշեղի կորեաւ 'ի վերայ Արշակայ արքայի, և մեք հանապազ վաստակեալ և աշխատեալ եմք 'ի վերայ թագաւորութեան ազգիդ ձերոյ, և փոխանակ կեանս առնելոյ ընդ վաստակոցն, արդ որք 'ի թշնամացն մեռան, որք մնացին՝ զայն դուք Արշակունիքդ կոտորեցիք: Արդ Մուշեղ այր քաջ եղբայր իմ, որ 'ի վերայ ձեր մաշեաց զանձն իւր ի՛ մանկութենէ իւրմէ, վանեաց կոտորեաց զթշնամիս ձեր, և ոչ կարացին թշնամիքն սպանանել, դու կալար 'ի բազմական խեղդեցեր զնա: Նա դու չես իսկ Արշակունի, այլ 'ի պոռնկութենէ եղեալ ես որդի. վասն այդորիկ ոչ ծանեար զվաստակաւորսն Արշակունեաց: Նա մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք, այլ ընկերք ձեր և 'ի վերոյ քան զձեզ. զի մեր նախնիքն լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց, և վասն եղբարց իւրեանց գրգռութեանն, զի արիւն մեծ անկեալ է 'ի վերայ. վասն այնր եմք գնացեալք. և վասն բարւոյ հանգստի գտանելոյ՝ եկեալ դադարեալ եմք: Առաջին թագաւորքն Արշակունիք, որք գիտէինն զմեզ ո՛վ էաք կամ ուստի՛ էաք. այլ զի դու քանզի չես Արշակունի, գնա յաշխարհէս, և մի՛ մեռանիր 'ի ձեռաց իմոց:

Իսկ Վարազդատ թագաւորն պատգամ յղէր պատասխանոյն առ զօրավարն Մանուէլ, և ասէր. Ես քանզի չեմ Արշակունի, զի եղի զթագ նախնեաց իմոց Արշակունեացն, և կալայ զաշխարհն առաջնոց իմոց, և խնդրեցի զվրէժ հօրեղբօրն իմոյ Պապայ 'ի չարագործ յեղբօրէն քումմէ 'ի Մուշեղայ. բայց զի դու չես յաշխարհէս յայսմանէ, զի քեզէն իսկ ասացեր բաս յերկրէն յաշխարհէն Ճենաց եմք լեալք թագաւորք 'ի բնութենէ, և այսր պանդուխտ եմք եկեալք, արդ ըստ օրինակի եղբօրն քո մի՛ մեռանիր: Զի իմ, առ բարեբարութեան իմոյ, արձա-

նույն ստացավ իրենց տոհմի տանուտերության և նահապետության պատիվը, իսկ Վաչեն լինում էր նրա երկրորդը:

Իր տերության պատվին ու փառքին հասնելուց հետո Մանուելը նախ և առաջ, առանց Վարազդատ թագավորի հրամանին, հափշտակեց զորավարության-սպարապետության պատիվը: Ինչ որ նրա նախնիք բուն սկզբից ունեին և ինչ որ Վարազդատ թագավորը (նրանցից խլելով) շնորհել էր իր դայակ Բատին՝ այդ իշխանությունը Մանուելը ետ խլեց իրեն համար: Իսկ այնուհետև Հայոց Մանուել սպարապետը պատգամ էր ուղարկում Վարազդատ թագավորին և ասում էր. «Մենք բոլոր տոհմով հին ժամանակներից ի վեր հավատարմությամբ ծառայել ենք ձեզ, Արշակունիներիդ, մեր կյանքը զոհել ենք ձեզ համար, ապրել ու մեռել ենք ձեզ համար: Մեր քոլորի հին նախնիքը պատերազմների մեջ ընկան ձեզ համար. Վասակը, Մուշեղի հայրը, կորավ Արշակ թագավորի համար, և մենք միշտ աշխատել ենք, չարչարվել ենք ձեր ցեղի թագավորության համար: Արդ՝ փոխանակ մեզ վարձատրելու մեր ծառայությունների համար՝ դուք, Արշակունիներդ, կոտորեցիք նրանց՝ որոնք թշնամիներից չմեռան ու կենդանի մնացին: Ահա իմ քաջ եղբայրը, Մուշեղը, որ մանկությունից ի վեր կյանքը ձեզ համար մաշեց, ձեր թշնամիներին կոտորեց ու վանեց և որին թշնամիները չկարողացան սպանել՝ դու բռնեցիր և սեղանի նստած տեղում խեղդեցիր: Բացի սրանից՝ դու Արշակունի էլ չես, այլ պոռնկությունից ես ծնվել, այդ պատճառով էլ Արշակունիների աշխատավորներին չճանաչեցիր: Մենք մինչև անգամ ձեր ծառաները (հպատակները) չենք, այլ ձեր ընկերներն ենք և ձեզանից ավելի բարձր, որովհետև մեր նախնիքը Ճենաց աշխարհի թագավորներն են եղել. և եղբայրների մեջ տեղի ունեցած տարաձայնության պատճառով, որպեսզի մեծ արյունհեղություն չլինի՝ այնտեղից հեռացել ենք և խաղաղ հանգստություն գտնելու համար եկել դադարել ենք (այստեղ)[205]: Առաջին Արշակունի թագավորները գիտեին, թե ովքե՞ր ենք մենք և ո՞րտեղացի ենք. բայց դու, որովհետև Արշակունի չես՝ հեռացի՛ր այս աշխարհից և իմ ձեռքից մի՛ մեռնիր»:

Իսկ Վարազդատ թագավորը պատասխան-պատգամ էր ուղարկում Մանուել զորավարին և ասում էր. «Ես իսկական Արշակունի եմ[206], որ իմ Արշակունի նախնիների թագը դրի և իմ նախորդների աշխարհին տիրեցի, և իմ հորեղբոր՝ Պապի վրեժն առա քո չարագործ եղբորից՝ Մուշեղից: Բայց դու որ այս աշխարհից չես՝ այդ դու ինքդ ասացիր, թե մենք Ճենաց աշխարհից ենք, այնտեղ ծագումով թագավոր ենք եղել և այստեղ եկել ենք իբրև պանդուխտներ: Ուրեմն մի՛ մեռնիր քո եղբոր (Մուշեղի) նման: Ես իմ բարերարությամբ քեզ արձակում եմ. ե՛լ ու

կեալ լիցի զքեզ. երբ գնա յերկիրն Ճենաց անց կեաց, և անդէն թագաւորեսջիր յերկրին քում: Ապա թէ ոչ կամիցիս գնալ, մեռանիս 'ի ձեռաց իմոց որպէս և Մուշեղն մեռաւ:

Իսկ յորժամ բազում անգամ երթեալք եկեալք պատգամաւորք՝ բազում խստագոյն քան զխստագոյն բանս կսկծանաց առ միմեանս յղէին, և յետ այսորիկ ժամադիր միմեանց լինէին՝ պատերազմաւ զմիմեանս տեսանել: Իսկ 'ի հասեալ 'ի ժամադիր ժամուն, եկեալ տային ընդ միմեանս պատերազմ: Եւ թագաւորն Վարազդատ առնոյր զզօրն իւրոյ բանակին, և գնայր հասանէր 'ի տեղի նակատուն, վառեալ կազմեալ պատրաստեալ 'ի պատերազմ. սոյնպէս և սա պատրաստագոյն քան զնոսա: Եւ Մանուէլ սպարապետն հասանէր իւրով գնդաւն 'ի նոյն տեղի. և 'ի դաշտին Կարնոյ լինէին խառնուրդք երկոցունց գնդաց ընդ միմեանս բախելոցն:

Թագաւորն Վարազդատ և սպարապետն Մանուէլ զնիզակս առեալ, միմեանց յարձակեալ ախոյեանք ելանէին: Իբրև զաչս 'ի վեր ամբառնայր արքայն Վարազդատ, և նայէր ընդ գալն իւր և տեսանէր զսպարապետն Մանուէլն 'ի մեծութենէն հասակին և 'ի շքեղութենէ անձինն, և յամրակուռ յերկաթապատ յոտիցն մինչև ցգլուխն առ հասարակ յանվթար զինէն, 'ի հաստամեստ յանձնէն, և 'ի հաստատուն երիվարէն և յասպազէն[56] վառելոյն յանշարժ սպառազինէն, հարմարեցաւ կշռեաց զնա 'ի միտս իւր իբրև զլեառն մի բարձր զանմատոյց: Սակայն ածեալ զմահ ընդ միտս, յարձակեցաւ. զի այնուհետև չունէր ակն անձինն ապրելոյ:, Սակայն զի մանուկ մարդ էր արքայն Վարազդատ, իբրև ետես զնա այնպէս զի չէր ինչ կռուոյ տեղեակ, էած զմտաւ թէ 'ի զրահսն ոչ ինչ կարիցէ նիզակ գործել, առ ձեռաց կորովութիւնն զնիզակն ընդ բերան արկանէր զօրավարին Մանուէլի: Իսկ Մանուէլ բուռն հարկանէր զնիզակէն. հանեալ 'ի նմանէ զնիզակատէգն՝ ընդ իւր թուրծն հանէր, և բազում զիւր թափէր զատամունսն, զնիզակն յինքն հանէր յարքայէն:

Եւ արքայն Վարազդատ 'ի փախուստ դառնայր յերեսաց զօրավարին Մանուէլի. և անդէն Մանուէլ զտէգ նիզակին 'ի ձեռին կալեալ, և նիզակաւն 'ի կառափն մատուցեալ ծեծէր զարքայն Վարազդատ. այնպէս տանէր իբրև ասպարէզս չորս: Եւ անդէն որդիքն Մանուէլի յարձակեցան մէն մի նիզակ 'ի ձեռն, Հմայեակն և Արտաշէսն, սպանանել զարքայն: Ինքն իսկ Մանուէլ աղաղակէր զկնի որդւոցն իւրոց, և ասէր. Ա՛յ մի՛ լինիք տիրասպանուք: Եւ նոցա լուեալ զձայն հօրն, վաղվաղակի արագ արագ դառնային 'ի նմանէ. և 'ի պարտութիւն մատնեցաւ այն օր զունդն արքունական առաջի մանուէլեան գնդին:

գնա՛ Չենաց աշխարհը, այնտեղ, քո երկրում ապրի՛ր ու թագավորի՛ր: Իսկ եթե չես կամենա գնալ՝ իմ ձեռքից կմեռնես, ինչպես Մուշեղը մեռավ»:

Երբ շատ անգամ պատգամավորները գնացին եկան, և ավելի ու ավելի խիստ ու վիրավորական խոսքեր իրար ուղարկեցին՝ ապա ժամ էին նշանակում պատերազմով իրար հանդիպելու: Նշանակված ժամին եկան հասան ու պատերազմ սկսեցին իրար հետ: Վարազդատ թագավորն առնում էր իր զորքի բանակն ու գալիս հասնում էր նախատամարտի տեղը, լավ սպառազինված ու պատերազմի պատրաստ: Եվ Մանուել սպարապետն, ավելի մեծ պատրաստությամբ, իր գնդով նույն տեղն էր հասնում, և Կարինի դաշտում երկու կողմերի գնդերն ընդհարվում էին:

Վարազդատ թագավորը և Մանուել սպարապետը, նիզակները ձեռքերին, դուրս էին գալիս իրար դեմ ախոյաններ: Երբ Վարազդատ թագավորը, գալու ժամանակ, աչքերը վեր բարձրացրեց ու Մանուել սպարապետին տեսավ ու նկատեց նրա հասակի մեծությունը, անձի շքեղությունը, նրա ոտքից մինչև գլուխ երկաթապատ ամրակուռ և անխոցելի զինավորությունը, պինդ կազմվածքը, ուժեղ երիվարը, երիվարի անդրդվելի սպառազինությունը՝ իր մտքում նրան համեմատեց մի բարձր անմատույց լեռան հետ: Բայց մահը աչքն առնելով՝ հարձակվեց. որովհետև փրկության ուրիշ հույս չուներ: Բայց որովհետև Վարազդատ թագավորը մանուկ մարդ էր և կռվի շատ տեղյակ չէր՝ նրան այնպես տեսնելով կարծեց, թե նրա զրահներին նիզակը չի կարող ազդել, ուստի իր ձեռքի ամբողջ ուժով նիզակով Մանուել զորավարի բերանին խփեց. իսկ Մանուելը բռնեց նիզակից, նրանից տեգը պոկելով իր բշովն անց կացրեց, որի ժամանակ շատ ատամներ կորցրեց, և նիզակը թագավորի ձեռքից խլեց:

Եվ Վարազդատ թագավորը փախուստի դիմեց Մանուել զորավարի առաջ. իսկ Մանուելը նրան հասնելով նիզակի տեգը ձեռքին բռնած՝ նիզակի կոթովը ծեծում էր Վարազդատ թագավորի կառափը, և այսպես քշում էր չորս ասպարեզ[207]:

Իսկույն Մանուելի որդիքը, Համազասպն ու Արտաշեսը, վրա հասան, նիզակները ձեռներին, որ թագավորին սպանեն: Իսկ ինքը Մանուելը որդոց ետևից աղաղակում էր. «Ա՛յ, տիրասպան մի՛ լինեք»: Նրանք էլ իրենց հոր ձայնը լսելով՝ իսկույն արագ հեռացան թագավորից:

Այդ օրը արքայական զունդը պարտություն կրեց Մանուելի գնդ-

Ոչ ինչ այնուհետև սակաւ սպանեալք անկանէին ընդ երեսս դաշտին, բազում խոցք և խեղք վիրաւորք. և բազում նախարարք սատակեցան բազում փախստեայք հալածականք լինէին: Մինչ դեռ զունդն մանուէլեան էին զկնի փախստէիցն, և զայր հասանէր Համազասպեան սեպուհ մ' 'ի Մամիկոնեան տոհմէն, անցանէր առ անկելովք դիակամքն և առ խոց վիրաւորօքն պատերազմին. և ընդ նոսին ընկեցեալ էր և զԳարեգին, տէր զաւառին Ռշտունեաց. բայց ողջ կայր, զի ոչ խոց էր և ոչ վնասեալ ինչ: Այս Գարեգին փեսայ լեալ էր յառաջ նորին Համազասպէի, զքոյր նորին Համազասպուհի անուն ունէր կին: Եւ իբրև եկն թագաւորն Շապուհ յերկիրն Հայոց. սա եթող զկինն իւր և փախեաւ: Ապա տարան զՀամազասպուհի յերկիրն Տոսպայ, 'ի քաղաքն 'ի Վան. հանեալ կախեցին զնա պարսիկքն զբարձր աշտարակացն՝ որ կայր 'ի վերայ քարանձաւին, 'ի կախաղանի սպանին զնա:

Իսկ յայնմ աւուր իբրև անկեալ կայր այն Գարեգին 'ի մէջ անկելոցն, եկն Համազասպ աներ նորուն անցանել առ նոքօք: Աղաղակեաց Գարէգինն, և ասէ. Տէր Համազասպեան, և զիս տես. հրաման տուր նժոյգ մատուցանել, թող հեծայց: Եւ ասէ ցնա Համազասպեան. Ո՞վ ես դու: Եւ ասէ. Ես եմ Գարէգին Ռշտունի: Եւ ետ հրաման Համազասպեան վահանաւորացն, որ ընդ նմա էին, ասէ. Իջէք և դիք զվահանսդ 'ի վերայ նորա, և պահեցէք: Եւ ինքն էանց. ապա իջին վահանաւորքն եդեալք զվահանսն 'ի վերայ, և կային պահէին ըստ հրամանի տուելոյն:

Ապա յետ այսորիկ զայր Դատուն ոմն զամապետ սպարակրացն զնդին մանուէլեան զօրացն, ետես զի իջեալ էին վահանաւորք 'ի վերայ, և զԳարէգինն պահէին. եհարց ցնոսա՝ թէ ո՞վ է այդ, և դուք հի՞մ իջեալ կայք յայդմ տեղւոջ: Ասեն նոքա՝ թէ սա Գարէգին ըՌշտունեաց տէր է. և մեզ հրաման ետ Համազասպեան, իջանել պահել զսա: Եւ մեծաւ ցասմամբ զայրանալով՝ 'ի բարկութիւն մեծ բորբոքէր Դատունն, և ասէր. Արդ ուրեմն վերստին կամի Համազասպեան զսա իւր փեսայ առնել. և զՀամազասպուհի զքոյր իւր տալ սմա կնութեան. վասն այսորիկ անխայեաց 'ի դա, պահել հրամայէր: Եւ անդէն ոտն ածեալ էջ 'ի ձիոյն, եհան զթուրն, մատուցեալ 'ի նա՝ պատառ պատառ կոտորեալ, անդէն ցրեալ սատակեաց զնա:

Իսկ այլ զօրքն ամենայն դեռ զային 'ի կոտորածոյն, զբազումս ձերբակալ արարեալ. և կալեալ ածէին և զԹատն, արքային Վարազդատայ զքուն, զսպանօղն Մուշեղի, կալեալ իւր որդւովն առաջի սպարապետին Մանուէլի, և զայլս՝ որք միանգամայն գործոց սատարք լեալ էին՝ ըմբռնէին զամենեսեան, առ նա ածէին: Եւ մեծաւ դատաս-

դից: Ոչ սակավ սպանվածներ ընկած էին դաշտի վրա. շատերը խոցված, ճաշմացած, վիրավորված. շատ նախարարներ կոտորվեցին և շատերն էլ ճալածվելով փախուստի դիմեցին:

Մինչ Մանուելի գունդը փախստականների ետևիցն էր ընկել՝ մի սեպուհ Մամիկոնյան տոհմից, Համազասպյան անունով, գալիս անցնում էր ընկած դիակների և խոցված վիրավորների մոտով: Սրանց մեջ էր գտնվում և Գարեգինը, Ռշտունյաց տերը, որ ընկած էր գետին, բայց ողջ էր, ո՛չ խոցված և ոչ վնասված: Այս Գարեգինը առաջ Համազասպյանի փեսան էր, կին էր առել նրա Համազասպուհի քույրը. երբ Պարսից Շապուհ թագավորը եկել էր Հայոց աշխարհը՝ նա քաղել էր իր կինն ու փախել: Հետո Համազասպուհուն տարան Տոսպ գավառը, Վան քաղաքը, և այնտեղ պարսիկները նրան կախեցին բարձր աշտարակից, որ ժայռի վրա էր շինված. և այսպես կախած սպանեցին:

Նույն օրը՝ մինչ Գարեգինն ընկած էր մյուս ընկածների մեջ՝ նրա աներորդին Համազասպյանն[208] եկավ նրանց մոտով անցնելու: Գարեգինը ձայն տվեց նրան. «Տեր Համազասպյան, ինձ էլ օգնիր, հրաման տուր ձի բերել ինձ որ հեծնեմ»: Համազասպյանը հարցրեց. «Ո՞վ ես դու»: Նա ասաց. «Ես Գարեգին Ռշտունին եմ»: Համազասպյանը հրամայեց իր հետ եղած վահանավորներին, թե «Իջե՛ք, վահանների վրան դրեք ու պահպանեցեք»: Իրենք գնաց, իսկ վահանավորները ձիերից իջան, վահանները նրա վրա դրին և կանգնել պահպանում էին, ինչպես հրամայվեց: Այս ժամանակ գալիս էր Դանուն անունով մեկը, որ Մանուելի զորքի ասպարակիր զենքի խմբապետն էր[209]. տեսավ որ վահանավորները իջել՝ պահպանում էին Գարեգինին: Հարցրեց. «Ո՞վ է դա և ինչո՞ւ դուք իջել կանգնել եք այդտեղ»: Նրանք ասացին. «Սա Գարեգինն է, Ռշտունյաց տերը, և մեզ Համազասպյանը հրամայեց՝ իջնել ու սրան պահպանել»: Դանունը սաստիկ բարկացավ, զայրույթից կատաղած ասաց. «Համազասպյանը գուցե ուզում է նորից դրան իրեն փեսա դարձնել և իր՝ Համազասպուհի քույրը դրան կնության տալ, որա համար դրան խնայեց, հրամայեց պահպանել»: Եվ իսկույն ոտք նետեց, ձիուց իջավ, քուրը հանեց, մոտեցավ նրան, կտոր-կտոր կտրատեց, գրվեց սատկեցրեց:

Իսկ մյուս զորքերը դեռ գալիս էին կոտորածից, շատերին ձերբակալ արած: Բռնել էին նաև Բատին, Վարազդատ թագավորի քուռին ու Մուշեղին սպանողին, և նրա որդուն, որոնց բերին Մանուելի առաջ, նույնպես և բոլոր նրանց, որոնք (Մուշեղի սպանության) գործին նպաստել էին՝ բռնեցին, Մանուելի առաջ բերին: Եվ Մանուել սպարապետը շատ

տանօք դառեցաւ զանօրէնն Բատ սպարապետն Մանուէլ: Բայց նախ յանդիման նմա հրամայէր փողոտել զորդին նորա, ապա յետոյ զնա գլխատել. և զայլսն կոտորեաց ըստ նմին օրինակի: Եւ զթագաւորն Վարազդատ հալածեցին. 'ի յերկրէն 'ի սահմանացն Հայոց. չոգաւ գնաց 'ի յերկիրն Յունաց. անդ եկաց որչափ և եկեաց, և անդէն մեռաւ:

Եւ սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ նուաճեաց զաշխարհս, և զամենայն մեծամեծս և զնախարարսն Հայոց առ ինքն ժողովէր. և էր նա առաջնորդ և գլուխ նոցա. և վարէր զիւր իշխանութիւնն, և տայր հրաման աշխարհի փոխանակ թագաւորի. և ունէր զաշխարհ 'ի շինութեան: Եւ զկինն Պապայ արքայի զԶարմանդուխտ տիկին, հանդերձ որդւովք Արշակունովք, առեալ զնոսա՝ 'ի տեղի թագաւորի կալեալ 'ի պատիւ շրջեցուցանէր: Մեծաւ իմաստութեամբ և բազում յաջողութեամբ աշխարհին Հայոց մեծապէս առաջնորդէր, որչափ եկաց ժամանակս: Բայց անուանք պատանեկացն Արշակունեացն, անուն երիցուն՝ Արշակ, և կրտսերուն Վաղարշակ: Զնոսա առեալ Մանուէլն սպարապետն իբրև զսան սնուցանէր, և զմայրն նոցա զԶարմանդուխտ 'ի մեծի չքի տիկնութեան պատուէր: Բայց յորժամ տեսանէր Մանուէլն զոր ինչ գործեացն ընդդէմ էր հրամանաց թագաւորին Յունաց, ածեալ զմտաւ իւրով՝ թէ արժան է նմա զէք զմի ոք թիկունս առնել նմա, ապա խորհեցան խորհուրդ ընդ տիկնոջն, և կամեցաւ թիկունս առնել զարքայն Յունաց:

## ԼԸ

### ՅԱՂԱԳՍ ԵԹԷ ԶԻԱ՛ՐԴ ՍՊԱՐԱՊԵՏՆ ՀԱՅՈՑ ՄԱՆՈՒԷԼ, ՀԱՆԴԵՐՁ ԱՄԵՆԱՅՆ ԱՇԽԱՐՀԱՒՆ ՀԱՅՈՑ, ԶԵՌՆ ԵՏ 'Ի ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՐՍԻՑ. ԵՒ ՄԱՐԶՊԱՆ ԵՒ ԱՇԽԱՐՀԱԿԱԼ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ ԶԱՌԱՋԻՆՆ ԱԾ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՊԱՐՍԻՑ ԶՍՈՒՐԷՆ, ԵՒ ՄԵԾԱՒ ՊԱՐԳԵՒՕՔ ՄԵԾԱՐԵՑԱՒ 'Ի ՆՄԱՆԷ. ԵՒ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ՅԵՏՈՅ ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹԵԱՄԲ ՄԵՐՈՒԺԱՆԱՅ ԱՐԾՐՈՒՆԻՈՅ ԵՂԵՒ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԻՒՆ, ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՆՔ ՅՈՒԶԵՑԱՆ

Ապա հետ այսորիկ առաքեցին Զարմանդուխտ տիկինն Հայոց և սպարապետն Մանուէլ զԳարջոյլ Մաղխազ, և ընդ նմա զբազումս 'ի նախարարացն Հայոց, հրովարտակօք ընծայիւք և պատարագօք առ թագաւորն Պարսից, զի 'ի նա ձեռս տայցեն և զնա պաշտիցեն, և նմա միամտութեամբ ծառայեսցեն, և տայցեն նմա զաշխարհս Հայոց: Եւ չոգան հասին Գարջոյլն, և որք ընդ նմայն էին, 'ի դուռն թագաւորին Պարսից. մատուցին նմա զհրովարտակսն զտիկնոջն և զսպարապե-

խիստ դատաստանով դատեց անօրեն Բատին: Բայց նախ հրամայեց՝ նրա աչքի առաջ մորթել նրա որդուն, ապա և նրան գլխատել. մյուսներին էլ նույն կերպ կոտորեց: Իսկ Վարազդատ թագավորին հալածեցին Հայոց աշխարհի սահմաններից դուրս: Նա գնաց Հունաց աշխարհը, այնտեղ էլ ապրեց, այնտեղ էլ մեռավ:

Իսկ Հայոց զորավար սպարապետ Մանուելը աշխարհը նվաճեց, Հայոց բոլոր մեծամեծներին ու նախարարներին իր մոտ ժողովեց, ինքը նրանց առաջնորդ և գլուխ եղավ և վարում էր իր իշխանությունը: Աշխարհին հրամաններ էր արձակում թագավորի փոխանակ և աշխարհը չեն էր պահում: Եվ Պապ թագավորի կնոջ, Զարմանդուխտ տիկնոջ և նրա Արշակունի որդոց իբրև թագավոր էր պահում և շրջեցնում էր պատվով: Մեծ իմաստությամբ և մեծ աջողությամբ խելացի կերպով առաջնորդում էր Հայոց աշխարհին՝ որքան ժամանակ որ ապրում էր: Արշակունի պատանիների անուններն էին՝ մեծինը Արշակ, փոքրինը Վաղարշակ: Մանուել սպարապետը նրանց սնուցանում էր իբրև սաներ, իսկ նրանց Զարմանդուխտ մորը մեծապես պատվում էր իբրև տիկնոջ:

Բայց Մանուելը տեսնում էր, թե իր արածը հակառակ էր Հունաց թագավորի հրամանին. մտածում էր, թե պետք է որևէ մեկին իրենց թիկունք ունենալ. ուստի տիկնոջ հետ խորհուրդ անելով որոշեցին իրենց թիկունք անել Պարսից[210] թագավորին:

## ԼԸ

### ԹԵ ԻՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ՄԱՆՈՒԵԼ ՍՊԱՐԱՊԵՏԸ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՐՀԻ ՀԵՏ ՁԵՌՔ ՄԵԿՆԵՑ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ԵՎ ՍԿԶԲՈՒՄ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՄԱՐԶՊԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐԻՉ ԲԵՐԵՑ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ ՍՈՒՐԵՆԻՆ ԵՎ ՄԵԾԱՄԵԾ ՊԱՐԳԵՎՆԵՐ ՍՏԱՑԱՎ ՆՐԱՆԻՑ, ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՄԵՐՈՒԺԱՆ ԱՐԾՐՈՒՆՈՒ ԽՈՐՄԱՆԿՈՒԹՅԱՄԲ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆ ԾԱԳԵՑ ԵՎ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ ԱՌԱՋ ԵԿԱՆ

Սրանից հետո Հայոց Զարմանդուխտ տիկինը և Մանուել սպարապետը Պարսից թագավորի մոտ ուղարկեց Գարջույլ Մաղխազին ուրիշ շատ հայ նախարարների հետ, հրովարտակներով, ընծաներով ու նվերներով, (խոստանալով) նրան ձեռք մեկնել, նրան հպատակվել և հավատարմությամբ նրան ծառայել և Հայոց աշխարհը նրան տալ: Գարջույլը և նրա հետ եղողները հասան Պարսից թագավորի դուռը, մատուցին տիկնոջ և Հայոց սպարապետի հրովարտակները և նրան հաղորդեցին

տին Հայոց, և ետուն նմա զյղեալ պատգամսն հնազանդութեան: Եւ յորժամ եսես զնոսա թագաւորն Պարսից. մեծաւ խնդութեամբ ընկալեալ զնոսա, և մեծապէս մեծարանօք պատուեաց զնոսա, և մեծաւ պարգևաւ առնէր զԳարշոյլն:

Եւ ընդ նմա առաքէր յերկիրն Հայոց զՍուրէն պարսիկ մի նոխ 'ի նախարարացն իւրոց. և ընդ նմա յղեաց տասն հազար հեծեալս վառեալս սպառազէնս, զի երթիցէ Սուրէն յաշխարհն Հայոց 'ի թիկունս օգնականութեան զօրավարին Մանուէլի, և պահել 'ի թշնամեաց զտիկինն զԶարմանդուխտ: Եւ ետ թագաւորն Պարսից տանել 'ի ձեռն Սուրենայ թագ և պատմուճան, և զվառ թագաւորացն տիկնոջն Զարմանդըխտոյ, և թագս մանկանցն որդւոցն երկոցունց Արշակայ և Վաղարշակայն: Զոյն և սպարապետին Մանուէլի սոյնպէս ետ տանել զթագաւորական պատմուճանն, սամոյր մ' և զգլխոյ պատիւ զարգմանակ ոսկի արծաթ, ու 'ի պատիւ գլխոյ 'ի վերայ զագաթանն 'ի թիկանց արծուոյն՝ հանգոյցք թագի կապեալ աշխարաւանդ հանգոյց. և յանչափ պատիւ՝ ապիզակ, որպէս օրէնք են ունել թագաւորաց. և չիկակարմիր խորան, և 'ի վերայ խորանին արծուի նշան, և սրահակս մեծամեծ և կապուտակ երկնագոյն հովանոցս: Եւ ոսկի սպաս տանարին առաքէր սպարապետին Մանուէլի. և տայր նմա յիւրմէ ձեռանէ իշխանութիւն մեծ 'ի վերայ աշխարհին Հայոց:

Եւ եկն եհաս Գարշոյլն խորխոռունի յերկիրն Հայոց. և էած զՍուրէն պարսիկ, տասն հազարաւն: Եկին բերին զպարգևսն տիկնոջն և մանկանց նորա. սոյնպէս սպարապետին Մանուէլի. ունէին պարգևս իւրաքանչիւր աւագացն, և տանուտէրացն իւրաքանչիւր մեծամեծացն Հայոց: Եւ յորժամ տեսանէին զմեծարանսն և զսէր թագաւորին Պարսից, տիկինն Զարմանդուխտ և սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ մեծաւ խնդութեամբ մեծարէին զՍուրէնն: Տային զաշխարհն Հայոց 'ի ձեռն Սուրենայ, և հնազանդէին հրամանաց թագաւորին Պարսից. և կարգէին թագաւորին Պարսից յաշխարհէն Հայոց հարկս՝ տալ ընծայս և պատարագս: Սոյնպէս և մարզպանին Սուրենայ հասս և կօշիկս և զպիտոյս[57] զռոճկացն. սոյնպէս և տասն հազարացն ղարման և կերակուր ըստ պիտոյիցն: Եւ սրտի մտօք արարին իւրեանց թիկունս. և՛ տէր զտեալ իւրեանց զարքայն Պարսից, և կային 'ի ծառայութեան նորա. և ստէպ ստէպ դեսպանք թագաւորին Պարսից երթային և գային յերկիրն Հայոց. և մեծապէս զմտերմութիւն միամտութեանն, որ էրն, ցուցանէին թագաւորին. և ստէպ առաքէր պարգևս տիկնոջն Զարմանդխտոյն. սոյնպէս և զօրավարին Հայոց Մանուէլի: Յոյժ մտերիմ և սիրելի լինէր Մանուէլ թագաւորին Պարսից և մեծա-

հնազանդության վերաբերյալ պատգամը: Պարսից թագավորը երբ նրանց տեսավ՝ մեծ ուրախությամբ նրանց ընդունեց, մեծ հարգանքներով պատվեց և մեծ պարգևներ շնորհեց Գարշույլին:

Նրա հետ (թագավորը) Հայոց աշխարհն էր ուղարկում պարսիկ Սուրենին, իր նոր նախարարներից մեկին, և նրա հետ տասը հազար լավ սպառազինված ձիավոր զորք, (պատվիրելով) որ Սուրենը Հայոց աշխարհը գա իբրև թիկունք Մանուել սպարապետին՝ Զարմանդուխտ տիկնոջը թշնամիներից պաշտպանելու համար: Եվ Պարսից թագավորը Սուրենի ձեռքով Զարմանդուխտ տիկնոջ համար ուղարկեց թագ և պատմուճան և թագավորական վառ[211], և երկու մանուկների՝ Արշակի և Վաղարշակի համար թագեր: Նույնպես Մանուել սպարապետի համար ուղարկեց թագավորական պատմուճան, մի սամույր և գլխի պատիվ՝ ոսկուց և արծաթից շինած զարդմանակ, և գլխի պատվի վրա, գագաթում, արծիվի ետևից, թագի կապը՝ աշխարհավանդ հանգույցը (թանտը), և կուրծքին պատիվ՝ ապիզակ, ինչպիսին կրում են թագավորները, նաև չիկակարմիր խորան, խորանի վրա արծվի նշան, և մեծամեծ սրահակներ ու կապուտակ երկնագույն հովանոցներ: Նաև սեղանի ոսկի սպաս էր ուղարկում Մանուել Սպարապետին և անձնապես իր կողմից մեծ իշխանություն էր տալիս նրան Հայոց աշխարհի վրա:

Եվ Գարշույլ Խորխոռունին եկավ Հայոց աշխարհը, հետը բերելով Սուրենին տասը հազար զորքով: Բերին պարգևները տիկնոջ և նրա երեխաների համար, ինչպես և Մանուել սպարապետի համար: Այսպես նաև բերել էին պարգևներ Հայոց ամեն մի ավագի, բոլոր տանուտերների և մեծամեծների համար: Եվ երբ Զարմանդուխտ տիկինը և Հայոց զորավար սպարապետ Մանուելը տեսնում էին Պարսից թագավորի ցույց տված այս սերն ու մեծարանքները՝ մեծ ուրախությամբ պատվում էին Սուրենին: Հայոց աշխարհը հանձնեցին Սուրենի ձեռքը և հնազանդում էին Պարսից թագավորի հրամաններին, սահմանում էին Հայոց աշխարհից Պարսից թագավորին հարկ տալ, ընծաներ ու նվերներ[212]: Նույնպես և Սուրեն մարզպանին նշանակեցին հասույթներ, ռոճիկ[213] և պարուստի մթերքներ, այնպես և տասը հազարին դարման և կերակուր՝ որքան պետք էր: Եվ անկեղծ սրտով նրանք իրենց թիկունք ու տեր դարձրին Պարսից թագավորին և նրա ծառայության մեջ էին գտնվում: Հաճախակի Պարսից թագավորի դեսպանները գնում գալիս էին Հայոց աշխարհը. սրանք էլ ցույց էին տալիս թագավորին իրենց մտերմությունն ու հավատարմությունը, և հաճախ թագավորը պարգևներ էր ուղարկում Զարմանդուխտ տիկնոջը և Հայոց Մանուել զորավարին, և

պէս փառաւորեալ աւագանայր 'ի նմանէին: Եւ Մերուժանն Արծրունի իբրև տեսանէր զայն ամենայն փառս աւագութեան, որովք շքեղացոյց զՄանուէլ արքայն Պարսից, զի որպէս զեղբայր կամ զորդի այնպէս պատուեաց զնա. յոյժ նախանձէր նա ընդ փառսն Մանուէլի. և խնդրէր նա հնարս հնարել, հանել զնա յաչաց թագաւորին Պարսից. զի փոխանակ նորա ինքն լիցի սիրելի: Եւ իբրև այլ հնարս ինչ ոչ կարէր գտանել դուրս նենգութեանցն առ Պարսիկս, ընդ որ մտցէ, ապա խորհեցաւ նա ընդ միտս իւր զնենգութիւն չար, և կեղծաւորութեամբն իւրով զգործ իւր յառաջացոյց: Զի իբրև նա յեցաւ 'ի միամտութիւն զօրավարին Մանուէլի, սկսաւ նախ հպատակութեամբ զմիտսն գողանալ. նախ մտերմութեամբ հանել զմիտս նորա. ապա զանձն իւր հոգածու և խնամակալ երևեցուցանէր նմա. ապա եկեալ գուշակութիւն առնէր նմա սուտ 'ի քմաց իւրոց՝ թէ գիտասջիր դու, ո՛ Մանուէլ, զի դեսպան լեալ է յարքայէն Պարսից. յաղագս քո բերեալ ունին հրաման առ Սուրէնն, զի զքեզ կալցին կապեսցեն. կամ աստէն սպանցեն, կամ ոտիւք և ձեռօք և պարանոցաւ կապելով մեծաւ զգուշութեամբ տանել առ թագաւորն Պարսից: Արդ դուն գիտա՛, տե՛ս խորհեաց ընդ միտս քո թէ զինչ գործեսցես: Եւ եղև յորժամ լուաւ զայս Մանուէլ, կայր զարմացեալ հիացեալ ընդ միտս իւր. և ասէր թէ չիք իմ յանցուցեալ առ պարսիկս, է՞ր աղագաւ զայն առնիցէ ընդ մեզ: Եւ ասէ Մերուժանն զՄանուէլ. Ես ճշգրտեցի և հաստատեցի, զի իրք այդ ստոյգ են. ես մեծաւ սիրով և հոգաբարձութեամբ գուշակ եղէ քեզ: Իսկ իբրև հաւատաց բանին Մերուժանայ Մանուէլն. և կարծեաց 'ի միտս իւր թէ ստոյգ են բանքն այն զոր լուաւ, ապա գունդ կազմեաց, և զօր բազում առ ինքն կուտեաց զօրավարն Հայոց Մանուէլ: Եւ մինչ դեռ խաղաղութեամբ Սուրէնն իւրով բանակաւն բանակեալ էր յանհոգս յանկարծս և աննենգ խաղաղութեամբ, իբրև ոչ ինչ գոյր 'ի մէջ նոցա նենգութիւն դաւաճանութեան ըստ համբաւահան չարագործն Մերուժանայ, յանկարծօրէն յեղակարծումն զօրավարն Հայոց Մանուէլ հասանէր անկանէր 'ի վերայ բանակին Սուրենայ, և զտասն հազարսն զպարսիկսն միանգամայն կոտորէր: Բայց զմարզպան Սուրէնն միայն արձակէր, շնորհել զարևն իւր՝ պարգև արարեալ: Եւ զարմացեալ Սուրէն ընդ իրսն ընդ այնոսիկ թէ ընդէ՞ր, է՞ր աղագաւ նա զայս արդեւք գործեաց. և ասէ Մանուէլ զՍուրէն. Զքեզ վասն բարեկամութեան սիրոյն արձակեալ, ողջանդամ երթիջիր զճանապարհս քո. այլ ես 'ի պարսկաց 'ի խափս այլ ոչ անկայց: Եւ ինքն Մանուէլ Հայոց զգունդն կազմէր, և զօրսն պատրաստէր. և գիտաց այնուհետև թէ մեծ թշնամութիւն յարոյց և մեծ գրգռութիւն ընդ թագաւորին Պարսից: Եւ յայնմ հետէ զօ-

Մանուելը շատ մտերիմ ու սիրելի դարձավ Պարսից թագավորին, որ նրան շատ փառավորեց ու բարձրացրեց:

Իսկ Մերուժան Արծրունին երբ տեսնում էր այս բոլոր փառքն ու պատիվները, որով Պարսից թագավորը Մանուելին շքեղացրեց,—որովհետև եղբոր նման, որդու նման նրան պատվեց,— շատ նախանձեցավ Մանուելի փառքին, և մի հնարք էր փնտրում՝ նրան Պարսից թագավորի աչքից հանելու, որպեսզի նրա փոխանակ ինքը դառնա սիրելի: Եվ երբ նա ոչ մի հնարք չգտավ, նենգության ոչ մի դուռ չգտավ պարսիկների մոտ մտնելու՝ ապա նա իր մտքում նենգության չար միջոց գտավ—իր մտադրությունը աջողեցրեց կեղծավորության միջոցով: Նա հույս դրեց Մանուել զորավարի միամտության վրա, ուստի նախ սկսեց անձնվիրությամբ նրա միտքը գողանալ, մտերմությամբ նրա խելքը հանեցրեց: Հետո գալով՝ իր գլխից հնարած սուտ լուր էր հաղորդում ու ասում. «Գիտցած եղիր, ո՛վ Մանուել, Պարսից թագավորից դեսպան է եկել, քո մասին հրաման են բերել Սուրենին, որ քեզ բռնեն ու կապեն, կամ այստեղ սպանեն, կամ ձեռք, ոտք ու պարանոց կապած մեծ զգուշությամբ տանեն Պարսից թագավորի մոտ: Հիմա դու գիտես. մտածի՛ր թե ի՛նչ պիտի անես»: Մանուելը երբ այս լսեց՝ ապշա՛ծ հիացած մնաց. «Ես պարսիկների դեմ ոչ մի հանցանք չեմ գործել, ասում էր, ուրեմն ինչո՞ւ նա այդպես բան պետք է մեզ անե»: Իսկ Մերուժանն ասում էր Մանուելին. «Ես ճշգրտեցի ու հաստատեցի, որ այդ բանը ճիշտ է, քեզ շատ սիրելուց ու վրադ հոգալուց այս լուրը քեզ գաղտնի հաղորդեցի»: Երբ Մանուելը Մերուժանի խոսքին հավատաց և համոզվեց, թե իր լսած բաները ստույգ են՝ ապա նա շատ զորք կուտակեց իր մոտ, Հայոց Մանուել զորավարը. զունդ կազմակերպեց, և մինչդեռ Սուրենը իր բանակով խաղաղ բնակել էր, միամիտ, անկասկած, անհոգ, աննենգ խաղաղությամբ, մինչդեռ չկար ոչ մի նենգություն ու դավաճանություն՝ ինչպես սուտ լուր էր տարածել չարագործ Մերուժանը՝ Հայոց Մանուել զորավարը հանկարծակի անսպասելի կերպով հասնում հարձակվում էր Սուրենի բանակի վրա և տասը հազար պարսիկներին ամբողջապես կոտորում էր: Բայց Սուրեն մարզպանին մի ձիով բաց էր թողնում որ գնա. նրա արեք նրան պարգև էր շնորհում: Սուրենը զարմացավ այս բանի վրա, թե ինչո՛ւ նա այդ արավ, և Մանուելը ասաց Սուրենին. «Քեզ իբրև բարեկամի սիրով արձակում եմ, ողջ առողջ գնա՝ քո ճանապարհդ, բայց ես այլևս պարսիկների բակարդի մեջ չեմ ընկնի»: Ինքը Մանուելը պատրաստում էր զորքերը, գնդեր էր կազմակերպում, որովհետև գիտեր որ մեծ թշնամություն ու գրգռումներ ծագեցրեց Պարսից թագավորի հետ: Այնուհետև Հայոց Մանուել զորա-

րավարն Հայոց Մանուէլ հանդերձ ամենայն գնդաւն զտիկին Զարմանդուխտ զկին թագաւորին Պապայ 'ի գլուխ առեալ, 'ի տեղի թագաւորացն շրջեցուցանէին. և ինքեանք կային 'ի մարտի պատերազմին յաղագս շինութեան աշխարհին Հայոց յամենայն կողմանց ընդ թշնամիս և ընդ սահմանակիցս, որ շուրջ զիւրեամբք էին, և աւելի զօրքն Պարսից զամենայն աւուրս կենաց իւրոց. բայց Մեռուժանն գնայր անդր առ թագաւորն Պարսից ամբաստան զՄանուէլէ:

## ԼԹ

### ՅԱՂԱԳՍ ԳՈՒՄԱՆԴ ՇԱՊՀՈՅ՝ ՈՐ ԱՌԱՔԵՑԱՒ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՊԱՐՍԻՑ ՏԱԼ ՊԱՏԵՐԱԶՄՍ ԸՆԴ ՀԱՅՍ, ԵՒ ՍԱՏԱԿԵՑԱՒ 'Ի ՄԱՆՈՒԷԼԷ ԶՕՐՕՔ ԻՒՐՈՎՔ ՀԱՆԴԵՐՁ

Ապա թագաւորն Պարսից արձակեաց 'ի վերայ Հայոց զԳումանդ Շապուհ քառասուն և ութ հազարաւ, գալ առնուլ աւերել զերկիրն. և եկին հասին նոքա մինչև 'ի սահմանսն Հայոց որ յԱտրպատական կուսէն էր: Ապա իբրև զայն լսէր զօրավարն Հայոց Մանուէլ, և գումարէր զզօրսն իւր ըստ բըռշապ ժամանակին որչափ և եկն 'ի ձեռն իւր՝ քսան հազար, և ճեպեաց Մանուէլ և եհաս ընդդէմ գնդին, և արկանէր 'ի սուր զզօրսն Պարսից. և զԳումանդ Շապուհն սպանանէր. և դարձեալ ելանէր մեծաւ յաղթութեամբ:

## Խ

### ՅԱՂԱԳՍ ՎԱՐԱԶԱՅ ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԿԱՄ ԶԻԱ՛ՐԴ ԱՌԱՔԵՑԱՒ 'Ի ԹԱԳԱՒՈՐԷՆ ՊԱՐՍԻՑ, ԵՒ ՍԱՏԱԿԵՑԱՒ 'Ի ՄԱՆՈՒԷԼԷ ԻԲՐԵՒ ԶԱՌԱՋԻՆՆ

Ապա յետ այսորիկ Վարազ ոմն զօրավար թագաւորին Պարսից գայր հասանէր ութուտասն բիւրու յերկիրն Հայոց, տալ պատերազմ ընդ Մանուէլի ընդ սպարապետին, և ընդ ամենայն գնդին Հայոց: Ապա կազմէր պատրաստէր սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ հեծեալս սպառազէնս տասն հազար, և եկեալ տայր պատերազմ ընդ Վարազայ: Հարկանէր և սատակէր, ջնջէր զնոսա 'ի միջոյ. և գլխովին զՎարազն սպանանէր. թափէր զկապուտ սաստիկ, զզարդ և զզէն զօրացն, և դառնայր մեծաւ խաղաղութեամբ:

վարը բոլոր զնդերով իբրև թագավոր շրջեցնում էր տիկին Զարմանդուխտին, Պապ թագավորի կնոջը՝ իբրև պետ, և ինքը, աշխարհի շենության համար պատերազմներ էր մղում ամեն կողմից թշնամիների և իրենց շրջակա սահմանակիցների, մանավանդ Պարսից զորքերի դեմ իր կյանքի բոլոր օրերում: Իսկ Մերուժանը նորից գնում էր Պարսից թագավորի մոտ՝ Մանուելին ամբաստանելու համար:

## ԼԹ

### ԳՈՒՄԱՆԴ ՇԱՊՈՒՀԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՀԱՅԵՐԻ ՀԵՏ ՊԱՏԵՐԱԶՄԵԼՈՒ ԵՎ ԻՐ ԶՈՐՔԵՐԻ ՀԵՏ ՋԱՐԴՎԵՑ ՄԱՆՈՒԵԼԻՑ

Ապա Պարսից թագավորը Հայաստանի վրա արձակեց Գումանդ Շապուհին քառասուն և ութ հազար զորքով, որպեսզի գա, Երկիրն ավերի: Նրանք եկան հասան մինչև Հայաստանի սահմանը Ատրպատականի կողմից: Երբ այս լսեց Հայոց Մանուել զորավարը՝ գումարեց իր զորքը, որքան կարողացավ ձեռք բերել այդ խռովահույզ ժամանակում, քսան հազար մարդ, և շտապով գնաց (Պարսից) գնդի դեմ. Պարսից բոլոր զորքերը կոտորում էր սրով, Գումանդ Շապուհին էլ սպանում էր, և մեծ հաղթությամբ ետ էր դառնում:

## Խ

### ՎԱՐԱԶԻ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ԿՈՂՄԻՑ ԵՎ ՄԱՆՈՒԵԼԻՑ ՋԱՐԴՎԵՑ ԱՌԱՋԻՆԻ ՆՄԱՆ

Սրանից հետո Պարսից թագավորի մի զորավար Վարազ անունով Հայոց աշխարհն էր գալիս տասնևութ բյուրով՝ Մանուել սպարապետի և Հայոց բոլոր գնդերի հետ պատերազմելու համար: Ապա Հայոց զորավար սպարապետ Մանուելը կազմակերպում պատրաստում էր տասը հազար լավ սպառազինված հեծելազորք և գալիս պատերազմում էր Վարազի հետ: Ջարդում, կոտորում էր, բնաջինջ էր անում նրանց, Վարազին էլ նույնպես սպանում էր. մեծ կողոպուտ էր վերցնում—զորքերի զենքերն ու զարդերը— և մեծ խաղաղությամբ ետ էր դառնում:

## ԽԱ

### ՅԱՂԱԳՍ ՄՌԿԱՆԱՅ՝ ԶՈՐ ԱՌԱՔԵԱՑ ԴԱՐՁԵԱԼ ԹԱԳԱՒՈՐՆ ՊԱՐՍԻՑ 'Ի ՎԵՐԱՅ ԵՐԿՐԻՆ ՀԱՅՈՑ ԵՒ 'Ի ՎԵՐԱՅ ՄԱՆՈՒԷԼԻ ԶՕՐՕՔ ԲԱԶՄՕՔ, ԵՒ ՍԱՏԱԿԷՐ 'Ի ՄԱՆՈՒԷԼԷ ԻԲՐԵՒ ԶԱՌԱՋԻՆՆ

Եւ եղեւ յետ այսր ամենայնի առաքեաց թագաւորն Պարսից զՄռիկանն քառասուն բիւրու 'ի վերայ երկրին Հայոց: Եկն եհաս հանդերձ ամենայն բազմութեամբ զօրաց իւրոց յերկիրն Հայոց. և էառ զկողմն մի զերկիրն Հայոց. և բանակեալ էր յԱրտանդան դաշտին: Անկանէր 'ի վերայ բանակին Մանուէլն 'ի գիշերի, և անդէն առ հասարակ ընդ սուր հանէր զամենեսեան 'ի դակիշն, և զՄռկանն սպանանէր, և թափէր աւար բազում. և ոչ զմի ոչ ապրեցուցանէր 'ի նոցանէն:

## ԽԲ

### ՅԱՂԱԳՍ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԱՄՍ ԵՒԹՆ

Եւ յետ այսորիկ ամս եւթն, և այլ ոչ եւս յաւելին զօրքն Պարսից ժտել ինչ մտանել 'ի սահմանս Հայոց. և եղեւ խաղաղութիւն երկրին: Եւ ժողովեցան առ զօրավարն Մանուէլ ամենայն գրուեալք երկրին. եկին անկան այր յայր, և էին բանակեալ յանհոգս. և զօրավարն Հայոց Մանուէլ առաջնորդէր նոցա: Եկին ապա և մնացորդք 'ի տանէն Սիւնեաց պատանեակ երեք մնացեալք 'ի կոտորածէն Պարսից առ զօրավարն Հայոց Մանուէլ. և անուանք նոցա միումն Բաբիկ, և միւսումն Սամ, միւսումն Վաղինակ: Եւ ընկալաւ զնոսա զօրավարն Հայոց Մանուէլ. և եղեւ նոցա օգնական, և դարձ արար նոցա յերկիրն իւրեանց. և կացոյց տէր զԲաբիկ 'ի վերայ երկրին, և զերկուսն եւս ըստ իւրաքանչիւր չափու. և էր Բաբիկ նիզակակից զամենայն աւուրս կենաց նորա: Նոյնպէս յամենայն գաւառս կացուցանէր սպարապետն Հայոց Մանուէլ նահապետս և տեարս գաւառաց գաւառաց. և առաջնորդէր ամենեցուն խաղաղութեամբ: Եւ ամենայն երկիրն Հայոց 'ի խաղաղութեան ընդ հովանեաւն Մանուէլի զամենայն աւուրս կենաց նորա, ամենայն մարդիկ երկրին Հայոց վայելէին յաւուրս իւրեանց. ուտէին և ըմպէին և ուրախ լինէին զայն ամս եւթն տէրութեանն Մանուէլի, մինչև 'ի բաժանումն երկրին Հայոց և 'ի քակտումն թագաւորութեանն:

## ԽԱ

## ՄՈԿԱՆԻ ՄԱՍԻՆ, ՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԸ ԴԱՐՁՅԱԼ ՈՒՂԱՐԿԵՑ ՄԵԾ ԶՈՐՔՈՎ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ԵՎ ՄԱՆՈՒԵԼԻ ՎՐԱ, ԵՎ ՄԱՆՈՒԵԼԻՑ ՋԱՐԴՎԵՑ ԱՌԱՋԻՆՆԵՐԻ ՆՄԱՆ

Այս բոլորից հետո Պարսից թագավորը Հայոց աշխարհի վրա ուղարկեց Մոկանին քառասուն բյուրով: Նա իր զորքի բազմությամբ եկավ հասավ Հայոց աշխարհը և գրավելով աշխարհի մի կողմը՝ բանակ դրեց Արտանդան[214] դաշտում: Մանուելը գիշերով հարձակվում էր նրա բանակի վրա և հենց դակիշում բոլորին առհասարակ սրի էր քաշում, Մոկանին էլ սպանում էր: Շատ ավար էր խլում նրանցից, և ոչ մեկին կենդանի չէր թողնում:

## ԽԲ

## ՅՈԹԸ ՏԱՐԻ ՏԵՎՈՂ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Դրանից հետո յոթը տարի պարսիկներն այլևս չշարունակեցին Հայաստանի սահմանները մտնել, և երկիրը խաղաղացավ: Մանուել զորավարի մոտ ժողովվեցին երկրում ցրվածները, եկան մեկտեղացան, և անհոգ ապրում էին. և Հայոց Մանուել զորավարը նրանց առաջնորդում էր: Հետո եկան Մանուել զորավարի մոտ նաև Սյունյաց տոհմից մնացածները— երեք պատանի, որոնք պարսկական կոտորածից ազատվել էին, որոնցից մեկի անունն էր Բաբիկ, մյուսինը Սամ, երրորդինը Վաղինակ: Հայոց Մանուել զորավարը նրանց ընդունեց, նրանց օգնական դարձավ, նրանց իրենց երկիրն ուղարկեց, Բաբիկին նշանակեց այդ երկրի տեր, մյուս երկուսին էլ՝ յուրաքանչյուրին իր չափով, և Բաբիկը նրա նիզակակիցը դարձավ բոլոր նրա կյանքի ընթացքում· Նույնպես բոլոր գավառներում Հայոց Մանուել սպարապետը նշանակում էր նահապետներ և գավառների տերեր, և խաղաղությամբ կառավարում էր բոլորին: Եվ ամբողջ Հայոց աշխարհը ապրում էր խաղաղության մեջ Մանուելի հովանու տակ՝ որքան ժամանակ կենդանի էր նա: Բոլոր մարդիկ իրենց արևի ձենն էին ածում, ուտում, խմում, ուրախանում էին Մանուելի տերության այն յոթը տարիներում, մինչև Հայոց աշխարհի բաժանումը և թագավորության քանդումը:

## ԽԳ.

### ՅԱՂԱԳՍ ՄԵՐՈՒԺԱՆԱՅ ԱՐԾՐՈՒՆՈՅ, ՈՐ ՀԱՆԴԵՐՁ ԶՕՐՕՔ ԵԿՆ 'Ի ՎԵՐԱՅ ՄԱՆՈՒԷԼԻ, ԵՒ ՍԱՏԱԿԵՑԱՒ 'Ի ՆՄԱՆԷ

Ապա Մերուժանն Արծրունի վաղուց ևս յաւուրսն Արշակայ արքայի լեալ էր ապստամբ 'ի թագաւորէն Հայոց, ինքնակամ ձեռս տուեալ յարքայն Պարսից, և զօրէնս Մազդեզանցն յանձն առեալ էր, և ուրացեալ զհաւատսն քրիստոնէութեան հաւատոց, և բազում անգամ լեալ էր առաջնորդ զօրացն Պարսից, և մեծամեծ չարիս անցուցեալ էր ընդ երկիրն Հայոց. և տակաւին էր նա առ թագաւորին Պարսից: Ապա գրգռեաց Մերուժանս այս զթագաւորն Պարսից, և առեալ զօրս բազումս 'ի նմանէ, և եկն եհաս յերկիրս Հայոց: Եւ էր սորա մեծաւ պարծանօք պարծեցեալ առ թագաւորին Պարսից, զի կամ կալեալ կապեալ տարցի զՄանուէլն առ թագաւորն Պարսից, և կամ զգլուխն հատեալ՝ զառաջեաւ բերէ թագաւորին Պարսից:

Գայր հասանէր ամենայն բազմութեամբն զօրացն Պարսից յերկիրն Հայոց, և թողոյր զբանակ զօրացն Պարսից 'ի գաւառին Կորճէից, և ինքն իւրով սեփհականաւն գնդաւն հրոսիւն ժողովելով մեկնէր զատանէր յԱրեաց գնդէն: Կամէր յանպատրաստից գաղտ անկանել 'ի վերայ Մանուէլի, միայն անձամբ անուն առնուլ, և ինքեան միայն կատարել ջանայր, զի 'ի պարծանսն իւրոյ անձամբ վճարել զգործս պատերազմին: Վասն այսորիկ այսպիսի բանս խօսէր ընդ զօրավարսն Արեաց գնդին, և ասէր՝ եթէ ես նախ երթայց լրտեսեցից, և զձեզ տարեալ արարից 'ի վերայ, զի այսպէս դիւրաւ լիցի 'ի բուռն արկանել ըմբռնել: Եւ ինքն զիւր գունդն առեալ, խաղայր գայր հասանէր յերկիրն Կոգ գաւառի. և ինքն զտեղի առեալ, առնէր տես 'ի բանակն Մանուէլի:

Եւ գային հասանէին լրտեսքն, և գիտէին զՄանուէլ, զի էր բանակ նոցա 'ի Բագրաւանդ գաւառի 'ի Բագուան աւանի, որ է մօտ յաւերակսն Զարեհաւանդ քաղաքի: Եկին դիտեցին դէտքն զբանակն Մանուէլի, և զերամակ ձիոց բանակին յորում վայրի կային. և չոգան տարան զրոյց նմա: Եւ խորհեցաւ նա առնուլ զերամակ բանակին. այն ուշ առնէր, և խնդալից եղեալ՝ ասէր պարծելով առաջի իւրոց զօրացն, թէ վաղիւ յայս ժամ իմ կալեալ կապեալ ընկեցեալ զՄանուէլն, և յանդիման նմին զկին նորա Վարդանոյշ խայտառակեալ իցէ: Եւ չու արարեալ կատարել զգործն՝ յոր փութացեալ կամէր հասանել. և էին 'ի վայրսն՝ ընդ որ գալ էր գնդին ընդ ճանապարհն՝ լերինք ինչ,

## ՄԵՐՈՒԺԱՆ ԱՐԾՐՈՒՆՈՒ ՄԱՍԻՆ, ՈՐ ԶՈՐՔԵՐՈՎ ԵԿԱՎ ՄԱՆՈՒԵԼԻ ՎՐԱ ԵՎ ՆՐԱՆԻՑ ՍՊԱՆՎԵՑ

Իսկ Մերուժան Արծրունին վաղուց ի վեր, դեռ Արշակ թագավորի ժամանակ, ապստամբել էր Հայոց թագավորից, ինքնակամ ձեռք էր մեկնել Պարսից թագավորին, ընդունել էր մազդեզական կրոնը և ուրացել քրիստոնեական հավատը: Նա շատ անգամ առաջնորդ էր դարձել Պարսից զորքերին, մեծամեծ չարիքներ էր հասցրել Հայոց աշխարհին, և դեռ Պարսից թագավորի մոտ էր գտնվում: Անա այս Մերուժանը Պարսից թագավորին գրգռեց և նրանից շատ զորք առնելով եկավ հասավ Հայոց աշխարհը: Նա մեծապես պարծեցել էր Պարսից թագավորի առաջ, որ կամ Մանուելին բռնելով կապած կտանի Պարսից թագավորի մոտ և կամ գլուխը կտրելով նրան կներկայացնի:

Նա Պարսից զորքի բոլոր բազմությամբ գալիս հասնում էր Հայոց աշխարհը, Պարսից զորքի բանակը թողնում էր Կորճայք գավառում, իսկ ինքը իր սեփական գնդով, ժողոված հրոսակներով, անշտապում էր Արյաց գնդից: Նա միտքը դրել էր՝ գաղտնի, անսպասելի կերպով հարձակվել Մանուելի վրա, իրեն անուն վաստակել. շանք էր անում ինքը մենակ կատարել գործը, պատերազմի գործը անձամբ գլուխ բերել, որ իրեն պարծանք լինի: Այդ նպատակով նա այսպես խոսեց Արյաց գնդի զորավարների հետ. «Ես նախ կգնամ կլրտեսեմ, ասաց, հետո ձեզ կտանեմ նրանց վրա. այսպիսով հեշտ կլինի նրանց մեր բուռը ձգել, բռնել»: Ինքն իր գունդը առնելով շարժվում գալիս հասնում էր Կոգ գավառը, և ինքը այնտեղ կանգ առնելով՝ լրտեսներ էր ուղարկում Մանուելի բանակը:

Լրտեսները գալիս դիտում էին Մանուելին, որի բանակը գտնվում էր Բագրևանդ գավառում, Բագավան ավանում, Զարեհավանդի ամբարտակների մոտ: Լրտեսներն եկան դիտեցին Մանուելի բանակը, իմացան՝ ո՛րտեղ է գտնվում բանակի ձիերի երամակը, և գնացին յուր տարան նրան: Նա միտքը դրեց բանակի երամակը խլել: Այս մտքով սարքվելով՝ նա ուրախ ուրախ ու պարծենալով ասում էր իր զորքերին. «Վաղը այս ժամին ես Մանուելին բռնած կապած ու տապալած կլինեմ, և նրա աչքի առաջ նրա Վարդանուշ կնոջը խայտառակած»: Եվ շնչեց գնաց որ փութով կատարե, ինչ որ միտքը դրել էր:

Այդ տեղերում, որտեղով որ գնդի ճանապարհն ընկնում էր, կային

որում 'ի բնակչացն Եղջերք կոչեն: Եւ մինչ դեռ գայր Մեռուժանն 'ի ճանապարհի գնդաւն իւրով, դիպեցան նմա ուղեորք. յորս հարցանէր Մեռուժանն և ասէր. ճանապարհս 'ի Բագրաւանդ ընդ ո՞ր երթայ: Եւ ուղեորացն տուեալ պատասխանի, ասացին. Ճանապարհ ընդ Եղջերս է: Եւ մեծապէս խտրեաց Մեռուժանն ընդ միտս իւր. տրտմեցաւ ընդ բանսն, սակայն տայր հրաման չարաչար քարշել զուղեորսն և ծեծել: Եւ ինքն անցեալ ըստ ուղին՝ իջանէր 'ի հմայս քաղդէութեան, զքուէս հարցանէր. և ոչ գոյր նմա յաջողակ յուռութ կախարդանացն՝ յոր յուսայրն:

Ապա սրտմտութեամբ մեծաւ զիւր դէտսն առաջի արկեալ՝ յերամակակայն արշաւէր, զի հնար լիցի նմա նախ ըմբռնել: Եւ հասեալ 'ի տեղին. զերամակ ձիոց ոչ գտանէր. վասն զի յաստուծոյ այնպէս իմն եղև հրաւունք պահպանութեան Հայոց գնդին, զի սպարապետին Մանուէլի ամենայն Հայոց գնդին տուեալ էր ժամ յորս երթալոյ. վասն այսորիկ դիպեցաւ, զի զամենայն երամակն 'ի չէն էր ածեալ. և նոքա դեռ որսոյ պատրաստեալ լին 'ի հեծանել: Եւ անտի գուժաւոր հասանէր առ զօրավարն Հայոց Մանուէլ, թէ զիտա տես, զի Մեռուժանն Արծրունի հասեալ է բազում գնդաւ 'ի վերայ քո:

Ապա կազմեցան ըստ նմին պատրաստեցան ամենայն զօրքն Հայոց գնդին, և Մանուէլ սպարապետն. և մտին առաջին սուրբ ոսկերացն Յովհաննու, որ կայր յայնմ գեղ. ուխտաւոր լինէին և խնդրէին յաստուծոյ, զարդար դատաւորն յօգնականութիւն կոչէին, լինել նոցա այցելու օգնական: Եւ անտի 'ի դուրս ելեալք, զտիկինն Արշակունի հանդերձ մանկամբքն Արշակաւ և Վաղարշակաւ զնոսա և զիւրեանց կանանին ընդ նոսա արձակեալ. յամուր յողարկէին 'ի լեառն մեծ՝ որ անուանեալ կոչի Վարագ: Եւ զմանուկն Արտաւազդ, որդի Վաչէի, ընդ կանանին տայր հրաման երթալ Մանուէլ. իսկ նա ոչ հաւանէր, չառնոյր յանձն: Եւ էր նա 'ի տիոց տղայ. և ըստ մանկութեանն օրինի, ըստ կրօնից Հայոց՝ որպէս օրէն էր՝ զգլուխ մանկտոյն սոյնպէս 'ի ժամանակին գերծեալ էր զգլուխ մանկանն Արտաւազդայ, և ցցունս էր թողեալ և գէս արձակեալ: Ապա իբրև ոչ հաւանեցաւ նա ընդ կանանին երթալ. մտրակ 'ի վեր առեալ Մանուէլի տանջէր զմերկ գլուխ Արտաւազդայ. սաստէր նմա չերթալ 'ի պատերազմ վասն մանկութեան ժամանակին տիոց: Իսկ նա առ նորա ակնէ գնաց ընդ նոսա. բայց ապա յետոյ դարձեալ կազմեալ պատրաստեալ զկնի պատերազմին:

Այլ յորժամ զտիկինն ամենայն աղխիւն իւրեանց յուղարկեցին յամուրն, և ինքեանք վառեալք կարգեալք կազմեալք 'ի պատերազմն, 'ի մի վայր գումարեալք, նշանս արձակեալք դրօշս փողփողեալս, ըստ Գեղն աւան 'ի դուրս ելանէր ընդ կողմն արևմտից. և անցէն ընդ առաջ

լեռներ, որոնց տեղացիներն ասում էին Եղջյուրներ: Մինչ Մերուժանն իր զնդով գալիս էր այդ ճանապարհով՝ նրան ուղևորներ պատահեցին: Մերուժանը նրանց հարցրեց. «Ո՞ր տեղով է ճանապարհը գնում դեպի Բագրևանդ»: Ուղևորները պատասխանեցին ու ասացին. «Եղջյուրնե-րով»: Մերուժանը շատ շփոթվեց այս խոսքից ու տրտմեցավ. սակայն հրաման տվեց՝ ուղևորներին սաստիկ քարշել ու ծեծել[215], Ինքն այդ ճանապարհին անցնելով՝ սկսեց հմայություններ անել, բախտափորձու-մի զարեր ձգել, բայց այս կախարդություններից ոչ մեկը աջող նշան չէին ցույց տալիս, որոնց հույս ուներ:

Ուստի սաստիկ նեղացած, լրտեսները առաջ ձգած արշավում էր երամակի գտնված տեղը, որպեսզի կարողանա ձիերը բռնել: Բայց երբ այդ տեղը հասավ՝ ձիերի երամակը չգտավ: Որովհետև աստված այնպիսի աջողություն տվեց Հայոց զնդին, որ Մանուել սպարապետը Հայոց բոլոր զնդին ժամ էր նշանակել որսի գնալու, այս պատճառով էլ ձիերի երամակը շենն էին բերել, և այն է պատրաստվում էին ձի հեծ-նել՝ երբ զուժկան հասավ Հայոց Մանուել զորավարին, թե «Ճարդ տես, Մերուժան Արծրունին մեծ զնդով եկել հասել է մեզ վրա»:

Այս տեղեկության համաձայն Հայոց զնդի բոլոր զորքերը և Մա-նուել սպարապետը պատրաստվեցին, ուխտի գնացին Հովհաննես (Մկրտչի) սուրբ ոսկորներին, որ այն գյուղումն էր, ուխտ գրին, աստ-ծուն խնդրվածք էին անում, արդար դատավորին օգնության էին կան-չում, որ իրենց այցելու և օգնական լինի սրբի բարեխոսությամբ: Այն-տեղից դուրս գալով Արշակունի տիկնոջ, նրա երկու որդոց, Արշակի և Վաղարշակի հետ, նրանց հետ նաև իրենց կանանց՝ ապահովության համար ուղարկեցին Վարազ կոչված մեծ լեռը: Մանուելը հրաման էր տալիս Մանուկ Արտավազդին, Վաչեի որդուն, որ նա ևս կանանց հետ գնա, իսկ նա հակառակում էր, չէր համաձայնում: Նա դեռ տղա էր հասակով և ըստ հայկական սովորության, ինչպես անում էին երեխա-ներին՝ սափրել էին մանուկ Արտավազդի գլուխը, թողնելով խոպոպիք և ծամ: Երբ նա չհամաձայնեց կանանց հետ երթալ՝ Մանուելը մտրակը քաշեց, Արտավազդի մերկ գլուխն սկսեց տանջել, սաստելով, որ պա-տերազմի չգնա հասակի մանկության պատճառով: Նա աչք խաբելու համար նրանց հետ գնաց. բայց հետո զինվեց, պատրաստվեց ու գնաց պատերազմի:

Երբ տիկնոջը բոլոր աղխով ամուր տեղ ուղարկեցին՝ ապա իրենք էլ սպառազինվեցին, կազմակերպվեցին, պատերազմի համար մի տեղ խմբվեցին: (Մանուելը) նշանները բացած, ծածանվող դրոշակներով, դուրս էր գալիս Ավան գյուղից, դեպի արևմուտք, և հենց այդտեղ նրա

ելեալ նոցա Մերուժանայ իւրով զնդաւն՝ որ եկեալ էր 'ի վերայ նոցա: Եւ չարագործն մեղաւորն Մերուժանն զիւր զզէն և զարդ և զնշանն սաղաւարտին բազմաց եդեալ էր զնոյն օրինակ, և զբազումս յիւր կերպարանեալ էր 'ի մէջ իւրոյ զնդին, և ինքն զիւր նշան ոչ ունէր: Սակայն Մանուէլ իբրև տեսանէր զնոցա զունդն, հանդերձ իւրով զնդաւն առիւծաբար վարազօրէն յարձակեալ՝ 'ի նոցա գունդն խառնեցաւ. ուշ եդեալ այնոցիկ՝ որ զՄերուժանայ նշանսն ունէին, համարէր եթէ զՄերուժանն սպանանիցէ: Եւ զբազում ախոյենից հատանէին զգլուխս, որք զնոյն զնորին Մերուժանայ ունէին զնշանս. և տեսանէին զի չէր նա:

Ապա խօսել սկսանէր սպարապետն Մանուէլ ընդ իւրում նիզակակցին Բաբկան, և ասէր. Տեսանե՞ս, քանի՛ խաբեաց զմեզ կախարդն Մերուժանն. այլ իմ և նորա յառաջու շատ լեալ 'ի միոջ վայրի 'ի հաշտութեան ժամանակի, նշան մի գիտեմ ես զնորա. զի յորժամ 'ի ձի հեծեալ էր, երան բարձի նորա ոչ յանձին և 'ի ծունկն ոչ հասանէր, այլ 'ի բացեայ կայ 'ի ձիոյ անտի: Արդ եկ զոյգ հասարակ այսմ նշանի ուշ դիցուք, թերևս ճանաչել կարասցուք զդիւթ քուէիցն զկախարդն: Ապա զոյգ միտ եդեալ երկոցունցն, և տեսեալ զՄերուժանն, այնու նշանաւ ծանեան տեսին. զի յայլակերպս լեալ էր, զի զիւր նշանսն ոչ ունէր: Ապա ձայն տուեալ յառաջ կոչեաց զՄերուժանն Մանուէլ, և ասէ ցնա՝ թէ այ կախարդ, ցե՞րբ խաբես զմեզ, և վասն քո և զայլս ես տաս չարդել. այլ մեք ծանեաք զքեզ զի աւադիկ կաս, և ապրել քեզ չիք հնար այսօր 'ի ձեռաց մերոց. զի այսօր էած կատարեաց զչարիս քո տէր աստուած 'ի գլուխ քո, և մատնեաց տէր 'ի ձեռս մեր: Իսկ յորժամ զայն լուէր Մերուժանն, անդէն վաղվաղակի նիզակ առեալ, յառաջ խաղացեալ, ախոյեան ելանէր Մանուէլին: Սակայն յորժամ հարկանէին նիզակօքն, քանզի երկոքեան արքն յաղթք էին, երկոքեան 'ի ձիոյն յերկիր անկանէին, և անդէն նիզակակիցն Մանուէլի Բաբիկ տէր գաւառին Սիւնեաց հասանէր, նիզակաւ 'ի վերուստ 'ի վայր 'ի կողին կարէր ընդ գետինն, և ոչ կարէր յառնել: Իսկ զսպարապետն Մանուէլ իւր վառւանդասպասքն յերիվարն հանէին, և զՄերուժանայ զգլուխն 'ի բաց հատանէին. և ամենայն զօրացն լինէր փախուստ, իբրև տեսին թէ Մերուժանն մեռաւ:

Եւ ապա գունդն մանուէլեան խրախոյս առեալ յարձակեցան զհետ մերուժանեան զնդին. հարկանէին սատակէին զնոսա, և ամի 'ի նոցանէն ոչ ապրեցուցանէին: Այլ մանուկն Արտաւազդ 'ի Մանուէլէ զաղտ եկեալ էր 'ի ճակատն. սակայն վառեցաւ կազմեցաւ և եմուտ, զանխլ 'ի մանուէլեան զնդէն, առ ափն Եփրատ գետովն. եհար սատակեաց 'ի մերուժանեան զնդէ անտի, անթիւ բազում սպառազէնս կոտորեաց: Եւ

առաջն էր ելնում Մեռուժանն իր զենքով, որ եկել էր նրանց վրա: Զարազարդ մեղավոր Մեռուժանը իր զենքն ու զարդը և իր սաղավարտի նշանը շատերին էր տվել, շատերին իր զենքում իր կերպարանքն էր տվել, իսկ ինքը իր նշանները չէր կրում: Մանուելը նրանց զունդը տեսնելով՝ իր զենքով առյուծի՝ վարազի պես վրա էր հարձակվում, խառնըվում էր նրանց զենքին, ուշադրություն դարձնելով նրանց վրա, որոնք Մեռուժանի նշանները էին կրում: Շատ ախոյանների գլուխներ էին կտրում, որոնք կրում էին Մեռուժանի նշանները, կարծելով թե Մեռուժանին սպանեցին, բայց տեսնում էին որ նա չէ:

Այն ժամանակ սպարապետ Մանուելը խոսեց իր նիզակակից Բաբիկի հետ և ասաց. «Տեսնո՞ւմ ես ո՛րքան մեզ խաբում է այդ կախարդ Մեռուժանը: Բայց առաջ, հաշտության ժամանակ, ես շատ անգամ նրա հետ միասին եմ եղել, ես նրա մի նշանը գիտեմ՝ երբ նա ձի էր հեծնում՝ նրա ազդրը մինչև ծնկները հույ չէր գալիս (ձիուն), այլ ձիուց զատ էր մնում: Ե՛կ, երկուսով այս նշանին ուշադիր լինենք, գուցե կարողանանք ճանաչել այն եկած կախարդին»: Ապա երկուսով դիտելով՝ տեսան ու ճանաչեցին Մեռուժանին այդ նշանով. նա իրեն կերպարանափոխել էր և իր նշանները չէր կրում: Այն ժամանակ Մանուելը ձայն տվեց, առաջ կանչեց Մեռուժանին ու ասաց. «Ա՛յ կախարդ, մինչև ե՞րբ պիտի խաբես մեզ և քո պատճառով ուրիշներին ջարդել տաս: Քեզ մենք վերջապես ճանաչեցինք, որ այդտեղ կանգնած ես, և մեր ձեռքից քեզ այսօր փրկություն չկա, որովհետև աստված այսօր քո կատարած չարիքները քո գլխի վրա ածեց և քեզ մեր ձեռքը մատնեց»: Մեռուժանը երբ այս լսեց՝ իսկույն նիզակը ձեռքին առաջ անցավ, Մանուելին ախոյան դուրս եկավ: Բայց որովհետև երկուսն էլ հաղթահասակ մարդիկ էին՝ նիզակներով իրար հարվածելիս՝ երկուսն էլ ձիերից վեր ընկան: Անմիջապես Մանուելի նիզակակից Բաբիկը, Սյունյաց գավառի տերը, վրա էր հասնում, նիզակով կողից վերից վար խփելով (Մեռուժանին) կարում էր գետնին, և նա այլևս չէր կարող վեր կենալ: Իսկ Մանուել սպարապետին նրա ձիապան սպասավորները ձի էին հեծցնում: Եվ Մեռուժանի գլուխը կտրում էին, և բոլոր զորքերը երբ տեսան թե Մեռուժանը մեռավ՝ փախուստի դիմեցին: Իսկ այս կողմից Մանուելի զունդը խրախուսվելով՝ հարձակվեց Մեռուժանի զնդի վրա, ջարդեցին, կոտորեցին, կենդանի մարդ չթողին:

Բայց մանուկ Արտավազդը Մանուելից գաղտուկ գնացել էր պատերազմի. նա սպառազինված, Մանուելի զնդից ծածուկ, գնաց Եփրատ գետի ափը, այնտեղ Մեռուժանի զնդից անթիվ սպառազինված մարդ կոտորեց: Իսկ մեկը որ Մեռուժանի նշան էր կրում՝ երբ Արտավազդին

նշանակիր մի 'ի Մերուժանայ իբրև ետես զԱրտաւազդն, յընչացք եբաց. զի տեսանէր զնա պատանեակ մի կայտառ անմօրուս, երեսօք զեղեցիկ. ապա զնշանն զնիզակաւն պատեալ, յարձակեցաւ 'ի վերայ նորա: Իսկ նա ընդ գիրկս մտեալ, հարկանէր զայրն նետիւ, և կարանէ 'ի կարան թափ հանեալ զնետն ցամաք ընկենոյր զնա: Եւ առեալ զնիզակն զհետ մտեալ փախստէիցն, ընդ սուր հանեալ զզօրսն Մերուժանայ, աւելի քան զամենեսեան Արտաւազդ որդի Վաչէին մանուկն կոտորէր. և ինքն մեծաւ անուամբ և բազում աւարաւ՝ զոր կապուտն թափէին 'ի զօրաց թշնամեացն:

Բայց յաւուր յայնմիկ լինէր մեծ վնաս անհնարին. զի Վաչէ երկրորդն Մանուէլի, ձին զուլամբ երթեալ, սպանանէր: Սոյնպէս և զԳարջոյլ Մաղխազ ձին տարեալ սատակեաց. վասն զի տրմուղ 'ի թերավարժ ձիոյ հեծեալ էին երկոքին:

Իսկ դառնայր Մանուէլ երթայր 'ի բանակն տիկնոջն հասանէր. տանէին ընդ ինքեանս զգլուխն Մերուժանայ. և Սամուէլ որդի Վահանայ ոչ դիպեցաւ ընդ Մանուէլի, զի դարձաւ նա 'ի բանակն: Սակայն յորժամ տեսին զգլուխն Մերուժանայ կանայք բանակին Մանուէլի, մեծաւ աղաղակաւ ճիչ բառնային. զի նոքա այսպէս համարեցան թէ այն գլուխ Սամուէլի որդւոյ Վահանայ իցէ, վասն զի նման միմեանց էին երկոքեան, Մերուժանն և Սամուէլ: Ապա տեսին զգլուխն Մերուժանայ, զի զցիցն երկայն կախեալ էր, յայնժամ ծանեան եթէ չէ Սամուէլայ, այլ Մերուժանայ Արծրունւոյ. այլ ասացին. Սակայն դա մեր եղբայր է: Ապա եկին բերին զմարմին Վաչէի 'ի բանակ անդր հօրն Արտաւազդայ, և զմարմինն Գարջուղայ Մախաղու խոռխոռունւոյ. եդին աշխար մեծապէս, և լացին զնոսա: Եկին բերին զայրն նշանակիրն Մերուժանայ, զոր եհարն Արտաւազդ նետիւն. և ամենայն ոք զարմանայր ընդ այն, զի նետն թափ կարանէ 'ի կարան անցեալ էր, իբրև տեսին զնա՝ ապրեցա 'ի մահուանէ: Այլ իբրև լուան զօրքն Պարսից՝ զոր թողեալ էր Մերուժանայ 'ի գաւառն Կորճէից՝ թէ սատակեցաւ Մերուժանն, և կորեաւ զունդն որ ընդ նմա, և ինքեանք 'ի Պարսից երկիրն փախստական գնացին. և Հայոց երկրին լինէր խաղաղութիւն բազում:

## ԽԴ

## ՅԱՂԱԳՍ ԹԷ ԶԻԱ՛ՐԴ ԹԱԳԱՒՈՐԵՑՈՅՑ ՄԱՆՈՒԷԼ ՍՊԱՐԱՊԵՏՆ ԶՄԱՆՈՒԿՆ ԱՐՇԱԿ ԵՒ ԱՊԱ ԻՆՔՆ ՄԱՆՈՒԷԼՆ ՄԱՀՈՒ ՄԵՌԱՆԷՐ

Ապա յետ այսր ամենայնի, զոր արարեալ զօրավարն սպարապետն Մանուէլ, հանդերձ Արշակունի տիկնաւն, և մանկամբքն երկքումբք

տեսավ՝ նրան քամահեց[216], տեսնելով որ մի կայտառ անմորուք պատանի է, գեղեցիկ դեմքով: Ապա նշանը նիզակին պատելով՝ հարձակվեց նրա վրա: Իսկ նա ույժերը լարելով՝ նետով զարկեց նրան, և նետը մարմնով թափանցելով գետին ընկավ: Ապա նիզակն առնելով հարձակվեց փախստականների ետևից և սրի էր քաշում Մերուժանի զորքերը: Այդ օրը բոլորից ավելի մանուկ Արտավազդը, Վաչեի որդին, կոտորած էր անում, և ինքը (ետ էր դառնում) մեծ անունով և լավ ավարով, որ թշնամու զորքերից կողոպուտ մնաց:

Բայց այդ օրը մեծ անփոխարինելի վնաս էր պատահում, որովհետև Վաչեի ձին, քրահարելով՝ նրան (վեր էր ձգում) սպանում էր: Նույնպես և Գարշույլ Մախազին ձին, փախցրեց ու սպանեց, որովհետև երկուսն էլ անվարժ արմուղներ էին հեծել:

Իսկ Մանուելը գնում հասնում էր տիկնոջ բանակը. իրենց հետ տանում էին նաև Մերուժանի գլուխը: Բայց Սամուելը, Վահանի որդին, Մանուելի հետ չպատահեց, որովհետև նա բանակն էր դարձել: Մանուելի բանակում եղած կանայք երբ Մերուժանի գլուխը տեսան՝ մեծ ճիչ ու աղաղակ բարձրացրին, որովհետև կարծեցին թե այն գլուխը Սամուելինն էր, Վահանի որդու, որովհետև այն երկուսը, Մերուժանն ու Սամուելը իրար նման էին: Բայց հետո տեսան Մերուժանի գլուխը, որից ծամը կախված էր, իմացան, որ Սամուելինը չէ, այլ Մերուժան Արծրունունը, բայց ասացին. «Այնու ամենայնիվ դա էլ մեր եղբայրն էր»[217]: Ապա բանակը բերին Արտավազդի հոր Վաչեի մարմինը, նույնպես և Գարշույլ Մախազի մարմինը. մեծ սուգ արին ու լացին նրանց վրա: Բերին նաև Մերուժանի նշանը կրող մարդուն, որին Արտավազդն սպանել էր նետով. բոլորը զարմանում էին նայելով, որովհետև նետն ամբողջ մարմնովը թափ էր անցել: Այս որ տեսան՝ (Արտավազդը) մահից փրկվեց[218]: Իսկ Պարսից այն զորքերը, որոնց Մերուժանը թողել էր Կարենայք գավառում, երբ լսեցին թե Մերուժանն սպանվել է և նրա հետ եղած զունդը ոչնչացել է՝ իրենք էլ փախան գնացին Պարսից աշխարհը, և Հայոց աշխարհում ընդհանուր խաղաղություն տիրեց:

## ԽԴ

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՄԱՆՈՒԵԼ ՍՊԱՐԱՊԵՏԸ [illegible] ՄԵՐՈՒԺԱՆ [illegible]
## [illegible]

Այս բոլոր գործերը կատարելուց հետո Մանուել զորավար-սպարապետը, Արշակունի տիկնոջ և երկու մանուկների՝ Արշակի և Վաղարշ-

Արշակաւն և Վաղարշակաւն, հանդերձ ամենայն բանակաւն Հայոց մեծամեծ աւագայնովն նախարարօքն երևեալ հասանէր 'ի գաւառն Կարնոյ. և ամենայն տանուտէրք ընդ նմա: Եւ տայր սպարապետն Մանուէլ զդուստր իւր Վարդանդուխտ կին Արշակայ մանկանն Արշակունոյ, և փեսայ իւր առնէր զնա: Առնէր հարսանիս և եղբօր նորին Վաղարշակայ, և տայր նմա զդուստր ասպետին բագրատունւոյ 'ի Սպեր գաւառէ, որ թագաւորքն թագակապքն լեալ էին 'ի բնմէ ազգին թագաւորութեանն Արշակունւոյ. և մեծապէս արարեալ զհարսանիսն ամենայն երկիրն Հայոց, ցնծացեալք խնդացեալք էին ընդ մեծ խնդութիւն ուրախութեանն: Ապա յետ այսորիկ դարձեալ 'ի մի վայր ժողովեալ զաշխարհ ամենայն զմարդիկ երկրին Հայոց, և թագաւորեցոյց զմանուկն զԱրշակ երկրին Հայոց, և զՎաղարշակ երկրորդ նմին: Եւ ընդ այն ևս ցնծացեալ առնէին մեծապէս ուրախութիւն և ցնծութիւն ամենայն երկիրն Հայոց:

Ապա յետ այսորիկ հիւանդացաւ սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ զախտ հիւանդութեան մահու. և կոչեաց զորդի իւր զԱրտաշիր, և ետ նմա զտէրութիւն իւր և զսպարապետութիւն զօրավարութեանն իւրոյ: Եւ պատուիրէր նմա հնազանդ հպատակ կալ արքային Արշակայ, և լինել միամիտ. ջանալ և վաստակել, և տալ պատերազմ փոխանակ աշխարհին Հայոց զանձն քո, որպէս քաջ նախնիքն 'ի վերայ աշխարհին մտադիւր մեռանել: Զի, ասէ, առ աստուած այն արդարութիւն մեծ է և ընդունելի, և ոչ աստուած թողու 'ի ձեռաց, յորժամ այնպէս լինիք: Անուն քաջութեան յերկրի թողցուք, և զարդարութիւն յերկինս ընծայեցուցանէք. և ամենևին 'ի մահուանէ մի՛ երկնչիք, այլ յուսացիք յայն, որ զամենայն արար և հաստատեաց: Եւ զնենգութիւն և զպղծութիւն և զչարութիւն յանձանց ձերոց 'ի բաց արարէք, և զտէր աստուած արդարութեամբ և միամտութեամբ պաշտեցէք. և 'ի վերայ աստուածապաշտ աշխարհի համարձակութեամբ մեռարուք, զի այն իսկ մահ վասն աստուծոյ է, փոխանակ եկեղեցեաց նորա և ուխտի նորա, և 'ի վերայ բնակ տէրանց աշխարհիս արշակունեաց:

Եւ յետ այսորիկ գրեաց հրովարտակ առ թագաւորն Յունաց, և նմա յանձն արար զաշխարհս Հայոց և զԱրշակ արքայ: Եւ յետ այսորիկ իբրև միահամուռ ժողովեալ կային շուրջ զնովաւ, և իբրև կայր հիւանդ 'ի մահիճս իւր, անդ թագաւորն Արշակ և անդ Վարդանդուխտ կին թագաւորին, և ընդ ամենայն աւագք և մեծամեծք և նախարարք Հայոց այր և կին առ հասարակ ամենայն երևելի մարդիկ, ապա եբաց Մանուէլ զամենայն զանդամս իւր առ հասարակ առաջի ամենեցուն, մերկացաւ և եցոյց զի քան զդրամ խայծ ոչ զտանէր ողջ 'ի մարմնի նորա՝

շակի հետ, Հայոց բոլոր բանակով, մեծամեծ ավագներով և նախարարներով գնում նստում էր Կարնի գավառը: Բոլոր տանուտերերն էլ նրա հետ էին: Եվ Մանուել սպարապետը իր Վարդանդուխտ դուստրը կնության տվեց Արշակունի մանուկ Արշակին և իրեն փեսայացրեց. նաև հարսանիք էր անում նրա եղբոր Վաղարշակի համար, և նրան կին էր տալիս Բագրատունի ասպետի դուստրը Սպեր գավառից, որոնք (Բագրատունիները) ի բնե Արշակունյաց տոհմի թագավորների թագակապներն ու թագադիրներն էին եղել: Շատ փառավոր հարսանիք արին, որ մեծ ցնծություն և ուրախություն պատճառեց բոլոր Հայոց աշխարհին: Այնուհետև դարձյալ մի տեղ ժողովելով Հայոց աշխարհի բոլոր մարդկանց՝ մանուկ Արշակին թագավորեցրեց Հայոց աշխարհի վրա և Վաղարշակին նրան երկրորդ նշանակեց: Սրանով էլ մեծ ուրախություն ու ցնծություն եղավ բոլոր Հայոց աշխարհում:

Սրանից հետո Հայոց զորավար-սպարապետ Մանուելը հիվանդացավ մահառիթ հիվանդությամբ: Նա կանչեց իր Արտաշիր որդուն, նրան հանձնեց իր տանուտիրական իշխանությունն ու իր զորավար-սպարապետությունը: Նրան պատվիրեց հնազանդ ու հպատակ լինել Արշակ թագավորին, հավատարիմ լինել, ջանալ և աշխատել, Հայոց աշխարհի համար պատերազմել: «Ուրախությամբ հանձն առ մահ աշխարհի համար, ինչպես և քո քաջ նախնիքը, որովհետև, ասաց, դա արդար և աստծուն ընդունելի գործ է, և երբ այդպես վարվեք՝ աստված ձեզ անտես չի անի: Երկրի վրա քաջության անուն թողեք և ձեր արդարությունը երկնքին նվիրեցեք: Մահից ամենևին մի՛ վախեցեք, այլ հույս դրեք նրա վրա, որ ամեն ինչ ստեղծեց ու հաստատեց: Ձեզ հեռու պահեցեք նենգությունից, պղծությունից և չարությունից և տեր աստծուն ծառայեցե՛ք մաքուր սրտով ու հավատարմությամբ: Աստվածապաշտ աշխարհի համար համարձակ մեռե՛ք, որովհետև հենց այդ մահն աստծու համար է, նրա եկեղեցիների և եկեղեցական ուխտի, այս աշխարհի բնիկ տերերի՝ Արշակունիների համար»: Սրանից հետո նա հրովարտակ գրեց Հունաց թագավորին ու նրան հանձնեց Հայոց աշխարհն ու Արշակ թագավորին:

Սրանից հետո, երբ նա հիվանդ պառկած էր անկողնում և բոլորը հավաքված էին նրա շուրջը, այնտեղ էին և Արշակ թագավորը և Վարդանդուխտը՝ թագավորի կինը, և Հայոց բոլոր ավագները, մեծամեծները ու նախարարները, առհասարակ բոլոր երևելի մարդիկ, տղամարդ թե կին՝ ապա Մանուելը այս բոլորի առաջ բացեց իր բոլոր անդամները, մերկացավ և ցույց էր տալիս, որ նրա մարմնի վրա մի դրամի մեծության չափ ողջ տեղ չէր մնացել, այլ խոցված էր պատերազմների

զոր խոցեալ էր 'ի պատերազմի. զի յառնի յանդաման աւելի քան զյիսուն ափի կայր վիրաց, և զայն անգամ բացեալ առաջի ամենեցուն ցուցանէր: Սկսաւ լալ, և ասել՝ թէ ես 'ի մանկութենէ համակ սնայ 'ի պատերազմունս, և մեծաւ քաջութեամբ զամենայն վէրս յանձն իմ առի. և ընդէ՞ր ոչ եհաս ինձ մեռանել 'ի պատերազմի, քան զօրէն անասնոյ մեռելոյ եղէ: Զի լաւ էր ինձ եթէ 'ի պատերազմի մեռեալ էի 'ի վերայ աշխարհի, զի մի՛ զեկեղեցիս և մի՛ զուխտ աստուծոյ առ ոտն կոխիցեն: Սակայն և 'ի վերայ Արշակունեաց բնիկ տէրանց աշխարհիս, և 'ի վերայ կանանց և 'ի վերայ որդւոց մերոց, և 'ի վերայ աստուածապաշտ մարդկանս և 'ի վերայ եղբայրութեան ընկերութեան և մտերիմ բարեկամութեանն զի՞ էր թէ հասեալ էր ինձ մեռանել. թէպէտ շատ զանձնս յանդուգն վարեցի, զվատթար մահս մանեացս եհաս ինձ մեռանել:

Զայս և բազում և աւելի քան զսոյնս խօսեցաւ առաջի Արշակայ արքայի և առաջի ամենեցուն. և աղաչեաց ես զթագաւորն Արշակ, և ասէ. Իմ Աստուծով կեցեալ և ջերմ քրիստոնէութեամբ, մի՛ յանկարծ իբրև հեթանոսս կոծ կամ աշխարանս քո անյուսութեամբ դնիցէ ինձ: Զի որ միանգամ յուսոյ յարութեան ակն ունին միաանգամ կենդանութեան և գալստեանն Քրիստոսի, չէ պարտ լալ զնոսա: Այլ իմ ցայժմ յուսով երկիւղիւ կեցեալ, բայց դուք մի՛ թիւրիցիք 'ի պատուիրանացն աստուծոյ, *աւելի զարդարութենէ փոյթ արասջիք*, ես առաւել զողորմութենէ: Զի մեզ մեծ հայրապետն Ներսէս զայս համակ պատուիրէր. և ինքն յամենայն ժամ 'ի կենդանութեանն զսոյն գործէր, և այլոց ուսուցանէր առնել. զի ողորմէր աղքատաց, տնանկաց, գերեաց, ամայեաց, օտարաց, պանդխտաց. զի այսպէս ասէր նա. Քան զողորմութիւն առնել, կամ՝ քան զտուրս տալ, այլ ինչ մեծ և պատուական առաջի աստուծոյ չիք: Եւ զաշխար կամ զկոծ դնել մեռելոց՝ դառն մեղս համարէր, և յամս իւր եհատ զայս յերկրէս Հայոց. զի յաւուրս նորա ոչ ոք իշխէր դնել կոծ կամ աշխարանս. այլ յետ մահու նորա անմիտ մարդիկ համարձակեցան զայս գործել: Այլ վասն իմ ոք կոծ մի՛ դիցէ. եթէ դնէ ոք, նա լիցի դատապարտ. այլ ոչ եթէ յետ մահուն իմոյ իմ իշխանութիւն ինչ է սաստել, զի զոր ոչն կամիմ՝ մի՛ արասցեն. այլ ինձ յիշատակ արասցէ որ զիս սիրէ: 'Ի պատերազմի 'ի մահուանէ մի՛ երկնչիք, ուր ես ոչ մեռայ. զի առանց աստուծոյ ինչ ոչ լինի:

Զայս և զայսպիսի, և որ ինչ այս բանից նման են բանք, խօսեցաւ: Բազում և անչափ զանձս աղքատաց և կարօտելոց բաշխէր, իւրովք

մեջ, հենց նրա առնի անդամի վրա ավելի քան հիսուն սպի[218] կար վերքերից. մինչև անգամ այս բանալով ցույց էր տալիս ամենքին: Սկսեց լալ և ասել. «Մանկությունից հետո ես պատերազմների մեջ եմ մեծացել, ամեն վերք հանձն առա քաջությամբ, և ինչո՞ւ ես բախտ չունեցա պատերազմի մեջ մեռնելու, քան թե այսպես անասունի պես մեռնեի: Ո՜րքան լավ կլիներ՝ եթե պատերազմի մեջ մեռնեի աշխարհի համար, որպեսզի եկեղեցիները և աստծու պաշտոնյաների ուխտը ոտնատակ չլինեին: Ո՞ւր էր թե ինձ վիճակվեր մեռնել մեր աշխարհի բնիկ Արշակունի տերերի համար, մեր կանանց ու որդոց համար, աստվածապաշտ մարդկանց, եղբայրների, ընկերների և մտերիմ բարեկամների համար: Ես շատ հանդուգն էի ինձ պահում (պատերազմների մեջ), բայց և այնպես ինձ վիճակվեց մեռնել վատթար մահով՝ անկողնում պառկած»[219],

Այս և սրանից էլ ավելի շատ բաներ խոսեց Արշակ թագավորի և բոլորի առաջ: Նաև աղաչեց Արշակ թագավորին և ասաց. «Ես ապրել եմ աստծով իբրև ջերմեռանդ քրիստոնյա, ինձ վրա անհուսությամբ լաց ու կոծ չսարքեք անկարգաբար հեթանոսների նման: Որովհետև չպետք է լաց լինել նրանց համար, որոնք հույս ունեն մյուս անգամ հարություն առնելու և կենդանանալու Քրիստոսի գալուստի ժամանակ, իսկ ես մինչև այժմ ապրել եմ հույսով և երկյուղածությամբ: Բայց դուք աստվածային պատվիրաններից մի՛ շեղվեք, արդարության հոգ տարեք և ավելի շատ ողորմության: Որովհետև Ներսես մեծ հայրապետը մեզ շարունակ այս էր պատվիրում և ինքն էլ իր կենդանության ժամանակ նույնն էր անում. ինչ որ ինքը գործում էր՝ նույնն անել սովորեցնում էր ուրիշներին. նա ողորմում էր աղքատներին, տնանկներին, գերիներին, անտիրականներին, օտարականներին, պանդուխտներին, և նա ասում էր. «Աստծու առաջ ավելի պատվական բան չկա քան ողորմություն անելը կամ (աղքատներին) տուրք տալը»: Եվ մեռելների վրա լաց ու կոծ անելը ծանր մեղք էր համարում և իր ապրած ժամանակ այս բանը վերացրեց Հայոց աշխարհիցս. որովհետև նրա օրերով ոչ ոք չէր համարձակում լաց ու կոծ անել, բայց նրա մահից հետո անմիտ մարդիկ համարձակեցան այդ բանն անել: Բայց ինձ համար թող ոչ ոք կոծ չանե. մեղապարտ լինի ով որ անե: Բայց ես իրավունք չունեիմ իմ մահից հետո մեկին սաստել, որ չանե ինչ որ ես չեմ կամենում, այլ ով որ ինձ սիրում է՝ իմ հիշատակի համար թող այսպես անե: Պատերազմի մեջ մահից մի՛ վախենաք, որի մեջ ես չմեռա, որովհետև առանց աստծու ոչինչ չէր լինում»:

Էլի այսպիսի շատ բաներ խոսեց. անչափ շատ գանձ բաժանեց

ձեռօք մատակարարէր. և բազում մասունս յնչից իւրոց տայր յեկեղեցիս և 'ի վկայանոցս, և բազում գանձս տայր ցքահանայապետսն. և ապա ինքն մեռանէր: Այլ իբրև մեռաւ մեծ սպարապետն Մանուէլ, հրամանն զոր տայր յաղագս կոծոյն չդնելոյ՝ այնմ ինչ ոչ ոք անսաց. այլ ամենայն մարդ երկրին Հայոց կոծ եդեալ, մեծաւ աշխարանօք լային զնա առ հասարակ ազատք և շինականք: Զի ամենայն մարդ իբրև զհօրէ 'ի կարի առնէին զնմանէ վասն քաղցրութեան մարդասիրութեան հեզութեան հանդարտութեան խնամոտ բարերարութեան՝ բարէնշան զաշխարհաշէն անձն Մանուէլի: Ամենեքեան բերանաբաց հառաչէին զկնի նորա, կղկղաք կաթոցի լինէին զիւրեանց քաջ զօրավարէն, զփրկչէն իւրեանց, զյաղթական զանուանին զարգասուէն, յայնպիսոյն հեռացեալ գնացեալ 'ի յանջատելն 'ի մեկնելոյն:

աղքատներին ու կարոտյալներին, որ բաշխում էր իր ձեռքով. իր ստացվածքից շատ մասեր տալիս էր եկեղեցիներին ու վկայարաններին, շատ գանձ էլ տվեց քահանայապետներին, քահանաներին ու պաշտոնյաներին, և հետո ինքն էլ մեռավ:

Բայց երբ մեծ Մանուել սպարապետը մեռավ՝ ոչ ոք ուշադրություն չդարձրեց նրա հրամանին կոծի վերաբերությամբ, այլ Հայոց աշխարհի բոլոր մարդիկ, ազնվականներ ու շինականներ առհասարակ կոծում, լալիս, ողբում էին դառնապես: Որովհետև ամեն մարդ նրան սգում էր նրա քաղցրության, մարդասիրության, հեզության, հանդարտության, խնամատար բարերարության համար, ողբում էին բարենշան և աշխարհաշեն Մանուելին: Բոլորը բերանները բացած հառաչում էին նրա համար, կարոտագին մղկտում էին իրենց քաջ զորավարի, իրենց փրկչի, իրենց հաղթական՝ անվանի և բազմարդյուն (սպարապետի համար), որ հեռացավ ու գնաց, բաժանվեց իրենցից:

# ԲԻԶԱՆԴԻԱՅ
# ՎԵՑԵՐՈՐԴ ԽՈՍՏԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ԿԱՆՈՆՔ ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐ ՄԱՏԵՆԻՑ

Ա. Յաղագս ընդ երկու բաժանելոյ աշխարհին Հայոց. զի կէս ազգին Հայոց թագաւորեալ Արշակ հրամանաւ թագաւորին Յունաց, և կէս ազգին թագաւորեալ Խոսրով հրամանաւ թագաւորին Պարսից. Եթէ ո՛րպէս զաշխարհն Հայոց ընդ երկուս բաժանեալ՝ սահմանս ՚ի մէջ արկանէին իւրեանց, և ո՛րպէս այլ աշխարհքն և գաւառքն գրուեցան, և սահմանք նոցա կրծեցան յամենայն կողմանց Երկոցուն կուսաց:

Բ. Յաղագս եպիսկոպոսաց, որ երեելիքն էին յայնմ ժամանակի ՚ի բաժնի մասին յաշխարհին Խոսրովու յերկրին Հայոց. նախ վասն վարուց Զաւինայ:

Գ. Յաղագս Շահակայ կորճէի, որ եկաց յետ Զաւինայ գլուխ եպիսկոպոսաց:

Դ. Յաղագս Ասպուրակայ մանազկերտացւոյ, որ եկաց գլուխ եպիսկոպոսաց յետ Շահակայ:

Ե. Յաղագս Փաւստեայ և Զորթայ եպիսկոպոսաց:

Զ. Յաղագս Առաւստոմեայ եղբօր Փաւստեայ եպիսկոպոսի:

Է. Յաղագս Արտիթայ եպիսկոպոսի բասենացւոյ:

Ը. Յաղագս Յոհաննու եպիսկոպոսի և վարուց նորա և ագահութեան սորա և անմտութեան, և շաղաշուտ խօսից և գործոցն, և նշանացն՝ որ յաստուծոյ ՚ի վերայ նորա եղեն երբեմն, Եթէ ո՛րպէս մեղօք հայցէր և առնոյր զագահութիւն ՚ի թագաւորաց:

Թ. Յաղագս նորին Յոհաննու:

Ժ. Յաղագս նորին Յոհաննու:

ԺԱ. Յաղագս Կիւրակոսի եպիսկոպոսին:

ԺԲ. Յաղագս Զորթուագայ եպիսկոպոսի Վանանդայ գաւառին:

ԺԳ. Յաղագս Տիրկան և Մովսէսի եպիսկոպոսաց Բասենոյ գաւառին:

ԺԴ. Յաղագս Արշարունեաց եպիսկոպոսի:

ԺԵ. Յաղագս գլխաւորին եպիսկոպոսացն որ էին Ասպուրակայ:

ԺԶ. Յաղագս Գնդայ սրբոյ և առաքինոյ, որ յայնմ ժամանակի գլխաւոր էր աբեղայից Հայոց անապատաւորաց մենակեցաց վաներայոց:

---

ՍՏՈՐՈՏ ԱՄԵՆԱՅՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ՅԱՂԱԳՍ ԻՄ ՏԵՂԵԿՈՒԹԵԱՆ, ՈՐՔ ՄԻԱՆԳԱՄ ԶՄԱՏԵԱՆՍ ԸՆԹԵՌՆՈՅՔ, ՏՈՒՆՔ ՏԱՍՆ ՀԱՄԱՐԱԿԱՆ ԹՈՒՈՔ:

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ

### ՎԵՐՋ

### ԱՌԱՋԱՔԱՆՈՒԹԵԱՆ ՎՃԱՐՈՒՄՆ՝ ՄՆԱՑՈՒԱԾՔ ԲԱՆԻՑ Ի ԾԱՑՐԷ

### Ա

ՅԱՂԱԳՍ ԸՆԴ ԵՐԿՈՒՍ ԲԱԺԱՆԵԼՈՅՆ ԱՇԽԱՐՀԻՆ ՀԱՅՈՑ, ԵՒ ԹԱԳԱՒՈՐԵԼՈՅՆ ԱՐՇԱԿԱՅ ՀՐԱՄԱՆԱՒ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՅՈՒՆԱՑ, ԵՒ ԿԷՍ ԱԶԳԻՆ ԹԱԳԱՒՈՐԵԱԼ ԽՈՍՐՈՎ ՀՐԱՄԱՆԱՒ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՊԱՐՍԻՑ, ԹԷ Ո՛ՐՊԷՍ ԶԱՇԽԱՐՀՆ ԸՆԴ ԵՐԿՈՒՍ ԲԱԺԱՆԵԱԼ՝ ՍԱՀՄԱՆ 'Ի ՄԷՋ ԻՒՐԵԱՆՑ ԱՐԿԱՆԷԻՆ, ԵՒ Ո՛ՐՊԷՍ ԱՇԽԱՐՀՆ ՀԱՅԱՆ ՅԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ՅԵՐԿՈՑՈՒՆՑ ԿՈՒՍԱՑ

Ապա յետ մահուն Մանուէլի զօրավարին Հայոց ոչ իմն կարաց հաստատել՝ ի վերայ աշխարհի թագաւորութեանն Արշակայ. այլ բազումք՝ ի Հայոց նախարարացն անտի ելին զատեան գնացին առ թագաւորն Պարսից, և մատնեցին նմա զաշխարհն Հայոց. և խնդրեցին 'ի նմանէ թագաւոր Արշակունի: Եւ նորա յանձին կալեալ մեծաւ խնդութեամբ ընդ իւր ձեռն տալ իւրով բանիւ 'ի նմին տոհմէ 'ի թագաւորութենէն Հայոց Արշակունի, և նովաւ յիւրն գրաւել զաշխարհն Հայոց: Ապա գտանէր՝ ի նմին տոհմէ մանուկ մի անուն Խոսրով, և կապեաց թագ 'ի գլուխ նորա. և ետ նմա կին զքոյր իւր զՋրուանդուխտ, և արար ընդ նմա զամենայն զզօրս զօրութեան իւրոյ. և Զիկ նուիրակ դաստիարակ ետ արքային Խոսրովայ. և եկին հասին յաշխարհն Հայոց: Իբրև ետես Արշակ արքայ զնոսա, մերժեցաւ տեղի ետ չոգաւ գնաց 'ի սահմանս Յունաց. և էին թիկունք Արշակայ թագաւորին Հայոց՝. և Խոսրովու՝ թագաւորն Պարսից:

Ապա եկին զօրքն Յունաց թագաւորին՝ ի թիկունս. և թագաւորն Արշակ զԵկեղեաց գաւառաւ, և զօրքն Պարսից և արքայն Խոսրով յԱյ-

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԵՑԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹՅՈՒՆ

### ՎԵՐՋ

#### ԱՌԱՋԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԱՎԱՐՏ: ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐ ՍԿԶԲԻՑ[222]

#### ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ԵՐԿՈՒ ՄԱՍԻ ԲԱԺԱՆՎԵԼԸ (ՀԱՅՈՑ ԱԶԳԻ ԿԵՍԻ ՎՐԱ)[223]: ԱՐՇԱԿԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ ՀՈՒՆԱՑ ԹԱԳԱՎՈՐԻ ՀՐԱՄԱՆՈՎ ԵՎ ԿԵՍԻ ՎՐԱ ԽՈՍՐՈՎԻ ԹԱԳԱՎՈՐԵԼԸ ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՎՈՐԻ ՀՐԱՄԱՆՈՎ, ԵՎ ԹԵ Ի՛ՆՉՊԵՍ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԸ ԵՐԿՈՒ ՄԱՍԻ ԲԱԺԱՆԵԼՈՎ՝ ԻՐԵՆՑ ՄԵՋ ՍԱՀՄԱՆ ԷԻՆ ԿՏՐՈՒՄ, ԵՎ Ի՛ՆՉՊԵՍ ԱՇԽԱՐՀԻ (ԶԱՆԱԶԱՆ ՄԱՍԵՐ) ԿՐՃԱՏՎԵՑԻՆ ԵՐԿՈՒՍԻ ԿՈՂՄԻՑ էլ

Բայց Հայոց Մանուել զորավարի մահից հետո՝ Արշակի թագավորությունը չկարողացավ կարգին հաստատվել աշխարհում. այլ Հայոց նախարարներից շատերը զատվեցին գնացին Պարսից թագավորի մոտ. Հայոց աշխարհը նրան մատնեցին և նրանից խնդրեցին Արշակունի թագավոր: Նա մեծ ուրախությամբ հանձն առավ՝ իր կողմից իր խոսքով (թագավոր նշանակել) Հայոց նույն Արշակունի թագավորների տոհմից և նրա միջոցով Հայոց աշխարհը իրեն գրավել: Ապա նա գտավ նույն տոհմից մի մանուկ Խոսրով անունով, նրա գլխին թագ կապեց և նրան կին տվեց իր Զրվանդուխտ քույրը, իր բոլոր զորքերը նրա հետ. դրեց և Զիկ նվիրակին դաստիարակ նշանակեց Խոսրով թագավորին: Այսպես նրանք եկան հասան Հայոց աշխարհը: Արշակ թագավորը երբ նրանց տեսավ՝ տեղի տվեց, փաշվեց գնաց Հունաց սահմանները: Եվ թիկունք եղան՝ Արշակ թագավորին Հունաց թագավորը, իսկ Խոսրովին՝ Պարսից թագավորը[224]:

Ապա Հունաց զորքերը եկան (Արշակ թագավորին) օգնության, որ Եկեղյաց գավառումն էր, իսկ Պարսից զորքը և Խոսրով թագավորը

րայրատ գաւառին: Ապա դեսպանք և հրեշտակք երկուց թագաւորացն, Յունացն և Պարսից, միմեանց[58] առ միմեանս երթևեկէին: Եւ այնուհետև առնէ խորհուրդ միաբանութեան հաւանութեան ընդ միմեանս թագաւորն Յունաց և թագաւորն Պարսից. և լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ ընդ երկուս՝ ի մէջ իւրեանց բաժանել. զի ասէին՝ թէ՝ ի միջի մերում բնակեալ է այս հզօր և հարուստ թագաւորութիւն, լաւ է զի այսու եղծանել և խանգարել կարասցուք զայս թագաւորութիւնս. նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորօքս Արշակունօք՝ զորս կացուցաք, ապա և ընդ նոսա կրծել ջանասցուք, աղքատացուցանել, 'ի մէջ արկանել ի ծառայութիւն, զի մի կարասցեն 'ի մէջ մեր ամբառնալ զգլուխս:

Եւ հաստատեցին զայս խորհուրդ. ընդ երկու զաշխարհն բաժանեցին: Բաժին կողմանն Պարսից էր թագաւորին Խոսրովու, և բաժին մասինն Յունաց էր թագաւորին Արշակայ: Բայց և 'ի նոցանէ բազում գաւառք կրճեալք հատեալք այսր անդր, և մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորսն: Բայց սակայն երկոքեան թագաւորքն Հայոց՝ Արշակ և Խոսրով, որ Սիւնքն գաւառքն մնացին թագաւորութեանն Հայոց երկոցուն կողմանց 'ի մէջ իւրեանց, և երկոքեան թագաւորքն Արշակունիքն 'ի մէջ երկու բաժնացն սահմանս արկեալ հաստատէին խաղաղութեամբ, և երկիրն Հայոց երկոքեան բաժինքն, երկուց թագաւորացն հնազանդէին իւրաքանչիւր բաժնի իւրաքանչիւր թագաւորի. բայց սակայն մեծ էր Խոսրովու բաժին նորա քան զԱրշակայ: Եւ բազում գաւառք յերկոցունցն հատան. նուազեաց բաժանեցաւ ցրուեցաւ թագաւորութիւնն Հայոց, պակասեաց յիւրմէ մեծութենէն յայն ժամանակն և յապայ:

## Բ.

### ՅԱՂԱԳՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑՆ, ՈՐ ԵՐԵՒԵԼԻՔ ԷԻՆ ՅԱՅՆՄ ԺԱՄԱՆԱԿԻ 'Ի ՄԱՍԻՆՆ ՅԱՇԽԱՐՀԻՆ ԽՈՍՐՈՎՈՒ ՅԵՐԿԻՐՆ ՀԱՅՈՑ՝ ՈՐ ԸՆԴ ՊԱՐՍԻՑ ՁԵՌԱՄԲ ԷԻՆ. ՆԱԵՒ ՎԱՍՆ ՎԱՐՈՒՑ ՁԱՒԻՆԱՅ

Եւ էր Զաւէնս այս անուանի զաւակ Աղբիանոս եպիսկոպոսի՝ ի գեղջէ Մանաւազկերտոյ. էր սա բարոյիւք այր չարաչար խիստ և նախանձոտ: Բայց սակայն կրօնս մի, զոր եդ յիւրում ժամանակի. զի ամենայն քահանայից ուսոյց առնել հանդերձ զինուորաց: Զի թողին զկրօն առաքելական եկեղեցեացն, սկսան զնալ ըստ իւրեանց մտաց. զի ոչ ըստ կրօնիցն ազանէին քահանայքն զպնդեղնաւորն, որպէս օրէն էր 'ի բնէ, այլ սկսան զխոտորկտուրսն 'ի վերայ ծնգացն ունել: Եւ զարդա-

Այրարատ գավառումն էին: Ապա հունաց և Պարսից թագավորների դեսպաններն ու պատգամավորները իրենց մեջ երբեմնություն ունեցան, և երկու թագավորները, Հունաց և Պարսից, իրար հետ խորհուրդ արին և համաձայնության եկան: Նրանք հարմար համարեցին նախ Հայոց աշխարհը երկու բաժին անել իրենց մեջ: Նրանք ասում էին. «Մեր երկուսին միջև ընկած է այս հզոր և հարուստ թագավորությունը. լավ կլինի, որ այս միջոցով թուլացնենք ու խանգարենք այս թագավորությունը. նախ երկու մասի բաժանենք այս երկու Արշակունի թագավորներով, որոնց նշանակեցինք, հետո կաշխատենք նրանց էլ կրճատել, աղքատացնել և մեր ծառայության ենթարկել, որպեսզի մեր մեջ չկարողանան գլուխ բարձրացնել»:

Այսպես մտածելով՝ նրանք երկու մասի բաժանեցին աշխարհը. Պարսից կողմի բաժինը մնաց Խոսրով թագավորին, իսկ Հունաց կողմի բաժինը Արշակ թագավորին: Բայց նրանցից էլ շատ գավառներ այս և այնտեղ խուզվեցին, կտրվեցին, և երկուսի աշխարհներից մի փոքր մասը մնաց երկու թագավորներին: Բայց Հայոց թագավորության հիմնական գավառները[225] երկու բաժիններում Հայոց երկու Արշակունի թագավորները, Արշակն ու Խոսրովը, սահմաններով խաղաղությամբ բաժանեցին, և Հայոց աշխարհի երկու մասերը հնազանդում էին ամեն մեկը իր թագավորին. բայց Խոսրովի բաժինը ավելի մեծ էր քան Արշակինը: Եվ երկուսից էլ շատ գավառներ կտրվեցին. և այն ժամանակ և այնուհետև Հայոց թագավորությունը բաժանվեց, ցրվեցավ, նվազեցավ, իր նախկին մեծությունից ընկավ[226]:

## Բ

## ԱՅՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՔ ԱՅՆ ԺԱՄԱՆԱԿ ԵՐԵՎԵԼԻ ԷԻՆ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԽՈՍՐՈՎԻ ՄԱՍՈՒՄ, ՈՐ ՊԱՐՍԻՑ ՁԵՌՔՈՒՄՆ ԷՐ: ՆԱԵՎ ՋԱՎԵՆԻ ՄԱՍԻՆ

Այս Ջավենը անվանի Աղբիանոս եպիսկոպոսի սերունդից էր, Մանազկերտ գյուղից: Չարագործ, խիստ և նախանձոտ բարքի տեր էր: Բայց նա մի սովորություն մտցրեց իր ժամանակ— նա բոլոր քահանաներին սովորեցրեց զինվորական զգեստ հագնել: Նրանք թողին առաքելական եկեղեցիների սովորությունը, և սկսեցին վարվել՝ ինչպես իրենց խելքը կտրում էր, որովհետև քահանաներն այլևս չէին հագնում պճղնավորներ՝ ինչպես ի բնե սովորություն էր, այլ սկսեցին խոտոր կտորներ գործածել մինչև ծնկները[227]: Իրենց զգեստները զարդարում

րէին զհանդերձս իւրեանց պէսպէս նարօտօք, և սիգային որպէս ոչ վայել էր. և զմորթ մեռելոտիս գազանացն քահանայքն անխտիր ագանէին, որ ոչ վայել էր: Եւ ինքն Զաւէնն աքինեալս և զտապակեալս զծապաւինեալս նարօտօք ագանէր, զամոյրենիս և զկնգմենիս և զգայլենիս ագանէր. և աղուեսենիս զանձամբ արկեալ, անխտիր 'ի բեմ ելեալ նստէին: Որկորստութեամբ ագահութեամբ անառակութեամբ կայր Զաւէն զամենայն աւուրս կենաց իւրոց. և սա կալաւ զտեղի զամենայն աւուրս կենաց իւր ամս երիս:

## Գ

### ՅԱՂԱԳՍ ՇԱՀԱԿԱՅ ԿՈՐՃԷՒ, ՈՐ ԵԿԱՑ 'Ի ՏԵՂԻ ԶԱՒԻՆԱՑ ԳԼՈՒԽ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ

Ապա Շահակ կորճեայ եկաց գլուխ եպիսկոպոսաց փոխանակ Զաւինայ յետ մահու նորա ամս երկու: Եւ էր սա այր քրիստոնեայ, բայց ոչ ինչ գշարեցաւ ընդ կարգս Զաւինայ՝ զոր եղեալն էր նորա՝ փոխել. սակայն առաջնորդեաց սա ամս երկու, և փոխեցաւ յաշխարհէ:

## Դ

### ՅԱՂԱԳՍ ԱՍՊՈՒՐԱԿԱՑ ՄԱՆԱԶԿԵՐԱՑՈՅ, ՈՐ ԵԿԱՑ ԳԼՈՒԽ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ՅԵՏ ՇԱՀԱԿԱՅ

Ապա յետ մահուն Շահակայ եպիսկոպոսի եկաց գլուխ եպիսկոպոսաց Ասպուրակ ոմն 'ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի, այր քրիստոնէամիտ աստուածապաշտ արդար. և առաջնորդեաց դրանն խորովու: Բայց միայն վասն կրօնիցն հանդերձոյն զեղեալ կարգն ըստ կրօնիցն Զաւինայ գնային սոքա:

## Ե

### ՅԱՂԱԳՍ ՓԱՒՍՏԵԱՑ ԵՒ ԶՈՐԹԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ

Էր առ այնմ ժամանակաւ Փաւստոս եպիսկոպոս. սա 'ի ժամանակս Ներսէսի եպիսկոպոսապետին՝ էր 'ի տան նորին իբրև թելակալ: Սոյնպէս Զորթ այր ներքինի ընդ նմին. քանզի էին 'ի ներքնի հայրապետին 'ի տան իւրում ընդ նորա ձեռամբ երկոտասան եպիսկոպոսք, աթոռակիցք իւր գործակիցք և խորհրդակիցք: Թող զայլոց զաւառաց

էին տեսակ-տեսակ նարոտներով, փքվում, սիգանում էին անվայել կերպով, և քահանաներն անխտիր գործ էին ածում մեռած գազանների մորթեր, որ նույնպես վայել չէր։ Ինքը Ջավենը հագնում էր պճնված զարդարուն զգեստներ[228] նարոտներով ժապավինված, սամույրի, կըն-գումի (սպիտակ աքիսը), գայլի մորթեր էր հագնում, աղվեսի մորթ վրան էր ձգում, և այսպես անխտրաբար թեմ դուրս գալիս նստում։ Որկ-րամոլ, ագահ, անառակ կյանք էր վարում Ջավենը իր բոլոր օրերում։ Նա երեք տարի աթոռը գրավեց մինչև իր մահը։

Գ

## ԿՈՐՃԵԱՑԻ ՇԱՀԱԿԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ՋԱՎԵՆԻ ՏԵՂ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐԸ ԴԱՐՁԱՎ

Ապա Ջավենի մահից հետո նրա փոխանակ եպիսկոպոսների գըլ-խավոր դարձավ Շահակ Կորճեացին երկու տարի։ Սա քրիստոնյա մարդ էր, բայց չհակառակեց այն կարգերին, որ Ջավենն էր դրել ու չվե-րացրեց։ Երկու տարի առաջնորդեց և այս աշխարհից փոխվեց։

Դ

## ՄԱՆԱԶԿԵՐՏԱՑԻ ԱՍՊՈՒՐԱԿԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐՆ ԵՂԱՎ ՇԱՀԱԿԻՑ ՀԵՏՈ

Իսկ Շահակ եպիսկոպոսից հետո եպիսկոպոսների գլխավոր եղավ մի ոմն Ասպուրակ, Աղբիանոս եպիսկոպոսի սերունդից։ Սա մի քրիս-տոնեամիտ, աստվածապաշտ և արդար մարդ էր, որ Խոսրովի արքու-նիքում առաջնորդում էր, բայց զգեստի վերաբերմամբ սա էլ հետևեց Ջավենի հաստատած կարգին։

Ե

## ՓԱՎՍՏՈՍ ԵՎ ԶՈՐԹ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Այս ժամանակներում ապրում էր Փավստոս եպիսկոպոսը, որ Ներ-սես եպիսկոպոսապետի ժամանակ նրա դռանն էր լինում իբրև գործա-կալ։ Նրա հետ՝ ներքին (խորհրդական)[229] էր և Զորթը, որովհետև հայ-րապետի ձեռքի տակ, նրա ներքին խորհրդարանում, տասներկու եպիս-

ամենայն եպիսկոպոսեանն, որ ընդ նովաւ. այլ երկոքեան սոքա յայնց երկոտասանիցն: Եւ էին սոքա 'ի տեսչութիւն աղքատանոցացն հաստատցեալք, և յամենայնի էին հաւատարիմք նորա 'ի ժամանակս նորա, և յամս Խոսրովու և Արշակայ երկուց թագաւորացն թաժանաւորացն, մինչ դեռ ևս կային նոքա կենդանիք:

Զ

ՅԱՂԱԳՍ ԱԲՐԱՀԱՄԱՅ ԵՂԲՕՐ ՓԱՒՍՏԵԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ

Եւ էր եղբայր մի Փաւստեայ եպիսկոպոսի, կրօնազգեաց մենակեաց անապատակեաց լեռնական սքանչելի: Եւ էին լեալ սոքա ազգաւ Հոռոմ. այլ այրս այս մեծաւ վարեօք շրջէր զամենայն աւուրս կենաց իւրոց: Եւ էր սա բնակեալ յԱյրայրատեան գաւառին, և վարէր նա Հոգւով սրբով. շրջէր սա յանապատս մաշկահանդերձ նարակաւոր 'ի լերինն մինչև յօր հանգստեան իւրոյ: Ապա հանգեաւ սա. և բերին յանապատէն զմարմին սորա, թաղեցին 'ի բուն 'ի գեւղն հայրապետին Ներսէսի, որում անուն Ամօքն կոչի. և ամի ամի զյիշատակն նորա կատարէին:

Է.

ՅԱՂԱԳՍ ԱՐՏԻԹԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԲԱՍԵՆՈՅ

Յայնմ ժամանակի երևելի էր յեպիսկոպոսն, որ էին, Արտիթ եպիսկոպոս Բասենոյ, այր ծերունի պատուական և պիտանի: Սրբութեամբ և ճշմարտութեամբ էր վարեալ. իբրև արժանի եղեալ սա Հոգւոյն սրբոյ՝ մեծաւ զօրութեամբ շրջէր, առնէր նշանս մեծամեծս ամս բազումս: Սա աշակերտեալ մեծին Դանիէլի՝ որ էրն յամս Տիրանայ արքայի, և կենդանի կայր յամսն Խոսրովու արքայի և Արշակայ, երկուց թագաւորացըն Հայոց:

Ը.

ՅԱՂԱԳՍ ՅՈՀԱՆՆՈՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ, ԵՒ ՎԱՐՈՒՑ ՆՈՐԱ, ԵՒ ԱՆՄՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՇԱՂԱԿՈՒՏ ԽՕՍԻՑՆ ԵՒ ԳՈՐԾՈՑՆ, ԵՒ ՆՇԱՆԱՑՆ՝ ՈՐ ՅԱՍՏՈՒԾՈՅ 'Ի ՎԵՐԱՅ ՆՈՐԱ ԵՂԵՆ.

Այլ Յոհան եպիսկոպոս, որդի Փառինայ հայրապետի, հինաւուրց. թէ արժան իցէ զնա կոչել եպիսկոպոս: Եւ էր սա այր կեղծաւոր, և երե-

կոպոս կային, նրան արոռակից, գործակից և խորհրդակից, բացի գավառների բոլոր եպիսկոպոսներից, որոնք նրան ենթարկված էին. բայց այս երկուսը այն տասներկու եպիսկոպոսներից էին: Սրանց էր հանձնըված աղքատանոցների տեսչությունը, և նրանք ամեն բանում համատարիմ էին նրա ժամանակ, և երկու բաժանված թագավորների՝ Խոսրովի և Արշակի տարիներում էլ նրանք դեռ կենդանի էին:

## Զ

## ՓԱՎՍՏՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵՂԲԱՅՐ ԱՌՈՍՏԱՄԻ ՄԱՍԻՆ

Փավստոս եպիսկոպոսը մի եղբայր ուներ (Առոստամ անունով), մի սքանչելի կրոնավոր մարդ, որ լեռներում ու անապատներում միայնակյացի կյանք էր վարում: Սրանք երկուսը ազգով հոռոմ[230] էին, բայց սա նշանավոր էր իր վարքով իր կյանքի բոլոր օրերում: Նա բնակում էր Այրարատյան գավառում, առաջնորդվում էր սուրբ հոգով, շրջում էր լեռներում և անապատներում մաշկեղեն հագած, բանջարեղենով կերակրվելով մինչև իր մահվան օրը: Երբ նա վախճանվեց՝ նրա մարմինը անապատից բերին ու թաղեցին Ներսես հայրապետի բուն գյուղում, որ Ամոք է կոչվում, և տարեց տարի կատարում էին նրա հիշատակը:

## Է

## ԲԱՍԵՆԻ ԱՐՏԻԹ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ

Այդ ժամանակ ապրող եպիսկոպոսների մեջ երևելի էր Բասենի Արտիթ եպիսկոպոսը, որ մի պատվական ու պիտանի ծերունի էր: Մաքուր ու ճշմարիտ կյանք էր վարում նա, արժանացել էր սուրբ հոգու շնորհքին և մեծ զորությամբ շրջում էր և մեծամեծ նշաններ էր գործում երկար տարիներ: Սա եղել էր աշակերտ մեծն Դանիելի, որ Տիրան թագավորի ժամանակ էր ապրում, և դեռ կենդանի էր Հայոց երկու թագավորների՝ Խոսրովի ու Արշակի ժամանակ:

## Ը

## ՀՈՀԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ, ՆՐԱ ՎԱՐՔԻ ՈՒ ԱՆՄՏՈՒԹՅՈՒՆԸ, ԽԵՆԵՇ ԽՈՍՔԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԵՐԸ, ԵՎ ԹԵ ԱՍՏՎԱԾ ԻՆՉ ՆՇԱՆՆԵՐ ԵՐԵՎԵՑՐԵՑ ՆՐԱ ՎՐԱ[231]

Այս Հոհան եպիսկոպոսը—եթե կարելի է նրան եպիսկոպոս կոչել—նախկին Փառեն հայրապետի որդի էր[232]: Սա մի կեղծավոր մարդ

վեցուցանէր ինքն զանձն իւր մարդկան պահող և խորգանանդերձս, մինչ զի մոյգս անգամ ոչ ագանէր, այլ զամառն հեսկով պատէր, և զձմեռն կեմով: Եւ յագահութեան առանց չափոյ էր հեղեալ, և ոչ կարէր տալ զագահութիւն իւր ընդ երկիւղին աստուծոյ. այնչափ ինչ, զի զիւս անարժանս և չհաւատալիս գործէր:

Զի էր երբեմն դիպեալ 'ի ճանապարհի ուրեմն, զի նստէր նա 'ի գրաստու վերայ և զայր. եկն դիպեցաւ սմա օտար պատանի մի աշխարհական հեծեալ 'ի ձի, սուսեր ընդ մէջ, թուր զգօտւոյ, աղեղնակապարճ զմիջով. լուացեալ զհերս իւր օծեալ մերձեալ, վարսակալ եդեալ 'ի գլուխ իւր, և օդիկ[59] արկեալ զուսովք իւր. և զայր զճանապարհս իւր. թերևս յաւազակութենէ: Իսկ ձին՝ յորում հեծեալ՝ մեծ հասակաւ, և էր գունաւոր, գնացող, մինչ զի 'ի բացէ տեսանէր եպիսկոպոսն Յոհան զձին, մեծապէս զարմացեալ՝ ակնկառոյց լինէր: Ապա իբրև եկն մերձեցաւ հեծեալն մօտ 'ի նա անդր, ապա սպասեալ Յոհաննու՝ բուռն հարկանէր զերասանակաց ձիոյն, և ասէր. էջ դու վաղվաղակի 'ի ձիոյ այտի, զի բանք են ինձ ընդ քեզ: Ասէ այրն. Զի ոչ դու զիս գիտես, և ոչ ես զքեզ, զի՞նչ այն բանք իցեն, զոր դու ընդ իս իցես խօսելոյ: Մանաւանդ զի այրն արբեալ ևս դիպեցաւ, և շատ յամառեաց այրն իջանել ի ձիոյն: Ապա բռնադատեաց զնա Յոհան, իջոյց 'ի ձիոյ անտի. և առ տարաւ զնա մեկուսի 'ի ճանապարհէն: Եւ առնն խոնարհել հրամայէր և ասէր. Զերիցութեան ձեռն դնեմ 'ի վերայ քո: Իսկ նա տայր պատասխանի զանձնէն, եթէ այր աւազակ սպանող չարագործ և խառնագնաց լեալ 'ի մանկութենէ իմմէ, ես ոչ ինչ եմ արժանի այդպիսի իրաց. և այժմ դեռ 'ի նմին գործ կամ: Եւ շատ 'ի վէգ եկեալ յամառէր այրն, և նա ևս չար քան զնա: Ապա բռնաբար զգետնեալ զայրն, դնէր Յոհան զձեռն իւր՝ առնել զնա երէց. և յարուցեալ հրամայէր լուծանել զհանգոյցս մեկնոցին, և արկանել նմա աղաբողոն: Եւ ասէր. Երթ 'ի գեւղ քո, և լիջիր դու անդ երէց գեղջն՝ ուստի ես: Եւ անգամ ոչ գիտէր զայրն թէ յորմէ՛ գեղջէ իցէ: Ինքն Յոհան մատուցեալ բուռն հարկանէր զձիոյն, և ասէր. Այս ինձ կօշիկք լիցին, փոխանակ զի երէց արարի զքեզ: Իսկ այրն յամառեալ 'ի վերայ ձիոյն չառնոյր յանձն տալ. ապա բռնաբար յինքն հանեալ զձին, և զայրն արձակեաց: Եւ այս ամենայն իրքս վասն ձիոյն եղեն:

Ապա այրն թէ ոչ կամօք՝ աղէբողոն արկեալ, գնայր' ի տուն իւր, և երթեալ մտանէր 'ի մէջ ընդանեաց իւրոց, ասէ ցկին իւր և ցընդանիս. Արիք յաղօթս կամք: Եւ նոքա ասեն. Մոլիս դու, դե՞ւ ուրեմն հարաւ 'ի քեզ: Իսկ նա ասէ. Արիք կամք յաղօթս, վասն զի երէց եմ: Իսկ նոքա զարմացեալ, մերթ չիկնէին, մերթ ծիծաղէին. մինչև բազում անգամ

էր. մարդկանց աչքում իրան ձևացնում էր պահեցող և խարազնազգյաց, մինչև անգամ կոշիկներ չէր հագնում, այլ ամառը (ոտներին) հեսկ էր փաթաթում, իսկ ձմեռը կեմ[233]: Բայց չափից դուրս ընկղմված էր ագահության մեջ. աստծու անն էլ մոռացել էր ագահության պատճառով այն աստիճան, որ անարժան և անհավատալի բաներ էր անում:

Մի անգամ դեպք եղավ նրան ինչ-որ ճանապարհ գնալ. նա նըստել էր գրաստի վրա ու գալիս էր. նրան պատահեց մի անծանոթ աշխարհական մարդ պատանի հասակով, ձի հեծած, մեջքին սուր կապած, գոտուց թուրը կախած, մեջքին աղեղ ու կապարճ, մազերը լվացած, օծած, կոկած, գլխին վարսակալ դրած, ուսին լոդիկ[234] ձգած: Նա գալիս էր իր ճանապարհով, զուցե ավազակությունից: Իսկ ձին, որ նա հեծել էր՝ մեծ էր հասակով, գունավոր և լավ քայլող, այնպես որ, երբ Հոհան եպիսկոպոսը հեռվանից ձին տեսավ՝ զարմացավ ու աչքը վրան մնաց: Երբ հեծյալը եկավ ու նրան մոտեցավ՝ Հոհանը նրան սպասելով՝ հանկարծ բռնեց ձիու սանձից և ասաց. «Իսկույն ձիուցդ իջիր. հետդ խոսելիք ունեմ»: Մարդն ասաց. «Ոչ դու ինձ ես ճանաչում, և ոչ ես քեզ, այդ ի՞նչ բան է որ ուզում ես ինձ հետ խոսել»: Մարդը միևնույն ժամանակ հարբած էր և շատ համառեցավ, չկամենալով ձիուց իջնել: Բայց Հոհանը նրան բռնադատեց, ձիուցը ներքև իջեցրեց և ճանապարհից դուրս տեղ հանեց: Այնտեղ մարդուն հրամայեց խոնարհվել և ասաց. «Քեզ երեց եմ ձեռնադրում»: Իսկ նա պատասխանելով ասում էր իր մասին. «Ես մանկությունից ի վեր եղել եմ ավազակ, մարդասպան, չարագործ, խառնակ վարքի տեր և այժմ էլ նույն գործում եմ գտնվում. Ես արժան չեմ այդ բանին»: Մարդը շատ համառեց ու վիճեց, բայց Հոհանը ավելի խիստ ստիպեց: Վերջը Հոհանը նրան բռնությամբ գետին գլորելով՝ ձեռքը դնում էր նրա վրա՝ երեց դարձնելու համար և հետո ոտքի կանգնեցնելով հրամայում էր վերևի հագուստը ետ անել և հոգևորականի վերարկու ձգել վրան և ասում էր. «Գնա՛ քո գյուղը և այդ գյուղի երեցն եղիր»: Նա նույնիսկ չգիտեր, թե ո՛ր գյուղիցն էր այն մարդը: Հետո Հոհանը մոտենում բռնում էր ձիուց և ասում. «Այս ձին էլ ինձ աշխատավարձ լինի, որ քեզ երեց ձեռնադրեցի»: Մարդը ձիու համար համառեց, չէր ուզում տալ: Բայց նա բռնությամբ ձին խլեց ու մարդուն ճամբու դրեց: Այս բոլորը նա արավ ձիու համար:

Մարդը ակամայից վերարկուն վրան ձգած դառնում էր տուն, գալիս ներս էր մտնում ընտանիքի մոտ և ասում կնոջն ու ընտանիքին. «Վեր կացեք, աղոթք անենք»: Իսկ նրանք ասում են. «Գժվե՞լ ես, ի՞նչ է, քո չե՞ս դիվահարվել»: Իսկ նա ասաց. «Վեր կացեք աղոթք անենք, ես երեց եմ»: Նրանք զարմացել էին, որը կարմրում էր, որը

յամառեալք, ապա ուրեմն հաւանեցան կալ յաղօթս ընդ նմա: Ապա ասէ կինն ցայրն իւր. Ո՞չ դու երախայ էիր, և չէիր մկրտեալ: Ասէ այրն ցկինն իւր. Ապշեցոյց, չետ յիշել. և ոչ ես յիշեցի զայդ ասել ցնա. զիս էրէց արար, և ձին սանձաւ թամբաւ առ և անց: Եւ ասեն ցայրն ընդանիքն իւր. Յարիցես անդրէն գնասցես առ եպիսկոպոսն, և ասասցես. Մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց: Իսկ նորա յարուցեալ գնացեալ առ եպիսկոպոսն, ասէ ցնա. Ես մկրտեալ չէի, զի՞ արարեր զիս երէց: Եւ ասէ Յոհան. Սափորով միով ջուր բերէք: Եւ առեալ զջուրն էարկ զգըլխով նորա, և ասէ. Երթ, մկրտեցի զքեզ: Եւ արձակէր զայրն վաղվաղակի յիւրմէ:

## ՅԱՂԱԳՍ ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ

Երբեմն սոյն Յոհան անցանէր առ այգեօք ուրումն. և էր ժամանակն զայգիսն յատելոյ: Աղաղակէր առ նա այր մի յայգւոյն, և ասէ. Օրհնեա, տէր եպիսկոպոս, զմեզ և զայգիսս: Ասէ Յոհան. Փուշ և տատասկ բուսցի: Ասէ այրն. 'ի մարմինդ քո բուսցի փուշ և տատասկ, փոխանակ զի տարապարտուց անիծանես զմեզ: Եւ եղեն նշանք յաստուծոյ. զի իբրև չոգաւ եպիսկոպոսն 'ի վանս իւր, հասին հարուածք 'ի վերա նորա, սկսաւ ընդ ամենայն անդամս մարմնոյ նորա որպէս զփուշ հարկանել: Եւ մեծապէս շտապեալ անկեալ 'ի տանջանս չարաչարս հարուածոց, և 'ի մեծ տագնապի կայր աւուրս բազում: Ապա յղեաց կոչեաց առ ինքն զայգորդն, աղաչեաց զնա առնել 'ի վերայ նորա աղօթս, զի փրկեսցի սա 'ի ցաւոցն: Այգորդն ասէր. Իսկ ես ո՞վ եմ, զի կարեմ զքեզ օրհնել կամ անիծանել. թող թէ զայր եպիսկոպոս: Իսկ նա բռնադատէր զնա յայնժամ. մինչև յառնէր այգորդն կայր յաղօթս և ասէր. Տէր աստուած, դու գիտես՝ զի ես այր մեղաւոր եմ և անարժան, ոչ գիտեմ զաղմուկս՝ յորում ըմբռնեցայս. դու փրկեա զիս յայս 'ի չարէս, [illegible] ասեն՝ թէ զայր եպիսկոպոս դու անիծեր, և ասեն՝ քո բանիւ եղև: Զի լաւ էր ինձ մահ. քանզի չգիտեմ զայս՝ զոր ինչ զինէն ասեն: Եւ զայս ասացեալ՝ անդէն բժշկեցաւ եպիսկոպոսն, և սկսաւ յամենայն մարմնոցն փուշն 'ի բաց թափել, և էր իբրև զփուշ խոտոց. վաղվաղակի յարուցեալ ողջացաւ յախտէն:

Ժ

## ՅԱՂԱԳՍ ՆՈՐԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ

Սոյն Յոհան եպիսկոպոս որդի Փառինայ յորժամ երթայր առ թագաւորն Հայոց, խաղակատակ լինէր նոցա. որպէս խաղալով զանձն իւր կրթէր յագահութեան, որում ծարաւեալ պասքեալ փափաքէր, սակայն միհանէսք այն էին նորա: 'ի չորք անկեալ յոտս և 'ի ձեռս սողէր առաջի թագաւորացն, և գուղտու զձայն ածէր կառաչելով, զօրէն ուղտու այնպէս փարելով: Ընդ կառաչելն ապա մի մի բան խառնելով առնէր 'ի ձայն կառաչելոյն, ասելով՝ թէ ուղտ եմ, ուղտ եմ, և զարքայի զմեղս բառնամ. դիք 'ի վերայ իմ զմեղս արքայի, թող բառնամ: Իսկ թագաւորքն զմուրհակս գիւղից կամ ագարակաց գրեալ և կնքեալ դնէին 'ի վերայ ողինն Յոհաննու փոխանակ ընդ մեղաց իւրեանց. և 'ի թագաւորացն Հայոց ստացաւ իւր գեւղս և ագարակս և գանձս յուղտն լինելոյ և զմեղսն բառնալոյ ըստ բանիցն: Այսպիսի էր այրս Յոհանէս կապեալ յըռժգութեան և յագահութեան զամենայն աւուրս կենաց իւրոց. զայսպիսի գործս գործէր վասն ագահութեան, որ չէր արժան:

ԺԱ

## ՅԱՂԱԳՍ ԿԻՒՐԱԿՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Եւ էր եպիսկոպոսն Տայոց Կիրակոս, որ Շահապ անուն կոչէր, այր ճշմարիտ աստուածապաշտ ըստ կամացն աստուծոյ, և ուղիղ ճշմարտութեամբ առաջնորդէր ժողովրդեանն իւրում. և վարէր զեպիսկոպոսութիւն իւր ըստ կամացն աստուծոյ զամենայն աւուրս կենաց իւրոց:

ԺԲ

## ՅԱՂԱԳՍ ՋՈՐԹՈՒԱՋՈՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՎԱՆԱՆԴԱՅ

Եւ Ջորթուազ եպիսկոպոս Վանանդայ գաւառին, այր սուրբ պարկեշտ արժանի աստուծոյ, արբեալ Ոգւով սրբով. քրիստոնէութեամբ գնայր գործէր, առաջնորդէր իւրում ժողովրդեանն ըստ կամացն աստուծոյ:

## Ժ

## ՆՈՒՅՆ ՀՈՀԱՆԻ ՄԱՍԻՆ

Այս Հոհան եպիսկոպոսը, Փառենի որդին, երբ գնում էր Հայոց թագավորների մոտ՝ նրանց խեղկատակն էր դառնում: Խաղալիք դառնալով նա ագահության էր ձգտում, որին անհագաբար ծարավ էր և (այդ խեղկատակությունները) նրան իբրև միջոց էին ծառայում[235]: Նա թագավորների առաջ ձեռների ու ոտների վրա ընկնելով չորեքթաք էր տալիս, ուղտի նման կառաչում էր, ուղտի նման քալելով: Կառաչելու ժամանակ մի-մի խոսք էր խառնում կառաչելու ձայնով ու ասում էր. «Ուղտ եմ, ուղտ եմ թագավորի մեղքերը բառնում եմ, վրաս դրեք թագավորի մեղքերը, որ բառնամ»: Իսկ թագավորները գյուղերի կամ ագարակների պարգևագրերը գրելով ու կնքելով դնում էին Հոհանի կռնակի վրա իրենց մեղքերի փոխանակ: Եվ այսպես ուղտ լինելով ու մեղքեր բառնալով նա Հայոց թագավորներից ձեռք բերեց գյուղեր, ագարակներ ու գանձեր: Այսպիսի մարդ էր այս Հոհանը, որ իր բոլոր կյանքում վարակված էր ագահությամբ ու ժլատությամբ և ագահության պատճառով անարժան գործեր էր կատարում:

## ԺԱ

## ԿԻՐԱԿՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ

Տայքի Կիրակոս եպիսկոպոսը, որ Շահապ էր կոչվում, ճշմարիտ և աստվածապաշտ մարդ էր, աստծուն հաճելի. նա ճշմարիտ ուղղությամբ առաջնորդում էր իր ժողովրդին և իր կյանքի բոլոր օրերում եպիսկոպոսական պաշտոնը կատարում էր աստծու կամքի համաձայն:

## ԺԲ

## ՎԱՆԱՆԴԻ ԶՈՐԹՎԱՂ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ

Վանանդ գավառի Զորթվաղ եպիսկոպոսն էլ սուրբ և պարկեշտ մարդ էր, աստծուն արժանի, լցված էր սուրբ հոգով. Քրիստոնեաբար էր վարվում ու գործում, իր ժողովրդին առաջնորդում էր աստծու կամքի համաձայն:

## ԺԳ

### ՅԱՂԱԳՍ ՏԻՐԿԱՆ ԵՒ ՄՈՎՍԷՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ

Եւ էին երկու եպիսկոպոսք Բասենայ գաւառին, Մովսէս և Տիրիկ այրք լաւք հրեշտակակրօնք, սուրբ, հաւատացեալք, հրաւիրմանն արժանիք: Առաջնորդէին իւրաքանչիւր ժողովրդոց 'ի ճանապարհին աստուծոյ զամենայն աւուրս կենաց իւրեանց:

## ԺԴ

### ՅԱՂԱԳՍ ԱՀԱՐՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Էր զայնու ժամանակաւ Ահարոն եպիսկոպոս 'ի մէջ Հայոց աշխարհի. այր երանելի և անուանի, քաջ առաքինի. առաջնորդ իւրոց ժողովրդոց լուսաւորապէս զամենայն աւուրս կենաց իւրոց:

## ԺԵ

### ՅԱՂԱԳՍ ԳԼԽԱՒՈՐԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԱՍՊՈՒՐԱԿԱՑ

Եւ էր գլխաւոր եպիսկոպոսաց Հայոց Ասպուրակ. այր սուրբ և բարեպաշտօն, երկիւղած յաստուծոյ և 'ի մարդկանէ: Բայց ոչ ինչ կարէր յանդիմանութեամբ խօսել ընդ ումեք. այլ ինքն 'ի լռութեան էր և 'ի համեստութեան 'ի զգաստութեան 'ի պարկեշտութեան 'ի պահս և յաղօթս, յամենայն ժամ աղաչէր զաստուած: Բայց 'ի հանդերձն զգենլոյ՝ ըստ կրօնիցն Ջաւինայ գնայր նա. ագանէր դամղայեալս և ժապաւինեալս: Բայց էր սա այր քաղցր և խոնարհ, բարերար և մարդասէր զամենայն աւուրս կենաց իւրոց:

## ԺԶ

### ՅԱՂԱԳՍ ԳՆԴԱՅ ՍՐԲՈՅ ԵՒ ԱՌԱՔԻՆՈՅ, ՈՐ ԷՐ ԳԼԽԱՒՈՐ ՅԱՅՆՄ ԺԱՄԱՆԱԿԻ ԱՄԵՆԱՅՆ ԱԲԵՂԱՅԻՑՆ ՀԱՅՈՑ ԱՆԱՊԱՏԱՒՈՐԱՑՆ ՄԵՆԱԿԵՑԱՑՆ ԵՒ ՎԱՆԵՐԱՅԻՑՆ

Եւ էր Գինդս այս 'ի Տարօն գաւառէ, և լեալ սա աշակերտ մեծին Դանիէլի. և յետ նորա էր գլուխ աբեղայից, և վարդապետ միանձանց, և առաջնորդ մենակեցաց, և վերակացու վաներայից, և ուսուցիչ ամենայն անապատաւորաց. և տեսուչ ամենեցուն՝ որք միանգամ վասն սի-

ԺԳ

ՏԻՐԻԿ ԵՎ ՄՈՎՍԵՍ ԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Թասեն գավառում երկու եպիսկոպոս կային, Մովսես և Տիրիկ. առաքինի, հրեշտակակերպ սուրբ և ճավատացյալ մարդիկ, (աստծու) հրավիրման արժանի: Նրանք իրենց ժողովրդներին առաջնորդում էին աստծու ճանապարհով իրենց կյանքի բոլոր օրերում:

ԺԴ

ԱՀԱՐՈՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ

Այդ ժամանակներն Հայոց աշխարհում ապրում էր Ահարոն եպիսկոպոսը, երևելի անվանի, քաջ և առաքինի մարդ: Նա իր ժողովրդին առաջնորդում ու լուսավորում էր իր կյանքի բոլոր օրերում:

ԺԵ

ԱՍՊՈՒՐԱԿ ԳԼԽԱՎՈՐ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍԻՆ

Հայոց եպիսկոպոսների գլխավորն էր Ասպուրակ, որ մի սուրբ և բարեպաշտ մարդ էր, աստծուց ու մարդկանցից երկնչող. բայց չէր կարող մեկին ճանդիմանական խոսք ասել, այլ ինքը լուռ էր մնում, համեստ, զգաստ ու պարկեշտ, պահեցողությամբ և աղոթքներով: Բայց զգեստի վերաբերմամբ Զավենի մուծած կարգով էր վարվում. հագնում էր զարդարուն և ժապավինված զգեստներ: Բայց նա քաղցր ու խոնարհ, բարեգործ և մարդասեր մարդ էր կյանքի բոլոր օրերում:

ԺԶ

ՍԻՆԻՔ ԵՎ ԱՌԱՔԻՆԻ ԳԻՆԴԻ ՄԱՍԻՆ, ՈՐ ԱՅՆ ԺԱՄԱՆԱԿ ՀԱՅՈՑ ՎԱՆՔԵՐԻ ԲՈԼՈՐ ԱՐԵՂԱՆԵՐԻ ԵՎ ՄԻԱՅՆԱԿՅԱՑ ԱՆԱՊԱՏԱԿԱՆՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐՆ ԷՐ.

Այս Գինդը Տարոն գավառից էր, աշակերտել էր մեծ Դանիելին և նրանից հետո դարձել էր աբեղաների գլխավոր, միայնակյացների վարդապետ և առաջնորդ, վանքերի վերակացու, բոլոր անապատականների ուսուցիչ և առհասարակ տեսուչ այն բոլոր մարդկանց, որոնք աստծու սիրու համար հրաժարվել էին աշխարհից և բնակում էին անապատներում, հաստատվելով քարանձավներում, այրերում և երկրի ծեր-

րոյն աստուծոյ յաշխարհէ էին մեկնեալ, 'ի յանապատս բնակեալ, 'ի քարանձաւս ամրացեալք յայրս և 'ի քարածերպս երկրի, և միահանդերձք բոկագնացք զգաստացեալք խոտաճարակք ընդաքուոք արմատակերք, զորէն գազանաց 'ի լերինս շրջէին՝ լեշկամաշկօք և մորթօք այծենեօք, նեղեալք տառապեալք և տարակուսեալք, յանապատի մոլորեալք, 'ի ցուրտ և 'ի տօթ, 'ի քաղց և 'ի ծարաւ վասն սիրոյն աստուծոյ:

Զայսպիսի ինչ համբերութիւն առեալ կրէին յանձինս իւրեանց զամենայն աւուրս կենաց իւրեանց. զի ոչ արժէ աշխարհս բնաւ զնոսա, որպէս և գրեալ է. զորէնս երամոյ թռչնոց բնակեալ էին սոքա 'ի ծագս[60] վիմաց, 'ի սորս քարանձաւաց, անինչք անստացուածք անխնամք, առանց դարմանոց՝ ամենևին չտանել մարմնոց: Եւ էր նոցա բուն գլխաւոր սուրբն Գինդ, զի առ հասարակ ամենայն մարդիկ երկրին Հայոց անուանեալ կոչէին սմա վարդապետ: Բայց էին և 'ի նոցունց այլք աշակերտք, որք նմանէին իւրեանց վարդապետին և նորա ձեռինն, որոց անուանք այս են. Վաչակ, Արտոյտ, Մարախ. և Տրդատ լեալ էր սոցա ընկեր: Իսկ առ մեծին քահանայապետին Ներսէսի էր լեալ սարկաւագապետ, և յետ մահուն Ներսէս 'ի նոյն յառաջին վարդապետսն յանապատաւորաց դասս բեւկոխեաց: Անոյր սուրբն Գինդ և զՄուշէ մանուկ ձեռասուն, հաղորդէր վարուցն մեծին Գնդայ, և այլք բազումք էին նոցա աշակերտք երեշտակակրօնք, զորոց զվարս ոք պատմել ոչ բաւեսցէ:

Եւ էր սուրբն Գինդ լի Հոգւով աստուծոյ. և ոյք ընդ նմա, բստ նմին օրինակի առնէին սոքա նշանս մեծամեծս և զօրութիւնս բազումս և բժշկութիւնս հիւանդաց յանուն տեառն Յիսուսի Քրիստոսի: Եւ ընդ բազում հեթանոս տեղիս շրջէին յաշխարհս հեռաւորս, և 'ի սփիւռս հեթանոսաց դարձուցանէին զմոլորութիւն բազմաց. և զբազում մարդիկ ածէին 'ի գիտութիւն կենաց և 'ի ճանապարհն ճշմարտութեան: Եւ սուրբն Գինդ լնոյր զամենայն անապատս մենակեցօք, և զամենայն շէնս վանօրայ, և բազում յաշխարհի ուղղեալ կացուցանէր կարգս մարդկան զաստուածեղէն կրօնիցն: Բայց սակայն ինքն առեալ վիճակ բնակութեան ունէր զանապատն, ուստի բխեալ հոսեն ակունք Եփրատ գետոյն: Անդէն բնակեալ ընդ ծագս վիմացն, ուր յառաջու կայեանքն էին մեծին Գրիգորի առաջնոյ, որում տեղեացն Ոսկիք կոչեն, 'ի նոյն ծագս էր բնակեալ մեծն անապատաւորաց Գինդ: Իսկ սուրբն Մուշէ առ նմա հանապազորդեալ էր. բայց այլքն զայլ գաւառ շրջէին հրամանաւ իւրեանց գլխաւորին Գնդայ: Եւ սրբոյն Տրդատայ կայեանք բնակութեան էր 'ի գաւառն Տարօնոյ, շինեալ զիւր եղբայրանոցս:

պերում. մի զգեստ ունեին նրանք, շրջում էին բոբիկ ոտներով, զգաստ կյանք էին վարում, կերակրվում էին խոտերով, ընդեղեններով; արմատներով. գազանների նման շրջում էին լեռներում, մաշկերով և այծի մորթերով ծածկված, նեղվում, տառապում, չարչարվում էին, անապատում մոլորված, ենթարկվում էին ցրտի և տոթի, քաղցի և ծարավի՝ աստծու սիրու համար:

Այսպիսի կյանք նրանք հանձն էին առնում համբերությամբ իրենց կյանքի բոլոր օրերում, քանի որ աշխարհս ընավ արժեք չուներ նրանց համար, ինչպես գրված է: Թռչունների երամների նման նրանք բնակում էին ժայռերի ծակերում, քարանձավների ծերպերում, առանց գույքի և ստացվածքի, առանց խնամքի և դարմանի, մարմնի մասին ամենևին չհոգալով: Եվ սրանց գլխավորն էր սուրբ Գինդը, որին Հայոց աշխարհի բոլոր մարդիկ առհասարակ վարդապետ էին կոչում: Բայց կային նրանց մեջ և ուրիշ աշակերտներ, որոնք նմանում էին իրենց վարդապետին և նրա ձեռնասուններն էին, որոնց անուններն են Վաչակ, Արտոյտ, Մարախ: Սրանց ընկերն էր և Տրդատը[236], որ մեծ քահանայապետ Ներսեսի ժամանակ սարկավագապետ էր, իսկ Ներսեսի մահից հետո անցավ մտավ անապատականների կարգի մեջ, հիշյալ վարդապետների մոտ: Սուրբ Գինդն առնում էր իր ձեռնասուն մանուկ Մուշեղին և հաղորդակից էր դարձնում իր վարքին: Նա ուներ նաև ուրիշ շատ հրեշտակաբարո աշակերտներ, որոնց վարքը պատմել ոչ ոք չէր կարող:

Եվ սուրբ Գինդը և նրա հետ եղողները լցված էին սուրբ հոգով, նրա նման սրանք էլ կատարում էին մեծամեծ նշաններ և շատ սքանչելիքներ, հիվանդներ էին բժշկում Հիսուս Քրիստոսի անունով: Եվ շատ հեռավոր աշխարհներ էին շրջում, հեթանոսների գավառներում, և շատերին դարձնում էին մոլորությունից, սովորեցնում էին նրանց (հոգևոր) կյանքի գիտությունը և ճշմարտության ճանապարհը: Եվ սուրբ Գինդը լցնում էր բոլոր անապատները միայնակյացներով և բոլոր շեները վանքերով, և աշխարհում մարդկային կյանքի ուղիղ կարգեր էր սահմանում ըստ աստվածային կրոնի: Նա իր համար բնակության տեղ էր ընտրել այն անապատը, որտեղից բխում են Եփրատ գետի ակունքները, այնտեղ նա բնակվում էր ժայռերի ծակերում[237], առաջին մեծն Գրիգորի նախկին կացարանում, որ տեղին Ոսկի էին ասում. այս նույն ծակերում բնակվում էր Գինդը՝ անապատականների մեջ մեծը: Սուրբ Մուշեղն շարունակ նրա մոտ էր լինում, իսկ մյուսները շրջում էին այլ գավառներում իրենց գլխավորի՝ Գինդի հրամանով: Իսկ սուրբ Տրդատը բնակություն էր հաստատել Տարոն գավառում, որտեղ իրեն համար եղբայրանոցներ էր շինել:

---

## ԳՐԱԲԱՐ ՏԵՔՍՏԻ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Յօրինակի միում *ընդ միմեանս*։

2 Յօրինակի միում *՚ի աններոյն*։

3 ՚Ի կրկին օրինակս *գոյն եռլալ*։

4 Յօրինակի միում *ուժագին*։

5 Յօրինակի միում *Տարօնից*։

6 Յամ օրինակս *Կողդայ*։

7 Յերկուս օրինակս *Վահրան*, և ՚ի միւս այլ *Վահրվան*։

8 Յամ օրինակս *զթիկունսն տէրունիսն*։

9 Յօրինակի միում *ընակ տերանց*։

10 Յերիս օրինակս *յՕկեղեաց գաւառն*։

11 ՚Ի չորս օրինակս *գնացեալք*։

12 Յերկուս օրինակս *խոտորատուր*։

13 Յամ օրինակս *որում անուն էր որդւոյ*։

14 Յօրինակի միում *պէլասպիկ*։

15 Յերիս օրինակս *միահանգոյն*։

16 Յերիս օրինակս *իրաւափառն*։

17 Յամ օրինակս *՚ի մայրաքաղաքացն*։

18 Յերկուս օրինակս *ընդ պատարօք*, ՚ի միում *ընդ պատարագօք*, ի միւսում *ընդ պատրուակօք*, և ՚ի միւս այլ *ընդ պատրօք*։

19 Յօրինակի միում *ուերակք*։

20 Յօրինակի միում *տառապաէր*։

21 Յերիս օրինակս *միահաղոյնս*։

22 Յամ օրինակս *հաստատացեն բանքն*։

23 Յերիս օրինակս *զի քանի*։

24 Յամ օրինակս *հաւատ*։

25 Յամ օրինակս *ազատ առնէր*։

26 Յերկուս օրինակս *տաղտկապէին*։

27 Յամ օրինակս *քան զմի օր*։

28 Յերկուս օրինակս *Մխաա*։

29 ՚Ի չորս օրինակս *սիներքորքն*։

30 Յերկուս օրինակս *միջամուխ լինէր*։

31 Յերկուս օրինակս *Նորշիրական*։

32 Յօրինակի միում *Գողորեաց*, և յայլում *Գուղորեաց*։

33 Յօրինակի միում *գոյժ ունել*, յայլում *ոյժ ունել*, և ՚ի միւս այլ *յոյժ ունել*։

34 *Յօրինակի միում* բռնազբօսեցին:

35 Յերկուս օրինակս *եկիցէ*։

36 Յերիս օրինակս *խաղացեալ*

37 'Ի չորս օրինակս *մտանել*

38 Յամ օրինակս և *Համազասպուհի*

39 *Յերից օրինակս* անկիալս:

40 'Ի միում օրինակի *ի վայր վարէին*

41 'Ի չորս օրինակս *Մուշեղն իբրև Գայլ*

42 Յօրինակի միում *օրինացն*

43 Յամ օրինակս 'ի *Բաշշանն*

44 Յամ օրինակս *արանց քաջաց*

45 Յօրինակի միում *յԱղուանս*

46 Յօրինակի միում մատնեսցես:

47 Յամ օրինակս *շնորհակալ*

48 Յօրինակի միում *պատենազէնք*

49 Յամ օրինակս *և զոր օրհնէր և զոր անիծանէր*

50 'Ի չորս օրինակս *այժմ*

51 Յերիս օրինակս *չեք ընդ*. և 'ի միում օրինակի որն Նպիփան ընզեր որդոյն Շա–դիտայի:

52 Յերկուս օրինակս *աշակերտաց*

53 'Ի չորս օրինակս *ատենողն*

54 Յերկուս օրինակս *ընթրիսն ուտէր*

55 Յամ օրինակս *Կոն.* ուղղեցաք ըստ յաջորդացն:

56 Յամ օրինակս *յապազէն*

57 Յամ օրինակս զպիտոյսս *ոռնկացն*

58 *Յօրինակի* միում *միմենց*

59 Յօրինակի միում *յօդիկ*

60 Յերկուս օրինակս *ի ծակս*

## ԱՇԽԱՐՀԱԲԱՐ ՏԵՔՍՏԻ ՄԱՆՐԹԱԴՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բուզանդարան Պատմութիւնք: Փավստոսի Պատմության հեղինակը մի մականուն է կրում, որ գրչության մեջ երկու տարբեր ձև ունի— 1. Բյուզանդ, Բյուզանդացի, և 2.Բուզանդ, Բուզանդացի, Բուզանդարան: Առաջին ձևը պատահում է հենց գրքի վերնագրում— «Փավստոսի Բիւզանդացւոյ պատմութիւն Հայոց», և Երրորդ դպրության վերջում, որտեղ գրված է. «Կատարեցաւ Երրորդ դարգ (տպ. դարք) Փաւստեայ Բիւզանդեայ մեծ ժամանակագրերի, որ էր ժամանակագիր Յունաց»: Երկրորդ ձևը պատահում է պատմության չորս դպրությունների վերնագրերում չորս անգամ— «Բուզանդարան Պատմութիւնք», նույնպես և Ղ. Փարպեցու Պատմության մեջ երկու անգամ— Փաւստոս կամ Փոստոս Բուզանդացի: Զանց եմ առնում ավելի նոր հեղինակներից:

Ո՞րն է այս երկու գրություններից նախնականը, իսկականը:

Նկատի ունենալով, որ Բուզանդ, Բուզանդարան, Բուզանդացի անհասկանալի ձևեր են, անծանոթ ծագումով ու նշանակությամբ՝ դեռ հին ժամանակ փորձեր են արել այս անծանոթ բառը ստուգաբանել Բյուզանդ, Բյուզանդացի, նմանահնչյուն բառերով: Այս սխալ ստուգաբանության առաջինը պետք է լինի Երրորդ դպրության վերջումը դրված տեղեկությունը— «Փաւստեայ Բիւզանդեայ մեծ ժամանակագրի». սակայն այս տեղեկության հեղինակն է ոչ թե գրքի հեղինակ Փավստոսը, այլ նրա Պատմության խմբագրողը, որ այդ ստուգաբանության հիման վրա ավելացրել է «Որ էր ժամանակագիր Յունաց»: Այն ինչ մենք այժմ հաստատ գիտենք, որ Պատմության հեղինակը ո՛չ հույն է և ոչ հունաց ժամանակագիր,այլ զտարյուն հայ է, հայկական զրույցների հավաքող: Հետաքրքրական է, որ Ղ. Փարպեցին, խմբագրի վերոհիշյալ խոսքից խաբվելով. Փավստոսին կոչում է Բյուզանդիայում ուսած մարդ, և չնայելով սրան. նա հավատարմությամբ երկու անգամ պահպանել է Բյուզանդացի գրությունը: Ուրեմն, իմ կարծիքով՝ վերը հիշված երկու ձևերից սկզբնականը՝ նախնականն է Բուզանդ,— արան,— ացի, իսկ Բյուզանդացի ձևը նրա անհաջող ստուգաբանությունն է:

Ի՞նչ է նշանակում Բուզանդ, Բուզանդարան:

Ես դարձրի ուշադրություն Բուզանդ բառի վրա և գտա նրա մեջ երկու հնդեվրոպական արմատ. առաջինն է, սանսկրիտ bhu, bhav, սլավոներեն бы, бу, որոնք նշանակում են լինել, գոյություն ունենալ (быть), այս բառից էլ սլավոներեն և ռուսերեն быт, быль, былина զրույց, առասպել. Երկրորդ արմատն է զանդ, որից ունենք զանդիկ, զենդ, զենդերեն: Այս բառն էլ նշանակում է բացատրություն, մեկնություն (изложение, комментарий), այնպես որ ամբողջ Բուզանդ բառը պետք է նշանակել եղելությունների, զրույցների մեկնություն կամ բացատրություն, կամ եթե զանդ արմատը վերցնենք իբրև ներգործական բայարմատ— պետք է նշանակե եղելությունների, զրույցների բացատրիչ՝ մեկնիչ: Ավելի ազատ թարգմանությամբ՝ համապատասխան հայերեն բանաստեղծ բառի. (վերցնելով բան բառի 5 և 7 նշանակությունները ըստ իմ բառարանի) այս բացատրությունից բխում է, որ Բուզանդ բառը ոչ թե անձի հատուկ անուն է, այլ աշուղական կոչում, ինչպես հնուց ի վեր սովորություն է եղել, որ մեր աշուղները ընտրել են իրենց հա-

մար կոչումներ պարսկական և տաճկական բառերից (Սայաթ-Նովա, Շեյդա, Ջիվանի և այլն). Նույնպես վարվել է և անծանոթ Փավստոս հեղինակը, պարսկական բուզանդ բառը ընտրելով իբրև աշուղական կոչում:

Սրանով պարզվում է բուզանդարան բառի նշանակությունը, իբրև բուզանդների ժողովածու, նմանությամբ երգարան, տաղարան և այլն բառերի և նշանակում է ժողովածու զրույցների, մեկնության, կամ ազատ թարգմանության բանաստեղծության: Բուզանդարան բառին կից «պատմութիւնք» բառը, որ չորս անգամ կրկնվում է (Բուզանդարան Պատմութիւնք) իմ կարծիքով Բուզանդարան բառի հայերեն թարգմանությունն է, այսինքն ժողովածու պատմությունների, պատմվածքների:

Իմ այս բացատրությունը ես համառոտ կերպով ուղարկել էի Թեհրան, իմ բարեկամ հմուտ իրանագետ Ռուբեն Աբրահամյանին, նրա կարծիքն իմանալու համար: Նա ինձ նամակով հետևյալը պատասխանեց. «Ձեր Բյուզանդ բառի բացատրությունը շատ սրամիտ է և օրիգինալ: Միայն սանսկրիտ bhu և սլավոնական бу. бы-ից առաջ կարծում եմ պետք է գտնել բառի իրանական արմատը, bav և ներկայինը bu (S. Bariholomae. Altirenisches Wovrterbuch, էջ. 917) նույն իմաստով: Բուզանդ և ամբողջությունը հիշեցնող բառ չգտա... բայց կարծում եմ՝ թե ձեր բացատրությունը հիշածս հավելումով այնքան գոհացուցիչ է, որ այդ անհրաժեշտ չէ. մանավանդ բառը կազմված է հայկական հողի վրա, ուրեմն նման բառի գոյությունը պարսկերենում պարտադիր չէ»:

2. Թէ՛ այստեղ և թէ՛ բնագրի վերնագրում ավելացրինք «և Արիստակեսի», որ արդարանում է ինչպես գլխի բովանդակությամբ, այնպես էլ «Նոցունց շիրմացն» խոսքով, որ գործ է ածված հոգնակի:

3. Բնագրում «Ի սկիզբն», որ ուղղական հոլով է և ցույց է տալիս, թե այս Երրորդ դպրությունը Պատմության սկիզբն է, այսինքն՝ չկարծվի, թե պակասում են առաջին և երկրորդ դպրությունները: Սրան համապատասխան՝ վեցերորդ դպրության վերնագրում դրված է «Վերջ»: Ըստ այսմ՝ Փավստոսի Պատմությունն սկսվում էր երրորդ դպրությամբ և վերջանում էր վեցերորդ դպրությամբ:

4. Գայթակղության քար է դարձել բանասիրության համար այս ֆրազը, որից այնպես է երևում, թե հեղինակը գրել է Սանատրուկ թագավորից առաջ պատահած անցքերի («է, ինչ մեր Պատմութիւն՝ որ առաջին է») և Տրդատից հետո պատահած անցքերը (=«է, ինչ որ վերջին»). իսկ միջին ժամանակի, այսինքն Սանատրուկից մինչև Տրդատի անցքերը գրված են ուրիշների ձեռքով: Ըստ այսմ դուրս է գալիս, որ Փավստոսի Պատմությունն սկզբից թերի է հասել մեր ձեռքը, մի բան՝ որ հակասում է հեղինակի նախընթաց հայտարարությանը «թե այս Պատմությունը բաղկացած է չորս մասյանից»: Այս հարցի մասին մանրամասն տես առաջաբանում:

5. «Կոտակ» պահլավերեն բառ է, kötak, որ նշանակում է «մանուկ, երեխա, փոքր», որ գործ է ածված իբրև մականուն Տրդատի որդի Խոսրով թագավորի: Խորենացին (Գ. Ը.) նրան կոչում է հայերեն բառով՝ Փոքր և շեշտում է նրա կարճահասակ լինելը:

6. «Նշան», ինչպես և «արվեստ», «զորություն», (սովորաբար հոգնակի ձևով) և «սքանչելիք» մեր դասական մատենագիրները գործ են ածում նշանակելու համար այնպիսի երևույթներ ու գործողություններ, որոնց մենք այժմ հրաշք անունն ենք տալիս: Հրաշք բառն անգործածական է դասական հեղինակների մոտ: Փավստոսի այստեղ ակնարկած «նշանները» հիշատակված են Ագաթանգեղոսի մոտ (Քնն. հրատ. եր. 405, 424), որտեղ պատմվում է, թե երբ մարդիկ, մուրճերով աշխատելով չէին կարողանում մեհյանները քանդել, ս. Գրիգորը խաչի նշանով նրանց հիմնահատակ կործանեց ու միանգամայն անհետացրեց կամ հրդեհով սպառեց:

7. «Մեհյան» ծագում է պահլավական meh=Միհր բառից՝ հայերեն «յան» մասնի-

կով, ուրեմն նշանակում է Միհրական պաշտամունքի տաճար, որտեղ անշեջ կրակ էին պահում. բացի սրանից՝ ընդհանրապես նշանակում է հեթանոսական պաշտամունքի տաճար, կռատուն, երբեմն նաև բագին: «Բագին» ծագում է պահլավերեն bag=աստված բառից («-ին» մասնիկով և նշանակում է աստվածային պաշտամունքի տեղ, մեհյան, բայց մասնավորապես մեհյանի այն մասը, որտեղ զոհեր էին մատուցանում: Ըստ այսմ՝ մեհյանը համապատասխանում է մեր եկեղեցուն, իսկ բագինը՝ սեղանին: Բագ արմատից շատ բառեր կան հայերենի մեջ, որոնց թվում Բագ-ավան, Բագ-արան, Բագայ-առինճ. նույն արմատից են ռուսերեն бог և Բագու հին անունը, որ այսպես կոչվել է՝ դեռ շատ հին ժամանակ այդտեղ հողի երեսին վառվող նավթի կրակի պատճառով, որը համարում էին Միհրական անշեջ կրակ:

8. Բնագիրն այստեղ ունի «ժողովել ի յիշատակ սրբոցն որ էին անդ, կատարել անդ ամի ամի եօթն անգամ»: Մենք այստեղ հետևեցինք Նորայրի ուղղագրության (Կորյուն, եր. 274)— Կատարել անդ ամի յեօթն սահմի ամսոյ»: Նորայրի այս ուղղումը հիմնված է Ագաթանգեղոսի վրա (եր. 425), որտեղ գրված է. «Կատարել անդ ամ յամէ... զյիշատակ սրբոցն, որ օր եօթն էր սահմի ամսոյ» (var. ամսոյն սահմի): Փավստոս անշուշտ նկատի ունի Ագաթանգեղոսի այս վկայությունը, ըստ որի և պետք է ուղղել նրա մեջ մտած աղավաղությունը:—Սահմի ամիսը հայոց տոմարի երրորդ ամիսն էր: Շատ բանասերներ նրան ծագեցնում են վրաց «sami» բառից, որ նշանակում է «երեք» (ինչպես մեր հին տոմարի երկրորդ ամսի անունը, այն է «հոռի», ծագեցնում են վրաց «ori» բառից, որ նշանակում է «երկու»): Սակայն շատ պատճառներ կան մերժելու այս ստուգաբանությունները: *Հնչյունների նմանությունը լոկ պատահականություն է:*

9. Բնագրում կրկնված է. «ուստի՞ գայք... ուստի՞ եկիք»: Վերջին հարցը մենք փոխեցինք՝ «ինչու՞ եք եկել»:

10. Մենք այսպես հասկացանք բնագրի այս խառն խոսքը— «Եւ ետուն զրուն զիւղն Որդունւոյ, որոյ անունն էր Որդորու, ուստի եպիսկոպոսն Բասենու, ամենայն սահմանօքն հանդերձ, որ ինքն իսկ է յերկրին *Բասենու*»:— Բասեն-ի սովորական ձևն է Բասյան:

11. Բնագիրն ունի «հայրն զօրացն»: Ուղղեցինք ըստ Գ. Մ.-ի «հաւուն» զօրացն»:

12. Բնագրում գրված է «ազատեալ յինէր Յուսիկ ի քանեռոյն»: Վերջին բառը թե՛ իր ձևով և թե նշանակությամբ անտեղի է. հավանորեն նա աղավաղված է «ի յանեռոյն» կամ «ի անեռայն» բառից, ինչպես ունի մի ձեռագիր: *Մենք հետևեցինք* այս ձեռագրի ընթերցվածին: Երբ նկատի առնենք հեղինակի գրածը, թե Հուսիկը հրաժարվեց ամուսնական կյանքից՝ կհասկանանք, թե ի՛նչպիսի թախանձանքների, նախատինքների ու ստիպումների նա պիտի ենթարկվեր իր աներանց կողմից: Կնոջ (զուցե վշտահար) եղերական մահը դադարեցրեց այն թախանձանքները ու ստիպումները, ուրեմն և Հուսիկն ազատվեց աներոջ կամ աներանց ձեռքից:

13. Հուսիկի այս տեսիլքի մեջ հրեշտակը հոգնակի ձևով է հիշում այն առաքինի զավակները, որոնք պետք է ծնվեին Հուսիկի որդուց: Այս հոգնակի ձևը ցույց է տալիս, որ այստեղ ակնարկվում է ոչ միայն Ներսես Մեծը, այլև ս. Սահակը: Նույնպես այս խոսքը, թե «Քրիստոս բազում լեզուօք փառաւորեսցի նոքօք»՝ ցույց է տալիս ս. գրքի թարգմանությունը և հայոց եկեղեցիներում հայերեն լեզվով ժամակարգության մուծվելը տեղի են ունեցել ոչ միայն Սահակի այլ և մի ուրիշի (Մեսրոպի) ձեռքով: Իսկ սրանք ապացույց են, որ Փավստոսի Պատմությունը գրված է համենայն դեպս Սահակ կաթողիկոսից և Մեսրոպից հետո:

14. Այստեղ մի հատված— «զաւետարանական ընթացսն— և ուժգին խնդրուածովք» առնված է Կորյունից կամ Ագաթանգեղոսից:

15. Մասքութները կամ Մասագետները ապրում էին Կասպից ծովի ափերի մոտ, պատկանում էին սկյութական ցեղին: Շիրակացու Աշխարհացույցում (հրատ. Սուքրի, եր. 27) նրանց բնակության տեղը որոշված է Կասպից ծովի արևմտյան ափերի մոտ մինչև Դարբանդ քաղաքը: Նրանց բնակած դաշտավայրը կոչված է Վարդանյան դաշտ, որ համապատասխանում է Փավստոսի Վատնեայ դաշտին:

16. Այստեղ հիշված են մի խումբ վաչկատուն (=վրանաբնակ) թափառական ցեղեր սկյութական ծագումից, որոնք ապրում էին Կովկասյան լեռնաշղթայից հյուսիս ընկած հարթավայրում մինչև Կասպից ծովը: Այս ցեղերից մեծ մասը հիշատակվում են Շիրակացու Աշխարհացույցում (Սուքրի, եր. 17), այսինքն՝ բասլապարները, հենմատակները, իժմախները, ճեղբերը, հիղբերը: Հիշատակված են հոները, որոնք բնակվելիս են եղել մասքութներից դեպի հյուսիս: Եգերսվանքը թվում է նշանակել եգերացիներ, որոնք բնակվելիս են եղել Ալվանաս գետի մոտ, Կասպից ծովի ափին (Աշխարհաց. 25): Փոխերը գուցե Աշխարհացույցի փուխերն են: Գուզարները և բաղասականները գուցե Հայաստանի հյուսիսում ընկած Գուգարքի և Բաղասականի բնակիչներն էին, որոնք Աշխարհացույցի գրվելու ժամանակ (է դարի երկրորդ կեսում) անցել էին Վրաստանին, գաբերը և գղվարները անծանոթ են մնում:

17. «Եղբայր» բառը Փավստոսը հաճախ է գործ ածում ավելի ընդարձակ մտքով, արյունակից ազգականի նշանակությամբ: Սանեսանը երկու անգամ կոչված է Խոսրովի եղբայր, որովհետև նա և Խոսրովի նման Արշակունի էր: «Նոցա (մասքթաց Սանեսան թագաւորի տոհմի) և հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան» (Գ. Զ.): Մանուել սպարապետը երկու անգամ կոչված է Մուշեղ սպարապետի եղբայր (Ե. ԼԵ.), այն-ինչ հայտնի է նույն Փավստոսից, որ Մանուելի հայրն էր Արտաշեն, իսկ Մուշեղի հայրը՝ Վասակ սպարապետը: Նույնպես և երբ Մամիկոնյան տոհմի կանայք տեսնում են Մերուժանի գլուխը՝ ափսոսանքով ասում են. «Սակայն դա մեր եղբայրն է» (Ե. ԽԳ.), որովհետև Մերուժանի հայրը, Շավասպ Արծրունին, կին էր առել Մամիկոնյան տոհմից (Գ. ԺԸ.), ուրեմն և Մերուժանը Մամիկոնյան կանանց քեռորդին էր դառնում, բայց կոչված էր եղբայր: Ռուսերենում էլ брат գործ է ածվում այսպիսի լայն նշանակությամբ, միայն ավելի որոշության համար բառին կցում են **двоюродный** և **троюродный** բառերը:

18. Կովգ՝ Կոգովիտ գավառն է Վասպուրական նահանգում, որ ուրիշ տեղ (Դ. ԺԹ.) անվանված է «ի հովիտն անուանեալ ի Կոգ գաւառին»:

19. «Գուզագ» ծագմամբ և նշանակությամբ անհայտ բառ, որ գործ է ածում միայն Փավստոսն այստեղ և հաջորդ գլխում: Սովորաբար հասկանում են անկանոն զորքի ամբոխ:

20. Բնագրում գրված է. «Հանել խաշար յաշխարհէն բազում», որտեղ «խաշար» բառը, որ միայն Փավստոսն է գործածել այստեղ՝ անծանոթ է ծագմամբ և նշանակությամբ: Տեղին նայելով՝ պետք է նշանակե «մշակ, գործավոր», ինչպես և մենք թարգմանեցինք ըստ Մառի և Առմ. բառարանի: Կա գավառական բառ խաշար, որ նշանակում է սարփինա (ձող, հեցուկ), որի վրա փաթաթվում են պատաղին բույսերը: Ըստ այսմ էլ բառարանները այս բառը բացատրում են ձող՝ հեցուկ նշանակությամբ, բայց այս նշանակությունը չի հարմարում ներկա տեղում:

21. Ըստ Փավստոսի Դիլին եղել է բլուրի հատուկ անունը, իսկ ըստ Խորենացու (Գ. Ը.) Դիլին պարսկերեն բառ է, որ նշանակում է բլուր:: Այս հարցի մասին տես մեր 283 ծանոթությունը Խորենացու Պատմության աշխարհաբար թարգմանության:

22. Բնագրում «Գուշակ հասանէր առ Խոսրով ի Հեր և ի Զարեւանդ գաւառ»: Վերջին բառն անշուշտ աղավաղված է, փոխանակ՝ «գաւառէ»: Այսպես էլ մենք թարգմանեցինք:

23. «Մատենիկ գունդ» Պարսկաստանում ընտիր զինվորներից կազմված գունդ, որ կոչվում են անմահական գունդ: Հիշում են ուրիշ հեղինակներ: Բնագրում ներկա տեղում՝ «Մատենիկ գնդի» տակ պետք է հասկանալ լավ սպառազինված կանոնավոր զորքի գունդ՝ հակադրությամբ անկանոն զորքի-զուգագի:

24. Մենք «ձկնորսարան» թարգմանեցինք բնագրի «ի ձկնատեսանն» բառը, որ Փավստոսի մեջ մի ուրիշ տեղ (Դ. ԻԲ.) կոչված է «ձկնատեսանք» («ի վերայ ձկնատեսիցն»): Երկու ձևն էլ կասկածելի են թվում: Հեղինակը նկատի ունի Առեստ ավանի մոտով հոսող գետը, (այժմ կոչվում է Բերկրիի գետ և ավելի հաճախ՝ Բենտի մահու) Վանի լճի հյուսիսում, որտեղ լճից ձկները առուների ուղեկցությամբ գնում են ձկնկիթ թափելու, որի ժամանակ էլ նրանց որսում են մեծ քանակությամբ և աղելով վաճառքի են հանում— Վանի հայտնի տառեխը: Այսպես է և մինչև այսօր: «Արքունի» բառը ցույց է տալիս, որ այդ ձկնորսարանը Արշակունի թագավորների սեփականությունն էր, որոնք որոշ տուրք էին ստանում որսալու իրավունքի համար:

25. Բնագրում գրված է. «Որ էին բիւրաւորքն և հազարաւորքն»: Ամեն մի նախարար, սահմանված օրենքով, պահում էր յուր կալվածքում հեծելազորք, որոնց հավաքում էր իր կալվածում ապրող մարդկանցից. պահում էր իր ծախսով և որոնց ինքն էր առաջնորդում պատերազմների ժամանակ, երբ նրան հրավիրում էր թագավորը: Համաձայն մի հին հիշատակարանի, որ բերում է Ադոնցը (Юстиниан, եր. 251 և հաջ.) Շահխաթունյանի «Ստորագրություն կաթողիկե էջմիածնի» գրքից (Բ. 59), Սյունյաց իշխանը 19400 հեծելազորք ուներ, Կադմյան իշխանը 13200,— սրանք «բյուրավորներն» էին, հետո գալիս էին տասներեք իշխան, որոնք ունեին 1000 և ավելի հեծելազորք սրանք էլ «հազարավորներն» էին: Սրանց հաջորդում են շատ ուրիշ իշխաններ 500-50 հեծելազորքով: Սրանցից դուրս էր արքունի կամ արքունական տան, այսինքն Արշակունի թագավորների սեփական՝ իրենց կալվածներից ժողոված զորքը, որի քանակը ճիշտ որոշված չէ, համենայն դեպս գերազանցում էր որևէ իշխանի հեծելազորքից. և մի քանի կողմնակի ցուցմունքների վրա հիմնվելով կարելի է որոշել 30—40000 հեծյալ: Ահա՝ այս «բյուրավոր և հազարավոր» իշխաններին յուր մոտ պահեց Խոսրովը, բայց չտալով արքունական զորքի հետ պատերազմի գնալ, Դատարենի դավաճանությունից խրատվելով, ու կասկածելով մի գուցե պատերազմի ժամանակ այդ իշխանները իրենց զորքերով թշնամու կողմն անցնեն: Այլ նրանց զորքերն էլ արքունական զորքերի հետ միասին գնում են Վաչե սպարապետի և Վահան Ամատունու հրամանատարության տակ, որոնց հավատարմությանը Խոսրովը միանգամայն վստահ էր:

26. Բնագրում գրված է «Ոչ տայինն անխտիր արշաւել, աւերել զերկիրն Հայոց և ոչ նայել»: Վերջին բառերը դուրս ձգեցինք իբրև կասկածելի:

27. Բդեշխ իրանական բառ է, ունի բազմաթիվ ձևեր, հայերենին ամենամոտ ձևն է պահլավերեն bitaxš (հունարեն Βιταξης), որ նշանակում է տեղակալ, փոխարքա: Հայաստանում բդեշխները նախարարներից բարձր կալվածատեր ազնվականներն էին, մի տեսակ մանր թագավորներ իրենց թագավորություններով, բայց Տիգրան Մեծի ժամանակ ճանաչել են Արշակունի թագավորների գերիշխանությունը: Չորս բդեշխներ կային—Անգեղտան, Ծոփաց, Աղձնյաց, Գուգարաց, որոնց բդեշխությունները (երկիրները) ընկնում էին Հայաստանի սահմանագլուխներում, որոնք իբրև թե համարվում էին սահմանապահներ: (Արմ. բառ., Ադոնց— Юстиниан, ծան. 70 Մ. Խոր. աշխ. թարգմ.):

28. «Գահ» պարսկերեն բառ է և նշանակում է տեղ: Այս բառով ի միջի այլոց նշանակում է այն տեղը կամ բարձը, որտեղ նախարարը նստում էր թագավորական սեղանի շուրջը, նայելով իր ավագության: Տեղերի դասավորությունը խստիվ սահմանված էր. այն

ցուցակը, որի մեջ նշանակված էին նախարարների տեղերը՝ պարսկական բառով կոչվում էր գահնամակ (=գահերի ամ տեղերի գիր, ցուցակ) և վավերացված էր պարսից թագավորի կողմից: Այս գահնամակի պատճենը հասել է մեզ և հրատարակված է մի քանի անգամ: (Այդ ցուցակը և նրա մասին գիտելիքները տես Խոր. թարգմ. 338 ծանոթության մեջ): Այստեղ համառոտ հիշեցնենք, որ այս գահնամակում նշանակված են յոթանասուն նախարարական տան տեղ: Այստեղ չէ նշանակված չորս բդեշխներից և ոչ մեկի տեղը: (Հինգերորդ գահը հատկացված է Ծոփքի տիրոջը — «Շահայն Ծոփաց տէր», բայց սա Մեծ Ծոփքի բդեշխը չէ, այլ Փոքր Ծոփքի տերը՝ նախարարը): Սրա պատճառն այն է, որ բդեշխները անմիջական հպատակներ չէին հայոց թագավորներին, ինչպես նախարարները, այլ ավելի անկախ լին: Եթե նրանք թագավորի սեղանին ներկա լինեին՝ բոլոր նախարարներից բարձր տեղ կգրավեին: Այս է նշանակում հեղինակի խոսքը, թե Աղձնյաց մեծ իշխանը... արքունական սեղանի չորս բարձրագույն գահերից մեկն է գրավում:

29. Բնագրում գրված է «յեց յինքն էր»: Մենք ենթադրաբար թարգմանեցինք. «որ իր կալվածին կից էր», բայց կարող է նշանակել նաև «որ իր պաշտպանության տակ էր», կամ «հարված էր իրեն»:

30. Այստեղ Փոքր Ծոփքը կոչված է Ծոփք Շահեի. Քիչ հետո (Դ. ԺԲ.) կոչված է իր կալվածին կից էր», բայց կարող է նշանակել նաև «որ իր պաշտպանության տակ էր». Շահունի, իսկ (Դ. ԻԳ.) կոչված է Ծոփք Շահունեց. ամեն անգամ այս Փոքր Ծոփքը տարբերելով Մեծ Ծոփքից: Թվում է, որ այս Շահեի կամ Շահանի անունն էր, որ գահնամակում. (տես նախորդ ծանոթությունը) կոչված է «Շահայն Ծոփաց տէր»:

31. Բնագիրն այստեղ աղավաղված է — «Յակոբ. փոխանակ ազգաւն պարսիկ կոչէր»: Բանասերները ուղղել են — Յակոբ որդի Անակա Ձգաւն (Ձգօն) պարսիկ կոչեր»: Մենք թարգմանեցինք այնպես՝ ինչպես որ բնագրում գրված լիներ — «Յակոբ որդի Անակայ Պարսկի որ Ձգօն կոչէր»: — Հակոբ Մծբնա հայրապետը նշանավոր եկեղեցական հայրերից մեկն էր, որ մասնակցել է Նիկիո առաջին տիեզերական ժողովին, վախճանվել է 337 կամ 338 թվին: Մի գրվածք կա նրա անունով, որ կոչվում է Զգօն, որ հայերեն է թարգմանված դեռ հինգերորդ դարում: Այս գրվածքը ներկա բանասիրությունը վերագրում է պարսիկ Աֆրաատ եպիսկոպոսին: Այս Հակոբ եպիսկոպոսը մեծ ժողովրդականություն է վայելում հայ ժողովրդի մեջ. նրա անունով կան շատ եկեղեցիներ, ի միջի այլոց նրա անունն էր կրում Թբիլիսիի վանքի մայր եկեղեցին, որի տեղում այժմ գրա[illegible] է շինված:

32. Փավստոսը այս գլխում երեք անգամ գործ է ածել Սարարադ ձեռ: Ուրիշ հեղինակների մոտ էլ 3-4 անգամ պատահում է այս Սարարադ ձեռ: Իսկ ուրիշ թարգմանիչ տեղերում Նոյի տապանի իջած տեղը կոչված է Արարատ. ս. գրքի հայերեն թարգմանության մեջ գրված է «ի լերինս Արարատայ» (Ծննդ. Ը.4). հունարեն բնագիրն էլ ունի Αραρατ: Ուրեմն Սարարադ ձեռ կարող է կասկածելի լինել. առաջ եկած երկու կից բառերի սխալ տրոհումից. (հին ձեռագիր երկաթագրերում բառերն իրար կից էին գրում ԻԼԵՐԻՆՍԱՐԱՐԱՏԱՅ տրոհել են «ի լերին սարարատայ», փոխանակ «ի լերինս Արարատայ»: Բայց այդ լեռան Սարարադ կամ Արարատ կոչվելը երկրորդական նշանակություն ունի. կարևորն այն է, որ աղբյուրներում այդ լեռան տակ չեն եղել հասկանալիս այժմյան Արարատ=Մասիս լեռը, այլ մի ուրիշ լեռ կամ տեղ Կորդվաց նահանգում. ինչպես պարզ վկայում է Փավստոսը. այնպես էլ հասկացել են ուրիշ հեղինակները: [illegible] պատիվը Մասիսին անցավ միջին դարերում. հայտնի չէ, թե երբ [illegible] և ի՞նչ հիման վրա. բայց այս կարծիքը նույնպես ընդհանրացավ և հաստատվեց այն աստիճան, որ երբ [illegible] Բ. կայսրությունից իր կյանքի վերջին տարիներում [illegible] Հա-

յաստանի թագավորության սահմանել և Պոտյոմկինին թագավոր նշանակել՝ պատրաստել տվեց Հայաստանի գերբը, որի կենտրոնում գտնվում էր Մասիս սարը վրան Նոյի տապանով: Այնուհետև ավելի ևս ընդհանրացավ այս կարծիքը: Ինչպես որ Կորդուքի լեռներից Մասիսին անցավ տապանակիր լեռան պատիվը, այնպես էլ Փավստոսի հիշած աղբյուրը Սարարատի վրա՝ փոխադրվեց Մասիսի վրա: Այստեղ մի աղբյուրն հռչակվեց «սուրբ Հակոբա աղբյուր» անունով, որի հետ կապված է հավատալիք, թե այդ աղբյուրի մոտ ապրում են տարմա հավեր, մորեխների թշնամի, և երբ մորեխով վարակված մի տեղից գալիս են այդ աղբյուրից ջուր են վերցնում, վարակված տեղը տանում՝ թռչուններն էլ ջրի հետ գնում են և մորեխների վրա հարձակվելով անխնա կոտորում են: Այդպիսի պատմությունները՝ ս. Հակոբի աղբյուրից ջուր տանելու համար հիշվում է Պատմության մեջ մի քանի անգամ, սկսյալ տասնհինգերորդ դարից:— Տ. նաև Ալիշան. Այրարատ, 468 և հաջ., Մատիկյան հոդված Վիեննայի հուշարձանում եր. 432—435:

33. Այստեղից սկսած մի ընդարձակ հատված, մինչև «զճանապարհաց ուխտաբերաց» առնված է Կորյունից՝ մանր վարիանտներով, այն տարբերությամբ, որ ինչ որ Կորյունը ասում է Մեսրոպի մասին, որ աստվածատուր գրերով գալիս էր Հայաստան՝ այստեղ վերագրված է ս. Հակոբ հայրապետին, որ աստծուց շնորհված տապանի կտորով վերադառնում էր հայրենիքը:

34. Այս կտորն էլ մինչև «երկրածին ազգերին» նույնպես Կորյունից է առնված, բայց մի քանի բառ բաց թողնելով աղավաղված է:

35. Բնագրում գրված է «ի դահնէ միոջէ», որ անշուշտ աղավաղություն է: Մենք ուղղեցինք՝ «ի գահէ միոջէ», և ըստ այսմ թարգմանեցինք: «Գահ» բառը նույն նշանակությամբ (=լեռան կատար) գործ է ածել հեղինակը նաև Դ. ԾԹ. գլխում—«ի վերայ բարձր գահուն քարին»:

36. Ակնարկություն Քրիստոսի պատվերի վրա, որ տվեց առաքյալներին, երբ նրանց ուղարկում էր քարոզելու. «...և ով որ ձեզ չընդունի կամ ձեր խոսքերին չլսի, երբ այն քաղաքից դուրս գալու լինեք՝ ձեր ոտներից փոշին թափ տվեք: Ուղիղ եմ ասում ձեզ, սոդոմացոց և գոմորացոց երկրին ավելի հեշտ կլինի դատաստանի օրը՝ քան այն քաղաքին» (Մատթ. Ժ. 14, 15):

37. Փավստոսը միևնույն անձը երբեմն կոչում է զորավար, երբեմն սպարապետ և երբեմն այս երկու բառով միասին: Սպարապետ պարսկերեն բառ է (հին պարսկերեն spa*d*pati, պահլավերեն spa*h*pat, նոր պարսկ. sipah*b*d), որ նշանակությամբ համապատասխանում է կես-հայերեն և կես պարսկերեն զորավար'ին: Բայց հայերենում այս երկու բառը թվում է թե մի նուրբ տարբերություն ունեն: Սպարապետ կոչվում էր այն անձը, որ սպարապետության ժառանգական իշխանության կրողն էր տվյալ ժամանակ, իսկ զորավար կոչվում էր այն անձը, որ իրապես զորքի ընդհանուր հրամանատարն էր տվյալ ժամանակ: Այսպես տեսնում ենք, որ երբ Վաչեն սպանվում է պատերազմում՝ նրա փոքր երեխային Արտավազդին սպարապետության իշխանությունն էին տալիս իբրև Մամիկոնյան տոհմի ժառանգական իշխանություն, իսկ քանի որ նա փոքրահասակ լինելով դեռ չէր կարող զորքին առաջնորդել՝ զորավարության գործը հանձնում էին Արշավիր Կամսարականին և Անդովկ Սյունիին, որոնք Մամիկոնյան տան փեսաներն էին, ուրեմն իբրև մի տեսակ խնամակալներ փոքրահասակ սպարապետի վրա:

38. Բնագրում գրված է «Ի վերայ բանակի տեսանն աշխարհիս»: Մենք ուղղեցինք՝ «ի վերայ բնակի տեսանն աշխարհիս» և ըստ այսմ թարգմանեցինք:

39. Բնագրում գրված է «Յանուն հօր իւրոյ» որ սխալ է: Հոր անունն էր Վաչե, բացի որանից՝ երեխաներին դնում էին պապերի անունը և ոչ թե հայրերի: (Սկզբնապես

ռղել է «հաստն», որ աղավաղելով դարձել է «հասրն»: Նույն աղավաղությունը կատարվել է և ուրիշ տեղ: Տե՛ս ծանոթ. 11): Ուստի մենք ուղղեցինք «Հաստն իւրոյ» և թարգմանեցինք «Պապի անունով»:

40. «Հազարապետը» թեպետ զինվորական պաշտոնյայի նշանակություն ունի ըստ կազմության, բայց բոլորովին տարբեր պաշտոն էր վարում. նա երկրի տնտեսության և հարկերի գլխավոր տեսուչն էր, ուստի և նրա իշխանությունը տարածվում էր շինականության— գլխավոր հարկատու դասակարգի վրա: Փավստոսը նրա պաշտոնը կոչում է «աշխարհատես խնամակալութիւն» և այս խնամակալության պատճառով նրան որակում է «շինականաշէն» մակդիրով (Դ. Բ.): Փավստոսի ասելով՝ այս պաշտոնն էլ ժառանգական էր և պատկանում էր Գնունյաց տոհմին:— Պարսկաստանի մեծ հազարապետների պաշտոնն և իրավասությունը տարբեր էին և ավելի ընդարձակ քան Հայաստանում (տ. Ադոնց. Юстиниан, եր. 445-6):

41. Այստեղ բնագիրն աղավաղված է. գրված է «զմերոյ տոհմի ազգի իշխանն Սահառունեաց», որտեղ աչքի է ընկնում «տոհմի ազգի» անտեղի կրկնությունը, և «մեր տոհմի» իշխանի անվան բացակայությունը, մինչդեռ բոլոր մյուս տոհմերի իշխանների անունները բերված են: Տարակույս չկա, որ «մերոյ տոհմի ազգի» աղավաղություն են Սահառունյաց իշխանի պակասող անվան: Ոմանք այս աղավաղությունը վերականգնում են՝ «Մերոյ» բառը կարդալով «Տիրոց», ուրիշները երեք բառը միասին կարդում են «Մեռհդազատ», «Մեհր-Առամ» և այլն: Մի քանի բանասերներ (որոնց թվում և Գելցերը), ուշադրություն չդարձնելով հիշյալ աղավաղության վրա՝ այդ խոսքերից հետևցրել են, թե Փավստոսը՝ «Մեր տոհմ» է կոչում Սահառունյաց տոհմը, ուրեմն ինքն էլ այդ տոհմից էր, ուրեմն և հայ էր: Այս հարցի մասին տես առաջաբանում:— Նույն տեղում, մի քիչ առաջ բնագիրն ունի «Մաղխազունեան» անսովոր ձևը, որ մենք թարգմանության մեջ ուղղեցինք սովորական «Մաղխազութիւն» ձևով, ըստ Նորայրի առաջարկության:

42. Գամիրքը Կապադովկիան է:

43. Տափերի կամ Տափերական կամուրջը Արտաշատ քաղաքի կամուրջն էր Արաքսի վրա: Տափեր բառը թվում է թե ժողովրդական բառ՝ տափ բառի հոգնակին, որ նշանակում է նաև հարթավայր, դաշտ տեղ, ինչպես՝ Փավստոսն էլ նշանակում է՝ «Ընդ առաջ ելանէր նմա ի դաշտն յայնկոյս գետոյն Տափերն. կամրջին»:

44. Մենք մոտավորապես թարգմանեցինք բնագրի այս երկարաբան բայց մութ խոսքը— «Հարցն նմանեալ ի մանկութեան իմաստութեան, զծերութեան, պատուին պատուակալ պատուականութեանն զհանճարոյ զաւարթութեանն անուշութեանն (կամ ուշութեան), իբրև զծաղիկ ի դիտաւորութեանն հասեալ, վասն ճշմարտութեանն մինչ ի մահ մարտնչէր»:

45. Բնագիրն այստեղ աղավաղված է.— «Քանզի ոչ էին բե որպէս այլոց ազգականացն... հաւատոցն սատուածարանին քարոզութեանն...» Մենք ուղղեցինք— «քանզի ոչ բէ որպէս այլոց ազգացն... հաւատոցն Աստուած բանին», և ըստ այնմ թարգմանեցինք:

46. Եպիսկոպոսները (հուն. Επισκοπος վերատեսուչ, վերադիտող) հոգևոր տեսուչներ կամ առաջնորդներ էին թեմերի, ընդարձակ մասով՝ նաև աշխարհների, այժմյան տերմինով՝ թեմի առաջնորդներ: Հին նախարարական Հայաստանում ամեն մի իշխանական կալված մի հատուկ եկեղեցական թեմ էր կազմում և ուներ սեփական եպիսկոպոս: Իսկ քորեպիսկոպոսները (հուն. Χωρεπίσκοπος — վերատեսուչ գավառի կամ գյուղի) գավառների կամ գյուղերի առաջնորդներն էին՝ եպիսկոպոսական կամ քահանայական աստիճանով, թեմի առաջնորդին ստորադրյալ: Դանիել-քորեպիսկոպոսին Ներսես կաթողիկոսը, գնահատելով նրա հավատարմությունն ու ընդունակությունները՝ հանձնել էր

մաձայնության հիման վրա՝ իրոք թագավորել է 339-ին, ուստի և նրա թագավորության սկիզբը չի համընկնում այս երկու թագավորներից և ոչ մեկի տարիներին:

66¹. Բնագրում գրված է «Կատարեցաւ երրորդ դարք», որը Հ. Վարդանյան ուղղել է «երրորդ դարկ» ասորերեն praga բառից, որ նշանակում է կարգ, աստիճան (Արմ. բառ. կարգ բառը): Մենք թարգմանեցինք մաս: Մի քանի բառ հետո բնագիրն ունի «Կանոնք փախստեայք Բիւզանդեայ», որ Նորայր Բյուզանդացին ուղղել է «Փաւստեայ Բիւզանդեայ»: Բնագրի հաղորդած այս տեղեկության մասին տես առաջաբանում:

67. Բնագրում անթարգմանելի կուտակություն բառերի.— «Զորրորդ խոստովանութիւն զոր ասելոց եմ կարգել զդպրութիւն, կանոնք դարք և դարք պատմութեանց գրուցաց»: Մենք թարգմանեցինք մոտավորապես: Այստեղ էլ (դարք և դարք Հ. Վարդանյան ուղղել է դարկք և դարկք»:

68. Բնագրում գրված է. «հանդերձ այլովքն պատարագովք»: Վերջին բառը թե՞ նշանակությամբ և թե հոլովման ձևով անտեղի է: Ուղղեցինք՝ «պատանդովք» և ըստ այնմ թարգմանեցինք: Այստեղի և բնագրում եղած վերնագրի համեմատությունից կարելի է վերականգնել նախնական ընթերցվածը— զիա՛րդ զայլ նախարարսն հանդերձ այլովքն պատանդովք արձակէր յերկիրն Հայոց հանդերձ պատարագօք»:

69. Բնագրում գրված է. «Զիա՛րդ յուղարկեաց զհալածեալսն Շապուհ», իսկ գլխի վերնագրում գրված է «Զիա՞րդ յուղեաց Շապուհ...»: Երկու աղավաղված ընթերցվածներից վերականգնվում է ուղիղ ընթերցվածը.— «զի ա՛րդ յուղեաց հալածանս Շապուհ...», որ և համապատասխանում է գլխի բովանդակության:

70. Դայակ պահլավերեն dāyak, նշանակում է ծծմայր, ստնտու (ներկայումս նշանակում է միայն մանկաբարձ կին): Բայց հին գրականության մեջ գործ է ածվում նաև տղամարդկանց մասին՝ դաստիարակ, խնամակալ նշանակությամբ: Հին ժամանակ սովորություն կար, որ թագավորը իր որդիները հանձնում էր որևէ իշխանի դաստիարակության. իշխանը թագավորազն սանին սնուցանում էր իր տանը իր զավակների հետ, և երբ ինքը ունենում էր ծծկեր երեխա՝ թագավորազն և իշխանազն երեխաները միևնույն կնոջ կաթով էին մեծանում և այս կերպով նրանք դառնում էին կաթնեղբայրներ: Մեծանալիս թագավորազնը երբ թագավոր էր դառնում՝ իր մոտ էր բերում կաթնեղբորը իբրև մտերիմ ընկեր: Եղիշեն (Բ. եղ.) դառնապես գանգատվում էր ասելով. «Հայոց նախարարներից ոմանք նրա (Հազկերտ Բ-ի) եղբայրներին սնուցել էին իրենց մայրենի կաթով— նա ամենից խիստ նրանց հետ էր վարվում». նշանակում է՝ պարսից թագավորները նույնիսկ հայոց նախարարներին էին հանձնում իրենց որդիների դաստիարակությունն ու խնամակալությունը:

Թագավորների օրինակով՝ ավագ իշխաններն էլ իրենց որդիները հանձնում էին կրտսեր իշխանների կամ սեպուհների դաստիարակության: (105 ծանոթ. Խորենացու Պատմության թարգմանության):

71. Բնագրում գրված է. «Ի ժամանակս խուլութեան Տիրանայ»: «Խուլութեան» աղավաղված բառն ուղղեցինք՝ խալութեան=խօլութեան, այսինքն խելագարության:

72. Բնագրում գրված է. «Որպէս առաջին թագաւորին»: Այս աղավաղությունն ըստ Նորայրի ուղղեցինք՝ «Որպէս առ առաջին թագաւորաւքն»:

72¹. Բնագիրն այստեղ ունի «նոյնպէս ստրատելատութեան սպարապետութեանն, զօրավարութեանն մարտի կռուելոյ, գործոյ բռազմիկ նախատամնող նիզակին, իրափառն (var. իրաւափառն), աղանազգիք ադանադրօշք արծուէնշանք, վարժեականիչք».— բառերի կուտակություն, որոնցից մի քանիսը անհասկանալի են կամ կասկածելի: Մենք այսպես թարգմանեցինք ներքրաբար, մոտավորապես: Ստրատելատ, որից ստրատելատություն, հունարեն բառ է, στρατηγατης որ տառացի նշանակում է զորավար. գործ

էր տրվում այն զորավարների մասին, որոնք այս պաշտոնն ստացել էին հունաց կայսրերից:

«Աղանազգի» Աճառյան (Արմ. բառ.) ծագեցնում է ասորական ալան = ālānā բառից, որ նշանակում է իշխան, գլխավոր: Իսկ «ալանագրոզ» բառը նա համարում է սխալ գրված՝ նախորդ բառի ազդեցությամբ, և ուղղում ալավնագրոշ, Ն. Մ. ալանազգիք, ալանագրոշք բառերն ուղղում է աղեղնաձիգք, աղեղնագրոշք, ինչպես ունի և Մեսրոպ Երեցի վարք. ս. Ներսեսի (Սոփերք, Զ. եր. 17): Իրավառն կամ իրավափառն անծանոթ բառ.:

73. Սատրապ (var. սատրապես) հունարեն բառ է σατραπης, որ նշանակում է գավառի կառավարիչ: Հունարենն էլ փոխ է առնված հին պարսկերենից, որի սկզբնական ձևը xsatrapa, նշանակում է աշխարհապան, երկրապահ: Նույն բառը հայերենում պահպանված է շահապ ձևով, որ փոխ է առնված պարթևերենից: Քանի որ Փավստոսը բոլոր տեսակի իշխանների մեջ առաջին տեղում հիշում է սատրապներին՝ կարելի է սրանից հետևեցնել, թե նա աչքի առաջ ունի բդեշխներին կամ ավագագույն նախարարներին:

74. Բնագրում գրված է. «Խոնարհել ամենեցուն միով միաբանությամբ»: «Խոնարհելը» ուղղեցինք «խորհել»:

75. Բնագրում գրված է. «Եւ զԹագարատ մեծ իշխանն սպարապետութեանն»: Վերջին բառն, որ անշուշտ աղավաղված է՝ ըստ Նորայրի ուղղեցինք «ասպետութեանն»:

76. Բնագրում «Աւէին եմա էնկոմիա»: Էնկոմիա հունարեն բառ է, εγωμιο, որ նշանակում է ներբողյան, գովեստ:

77. Բնագրում գրված է. «Ի դատաստանացն ամենին»: Վերջին բառը մենք ուղղեցինք «ատենին»:

78. Որովհետև ուրկությունը (բորոտություն, գոդություն) սաստիկ վարակիչ և անբուժելի հիվանդություն է՝ ուստի ամենահին ժամանակներից ամեն տեղ մեծ զգուշություններ էին ձեռք առնում, որ այս հիվանդությունն ունեցողները շփում չունենան առողջների հետ և նրանց չվարակեն: Միջոցներից մեկն էր—ինչ որ Ներսես կաթողիկոսը հաստատեց Հայաստանում—բնակություններից դուրս հատուկ ուրկանոցներ շինել, որոնց մեջ փակում էին հիվանդներին և նրանց հարկավոր մթերքները և այլ պիտույքները մի փոքր բացվածքի միջով ներս էին ձգում նրանց ամանների մեջ:

79. Բնագրում գրված է. «Եւ պատանեն աղքատաց»: Պատանք բառը իր նշանակությամբ այստեղ չէ հարմարում: Կարծում ենք թե աղավաղված է՝ փոխանակ պատսպարանի: Այսպես էլ թարգմանեցինք:

80. Հոպպե քաղաքում մի հավատացյալ կին կար՝ Տաբիթա անունով, այսինքն Այծեմնիկ անունով, որ հայտնի էր բարեգործությամբ և ողորմությամբ: Նա հիվանդացավ ու մեռավ: Նրա մարմինը լվացին ու վերնատանը դրին: Լսելով որ Պետրոս առաքյալը Հոպպեից հեռու չէ՝ նրա հետևից մարդ ուղարկեցին ու հրավիրեցին գալ: Պետրոս առաքյալը իսկույն եկավ, բոլորին վերնատնից դուրս հանեց, ծունկ չոքեց, աղոթք արավ ու հետո դիմեց մեռելին ասելով. «Տաբիթա, վեր կաց Հիսուս Քրիստոսի անունով»: Մեռելը աչքերը բացեց ու տեղում նստեց. Պետրոսը նրա ձեռքից բռնելով ոտքի կանգնեցրեց: (Գործք. Թ. 36–40):

81. Տե՛ս Գաղ. Բ., 7-10: Հետաքրքրական է Փավստոսի մոտ որ այստեղ ունի «որ բուն սյունքն էին» (Գաղ. Բ-9: Այնինչ հայերեն թարգմանության բնագրում այստեղ գրված է «որ կարծեալ սիւնքն էին» ինչպես հունարենում, որ նույնպես ունի «կարծեալ»:

82. Արիոսական-հետևող Արիոսի աղանդին: Արիոսը Աղեքսանդրիայի եկեղեցու երեց էր, որ ուսուցանում էր, թե երրորդության երկրորդ անձը, որդին, ստեղծված է հո-

րից՝ ոչնչից, ուրեմն ժամանակով կրտսեր է հորից, նա արարած է և ոչ ծնունդ: Նա որդի աստուծո է կոչվում այն իմաստով՝ ինչպես շատ մարդիկ էլ կոչված էին ս. գրքում: Նրա այս վարդապետությունը Արևելքում սկսեց կողմնակիցներ գտնել: Նրա դեմ դուրս եկան հեղինակավոր եպիսկոպոսներ, և ընդհանուր շփոթություն ընկավ եկեղեցու մեջ: Կոստանդիանոս կայսրը փորձ արավ երկու կողմերին հորդորել որ համաձայնության գան, բայց երբ այս չհաջողվեց՝ նա Արևելքի և Արևմուտքի եկեղեցիներից հրավիրեց առաջին տիեզերական ժողովը, որ գումարվեց Նիկիայում 325 թվին, ներկայությամբ մոտ 300 եպիսկոպոսների. (պաշտոնապես նրանց թիվն ընդունված է 318): Ժողովը դատապարտեց Արիոսին իբրև հերետիկոսի և մշակեց հանգանակ հավատո (Նիկիո հանգանակը): Արիոսը աքսորվեց: Բայց սրանով վեճը չվերջացավ: Երկու տարի հետո նույն Կոստանդիանոսը Արիոսին. աքսորից ետ կանչեց իր պալատը. արիանոսները մեծ ազդեցություն ձեռք բերին պալատում: Կայսրը կարգադրել էր, որ Արիոսը դարձյալ եկեղեցու կողմից հաղորդակցության ընդունվի և նշանակված էր հանդիսավոր օրը: Բայց նախընթաց օրը երբ Արիոսը ձի հեծած, համակրողների բազմությամբ շրջապատված, հանդիսով և ուրախ անցնում էր փողոցներով՝ հանկարծ իրան վատ զգաց (ստամոքսի խանգարում), ձիուց իջավ, գնաց արտաքնոց, որտեղ և մեռավ (336 թվին): Վաղես կայսրն էլ Արիոսի աղանդի բազմաթիվ կողմնակիցներից մեկն էր:

83. Այստեղ երեք երես բաց թողինք Ներսեսի քարոզությունից, որտեղ նույն մտքերը մի քանի անգամ կրկնվում են. («Ապա թէ ոչ խոստովանեսցիս», եր. 69— «դատաստանին որ գալոցն է», եր. 73):

84. Վաղես կայսեր հիվանդ որդու պատմությունն անում է համառոտ Սոկրատ (եր.ս 366—367): Վաղես կայսրը դիմում է Կեսարիայի Բարսիլիոս եպիսկոպոսին, որ մայրաքաղաք էր կանչված՝ աղոթել իր հիվանդ որդու վրա, որ առողջանա: Բարսիլիոսն ասում է. «Երբ մեզ նման դավանես և եկեղեցին միաբանեցնես՝ երեխադ կառողջանա, իսկ եթե ոչ՝ թող աստծու կամքը լինի»: Թագավորը չէ համաձայնում, և երեխան մեռնում է: Նույնը, բայց ավելի զարգացրած, պատմվում է և Հարանց վարքում ս. Բարսեղ հայրապետի Վարքում (միահատոր հրատ. եր. 1026): Փավստոսի մոտ այս ավանդությունը շատ ծաղկեցրած և վերագրված է Ներսես կաթողիկոսին:.

85. Աստված Աբրահամ նահապետին հրամայեց, որ մի հեռավոր լեռան վրա իր միակ որդուն, Իսահակին, զոհ մատուցանե իրան: Աբրահամը Իսահակին առնում գնում է երեք օրվա ճանապարհ, հասնում է ցույց տրված լեռը, սեղան է շինում, փայտը դարսում է, Իսահակին կապում, դնում է փայտի վրա և սուրը վերցնում է որ մորթե երեխային: Հրեշտակը երկնքից արգելում է ձեռք տալ երեխային: Աբրահամ շուրջը նայում, տեսնում է, որ Սաբեկա ծառից մի խոյ է կախված եղջյուրներից: Խոյն առնում, զոհում է Իսահակի փոխարեն (Ծննդ. ԻԲ. 1-13): Եբրայական բնագրում Սաբեկա ծառի փոխարեն գրված է մացառներում:

86. Ակնարկություն մանանայի վրա, որ գողի նման իջնում էր առավոտները և որով իսրայելացիք անապատում կերակրվեցին քառասուն տարի:

87. Բնագիրն ունի. «Որ չերբայ ուրեք ի մարդկանէ *այլ պատճառ միայն առնէ զանուն իւր ի վերայ աներևոյթ մարմնոյն*, մահ է և իւրոյ արքայութեանն...»: Շղագրով, տպված խոսքերը դուրս ձգեցինք՝ իբրև անհասկանալի:

80. Ս. Ներսեսի Վարքում (Սոփերք, Զ. եր. 58) գրված է «ամիսս» ինն. փոխանակ Փավստոսի ինը տարուն:

89. Բնագրում գրված է. «իբրև զօր հակառակորդ»: Մենք ուղղեցինք՝ իբրև զիս հակառակորդ, և ըստ այնմ թարգմանեցինք:

90. Բնագրում գրված է. «ուստի՞ կարծեցես բանիցս պատասխանիս պատրաստել»:

Մենք ուղղեցինք. «Ուստի՞ կարիցէ...» և ըստ այդմ թարգմանեցինք:

91. Բնագիրն ունի. «Մի գացի ոսկւոյ կամ արծաթոյ դանակ առ ումեք»: «Դանակը» մենք ուղղեցինք դանկ և ըստ այդմ թարգմանեցինք: Գ. Մ. «դանակը» ուղղում է «քանակ»:

92. Սոփեստես հունարեն բառ է, σοφιστης, որ սկզբնապես նշանակում էր իմաստասեր, ճարտար: Այս անունով հին Հունաստանում կոչվում էին զարգացած՝ ճարտարախոս և ճարտարամիտ մարդիկ, որոնք սովորեցնում էին փիլիսոփայություն և ճարտասանություն: Շատերը թափառում էին քաղաքե քաղաք իրենց արվեստը սովորեցնելու: Իրենց գիտության և մտավոր կորովի պատճառով հարգանք էին վայելում: Բայց ժամանակի ընթացքում նրանք սկսեցին ի չարը գործ դնել իրենց գիտությունը, մանավանդ ճարտարախոսությունը և պաշտպանում էին սխալ մտքեր՝ ճշմարտության կերպարանք տալով: Այս վերջին մտքով էլ այժմ գործ է ածվում սոփեստ բառը կամ նրա հայերեն թարգմանությունը՝ իմաստակ:

93. Մագիստրիանոս հունարեն բառ է՝ μαγιστριανος, որ ծագում է լատիներեն magister բառից, որ նշանակում է ավագ վարպետ: Մագիստրիանոս Բյուզանդիայում կոչվում էին կայսերական տան ավագ մարդիկ և ավելի ընդհանուր նշանակությամբ՝ պետական բարձր պաշտոնյաներ:

94. Թեկղի՝ նշանավոր խոստովանող կույս, ժամանակակից Պողոս առաքյալի և նրա աշակերտուհին: Նրա վարքագրությունը լիքն է հրաշքներով: Նրա անունով շինված էին շատ եկեղեցիներ և նա համարվում է քրիստոնեության առաջին խոստովանուհին: Խաղաղ մեռել է ծերության հասակում:

95. Սուրբ Սարգիս, Կեսարեցի, Կապադովկիայից, ապրում էր մեծ Կոստանդիանոսի և Տրդատի ժամանակ, զինվորական ծառայության մեջ էր և բարձր պաշտոն ուներ, տարածում էր հեթանոս զորքի մեջ քրիստոնեություն: Մեծ հաղթություններ տարավ հոների դեմ, իբրև Շապուհի զորավար, բայց որովհետև չկամեցավ կրակին երկրպագել և կուռքերը խորտակեց՝ մահվան դատապարտվեց: Նրա որդին էլ, Մարտիրոսը, հավատի համար սպանվեց:— Վարքը լի է հրաշքներով: Սուրբ Սարգիսը հայերի մեջ մեծ ժողովրդականություն է վայելում և համարյա ազգայնացրած սուրբ է, որի անվան հետ կապված են զանազան սնոտիապաշտություններ: Նրա անունով շատ կան տաճարներ:— Թեոդորոս ստրատելատ, Պոնտոսի Ամասիա քաղաքի շրջակայքից, նույնպես զինվորական բարձր պաշտոնյա, ժամանակակից ս. Սարգսի, որ քրիստոնեական հավատը դավանելուն և կուռքերը անարգելուն պատճառով նահատակվեց Լիկիանոսից:

96. Վաղես կայսրը, որ իր եղբոր Վաղենտիանոսի կողմից նշանակվեց կայսրության արևելյան կեսի կառավարիչ՝ թագավորեց 364—378 թվ. և ընկավ վեստգոթերի դեմ պատերազմում: Նա հայտնի էր իբրև ջերմ արիոսական, որի պատճառով և շատ հալածանքների էր ենթարկում ուղղափառ եպիսկոպոսներին: Նրա մահվան վերաբերյալ այս ավանդությունը, որ բերում է Փավստոս՝ հայտնի չէ Սոկրատին, որ նույնպես գրում է թե պատերազմի մեջ մեռավ:

97. Լուսարան, կազմված ըստ հունարենի, հին եկեղեցիներում այն բաժանմունքը, որտեղ մկրտություն էին կատարում. մկրտարան:

98. Մեսրոպ երեցի մոտ (Վարք ս. Ներսեսի, Սոփերք Զ. եր. 52–53) դեպքերի թիվը տասներեք է, փոխանակ Փավստոսի հիշած իննին, իսկ այն անունների մեջ, որ երկուսն էլ ունեն՝ կան տարբերություններ. այսպես՝ փոխանակ Փավստոսի Մեհեն-ի, Վարքն ունի Մեհենդակ, փոխանակ Մեհառ-ի՝ Մեհևան, փոխանակ Մուշկ-ի՝ Մուշկան, փոխանակ Բագենից՝ Բառենից, փոխանակ Հրաձորոյ՝ Գարեղենից: Վրկեն նահապետն Հաբուժենից բոլորովին չկա Վարքում, փոխանակ Փավստոսի Դեմետ նահապետն Գնթուն-

յաց, վարքն ունի Գնել ճանապետն Գնունյաց:

99. Բնագրում «զվեց ամ»: Ներսեսի Վարքն ունի՝ 8 ամիս. Ն. Մ. Փավստոսի վեց ամը ուղղում է վեց ամիս:

100. Բնագրում գրված է «ի լիութեան», որ մենք ուղղեցինք ու թարգմանեցինք ի լկտութեանն՝ ըստ Նորայրի:

101. Բնագրում «Մտաղատք, զրախօսք», որ մենք ենթադրաբար թարգմանեցինք «դատի մեջ ստողներ, զրպարտողներ»: Մի քանի տող հետո՝ աղավաղված ենք համարում բնագիրը, որ ունի. «աւանդառոք զաւանդս լի զպահեստս բարձեալ»:

101¹. Բաքաստեր անծանոթ տեղ է, ուրիշ տեղ հիշատակված չէ:

102. Սոդոմ քաղաք Պաղեստինում, Մեռյալ ծովի մոտ, որ բնակիչների սոդոմացոց անօրինակ անառակությունների պատճառով աստծու հրամանով կործանվեց Գոմոր քաղաքի հետ միասին: (Ծննդ. ԺԹ. ԻԴ. և հաջ.): Այնուհետև Սոդոմ, սոդոմացի բառերը սկսեցին գործածվել ՝ նշանակելու համար անառակ վարքի տեր քաղաքներ ու մարդիկ:

103. Ժանտախտի առաջին հիշատակությունը *Հայաստանում: Մի ուրիշ ժանտախտի* դեպք էլ հիշում է Փավստոսը (Դ. ԺԵ.): Նա արծարծվեց Արտագերս ամրոցում և մի ամսում 17000 մարդ կոտորեց:

104. Ձեռական իշխանություն կամ ձեռին իշխանություն նշանակում է այն կալվածը, որ սեփական է այս-ինչ անձին, գտնվում է նրա անմիջական կառավարության տակ:

105. Այս Շավասպը ինչպես Փավստոսն էլ ասում է, միակ մնացորդն էր Արծրունյաց ցեղից, որին Արտավազդ և Վասակ Մամիկոնյանները ազատեցին կոտորածից ու տարան Տայք, այնտեղ մեծացրին և իրենց տոհմից նրան կին տվին, որից նորից սերվեց Արծրունյաց տոհմը (Փավստ. Գ. ԺԸ.): Այս Շավասպի որդին է անշուշտ Մերուժանը, որի կատարած չարիքները մանրամասն պատմում է Փավստոս հաջորդ դպրություններում:

106. Բնագրում գրված է. «առ համբաւ ցանկութեան անուանն տրփեալ լինէյ. մին ևս հօրեղբօրորդին»...: Մենք ուղղեցինք՝ նուանն... մեւս (=միւս): Նորայր ևս ենթադրում է, թէ«անունն» ուղղելի է նուանն:

107. Բնագրում գրված է. «ի բուն բանակի տեղսն Արշակունեացն ի ներքոյ Սիւնեացն և ի վերայ ասպարիսացն»: «Բանակի տեղսն» ուղղելի է «բանակետեղն», ինչպես ունի Փավստոս նույն գլխում, քիչ հետո. «յանդիման բանակատեղ բերին»: Սիւսեացն (var—Սիւնեացն) համարել են հատուկ անուն. բայց Ն. Մ. և նրանց անկախ Անառյան (Արմ. բառարան) բացատրում են իբրև պարսպով պատած դաստեղ: Ասպարես բառն այստեղ գործ է ածված սկզբնական նշանակությամբ—ձիարշավարան:

108. Բնագրում գրված է արքիդիակոնն, որ հունարեն բառ է ἀρχιδιάκονος, որ նշանակում է ավագ սարկավագ. խոսքը քերականորեն անորոշ է այստեղ: Գրված է. «Եւ զիւր արքիդիակոնն եպիսկոպոսին, որում անուն Մուրիկ կոչէր»: Մուրիկը, համարում են, սարկավագի անունն է և ոչ թե եպիսկոպոսի, բայց «եպիսկոպոսի» բառը տարակույսի տեղիք է տալիս. եթե Մուրիկը եպիսկոպոսի սարկավագն է եղել, ապա ինչո՞ւ է ասված «զիւր արքիդիակոնն», այսինքն Ներսեսի: Մենք ենթադրաբար թարգմանեցինք՝ «Իր եպիսկոպոսական ավագ սարկավագը»:

109. Բնագիրն ունի՝ «ժանեաւ», որ աղավաղություն է, փոխանակ՝ ժանուարաւ, ինչպես ունի Փավստոս Գ. Թ. և Թ. Ա. «ժանուարս», «ժանուարօք»: Ժանվար պարսկերեն բառ է zarbar պատգարակի մի տեսակ, մարդիկ և իրեր փոխադրելու համար: Հավանորեն երկու օրոց, որ կախում էին գրաստի երկու կողքից, որոնց մեջ նստում էին մարդիկ:

110. Բնագիրն այստեղ ունի. «յայնժամ թագաւորն զիւր սամոյրսն զգեստն ածեալ՝ *ի փոյթ կնչանն* մտեալ զիւր դէմս երեսացն ծածկէր», որի մեջ անհասկանալի են «ի փոյթ կնչանն»: Հայկ. բառարան (կինչ բառի տակ) այսպես է մեկնում այս խոսքը. «կամ իբրու խոզի և կամ կնչման, որպէս ի ձայն խոզի, այսինքն խռոտալոյ»: Ներսես Բյուզանդացին (Կորյուն, եր. 342) երկու բառը միացնելով կարդում է «ի փոյթկնչանն» և այս բառը համեմատում է սանսկրիտ paryanka բառի հետ, որ նշանակում է անկողին, մահճակալ: Երկու մեկնություններն էլ անհավանական են: Արմ. բառ. չունի այս բառերը: Ուրիշ բացատրություններ ինձ հայտնի չեն:

Ես ուրիշ կերպ եմ բացատրում այս բառերը: «Փոյթ» բառը միայն Փավստոսի մեջ պատահած հնագույն ձևն է փոք բառի, որ ներկայումս միակ գործածականն է, մնացել: Ոյ-ո ձայնափոխության օրինակներ ունենք՝ գրաբարի շրջանում՝ անագորոյն և անագորոն, իսկ գրաբարի և աշխարհաբարի շրջանում՝ փոյթ-Փոքի (Քաղաք), մակոյկ-մաքոք, լոյղ-լող: Իսկ «կնչանն» (սեռ. հոլ. «ուղղականը» կունչ) պարսկերեն բառն է, հին փոխառությամբ, բառի պահլավերեն ձևից, որի նոր փոխառությունն է գավառական քունջ-ը: Կ-ք ձայնափոխության շատ օրինակներ ունենք, ինչպես *կամար-քամար, մակոյկ-մաքոք, կուժ-քիշէ, կեռաս-քերազ, կնճիթ-քունչութ, կարավան-քարավան, կույր-քոռ* ևն: Քունջ բառը պարսկերենում, բացի անկյուն նշանակությունից, նշանակում է նաև խորշ կամ ծալք զգեստի, կապերտի ևն: (Պարսկ.-հայերեն բառարան Գևորգ Տեր-Հովհաննիսյանի):

Ըստ այս բացատրության՝ բնագրի վերոհիշյալ խոսքը տառացի պետք է հասկանալ. «թագավորը սամույրենին գլխին քաշելով՝ նրա (=կնչանն) փոքի մեջ (ի փոյթ) մտնելով ծածկում էր իր երեսը:

111. Մայր ողբոց և ձայնարկուներ: Մեռելի վրա սուգ կատարելու համար հրավիրում էին հատուկ լալկան կանանց: Սրանցից մեկը ողբի մայր էր դառնում, սկսում էր մեռելի գովեստն անել. երբ մի տուն վերջացնում էր՝ ձայնարկուները (լալկան կանայք) այս տունը կրկնում էին և ողբի աղաղակներ բարձրացնում: Հետո ողբի մայրը ասում էր գովեստի հաջորդ տունը, և ձայնարկուներն կրկնում էին, և այսպես շարունակ:

112. Բնագրում գրված է «Ի նուաղել թիւեանց ձայնեցին», որ մենք ենթադրաբար թարգմանեցինք — երբ նրանց ձայները դադարեցին, որի ճշտության վստահ չենք: Նվաղել բառը Փավստոս ուրիշ երկու անգամ էլ գործ է ածել՝ երկու անգամ էլ անորոշ նշանակությամբ. «Զիա՞րդ եղէց բարեխօս վասն այնոցիկ, որք նուաղեցինն» (Գ. ԺԴ.), «Որպէս առաջին բազմաքն նուաղեալք՝ յիւրաքանչիւր չափու» (Ե. Ը.):

113. Չէրէց: Չէրէց. չքահանա, չեպիսկոպոս և այլ բառերի վրա «չ» մասնիկը ցույց է տալիս, թե այդ երեցը, քահանան, եպիսկոպոսն անարժան են այդ անունը կրելու: Նույն միտքը մենք այժմ արտահայտում ենք ասելով չիք երեց, չիք եպիսկոպոս:

114. «Երկրորդական մեծ տուն» շատ որոշ չէ: Մենք հասկանում ենք այն մեծ կալվածը, որ ըստ օրենքի պատկանում էր պարսից թագավորի Երկրորդին և գտնվում էր Ատրպատականում:

115. Բնագրում՝ «Այծից հայոց արքայ»: Հայտնի է, որ հին ժամանակ սովորություն կար, որ գավառները մեկը մյուսին ծաղրական կամ արհամարհական մականուններ էին դնում, ինչպես ագուլեցոց՝ գող, հին Նախիջևանցոց՝ խաշագող, նոր Նախիջևանցոց՝ հածէ, ախալցխացոց՝ կոռ, Երևանցոց՝ շան հրագ, պոլսեցոց՝ հոսոս և այլն: Թվում է՝ այսպիսի մի մականուն է եղել Պարսկաստանում հայերի համար՝ այս բառը, նկատի ունենալով, որ Հայաստանը լեռնոտ երկիր էր և ժողովուրդը մագլցում էր լեռների վրա՝ ինչպես այծերը: Ախոռապետը ոչ թե անարգելու նպատակով, այլ հանաք անելով, այս մականունն է տալիս Արշակին՝ հրավիրելով խոտի խուրձի վրա նստել: Նա

ընկերական ճաշ է արել, մոռանալով որ խոսում է թագավորի հետ:

116. Անկասկած այստեղ բնագրից մի թուղթ դուրս է ընկած, որի մեջ մանրամասն պատմվում էր, թե ի՛նչպես Վասակը աջողեցրեց Արշակի փախուստը Պարսկաստանից, ի՛նչպես Շապուհը զայրացավ այս փախուստը լսելով, և հրավիրեց իր մոտ Մարիին ու նրան մեղադրում էր: ԺԶ. գլխի միջի այս բերին նկատել է և Ն. Ա. (եր. 26):

117. ԺԷ գլխի վերնագիրը բնագրում թերի է— «Յաղագս թէ զիարդ *յուզեաց* Շապուհ արքայ պարսից ի վերայ քրիստոնէութեանն»... Նույն վերնագիրը ցանկում գրված է «Յաղագս թէ զիարդ *յուղարկեաց զհալածեալսն Շապուհ*»...: Երկու աղավաղված ընթերցվածքները մենք վերականգնեցինք— «Եթէ զիա՞րդ յուզեաց հալածանս Շապուհ արքայ պարսից ի վերայ քրիստոնէութեանն» և ըստ այդմ թարգմանեցինք:

118. Ոստան պահլավերեն բառ է ostān որից պարսկերենում մնացել է ōstāndā— գավառապետ: Հայերենում ոստան բառը սկզբնապես նշանակում էր Արշակունյաց թագավորական տոհմի կալվածները, որոնք կոչվում էին արքունի տուն: Այս նշանակությունից է ածանցվել ոստանիկ բառը, որ նշանակում էր թագավորական կալվածում ապրող ազնվական դասակարգը, որ հեռավոր սերունդ էր կազմում Հայկազյան կամ Արշակունի թագավորների: Արշակունյաց բարձումից հետո ոստան բառը սկսեց գործածվել՝ ուրիշ նախարարական կալվածների գլխավոր քաղաքները նշանակելու համար և մասնավորապես Դվին քաղաքի համար, որ պարսիկ մարզպանների մայրաքաղաքն էր: Վերջապես Ոստան իբրև հատուկ անուն գործածվեց Ռշտունյաց կալվածի գլխավոր քաղաքի համար Վանա լճի հարավակողմում:

119. Գլխի վերնագրում բնագիրն ունի. «Փախստական լինէր արքայն Պարսից», ուղղեցինք ըստ իմաստին և ըստ ցանկի՝ «յարքայէն Պարսից»:

120. Արվաստան նույնն է թե Ասորեստան կամ Ասորիք:

121. Բնագիրն այստեղ աղավաղված է. «Զի եթէ մեք լեալ էաք ամենայն Արեաց *զօրք* հանդերձ այսպիսի աջողութիւն գայր ի ձեռն, *քաջ* թէ զոյգ հասարակ այդպիսի գործ ի միասին կարէաք առնել»: Մենք ուղղեցինք՝ «զօրօք» հանդերձ. «քավ թէ» այսպիսի աջողութիւն գայր ի ձեռն»... և ըստ այդմ թարգմանեցինք:

122. Ինչպես 61-րդ ծանոթության մեջ հիշեցինք՝ Ասորեստանը սահմանակից էր Պարսկաստանին և Պարսկաստանի Տիսբոնը հենց սահմանագլխի վրա էր Տիգրիսի ափին: Ուստի այստեղ ևս Ասորեստանի տակ պետք է հասկանալ Պարսկաստան և հատկապես Տիսբոն քաղաքը:

123. Խորան հավանորեն պարսկերեն բառ է, xdvran կամ xuran, որով կոչվում էր Վահրամ Գուրի պալատը ըստ Փիրասյանի (Արմ. բառ.): Խորանը նույնպես վրան էր, բայց դատելով նրա զանազանակերպ գործածությունից՝ պետք է լիներ թագավորների և մեծամեծների ընդարձակ, զարդարուն և ներքին հարմարություններ ունեցող վրան:

124. Բնագրում գրված է. զՄծբին քաղաք, որ է յԱրուեստանի. Նծբինը Մծբինն է օտար ազգերի արտասանությամբ (Nisibis), իսկ Արուեստանը նույն Արուաստանը կամ Ասորեստանն է: (Տես ծան. 122):

125. Այս Գանձակը տարբեր է մեր Գանձակ= Գյանջայից (այժմ Կիրովաբադ) և գտնվում էին հին Ատրպատականում, Թավրիզից հարավ: Գիտնականների կարծիքով՝ այժմյան Թախտի Սուլեյմանն է Ջենջանի մոտ (Н. Адонц, «Юстиниан» 2), ինչպես հաճախ հիշվում է Փավստոսի մոտ Արշակունիների ժամանակ Հայաստանի արևելյան սահմանը, Կասպից ծովի արևմտյան ափերից իջնելով մինչև այստեղ էր հասնում:

126. Բնագրի «յուտեստ» բառը թարգմանեցինք «ուտեստի՝ կերակրվելու համար»: Մեծաքանակ զորք մի տեղում երկար ժամանակ պահելու համար պահանջվում է մեծ քանակությամբ կենսամթերք մարդկանց և ձիերի համար, որ Հայաստանում չէր կարելի

նարել՝ հարմար ճանապարհների և փոխադրության միջոցների բացակայության պատճառով: Ուստի սովորություն էր՝ զորքը այնպիսի տեղ պահել, որտեղ կենսամթերքներն առատ էր կամ որտեղ նախօրոք ամբարված էր բավականաչափ կենսամթերք: Սա առավելապես վերաբերում է հեծելազորին: Որովհետև այն ժամանակներն անկարելի էր միլիոնավոր փթերով խոտ պատրաստել և փոխադրել հեծելազորի կանգնած տեղերը՝ ուստի ավելի հարմար էին գտնում հենց հեծելազորը ձմեռները տանել այնպիսի տաք տեղեր, որտեղ ձմեռվա ամիսներին էլ ձիերը կարողանային դաշտերում արածել: Այս տեղերը սովորաբար կոչվում են ձմեռոց, ինչպես հաճախ հիշվում է Եղիշեի Պատմության մեջ: Այսպիսի մի ձմեռոց է եղել Անգեղատունը:

127. Բնագրում՝ «Ըստ այլ կաբել», թարգմանները այս բառը բացատրել են իբրև «կողմը», ծագեցնելով պարսկերեն «գաբ», «քաղ» (?) բառից: Նորայր Բյուզանդացին ցույց տվեց այս բացատրության սխալ լինելը և «կաբել» աղավաղված ձևն ուղղեց՝ «կարբյալ»— շուռ տալով, շուռ գալով:

128. Սահմանա գլխի այս երկու տներից մեկը հավանորեն Ատրպատականն էր, մյուսը Աղձնիքը, որ տեղերով պարսիկները մտնում էին Հայաստանի սահմանները:

129. Թավրեշը այժմյան Թավրիզն է Ատրպատականում: Ուրիշ տեղ (Գ. ԼԹ.) Փավստոս այս քաղաքը կոչում է Թավրեժ:

130. Կարավան պահլավերեն բառ է karavan որ տարածված է ուրիշ շատ լեզուների մեջ ևս: Կարավան նշանակում է ճանապարհորդների խումբ, որոնք ճանապարհորդություններ էին կատարում զինված պահապաններով՝ ավազակների հարձակումներից պաշտպանվելու համար: Այս նշանակությամբ այժմ գործ է ածվում քարվան ձևով: Բայց հին ժամանակ կարավանը նշանակում էր նաև արքունական բանակ, ինչպես այստեղ Փավստոսի մեջ և մի քանի անգամ Եղիշեի մոտ:

131. Բնագրում գրված է *«Տապրիկ* զօրօք», որ մենք թարգմանեցինք «Տապարիստանի զորքով»: Տապարիստանը պարսկական նահանգ էր նախկին Մարաստանում:

132. Նվիրակապետ— նվիրակների գլխավոր: Նվիրակ, պահլավերեն nivelak, պարսկերեն nuvid, նշանակում է ծանուցումն, լուր, ավետիք: Հայերենի մեջ մի քանի նշանակությամբ է գործածված— պալատական պաշտոնյա, որ արքունիք կանչված անձերը ներկայացնում է թագավորին.— որ տան դուռը կանգնած՝ ընդունում է հյուրերին,— որ թագավորի կամ իշխանի առջևից գնալով՝ փողոցներում ճանապարհ է բաց անում.— որ մի պետի կողմից հրավիրակ կամ պատգամավոր է ուղարկվում ուրիշ տեղ (=կաթողիկոսի նվիրակները).— որ ուղարկվում է վանքի համար պտղի հավաքելու՝ (Արմ. բառ.):

133. Բնագրում գրված է. «անկանէր ի ներքս ի *ղակիշն*»: Ղակիշ բառի ծագումը որոշ չէ: Ղակիշ կոչվում էր զորքի կայանը, որ թշնամու անակնկալ հարձակման դեմ պաշտպանված էր զանազան միջոցներով— պատնեշներով, թմբերով, ցանկապատներով, խրամատներով ևն: Սեբեոսի մոտ (գլ. Լ նոր հրատ.) նկարագրված է արաբացոց ղակիշը:

134. Բնագրի վերնագրում գրված է Մարունան, իսկ բնագրում *«Մարին անուն* մեծ նախարար»: Մենք ուղղեցինք՝ «Մարինան ոմն մեծ նախարար» և ըստ այդմ թարգմանեցինք:

135. Զինդկապետ կամ զնդապետ կամ զինդակապետ անշուշտ պահլավական բառ է, բայց իրանական գրականության մեջ չէ հիշված: Ծագման ու ճիշտ նշանակության մասին զանազան ենթադրություններ են եղած. ոմանք ծագեցնում են պարսկերեն žanda= փիղ բառից (ուրեմն զինդկապետ= փղապետ), ոմանք զենդերեն Zantupaiti բառից= պահլավերեն zand-put= խմբակցության պետ: Հյուբշման բացատրում է

իբրև zindik-ների պես, բայց այս բառի բացատրությունը չէ տալիս, ասում է միայն, որ դրանք զանգիկներ չեն: Փավստոսի մեջ բառի գործածությունից երևում է, որ զինդկապետը պարսից մեջ մի անծանոթ զինվորական բարձր աստիճան էր: (Արմ. բառ.):

136. Այս գլուխը, բացի այլանդակ բովանդակությունից, աչքի է ընկնում նրանով, որ միանգամայն անտեղի կերպով ընկած է պատերազմական գործողությունների նկարված մի շարք գլուխների մեջ, որոնց հետ ոչ մի կապ չունի: Արդյոք պատահական աղավաղությո՞ւն է գրչագիրների, թե նորամույծ հավելված է՝ դժվար է ասել:

137. Անդերձապետ պահլավերեն բառ է, andarzpat, որի հիմնական նշանակությունն է խորհրդական, andarz բառից, որ նշանակում է խորհուրդ: Այս անունով կոչվում էին հին Պարսկաստանում բարձրաստիճան պաշտոնյաներ, որոնք խորհրդականի պաշտոն էին վարում պետական բարձր իշխանավորների մոտ: Գոյություն ունեին դերանդերձապետներ= արքունի դռան՝ կամ պալատական խորհրդականներ, Մոգվ անդերձապետներ (հայացրված ձևով՝ Մոգաց անդերձապետներ= մոգպետների խորհրդականներ, Սակստան անդերձապետ= Սագստանի նահանգապետի խորհրդական և այլն): Այս բառը հայերենում գրված կա և հանդերձապետ ձևով. andarz-ը շփոթելով հայերեն հանդերձ-ի հետ (որ նույնպես պարսկերեն բառ է), ուստի և սխալմամբ հասկացվում է իբրև արքունի հանդերձատան վերակացու: (Արմ. բառ., Պատկ. матер. арм. сл. II):

138. Շապստան տակառապետ— Երկու պարսկական բառ: Շապստան, պահլավերեն šapas*tā*n, պարսկերեն šadis*lā*n. նշանակում է ննջասենյակ կամ կանանոց, իսկ տակառապետ, պահլավերեն *takār*, պարսկերեն tagār նշանակում է (գինու) կարաս, որից տակառապետ= (գինու) մատակարար, մատռվակ: Ըստ այսմ շապստան տակառապետ նշանակում էր այն պաշտոնյան, որ արքունական կանանոցի մատռվակն էր, գինու մատակարարը: Տակառապետ բառի տեղ մեր հին մատենագրության մեջ գործածված կա տաճարապետ բառը, որի մեջ տաճարը «սեղանատուն, կոչունք» է նշանակում և ամբողջ բառը համապատասխանում է տակառապետի պաշտոնին:

139. Մոգաց հանդերձապետի մասին տես ծանոթագրություն 137:

140. Համբարակապետ կամ ամբարակապետ պահլավերեն բառ է an*bā*rakapat համբարների, այսինքն մթերանոցների վերատեսուչ:

141. «Դասսընտրեին» անվան փոխարեն, որ միայն այստեղ է պատահում և ուրիշ ոչ մի տեղից հայտնի չէ՝ Ներսիսյան դպրոցի Փավստոսի ձեռագիրն ունի ավելի հավանական ընթերցված «և դասս ընտիր լին սոֆա» (ցույց է տվել Գր. Տեր Պողոսյան, «Հանդ. ամս.» 1900, եր. 199 ա):

142. Բնագրում գրված է «դասապետք շինականաց». ենթադրաբար թարգմանեցինք գյուղերի համփաներ: Դասապետները գուցե հազարապետին (տես ծան. 40) ենթարկված ստորին պաշտոնյաներ էին, որոնց հանձնվում էր գյուղերի գործերը (հողի, ջրի, *արոտատեղի և այլն մասին*):

143. Ակնարկություն Քրիստոսի առակի վրա անպիտան ծառայի մասին, որ իր տիրոջ տված մի քանքարը փոխանակ շահեցնելու տարել թաղել էր հողի մեջ և վերադարձրեց իր տիրոջը՝ երբ սա ետ եկավ ուղևորությունից: Տերը նրան մեղադրելով ասաց, որ գոնե պետք է ծառան այդ տաղանդը սեղանավորներին տար, որպեսզի ինքը գոնե տոկոսով ստանար իր փողը (Մատթ. Իէ. 14-28):

144. Բնագրում գրված է, «Բայց *լաւ* լիցի ձեզ զնոյն սիրել»: Մենք ուղղեցինք՝ «Քաւ լիցի» և ըստ այսմ թարգմանեցինք:

145. (Եր. 214). Վարազագիր մատանի: Մատանին մատի վրա կրելու օղ էր, որի մեջ ագուցված էր մի թանկագին քար՝ վրան փորագրված տիրոջ անունը, որ և ծառայում էր իբրև կնիք: (Շատ անգամ թանկագին քարի փոխարեն մակագրությունը լինում

էր մատանու արծաթի տափակացրած մակերեսի վրա): Վարազագիր մատանի նշանակում է այնպիսի մատանի, որի վրա փորագրված էր լինում վարազ= պարսից թագավորների գերբը: Վարազագիր մատանիով, ուրեմն պարսից թագավորի անձնական կնիքով, կնքված աղը ամենահաստատ անսուտ երդման նշան էր: Վարազ անունը իբրև պատվանուն շատերը կցում էին իրենց անուններին, ինչպես Վարազ-Վաղան, Վարազ-Շապուհ, Վարազ-Ներսեհ, Վարազդատ և այլն:

146. Բնագիրն այստեղ աղավաղված է թվում կամ գոնե մի քանի բառ պակաս: Գրված է. «իբրև տեսին զնոսա, արկին զերկոսեանն զարքայն Արշակ և զսպարապետն Վասակ և պանէին...» որտեղ «արկին» բայի լրացուցիչը պակասում է:

147. Բնագրում գրված է. «կոչեաց... *զդիւթսն, զաստեղագէտսն և զքաւդեայսն*»: «Դիւթը» մենք թարգմանեցինք ավելի սովորական «վհուկ» բառով: Երկուսի էլ ծագումը ու ճիշտ նշանակությունը անհայտ են, և ինչո՛վ են նրանք իրարուց տարբերվում՝ դժվար է ասել: «Քաւդեայ» հավանորեն քաղդյա բառի տարբեր ձևն է, իսկ քաղդյա նշանակում է քաղդեացի. քաղդեացիք, որովհետև պարապում էին աստղաբաշխությամբ՝ աստղերի և մոլորակների շարժումների հիման վրա գուշակություններ էին տանում, ուստի քաղդյան նշանակությամբ ավելի մոտ է աստղագետ կամ աստղահմա բառերին:

148. Արտավանը Պարսկաստանի վերջին թագավորն էր պարթևական հարստությունից (216-226 Հ. Ք.), որին սպանեց պարսիկ իշխաններից մեկը, Արտաշիր Սասանյան, և եղավ հիմնադիր Պարսկաստանում նոր հարստության, որ նրա անունով կոչվեց Սասանյան: Որովհետև թե՛ Պարթև թագավորները և թե Արշակունի թագավորները Հայաստանում ըստ ավանդության սերված էին Պարթև Արշակ Մեծից, և հայոց Արշակունիները համարվում էին երկրորդ՝ Պարսկաստանի Պարթևներից հետո՝ այս պատճառով հայոց Արշակունիները Արտավանին համարում էին իրենց ազգական, իսկ Արտաշիր Սասանյանին և նրան հաջորդող Սասանյան թագավորներին համարում էին հափշտակիչներ, որոնցից իրենք պարտավոր էին Արտավանի սպանության վրեժն առնել. և միևնույն ժամանակ համոզված էին, թե երբ Արտավանի մահով Պարթևաց հարստությունը դադարեց Պարսկաստանում՝ իրենք, հայ Արշակունիները, հանդիսանում էին ավագագույնը Արշակ Մեծի սերունդների մեջ, իսկ Սասանյան տոհմից թագավորներին, որոնք սերվում էին իշխան Արտաշիր Սասանյանից, այսինքն Արտավանի ծառաներից (հպատակներից մեկից) համարում էին ըստ օրենքի հայ Արշակունիների ծառաներ (=հպատակներ): Այսպես էլ ասում է Արշակը Շապուհին, թե «դուք ծառաներդ ձեր տերերի՝ մեր բարձն եք հափշտակել»:

149. Բնագրում գրված է. «և կայր ի զղջումն դառնայր»: Մենք ուղղեցինք «և լայր» և ըստ այդմ թարգմանեցինք:

150. Արտագերս բերդի մասին Փավստոս գրում է (Դ. ծԹ.), թե Արշակ թագավորը շինել տվեց՝ տեղի անառիկ դիրքի պատճառով և Արշարունյաց գավառը հատկացրեց այս բերդին՝ կենսամթերք մատակարարելու համար բերդապաններին: Ուրեմն բերդը առատ համբարանոցներ ուներ այն ժամանակ՝ երբ Փառանձեմը տասն և հինգ հազար մարդով գնաց այնտեղ ապաստանեց:

151. Բնագրում գրված է՝ «առ *Թագաւորն* Յունաց դիպեցաւ», պետք է լինեն՝ առ *Թագաւորին*: Պապը հունաց թագավորի մոտ էր, որովհետև, ինչպես Փավստոս պատմում է (Դ. ծե.), Պապը հենց որ պատանեկության հասակը մտավ՝ պատանդ ուղարկվեց հունաց կայսեր դուռը:

152. Բնագրում՝ *«զաւրավարն»* որ Նորայրն ուղղել է «զաւրավարքն», որին և մենք հետևեցինք: Սակայն թվում է, ո՛չ բնագրի «զաւրավարն» է ճիշտ, և ոչ Նորայրի ուղղած

«զաւրավարքն»: Բերդից ավարը իջեցնելը զորավարների գործը չէր: Հավանորեն բնագրում եղել է «զաւրականն»— զորքերը, որ դասական հեղինակների մոտ հաճախ գործ է ածվում հավաքական նշանակությամբ:— Մի քանի տող հետո բնագրում սխալմամբ գրված է «յԱրտաքսաղէրսն բերդին», որ ուղղելի է «յԱրտագերսն բերդին»:

153. Զվիթը հետևում է Քրիստոսի պատվերին «Հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վերայ ոչխարաց»: (Հովհ. Ժ. 11-13):

154. Այս անվան սովորական ձևն է Տոսպ, որ պատահում է արդեն ուրարտական սեպագիր արձանագրությունների մեջ: Տոսպ է գրում և ինքը Փավստոսը Դ. ԺԹ. գլխում:

155. Այսպես է այս քաղաքի իսկական անունը, որ բարդված է Նախին կամ Նախուն (?) հատուկ անունից և անվան բառից: Վերջին դարերում այս բառը բոլորովին անհիմն կերպով ստուգաբանեցին՝ Նախիջևան, իբրև թե նույնպիսի սխալ ստուգաբանությամբ Ակոռի գյուղը, Մասիսի վրա, բացատրում էին՝ «արկ ուռի», այսինքն թե այստեղ Նոյը խաղողի վազեր տնկեց, և Պարսկաստանի Մարանդ քաղաքը՝ «Մայր անդ», այսինքն թե այդտեղ է (թաղված) մայրը, Նոյի կինը:

156. Ոստիկան պահլավերեն բառ է, ōstikān որ նշանակում է հավատարիմ, վստահելի: Հայերենի մեջ (գրաբարում) ոստիկան էին կոչվում թագավորին հավատարիմ և վստահելի մարդիկ, որոնց թագավորը նշանակում էր վերակացու, կուսակալ որևէ գավառի կամ աշխարհի վրա: Ի միջի այլոց ոստիկան էին կոչվում արաբացոց կողմից Հայաստանի վրա նշանակված կուսակալները, որոնք առաջ կոչվում էին պարսկերեն մարզպան բառով՝ երբ նշանակվում էին պարսից թագավորներից:

157. Բնագիրն այստեղ մութ և դժվարահասկանալի է. (զույգ պակաս բառեր կան).— «Եւ հրամայեաց ի հրապարակին իմն առնել հրապոյրս մեքենայից, որով հրամայեաց զկին արկանել, և արձակել տիկնոջն Փառանձեմայ ի խառնակութիւն պոռնկութեանն անասնական պղծութեանն»: Մենք թարգմանեցինք մոտավորապես:

158. Ինչպես Փավստոս պատմել էր (Գ. ԻԱ.) Սյունյաց Անդովկ նահապետը մեկն էր այն երեք պատգամավորներից, որոնք Հունաց կայսեր մոտ գնացին՝ խնդրելով պաշտպանել Հայաստանը պարսիկներից Ներսեհ թագավորի ժամանակ: Այս պատգամավորության հետևանքն եղավ պատերազմը հույների և պարսիկների մեջ, որտեղ չարաչար պարտություն կրեց Ներսեհը: Ահա Անդովկի այս պատգամավորության վրեժն է, որ Շապուհը ավելի քան երեսուն տարի հետո լուծում է՝ նրա սերունդը կոտորելով: Ներսեհի և Վաղեսի մասին տես ծանոթ. 66:

159. Մազդեզական կրոնը նույն զրադաշտական կրոնն է, այսինքն երկրպագություն արեգակին և կրակին, բազմաթիվ ծիսական պատվերներով: Բառը Եղիշեի մոտ գործ է ածված բուն պահլավերեն ձևով՝ դեն-ի Մազդեզն: Մազդեզն պահլավերեն բառ է mazdēsn, mazdeyasn կրճատված է Արամազդ բառից և նշանակում է Արամազդին պաշտող:

160. Բնագրում գրված է՝ «Վահանայ էր քոյրաթիւ և Մամիկոնեան տոհմէն, քոյր Վարդանայ»: Քույրաթիվ բառը Հայկ. բառարանը բացատրում է «քոյր թուեցեալ՝ համարեալ», որ գոհացուցիչ չէ: Անձեռն բառարանը ավելի որոշ է բացատրում «հորեղբոր կամ հորաքրոջ աղջիկ, քույր սեպված», բայց ճիշտ չէ: Քույրաթիվ բառի մասին մի ուրիշ վկայություն է բերում Հայկազյան բառարանը— «Արդարև քոյրաթիւ է իմ առ ի հօրէ», այսինքն՝ հիրավի «նա իմ քույրաթիվն է հոր կողմից», որից կարելի է ավելի հավանական նշանակությունը դուրս բերել— խորթ քույր, ինչպես և մենք թարգմանեցինք: Ըստ Փավստոսի՝ Համազասպուհի քույր էր Վարդանի և քույրաթիվ Վահանի: Իսկ Վահանը եղբայր էր Վասակ սպարապետի (Դ. Ծ.), ուրեմն Վահան, Վարդան և Վասակ հարազատ եղբայրներ էին, և երբ Համազասպուհին քույր էր Վարդանի, բայց քույրա-

թիվ էր՝ նրա հարազատ եղբոր Վահանին՝ նշանակում է՝ այս վերջինիս համար խորթ քույր էր՝ ուրիշ մորից ծնած, հոր կողմից քույր էր, մոր կողմից խորթ— քույրաթիվ:

161. «Անակիւղոս» հունարեն բառ է, αναχωαος, որ նշանակում է կարճառունք պատմության մի տեսակ: (Ա. մ. բառարան):

162. Բնագրում գրված է վերնագրում. «Տան որդւոցն Թորգոմայ իշխանին հայոց»: Ուղղեցինք «աշխարհին» ինչպես ունի Դ. դպրության վերնագիրը նույնպիսի տեղում:

163. Բնագրում գրված է. «Լինեալ յարձակեցաւ Մուշեղն»: Հայկազյան բառարանը չի բերում լինել բառի համար Փավստոսի այս վկայությունը, և ուրիշ գործածությունների վրա հիմնվելով՝ բացատրում է լրանալ, լկտիանալ, որ չի հարմարում Փավստոսի այս տեղին: Աճառյան (Արմ. բառ.) բերում է այս վկայությունը և «լինելը» բացատրում է «հարձակվել», հիմնվելով երկու հատվածների վրա, որտեղ լինել նշանակում է հարձակվել, վրան վազել, բայց որովհետև բնագրում հարձակվել բայն էլ գործ է ածված լինել-ի հետ՝ մենք հարմար համարեցինք թարգմանել «համարձակ» բառով, որը նույնպես ընդունում է Արմ. բառարանը:

164. Բնագրում այստեղ թերություն է նկատվում. այնպես է հասկացվում, թե հունաց զորքերը բաշխել, տեղավորել էին Ծռանեղում, Բախիշում և Հայաստանի բոլոր գավառներում. սակայն այս դպրության Դ. գլխում ասված է, թե հունաց զորքերը գտնվում էին Ծռանեղում ու Բախիշում, այսինքն չէին ցրված Հայաստանի մյուս գավառներում ևս: Ծռանեղ և Բախիշ տեղերը միայն Փավստոսի մոտ են գործածված երկու անգամ: Դիոն Կասսիոս հիշում է Ραναια ձևով մի տեղ Արածանի գետի ափին, որը Ադոնցը նույնացնում է Փավստոսի Ծռանեղի հետ (Юстиниан, եր. 87). իսկ Բախիշի տեղը բոլորովին հայտնի չէ:

165. Մաշկավարզան նույն մաշկապարճանն է, որի մասին տես ծանոթ. 48:— Ժանվարի մասին տես ծանոթ. 109:

166. Բնագրում գրված է. «Տային բաշխիշ ի մեծամեծ աւարացն»: Բառարանները այս բառը բացատրում էին իբրև պաշխիշ, պարգև: Փավստոսի լեզվում այսպիսի նոր ռամկաբանություն անընդունելի է: Նորայրը (Կորյուն, եր. 184 ծանոթ.) ուղղում է՝ բաշխել, բաժանել, բաժին հանել, որ միանգամայն ընդունելի է:

167. Բնագիրն ունի. «Մինչդեռ *խօսեցեալ* գային զօրքն»: «Խօսեցեալ» անտեղի բառն ուղղեցինք «խաղացեալ» և ըստ այսմ թարգմանեցինք:

168. Բնագրում գրված է, «Տարցուք *յաղթանս* ի գործ կատարածութեանս»: Յաղթանս անտեղի բառի տեղ մի ձեռագիր ունի իսկական բառը՝ «*յԱղվանս*», որին մենք հետևեցինք:

169. Բնագիրն այստեղ ունի. «*Խլեցէք*, այրեցէք զնա»: «Խլել» բայի անսովոր նշանակությամբ գործածությունն այստեղ Հայկ. բառարանը բացատրում է այսպես. «Հանէք զայրն ի ձեռաց իմոց» կամ «ի խելաց հանէք զնա»: Երկու բացատրություններն էլ անհավանական են: Մենք հետևելով խոսքի իմաստին՝ ենթադրաբար թարգմանեցինք «զնա առնե քանդեցիր»:— Շարունակության մեջ գրված է. «Զի ասացի ես *բանս*, մի՛ յգեր զայրենազայնի գործ պատերազմին»: Բանս բառն անտեղի է, պետք է ուղղել բամ: (Թվում է թե սկզբնապես եղել է նիշա ձևով՝ *բամ*.— զի ասացի ես, բամ՝ մի՛ յգեր... հետո բամ-ը կամ երկարագիր Մ և Ս գրերի նմանության պատճառով կամ գրչի ուղղումով փոխվել է *բան*, իսկ սա աղավաղվել դարձել է բանս):

170. Քիլ՝ հին ժամանակի երկայնության չափ է, բթից փոքր, բացված ձեռքի բութ մատի ծայրից մինչև ցուցամատի ծայրը, որ համարվում էր համասար ութ մատնաչափի կամ երկու ուղղաթի:— Ներսես կաթողիկոսի այս խոսքը ինչպես և նզովքները առնված են Ս. գրքի, մասնավորապես սաղմոսի զանազան տեղերից:

171. Այստեղ դասս ձգեցինք մոտ կես երես, որ պարունակում է Բաբելոնի հնոցը ձգված երեք մանուկների աղոթքից հատվածներ: (Դան. Գ. 27–45. «Յիրաւունս անցուցեր դու մեզ...»):

172. Հին ժամանակ սովորություն կար, որ պատերազմից ետ դարձող զինվորները բերում էին իրենց սպանած թշնամիների գլուխները իբրև ապացույց իրենց գործած քաջության: Որքան շատ լինեին գլուխները՝ այնքան մեծ էր լինում բերող զինվորականի պարծանքն ու պատիվը: Սրանից է մնացել մեր ժողովրդական լեզվի մեջ՝ «Գլո՞ւխ ես բերել» ոճը, որ նշանակում է. «Ի՞նչ ես պարծենում, հո թշնամու գլուխ չե՞ս բերել»:

173. Լեգեոնը հռոմեական զորքի միավոր էր, որ պարունակում էր, զանազան ժամանակներում, 3600-ից մինչև 6000 կռվող զինվոր մի քանի ստորաբաժանումներով: Նրանց մեծ մասը ծանր զինված ու սպառազինված էր լինում, փոքր մասը թեթև զինված: Լեգեոնների կազմությունը հռոմայեցիներից անցավ Բյուզանդիային Ιελέλω նրանցից և մտավ բառի գործածությունը հայերենի մեջ (լեգեոն, լեգեովն):

174. Գրաստ, պատահում է և այլ ձևերով— գրաստ, դրաստ, ղրաստ և այլն: Ծագումը և ճիշտ նշանակությունը հայտնի չեն: Տրված են մի քանի բացատրություններ, բայց ոչ հավանական: Փավստոսի բնագրից այսքան կարելի է հասկանալ, թե վրայի երկայն զգեստ էր:

175. Նրանը դարձյալ սրի մի տեսակ է, բայց ճիշտ ձևը և բառի ծագումը հայտնի չեն: Հավանորեն ավելի կարճ էր քան սուրը:

176. Բալխ, սովորական ձևով բահլ կոչված է նաև բահլ առավոտին, կամ պահլավերեն՝ բահլի բամիկ—արևելյան բահլ: Սա շատ հին քաղաք էր Բակտրիա գավառում, Օկսոս (—Ամու-Դարիա) գետի հովտում, Գրապամիս և Թյան-Շան լեռների միջև, հիշատակվում է արդեն Դարեհ Վշտասպյանի սեպագիր արձանագրությունների մեջ Զ. դարում Ն. Ք.: Զրադաշտ մոգն հայրենիքն էր, Կյուրոսի մայրաքաղաքը: Ինչպես հետո քուշանների: Այժմ ավերակ է: Մի քիչ հեռու, Աղվանիստանի սահմաններում, շինված է նույն անունը կրող նոր քաղաք: (Խոր-բարգ. ծանոթ. 106):

177. Բնագիրն այստեղ ունի. «Լեալ էր իշխան *տան* գաւառին»: Ն. Մ. ուղղել է՝ «Անգեղտան գավառին», որին և մենք հետևեցինք:

178. Բարձ նույն բանն է նշանակում, ինչ որ պարսկերեն գահը, որի մասին տես ծանոթ. 25:

179. Բնագիրն այստեղ աղավաղված է, «զհակառակորդն, *քան մինչ* աշխատ. *արարեր* զմեզ»: Մենք ուղղեցինք՝ «զհակառակորդն, որ այնքան աշխատ արար զմեզ», և ըստ այսմ թարգմանեցինք:

180. Փուշտիպան, պահլավերեն pus̄ ikpān, պարսկերեն puts̆ipān կազմված է pus̆t= թիկունք և pān= պահապան բառերից և նշանակում է թիկնապահ:

181. Ամին հավանորեն իրանական ծագումից բառ է, որի ճիշտ նշանակությունը հայտնի չէ: Գործ է ածված նաև Եղիշեի մեջ— «ուղղովք զուարակաց և ամնովք երէոց»: Փավստոսի և Եղիշեի գործածությունից կարելի է եզրակացնել, թե ամինը մի համեղ ուտելիք էր՝ երէի մսի որոշ մասից:

182. Այս ընդարձակ նահանգի նախնական անունն է Ատրպատական, ինչպես ունին ուրիշ հայ հեղինակներ՝ համապատասխան պահլավերեն aturpātakān ձևի: Ավելի նոր ձևեր են՝ Ատրպատականը և ներկայումս գործածական Ադրբեջանը: Փավստոսի Ատրպատենացն ձևի մեջ արդեն երևան է գալիս նախկին կ ձայնի փոխվելը ն-ի (չ-ի):

183. Բնագրում գրված է. «յերկրէն Գարսից և ի Փայտակարան քաղաքէ»: «Գարսից» ակնհայտնի սխալ է, որ ուղղեցինք «Կասպից»: Նույնպես է ուղղում և Ն. Մ.:

184. Բնագրի վերնագրում այստեղ սխալմամբ գրված է. *«յաղագս Թագաւորին* Աղձ-

նեաց»: Ուղղեցինք «գավառին», ինչպես ունի և ցանկը:

185. Ոստանի մասին տես ծանոթ. 109:

186. Բնագրում գրված է. *«Ցանձն անէր* և մխիթարէր»: «Հանձն առնէր» աղավաղված ընթերցվածքը Նորայրը ուղղել է «հանձնաձեր», որին և մենք հետևեցինք:

187. Բնագիրը դժվար հասկանալի է այստեղ «յորէնս սաստէր մեծապէս»: Մենք հետևեցինք Վենետիկյան հրատարակության մի ձեռագրի, որ ունի «յանօրէնսն», և ըստ այնմ թարգմանեցինք «օրինազանցներին խստությամբ սաստում էր»:

188. Բնագրում գրված է «Ընդ Կոզիհեան խառնեալ»: Կոզիհա(ն) բառի ո՛չ ծագումն է հայտնի, ոչ նշանակությունը. բառը մի անգամ միայն գործ է ածված այստեղ Փավստոսի մոտ: Ոմանք բացատրում են իբրև բաժակ, ուրիշները՝ իբրև ըմպելիք: Մենք ենթադրաբար ընդունեցինք ըմպելիք բառը, քանի որ խոսքը գինու մասին է:

189. Թյուրակե, սովորական գրությամբ թերիակե, հունարեն բառ է, θηριακή, որ նշանակում է դեղթափ, հակաթույն, հատկապես այն դեղթափը, որ հնարել է Մեծն Միհրդատ Պոնտոսի թագավորը:— Հիվանդության նկարագրությունից— սրտի վրա մի նկանակի մեծությամբ կապտատակած տեղ, բերանից գունդ գունդ արյուն գալը—երևում է, որ Ներսես կաթողիկոսի թոքերի մեջ մի մեծ երակ է ծակվել, որի հետևանքով արյունահոսում է եղել ու վախճանվել. համենայն դեպս նրա մահը թունավորվելուց չէ եղել, և Պապը զուր տեղն է մեղադրվել իբրև ս. Ներսեսի թունավորող, թեև թշնամաբար, քանի որ Պապը նրա մահից հետո ոչնչացրեց ս. Ներսեսի հիմնած բարեգործական հաստատությունները և մանավանդ հոգևորականության հողերի մեծ մասը խլեց:

190. Այս Տրդատին հիշում է Փավստոս և Զ. դպրության վերջին գլխում, հաղորդելով մի քանի մանրամասնություններ նրա կյանքից:— Այստեղ բնագրում գրված է *Տրդած* փոխանակ՝ Տրդատ: «Տրդած» գրության պատահել եմ և ուրիշ ձեռագրերում, որ գուցե արտագրության սխալ չէ, այլ ժողովրդական արտասանություն է, նկատի ունենալով *արոտ*-արածել, *տիտ*-ծիծ, *տո*-ծո, գուցե և *մտանել*-մուծանել բառերը:

191. Պատկանյանի հրատարակության բնագրում գրված է՝ «արքա *Նահատայ*», որի մասին նա դնում է ծանոթություն՝ «թերևս Անահտայ, որպէս ի տպ.»: Մենք հետևեցինք այս ծանոթության ցուցմանը:

192. Անապատականների գազաններին բնակակից լինելը և նրանց բժշկելը մի տարածված մոտիվ է սրբոց վարքերում: Պատմվում է նաև, որ մի անգամ Հռոմում կրկեսն էին ձգել մի անապատականի և վրան առյուծ արձակել, որ բզկտե: Առյուծը մոտենալով ճանաչում է անապատականին, որ ժամանակ առաջ անապատում իրեն բժշկել է, ուստի փոխանակ նրան բզկտելու՝ սկսում է նրան լիզել:

193. Երեցի այս երկար աղոթքի գրեթե ամեն մի նախադասությունը կամ քաղվածք է ս. գրքի զանազան տեղերից կամ ակնարկություն ս. գրքի այս կամ այն խոսքի վրա: Այստեղ մանանեխի հատը հիշեցնում է Քրիստոսի այն խոսքը (Մատթ. ԺԷ. 19), թե, «Եթե մանանեխի մի հատիկի չափ հավատ ունենաք, և այս լեռան ասեք՝ «տեղափոխվի՛ր այստեղից այնտեղ», նա կտեղափոխվի, և ձեզ համար ոչ մի բան անհնարին չի լինի»:

194. «Սյունհոդոսական», սյունհոդոս բառից, որ հունարեն է, σύνοδος և նշանակում է ժողով, մասնավորապես՝ եկեղեցական ժողով: Սրանից էլ ծագել է Սինոդ բառը, որով ըստ Պոլոժենիայի կոչվում էր էջմիածնի բարձրագույն վարչական խորհուրդը կաթողիկոսի նախագահության տակ: Սյունհոդոս բառի միջի «ն» տառը ցույց է տալիս, որ բառը ուղղակի հունարենից չէ առնված, (որովհետև հունարենը «ն» չունի այստեղ), այլ ասորերենից: «Եւ երես այս» ուղղելու է «Եւ ընդ երես այս»:

195. Բնագիրն ունի. «առանց հայրապետին և գրեցին», որ ակներև սխալ է: Մենք

ուղղեցինք «և առ հայրապետն գրեցին» և ըստ այնմ թարգմանեցինք:

195. Բնագրում գրված է, «վասն ամբարտաւան *առևանգոյն* զգուշութեան»: Վեց օրինակ ունին *«աւանդոյն»*: Երկուսն էլ մենք աղավաղություններ ենք համարում, փոխանակ *առևանգոյն*, ինչպես և թարգմանեցինք: Ս. Ներսեսը կուսանոցները ամուր պարիսպներով պատել էր՝ առևանգումից կույսերին պաշտպանելու համար:

196. Բնագրում գրված է, «վասն ամբարտաւան *պռանգոյն* զգուշութեան»: Վեց օրիրայրի ուղղումը՝ «Կուսանք հաւատացեալք»: Հավատացյալ, կամ ինչպես ուրիշ հեղինակներն ասում են հավատավոր կույս՝ հաշվվում էին նրանց, որոնք ուխտում էին միշտ կույս մնալ և նվիրվել աստծուն:

197. Բնագրում գրված է. «զկարգս պտղոյն և տասանորդացն»: Դեռ շատ հին ժամանակներից սովորություն էր դարձած, որ գյուղացիք իրենց բերքերից կամավոր տուրք էին վճարում վանքերին, որոնք այս տուրքերը հավաքելու համար հատուկ մարդիկ էին ուղարկում գյուղերը հունձքի ժամանակ, թե ո՛ր բերքերի տուրքերն է Փավստոսը կոչում պտուղ և ո՛րը տասանորդ՝ այժմ դժվար է որոշել: Ընդհանուր գործածության մեջ՝ տասանորդները արմտիքներից պարտադիր տուրքեր էին, որ գյուղացիք վճարում էին պետության կամ հողատերերին, բայց ոչ վանքերին. վերջիններիս համար տրվող կամավոր տուրքը պտուղ էր կոչվում, որ մինչև այս դարի սկզբները գոյություն ուներ և վանքերի արդյունքների զգալի մասն էր կազմում: Քանակությունը սահմանված չէր, այլ կախված էր նվիրողների կամքից և մանավանդ պտուղ հավաքող վարդապետի ճարտարությունից: Պտուղ տալիս էին թե՛ արմտիքներից և թե՛ կաթնեղենից (յուղ, պանիր) և այլ գյուղական արդյունքներից:

198. Վին և փանդիռն երկուսն էլ օտարազգի բառեր են. վին արևելյան ծագում ունի (սանսկրիտերեն՝ ντπα), իսկ փանդիռը՝ փոքրասիական, որտեղից անցել է Հունաստան և ուրիշ շատ տեղեր՝ pandura հիմնական ձևից: Երկուսն էլ լարավոր նվագարաններ էին, բայց ինչո՛վ էին իրարուց զանազանվում՝ հայտնի չէ: Փանդիռն սկզբնապես երեք լար է ունեցել, որ հետո զանազան կերպարանափոխություններ է ստացել:

199. Ագաթանգեղոսի մեջ (գլ. ՃԺԹ.) ասված է, թե Տրդատ քահանաների սպասավորության համար նշանակեց ագարակներում ամեն մի ընտանիքին չորս հող, իսկ ավաններում՝ յոթ հող, բայց չէ հասկացվում, թե ի՛նչ հաշվով նշանակվեցին այս հողերը և ո՛րքան էր ամեն հողի տարածությունը: Փավստոսի Պատմությունը փոքր ինչ լույս է սփռում այս հարցերի վրա: Պապը, նրա ասելով, յոթը հողից հինգը կտրում գրավում է արքունիք, թողնում է միայն երկու հող՝ մի քահանայի և մի սարկավագի համար, իսկ սրանց եղբայրները և որդիքը պետք է ընդհանուր կարգով հարկատու դառնային: Քահանաներին հատկացրած այս հողերն ազատ էին հարկեր վճարելուց, ինչպես երևում է այս տեղից և Եղիշեի վկայությունից— («Նաև ի սուրբ եկեղեցւոյն, որ էր ազատ ի Քրիստոս ըստ կարգի նախնեացն մերոց ի սկզբանէ, և դու ընդ հարկաւ եդիր», Բ. եղ.): Այս արտոնությունը ուրեմն սահմանափակվեց միայն քահանաների ու սարկավագների համար: Այս երկու հողի տարածությունը այնքան պետք է լիներ, որ բավականություն տար քահանաների և սարկավագների և նրանց կանանց կարիքին, հաշվելով մարդ ու կնոջ մի հող:

200. Բնագրում գրված է. «Կարգեալք, *պատկեալք* կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ»: «Պատկեալք» բառը անտեղի է այստեղ: Համարեցինք աղավաղություն՝ փոխանակ «պատեալք կային» և ըստ այսմ թարգմանեցինք:

201. Քաղաք բառը չպետք է հասկանալ նրա այժմյան նշանակությամբ, այլ սկզբնական նշանակությամբ՝ ինչպես պարսպապատ՝ ամրացրած տեղ, որ սահմանված էր զորքի տևական կայան լինելու: (Տե՛ս ծանոթ. 59):

202. Առլեզ, գրված կա նաև արալէզ. հարալէզ և բացի այստեղից հիշվում է նաև Եզնիկի և Սեբեոսի մոտ և ուրիշ տեղեր: Առլեզները երևակայական երկնաքնակ կենդանիներ են եղել շան կերպարանքով, որոնք պատերազմի դաշտում ընկած քաջ մարդկանց վերքերը լիզելով կենդանացնելիս են եղել: Այս հավատալիքը թվում է Ասորեստանից է փոխանցվել հայերին: Բառը ստուգաբանելու շատ փորձեր են եղել, որոնց մասին տես Արմ. բառար., առլեզ բառի տակ:

203. Այս պատերազմը քուշանների հետ, թվում է տարբեր է այն պատերազմից, որ հիշում է Փավստոս Ե. դպրության յոթներորդ գլխում, որովհետև այն պատերազմին մասնակից է եղել ինքը Շապուհ թագավորը և մահից ազատվել է Դրաստամատի անձնանվեր քաջությամբ, իսկ այստեղ՝ Շապուհը պատերազմին մասնակից չէ:— Քիչ հետո հիշվող Մանուելի եղբոր Կոմս անվան փոխարեն ձեռագրերի մեծ մասն ունի Կոն, որ ավելի ուղիղ է թվում (Մամիկ-կոն, Մամիկ և Կոնակ):

204. Փարսախ կամ հրասախ երկայնության չափ է, հավասար 5250 մետրի= հինգ ու մի քառորդ կիլոմետրի: Բառը իրանական ծագում ունի: Նրա պահլավերեն fraeax ձևից առաջ է գալիս մեր հրասախը, իսկ նույն բառի արաբացրած ձևից՝ farsax -ից մեր փարսախը: Ուրեմն, ըստ Փավստոսի, Կոմսը հսկա Մանուելին շալակած օրական անցնելիս է եղել 52,5 կիլոմետր:

205. Մամիկոնյանների ծագման մասին բացի Փավստոսից գրում են նաև Խորենացին, Սեբեոսը և հետագա պատմիչները, թեպետ նրանք մանրամասնությունների մեջ զանազանվում են միմյանց, բայց հիմնականում բոլորը համաձայն են, այն է, որ նրանք ծագում են Ճենաստանից (Չինաստանից), եղել են ազնվազարմ երկու եղբայր. ներքին խռովությունների պատճառով փախել են Պարսկաստան և այստեղից ուղարկվել են Հայաստան: Այս բանը տեղի է ունեցել Մեծն Խոսրովի ժամանակ, իսկ ըստ Խորենացու՝ նրա երկու Տրդատի ժամանակ:

206. Բնագիրն այստեղ աղավաղված է.— Եւ *քանզի չեմ* Արշակունի, զի եդի զթագ նախնեաց իմոց...»: Գուցե ուղղելի է. «Եւ քանզի չեմ Արշակունի, զի՞ եդի...», այսինքն՝ եթե ես Արշակունի չեմ, հապա ի՛նչպես իմ նախնյաց թագը դրի: Մենք մոտավորապես թարգմանեցինք, հետևելով խոսքի ընթացքին:

207. Ասպարեզ, պահլավերեն asprēs. պարսկերեն asparēs բառացի նշանակում է ձիարշավ, ձիընթացարան, այսինքն հրապարակ, որտեղ ձի էին քշում: Երկրորդաբար այս բառն սկսեց գործածվել իբրև երկայնության չափ= ձիընթացարանի երկայնություն, որ ընդունված էր հավասար այժմյան 230,1 մետրի. սա պարսից ասպարեսն է կամ ասպարիսաց ասպարեզ: Կային և ուրիշ սիստեմների ասպարեսներ: (Արմ., բառ., Մանանդյան— Կշիռները և չափերը):

208. Բնագիրն ունի «*Եկն Համազասպ աներ* նորուն անցանել առ նոքօք», որ կրկնակի սխալ է. «Համազասպ» գրված է փոխանակ Համազասպյանի, և «աներ» փոխանակ աներորդու: Մենք աղավաղումն ուղղեցինք և ըստ այնմ թարգմանեցինք:

209. Բնագրում գրված է՝ «*Գամապետ* ասպարակիրացն»: Գամապետ բառի ծագումն ու ճիշտ նշանակությունը հայտնի չէ: Բազմաթիվ կարծիքներ են հայտնված նրա մասին, որոնք բերված են Արմ. բառարանում: Ենթադրաբար թարգմանեցինք խմբապետ:

210. Բնագիրն ունի. «Կամեցաւ թիկունս առնել զարքայն «Ցունաց», որ բացարձակ սխալ է: Ե. Մ. ուղղել է՝ զարքայն «պարսից», ինչպես և մենք թարգմանեցինք:

211. Այստեղ հիշված են մի քանի զարդեր ու պատվանշաններ՝ որոնք նվիրվում էին բարձրաստիճան անձերին.— *վառ* պարսկերեն bar, որ գուցե ծագել է պահլավերեն var-ից և նշանակում է դրոշակ: Հայերենի մեջ՝ այս բառը նշանակում է քող (Խորենացու գանձերի մեջ՝ «Պաճար վարդըն վառ առեալ ի վեհից վարսիցն արփենի»), և

ապա դրոշակ: Այս վերջին նշանակությամբ պահպանվել է խաչ-վառ բառի մեջ, որ նշանակում է խաչակիր կամ խաչի դրոշակ: Զարմանդուխտին նվիրված էր թագավորական դրոշակ:

*Գարգմանակ* գործ է ածել միայն Փավստոսն այստեղ: Ծագումն և ճիշտ նշանակությունը հայտնի չեն: Բառարանները բացատրում են իբրև զարդ խույրի կամ սաղավարտի վրա: Ուրիշները բացատրում են իբրև մի տեսակ գլխանոց կամ սաղավարտ: Բնագրից այնպես է հասկացվում, թե գարգմանակը ոսկուց ու արծաթից շինված արծիվ էր, որ գլխի (սաղավարտի) վրա կրում էին իբրև գլխի պատիվ:

*Պատիվ*, որ բացի ընդհանուր նշանակությունից նշանակում է նաև զարդ՝ մարմնի կամ զգեստի վրա կրելու, որ զանազան տեսակ էր լինում և շնորհվում էր թագավորից այս կամ այն անձին ի նշան գոհունակության կամ իբրև վարձատրություն նրա ծառայության: Պատվի մի քանի տեսակներ հիշում է Խորենացին (տես նրա Պատմության աշխարհաբար թարգմանության ծանոթ. 120), և Եղիշեն: Փավստոսը հիշում է երկու նոր պատիվ, այն է.

*Աշխարավանդ*, հանգույց գլխի վրա, արծվի հետևից կրելու: Հանգույց բառի նշանակությունը հայտնի է. նույնն է նշանակում և աշխարավանդ բառի՝ վերջին վանդը վանդ, որ պարսկերեն է, band, և նշանակում է հանգույց, կապ (ֆրանսերեն bande, ռուսերեն бант): Բայց աշխարավանդ բառի կազմությունը և նշանակությունը պարզ չէ: Համարում են, թե դա մի ժապավեն է եղել, որ գլխի հետևը բանտի ձևման կապում էին և երկու ծայրերը կախ ձգում, նման այն բանդին, որ երևում է Տիգրան Մեծի դրամի վրա: Տես և Արմ. բառ.:

*Ապեզակ*, կուրծքի զարդ, որ նույնպես միայն Փավստոսն է գործածել այստեղ: Ծագումը և ճիշտ նշանակությունը հայտնի չեն, Թիրյաքյան համարում է ծագած պարսկերեն āwēza բառից, որ նշանակում է գինդ, օղ, բայց Աճառյանը չի ընդունում: Տե՛ս Արմ. բառ.:

212. Բնագիրն այստեղ երկդիմի է: Տպագրված է «Կարգեցին... հարկս՝ տալ ընծայս և պատարագս», հասկացվում է այս մտքով, թե սահմանեցին ընծաներ ու նվերներ տալ իբրև հարկ (կամ հարկի փոխարեն): Բայց կարող է և այլ կերպ հասկացվել— «Կարգեցին... հարկս տալ, ընծայս և պատարագս», այսինքն սահմանեցին տալ հարկեր, ընծաներ և նվերներ:

213. Բնագիրն ունի. «Հասս և կօշիկս և զպիտոյս ռոճկացն»: Կօշիկք բառը Փավստոսը գործ է ածում և հետո մի անգամ (Զ. Ը.). «Այս ինձ կօշիկք լիցին», որտեղ կօշիկը պարզապես նշանակում է աշխատավարձ, սակայն ներկա տեղում աշխատավարձ նշանակությունը չէ համարում, ուստի մենք թարգմանեցինք՝ ռոճիկ, իսկ բնագիր «պիտոյք ռոճկաց» նշանակում է օրական պարենի՝ ուտելեղենի պիտույքներ, պարուստի մթերքներ:

214. Մի ձեռագիր ունի Արտանգան: Տեղը հայտնի չէ:

215. Մերուժանը շփոթվում է և տրտմում է ուղևորների տված պատասխանից, որովհետև տեղի «Եղջյուրներ» անունը համարել է ձախորդության գուշակություն, վտանգի սպառնալիք: Բայց քանի որ նա ուղևորներին ծեծել է տվել՝ թվում է թե նա «Եղջյուրները» չէ հասկացել իբրև լեռների հատուկ անուն, այլ իբրև այդ տեղերի որակումը ուղևորների կողմից՝ իբրև թե ճանապարհը լի է վտանգներով: Կարող է լինել, որ այս բառը Մերուժանը համարել է գործածված նաև գռեհիկ արտահայտությամբ՝ արհամարհելու և վիրավորելու նպատակով, որի պատճառով և ծեծել է տալիս ուղևորներին:

216. Բնագրում աղավաղված ձևով գրված է. «յընչացք երաց», որ Նորայրը ուղղել է. «յընչաց քերեաց», այսինքն՝ արհամարհեց:

217. Մերուժանը Տաճատի որդին էր, իսկ Տաճատը ամուսնացել էր Մամիկոնյան տոհմից մի աղջկա հետ, ուրեմն Մերուժանը Մամիկոնյանների քեռորդին էր: Եղբայր բառը այստեղ էլ գործ է ածված լայն նշանակությամբ, ինչպես ցույց տվինք 15-րդ ծանոթության մեջ:

218. Պատերազմական կարգապահությունը խիստ է եղել նաև Հայաստանում: Արտավազդը պետք է սպանվեր, որովհետև անսաստել է սպարապետի հրամանին և կռվին մասնակցել էր՝ հակառակ նրա բացարձակ արգելքին: Նրան փրկեց մահից նրա արտասովոր քաջությունը, որ ապացույց էր թե նա բավականաչափ հասունացել է և կռվելու ընդունակ է, այսինքն թե Մանուելի արգելքը նրա մանկահասակության պատճառով անհիմն է եղել:

218[1]. Վենետիկյան հրատարակության մի ձեռագիր «յիսուն»-ի փոխարեն ունի «տասն», որ ավելի հավանական է:

219. Մանուելի այս հայացքը, թե զինվորականի համար ամոթալի է մահը հիվանդությունից, անկողնում պառկած, բախտավորություն է պատերազմի մեջ մեռնելը— ընդհանրացած հայացք էր, և դեռ անցյալ դարում կենդանի էր քրդերի մեջ: Խաչատուր Աբովյանը իր մի աշխատության մեջ «Курды» վերնագրով, որ տպված է «Кавказ» լրագրում 1848 թ. №51, ի միջի այլոց գրում է. (թարգմանում ենք). «Դեռ մոտ ժամանակ քրդերը սովորություն ունեին լալ ու սաստիկ սուգ անել երբ թաղում էին մի մարդու՝ որ մեռած էր լինում տանը, և ընդհակառակը, իբրև մեծագույն ուրախություն տոնում էին այն մարդու մահը, թե որ ընկել էր պատերազմի մեջ»:

220. Բնագիրն ունի, (Ի վերայ նորա եղեն երբեմն, *եթէ որպէս մեծօք Հայեցեր և անձոյր զագահաթիւն ի թագաւորաց»։* Շեղագրով շարված այս խոսքերը բնագրի վերնագրում չկան, թվում է թե սկզբնապես այս վերնագիրը վերաբերվելիս է եղել Հոհան եպիսկոպոսի վարքին, որ ամփոփված է եղել մի գլխի մեջ, բայց հետո հարկ են համարել այս վարքը, նյութին նայելով, բաժանել երեք զատ-զատ գլուխների և այսպիսով ընդհանուր վերնագիրը մնացել է առաջին գլխի վրա, իսկ հաջորդ երկու գլուխների վերնագրերը մնացել են առանց բովանդակության:

221. Ցանկում գրված է, Ցաղագս Արշարունեաց եպիսկոպոսին», ուղղեցինք «Անառոն», համաձայն բնագրի վերնագրին և բուն բնագրին:

222. Բնագրում գրված է. «Վեցերորդ Դպրութիւն, վերջ առաջաբանութեան վճարումն՝ մնացուածք *բանից ի ծայրէ*»: Այստեղ «*վերջ*» բառը պատկանում է «վեցերորդ դպրության» և ցույց է տալիս թե վեցերորդ դպրությունը Փավստոսի Պատմության վերջինն է, ինչպես և երրորդ դպրության ցանկում գրված էր «Ի սկիզբն», այսինքն, թե երրորդ դպրությունը Փավստոսի Պատմության սկիզբն է:— «Առաջաբանության վճարումն» նշանակում է նախընթաց պատմության ավարտը, և վերաբերում է վեցերորդ դպրության առաջին գլխին, որով վերջանում է իսկապես Պատմությունը,— իսկ «Մնացուածք բանից ի ծայրէ» վերաբերում է նույն դպրության հաջորդ գլուխներին, որտեղ զետեղված են իրարուց անկախ համառոտ հիշողություններ այս և այն նախարարականների մասին, որոնք Պատմության հետ կապ չունենալով չէին կարող բուն Պատմության մեջ զետեղվել:

223. Փակագծված բառերը պակասում են այստեղ վերնագրում: Լրացրինք ցանկի վերնագրից:

224. Բնագիրն այստեղ թերի է— «Եւ էին թիկունք Արշակայ թագաւորին Հայոց և Սարմատու թագաւորն Գարեհց»: Մենք լրացրինք ինչպես իմաստը պահանջում էր և ինչպես ներքադրել է Ք. Պատկանյանը իր հրատարակության ծանոթության մեջ:

225. Բնագրում գրված է «Որ *Սիւնեաց* գաւառին մնացին», մի ձեռագիր ունի «Որ-

սիւնքն»: «Սիւնքն» մենք համարեցինք ոչ թե հատուկ անուն, (որ անհայտ և անտեղի կլիներ այստեղ), այլ հասարակ անուն՝ փոխաբերաբար գործածված,— աշխարհի սյուները՝ հենարանները կազմող. հիմնական գավառները:

226. Բնագիրն ունի. «Պակասեաց յիւրմէ մեծութենէն յայնմ ժամանակն և *յապայ*»: Վերջին խոսքը ցույց է տալիս, որ Փավստոսի պատմությունը գրված է Հայաստանի այս բաժանումից (384-ին) շատ հետո:

227. Պճղնավորը երկար զգեստ՝ փարաջա էր, որ մինչև պճեղները՝ ոտների կոներն էր հասնում: Սա էր հոգևորականների արտաքին զգեստը, որի պատճառով հայր մարդպետը ծաղրելով՝ հոգևորականներին կանացազգեստ է կոչում (Փավստոս, Դ. ԺԴ.): Իսկ խոտորկտուրը, ինչպես բացատրել են Ս. Պառնյան և Հացունի (Արմ. բառ. խոտոր բառի տակ) նշանակում է զինվորական զգեստ, որ հետևի քղանցքից դեպի առաջ՝ մինչև ծնկները կտրած էր լինում, որպեսզի առջևի քղանցքը վազելու չխանգարի: Երևի կազմված է խոտոր և կտրել բառերից. այսինքն շեղակի կտրած:

228. Բնագիրն այստեղ ունի «Եւ ինքն Զաւէնն *աթինեալս* և *գտապակեալս* զծապինեալս նարօտօք ագանէր», որտեղ «աթինեալ» (կամ նաթինեալ՝ Զավեն բառի վերջին ն գիրը համարելով այս բառին պատկանող) և «տապակեալ» միայն այստեղ են գործածված և պարզ չեն ոչ ծագումով և ոչ նշանակությամբ: Արմ. բառ. առաջին բառը հասկանում է իբրև՝ «ճննված, զարդարված», իսկ տապակյալ բառը (տապակ = վահանաձև զարդ)՝ իբրև վահանակներով զարդարված:

229. Բնագրում գրված է «Զորբ այր *ներքինի* ընդ նոսին»: Քանի որ Զոբրը եպիսկոպոս է եղել, ինչպես գրված է վերնագրում և բնագրի մեջ՝ ուրեմն նա չէր կարող ներքինի լինել, որ արգելված էր եկեղեցական կանոններով: .ւստի մենք թարգմանեցինք «ներքին խոհրդական», հետևելով բնագրի հաջորդ խոսքին— «էին ի ներքնի հայրապետին ի տան իւրում»:

230. «Հոռոմ» բառը, որ ծագում է Հռոմ քաղաքի անունից և սկզբնապես նշանակում էր հռոմայեցի՝ մեր հին մատենագրության մեջ գործ է ածվում նշանակելու համար հռոմեական արևելյան կայսրության, այսինքն Բյուզանդիայի բնակիչներին, որոնց մեջ տիրապետող տարր կազմում էին հույները, այնպես որ հոռոմ սկսեց նշանակել Բյուզանդիայի հույն: Այս բառն է որ ժողովրդական լեզվի մեջ դարձել է ուռում:

231. Այս վերնագրի նկատմամբ տե՛ս ծանոթ. 220:

232. Բնագրում գրված է. «Որդի Փառինայ հայրապետի, հինաւուրց»: Այնպես է դուրս գալիս, թե Փավստոսը «հինավուրց»— հնացած, զառամյալ կոչում է Հոհան եպիսկոպոսին, որ սակայն չէ համարում այդ եպիսկոպոսի գործողություններին, որոնք երիտասարդ հասակին են հատուկ: Մենք հասկացանք այս բառն իբրև «հին ավուրց»— հին անցած օրերի և վերաբերեցինք Փառեն հայրապետին, որ կարճ ժամանակով կաթողիկոսական աթոռը նստավ Տիրան թագավորի ժամանակ (Գ. ԺԶ.) և որին համարում է «հին ավուրց» արտահայտությունը:

233. Հեսկ— ոտների փաթաթան փոկերից, խսիրից կամ այլ նման նյութերից: Կեմ— խառից ոլորված չվան:

234. Բնագրում գրված է. օղիկ, մի ձեռագիր ունի յօղիկ: Երկուսն էլ անծանոթ բառեր: Ն. Մ. ուղղում է լողիկ, որին մենք հետևեցինք: Լողիկ վերնազգեստ է, վերարկու:

235. Բնագիրն ունի. «Սակայն *մի հանէսք* այն էին նորա»: Ուրիշ օրինակներ ունեն՝ «Միահանէք»: Բառի իսկական ձևը, ծագումը և նշանակությունը անծանոթ են. գործ է ածված միայն այստեղ Փավստոսի մոտ: Նոր Հայկազյան բառարանը բացատրում է. «Որպէս թէ միակ հանակ, այսինքն խաղ, կատակ, միմոսութիւն կամ կեղծաւորութիւն առ ի հանել և քաղել ինչ մի յայլոց»: Բայց սակայն բառը թույլ չի տալիս այս բացա-

տրությունն ընդունել: Աճառյան (Արմ. բառ.) ավելի հարմար է գտնում՝ «փորձանք, վտանգ, փորձություն»: Բուզանդ ուզում է ասել թե «Հովհանը ագահության ծառայի էր, սակայն այս ագահությունը իր գլխին փորձանք էր բերում», (ինչպես այգեպանի դեպքում, Բուզ. Թ.): Բայց այգեպանի դեպքում փորձանքի եկավ Հովհանը ոչ ագահությունից: Մենք ենթադրաբար թարգմանեցինք— այդ խեղկատակություններն իրեն միջոց էին ծառայում (մի բան կորզելու համար):

236. Տրդատի մասին տես Ե. դպր. գլուխ ԻԴ.:

237. Բնագրում այստեղ և երկու տող հետո գրված է. «ի ծագս» ծայրերին, կատարներին, որ անհարմար է, մենք ուղղեցինք ըստ Վենետիկյան մի ձեռագրի «ի ծակս»— ծակերում, ծերպերում, որ անապատականների սովորական բնակության տեղերն էին, որից բարդ բառեր՝ ծակախիթ լինել, ծակամուտ լինել:

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

Ա



Բ



Գ

Վ



Տ



Ու



Փ



Ք

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## Հ



## Ձ



## Ճ



## Մ



## Ն



## Շ



## Ո



## Պ



## Ջ



## Ռ

Ս



Վ



Տ



Ց



Ու



Փ



Օ

ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ

# ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Հրատարակության է ներկայացրել համալսարանի հայ ժողովրդի պատմության ամբիոնը

Հրատարակչության խմբագիր՝ Լ. Ս. Արզումանյան

Նկարիչ՝ Ա. Գ. Սիմոնյան

Գեղարվեստական խմբագիր՝ Ն. Ա. Թովմասյան

Տեխն. խմբագիր՝ Հ. Ս. Այվրցյան

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Գ. Ցավրյան

ԻԲ 676

Հանձնված է շարվածքի 17.03.1986 թ.։ Ստորագրված է տպագրության 22.05.1987 թ.։ Չափսը $60 \times 84^1/_{16}$։ Թուղթ № 1։ Տառատեսակը «Նորք»։ Տպագրության եղանակը «օֆսեթ»։ Հրատարակչական 22,4 մամուլ։ Տպագրական 28,5 մամուլ=26,5 պայմանական մամուլի։ Տպաքանակ 30 000 (2-րդ թողարկում՝ 15 001 — 30 000)։ Պատվեր 5927։ Գինը՝ 2 ռ. 20 կ։

Երևանի Համալսարանի Հրատարակչություն, Երևան, Մռավյան փ. № 1։

Издательство Ереванского университета, Ереван, ул. Мравяна № 1.

---

ՀՍՍՀ Հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի գունավոր տպագրության տպարան։
Երևան-82, Ադմիրալ Իսակովի պող. 48։

Типография цветной печати Госкомитета Арм. ССР по делам издательств, полиграфии и книжной торговли.
Ереван-82, пр. Адмирала Исакова, 48.